# ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

## 11

# ИНОЯЗЫЧНЫЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ



АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

АРАБСКИЕ ИСТОЧНИКИ

II

# ИБН АЛ-АСИР

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА,
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
А. Н. ТЕР-ГЕВОНДЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1981

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԱՐԱԲԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## Բ

# ԻԲՆ ԱԼ-ԱՍԻՐ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ,
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
ԱՐԱՄ ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆԻ



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1981

ԳՄԴ 63.3(2Հ)1
Ի 148

Տպագրվում է ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ

Պատասխանատու խմբագիր՝ պատմական գիտությունների թեկնածու
Հ. Գ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

Գիրքը հրատարակության են երաշխավորել գրախոսներ՝ պատմական գիտությունների դոկտորներ Հ. Մ. ԲԱՐԹԻԿՅԱՆԸ և Բ. Ս. ՈՒԼՈՒԲԱԲՅԱՆԸ

Իբն ալ-Ասիր.
Ի 148 *[Բնագիր] / Թարգմ. բնագրից, առաջաբանը և ծանոթագր. Ա. Տեր-Ղևոնդյանի; խմբ. Հ. Գ. Մելքոնյան—Եր.։ ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1981.—443 էջ.—(Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին; 11 Արաբական աղբյուրներ, 2 /ՀՍՍՀ ԳԱ, Պատմ. ին-տ)։*

*Գրքում թարգմանաբար տրված են XIII դ. արաբ պատմիչ Իբն ալ-Ասիրի «Ալ-Քամիլ Ֆի-լ-Տարիխ» (Լիակատար պատմություն) բազմահատոր աշխատության (և «Պատմություն Մոսուլի աթաբեկների պետության») Հայաստանին և հայերին վերաբերող հատվածները։ Իբն ալ-Ասիրի տեղեկությունները վերաբերում են Հայաստանի պատմության տարբեր ժամանակաշրջաններին (VII—XIII դդ.)։*

*Աշխատությունը նախատեսված է հայագետների և արևելագետների համար։*

Ի — 0505040000 / 703(02)—81 27—80

ԳՄԴ 63.3(2Հ)1
9(с43)1

# ԱՐԱԲ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԻԲՆ ԱԼ-ԱՍԻՐԸ

Արևելքի պատմության կարևորագույն սկզբնաղբյուրներից է արաբ պատմագրությունը, որն սկսեց կազմավորվել արաբական նվաճումներից հետո և զարգացման բարձր աստիճանի հասավ Թ—ԺԵ դարերում։

Արաբ պատմագրությունը սկզբնավորվել է մի քանի աղբյուրներից։ Նախքան մահմեդականությունը Արաբիայում եղել են պատմական ավանդություններ, որոնց մեջ հատկապես կարևոր են Հարավային Արաբիայի (Եմենի) հնագույն պատմության վերաբերյալ զրույցները, որոնք միայն հետագայում գրի առնվեցին։ Բուն (հյուսիսային) արաբները ունեին իրենց ցեղերի մասին զրույցներ, որոնք կոչվում էին «արաբների [ընդհարումների] օրեր» (այյամ ալ-արաբ)։ Բացի դրանից կային տոհմաբանությանը գիտակ մարդիկ, որոնց հաղորդած նյութերը հետագայում գրի առնվեցին մատենագիրների կողմից (օրինակ՝ Քալբին, մեռ. 819 թ.)։

Մուհամմադ մարգարեի գործունեությունը և նորակազմ մահմեդական պետության՝ խալիֆայության, առաջին արշավանքները առատ նյութ տվեցին պատմական զրույցների գոյացման համար։ Արդեն Ը դարում այդ նյութերն սկսեցին հավաքվել և ստեղծվեց խալիֆայության վաղ շրջանի պատմագրությունը, որի լավագույն ներկայացուցիչն էր Վակիդին (747—823)։ Նրա գրած պատմությունը մահմեդականության ծագման և խալիֆայության առաջին արշավանքների մասին թեև հիմնականում կորած է[1], այսուհանդերձ իր ժամանակին օգտագործվել է այլ պատմիչների կողմից։

Արաբ պատմագրության այս նախնական աստիճանի համար կարևոր աղբյուրներ էին Դամասկոսի և ապա Բաղդադի արքունի դիվանների հարուստ փաստաթղթերը։ Այսպես, օրինակ, Աբբասյան ժամանակաշրջանի հարկային մատյանների առատ նյութերի հիման վրա Աբու Յուսուֆը (731—798) կազմեց իր հայտնի «Հարկամատյանը» (Քիտաբ ալ-Խարաջ), որը կարևոր աղբյուր է խալիֆայության տնտեսական կյանքի ուսումնասիրման համար։

[1] Հետագայում ծնունդ առավ պատմական աշխատությունների մի ամբողջ շարք, որի հեղինակը պատմագիտության մեջ ընդհանուր անունով կոչվում է Կեղծ Վակիդի։

Արաբ պատմագրության զարգացման համար կարևոր նշանակություն ունեցավ պարսից արքաների պատմության նշանավոր մատյանը՝ Խվաթայ-Նամակը (Խուդայ Նամե), որը դեռ Ը դարում պարսիկ Իբն ալ-Մուկաֆֆայի (մեռ. 756) ձեռքով պահլավերենից թարգմանվել է արաբերենի։ Պարսից արքաների մասին եղած պատմական բոլոր ավանդությունները, մանավանդ Սասանյան ժամանակաշրջանի պատմությունը, մուտք գործեցին արաբ պատմագրություն և կազմեցին նրա կարևոր բաժինը։

Ինչ վերաբերում է Աստվածաշնչի (Հին և Նոր կտակարանների) նյութերին[2], ապա դրանք դեռ Ղուրանի միջոցով համառոտ կերպով ծանոթ էին արաբներին, իսկ Ը—Թ դարերում ընդարձակ ձևով ներթափանցեցին արաբ մատենագրության մեջ իհարկե ո՛չ առանց ասորիների գործուն միջնորդության։

Այսպիսով, Թ դարում ծնունդ առավ արաբ պատմագրությունը, որի առաջին ներկայացուցիչներն էին Բալաձուրին (մեռ. 892), Դինավարին (մեռ. 895) և Իբն Վադիհ ալ-Յակուբին (մեռ. 897)։ Արաբ պատմիչները ձգտում էին իրենց պատմական երկերը շարադրել համաշխարհային (տիեզերական) պատմության շրջանակներում։ Իհարկե, տարբեր ազգերի պատմությունը տրվում էր մեծ մասամբ նախամահմեդական շրջանի համար, իսկ մահմեդականության երևան գալուց հետո տրվում էր հիմնականում խալիֆայության և նրա հետ առնչություն ունեցող պետությունների պատմությունը։

Բալաձուրին հայտնի է իր «Երկրների նվաճում» (Ֆուտուհ ալ-բուլդան) կոչված աշխատությամբ (մեզ հասել է համառոտ խմբագրությունը), ուր ի մի են բերված խալիֆայության բոլոր նվաճումները, ընդ որում ամեն մի երկրի նվաճմանը հատուկ գլուխ է նվիրված։ Իհարկե, Բալաձուրիի պատմության մեջ շարադրված են նաև նվաճումներին հաջորդող դեպքերը մինչև Թ դարի կեսերը, սակայն շեշտը դրված է նվաճումների վրա։ Արժեքավոր է այն, որ պատմիչը մեջ է բերում բազմաթիվ պայմանագրերի պատճեններ, որոնք կնքվել են արաբ զորավարների և նվաճված երկրների ու քաղաքների միջև։

Հայաստանի նվաճմանը հատկացված գլխում նա մանրամասն շարադրում է 654-ին Հաբիր իբն-Մասլամա զորավարի արշավանքը Հայաստան և, ընդհանրապես, արաբների քաղաքականությունը Է—Թ դարերում։ Բալաձուրիի պատմությունը հրատարակված է Մ. դե Գույեի կողմից[3]։ Նրա

[2] Բյուզանդական պատմագրությունը ազդել է քրիստոնյա արաբ պատմագրության վրա, իսկ մահմեդական արաբ պատմագրության վրա նրա ազդեցության հարցը դեռ չի պարզաբանված։

[3] Liber expugnationis regionum, auctore *al-Beladsori*, ed. M. J. de Goeje, Lugduni Batavorum, 1866.

մյուս՝ պատմատոհմաբանական աշխատությունից՝ «Գիրք ազնվականաց տոհմաբանության» (Քիտաբ անսար ալ-աշրաֆ), հասել է միայն երկու հատոր։

Ծագումով պարսիկ է պատմիչ Դինավարին, որի «Գիրք երկարապատում ավանդության» (Քիտաբ ալ-ախբար ալ-Թիվալ)[4] աշխատության մեջ Իրանի պատմությունը կարևոր տեղ է գրավում։

Տիեզերական պատմության հեղինակ է Յակուբին։ Նրա պատմության սկզբնական մասը ամբողջովին նվիրված է Աստվածաշնչից քաղած նյութերին (հրեաների պատմությունը), այն հասցնելով մինչև քրիստոնեության հանդես գալը։ Պատմության մեջ մեծ տեղ է գրավում հունաց, հռոմայեցոց, պարսից և արևելյան այլ ժողովուրդների պատմությունը, ընդ որում հիշվում են արևելքում Չինաստանի թագավորները, իսկ արևմուտքում՝ հյուսիսային Աֆրիկայի բերբերները։ Գրքում տրված է բուն Արաբիայի, Եմենի, ինչպես նաև նախամահմեդական շրջանի արաբ ցեղերի պատմությունը։ Մահմեդականության սկզբնավորման մանրամասն շարագրանքը տալուց հետո, սկսում է բուն խալիֆայության պատմությունը։ Աբբասյանների ժամանակաշրջանի պատմությունը հասնում է մինչև 872/873 թվականը, որով և ավարտվում է շարադրանքը։ Յակուբիի Պատմությունը հրատարակված է Տ. Հաուտսմայի կողմից՝ երկու հատորով[5]։ Ունի նաև արևելյան հրատարակություններ։ Նա հեղինակն է նաև մի աշխարհագրական երկի[6]։

Բալազուրին, Յակուբին և մյուսները (Վակիդի, Դինավարի) հիմք դրեցին արաբական դասական պատմագրությանը, որը զարգացավ և դարձավ Արևելքի և ընդհանրապես միջնադարյան աշխարհի ուսումնասիրման պատմական կարևոր աղբյուրներից մեկը։ Արաբ պատմագրությունը հիմք դարձավ մահմեդական բոլոր ժողովուրդների (պարսիկներ և այլն) պատմագրության զարգացման համար։

Արաբ դասական պատմագրությունը զարգացման գագաթնակետին հասավ պարսիկ Աբու Ջաֆար Մուհամմադ իբն Ջարիր ալ-Թաբարիի (838—923) մեծ աշխատության մեջ, որի վերնագիրն է «Պատմություն մարգարեից ու թագավորաց» (Տարիխ ալ-ռուսուլ ու-ալ-մուլուք)։ Միջնադարում նա հայտնի էր նաև որպես հեղինակ Ղուրանի բազմահատորանոց մեկնության, որի նյութերը լրացնելու համար նա հավաքել էր մեծ թվով պատմական ավանդություններ։ Հենց այդ նյութերից օգտվելով էլ

---

[4] *Dinawari*, Kitab al-Akhbar al-Tiwal, publ. par V. Guirgas, Leide, 1888.

[5] Ibn Wadhih qui dicitur *al-Jaqubi Historiae, I—II*, ed. M. Th. Houtsma, Lugd. Bat., 1883.

[6] Bibliotheca Geographorum Arabicorum, VII, ed. M. J. de Goeje, Lugd. Bat., 1889.

նա շարադրեց իր պատմական ընդարձակ աշխատությունը։ Այն, ինչ հասել է Թաբարու անունով, նրա Պատմության սոսկ համառոտ խմբագրությունն է, իսկ ընդարձակ խմբագրությունը մեզ չի հասել։

Թաբարին իր «Պատմության» մեջ մանրամասն շարադրում է, նախ, եբրայեցիների, ապա Իրանի պատմությունը, որին նվիրված է մի մեծ բաժին, որը հատկապես կարևոր է նրանով, որ շարադրված է Խվաթայնամակի թարգմանության հիման վրա։ Հանգամանալից է նաև խալիֆայության պատմությունը, որը հասցված է մինչև հիջրի 302(914/15) թվականը։ Բացի մեզ հայտնի արաբ պատմիչներից, Թաբարին օգտագործել է նաև այնպիսի մատենագիրների, որոնց աշխատությունները այժմ կորած են։ Թեև նա իր սկզբնաղբյուրները միշտ չի հիշատակում, այսուհանդերձ երևում է, որ նա բազմաթիվ աղբյուրներ է օգտագործել։ Թաբարիի ընդարձակ խմբագրությունն իր ժամանակին օգտագործել է Սամանի պետության վեզիր, պարսիկ Բալաամին, որը 963 թվականին տվել է նրա պարսկերեն համառոտ թարգմանությունը։ Բալաամին թեև շատ է կրճատել Թաբարու Պատմությունը, բայց որովհետև նրա ընդարձակ (մեզ չհասած) խմբագրությունն է օգտագործել, բազմաթիվ հետաքրքրական փաստեր է պարունակում նրա մատյանը։

Մ. դե Գույեյի և այլոց ջանքերով Թաբարու Պատմությունը հրատարակվել է 13 հատորով ։ Ունի նաև արևելյան հրատարակություններ։ Թ. Նյոլդեքեն գերմաներենի է թարգմանել Իրանին վերաբերող հատվածը, որպես մի բեկոր Խվաթայ-նամակի կորած նյութերի։

Ժ դարը մեզ տվել է ևս մի մեծ պատմիչ՝ Մասուդի (մեռ. 956), որը ծագում է արաբ ազնվական ընտանիքից։ Նա իրավացիորեն համարվում է արար պատմագրության խոշորագույն դեմքերից մեկը, նույնիսկ արաբ պատմագրության Հերոդոտոսը։ Բայց, դժբախտաբար, մեզ հասել է նրա Պատմության երեք տարբեր խմբագրություններից (ընդարձակ, միջին և համառոտ) միայն համառոտ խմբագրությունը։ Լինելով բազմակողմանիորեն զարգացած անձնավորություն, հետաքրքրվել է ոչ միայն մահմեդական երկրներով, այլև քրիստոնյա ժողովուրդների և նույնիսկ հնդիկների կենցաղով։ Նրանից մեզ հասած պատմական աշխատությունը «Ոսկու լվացարաններ և թանկարժեք քարերի հանքեր» (Մուրուջ ալ-զահաբ ուա մաադին ալ-ջաուհար), պարունակում է բաղում երկրների պատմությունը. հիշվում է նույնիսկ այնպիսի հաղվագյուտ գրույց, ինչպիսին է հայկական «Արա և Շամիրամը»։ Արժեքավոր է նրա գրքում Կովկասյան լեռնաշխարհի նկարագրությունը։ Ահա այս բազմակողմանիությունն է, որ հիմք է տվել ուսումնասիրողներին նրա աշխատությունը համարել

[7] Annales auctore Abu Djafar... *at-Tabari*, ed. M. J. de Goeje, series I—III, Lugd. Bat. 1879—1901. Tarikh At-Tabari, v. I—X, Le Caire, 1960—1969.

հանրագիտարան։ Նրա արաբերեն բնագիրը հրատարակել է Բարբյե դը Մեյնարը[8]։ Ունի նաև արևելյան հրատարակություններ։ Մասուդին ունի նաև աշխարհագրական մի երկ։

Ժ դարում հիշատակության արժանի են նաև այլ պատմիչներ, ինչպես, օրինակ, Սուլին և Համզա Իսֆահանցին։

Արաբ պատմագրության հետ սերտորեն կապված է աշխարհագրությունը, որը, նույնպես, զարգացավ Թ դարում և բարձր աստիճանի հասավ Ժ դարում։ Թ դարի աշխարհագրագետներ իբն Խորդադբեհից և իբն ալ-Ֆակիհից հետո Ժ դարում առաջացավ, այսպես կոչված, «Դասական դպրոցը», որի ներկայացուցիչներն էին Իսթախրին, իբն Հաուկալը և Մուկադդասին։ Արաբ աշխարհագրագետների երկերում կան հարուստ պատմական փաստեր, որոնք լրացնում են պատմիչների տեղեկությունները։

Թ—Ժ դարերի արաբ պատմագրության այս հարուստ ավանդույթների վրա շարունակեց զարգանալ հետագա ժամանակաշրջանի արաբ պատմագրությունը։ ԺԱ դարում որոշ փոփոխություն է նկատվում արաբ պատմագրության մեջ։ Եթե Թ—Ժ դարերի պատմիչները գիտնական հոգևորականներ էին, որոնք տալիս էին ամբողջ խալիֆայության պատմությունը, որոշ վերաբերմունք ցուցաբերելով պատմական դեպքերի շարադրման ժամանակ, ապա ԺԱ—ԺԳ դարերի պատմիչները մեծ մասամբ աշխարհիկ պալատական տարեգիրներ էին։ Այս պալատական պատմիչները շարադրում էին դեպքերը ըստ տարիների, օգտվելով, իհարկե, արքունի դիվանատների փաստաթղթերից և անձնական ծանոթություններից։ Դեռ Ժ դարում Թաբարին իր պատմական նյութը շարադրել էր ըստ հիջրի թվականության տարիների, իսկ հետագայում ժամանակագրություն գրելու ձևը աստիճանաբար տիրապետող դարձավ պատմագրության մեջ։

ԺԱ դարում հայտնի դեմք էր պարսիկ Իբն Միսքավայհը (պարսկերեն իբն Մուշքույե)։ Ծառայել է Բույիների (Բուվայհիների) արքունիքում (Շիրազում) և մահացել խոր ծերության մեջ 1030 թվականին։ Նրա բազմահատոր «Գիրք ազգերի փորձությանց» (Քիտաբ տաջարիբ ալ-ումամ) ընդհանուր պատմության առաջին մասերը, պարզապես, վերաշարադրանքն են Թաբարիի «Պատմության»։ Սակայն 912/913 թվականից, արդեն, ինքնուրույն է նրա շարադրանքը, և, բնականաբար, այս մասը մեծ նշանակություն ունի, որը հասնում է մինչև 982/983 թվականը։

Միսքավայհից հետո արաբ պատմագրությունը[9] որոշ տնկում ապրեց։ ԺԱ դարում պատմագրության մեջ ոչ մի տիրապետող դեմք հանդես չե-

[8] *Macoudi*. Les prairies d'or, texte et traduction par C. B. de Meynard, I—IX, Paris, 1861—1877.

[9] The Eclipse of the Abbasid Caliphate, H. F. Amedroz and D. S. Margoliouth, ed. and tr., 6 vols, Oxford—London, 1920—1921.

կավ։ Գրվում էին սոսկ տեղական պատմություններ։ Սաալիբին (մեռ. 1038) իր «Պատմության» մեջ տեղեկություններ է տալիս Իրանի մասին։ Նույնը կարելի է ասել նաև Ուտբիի (931—1036) մասին, որի տված տեղեկությունները սահմանափակ են։ ԺԲ դարում կարելի է հիշել Իբն ալ-Ազրակ ալ-Ֆարիկիին, որի «Նփրկերտի Պատմությունը»[10] (Տարիխ Մայյաֆարիկին) կարևոր աղբյուր է Հայաստանի հարավային գավառների պատմության համար։

Սակայն, ըստ էության, արաբ պատմագրությունը զարգանում էր նոր ճյուղեր ստեղծելով։ Դրանք էին մի կողմից, ինչպես տեսանք, ժամանակագրությունը, ապա կենսագրական պատմագրությունը և մյուս կողմից՝ քրիստոնյա արաբ պատմագրությունը։ Հանրագիտական ընդգրկում ունեցող մատենագիր է Բիրունին (973—1048), որից հայտնի է «Արևելյան ազգաց ժամանակագրությունը»։ Այս շրջանում հայտնի է նաև իբն ալ-Կալանիսին իր «Դամասկոսի ժամանակագրությամբ»։

Քրիստոնյա արաբ մատենագրությունը Ժ դարում տվեց մի քանի հայտնի դեմքեր պատմագրության մեջ. որոնցից կարելի է հիշել Մելքիտ եպիսկոպոս Եվտիքիոսին և ղպտի եպիսկոպոս Սևերոս Իբն ալ-Մուկաֆֆային, իսկ ԺԱ դարում Յահիա Անտիոքացուն (Անթաքի)։

* *
*

Այսպիսի վիճակում էր արաբ պատմագրությունը, երբ հանդես եկավ Իզզ ալ-Դին Աբու-լ-Հասան Ալի իբն Մուհամմադ իբն ալ-Ասիրը[11] (1160—1233), որը Ջազիրայի (Վերին Միջագետք) արաբներից էր։ Հակառակ իր ունեցած հռչակին, նրա կենսագրությունը հայտնի է միայն ընդհանուր գծերով։

Նրա հայրը՝ Մուհամմադը, եղել է բարձրաստիճան պաշտոնյա՝ Մոսուլի Զանգիների մոտ։ Նա պաշտոնավարել է Ջազիրատ իբն Օմարում (Մեծ Հայքի Կորճայք նահանգում ), որտեղ և ծնվել է պատմիչը։

Իզզ ալ-Դին Ալին ծնվել է 555 թվականի Ջումադա Ա ամսի 4-ին (12 մայիսի 1160)։ Կյանքի մեծ մասն անց է կացրել Մոսուլում, որտեղ և ուսանել է։ Բազում առիթներով այցելել է Բաղդադ, ընդ որում ուղարկված է եղել նաև Մոսուլի տիրոջ կողմից՝ որոշ հանձնարարություններով։ Բաղդադում նա որոշ ժամանակ ուսում էլ է ստացել։ 28 տարեկան՝ իր եղբոր հետ եղել է խաչակիրների դեմ կռվող այն զորքում, որը գտնվում էր Սալահ ալ-Դինի հրամանատարության տակ։ Հալեբում նա հանդիպել

[10] *Ibn al-Azraq al-Fariqi*, Tarikh al-Fariqi, ed. B. A. L. Awad, Cairo, 1959.

[11] Իբն ալ-Ասիր անունով հայտնի են նաև նրա երկու եղբայրները՝ Մաջդ ալ-Դին և Դիա ալ-Դին, որոնք նույնպես հայտնի դեմքեր են արաբ մատենագրության մեջ։

է նշանավոր մատենագիր Իբն Խալլիքանին, որ հակիրճ հիշում է նրան իր կենսագրական նշանավոր բառարանում։

Իր կյանքի վերջին տարիներին, հիջրի 626—28 (1228—1231) թվականներին պատվավոր հյուր է եղել Հալեբի աթաբեկի մոտ, որոշ ընդմիջումներով այցելելով նաև Դամասկոս։ Հալեբում աշխարհագրագետ Յակուբը մահվանից առաջ խնդրում է Իբն ալ-Ասիրին, որ իր ձեռագրերը փոխադրի Բաղդադի որևէ ապահով հաստատություն։ Իբն ալ-Ասիրը մեռավ 630-ի Շաբան կամ Ռամադան ամսին (մայիս-հունիս 1233)[12]։

Իբն ալ-Ասիրն սկզբում, որոշ ժամանակ զբաղվել է իսլամի առաջին օրերի հայտնի անձնավորությունների կենսագրություններով, սակայն շուտով ամբողջովին նվիրվել է քաղաքական պատմության ուսումնասիրմանը։ Նա ունի Զանգիների (Մոսուլի աթաբեկների) մի համառոտ պատմություն, որի համար օգտվել է իր հորից և իրեն ծանոթ փաստերից։

Սակայն նրա մեծագույն աշխատությունը ընդարձակ «Պատմությունն» է։ Այս բազմահատոր ժամանակագրության մեջ ընդհանուր (Տիեզերական) պատմությունը շարադրված է արարչագործությունից սկսած մինչև հիջրի 628 (1231) թվականը։ Սա կոչվում է «Լիակատար (ամբողջական կամ տիեզերական) պատմություն» (Ալ-Քամալ ֆի-լ-տարիխ)։

Իբն ալ-Ասիրը իր ժամանակագրության համար օգտագործել է իրեն նախորդող արաբական ամբողջ պատմագրությունը, օրինակ, Բալազուրիի և մանավանդ Թաբարիի աշխատությունները, ինչպես նաև Իբն Միսքավայհի, Ուտբիի և այլոց երկերը։ Բանն այն է, որ նա օգտվել է Թաբարիի ընդարձակ (մեզ չհասած) խմբագրությունից։ Նա երբեմն այնքան հարազատորեն է ընդօրինակել Թաբարիին, որ նրա ձեռագրերում եղած կասկածելի ընթերցումները ճշտելու համար հաճախ նկատի են առնվում Թաբարիի համապատասխան տեղերը։

Իբն ալ-Ասիրն օգտագործել է նաև աղբյուրներ, որոնք այժմ կորած են համարվում։ Օրինակ՝ Միջին Ասիայի Սամանիների 261—342 թվականների (հիջրի) պատմության համար նրա աղբյուրն է եղել ալ-Սալլամիի «Խորասանի կառավարիչների պատմությունը»։ Այս վերջինից օգտըվել է նաև ԺԱ դարի պարսիկ մատենագիր Գարդիզին, սակայն Իբն ալ-Ասիրի մոտ այդ տեղեկությունները շատ ավելի մանրամասն են վերցված[13]։

[12] *F. Rosenthal*, Ibn al-Athir, Enc. de l'Islam, Leyde—Paris, nouv ed., III, 1971, p. 746—747.

*C. Brockelmann*, Geschichte der Arabischen Litteratur, I, Weimar, 1898, s. 345—346.

[13] *О. Б. Фролова*, К вопросу об источниках сведений Ибн ал-Асира о правлении Саманидов (X в.) в Средней Азии. Памяти акад. И. Ю. Крачковского, Л., 1958, стр. 36—43.

Նրա պատմության վերջին շրջանի (ԺԱ դարի երկրորդ կես և ԺԲ դար) համար թեև կան արաբական այլ կարևոր աղբյուրներ՝ Իմադ ալ-Դին ալ-Իսֆահանի (1125—1201), որի պատմությունը մեզ հասել է ԺԳ դարի սկզբում Բունդարիի կատարած վերաշարադրանքով, Սադր ալ-Դին ալ-Հուսայնի (1183—1225) և ուրիշներ, այսուհանդերձ Իբն ալ-Ասիրի երկը կենտրոնական տեղ է գրավում։

Պատմիչն իր առաջաբանում բացատրում է, թե ինչու իր պատմական երկը կոչել է «Լիակատար Պատմություն»։ Մինչ այդ, ասում է նա, եղել են պատմության առանձին երկեր, որոնցից ամեն մեկը, ըստ նրա, փոքր հարցեր է քննել և պատմության միայն որոշ կողմերն է բացատրել, իսկ ինքը կամենում է ընթերցողին տալ մի ամբողջական ժողովածու, որի մեջ պատմությունը կատարյալ ձևով է ներկայացված։

Պատմության մեջ Իբն ալ-Ասիրը, նախորդների նման, Աստվածաշնչի նյութերը միաձուլում է Շահնամեի հետ և, այսպիսով, տալիս աշխարհի պատմության մի հետաքրքրական շարադրանք։ Ադամից մինչև Նոյ հասնելուց հետո, տալիս է աշխարհի տարբեր ժողովուրդների առաջացման միջնադարյան պատկերացումը, ընդ որում եբրայական նյութերի կողքին տալով իրանական զրույցները։ Մովսեսի, Դավթի ու Սողոմոնի մանրամասն պատմությունից անցնում է Ալեքսանդր Մակեդոնացուն ու պարսից Արշակունի թագավորներին և վերջապես կանգ առնում քրիստոնեության առաջացման վրա։ Հռոմեական կայսրության պատմությունը շարադրելիս, չի մոռանում նաև քրիստոնյաների կրոնական վեճերը, օրինակ՝ Եփեսոսի ժողովը կամ հակոբիկների (յաակիբա) և երկաբնակների (մելքիտներ) հակամարտությունները և այլն։ Սասանյան Իրանի պատմությունը, բնականաբար, զբաղեցնում է մի խոշոր հատված, ուր հատկապես փայլում է Քիսրա (Խոսրով) Անուշիրվանի կերպարը։

Նախամահմեդական Արաբիայի պատմությունից Եմենի հարավ-արաբական հնագույն զրույցները պատմիչի մոտ փոքր տեղ են զբաղեցնում և հիմնականում խոսվում է հյուսիսային արաբական ցեղերի Ե—Զ դարերում ունեցած նշանավոր ընդհարումների մասին։

Իսլամի դարաշրջանից, արդեն, պատմիչն անցնում է բուն նյութի՝ խալիֆայության պատմության շարադրանքին։

Մի հսկայական բաժին է Մուհամմադ մարգարեին և նրա մասին եղած ավանդություններին հատկացված մասը, որից հետո սկիզբ է առնում արաբական նորակազմ խալիֆայության պատմությունը։ Առանձնապես մանրամասն են նկարագրված արաբների առաջին ճակատամարտերը բյուզանդացիների հետ՝ Պաղեստինում և Ասորիքում։ Խալիֆայության կազմավորման շրջանը բնականաբար հատուկ տեղ է գրավում։ Օմայան Աբդ ալ-Մալիք և Վալիդ խալիֆաների օրոք կազմավորվեց մի հզոր

պետություն (661—750), որի սահմանները տարածվում էին Ինդոսի ափերից մինչև Ատլանտյան օվկիանոս։

Աբբասյանների հզորության (750—861), ինչպես նաև նրանց թուլացման շրջանը (861—945), մեծ տեղ է գրավում Իբն ալ-Ասիրի շարադրանքում։ Դրանից հետո Աբբասյան խալիֆաները խաղալիք էին նախ պարսիկ Բուիների (Բուայհիներ) (945—1055) և ապա, մոտ հարյուր տարի, սելջուկ սուլթանների ձեռքում։

ԺԲ դարի երկրորդ կեսում Աբբասյանները վերածնունդ ապրեցին, որպես անկախ պետություն՝ Իրաքի սահմաններում, մինչև մոնղոլների կողմից վերջնական կործանումը՝ 1258 թվականին։

Դեռևս 754 թվականին Արաբիայի հարավ-արևելքում՝ Օմանում գոյացել էր մի անկախ պետություն, իսկ հեռավոր Իսպանիայում (Անդալուս) 756-ին ջախջախված Օմայանների մի ճյուղը անկախ պետություն հիմնեց։ Անկախ կամ կիսանկախ էին դարձել նաև Հյուսիսային Աֆրիկայի մի շարք երկրներ։ Սակայն Աբբասյանների թուլացման շրջանի հենց սկզբին՝ 860-ական թվականներին էր, որ խալիֆայության ընդարձակ տարածքը ծածկվեց անկախ պետությունների մի ամբողջ ցանցով, որոնց մանրամասն պատմությունը շարադրում է մեր պատմիչը։

Այսպես, Իսպանիայում կազմավորված Օմայանների ամիրությունը 929 թվականին դարձավ խալիֆայություն և գոյատևեց մինչև 1031 թվականը, երբ երկիրը տրոհվեց մանր ամիրությունների։

Հյուսիսային Աֆրիկայում գոյացան արաբաբերբերական պետություններ, ինչպես՝ այժմյան Մարոկկոյում՝ Իդրիսիների (788—985), Ալժիրում՝ Ռոստեմիների (776—909) պետությունները։ Իսկ Թունիսում Աղլաբիները (800—909) ինքնուրույն դարձան, միայն ձևականորեն ենթակա մնալով Աբբասյաններին։ 909-ին Թունիսում կազմավորված Ֆաթիմյան պետությունն իր տիրապետությունը տարածեց ամբողջ Հյուսիսային Աֆրիկայի վրա, սակայն, նրա կենտրոնը 969 թվականին Եգիպտոս փոխադրվելուց հետո, հին տիրույթները աստիճանաբար անջատվեցին։ Այսպես, Ալմորավիդները (ալ-մուրաբիթներ) իշխեցին Մարոկկոյում (ԺԱ դարի կեսից 1146), Զիբիները (969—1015), Համմադիները (1015—1152) Ալժիրում, իսկ նույն Զիրիները Թունիսում ավելի երկար իշխեցին (973—1160)։ Ապա Ալմոհադները (ալ-մուահհիդներ) իրենց իշխանության տակ միավորեցին ամբողջ Հյուսիսային Աֆրիկան՝ ԺԲ դարի կեսերից մինչև 1269։

Իբն ալ-Ասիրը հատուկ ուշադրություն է դարձնում Եգիպտոսում իրար հաջորդած Թուլունիների (868—905), Իխշիդիների (935—969) և Ֆաթիմիների (Ֆաթիմյաններ 969—1171) պետությունների պատմությանը։ Ֆաթիմյանների իշխանությունը թեև աստիճանաբար թուլացավ Հյուսի-

*սային Աֆրիկայում, այսուհանդերձ տարածվեց ու ամրապնդվեց Պաղեստինում, Սիրիայում և Արաբիայի որոշ մասերում։*

*Խայտաբղետ էր քաղաքական պատկերը նաև Ասորիքում ու Վերին Միջագետքում։ Սիրիայում Թուլունիների իշխանության վերացումից հետո առաջացան Համդանիների Հալեբի ճյուղի (945—1004) և ապա Միրդասիների (1023—1079) ամիրությունները։ Վերին Միջագետքում (Մոսուլ կենտրոնով) գոյացան Համդանիների (905—991) և ապա Ուկայլիների (990—1096) ամիրությունները, իսկ կենտրոնական Իրաքում (Հիլլա կենտրոնով) իշխեցին Մազիադիները (961—1150)։*

*Իրանը թեև Թ—ԺԱ դարերում դարձավ ամբողջովին անկախ երկիր, սակայն երբեք չմիավորվեց մեկ պետության մեջ։ Իրանի Խորասան մեծ նահանգում և միջինասիական Մավերաննահրում (Մա վարա ալ-Նահր) գոյացան Թահիրիների (823—873), (որը ձևականորեն ենթակա էր Աբբասյաններին), ապա Սաֆֆարիների (867—900) պետությունները և մանավանդ Սամանիների մեծ տերությունը (819—999)։ Արևմտյան Իրանում՝ Թաբարիստանում Ալիականները (864—928) և Զիարիները (927—1042) Վրկանում (Ջուրջան) կազմեցին անկախ ամիրություններ։ Հատկապես հիշատակության արժանի է Բուիների կամ Բուայհիների տերությունը (935—1055) Շիրազ կենտրոնով, որն իրեն ենթարկեց նույնիսկ Աբբասյաններին։ Ռեյի շրջանում գոյացել էր նաև Կակուիների (Կակավայհ 1008—1051) ամիրությունը։*

*Այսպիսի քաղաքական պատկեր ուներ մահմեդական աշխարհը ԺԱ դարում, երբ Միջին Ասիայից հարավ և արևմուտք հոսեցին սելջուկյան հրոսակները։ Հրով ու սրով կատարված նվաճումների շնորհիվ կազմավորված նրանց պետությունը շուտով քայքայվեց հազիվ կես դար գոյություն ունենալուց հետո։ Ըստ էության երբեք չի եղել միացյալ սելջուկյան պետություն, այլ սկզբից եղել են չորս միավորներ, որոնց գլխավորում էին սելջուկյան տոհմի տարբեր ներկայացուցիչներ։ Դրանք էին՝ բուն սելջուկյան պետությունը (1038—1118), Քիրմանի սուլթանությունը (1041—1187), Սիրիայի սելջուկյան պետությունը (1074—1117) և Իկոնիայի (Ռումի) սուլթանությունը (1077—1307)։ Բուն սելջուկյան պետությունը Մելիքշահի (1072—1092) մահվանից հետո, արդեն գոյություն չուներ որպես միաձույլ պետություն և պաշտոնապես երկու մասի բաժանվեց 1118-ին։ Այս տերությունների քայքայումից ծնվեցին մի շարք նոր պետություններ ու ամիրություններ։*

*Վերին Միջագետքում կազմավորվեց Արտուխյանների ամիրությունն իր երկու ճյուղերով՝ Ամիդի ու Հիսն-Քեյֆի (1098—1232) և Նփրկերտի ու Մարդինի (1104—1408), իսկ Մոսուլում գոյացավ Զանդիների պետությու-*

նը (1127—1222), որն ունեցավ իր ճյուղավորումը Դամասկոսում ու Հալեբում (1146—1181)։

Այս վերջինիս օժանդակությամբ, սելջուկների հարվածներից թուլացած, Ֆաթիմյան խալիֆայությունը կործանվեց և իշխանության գլուխ անցավ Սալահ ալ-Դինը, որը հիմնեց Այյուբյան տոհմի տիրապետությունը Եգիպտոսում և այլ երկրներում (1171—1250)։ Սալահ ալ-Դինի մահվանից հետո այս պետությունը տրոհվեց մի քանի միավորների, որոնցից էին Դամասկոսի (1186—1260), Հալեբի (1183—1260) և Դիարբեքրի (Դիար Բաքր) (1185—1260) ճյուղերը։

Փոքր Հայքում և այլ շրջաններում առաջացավ Դանիշմանյանների ամիրությունը, որն ունեցավ երկու ճյուղ՝ Սեբաստիայի (1071—1174) և Մալաթիայի (1142—1178)։

Իրանը, նույնպես, ծածկվեց առանձին ամիրությունների ցանցով։ Արևմտյան Իրանում կազմավորվեցին Ատրպատականի Ելտկուզյանների (Իլգիվիզ) (1137—1225), Ֆարսի Սալղուրիների (1148—1287) և Լուրիստանի Հազարասպիների աթաբեկությունները։ Իրանի հյուսիսում, Էլբրուսի լեռների շրջանում, Ալամութ բերդի շուրջը ամրացավ իսմայիլական ասասինների մանր պետությունը (1090—1256), որն իր ճյուղավորումն ուներ Սիրիայում (1100—1273)։ Միջին Ասիայում ծնունդ առավ Խորեզմշահերի պետությունը (1077—1220), որն Իրանում մեծ նվաճումներ կատարեց, հասնելով մինչև Իրաքի սահմանները։ Իրանի հարավարևելյան մասում դեռ իր գոյությունը պահպանում էր Ղազնևիների պետությունը (977—1186)։

Ահա այսպիսի վիճակում էին Արևելքի մահմեդական երկրները, երբ անցնելով Միջին Ասիայի վրայով, մոնղոլները (թաթարները) ողողեցին Իրանը, Հայաստանը և այլ երկրներ։

Իբն ալ-Ասիրի հիմնական նպատակն է իր «Լիակատար Պատմության» մեջ շարադրել միայն մահմեդական պետությունների պատմությունը, իսկ ոչ մահմեդական երկրների մասին պատմում է այնքան, ինչքան դա կառընչվի մահմեդական աշխարհին։

Ահա այսպիսի բնույթ ունեն նաև Հայաստանի մասին նրա հաղորդած տվյալները։ Երբ խոսում է արաբական տիրապետության շրջանի կամ Հայաստանում հաստատված սելջուկյան ամիրությունների մասին, պատմում է թե՛ պատերազմների, թե՛ ներքին կյանքի մասին, իսկ Է դարի Հայոց իշխանապետության, Բագրատունյաց թագավորության, Զաքարյան իշխանապետության և Կիլիկիայի հայկական պետության մասին խոսելիս, նրան հետաքրքրում է միայն նրանց հարաբերությունները մահմեդական պետությունների հետ, բայց ո՛չ ներքին կյանքը։

* *
*

Իբն ալ-Ասիրի տեղեկությունները Հայաստանի և հայերի մասին հարուստ են և վերաբերում են մի քանի ժամանակաշրջանների։

Առաջին տեղեկությունները վերաբերում են Սասանյան Իրանի արքաների՝ Հայաստան կատարած արշավանքներին։ Այսպես, հիշվում է, թե Արտաշիր Ա (226—239) արշավում է Հայաստան և իբր նվաճում է երկիրը։ Այս տեղեկությունը վերաբերում է Հայոց Տրդատ Բ (216—252/253) Արշակունի արքայի օրոք տեղի ունեցած հայ-իրանական պատերազմներին, երբ Հայաստանը հանդես էր գալիս որպես Հռոմի դաշնակից[14]։ Ապա պատմվում է, թե ինչպես Խոսրով Ա Անուշիրվանը (531—579) Ծորա պահակում ամրություններ է կառուցել, այնտեղ բնակեցնելով Սիսականցիներին (Սիասիջին)։

Սակայն Իբն ալ-Ասիրի՝ Հայաստանի մասին առաջին ստույգ տեղեկությունները վերաբերում են է դարին։

է դարի երեսնական թվականներին, երբ նորակազմ արաբական խալիֆայությունը ջախջախել էր Սասանյան Իրանը և թուլացրել Բյուզանդական կայսրությունը, Հայաստանը կարողացավ ինքնուրույն քաղաքական գոյավիճակ ձեռք բերել։ Հայոց իշխանապետությունը 639 թվականից ընդգրկում էր ամբողջ Հայաստանը, նախկին բյուզանդական և պարսկական մասերով։ Հայոց իշխան Թեոդորոս Ռշտունին ձգտում էր վերացնել երկրում տիրող մասնատվածությունը, սակայն հենց այդ ժամանակ Հայաստանի հարավային մասերում հայտնվեցին արաբական առաջին զորախմբերը։

Արաբ զորավար Իյադ իբն Ղանմը 17 հիջրի (638—639) թվականին, Վերին Միջագետքը նվաճելուց հետո, մտավ նաև Հայաստան։ Աղձնիքի քաղաքները (Նփրկերտ, Բաղեշ, Արզն) գրավելուց հետո արաբական զորքն անցավ լեռնանցքը (Ձորա պահակ) և գրավեց Խլաթը և այլ վայրեր։ Հաբիբ իբն Մասլամա զորավարը 25 հիջրի (645—646) թվականին նվաճեց Հայաստանը և Վիրքը, իսկ Սալման իբն Ռաբիան միաժամանակ նվաճեց Հայաստանի Արցախ և Ուտիք նահանգները, Աղվանքը և մերձկասպյան գավառները՝ մինչև Դերբենդ (Բաբ ալ-Աբուաբ)։ Սա Հաբիբ իբն Մասլամայի 654 թվականին կատարած արշավանքն է, որը արաբ պատմիչների մոտ հիշվում է 644 թվականին, շփոթելով Հաբիբի Չորրորդ Հայք կատարած արշավանքի հետ[15]։

Թեև արաբ պատմագրությունը է դարի կեսերից Հայաստանը համա-

[14] Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հ. Բ, մաս Ա, էջ 73—80։
[15] *А. Тер-Гевондян*, Армения и арабский халифат, стр. 29—30.

րում է նվաճված երկիր, այսուհանդերձ իրականում վերոհիշյալ նվաճումը ժամանակավոր բնույթ ուներ և Հայաստանը Է դարի երկրորդ կեսում մնում էր մի ինքնուրույն իշխանապետություն։ Հենց այդ պատճառով էլ Հայաստանի Է դարի պատմության մասին արաբ պատմիչների տեղեկությունները կցկտուր են։

73 հիջրի (692—693) թվականին, արդեն, սկսվում է վերջնական պայքարը Հայաստանի և դրացի երկրների նվաճման համար, Աբդ ալ-Մալիք (685—705) խալիֆայի եղբոր՝ Մուհամմադ իբն Մրվանի, հրամանատարության տակ։ Վերջինս այդ տարվանից համարվում էր Արմինիայի (Հայաստան, Վիրք, Աղվանք, մերձկասպյան գավառներ, Դերբենդ), Ատրպատականի ու Ջազիրայի փոխարքա։ Հայաստանի նվաճումն արաբների կողմից ավարտվեց 82 հիջրի (701—702) թվականին, որից անմիջապես հետո Հայաստանում ծագեց 703 թվականի ապստամբությունը և հայերն սպանեցին Արմինիայի առաջին ոստիկանին։

Սկսած Ը դարի սկզբից մինչև Թ դարի երկրորդ կեսը, Իբն ալ-Ասիրը հաճախակի է հիշում արաբական տիրապետության տակ գտնվող Հայաստանի քաղաքական անցուդարձերը։ Մանրամասն նկարագրված են արաբական խալիֆայության պատերազմները Բյուզանդական կայսրության հետ, որոնց թատերաբեմը հիմնականում Փոքր Հայքն ու Կիլիկիան էին[16]։ Արաբական զորքերը Փոքր Ասիան բազմիցս ասպատակելուց հետո, 98 հիջրի (716—717) թվականին հասան Կ. Պոլիս ու պաշարեցին։ Վերջապես, Իսավրյան կայսերական տոհմի հիմնադիր Լևոն Գ-ն (717—740) կարողացավ հակահարված տալ արաբներին և ստեղծվեց մի իրավիճակ, երբ սարակինոսներն ու բյուզանդացիները փոխնիփոխ ասպատակում էին մեկը մյուսի հողերը։ Արաբները Կիլիկիայում և Փոքր Հայքում ունեին սահմանային երկու շրջաններ (սուղուր), որտեղից սկիզբ էին առնում Փոքր Ասիա ուղղված արշավանքները։

Կատաղի էր նաև գոտեմարտը խազարական վայրագ ցեղերի հետ, որի հիմնական հենակետը արաբների համար Դերբենդն էր (Բաբ ալ-Աբուաբ) իր հինավուրց ամրություններով։ 112 հիջրի (730—731) թվականին խազարները խորացել էին Շիրվան, Հայաստան և Ատրպատական, և միայն մեծ դժվարությամբ արաբներին հաջողվեց նրանց ետ մղել Դերբենդից այն կողմ։ Շուտով Արմինիայի, Ատրպատականի ու Ջազիրայի փոխարքա նշանակվեց Մրվան իբն Մուհամմադը, որը 119 հիջրի (737) թվականին մեծ արշավանք կատարեց խազարների դեմ։ Սրան մասնակցեց նաև Հայոց այրուձին՝ Հայոց իշխան և սպարապետ Աշոտ Բագրատունու գլխավորությամբ։ Խալիֆայության զորքերը հալածեցին պարտ-

[16] *E. Honigmann.* Thughur, Encyclopaedia of Islam. London—Leyden, IV, p. 738—739.

ված խազարներին մինչև Վոլգայի գետաբերանը, և խաքանը հպատակություն հայտնեց (ժամանակավորապես) խալիֆայությանը[17]։

Մրվանը շուտով դարձավ խալիֆա (744—750), սակայն Աբբասյանները խլեցին իշխանությունը Օմայաններից։ Վերջիններիս դեմ 747-ին ծագած ապստամբության ժամանակ ընդվզեց նաև Հայաստանը, սակայն ինչպես արաբ այլ պատմիչները, Իբն ալ-Ասիրը, նույնպես, ուղղակիորեն չի խոսում այդ մասին։

Աբբասյանները շարունակեցին պայքարը Բյուզանդիայի և խազարների դեմ։ 133 հիջրի (750—751) թվականին Ռումի (Բյուզանդիայի) թագավոր Կոստանդին Ե-ն (741—775) գրավեց Մալաթիան (Մելիտինե) և ապա Կարնո քաղաքը (Կալիկալա), որի գրավման ժամանակ հարձակվող բյուզանդական զորքերի հրամանատարն էր հայազգի Գուսանը (Քուշան ալ-Արմանի)։ Քաղաքը գրավվեց բնակիչներից երկու հայ եղբայրների օգնության շնորհիվ։ 164 հիջրի (780—781) թվականին, արաբների հարձակման ժամանակ, նրանց դեմ պայքարի ելնող բյուզանդական 90 հազարանոց զորքի հրամանատարներն էին, ըստ Իբն ալ-Ասիրի, Միքայել պատրիկը և հայազգի Տաճատ պատրիկը (Թազադ ալ-Արմանի ալ-բաթրիկ), այսինքն Տաճատ Անձևացին, որը հետագայում անցավ արաբների կողմը. վերադարձավ իր ծննդավայրը և դարձավ Հայոց իշխան։

Արաբների հարձակումները Բյուզանդիայի դեմ ընթանում էին Դրունք Կիլիկիո կոչված լեռնանցքով (Տավրոսյան լեռնաշղթայի վրա), որտեղից ուղղվում էին դեպի Հերակլիա և Տիանա քաղաքները, ինչպես նաև Հառասի կողմից դեպի Կապադովկիա։ Բյուզանդիայի դեմ պայքարի հենարան ստեղծելու և Հայաստանը զսպված պահելու նպատակով Հարուն ալ-Ռաշիդ խալիֆան (786—809) Հայաստան գաղթեցրեց արաբական ցեղերի, որոնք հաստատվեցին հարավարևմտյան գավառներում[18]։

Մամուն խալիֆայի (813—833) օրոք քաղաքական դրությունը շիկացած էր։ Մի կողմից ուժեղացել էր պայքարը Բյուզանդիայի դեմ, որի ընթացքում էլ, ի վերջո, նա մեռավ Կիլիկիայում, իսկ մյուս կողմից 816-ին Ատրպատականում սկիզբ առավ Խուռամյան ապստամբությունը։ Թարարիից օգտվելով, Իբն ալ-Ասիրը մանրամասնորեն նկարագրում է խալիֆայության ուժերի պայքարը ապստամբների դեմ, ընդհուպ մինչև նրա ճնշումը 837 թվականին։ Հայաստան ապաստանած Բաբեկին ձերբակալեցին Արցախի իշխան Սահլ Սմբատյանի (Սահլ Իբն Սինբաթ ալ-Արմանի) տիրույթներում։

---

[17] *М. И. Артамонов*, История хазар, стр. 218—225.

[18] Ա. Տեր-Ղևոնդյան. *Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում*, էջ 58—66։

Ատրպատականում Խուռամյան շարժման ճնշումից անմիջապես հետո, Մուտասիմ խալիֆան (833—842) մեծ արշավանք կազմակերպեց Բյուզանդիայի դեմ, որը Բաբեկի դաշնակիցն էր։ 838 թվականին Մուտասիմը գրավեց Ամորիոնը և մեծ վնասներ հասցրեց։ Բյուզանդիայի դեմ պայքարում աչքի ընկավ հայազգի Ալի իբն Յահիա ալ-Արմանին, որը եղել է նաև Արմինիայի ոստիկան։

Հայաստանում խալիֆայության դեմ ծագած ապստամբություններից համեմատաբար մանրամասն արաբ պատմիչները նկարագրում են 850—852 թվականների հուժկու շարժումը։ Դարձյալ Թաբարիից քաղելով, Իբն ալ-Ասիրը հիշատակում է ամբողջ Արմինիայի պատրիկների պատրիկ Բագարատ Բագրատունու (Բակրաթ իբն Աշութ) ձգտումը Արմինիայի ոստիկան դառնալու և նրա չարանենգ ձերբակալումը Յուսուֆ ոստիկանի կողմից, խութեցի լեռնականների ընդվզումը, Յուսուֆի սպանությունն ու նրա զորքի կոտորվելը։

237 հիջրի (851—852) թվականին Բուղան մեծ զորքով մտավ Հայաստան, գերի վերցրեց Վասպուրականի տեր Աշոտ Արծրունուն, սակայն Արցախի Գտիչ (Քթիշ) ամրոցի առջև անհաջողություն ունեցավ։ Ըստ Իբն ալ-Ասիրի նա գրավեց բերդը և գերի տարավ Իսա (Եսայի) իշխանին։

Թ դարի 60-ական թվականներին իրադրությունը փոխվեց արաբաբյուզանդական սահմանային գոտում՝ հօգուտ Բյուզանդիայի։ Մինչ այդ Պավլիկյան համայնքը արաբների հետ դաշնակցած կռվում էր Բյուզանդիայի դեմ, նրանց առաջնորդ Կարբեասը (Կարբիաս) մասնակցում էր Մալաթիայի ամիրի արշավանքներին։ Մակեդոնական (հայկական) հարստության հիմնադիր Վասիլ Ա (867—886) կայսեր օրոք բյուզանդական զորքերը[19] համարձակասպատակում էին Կիլիկիայի և Փոքր Հայքի արաբական ամրությունները։ Արաբների դեմ պայքարում աչքի ընկավ հայազգի Մլեհ (Մալիհ ալ-Արմանի) զորավարը։

Աբբասյան խալիֆայության թուլացումից օգտվեց նաև Հայաստանը։ Թ դարի ութսունական թվականներից, արդեն, արաբ ոստիկաններ չէին գալիս Հայաստան։ Վերջին ոստիկանները՝ Իսհակ իբն Քունդաջիկը և Իսա իբն Շայխը․ հիշվում են 266 հիջրի (879—880) և 269 հիջրի (882—883) թվականների տակ։ Սրանով վերջանում են արաբական տիրապետության ժամանակաշրջանի մասին տեղեկությունները և սկսվում է Բագրատունյաց ժամանակաշրջանի դեպքերի շարադրանքը, որը համեմատաբար հակիրճ է։

Իբն ալ-Ասիրը չի հիշատակում Հայոց թագավորության վերականգնումը Աշոտ Ա-ի օրոք, սակայն խոսում է նրա դեմ Աբբասյանների ձեռ-

[19] *A. Vasiliev*, Byzance et les Arabes, t. II, Ire partie, La dynastie Macedonienne, Bruxelles, 1968, p. 32—47.

*նարկած հակահարվածի մասին։ 885-ին Մուտամիդ խալիֆան (870—892) թագ էր ուղարկել Աշոտ Ա-ին, իսկ 90-ական թվականներին Մուտադիդ խալիֆան (892—902) Ատրպատականի կառավարիչ Սաջյան Աֆշինին համարեց Ատրպատականի ու Արմինիայի կառավարիչ (մինչդեռ Արմինիա նահանգն այլևս գոյություն չուներ), որով սրեց հարաբերությունները Հայոց Բագրատունի թագավորների ու Սաջյանների միջև։*

*894 թվականին տեղի ունեցավ Դվինի մեծ երկրաշարժը, որի նկարագրությունը լրացնում է Հովհաննես Դրասխանակերտցու[20] ու Թովմա Արծրունու[21] տեղեկությունները այդ ողբերգական դեպքի մասին։*

*Ինչքան ուժեղանում էր Բյուզանդիայի պայքարը խալիֆայության դեմ, այնքան պատերազմի թատերաբեմը մոտենում էր Հայաստանին։ Բյուզանդացիները ամեն կերպ ձգտում էին ներթափանցել Կիլիկիա և Փոքր Հայք, հաճախակի հարձակումներ գործելով Տարսոնի ու Մալաթիայի դեմ։*

*315 հիջրի (927—928) թվականին գոմեստիկոսը (դումուստուկ), այսինքն Հովհան Կուրկուաս զորավարն իր հարձակումները հասցրեց մինչև Դվին։ Քաղաքում գտնվող մահմեդական զորքերը գիմադրեցին։ Հաջորդ տարի 316 հիջրի (928—929) թվականին գոմեստիկոսը գրավեց Խլաթ և Բաղեշ քաղաքները, սակայն վերադարձավ։*

*319 հիջրի (931—932) թվականին արաբները հակահարված տվեցին բյուզանգացիներին և Տարսոնի կողմից ներխուժելով Փոքր Ասիա, հասան Ամորիոն։ Նույն տարում Վասպուրականի տիրակալ Դերենիկի որդու (Իբն ալ-Դայրանի), այսինքն՝ Գագիկ Արծրունու դրդումով, բյուզանդացիք հարձակվեցին[22], գրավեցին Խլաթն ու Բերկրին, իսկ Ատրպատականի կառավարիչ Մուֆլիհը, որպես պատասխան, ասպատակեց Վասպուրականը։*

*Վերջապես, գոմեստիկոս Կուրկուասը (Կուրկաշ) 934 թվականին նվաճեց Մալաթիան, որի մահմեդական բնակիչների մի մասն ընդունեց քրիստոնեություն, իսկ մնացածները հեռացան։*

*Թեպետ Աշոտ Բ Երկաթ թագավորը (914—929) Հայաստանից վերջնականապես վտարել էր Ատրպատականից եկող հրոսակներին, այսուհանդերձ ժամանակ առ ժամանակ լինում էին ասպատակություններ։ 326 հիջրի (937—938) թվականին Լաշքարի անունով մի արկածախնդիր Ատրպատականից ներխուժեց Հայաստան՝ Անձևացիք (ազ-Զավազան) գավառի կողմից, որի իշխան հայազգի Ատոմը (Աթում ալ-Արմանի), այսինքն Անձևացյաց իշխան Գուրգենի որդի Ատոմը, նախ հաշտություն*

---

[20] «Պատմութիւն Յովհաննու կաթողիկոսի», Երուսաղեմ, 1867, էջ 204—205։

[21] «Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց», Ս. Պետերբուրգ, 1887, էջ 230—231։

[22] *A. Vasiliev*, Byzance et les Arabes, t. II, I partie, p. 263—264.

առաջարկեց նրան, սակայն տեսնելով, որ ավազակից ազատվելու այլ միջոց չկա, մի նեղ կիրճում կոտորեց նրա զորքը և նրան էլ սպանեց։

Խալիֆայության ուժերը վերջին հակահարվածը տվեցին Բյուզանդիային 940—50-ական թվականներին, երբ Վերին Միջագետքում ու Աղձնիքում հաստատված Համդանյան Սայֆ ալ-Դաուլան մի շարք արշավանքներ կատարեց Կիլիկիայում ու Փոքր Հայքում։ Այդ արշավանքների ժամանակ ներխուժեց նաև Հայաստանի հարավարևմտյան գավառները և որոշ բերդեր նվաճեց։ Սակայն 967 թվականին՝ նրա մահվանից հետո, արաբները հիմնականում պաշտպանվում էին կամ նահանջում։

Բյուզանդացիք 359 հիջրի (969—970) թվականին ժամանակավորապես նվաճեցին Մանազկերտը, հարձակումներ գործեցին Ամիդ, Նփրկերտ, Բաղեշ քաղաքների վրա։ Մյուս կողմից առաջ էին շարժվում Շիրազի ու Միջագետքի տեր Բուայհիները, որոնք նվաճեցին վերոհիշյալ քաղաքները։ Ժ դարին վերաբերող վերջին դեպքը, որ հիշատակում է Իբն ալ-Ասիրը, բյուզանդացիների կողմից Մանազկերտի ու Արճեշի գրավումն է՝ 382 հիջրի (992—993) թվականին։

Սրանից հետո Իբն ալ-Ասիրի՝ Հայաստանի մասին տված տեղեկությունները քառասուն տարով ընդհատվում են։ Չէ՞ որ նա Հայաստանի պատմության այն դեպքերն է նշում, որոնք առնչվում են մահմեդական աշխարհին, իսկ Հայաստանը այս քառասնամյա շրջանում լրիվ կտրվել էր խալիֆայությունից։ Հայաստանում իշխում էր հզոր արքա Գագիկ Ա-ն (990—1020), որն ամրապնդեց Հայոց թագավորության միասնականությունը[23]։ Մյուս կողմից՝ Հայաստանի հարավարևմտյան գավառներն ընկել էին բյուզանդական ազդեցության տակ և ոչ մի մահմեդական պետություն ուժ չուներ ներխուժելու Հայաստան։

Սակայն սելջուկյան (օղուզ-թուրքմենական) բարբարոս հրոսակների Իրան, Հայաստան և արևելյան այլ երկրներ կատարած արշավանքները կանգնեցրին Առաջավոր Ասիայի զարգացման բնականոն ընթացքը։ Նրանք հրով և սրով ավերակ դարձրին ոչ միայն քրիստոնյա, այլև մահմեդական երկրները։ Իբն ալ-Ասիրը նկարագրում է, թե ինչպես 420 հիջրի (1029—1030) թվականին օղուզ-թուրքմենները Ատրպատականում «անմիջապես անցան չարագործության, ապականության, սպանության և կողոպուտի։ Գնացին Մարաղա, վառեցին մզկիթը, անխնա կոտորեցին հասարակ ժողովրդին»։

Այսուհանդերձ, կրոնական մոլեռանդությունը ստիպում է ներողամտությամբ անցնել այս փաստերի կողքով և Իբն ալ-Ասիրը համակրանքով

---

[23] «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական», Ս. Պետերբուրգ, 1885, էջ 255—257։

է նկարագրում սելջուկ սուլթանների գործունեությունը։ Վերջիններս նենգորեն շահագործում էին կրոնական մոլեռանդությունը՝ ոգևորելու մահմեդական ժողովուրդներին (արաբներ, պարսիկներ և այլն) սրբազան պայքարի (ջիհադ) դուրս գալու այլակրոնների դեմ։ Բյուզանդիայի առաջխաղացման հետևանքով մահմեդական երկրներում առաջացած խուճապը սելջուկները ճարպկորեն օգտագործեցին իրենց նպատակների իրականացման համար, իրենց հայտարարելով սուննի (ուղղափառ) մահմեդականության պաշտպաններ, որոնք գալիս էին վրեժ լուծելու ոչ միայն այլակրոն քրիստոնյաներից (Բյուզանդիա, Հայաստան), այլև մահմեդական աշխարհն ազատելու Բուի (Բուվայհի) և Ֆաթիմյան շիայական՝ հերետիկոս պետություններից։

Նման իրադրության մեջ Բյուզանդիան[24], որ խաբեությամբ ու նենգությամբ կործանել էր Բագրատունյաց թագավորությունը 1045 թվականին, անպաշտպան էր թողել Հայաստանի իր գրաված մասերը։ Իսկ Հայաստանի անկախ մնացած քաղաքական միավորները (Տաշիր-Ձորագետի, Կարսի, Սյունյաց թագավորությունները, Արցախի մեծ իշխանությունը) հազիվ ի վիճակի էին մեկուսացած վիճակում իրենց գոյությունը պահպանել։

Թշնամու ասպատակություններին ենթակա էր հատկապես Հարավային Հայաստանը՝ Վասպուրականն ու Տարոնը։ Սակայն այդ նահանգներում գոյություն ունեցող հայկական իշխանություններն իրենց ձեռքը վերցրին երկրի պաշտպանության գործը, որի մի փայլուն օրինակը նկարագրում է Իբն ալ-Ասիրը, թեև դա Բագրատունյաց թագավորության կործանումից առաջ էր տեղի ունեցել։ 427 հիջրի (1035—1036) թվականին Ատրպատականից, Խորասանից խաժամուժ մի ամբոխ, Մեքքա ուխտագնացության ճանապարհվելու անվան տակ, մտնում է Հայաստան (թեև Հայաստանը բոլորովին էլ Մեքքայի ճանապարհի վրա չէր), անցնում Անի, Խլաթ, Ոստան քաղաքներով, և թեև պատմիչը չի հիշատակում, թե ինչով էին նրանք զբաղված, սակայն ավելացնում է, թե այդ կողմերի հայերն ընդվզեցին նրանց դեմ։ Վերջիններիս օգնության հասան սասունցիք, որոնք կոտորեցին ու գերեվարեցին այս «ուխտավորներին»։ Վերջապես, Աղձնիքի Մրվանյան ամիրի միջնորդությամբ Սասունի թագավորը (մալիք ալ-Սանասինա), որը հավանաբար Սասունի Թոռնիկ իշխանն էր, բաց է թողնում գերիներին։

Մի քանի ասպատակություններ կատարելուց հետո, օղուզ-թուրքմենները 440 հիջրի (1048—1049) թվականին առաջին մեծ արշավանքը կատարեցին Հայաստան, հասան Մանազկերտ ու Կարնո քաղաք։ Բյու-

---

[24] «Պատմութիւն Արիստակիսի Լաստիվերտցւոյ», Երևան, 1963, էջ 61—63։

զանդական զորքի հետ ունեցած ճակատամարտից[25] (Կապուտրուի մոտ) հետո նրանք մեծ ավար վերցրին, կողոպտելով շրջակա գավառները։

Թուղրիլ բեկը անձամբ գլխավորեց 446 հիջրի (1054—1055) թվականի արշավանքը Հայաստան, սակայն անհաջողության հասավ թե՛ Կարսի մոտ, թե՛, մանավանդ, Մանազկերտը պաշարելիս, որի պատնեշները, նույնիսկ, ծաղրի ենթարկեցին նրան։ Իբն ալ-Ասիրը հիշատակում է Մանազկերտի պաշարումը՝ նշելով միայն, թե քաղաքն անառիկ էր։

Մանրամասն նկարագրված է Այրարատի գավառների և, մանավանդ, Անի մայրաքաղաքի նվաճումը 456 հիջրի (1063—1064) թվականին, Ալփարսլանի կողմից։ Կողոպուտի ծարավ օղուզ զորավարները համոզել էին նրան անպայման ասպատակել այս հարուստ շրջանները։ Մի շարք ամրացված քաղաքներ գրավելուց հետո, սելջուկյան զորքերը կանգ առան Անիի պարիսպների առջև։ Ամրակուռ պարիսպներով շրջապատված քաղաքը որոշ ժամանակ պաշարելուց հետո, ըստ մեր պատմիչի, «մահմեդականները գրավելուց հուսահատվեցին, երբ տեսան, թե ինչ անառիկ է»։ Սակայն քաղաքի ներսում առաջացած խուճապը, որն արդյունք էր կայազորի հրամանատարների ապիկարության, հնարավորություն տվեց արդեն հուսահատված պաշարողներին քանդել պարիսպը և ներխուժել քաղաք։ Պատմիչը պարիսպների քանդվելը վերագրում է նախախնամության կողմից կատարված հրաշքի։

Հետաքրքրական են Մանազկերտի ճակատամարտի[26] մասին (1071) Իբն ալ-Ասիրի հաղորդած տվյալները։ Ռոմանոս (Արմանուս) կայսրը դուրս էր եկել երկու հարյուր հազար զորքով, իսկ Ալփարսլանն ուներ տասնհինգ հազար։ Վերջինս, հաղթանակի հույս չունենալով, հաշտություն խնդրեց, բայց Ռոմանոս կայսրը կտրուկ կերպով մերժեց։

Արևելքի պատմության մեջ շրջադարձային նշանակություն ունեցող այս ճակատամարտի աղետալի ելքը որոշեց բյուզանդական խայտաբղետ բանակի ներսում բույն դրած դավաճանությունը, որի հետևանքով խուճապ առաջացավ և հաղթանակը մնաց թշնամուն։

Մանազկերտի պարտությունը վճռեց Բյուզանդիայի, ինչպես նաև Հայաստանի և արևելյան ուրիշ քաղաքակիրթ երկրների բախտը[27]։ Ատրպատականում, Շիրվանում, Մեծ Հայքի որոշ մասերում և ամբողջ Փոքր Ասիայում վաչկատուն վայրագ ցեղերի հաստատման հետևանքով տեղի ունեցավ քաղաքական, տնտեսական ու մշակութային կյանքի քայքայում, և երկար դարերի ընթացքում այդ ցեղերը աստիճանաբար յուրացրին վերոհիշյալ հողերը։

[25] Հ. Մանանդյան, նշվ. աշխ., հ. Գ, էջ 39—43։

[26] Ս. Բոռնազյան, Հայաստանը և սելջուկները, Երևան, 1980, էջ 95—118։

[27] Հ. Մանանդյան, նշվ. աշխ., հ. Գ, էջ 65։

Սելջուկյան պետությունը, ինչպես նշվեց, արագ քայքայվեց։ Մելիքշահի (1072—1092) մահվանից հետո, արդեն ըստ էության այդ պետությունը քայքայված էր, իսկ 1118 թվականին պաշտոնապես երկատվեց։

ԺԲ դարում Հայաստանում իշխում էր լիակատար մասնատվածությունը։ Երկրի որոշ մասերում իշխում էին Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանից մնացած թագավորություններն ու իշխանությունները (Տաշիր-Ձորագետ, Սյունիք, Արցախ, Վասպուրական, Սասուն և այլն), իսկ այլ մասերում բռնացել էին մահմեդական ամիրությունները (Խլաթում, Նփրկերտում, Կարնո քաղաքում և այլն)։

ԺԱ դարի վերջին և ԺԲ դարի առաջին տասնամյակներում սկիզբ առավ Հայոց պատմության մի նոր ժամանակաշրջան, որին վերաբերող Իբն ալ-Ասիրի տեղեկությունները անհրաժեշտ է խմբավորել։ ԺԱ դարից հետո հայության պատմությունը այլևս մեկ երկրում ապրող ժողովրդի պատմություն չէ, այլ տարբեր հայկական քաղաքական միավորների և հայրենիքից դուրս ընկած, բաժան-բաժան եղած զանգվածների տարեգրությունն է։

Իբն ալ-Ասիրի մոտ ԺԲ դարի և ԺԳ դարի առաջին երեսնամյակին վերաբերող տեղեկությունները Հայաստանի ու հայերի մասին կարելի է բաժանել երեք խմբի. տեղեկություններ Մեծ Հայքում (Զաքարյան իշխանապետություն և Հարավային Հայաստան) կատարված դեպքերի մասին, Կիլիկիայի հայկական պետությանն առնչվող դեպքերի նկարագրությունը և վերջապես Եգիպտոսի հայ վեզիրների պատմությունը։

ԺԲ դարում Մեծ Հայքում պայքար ծավալվեց հայկական հողերի ազատագրման համար, որը գլխավորեցին նախկինում Տաշիր-Ձորագետի՝ Բագրատունի թագավորներին ենթակա Զաքարյան իշխանները, և երկարատև պայքարով ազատագրվեց Հյուսիսային Հայաստանը։ Իբն ալ-Ասիրը հաղորդում է, որ 556 հիջրի (1160—1161) թվականին գրավվեց Անին, իսկ հաջորդ տարին՝ Դվինը։

Այդ ժամանակ Հարավային Հայաստանում (որոշ մասերում) իշխում էին Շահ-Արմենները, որոնք պատերազմների մեջ էին Վրաստանի հետ, իսկ հարավից, ԺԲ դարի վերջերին, մոտենում էր Սալահ ալ-Դինը[28], որը, Երուսաղեմի խաչակիրների թագավորությանը հաղթելուց հետո, նվաճել էր Ասորիքն ու Վերին Միջագետքը։ Նփրկերտը գրավելուց հետո, նա ձգտում էր տիրանալ նաև Խլաթի ամիրությանը, սակայն վերահաս մահը կանխեց նրան։ Պատմիչը մանրամասն շարադրում է Խլաթի ամիրության մեջ կատարված գավագրությունները, ներքին պայքարը։

599 հիջրի (1202—1203) թվականին Դվինի ազատագրումը Զաքար-

[28] *Ph. Hitti*, History of the Arabs, London, 1946, p. 647—648.

յանների կողմից պատմիչը հիշատակում է դառնությամբ, մեղադրելով մահմեդական տիրակալներին։ 601 հիջրի (1204—1205) թվականին Զաքարյանների[29] դնդերը (որոնք Իբն ալ-Ասիրի մոտ միշտ կոչվում են քուրջ) արշավեցին հարավ, հասնելով Մանազկերտ ու Արճեշ, սակայն սպանվեց Փոքր Զաքարեն (Զաքարի ալ-սաղիր)։ 602 հիջրի (1205—1206) թվականին Զաքարյանների զորքերը դարձյալ արշավեցին հարավ ու հասան Խլաթ, սակայն շուտով վերադարձան։

Խլաթում Շահ-Արմենների իշխանությունն այնքան էր թուլացել, որ 604 հիջրի (1207—1208) թվականին Սալահ ալ-Դինի եղբոր՝ ալ-Մալիք ալ-Ադիլի որդին, ալ-Մալիք ալ-Աշրաֆը, դյուրությամբ տիրացավ Խլաթին ու շրջակա հայկական գավառներին։ Հաջորդ տարում Զաքարյանների գնդերը կրկին հարձակվեցին, գրավեցին Արճեշը և կհասնեին ավելի մեծ հաջողության, եթե Իվանեն անզգուշությամբ գերի չընկներ։

Այդ ժամանակ Ատրպատականում ու Հայաստանում հայտնվեց Խորեզմշահի որդի Ջալալ ալ-Դինը, որը փախել էր մոնղոլներից (Իբն ալ-Ասիրի մոտ միշտ՝ թաթար)։ 622 հիջրի (1125—1126) թվականին նա գրավեց Դվինը, իսկ Իվանե աթաբեկն իր զորքով չկարողացավ կանգնեցնել նրան (Գառնիի ճակատամարտում) և նահանջեց։ Սակայն Ջալալ ալ-Դինը անհաջողության մատնվեց Անի և Կարս քաղաքների առջև, չկարողացավ գրավել Խլաթը և երկար պաշարելուց հետո նահանջեց։ Միայն 626 հիջրի (1228—1229) թվականին նա կրկին պաշարելով և սովի մատնելով Խլաթը, կարողացավ նվաճել ու կոտորել բնակչությանը։

Հաջորդ տարի Այյուբյան Աշրաֆը և Ռումի (Իկոնիայի) սուլթան Քեյ Կուբադ Ա-ն միացյալ ուժերով ջախջախեցին Ջալալ ալ-Դինին, որն իսկական աղետ էր դարձել Հայաստանի ու դրացի երկրների համար և պատահական չէ, որ, ըստ հայկական աղբյուրների, Իկոնիայի սուլթանի հետ կռվում էին նաև Կիլիկյան Հայաստանի օգնական զորքերը։

Սարսափելի գույներով է նկարագրում Իբն ալ-Ասիրը մոնղոլների (թաթարների) երևան գալը Միջին և Մերձավոր արևելքում, որը համարում է համաշխարհային պատմության մեջ աննախընթաց աղետ։ Ջալալ ալ-Դինին հալածող մոնղոլ զորքերի՝ Հայաստանում (Բերկրի, Արճեշ) և հարևան երկրներում կատարած ավերածությունների հիշատակումով Իբն ալ-Ասիրը ավարտում է իր բազմահատոր աշխատությունը։

1080 թվականին Կիլիկիայում հիմնադրվեց Ռուբինյանների հայկական իշխանապետությունը, որի մասին Իբն ալ-Ասիրը բավական հետաքրքրական տեղեկություններ է հաղորդում։

Խաչակրաց (ֆրանկների) առաջին արշավանքի ժամանակ (1096—

---

[29] V. Minorsky, Studies in Caucasian History, London, 1953, p. 101—103.

1099), նրանց զորքը 1098 թվականին անցնելով «Հայերի երկրով» (Կիլիկիա), դուրս եկավ Ասորիք ու պաշարեց Անտիոքը։ Խաչակիրների մի զորամաս Բալդուինի գլխավորությամբ գրավեց Եդեսիան[30], որի բնակչության մեծամասնությունը (մի այլ դեպքում պատմիչն ասում է՝ ընդհանրապես) հայեր էին։ Այսպիսով, հիմնադրվեց Եդեսիայի կոմսությունը, որը հազիվ կես դար գոյատևեց։ Խաչակրաց հիմնած մյուս պետությունները էին Երուսաղեմի թագավորությունը (բոլորի ավագը), Տրիպոլիի կոմսությունը և Անտիոքի իշխանությունը։

Կիլիկիայի հայկական իշխանապետությունից առաջ, դեռևս 1071 թվականին, Եփրատ գետից արևմուտք ընկած տարածության վրա (Եփրատացիք) գոյացել էր Փիլարտոս[31] Վարաժնունու (Ֆիլարդուս ալ-Ռումի) հայկական իշխանությունը՝ Մարաշ մայրաքաղաքով։ Փիլարտոսը, դեռ բյուզանդական զորքում ծառայելու ժամանակ, ընդունել էր քաղկեդոնականությունը և այդ պատճառով Իբն-ալ-Ասիրը նրան հոռոմ (ռումի) է կոչում։ Եփրատացիք նահանգում նրանից հետո իշխեց հայ իշխան Գող Վասիլը (արաբ. Քուվասիլ), իսկ վերջինիս մահվանից (1112) հետո այս իշխանությունը աստիճանաբար քայքայվեց։

Իբն ալ-Ասիրը, արաբ այլ պատմիչների նման, Կիլիկիայի Հայկական պետությունը կոչում է Լևոնի որդու երկիր, նույնիսկ այն սկզբնական շրջանի համար, երբ դեռ Լևոն անունով տիրակալ չէր եղել։ Կիլիկիան Լևոնի որդու երկիր է կոչվել հավանաբար Լևոն իշխանապետի (1123—1137) որդի Թորոսի անունով, որն իր հոր դերի տարվելուց հետո՝ 1145-ին, վերականգնեց Կիլիկիայի Հայկական պետությունը և ամրապնդեց այն։

Հիշատակելով Կիլիկիայի Հայկական պետության մի քանի տարով վերացման մասին, Իբն ալ-Ասիրը նշում է, որ Ռումի թագավորը (Հովհան Բ Կոմնենոս) մտնելով կիրճերի, ամրոցների տեր հայազգի Լևոնի որդու երկիրը, հպատակեցրեց նրան՝ շատ դանձեր վերցնելով։

Չափազանց հետաքրքրական է մահմեդական պատմիչի վերաբերմունքը Կիլիկիայի իշխանապետ Մլեհ Ռուբինյանի քաղաքական կողմնորոշման մասին։ Հայ պատմիչները դժկամությամբ են հիշում Մլեհի դաշնակցելը մահմեդական ամիր Նուր ալ-Դինի հետ։ Իբն ալ-Ասիրն իր վերաբերմունքն արտահայտում է Նուր ալ-Դինի խոսքերով. վերջինս պատասխանելով իրենց զարմանքն արտահայտող մարգկանց, ասում է, թե նրան օգտագործում է իր կրոնի մարգկանց (բյուզանդացիների) դեմ պայքարելու համար։ Համենայն դեպս, Մլեհն իր ճկուն քաղաքականու-

---

[30] *H. Lammens*, La Syrie, precis historique, v. I, Beyrouth, 1921, p. 211.

[31] Մատթեոս Ուռհայեցի. *Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 206—210։*

թյան շնորհիվ կարողացավ, վերջապես, նվաճել հայկական պետության համար այնքան անհրաժեշտ դաշտային Կիլիկիան՝ Ադանա և Տարսոն քաղաքներով։

Եգիպտոսի սուլթան Սալահ ալ-Դինը, Ասորիքի մեծ մասն իրեն ենթարկելուց հետո, մոտեցել էր Ամանոսյան լեռներին ու սպառնում էր Կիլիկիային։ 576 հիջրի (1180—1181) թվականին, օգտագործելով մի խումբ թուրքմենների՝ Կիլիկիայից վտարվելու առիթը, հարձակվեց լեռնային շրջանները, սակայն Լևոնի որդին, այսինքն՝ իշխանապետ Ռուբեն Գ-ն (1174—1185) պաշտպանվեց իր լեռներում։

Մի քանի տարի անց՝ 584 հիջրի (1188—1189) թվականին, Սալահ ալ-Դինը գրավեց Ամանոսյան լեռների վրա գտնվող Բաղրաս բերդը, սակայն կողոպտելուց ու քանդելուց հետո նահանջեց։ Իսկ Հայոց տերը՝ (սահիբ ալ-Արման) Լևոնի որդին (Լևոն իշխանապետ և ապա թագավոր 1186—1219), գրավեց[32], նորոգեց բերդը ու կայազոր նշանակեց և, այսպիսով, հնարավորություն ունեցավ հսկելու Հալեբի ամիրության վրա։

586 հիջրի (1190—1191) թվականին գերմանների (ալման) թագավորը (խաչակրաց Գ արշավանքի ղեկավարներից, Ֆրիդրիխ Շիկամորուս կայսր) հասավ Հայոց երկիրը, որի տերն էր Լևոնի որդի Ստեփանեի որդի Լևոնը։ Թագավորը շարունակեց ճանապարհը, սակայն խեղդվեց ծանծաղ մի գետում։

Լևոն Ա Մեծագործ թագավորը[33] ոչ միայն Կիլիկիայի, այլև ամբողջ հայ ժողովրդի պատմության խոշորագույն դեմքերից է։ Նա 1198 թվականին հանդիսավոր պայմաններում Տարսոնում օծվեց թագավոր Հայոց և հզորացրեց հայկական պետականությունը։ 602 հիջրի (1205—1206) թըվականին հայազգի Լևոնի որդին, ապահովելու համար Կիլիկիայի հարավային սահմանները, հարձակվեց Հալեբի նահանգի վրա։ Հալեբի տերը պատասխան արշավանք կատարեց, սակայն Լևոնի որդին ջախջախեց նրան և ամրացավ իր լեռներում ու բերդերում։ Հալեբի տերը համարձակություն չունեցավ հետապնդելու, քանզի Լևոնի երկիրը ուներ քարքարոտ լեռներ ու դժվարանցանելի կիրճեր։

Լևոն թագավորը մահացել էր և չուներ արու զավակ, ուստի հայերը նրա դստերը (Զաբել) թագուհի դարձրին ու ամուսնացրին Անտիոքի իշխանի (բրինս) որդու (Ֆիլիպ) հետ։ Սակայն հայերը զղջացին, վախենալով. որ ֆրանկներն իրենց երկիրը կգրավեն, ուստի ձերբակալեցին ու բանտարկեցին նրան։ Հայրը պահանջեց իր որդուն ազատ արձակել, բայց հայերը մերժեցին։

[32] Г. Микаелян. История армянского киликийского государства. Ереван. 1952, стр. 159

[33] Ղ. Ալիշան, Սիսուան, Վենետիկ, 1885, էջ 435—485։

Անտիոքի իշխանը լուր ուղարկեց Հռոմ՝ «ֆրանկների թագավոր պապին», Կիլիկիայի վրա հարձակվելու արտոնություն խնդրելով, սակայն պապն արգելեց, ասելով, որ հայերը իրենց համայնքին (միլլատ) պատկանող ժողովուրդ են։ Իշխանը Իկոնիայի սուլթանին զրդեց Կիլիկիայի դեմ և երկու կողմից հարձակվեցին, սակայն տևտոնյան և հյուրընկալ ասպետները չմասնակցեցին, քանի որ պապն արգելել էր։ Լսելով Անտիոքի տիրոջ արարքը, պապը բանադրեց նրան։

Այս ժամանակ իշխանը գրեց պապին, թե հայերն իր որդուն չեն արձակում։ Սա հրաման ուղարկեց հայերին, որ ազատեն իշխանի որդուն, ապա թե ոչ, իշխանին թույլ կտա հարձակվել։ Հայերը բաց չթողեցին իշխանի որդուն, և իշխանը հարձակվեց. սակայն ոչ մի հաջողություն չունեցավ։

Կիլիկիայի Հայկական թագավորության հետ սերտորեն կապված էր Ասորիքի ու Եգիպտոսի հայությունը։ Եգիպտոսում Ֆաթիմյանների խալիֆայության ժամանակաշրջանում (969—1171), բազմաթիվ հայազգի անձնավորություններ վեզիրության պաշտոնին հասան։ Մուստանսիր խալիֆայի օրոք (1036—1094) մեծ հեղինակություն ուներ Բադր ալ Գամալին (Ջամալի)[34], որը նախապես եղել է Ասորիքի կառավարիչ։ Նա իր հայկական գնդերով գալիս է Եգիպտոս, դառնում է վեզիր ու մեծագույն հմտությամբ կարգ ու կանոն հաստատում երկրում, ուր անիշխանություն էր տիրում։ Նա կոչվում էր Զորաց հրամանատար (Ամիր ալ-ջույուշ)։ Պատմիչը գրում է. «երբ նա մեռավ, անցել էր ութսուն տարին և նա էր, որ տնօրինում էր ու կառավարում Մուստանսիրի օրոք»։

Բադրի որդին՝ Աֆդալը, հաջորդ խալիֆայի՝ Մուստալիի օրոք (1094—1101) նույնպես դարձավ վեզիր։ Նա այնպիսի հեղինակություն ուներ, որ թեև Մուստանսիրն իր կենդանության օրոք գահը կտակել էր իր Նիզար որդուն, սակայն Աֆդալը թույլ չտվեց նրան գահ բարձրանալ, որովհետև անցյալում նա վիրավորել էր իրեն։ Իր հոր նման երկրի իսկական տնօրինողն ու տիրակալն էր։ Նրա մահվան առթիվ, 515 հիջրի (1121—1122) թվականին, պատմիչը հիշատակում է, որ Զորաց հրամանատար (Ամիր ալ-ջույուշ) վեզիր Աֆդալը հիսունութ տարեկանին սպանվեց թշնամիների ձեռքով։ Քառասուն օր նրա առասպելական հարստությունը կրում էին խալիֆայի ապարանքը, իսկ քարտուղարները արձանագրում էին բերված արժեքավոր իրերը, որոնց նմանը տեսնված չէր, ավելացնում է Իբն ալ-Ասիրը։

Եգիպտոսի հայ վեզիրների շարքում եզակի դեմք է Վահրամ Պահլավունին (Բահրամ ալ-Արմանի), որը հավատարիմ էր մնացել իր նախ-

[34] Դ. Մսրրյան, Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, Գահիրե, 1947, էջ 23—36։

նիների քրիստոնեական հավատին[35], բայց որպես լիազոր վեզիր պաշտոնավարում էր մահմեդական Հաֆիզ (1130—1149) խալիֆայի օրոք, կրելով Իշխանության Թագ (Տաջ ալ-դաուլա) պատվանունը։ Նրան մեղադրում էին, որ շատ հայերի է նշանակել բարձր պաշտոնների։ Նա պաշտոնից հեռացվեց 1137 թվականին, իր հակառակորդի սադրանքներով, որը գրավեց վեզիրության պաշտոնը։ Իբն ալ-Ասիրը չի պատմում, որ հետագայում նույն խալիֆան կրկին պալատ հրավիրեց Վահրամին և բարձր դիրքի հասցրեց նրան։

Ֆաթիմյան վերջին խալիֆա Ադիդի (1160—1171) օրոք ևս արքունիքում իշխեցին հայ վեզիրներ։ Թալաի իբն Ռուզզիքը, լինելով լիազոր վեզիր, ինքն էր հիշյալ Ադիդին խալիֆա դարձրել, սակայն նրա թշնամիները դավադրությամբ սպանեցին նրան։ Վեզիրության պաշտոնում նրան հաջորդեց որդին՝ Ռուզզիքը, որը կոչվում էր Ադիլ (արդար)։ Թալաի իբն Ռուզիքը հայտնի էր որպես ճարտար բանաստեղծ։

Սուննի Այյուբյանների օրոք (1171—1250) հայերը չկարողացան գրավել այն դիրքը, որ ունեին շիայական Ֆաթիմյանների օրոք։

Իբն ալ-Ասիրը խոսելով նույն երկրների ու ժողովուրդների մասին, որոնք հիշատակված են Թ դարի պատմիչների մոտ (Բալազուրի, Յակուբի), հաճախ նոր անուններով է կոչում նրանց։ Օրինակ, խազարները նրա մոտ կոչվում են թե՛ խազար, թե՛ թուրք, ընդ որում վերջին արտահայտությունը բավական հաճախ է օգտագործում։

Ադարբայջան տեղանունը օգտագործված է, բացի բուն Ատրպատականից, նաև Արաքսից հյուսիս ընկած Առան և Շիրվան նահանգների համար, որը մերթ ընդ մերթ նկատվում է Իբն ալ-Ասիրի շարադրանքի մեջ։

Առհասարակ պետք է զգուշությամբ օգտագործել Իբն ալ-Ասիրի արտահայտությունները։

Օրինակ, անորոշ է Հայաստան (Արմինիա) անունը, որն օգտագործելիս նա երբեմն (Ը—Թ դարերի համար) հասկանում է բուն Հայաստանը, Վիրքը, Աղվանքը, Շիրվանը և Դերբենդը միասին՝ որպես մեկ միավոր (Արմինիա արաբական նահանգը), երբեմն՝ (Բագրատունյաց ժամանակաշրջանի համար) բուն Հայաստանը, իսկ երբեմն էլ՝ (ԺԱ—ԺԳ դարերի համար) միայն Հարավային Հայաստանը՝ Խլաթի ամիրությունը (Շահ Արմենների պետությունը)։

Զաքարյան իշխանապետության ժամանակաշրջանի մասին խոսելիս նա առավել ևս անորոշ է։ Քուրջ ասելով հասկանում է թե՛ վրացիներին, թե՛ Զաքարյան իշխանապետության (ընդհանրապես Հյուսիսային Հայաս-

[35] *M. Canard*, Un vizir chretien a l'epoque fatimide: l'Armenien Bahram, Annales de l'Institut d'Etudes Orientales, t. XII, Alger, 1954, p. 84—113.

տանի) հայերին։ Բիլադ ալ-Քուրջ ասելով հասկանում է թե՛ Վրաստանը, թե՛ Հյուսիսային Հայաստանը միասին։

Իբն ալ-Ասիրը իր «Պատմությունը» շարադրելիս, նախ նշում է թվականը, ապա դրա տակ տալիս է մանր ենթավերնագրեր։ Ամեն մի ենթավերնագրից հետո, հաճախ մի նախադասությամբ, տալիս է իր նկարագրելիք դեպքերի հակիրճ բովանդակությունը, ապա անցնում մանրամասն շարադրանքին, հիշատակելով, նույնիսկ, դեպքի օրը ամսվա մեջ և, երբեմն, նույնիսկ շաբաթվա օրը։ Տարբեր աղբյուրներից քաղելու դեպքում նշում է, որ թեպետ ինքն այսպես է գրում, սակայն այլ տարբերակ էլ կա։ Փոքր դեպքերն ի մի բերելով, շարադրում է ամեն տարվա վերջում «Տարբեր դեպքերի մասին» վերնագրի տակ։

* *
*

Իբն ալ-Ասիրի «Պատմությունը» հրատարակվել է Եվրոպայում Թորնբերգի կողմից և ունեցել է նաև արևելյան հրատարակություններ Կահիրեում (1290 հիջրի (1873—1874), 1303 (1885—1886) և այլն)։

Իբն ալ-Ասիրի «Լիակատար Պատմության» ձեռագրեր կան Բեռլինում[36], Փարիզում[37], Լոնդոնում[38], Կոստանդնուպոլսում[39], Կահիրեում[40], Լենինգրադի Արևելագիտության ինստիտուտում[41], Լենինգրադի Պետական Համալսարանում[42] և այլուր։

Իբն ալ-Ասիրի «Լիակատար Պատմությունը» ոչ մի լեզվով ամբողջական թարգմանություն չունի։

Նրանից քաղվածքներ են թարգմանվել ռուսերեն, ֆրանսերեն և անգլերեն լեզուներով։ Ռուսերեն թարգմանություններ են կատարել Ն. Ի. Իլ-

[36] W. Ahlwardt, Verzeichniss der arabischen Handschriften der Königlichen Bibliothek zu Berlin, B. IX, Berlin, 1897, no. 9438—9440.

[37] de Slane, Catalogue des manuscrits arabes de la Bibliotheque Nationale, Paris. 1883—1895, no. 1468, 2; 1492—1504; 1595, 2.

[38] A. G. Ellis and E. Edwards, A descriptive List of the Arabic Mss. acquired by the Trustees of the British Museum since 1894, London, 1912, p. 32.

[39] Cl. Cahen, Les chroniques arabes concernant la Syrie. L'Egypte et la Mesopotamie de la conquete arabe a la conquete ottomane dans les bibliotheques d'Istanbul, Revue des etudes islamiques, Paris, 1936, p. 339.

[40] Revue de l'Institut des manuscrits arabes, Le Caire, 1960, t. VI, p. 328. Fihris al-Makhtutat al-Musawwara, Le Caire, 1957, II, I, p. 212, 213, no. 402: II, 3, p. 242, no. 1177.

[41] Каталог арабских рукописей Инс. нар. Азии, вып. 3, А. И. Михайлова, История, М., 1965, № 21.

[42] *В. И. Беляев* и *П. Г. Булгаков*, Арабские рукописи собрания ЛГУ, в сб. Памяти ак. И. Ю. Крачковского, Ленинград, 1958, с. 28.

մինսկին (մոնղոլների՝ 1220—1224 թթ. կովկասյան երկրներ կատարած արշավանքի մասին)[43], Վ. Գ. Տիզենհաուզենը (Ոսկե հորդայի մասին)[44], Ն. Ա. Մեդնիկովը (Պաղեստինի ու Ասորիքի մասին)[45], Ն. Ի. Լեմանովը և Ս. Վոլինը (Թուրքմենիայի վերաբերյալ)[46] և Պ. Կ. Ժուզեն (Ադրբեջանի մասին)[47]։

Ֆրանսերեն թարգմանվել են քաղվածքներ խաչակրաց արշավանքների և նրանց հիմնած պետությունների մասին[48]։ Բյուզանդիայի հետ արաբների մղած պատերազմներին վերաբերող քաղվածքներ նախ թարգմանվել են ռուսերեն Ա. Վասիլևի[49] կողմից, ապա նույն այդ մասը լրացումներով թարգմանել ու հրատարակել է Մ. Կանարը՝ ֆրանսերեն[50]։

Անգլերեն են թարգմանվել քաղվածքներ դարձյալ խաչակիրների վերաբերյալ[51]։

Իբն ալ-Ասիրից հայերեն թարգմանվել են Հայաստանի վերաբերյալ քաղվածքներ Բ. Խալաթյանցի կողմից[52]։

Ներկա հատորում թարգմանել ենք քաղվածքներ Իբն ալ-Ասիրի Լիակատար Պատմությունից և Մոսուլի աթաբեկների պետության պատմությունից։ Վերջինից կատարված թարգմանության համար օգտագործել ենք բնագրի փարիզյան հրատարակությունը[53]։

---

[43] *Н. И. Ильминский*, Выписки из Иби эль Атира о первом нашествии татар иа кавказские и черноморские страны с 1220 по 1224 г., Ученые записки Академии наук, 1-е и 3-е отд., II, 1854, стр. 636—668.

[44] *В. Г. Тизенгаузен*, Сборник материалов, относящихся к истории Золотой Орды, I, СПб., 1884, стр. 1—45.

[45] *Н. А. Медников*, Палестина от завоевания ее арабами до крестовых походов по арабским источникам, Православный Палестинский сборник, т. XVII, вып. II (2), СПб, 1897, стр. 401—528.

[46] *И. Н. Леманов* и *С. Волин*, Извлечения из «ал-Камил фи-т-тарих» Ибн ал-Асира, Материалы по истории туркмен и Туркмении, I, М.-Л., 1939, стр. 358—409.

[47] *П. К. Жузе*, Материалы по истории Азербайджана из Тарих ал-Камиль Ибн ал-Асира, Баку, 1940.

[48] Recueil des historiens des croisades. Historiens Orientaux, Paris, 1872.

[49] *А. А. Васильев*, Византия и арабы, т. I, СПб., 1900, стр. 86—106.

[50] *A. A. Vasiliev*, Byzance et les Arabes, t. II, La dynastie Macedonienne deuxieme partie, extraits des sources arabes, traduits par M. Canard, Bruxelles, 1950, p. 129—162.

[51] *Ibn al-Athir*, The Collection of Histories, in F. Cabrieli (ed.), Arab Historians of the Crusades, London, 1969.

[52] «Արաբացի մատենագիրներ Հայաստանի մասին, հաւաքեց և թարգմանեց Բագրատ Խալաթեանց», Ազգային Մատենադարան, ԶԴ, Վիեննա, 1919, էջ 124—147։

[53] Recueil des historiens des croisades, publie par les soins de l'Academie des inscriptions et belles-lettres. Historiens orientaux, Paris, 1876, t. 2, 2e partie.

«Լիակատար Պատմության» թարգմանության հիմք ենք ընդունել Իբն ալ-Ասիրի արաբերեն բնագրի՝ Կահիրեի հրատարակությունը[54], միաժամանակ, ըստ կարելվույն, համեմատելով Կ. Թորնբերգի Լեյդենյան հրատարակության հետ[55]։

Թարգմանել ենք ո՛չ միայն Հայաստանին, այլև դրացի երկրներին (Վիրք, Աղվանք, Շիրվան, Դերբենդ, Ատրպատական, Վերին Միջագետք, Ասորիք և Փոքր Ասիա) վերաբերող հատվածները։

Թարգմանության մեջ արաբական և ընդհանրապես մահմեդական անձնանունները տվել ենք արաբական ձևով՝ հայկական հնարավոր տառադարձությամբ, իսկ հայկական կամ բյուզանդական և ընդհանրապես քրիստոնեական և հեթանոսական (պարսկական) անունները տվել ենք մատենագրության ավանդած ձևերով՝ կողքին, փակագծերի մեջ նշելով արաբական ձևը։ Տեղանունները թարգմանելիս տվել ենք հայ պատմագրության մեջ ընդունված ձևը և կողքին, փակագծերի մեջ՝ արաբական ձևը, իսկ այնպիսի տեղանուններ, որոնք հայկական ընդունված ձևեր չունեն կամ արաբական ձևը շատ հանրածանոթ է և կամ անորոշ է, թողել ենք նույնությամբ։

Ինչ վերաբերում է վարչական, տնտեսական, հարկային և այլ հատուկ բառերին, ապա դրանք հիմնականում թողել ենք արաբական ձևով, մեծ մասամբ կողքին, փակագծերի մեջ տալով հայերեն թարգմանությունը կամ բացատրելով ծանոթագրությունների մեջ։

Մեր թարգմանության մեջ ամենադժվարին խնդիրներից մեկը տառադարձության հարցն է։ Մինչ այժմ չկա հայերեն տառերով արաբերենի տառադարձություն, (որի համար պետք է լինեն տպագրական տառաձևեր, միջոցներ), ինչպես կա եվրոպական լեզուներում լատինական տառերով և ռուսերենում՝ ռուսական տառերով։

Այնուհանդերձ ստեղծել ենք մեզ համար պայմանական տառադարձություն, որը կիրառել ենք նաև այս թարգմանության մեջ։ Արաբերենի 28 տառերից հնարավոր է հայերեն տառադարձել միայն 21-ը։ Դրանք են أ(ա), ب(բ), ت(տ), ج(ջ), خ(խ), د(դ), ر(ռ, ր), ز(ղ), س(ս), ش(շ), ط(թ), غ(ղ), ف(ֆ), ق(կ), ك(ք), ل(լ), م(մ), ن(ն), ه(հ), و(ու), ي(յ)։

Մնում են յոթ տառ, որոնց համար հայերենում չունենք համապատասխան համարժեքներ, ուստի և գոհացել ենք հարմարեցնելով։ Այսպես՝ լեզվաշրթնային ث (սա) տառի համար դրել ենք պարզապես ս։ Սույն հայկական տառն օգտագործել ենք նաև լեզվաքմային ص (սագ) տառի համար։ Կոկորդային ح (հա) տառի դիմաց դրել ենք սովորական

[54] Ibn al-Athir, al-Kamil fi-l-Tarikh, al-Qahira, I—IX, 1353 (1934—1935).

[55] Ibn el-Athiri Chronicon qnod perfectissimum inscribitur, ed. C. J. Tornberg, v. I—XIV, Lugduni Batavorum, 1851—1876.

*հ, լեզվաքմային ذ (դալ) տառի դիմաց դ, լեզվաքմային ض (դադ) տառի փոխարեն նույնպես դ, լեզվաքմային ظ (զա) տառի համար զ։ Սակայն ամենամեծ թերությունը կոկորդային ع (այն) տառի դիմաց ոչ մի հարմար գիր չլինելն է։ Տվյալ դեպքում ապաթարցը հնարավոր չէ օգտագործել, որովհետև դա օգտագործել կարելի է ալիֆ համդայի ا համար, իսկ այնի համար թե՛ եվրոպական լեզուներում, թե՛ ռուսերենում ապաթարցի հակառակ ուղղությամբ կիսակլոր է օգտագործվում։*

*Հնարավորություն չկա նաև երկար ձայնավորներն (երկար ա, ու, ի) արտահայտելու։*

*Արաբերենի (ալ-) որոշիչ հոդը բաղաձայնով սկսվող բառից առաջ արտասանվում է ըստ իրեն հետևող տառի։ Եթե նրան հաջորդում է արեվային կոչված բաղաձայններից մեկը س ش ص ض ط ظ ل ن ت ث د ذ ر ز) ապա նրա ل հնչյունը, ազդվելով հաջորդ բաղաձայնից, կրկնակի է արտասանվում։ Այսպես՝ գրվում է ալ-շամս (արև), բայց արտասանվում է աշ-շամս։ Իսկ եթե հաջորդող բառի առաջին բաղաձայնը լուսնային է (ا ب ج ح خ ع غ ف ق ك م ه و ى), ապա կարդացվում է այնպես, ինչպես գրվում է։ Այսպես՝ գրվում է ալ-կամար (լուսին) և նույն ձևով արտասանվում է։ Հետևելով եվրոպական արևելագիտության մեջ այժմ ընդունված սկզբունքին որոշիչ հոդը գրում ենք միշտ ալ-ձևով, անկախ այն բանից, թե ինչպիսի բաղաձայն է նրան հաջորդում։*

*Նույնպես և Աբու (հայր) բառի դեպքում, երբ հոլովվելով դառնում է Աբի, ինչպես, օրինակ, Իբն Աբի Ջաֆար (Աբու Ջաֆարի որդի), դարձյալ գրում ենք եվրոպական արևելագիտության մեջ ընդունված ձևով՝ Իբն Աբու Ջաֆար՝ Աբու բառը միշտ պահելով ուղղական հոլովով։*

# ԼԻԱԿԱՏԱՐ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

(ԱԼ-ՔԱՄԻԼ ՖԻ-Լ-ՏԱՐԻԽ)

*ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ*

*էջ 41*

## ՆՈՅԻ (ՆՈՒՀ) ԺԱՄԱՆԱԿ ԿԱՏԱՐՎԱԾ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Եվ ծփաց [Նոյան] տապանը երկրի վրա ոչ մի տեղ կանգ չառնելով մինչև որ հասավ սրբավայրը (հարամ)[1], ուր կանգ չառավ և մի շաբաթ պտույտ գործեց նրա շուրջը. ապա շարունակեց իր ընթացքը երկրի վրա մինչև որ հասավ ալ-Ջուդի[2], որը լեռ է Կարդիում[3], Մոսուլի երկրում, և այնտեղ կանգ առավ։ Այստեղ է, որ ասվել է «Թող կորչե՛ն անարդար մարդիկ»։ Եվ երբ կանգ առավ, ասվել է. «Ո՛վ երկիր, կուլ տուր քո ջուրը և երկինք հեռացրու ջրերը»։ Հողը ներծծեց [ջուրը] և Նոյը մնաց վերևում մինչև որ ջրերը իջան։ Երբ դուրս եկավ Ջազիրայի հողում, Կարդիի կողմերում տեղ ընտրեց ու կառուցեց մի գյուղ, որը կոչվեց Սամանին (Թամանին)[4] և այժմ կոչվում է Սամանինի (ութսունի) շուկա, որովհետև նրա հետ եղածներից ամեն մեկը մի տուն կառուցեց, իսկ նրանք ութսուն հոգի էին։*

*էջ 46*

## ՆՈՅԻ (ՆՈՒՀ) ՍԵՐՆԴԻ ՄԱՍԻՆ[5]

*Իսկ Հաբեթի (Յաֆիս) որդիներն էին Գոմեր (Ջամիր), Մավա, Մաուրիք, Բուան, Ֆուբա, Մոսոք (Մաշիջ) և Թիրաս (Տիրաշ)։ Գոմերի որդիներն էին պարսից թագավորները։ Թիրասի (Տիրաշ) որդիներից էին թուրքերը, խազարները, իսկ Մոսոքի որդիները՝ աշբանները։ Մավայի որդիներից էին Գոգն (Յաջոջ) ու Մագոգը (Մաջոջ), Բուանի որդիներն էին Սակալիբա (սլավոններ) և Բուրջան։ Աշբանները հնում Ռումի երկրում էին նախքան կպատահեր այն, ինչ պատահեց Իսահակի որդի Եսավի (Այս) որդու*

և ուրիշների հետ։ Եվ այդ երեքից ամեն մեկը՝ Սեմը (Սամ), Քամը (Համ) և Հաբեթը, դիմեց մի երկիր, ուր ապրեց և ուրիշներին քշեց այնտեղից։ Հաբեթի որդիներն են հոռոմները (ռում), որոնք Նոյի որդի Հաբեթի որդի Յունանի որդի Լանթայի° որդիներն են։

էջ 192

## ՌՈՒՄԻ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ԵՐՐՈՐԴ ԴԱՍԸ ՀԻՋՐԱՅԻՑ ՀԵՏՈ

Նրանցից առաջինը Հերակլն է, որի թագավոր դառնալու մասին խոսել ենք։ Նրա իշխանության շրջանը քսանհինգ տարի է, ասվում է նաև երեսունմեկ տարի։ Նրա օրոք է ծնվել [Մուհամմադ] մարգարեն։ Մահմեդականները նրա ձեռքից նվաճեցին Ասորիքը։

էջ 193

Նրանից (Հուստինիանոսից) հետո իշխեց Անաստասիոսը, որդի Փիլիպպոսի (Նասթաս իբն Ֆիլիֆուս)։ Նրա օրոք հոռոմների մեջ դժգոհություն կար և նրան հանեցին ու աքսորեցին։ Ապա իշխեց Թեոդոսիոսը (Սիդուս), որը կոչվում էր հայազգի (արմանի)։ Իշխել է Սուլայման իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆայի] օրոք և սրան էր որ Մասլամա իբն Աբգ ալ-Մալիքը պաշարեց։

Նրանից հետո իշխանությունը վերցրեց Լևոնը, որդի Կոստանդինի (Ալյուն իբն Կուսթանթին), քանզի նա (Թեոդոսիոսը) թույլ էր, իսկ Լևոնի (Ալյուն) շնորհիվ հոռոմներն ի վիճակի եղան մահմեդականներին ետ մղել Կոստանդնուպոլսից։ Դրա համար նրան դարձրին թագավոր և նա իշխեց քսանվեց տարի։

էջ 194

Նրա (Միքայելի) դեմ դուրս եկավ Վասիլ սլավոնը (Բասիլ ալ-սակլաբի), որը գրավեց իշխանությունը և երկու հարյուր հիսուներեք հիջրի (867) թվականին սպանեց Միքայելին։ Ապա Վասիլ սլավոնը իշխեց քսան տարի Մուտաղզ և Մուհտադի խալիֆաների օրոք և Մուտամիդի առաջին տարիներին։ Նրա մայրն սլավոնուհի էր, որի պատճառով ինքն էլ [սլավոն] կոչվեց։

էջ 195

Այս Կոստանդինի դեմ դուրս եկավ Կոստանդինը, որդի Անդրոնիկոսի (Անդրունիկուս), որի հայրը գնացել էր Մուքտաֆի [խալիֆայի] մոտ, երկու հարյուր իննսունչորս հիջրի (906—907) թվականին և ընդունել մահմեդականություն ու մահացել։ Իսկ որդին փախավ Հայաստանի ու Ատրպատականի ճանապարհով դեպի Ռումի երկիրը։ Նրա մոտ մեծ բազմություն հավաքվեց, հետևորդները շատացան և գնաց Կոստանդնուպոլիս Կոստանդինի հետ կռվեց իշխանության համար երեք հարյուր մեկ հիջրի (913—914) թվականին, հաղթեց ու սպանեց նրան։

էջ 222

## ԱՐԴԱՇԻՐ ՈՐԴԻ ԲԱԲԱՔԻ ԵՎ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Եվ կոչվեց Արդաշիր՝ Շահանշահ, ապա շարժվեց դեպի Համադան ու գրավեց այն և հետո ալ-Ջաբալ, Ատրպատական, Հայաստան (Արմինիա)[10], Մոսուլ և ուժով նվաճեց։ Ապա Մոսուլից շարժվեց դեպի Սաուադ (Ստորին Միջագետք) ու գրավեց. մի արևմտյան քաղաք կառուցեց Տիգրիսի (Դիջլա) ափին Տիզբոնի (Թայսաֆուն) դիմաց, որը Մադաինի (Տիզբոն)[11] արևելքում է և այն անվանեց Բեհ Արդաշիր և Սաուադից վերադարձավ Իսթախր։

էջ 242

## ՀԱԶԿԵՐՏԻ (ՅԱԶԴԱԶԻՐԴ) ՈՐԴԻ ՊԵՐՈԶԻ (ՖԻՐՈՒԶ) ՈՐԴԻ ԿԱՎԱՏԻ (ԿՈՒԲԱԴ) ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ապա Կավատը հարձակվեց Ռումի վրա, նվաճեց Ամիդ քաղաքը, կառուցեց Առաջան ու Հուլուան քաղաքները և մեռավ։ Նրանից հետո իշխեց որդին՝ Խոսրով (Քիսրա) Անուշիրուանը։

Կավատի իշխանությունը իր եղբոր Ջամասպի հետ միասին քառասուներեք տարի տևեց։ Անուշիրուանը իր իշխանությանը ենթարկեց այն, ինչ որ հայրը թողել էր նրան նվաճելու։

Նրա [Կավատի] օրոք խազարները դուրս եկան և ասպատակելով նրա երկիրը, հասան Դինավար։ Կավատը իր մեծ զորավարներից մեկին ուղար-

կեց տասներկու հազար [զինվորներով]։ Ապա մտավ Առան և նվաճեց Արաքս (ալ-Ռաս) կոչված գետից մինչև Շիրուան ընկած [տարածությունը]։ Ապա Կավատը հասավ նրանց ետևից և Առանում կառուցեց Բայլական քաղաքը և Պարտավը (Բարդաա), որն ամբողջ սահմանային գոտու [գլխավոր] քաղաքն է և ուրիշ քաղաքներ, իսկ խազարները մնացին։ Ապա կառուցեց Ալանաց պաշտպանության գիծը Շիրուան երկրի ու Ալանաց գռան (Բաբ Ալլան) միջև։ Այս պաշտպանության գծի վրա կառուցեց բազմաթիվ քաղաքներ. որոնք կործանվեցին Բաբ ալ-Աբուաբի կառուցվելուց հետո։

էջ 256—257

### ՊԻՂԾ ՀԱԶԿԵՐՏԻ (ՅԱԶԴԱԶԻՐԴԻ) ՈՐԴԻ ԲԱՀՐԱՄ ԳՈՒՐԻ (ՋՈՒՐԻ) ՈՐԴԻ ՀԱԶԿԵՐՏԻ (ՅԱԶԴԱԶԻՐԴԻ) ՈՐԴԻ ՊԵՐՈԶԻ (ՖԻՐՈՒԶ) ՈՐԴԻ ԿԱՎԱՏԻ (ԿՈՒԲԱԴ) ՈՐԴԻ ԽՈՍՐՈՎ (ՔԻՍՐԱ) ԱՆՈՒՇԻՐՈՒԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Եվ հավաքվեցին աբխազները, Բանջարը, Բալանջարը[12] և ալանները՝ նրա (Անուշիրուանի) երկրի վրա հարձակվելու նպատակով։ Նրանք մտան Հայաստան (Արմինիա) նրա ժողովրդի վրա հարձակվելու նպատակով, քանզի ճանապարհը այստեղ հեշտ էր։ Խոսրովը (Քիսրա) դանդաղեց մինչև որ սրանք խորացան երկրում, ապա ուղարկեց զորքեր, որոնք կռվի բռնվեցին նրանց հետ ու կոտորեցին, բացի տաս հազար մարդուց, որոնց գերեցին ու բնակեցրին Ատրպատականում .....

Պերոզ (Ֆիրուզ) թագավորը Սուլի (Ծորա) երկրում ու ալանների [կողմերում], իր երկրի համար լավ ամրություններ էր կառուցել, իսկ նրա որդին՝ Կավատը (Կուբադ) ավելին կառուցեց։ Երբ թագավորեց Խոսրով Անուշիրուանը, Սուլի կողմերում ու Վրկանում (Ջուրջան) շատ կառուցումներ [արեց] ու բերդեր շինեց, որոնցով իր ամբողջ երկիրը ամրացրեց։ Սինջիբուր խականը, որ Թուրքերի ամենամեծն էր, դիմեց նրա երկիրը՝ իր կողմը սիրաշահելով խազարներին, աբխազներին ու Բալանջարի մարդկանց, որոնք հպատակվեցին նրան։ Նա եկավ մեծ զորքով և գրեց Խոսրովին հարկ պահանջելով ու չհնազանդվելու դեպքում սպառնալով նրան։ Խոսրովը նրա ոչ մի պահանջին պատասխան չտվեց, քանզի իր երկիրը պաշտպանված էր և ամրացրեց Հայաստան (Արմինիա) սահմանային երկիրը այնպես, որ փոքրաթիվ [ռազմիկներով] կարող էր գոհանալ։ Խականը հարձակվեց նրա երկրի վրա բայց ոչինչ չկարողացավ անել և ամոթահար վերադարձավ։

էջ 259

## ԱՆՈՒՇԻՐՈՒԱՆԻ՝ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՎ ԱՏՐՊԱՏԱԿԱՆՈՒՄ ԿԱՏԱՐԱԾ ԳՈՐԾԵՐԻ ՄԱՍԻՆ[13]

*Հայաստանի (Արմինիա) և Ատրպատականի մի մասը հոռոմների ձեռքում էր, իսկ մի մասը խազարների։ Կավատը մի պարիսպ կառուցեց այդ երկրներից մի քիչ այն կողմ ու, երբ մեռավ և իշխեց որդին՝ Անուշիրուանը, հզորացավ ու նվաճեց Ֆարղանան, Բուրաջանը և Աղը։ Նա կառուցեց Շաբուրան[14], Մասկաթ (Մազքութք) և Բաբ ալ-Աբուաբ (Դարբանդ) քաղաքները։ Իսկ սա կոչվել է Աբուաբ (դռներ), որովհետև կառուցվել է լեռան մի անցքի վրա։ Եվ [Անուշիրուանը] բնակեցրեց այդ քաղաքներում մարդկանց, որոնց նա կոչեց ալ-Սիասիջին[15]։ Շինեց նաև այլ քաղաքներ և ամեն մի դռան (կապանի) առջև քարե պալատ կառուցեց։ Վրաց (Ջուրզան)[16] երկրում կառուցեց Սուղդաբիլ քաղաքը և այնտեղ բնակեցրեց Սուղդի [բնակիչներին] ու Պարսկաստանի (Ֆարս) որդիներին։ Կառուցեց Ալանաց դուռը (Բաբ Ալլան) և Հայաստանում նվաճեց այն բոլորը, որ հոռոմների ձեռքում էր։ Շենացրեց Արդաբիլ քաղաքը և բազում բերդեր։*

*Նա գրեց Թուրքաց[17] թագավորին՝ առաջարկելով բարեկամություն ու համաձայնություն, նրա աղջկա ձեռքը խնդրեց ու ցանկացավ փեսա դառնալ նրան։ Նրանցից ամեն մեկը մյուսի աղջկա հետ ամուսնացավ։ Սակայն Խոսրովը Թուրքաց թագավոր խականին ուղարկեց մի աղջկա, որին իր կանանցից մեկը որդեգրել էր և ասաց, որ սա իմ աղջիկն է։ Իսկ Թուրքաց թագավորը ուղարկեց իր աղջկան և նրանք իրար մերձեցան։ Անուշիրուանը հրամայեց իր վստահելիներից ոմանց, որ ինչ-որ կողմից հարձակվեն Թուրքաց ճամբարի վրա և հրդեհ գցեն. այդպես էլ արեցին։ Երբ առավոտ եղավ Թուրքաց թագավորը բողոքեց այդ մասին, իսկ սա ուրացավ, ասելով թե տեղյակ չէ։ Մի քանի գիշեր անց նույնը պատվիրեց անել. Թուրքը նեղացավ, իսկ Անուշիրուանը քաղցր խոսեց և ներողություն խնդրեց։ Ապա Անուշիրուանը հրամայեց, որ կրակ գցեն իր ճամբարի այն մասի վրա, ուր կային ծղոտե խրճիթներ։ Երբ առավոտ եղավ ինքը բողոքեց Թուրքին, ասելով, որ կատարեցիր այն, ինչի համար ինձ մեղադրում էիր։ Թուրքը երդվեց, որ ոչինչ չգիտի այդ մասին։ Ասաց Անուշիրուանը՝ մեր զինվորները դժգոհ են մեր հաշտությունից, քանի որ կտրվեց նրանց տրված հասույթը և վերջ գտան ասպատակությունները։ Ես չեմ ուզում, որ նրանք այնպիսի բան անեն, որ մեր սրտերը պղտորեն և վերսկսենք թշնամությունը։ Կարծում եմ լավ կլինի, որ ինձ թույլ տաս մի պարիսպ կառուցել իմ և քո միջև, որի վրա դարպասներ կպատրաստենք։ Ով ոք քեզ*

*մոտ չի մտնի, եթե չես ուզի և մեզ մոտ կմտնի միայն նա, որին մենք կուզենանք։ [Թուրքը] համաձայնեց այս բանին։*

*Անուշիրուանը կառուցեց[19] պարիսպը ծովից սկսած մինչև լեռների գագաթը և վրան երկաթե դարպասներ դրեց ու պահակներ նշանակեց։ Ասացին Թուրքաց թագավորին, թե նա քեզ խաբեց, քո կինը նրա աղջիկը չէ և նա քեզանից պաշտպանվեց, իսկ դու այլևս ոչ մի հնար չես կարող գործադրել։*

*Անուշիրուանը թագավորներ նշանակեց այդ կողմերում. որոնցից էին Սաբիրի (Գահի) տերը, Ֆիլան շահը, Լաքզի, Մասկաթի [տերերը] և ուրիշներ։*

*Հայաստանը մնաց պարսից ձեռքում մինչև որ երևաց մահմեդականությունը և Սիասիջին [կոչվածներից] շատերը լքեցին իրենց հանձնված բերդերն ու քաղաքները, մինչև որ դրանք քայքայվեցին և այն գրավեցին խազարներն ու հոռոմները։ Այս վիճակում էր երկիրը, երբ երևան եկավ մահմեդականությունը։*

*էջ 281*

## ՈՐՄԻԶԴԻ (ՀՈՒՐՄՈՒԶ) ՈՐԴԻ ԽՈՍՐՈՎ (ՔԻՍՐԱ) ՊԱՐՈՒԵԶԻ (ԱԲԱՐՈՒԻԶ) ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Պատրաստվեց Հերակլը (Հիրակլ) և իր որդուն թողեց Կոստանդնուպոլսում (Կուսթանթինիյյա), իսկ ինքը. գնաց ոչ Շահրիբազի[19] գնացած ճանապարհով, այլ գնաց մինչև որ մտավ Հայաստան երկիրը, դիմեց Ջազիրա և կանգ առավ Մծբինի (Նասիբին) մոտ, Խոսրովը զինվորներ ուղարկեց նրա դեմ ու հրամայեց մնալ Մոսուլում։ Նա լուր ուղարկեց Շահրիբազին, որպեսզի գա իր մոտ և միասին կռվի դուրս գան Հերակլի դեմ։*

*ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ*

*ՏԱՍՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ*

*էջ 344*

**(14 փետրվար 636—1 փետրվար 637)**

## ՀԱԼԵԲԻ, ԱՆՏԻՈՔԻ ԵՎ ԱՎԱՍԻՄԻ ԱՅԼ ՔԱՂԱՔՆԵՐԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ[20]

*Երբ Աբու Ուբայդան վերջացրեց Կիննասրինի [նվաճումը] գնաց դեպի Հալեբ։ Սակայն նրան լուր հասավ, թե Կիննասրինի բնակիչները ապստամբել և դավաճանել են։ Նա նրանց դեմ ուղարկեց ալ-Սիմթ ալ-*

Քինդիին, որը պաշարեց նրանց, նվաճեց ու բռնագրավեց արջառն ու ոչխարը։ Դրանց մի մասը բաժանեց իր զորքի մեջ, իսկ մնացածը դարձրեց ավար (ղանիմա)[21]։

Աբու Ուբայդան հասավ Հալեբի մեծ արվարձանը, որը նրանից մոտիկ է։ Աբու Ուբայդան հավաքեց տարբեր արաբների և նրանց հետ հաշտություն կնքեց ջիզիա (գլխահարկ) վճարելու պայմանով։ Հետագայում դրանք մահմեդականացան։ Եկավ Հալեբ, իսկ նրա առաջապահ [զորքի] հրամանատարն էր Իյադ իբն Ղանմ ալ-Ֆիհրին։ Նրա բնակիչները ամրացան, իսկ մահմեդականները պաշարեցին նրանց։ Սակայն շուտով խնդրեցին հաշտություն և երաշխավորագիր (աման) իրենց անձերի, զավակների, քաղաքի, եկեղեցիների ու բերդի համար։ Տրվեց այն և մզկիթի համար տեղ հատկացրեց։

Նա, որ հաշտություն կնքեց Իյադն էր, իսկ Աբու Ուբայդան համաձայնություն էր տվել։ Սակայն ասվում է, որ պայմանավորվել էին նաև նրանց բնակարանները և եկեղեցիները [մահմեդականների միջև] բաժանել։ Ասվում է նաև, որ Աբու Ուբայդան Հալեբում ոչ ոքի չհանդիպեց, քանզի ժողովուրդը տեղափոխվել էր Անտիոք. գրագրություն ունեցավ հաշտության մասին և, երբ այն իրականացավ, նրանք վերադարձան։

Աբու Ուբայդան Հալեբից գնաց Անտիոք, ուր շատերը Կիննասրինից և այլ վայրերից եկել ու ամրացել էին։ Երբ նա դուրս եկավ, հանդիպեց թշնամիների մի խմբի, որին հաղթեց ու ստիպեց քաղաքում ապաստանել։ Բոլոր կողմերից պաշարեց այն, իսկ նրանք հաշտություն կնքեցին հեռանալու կամ ջիզիա (գլխահարկ)[22] [վճարելու] պայմանով։ Ոմանք հեռացան, իսկ ոմանք էլ մնացին, որոնց երաշխավորագիր (աման) տրվեց[23]։ Սակայն հետո դավաճանեցին և Աբու Ուբայդան նրանց դեմ ուղարկեց Իյադ իբն Ղանմին և Հաբիբ իբն Մասլամային, որոնք գրավեցին [քաղաքը] նախկին հաշտության պայմաններով։

Անտիոքը մեծ համբավ ուներ մահմեդականների մոտ և, երբ նվաճվեց, Օմարը[24] գրեց Աբու Ուբայդային, որ Անտիոքում մահմեդականների մի խումբ տեղավորի, նրանց դարձնի [մշտական] կայազոր և ռոճիկ չխնայի։

Աբու Ուբայդան տեղեկացավ, որ հոռոմների մի զորամաս կա Մաարատ Մասրայնի և Հալեբի միջև և գնաց նրանց դեմ, բախվեց ու հաղթեց նրանց։ Շատ պատրիկների (բաթարիկա)[25] սպանեց, գերեվարեց ու կողոպտեց։ Նվաճեց Մաարատ Մասրայնը՝ Հալեբի հաշտության պայմաններով։ Նրա ձիավորները շարժվեցին և հասան Բուկա ու գրավեցին ալ-Ջումա, Սարմայն ու Բիրայն դյուղերը և նվաճեցին ամբողջ Կիննասրինն ու Անտիոքը։

Ապա Աբու Ուբայդան եկավ Հալեպ, որի ժողովուրդը ըմբոստացել էր, իսկ նա ստիպեց նրանց հպատակվել և քաղաքի [դռները] բացել։ Եվ Աբու Ուբայդան գնաց դեպի Կուրուս, իսկ նրա առաջապահ զորքի [հրամանատարն էր] Իյադը։ Նրան դիմավորեց վանականներից մեկը հաշտություն խնդրելով։ [Իյադը] ուղարկեց նրան Աբու Ուբայդային, իսկ սա հաշտություն կնքեց Անտիոքի պայմաններով։ Նա իր ձիերը արձակելով նվաճեց ամբողջ Կուրուսի նահանգը, գրավեց Տալլ Ազազը։ Աբու Ուբայդայի զորքում էր Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլին, որն իջևանեց Կուրուսի բերդերից մեկում, և սա նրա անունով կոչվեց Հիսն (բերդ) Սալման։ Ապա Աբու Ուբայդան գնաց Մանբիջ։ Նրա առաջապահ զորքի հրամանատարն էր Իյադը և հասավ վերջինիս, երբ արդեն [Մանբիջի] բնակիչների հետ հաշտություն էր կնքել՝ Անտիոքի պայմաններով։ [Աբու Ուբայդան] ուղարկեց Իյադին Տլուքի (Դուլուք) և Ռաաբանի կողմերը և սա հաշտություն կնքեց բնակիչների հետ՝ Մանբիջի նման պայմաններով, և պարտավորեցրեց նրանց մահմեդականներին տեղյակ պահել հռոմների գործողությունների մասին։ Ամեն մի նվաճած գավառում Աբու Ուբայդան կառավարիչներ նշանակեց և խմբեր բնակեցրեց և կարիք ունեցող վայրերը պարենավորեց։ Ապա գնաց Բալիս և Հաբիբ իբն Մասլամայի հետ զորք ուղարկեց Կասրին։ Վերջինս հաշտություն կնքեց բնակիչների հետ՝ ջիզիա վճարելու կամ հեռանալու պայմանով։ Մեծամասնությունը հեռացավ Ռումի երկիրը, Ջազիրա և Ջիսր (կամուրջ) Մանբիջ գյուղը։ Սակայն այդ ժամանակ դեռ կամուրջ չկար, այլ Օմար խալիֆայի օրոք սարքվեց՝ ամառային հարձակումների համար։ Ասվում է, որ այնտեղ կային հին [կամուրջի] ավերակներ և մահմեդականները այս կողմից անցնելով Եփրատը՝ գրավել էին Ասորիքը (Շամ)։

Աբու Ուբայդան վերադարձավ Պաղեստին (Ֆիլասթին)։ Ալ-Լուքամ (Ամանոս) լեռների վրա կար մի քաղաք՝ կոչված Ջարջարումա, իսկ ժողովուրդը կոչվում էր Ջարաջիմա[26]։ Հաբիբ իբն-Մասլաման Անտիոքից այնտեղ գնաց և հաշտության պայմանագրով գրավեց, ըստ որի նրանք պարտավոր էին օժանդակություն ցույց տալ մահմեդականներին։

Այդ տարում Աբու Ուբայդա իբն-ալ-Ջառահը զորք ուղարկեց Մայսարա իբն Մասրուկ ալ-Աբսիի հետ, որն Անտիոքի կողմերում անցավ Բաղրասի լեռնանցքը դեպի Ռումի երկիրը։ Նա առաջինն էր, որ անցել էր այս լեռնանցքը և հանդիպեց մի խումբ հռոմների։ Նրանց հետ էին արաբներ Ղասսան, Տաննուխ և Իյյադ [ցեղերից][27], որոնք ուզում էին Հերակլին միանալ։ [Մայսարան] հարձակվեց նրանց վրա և մեծ կոտորած արեց։ Ապա նրան միացավ նաև Մալիք իբն Աշտար ալ-Նախին՝ օգնական զորք բերելով Անտիոքում գտնվող Աբու Ուբայդայից։ Նրանք վերջացրին ու ապահով վերադարձան։

[Աբու Ուբայդան] մի ուրիշ զորք ուղարկեց Մարաշ Խալիդ իբն ալ-Վալիդի հետ, որը գրավեց ու բնակիչներին երաշխավորագրով հեռացնելուց հետո կործանեց։ Մի ուրիշ զորք ևս ուղարկեց Հաբիբ իբն Մասլամայի հետ Հադաս բերդը։ Սա կոչվել է Հադաս (մատղաշ)[28], որովհետև մահմեդականները այնտեղ գտան մի երիտասարդ տղայի, որը նրանց հետ կռվի բռնվեց։ Ուստի և ասվել է Դարբ (լեռնանցք) ալ-Հադաս (երիտասարդի)։ Ասվում է նաև, որ մահմեդականներն այնտեղ վիրավորվել են և այդ պատճառով կոչվել է Դարբ ալ-Հադաս (դեպքի)։ Օմայանները այն կոչում էին Դարբ ալ-Սալամա (ապահովության լեռնանցք)։

## ՏԱՍՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(23 հունվար 638—11 հունվար 639)

*էջ 372—375*

## ՋԱԶԻՐԱՅԻ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում նվաճվեց Ջազիրան[29]։

Հիշել ենք, որ Սաադը զորք էր ուղարկել Ջազիրա։ Ելավ Իյադ իբն Ղանմը իր ընկերակիցների հետ և Սուհայլ իբն Ադդիին ուղարկեց Ռակկա։ . . . . .

Երբ գրավեցին Ռակկան ու Մծբինը (Նասիբին) Իյադն իր հետ վերցրեց Սուհայլին և Աբդալլահին և առաջնորդեց զորքը դեպի Խառան (Հառան)։ Երբ այնտեղ հասավ, բնակիչները համաձայնեցին ջիզիա վճարել և նա ընդունեց....

Իյադն իր զինվորներով շարժվեց ու կանգնեց Եդեսիայի (Ռուհա) առջև, և բնակչությունը համաձայնություն տվեց հաշտվել Խառանի պայմաններով։ Նա ուղարկեց Աբու Մուսային Մծբին, որը նվաճեց այն։ Ապա Իյադը անձամբ գնաց Դարա և նվաճեց։

Օսմանը Իբն Աբու-լ-Ասին ուղարկեց Չորրորդ Հայաստան[30], և սա կռվեց նրա բնակիչների դեմ, իսկ Սաֆուան իբն Մուաթթալը նահատակվեց։ Օսմանը նրա բնակիչների հետ հաշտություն կնքեց ջիզիա վճարելու պայմանով՝ ամեն մի ծխից մեկ դինար։ Ապա տեղի ունեցավ Պաղեստինի, Կեսարիայի (Կայսարիյա) նվաճումը և Հերակլի փախուստը։ Ըստ այսմ, Ջազիրայի նվաճումը Իրաքի արաբների նվաճումներից էր, սակայն մեծամասնությունը համոզված է, որ սա Ասորիքի (Շամ) արաբների նվաճումն է, քանի որ Աբու Ուբայդան էր Իյազին ուղարկել Ջազիրա....

Եվ Իյադը ասպատակում է ու վերադառնում Եդեսիա։ Նա նվաճեց Սամոսատը (Սումայսաթը) և հասավ Սարուջ և Ռաս Քայֆա և ալ-Արդ ալ-Բայդա և նրանց բնակիչները Եդեսիայի համաձայնագրի պայմաններով

հաշտություն կնքեցին։ Հետո Սամոսատի ժողովուրդը դավաճանեց, իսկ Իյադը վերադարձավ, պաշարեց ու գրավեց։ Ապա եկավ Կառիյատ՝ Եփրատի վրա, որը Ջիսր Մանբիջից այն կողմ գտնվող շրջանն է ու նվաճեց այն։ Ապա շարժվեց դեպի Ռաս Այն, որը Այն ալ-Վարդա [վայրն] է, և սա դիմադրեց նրան։ Նա [պաշարված] թողեց ու գնաց Տալլ Մաուզան, որը նվաճեց, Եդեսիայի պայմաններով, տասնինը թվին։ Ապա շարժվեց դեպի Ամիդ ու պաշարեց այն. բնակիչները կռվի ելան, սակայն հաշտության համաձայնեցին՝ Եդեսիայի պայմաններով։ Նույն ձևով նվաճեց նաև Նփրկերտը[31] (Մայաֆարիկին), Քաֆր Տուսան և ապա շարժվեց դեպի Մծբին (Նասիբին), որի բնակիչները կռվեցին և ապա հաշտություն կնքեցին՝ Եդեսիայի համաձայնության պայմաններով։ Նա գրավեց Թուր Արդինը, Մարդինի բերդը և ուղղվեց դեպի Մոսուլ և գրավեց երկու բերդերից մեկը։

Ասվում է, որ դեռ այնտեղ չէր հասել, երբ եկավ Անձևացյաց (Ջավազան)[32] պատրիկը և հաշտության պայմանագիր կնքեց, ապա [Իյադը] գնաց Արզն և գրավեց այն, մտավ լեռնանցքը և անցավ Բաղեշ[33] (Բադլիս), հասավ Խլաթ, որի պատրիկը հաշտություն կնքեց նրա հետ, և վերջապես հասավ ալ-Այն ալ-Համիդա (Թթու ջուր)[34] Հայաստանում։

Ապա վերադարձավ Ռակկա, գնաց Եմեսա (Հիմս) և մեռավ քսան թվականին։

Օմարը [այս կողմերի] կառավարիչ նշանակեց Սաիդ իբն Ամիր իբն Հուզայմին, որը սակայն քիչ անց մեռավ։ Ապա նա կառավարիչ նշանակեց Ումայր իբն Սաադ ալ-Անսարիին, որը սաստիկ կռվից հետո նվաճեց Ռաս Այնը։ Ասվում է, որ Իյադն է Ումայր իբն Սաադին Ռաս Այն ուղարկել, և սա նվաճել է այն՝ սաստիկ պայքարից հետո։ Ասվում է նաև, որ Օմարը Իյադի մահվանից հետո է Աբու Մուսա ալ-Աշարիին Ռաս Այն ուղարկել։ Ասվում է նաև, որ Խալիդ իբն ալ-Վալիդը Իյադի հետ անձամբ ներկա է եղել Ջազիրայի նվաճմանը և Ամիդում մտել է մի բաղնիք և զվարճացել գինով, իսկ Օմարը պաշտոնանկ էր արել նրան։ Ասվում է, որ Խալիդը ոչ ոքի դրոշի տակ չի ընթացել, բացի Աբու Ուբայդայից, սակայն ճշմարտությունը միայն ալլահը գիտի։

Երբ Իյադը նվաճեց Սամոսատը, Մալաթիա ուղարկեց Հաբիբ իբն Մասլամային, որը ուժով նվաճեց այն, սակայն հաշտություն կնքելուց հետո բնակիչները դրժեցին [պայմանը]։ Երբ Մուավիան նշանակվեց Ասորիքի (Շամ) ու Ջազիրայի կառավարիչ կրկին այնտեղ ուղարկեց Հաբիբ իբն Մասլամային, որը սրով նվաճեց այն և մահմեդական ռազմիկների տեղավորեց այնտեղ և կառավարիչ նշանակեց։

## ՔՍԱՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(10 դեկտեմբեր 641—29 նոյեմբեր 642)

*էջ 9*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Ասվում է, որ քսան թվականին (640/641) ամիրներն (կառավարիչներ) էին Ումայր իբն Սադր՝ Դամասկոսի (Դիմաշկ), Հաուրանի, Եմեսայի (Հիմս), Կիննասրինի և Ջազիրայի (Վերին Միջագետք) վրա, իսկ Մուավիան՝ Բալկայի, Հորդանանի (Ուրդունի), Պաղեստինի (Ֆիլասթին), Ծովափի (սավաhիլ), Անտիոքի (Անթաքիա), Կիլիկիայի (Կիլիկիյյա) և Մաառատ Մասրայնի վրա։ Այդ ժամանակ Աբու Հաշիմ իբն Ուտբա իբն Ռաբիան հաշտություն կնքեց Կիլիկիայի համար։*

## ՔՍԱՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(30 նոյեմբեր 642—18 նոյեմբեր 643)

*էջ 13*

### ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

*Ասվում է, երբ Նաիմը (Նուայմ) գրավեց Ռեյը (Ռայյ), ոչ թե Աբու Դուջանային, այլ Սիմաք իբն Խարաշա ալ-Անսարիին ուղարկեց որպես օգնական Բուքայր իբն Աբդալլաhի՝ Օմար [խալիֆայի] հրամանով Ատրպատականում կռվելու համար։ Սիմաքը գնաց Բուքայրի մոտ, որը, երբ հասավ Ատրպատական, կանգ առավ և Ջարմիզան լեռը բարձրացավ, բախվեց [մարզպան] Ֆառուխզադի որդի Իսֆանդիարի հետ, որը փախչում էր Վաջի-Ռուդից։ Սա նրա առաջին կռիվն էր Ատրպատականում։ Պարսիկները պարտվեցին և Բուքայրը գերի բռնեց Իսֆանդիարին։ Իսֆանդիարը ասաց նրան՝ հաշտությո՞ւնն ես նախընտրում, թե՞ պատերազմը, ասաց՝ իհարկե հաշտությունը։ Ասաց՝ այդ դեպքում քեզ մոտ պահիր ինձ, քանզի Ատրպատականի բնակիչները քեզ չեն հպատակվի, եթե ես քեզ հետ հաշտություն չկնքեմ կամ նրանց առջև հանդես չգամ, այլ կգնան շրջակա լեռները՝ Կաբջի (Կովկասի) մարդկանց և Ռումի երկիրը, իսկ ովքեր բերդերում են փակված կմնան որոշ ժամանակ։ Եվ [Բուքայրը] նրան պահեց իր մոտ ու երկիրը նրան հպատակվեց, բացի ամ-*

բացված բերդերից։ Երբ նրա մոտ օգնության եկավ Սիմաք Իբն Խարաշան, Իսֆանդիարը դեռ մնում էր գերության մեջ։ [Բուքայրը] կարողացավ նվաճել շրջակա գավառները, իսկ Ուտբա իբն Ֆարկադը նույնպես նվաճեց մերձակա գավառները։

Բուքայրը գրեց Օմար [խալիֆային] առաջ շարժվելու թույլտվություն խնդրելով։ Սա թույլատրեց նրան առաջ խաղալ դեպի ալ-Բաբ և իր մինչ այդ նվաճված հողերի վրա որևէ փոխանորդ նշանակել։ [Բուքայրը] իրեն փոխանորդ նշանակեց Ուտբա իբն Ֆարկադին, իսկ Ուտբան Բուքայրի նվաճած գավառների վրա նշանակեց Սիմաք իբն Խարաշային։ Օմարն ամբողջ Ատրպատականի վրա [կառավարիչ] նշանակեց Ուտբա իբն Ֆարկադին։

Ֆառուխզադի որդի Բահրամը գնաց Ուտբայի անցած ճանապարհով և այնտեղ սպասեց իր զորքով մինչև որ հասավ Ուտբան, նրանք կռվեցին, իսկ Բահրամը պարտվեց։ Երբ Իսֆանդիարը, որը գերության մեջ էր Բուքայրի մոտ, լսեց եղելությունը. ասաց՝ այժմ հաշտությունը կայացած համարեք և պատերազմը վերջացած։ Եվ նա հաշտություն կնքեց, և նրան հավանություն տվեց ամբողջ Ատրպատականի ժողովուրդը ու խաղաղություն տիրեց Ատրպատականում։ Այդ մասին Բուքայրը և Ուտբան գրեցին Օմարին՝ ուղարկելով մեկ հինգերորդը [ռազմական ավարի]։

Երբ Օմարը Բուքայրի նվաճած հողերի կառավարչի պաշտոնը տվեց Ուտբային, Ատրպատականի ժողովրդին հաշտության պայմանագիր ուղարկեց։

էջ 14

## ԱԼ-ԲԱԲԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում տեղի ունեցավ ալ-Բաբի (Դարբանդ) նվաճումը։

Մինչ այդ Օմարը Աբու Մուսային [ալ-Աշարի] ետ էր ուղարկել Բասրա և ալ-Բաբ ուղարկել Սուրակա իբն Ամրուին, որը կոչվում էր Զու-լ-Նուր (Լուսավոր), իսկ նրա առաջապահ զորքին հրամանատար նշանակել Աբդ ալ-Ռահման Իբն Ռաբիային, որը նույնպես կոչվում էր Զու-լ-Նուր։ Երկու թևերից մեկի վրա [հրամանատար էր] Հուզայֆա իբն Ուսայդ ալ-Ղաֆֆարին, իսկ մյուսի վրա՝ Բուքայր իբն Աբդալլահ ալ-Լայսին, որն ավելի շուտ էր հասել ալ-Բաբ։ Օմարը ռազմական ավարի տնօրինող նշանակեց Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլիին։ Սուրական առաջ խաղաց։ Երբ անցավ Ատրպատականից Բուքայրը հասել էր ալ-Բաբ։ Օմար [խալիֆան] Սուրակային, որպես օգնական, Ջազիրայից ուղարկել էր Հաբիբ իբն Մասլամային, ուր նրա փոխարեն նշանակել էր Զիադ իբն Հանզալային։

*Երբ Աբդ ալ-Ռահման իբն Ռաբիան կանգ առավ ալ-Բաբի առջև, ուր այդ ժամանակ կար Շահրիար թագավորը, որը Իսրայելի որդիներին փչացնող և նրանց հետ Ասորիքը նվաճող Շահրիարի սերնդից էր, սա գրեց նրան և երաշխավորագիր խնդրեց, որ նրա մոտ գա։ Այդպես էլ եղավ, և եկավ ու ասաց՝ ես գտնվում եմ դաժան թշնամու և բազմատեսակ անազնիվ ազգերի դիմաց։ Ազնիվ և խելացի մարդը չպետք է նրանց օգնի ընդդեմ ազնիվ մարդու։ Ես ընդհանուր ոչինչ չունեմ Կովկասի (Կաբջի)[35] բնակիչների և հայերի հետ։ Դուք արդեն հաղթել եք իմ երկրին ու ազգին և ահա այսօր ես ձեզ հետ եմ, իմ ձեռքը ձեր ձեռքում է, ջիզիան ձեզ եմ վճարելու, կօգնեմ ձեզ և կանեմ ինչ որ կամենաք։ Մի ծանրաբեռնեք մեզ ջիզիայով, թե չէ մեզ կթուլացնեք և օգնած կլինեք ձեր թշնամիներին։*

*Աբդ առ-Ռահմանը նրան (Շահրիարին) ուղարկեց Սուրակայի մոտ, որի հետ նույն ձևով խոսեց, և Սուրական ընդառաջեց նրան ու ասաց՝ ջիզիան կվճարի նա, ով մնում է [տանը] և չի պատերազմում թշնամու հետ։ [Շահրիարը] համաձայնեց նրա հետ, իսկ Սուրական այդ մասին գրեց Օմարին, որը թույլատրեց և հավանություն տվեց։*

*էջ 14*

## ՄՈՒՂԱՆԻ (ՄՈՒԿԱՆ) ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

*Երբ Սուրական ավարտեց ալ-Բաբի [նվաճումը], ուղարկեց Բուքայր Իբն Աբդալլահին, Հարիր իբն Մասլամային, Հուզայֆա իբն Ուսայդին և Սալման իբն Ռաբիային՝ Հայաստանը շրջապատող լեռների բնակիչների դեմ։ Նա Բուքայրին ուղարկեց Մուղան (Մուկան), Հաբիբին՝ Տփղիս (Տաֆլիս), Հուզայֆային՝ ալանաց (ալ-Լան) լեռները, իսկ Սալմանին՝ մյուս կողմը։ Սուրական գրեց Օմարին նվաճումների և այդ անձնավորություններին վերոհիշյալ վայրերը ուղարկելու մասին։ Օմարն անհանգստացավ, քանի որ այդ գործը գլուխ չէր գա առանց մթերքի, քանզի [նվաճվող] երկիրը ընդարձակ էր և զորքը մեծ էր։ Սակայն երբ [նվաճված ժողովուրդը] վստահեց նվաճողներին և նրան դուր եկավ մահմեդականությունն ու նրա արդարությունը, մեռավ Սուրական իրեն փոխանորդ թողնելով Աբդ ալ-Ռահման իբն Ռաբիային։ Զորավարներից ոչ մեկը նոր բան չնվաճեց, բացի Բուքայրից, որը Մուղանի ժողովրդին ցաք ու ցրիվ արեց, և նրանք համաձայնեցին կրկին վճարել ջիզիան ամեն մի մեծահասակից մեկ դինարի չափով։ Այս նվաճումը քսանմեկ թվին էր։*

*Երբ Օմարը լսեց Սուրակայի մահը և Աբդ առ-Ռահման իբն Ռաբիա-*

յի նրան փոխարինելը, հաստատեց Աբդ ալ-Ռահմանին որպես ալ-Բաբ սահմանային քաղաքի [կառավարիչ] և հրամայեց նրան արշավել թուրքերի դեմ։

էջ 14—15

## ԹՈՒՐՔԵՐԻ (ԽԱԶԱՐՆԵՐԻ) ԴԵՄ ԱՐՇԱՎԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Երբ Օմար [խալիֆան] հրամայեց Աբգ-ալ-Ռահման իբն Ռաբիային արշավել թուրքերի դեմ, սա դուրս եկավ իր զորքով և անցավ ալ-Բաբը։ Շահրիարը հարցրեց նրան՝ ի՞նչ ես ուզում անել։ Ասաց՝ ուզում եմ արշավել Բալանջարի և թուրքերի դեմ։ Ասաց՝ մենք գոհ կլինենք, եթե նրանք մեզ հանգիստ թողնեն ալ-Բաբից այս կողմ։ Ասաց Աբդ ալ-Ռահմանը՝ սակայն մենք չենք գոհանա, մինչև որ արշավենք նրանց երկիրը։ Ինձ հետ կան այնպիսի մարդիկ, որ եթե մեր ամիրը՝ (խալիֆան) թույլ տա [այդ երկրի] խորքերը գնալու, ալլահը վկա ես նրանց հետ կհասնեմ մինչև Ռում*։ Ասաց՝ ովքեր են դրանք, պատասխանեց՝ մարդիկ են, որոնք ընկերացել են ալլահի առաքյալին և լծվել են այս գործին անկեղծ ցանկությամբ։ Նրանք հպարտության և արժանապատվության տեր էին դեռ նախամահմեդական շրջանում և այժմ առավել ևս ավելացել է հպարտությունն ու արժանապատվությունը։ Նրանք այս գործը երբեք չեն լքի, հաղթանակը նրանց հետ կլինի, եթե ուրիշները չլքեն և երես չդարձնեն։

Եվ նա արշավեց Բալանջար Օմարի ժամանակ։ Ասացին [թուրքերը]՝ նա մեզ վրա չէր համարձակվի արշավել, եթե նրա հետ չլինեին հրեշտակները, որոնք փրկում էին նրանց մահից։ Սրանք փախան ու պատսպարվեցին բերդերում, իսկ նա վերադարձավ ավարով ու հաղթանակով։ Նրա ձիավորները հասան ալ-Բայդա [քաղաքը]՝ Բալանջարից երկու հարյուր փարսախ [հեռավորության] վրա, ապա վերադարձավ, և նրա մարդկանցից ոչ ոք չէր սպանվել։

Եվ [Աբդ ալ-Ռահմանը] նրանց դեմ արշավանքներ կատարեց նաև Օսման իբն Աֆֆան [խալիֆայի] օրոք և նախկինի նման հաղթանակ տարավ։ Սակայն Քուֆայի [ռազմիկների] տրամադրությունը փոխվեց, քանզի Օսմանը կրոնափոխ եղածներին օգտագործում էր [զորքի մեջ], որպեսզի ուղիղ ճանապարհի բերի նրանց։ Բայց դա նրանց չուղղեց, այլ առավել ևս փչացան։

Դրանից հետո Աբդ ալ-Ռահմանը նորից արշավեց. թուրքերը սկսեցին զայրանալ ու հավաքվեցին անտառներում։ Նրանցից մեկը հանկար-

* Բնագրում կա՝ պարիսպը (ռադմ)։

*ծակի նետահարեց մի մահմեդականի և սպանեց նրան, իսկ սրա ընկերները լքեցին ու փախան։ Այդ ժամանակ [խազարները] դուրս եկան ու կռիվն սկսեցին։ Կռիվը սաստկացավ և մեկը օդի մեջ գոռաց՝ համբերությո՜ւն Աբդ ալ-Ռահմանի մարդիկ, ձեզ սպասում է դրախտը։ Կռվեց Աբդ ալ-Ռահմանը, մինչև որ սպանվեց, իսկ նրա ընկերակիցները ցրվեցին։ Դրոշը վերցրեց նրա եղբայրը՝ Սալման իբն Ռաբիան և շարունակեց կռվել։ Նորից մեկը գոռաց՝ համբերությո՜ւն Սալմանի մարդիկ։ Սալմանն ասաց՝ իսկ մի՞թե անհամբերություն ես տեսնում։ Դրանից հետո նա իր մարդկանցով և Աբու Հուրայրա ալ-Դուսիի հետ նահանջեց Գեղան (Ջիլան) և այնտեղից անցան Վրկան (Ջուրջան)։ Ապա թուրքերը հանդուգն դարձան, և նույնիսկ, խլեցին Աբդ ալ-Ռահմանի դիակը, որի միջոցով մինչև օրս իրենց աստծուց անձրև են խնդրում։*

*էջ 15*

## ՆՎԱՃՎԱԾ ԵՐԿՐՆԵՐԸ ՔՈՒՖԱՑԻՆԵՐԻ ԵՎ ԲԱՍՐԱՑԻՆԵՐԻ ՄԻՋԵՎ ԲԱԺԱՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ նույն տարում Օմար [խալիֆան] նվաճված երկրները վերաբաժանեց քուֆացիների ու բասրացիների միջև...*

*Երբ կուսակալ դարձավ Մուավիան, որը երկու Իրաքներից* եկած մարդկանցից, որոնք նրան ներկայացել էին Ալիի [խալիֆայության] ժամանակ, կազմակերպեց Կիննասրինի զորքը, իսկ Կիննասրինը մինչև այդ Եմեսայի (Հիմսի) գավառներից էր, ապա նա տվեց նրանց (քուֆացիների) բաժինը՝ Իրաքի, Ատրպատականի, Մոսուլի և ալ-Բաբի (Դարբանդի) նվաճումներից, քանզի այդ բոլորը քուֆացիների նվաճումներն էին։ Իսկ Ջազիրայի ու Մոսուլի բնակչությունը խայտաբղետ էր. Ալիի օրոք այստեղ էին փոխադրվել վերոհիշյալ երկու քաղաքներից եկած գաղթականներ, և ահա Մուավիան քուֆացիներին տվեց իրենց բաժինը։*

*Հայաստանի ժողովուրդը ապստամբեց Մուավիայի ժամանակ, և սա Հաբիբ իբն Մասլամային նշանակեց ալ-Բաբի կառավարիչ, իսկ Հաբիբը այդ ժամանակ Վիրքում (Ջուրզան) էր։ Նա գրեց Տփղիսի և վրաց (Ջուրզանի) լեռների ժողովուրդներին, և նրանք հպատակվեցին նրան։*

---

* *Պարսկական Իրաքը (Համադան քաղաքով) և արաբական Իրաքը (Միջագետք)։*

## ՔՍԱՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

էջ 25

### (19 նոյեմբեր 643—6 նոյեմբեր 644)

### ՍԱԼՄԱ ԻԲՆ ԿԱՅՍ ԱԼ-ԱՇՋԱՅԻԻ ԵՎ ՔՐԴԵՐԻ ՄԱՍԻՆ

*Օմար խալիֆան, երբ տեսնում էր, որ մահմեդականների զորք էր հավաքվել, հրամայում էր, որ զորավար նշանակվի գիտության և մահմեդական իրավունքին ծանոթ որևէ մարդ։ Եվ ահա հավաքվել էր նրա մոտ մահմեդականների մի զորք և նա նշանակեց Սալմա իբն Կայս ալ-Աշջայիին։ Ասաց՝ գնա՛ ալլահի անունով, կռվի՛ր ալլահի համար՝ ալլահին չհավատացողների դեմ։ Երբ թշնամու հանդիպեք, կո՛չ արեք մահմեդականություն ընդունել, եթե ընդունեն կմնան իրենց երկրում և կվճարեն զաքատ[37], բայց ֆայից[38] բաժին չեն ունենա։ Եթե Ձեզ հետ շարժվեն (կռվի գնան), ապա կունենան ձեր իրավունքները և ձեր պարտականությունները։ Սակայն, եթե մերժեն [ընդունել մահմեդականությունը], ապա առաջարկեցեք վճարել ջիզիա։ Եթե ընդունեն, վերցրեք նրանցից [ջիզիան], սակայն, եթե այս էլ մերժեն, կռվեցե՛ք նրանց դեմ։ Եթե ապաստանեն ամրություններում և ապա խնդրեն ձեզանից, որ իջնեն [ամրություններից] վստահելով ալլահի ու նրա մարգարեի դատաստանին կամ ալլահի հովանավորությանը (զիմմա), մի՛ ընդառաջեք նրանց, քանզի չգիտեք, կստանա՞ք ալլահի ու նրա մարգարեի դատաստանը և հովանավորությունը, թե՞ ոչ։*

*Ասվում է, որ նրանք առաջ խաղացին ու հանդիպեցին թշնամի հեթանոս քրդերի և առաջարկեցին մահմեդականություն կամ ջիզիա, սակայն սրանք չհամաձայնեցին։ Կռվեցին նրանց հետ և փախուստի մատնեցին [քրդերին], կոտորեցին ռազմիկներին, գերեվարեցին երեխաներին և իրենց միջև բաժանեցին։*

էջ 40

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մուավիան ամառային արշավանք կատարեց, մինչև որ հասավ Ամորիոն (Аммурийа) և իր հետ էր ալլահի առաքյալի ընկերներից Իբադա իբն ալ-Սամիտը, Աբու Այյուբ ալ-Անսարին, Աբու Ձուրրը և Շադդադ իբն Աուսը։*

## ՔՍԱՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(28 նոյեմբեր 645—16 նոյեմբեր 646)

*Էջ 41—42*

### ԱԼԵՔՍԱՆԴՐԻԱՅԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ալեքսանդրիայի (Իսքանդարիյյա) բնակիչներն ապըստամբեցին և իրենց հաշտության [պայմանադիրը] խախտեցին։*

*Բանն այն է, որ հոռոմները դժգոհ էին, որ մահմեդականները գրավել էին Ալեքսանդրիան և կարծում էին, որ իրենք ապահով չեն լինի իրենց երկրում՝ Ալեքսանդրիան կորցնելուց հետո։ Նրանք գրեցին ներսում եղած հոռոմներին ու դրդեցին նրանց հաշտության [պայմանագիրը] խախտելու. վերջիններս ընդունեցին։*

*Կոստանդնուպոլսից նրանց մոտ եկավ մի մեծ բանակ. որի հրամանատարն էր Մանուել (Մանուիլ)[39] ներքինին։ Նրանք այնտեղ ափ դուրս եկան և նրանց միացան ներսում եղած հոռոմները, սակայն ալ-Մուկաուկիսը (պատրիարքը) չհամաձայնեց նրանց հետ, այլ հավատարիմ մնաց հաշտության [պայմանագրին]։ Երբ լուրը հասավ Ամրու իբն ալ-Ասին, շարժվեց նրանց դեմ, և հոռոմներր, նույնպես, դուրս եկան նրա դեմ։ Նրանք հանդիպեցին, և տեղի ունեցավ սաստիկ ընդհարում։ Հոռոմները պարտվեցին և մահմեդականները հետապնդեցին նրանց մինչև որ մտցրեցին Ալեքսանդրիա և սաստիկ կոտորած արեցին քաղաքում։ Սպանվածների մեջ էր նաև Մանուել (Մանուիլ) ներքինին։ Երբ հոռոմներր դուրս եկան քաղաքից, իրենց հետ տարան բոլոր գյուղերի բնակիչների ունեցվածքը, լինեն դրանք իրենց համակիր [գյուղեր], թե՞ հակառակորդ։ Երբ մահմեդականներր հաղթեցին, այն գյուղերի ժողովուրդը, որ [հոռոմներին] դեմ էր, ասաց Ամրուին՝ հոռոմները վերցրին մեր գրաստը և փողերը, իսկ մենք ձեզ չենք դավաճանել և հպատակ էինք ձեզ։ Նա ստուգումից հետո վերադարձրեց նրանց փողերը ինչքան որ նրանք կարող էին ապացուցել։ Եվ Ամրուն քանդեց Ալեքսանդրիայի պարիսպները այն թողնելով առանց պարսպի։*

*Էջ 43—44*

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Երբ Օսմանը Վալիդին Քուֆայի կառավարիչ նշանակեց, Ուտբա իբն Ֆարկադին հեռացրեց Ատրպատականից, իսկ սրա ժողովուրդը ապստամ-*

բեց: Վալիդը հարձակվեց նրանց վրա քսանհինգ թվականին՝ (645/646) առաջապահ գնդի հրամանատար ունենալով Արգալլահ իբն Շուբայլ ալ-Ահմասիին։ Նա արշավեց Մուզանի, Բիրի և ալ-Թայլասանի ժողովրդի վրա. նվաճեց, կողոպտեց ու գերեվարեց։ Ատրպատականի ժողովուրդը հաշտություն խնդրեց և նա համաձայնեց՝ Հուզայֆայի հաշտության պայմաններով, ըստ որի [հարկը] ութհարյուր հազար դիրհեմ էր։ Դրամն ստանալով նա զորքը ցրեց, իսկ Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլիին ուղարկեց Հայաստանի ժողովրդի դեմ տասներկու հազարով։ Սա գնաց Հայաստան՝ սպանեց, գերեվարեց ու կողոպտեց, ապա լի ձեռքերով գնաց Վալիդի մոտ։ Ետ եկավ նաև Վալիդը՝ հաղթական ավարով։ Նա ուղղվեց դեպի Մոսուլ, ապա եկավ ալ-Հադիսա և այնտեղ կանգ առավ։

Այստեղ նամակ ստացավ Օսման [խալիֆայից], որը գրում էր, թե՝ Մուավիա իբն Աբու Սուֆիանը տեղեկացրել է, որ հոռոմները հարձակվել են մահմեդականների վրա հոծ բազմությամբ։ Գտնում եմ, որ քուֆացիք պետք է օգնեն իրենց եղբայրներին։ Երբ նամակս ստանաս, մի քաջ և ուժեղ մարդու ուղարկիր ութ հազար կամ ինն հազար [ռազմիկների] հետ, այնտեղից, ուր կստանաս իմ նամակը, ողջույն։

Ելավ Վալիդը ու ծանոթացրեց մարդկանց այդ գործին։ Նա նշանակեց Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլիին, որը ութ հազար հոգու հետ համաձայնեց [կռվի գնալ]։ Ասորիքի զորքի հետ գնացին Ռումի երկիրը։ Այդ ժամանակ Ասորիքի արաբների զորքի հրամանատարն էր Հաբիբ իբն Մասլամա իբն Խալիդ ալ-Ֆիհրին, իսկ քուֆացիների զորքի [հրամանատարն] էր Սալման իբն Ռաբիան։ Նրանք արշավանքներ կատարեցին Ռումի երկրում և գերեվարեցին ինչքան որ կամենում էին ու նրանց ձեռքերը լցվեց կողոպուտով և շատ բերդեր գրավեցին։

Ասվում է նաև, թե Սալման իբն Ռաբիային՝ Հաբիբ իբն Մասլամային օգնական ուղարկողը Սաիդ իբն ալ-Ասն էր։ Բանն այն է, որ Օսման [խալիֆան] գրել էր Մուավիային՝ հրամայելով Հաբիբ իբն Մասլամային ուղարկել Ասորիքի արաբների հետ արշավելու Հայաստան։ Նա ուղարկեց նրանց և սա եկավ Կարնո քաղաքը (Կալիկալա), պաշարեց այն և այնքան նեղեց բնակիչներին, որ նրանք երաշխավորագիր խնդրեցին՝ հեռանալու կամ ջիզիա վճարելու պայմանով։ Իրոք շատերը հեռացան ու գնացին Ռումի երկիրը։ Հաբիբն իր հետ եղած [ռազմիկների] ընկերակցությամբ այստեղ մի քանի ամիս մնաց։

Սա կոչվել է Կալիկալա[40], որովհետև Արմինիակուսի պատրիկի կինը, որի անունը Կալի էր, կառուցել էր այս քաղաքը և կոչել Կալի Կալա (Կարնո քաղաք), այսինքն Կալիի բարեգործություն, իսկ արաբները արաբացնելով, ասել են Կալիկալա։ Ապա նա լսեց, որ Արմինիակուսի պատրիկը (սա այն երկիրն է, որն այժմ Կիլիջ Արսլան սուլթանի որդիների ձեռքումն

է, այսինքն՝ Մալաթիա, Սեբաստիա (Սիվաս)[41], Ակսարա, Իկոնիա և այն կողմ եղած երկրները մինչև Կոստանդնուպոլիս), որի անունն էր ալ-Մաուրիան (Մավրիանոս)[42], գալիս էր իր կողմը ութսուն հազար հոռոմներով ու թուրքերով։ Հաբիբը այդ մասին տեղեկացրեց Մուավիային, իսկ Մուավիան գրեց Օսմանին։ Օսմանն ուղարկեց Սաիդ իբն ալ-Ասին, հրամայելով օգնել Հաբիբին, և սա, ինչպես ասվեց, ուղարկեց Սալման իբն Ռաբիային վեց հազար [ռազմիկներով]։

Հաբիբը որոշեց հոռոմների վրա գիշերը հարձակվել և այդ բանը լսեց նրա կինը՝ Ումմ (մայր) Աբգալլահը, Յազիդ ալ-Քալբիի դուստրը և ասաց՝ ո՞ւր է քո հանդիպման վայրը, ասաց [Հաբիբը]՝ Մաուրիանի վրանում կամ դրախտում։ Նա գիշերանց հարձակվեց ու սպանեց դիմադրողներին, ապա վերադարձավ վրանները և գտավ, որ կինն իրենից առաջ էր հասել։ Սա առաջին կինն էր արաբների մեջ. որի համար վրանում վարագույր էր պատրաստվել։ Երբ Հաբիբը մեռավ, նրա հետ ամուսնացավ ալ-Դահհակ իբն Կայսը, և նա սրա որդու մայրը դարձավ։

Երբ հոռոմները պարտվեցին, Հաբիբը վերադարձավ Կարնո քաղաք (Կալիկալա), ապա գնաց և կանգ առավ Մարդաղիում (Մարբալա)։ Նրա մոտ եկավ Խլաթի[44] պատրիկը՝ Իյադ իբն Ղանմի պայմանագրով և [Հաբիբը] ըստ այնմ վարվեց նրա հետ։ Պատրիկն իր վրա դրված հարկը բերեց նրան և Հաբիբը իջավ Խլաթ ապա գնաց առաջ և նրան ընդունեց Մոկսի (Մուքս) տերը, որը Վասպուրականի (ալ-Բուսֆուռաջան) գավառներից էր և սրան իր տիրույթներում վերահաստատեց։ Այստեղ նա գնաց Արտաշատ (Արդաշաթ), որը մի գյուղ էր, ուր կիրմիզ[45] է լինում, որով ներկում են։ Նա իջավ Դվինի (Դաբիլ)[46] գետի առջև և իր ձիավորներին ուղարկեց ու պաշարեցին քաղաքը։ Բնակիչները ամրացան ներսում, իսկ [ինքը] քարանետ մեքենա (մանջանիկ) դրեց և նրանք երաշխավորագիր (աման) խնդրեցին։ Նա ընդառաջեց և ապա իր ձիավորներին առաջ ուղարկեց, և նրանք հասան Ջատ ալ-Լուջում (սանձերի վայրը)։ Այսպես է կոչվել, որովհետև մահմեդականները հանել էին իրենց ձիերի սանձերը և [այդ ժամանակ] վրա էին հասել հոռոմները նախքան սրանք կհասցնեին սանձերը դնել։ Այսուհանդերձ սրանք սանձերը դրել, պատերազմել ու հաղթել են նրանց։

Եվ [Հաբիբը] մի ջոկատ ուղարկեց Շիրակ Տայք (Սիրաջ Թայր)[47] և Բագրևանդ (Բաղրավանդ), որի պատրիկը հաշտություն կնքեց հարկ վճարելու պայմանով։ Եկավ նրա մոտ Վասպուրականի (Բուսֆուրաջանի) պատրիկը և հաշտություն կնքեց իր ամբողջ նահանգի համար։ [Հաբիբը] եկավ Սիսական (Սիսաջան)[48], որի բնակիչները կռվեցին, սակայն նա հաղթեց և նրանց բերդերը գրավեց։ Նա գնաց Վիրք (Ջուրզան), և եկավ նրա մոտ պատրիկի դեսպանը՝ խնդրելով հաշտություն, և նա հաշտություն

կնքեց։ Նա գնաց Տփղիս (Տաֆլիս), որը Վիրքում է և նրա բնակիչների հետ հաշտություն կնքեց, ապա հաշտությամբ գրավեց շրջակա բազմաթիվ բերդեր ու քաղաքներ։

Սալման իբն Ռաբիա ալ-Բահիլին[49] գնաց Առան և նվաճեց Բայլականը՝ հաշտության պայմանագրով, ըստ որի [երաշխավորում էր] նրանց կյանքը, ունեցվածքը և քաղաքի պարիսպները, [պահանջելով] ջիզիա և խարաջ։ Ապա Սալմանը եկավ Պարտավ (Բարդաա) և բանակ դրեց Թարթառ (Սարսուր)[50] գետի ափին, որը [քաղաքից] մեկ փարսախ հեռավորության վրա էր գտնվում։ Նրա բնակիչները օրերով դիմադրեցին նրան, իսկ նա ասպատակեց գյուղերը։ Եվ Պարտավի բնակիչները հաշտություն կնքեցին Բայլականի պայմաններով և նա մտավ [քաղաքը], իր ձիավորներին ցրեց, որոնք այդ նահանգի գյուղերը նվաճեցին։ Նա Բաղասականի (Բալասաջան) քրդերին հրավիրեց ընդունելու մահմեդականությունը, սակայն նրանք կռվի դուրս եկան նրա դեմ և նա հաղթեց նրանց, ոմանց պարտավորեցրեց վճարել ջիզիա, իսկ ոմանց, որոնք քիչ էին. պարտավորեցրեց վճարել սադակա [հարկը]։ Նա մի ձիավոր ջոկատ ուղարկեց Շամխոր (Շամքուր), որը նվաճեց այն։ Սա մի հին քաղաք էր և չեն մնաց մինչև որ այն կործանեցին սևորդիք (Սիյավարդիյյա)[51] կոչվածները։ Սա մի ժողովուրդ է, որը համախմբվեց, երբ Յազիդ իբն Մազիադ [ոստիկանը] հեռացավ Հայաստանից և նրանք ուժեղացան։ Բուղան այն վերականգնեց երկուհարյուր քառասուն թվականին (854/855) և այն կոչեց Մուտավաքիլիյյա՝ Մութավաքքիլ [խալիֆայի] անունով։

Ապա Սալմանր գնաց Արաքսի (ալ-Ռաս) և Քուռի միախառնման վայրը, գրավեց Կապաղակը (Կաբալա), և Շաքիի տերը և ուրիշներ հաշտություն կնքեցին հարկ վճարելու պայմանով։ Հաշտություն կնքեցին նաև Շիրվանի թագավորը, լեռների մյուս թագավորները, Մասկաթի, Շապորանի (Շաբուրան) և ալ-Բաբի բնակիչները. սակայն հետո հրաժարվեցին։

էջ 44

## ՄՈՒԱՎԻԱՅԻ՝ ՌՈՒՄԻ ԴԵՄ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մուավիան արշավեց Ռումի երկիրը, հասավ Ամորիոն (Ամմուրիյյա) և Անտիոքի ու Տարսոնի միջև գտնվող բերդերը գտավ լքված վիճակում։ Նա Ասորիքի ու Ջազիրայի մեծաթիվ զորքեր նշանակեց սկելու մինչև որ վերջացներ իր արշավանքները։ Ապա նա Յազիդ իբն ալ-Հուռ ալ-Աբսիին ուղարկեց ամառային արշավանքի և նրան հրամայեց նույնն անել։ Երբ վերադարձավ, քանդեց այդ բերդերը մինչև Անտիոք։

## ԵՐԵՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(24 օգոստոս 651—11 օգոստոս 652)

*էջ 59*

*Ասվում է, որ այդ տարում նվաճվեց Հայաստանը Հաբիբ իբն Մասլամայի կողմից, որի մասին նախապես հիշել ենք։*

## ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(12 օգոստոս 652 —1 օգոստոս 653)

*էջ 66*

### ԹՈՒՐՔԵՐԻ (ԽԱԶԱՐՆԵՐԻ) ՀԱՂԹԱՆԱԿԻ ԵՎ ԱԲԴ ԱԼ-ՌԱՀՄԱՆ ԻԲՆ ՌԱԲԻԱՅԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում խազարները և թուրքերը հաղթեցին մահմեդականներին։*

*Բանն այն էր, որ երբ արշավանքները հաճախակի դարձան, [խազարները] սկսեցին դժգոհել ու խորհրդակցել։ Նրանք ասում էին՝ մենք առաջ մի ազգ էինք, որին ոչ ոք չէր կարող դիմադրել, մինչև որ եկավ այս փոքրաթիվ ազգը, և մենք անզոր դարձանք նրա դիմաց։ Նրանցից ոմանք ասացին՝ սրանք չեն մեռնում և արշավանքի ժամանակ ոչ ոք չի վիրավորվում։ Իրո՛ք, մահմեդականները արշավել էին, բայց ոչ ոք չէր սպանվել և դրա համար [խազարները] կարծեցին, թե նրանցից ոչ ոք չի մեռնում։ Ասացին իրար՝ արդյոք չփորձենք [սպանել նրանց]։ Նրանք դարան մտան անտառում և մի քանի զինվոր անցավ նրանց մոտով ու նրանք նետահարելով սպանեցին նրանց։ Ապա նրանց հրամանատարները պայմանավորվեցին և օր նշանակեցին նրանց վրա հարձակվելու համար։ Դրանից առաջ Օսման [խալիֆան] Աբդ ալ-Ռահման իբն Ռաբիային, որն այդ ժամանակ ալ-Բաբի [կառավարիչն] էր, գրել էր՝ մարդկանց (ռազմիկներին) փափկացրել է կուշտ կյանքը, ուստի մի վտանգիր մահմեդականներին հեռուները տանելով, քանզի ես վախենում եմ, որ կկոտորվեն։ Սակայն սա ետ չկանգնեցրեց Աբդ ալ-Ռահմանին իր նպատակից։ Նա արշավեց դեպի Բալանջար, իսկ թուրքերն ու խազարները հավաքվել էին, և խիստ ընդհարվեցին մահմեդականների հետ, և Աբդ ալ-Ռահմանն սպանվեց։ Նա կոչվում էր Ջու-լ-Նուր (լուսավոր), որը նրա սրի անունն էր։ Բալանջարի ժողովուրդը վերցրեց նրա դիակը, դրեց դագաղի մեջ և նրա միջոցով անձրև ու հաղթանակ էր հայցում [աստծուց]։*

*Երբ նա սպանվեց մարդիկ երկու մասի բաժանվեցին. մի մասն [ուղ-*

*ղվեց] ալ-Բաբ, ուր միացավ Սալման իբն Ռաբիային՝ Աբդ ալ-Ռահմանի եղբորը, որին Սաիդ իբն ալ-Ասր մահմեդականներին օգնական էր ուղարկել Օսմանի հրամանով։ Երբ նրանք միացան, միասին փրկվեցին։ Մյուս խումբը [գնաց] Գեղան (Ջիլան) ու Վրկան (Ջուրջան), և սրանց մեջ էին Սալման պարսիկն ու Աբու Հուրայրան։*

ԵՐԵՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(2 օգոստոս 653—21 հուլիս 654)

*էջ 68*

*Այդ տարում տեղի ունեցավ Մուավիայի արշավանքը Հիսն Մարա, Ռումի երկրում, Մալաթիայի կողմերում։*

ԵՐԵՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(19 հունիս 657—8 հունիս 658)

*էջ 165*

*Ապա [Ալի խալիֆան] եկավ ու մտավ պալատը և, երբ նա եկավ Քուֆա, խարիջները (ապստամբները) նրա հետ չմտան, այլ եկան, կանգ առան Հուրարայում։ Իսկ Ավիս ալ-Կարնին սպանվել է Սիֆֆինի ճակատամարտում, սակայն ասվում է, թե նա սպանվել է Դամասկոսում, ասվում է նաև, թե մահացել է Հայաստանում կամ Սիջիստանում։*

ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(26 ապրիլ 662—14 ապրիլ 663)

*էջ 210*

*Այս տարում մահմեդականներն արշավեցին ալանների, ինչպես նաև ռոոմների դեմ և մեծ պարտության մատնեցին նրանց, կոտորելով մի խումբ պատրիկների։*

*էջ 212*

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այս տարում մեռավ Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրին Հայաստանում, ուր նա Մուավիայի կողմից կառավարիչ (ամիր) էր նշանակված և մասնակցել էր նրա բոլոր պատերազմներին։*

ՔԱՌԱՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(15 ապրիլ 663—3 ապրիլ 664)

էջ 212

Այդ տարում Բիսր իբն Աբու Արթատը արշավեց Ռումի երկիրը և այնտեղ ձմեռեց, մինչև որ հասավ Կոստանդնուպոլիս, ինչպես ասում է Վակիդին։ Սակայն ավանդությունների դիտակ մարդիկ ժխտում են, ասելով, թե Բիսրը ոչ մի ժամանակ չի ձմեռել Ռումի երկրում.

ՔԱՌԱՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(4 ապրիլ 664—23 մարտ 665)

էջ 218—219

Այդ տարում մահմեդականները Աբդ ալ-Ռահման իբն Խալիդ իբն ալ-Վալիդի հետ մտան Ռումի երկիրը և այնտեղ ձմեռեցին, իսկ Բիսր իբն Աբու Արթատը ծովի վրա հարձակում գործեց։

ՀԻՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(8 հունվար 672—26 դեկտեմբեր 672)

էջ 244

Այդ տարում Սուֆիան իբն Աուֆ ալ-Ասադին արշավեց Ռումի երկիրը և այնտեղ ձմեռեց։ Ըստ ոմանց, նա այնտեղ մեռավ և հետնորդ նշանակեց Աբդալլահ իբն Մասադա ալ-Ֆիզարիին։ Ասվում է նաև, որ այդ տարում Ռումի երկրում ձմեռել է Բիսր իբն Աբու Արթատը, որի հետ էր Սուֆիան իբն Աուֆը, իսկ ամառային հարձակումն այդ տարում կատարել է Մուհամմադ իբն Աբդալլահ ալ-Սակաֆին։

ՀԻՍՈՒՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(25 հոկտեմբեր 678—12 հոկտեմբեր 679)

էջ 256

Այդ տարում ցամաքում Ամրու իբն Մուրրա ալ-Ջահնին ձմեռեց Ռումի երկրում, իսկ ծովում հարձակվեց Ջունադա իբն Աբու Ումայյան։ Ասվում է նաև, թե այդ տարում ծովային հարձակում չէր եղել։

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*էջ 259*

*Այդ տարում մահմեդականները հարձակվեցին Կամախ (Քամախ) բերդի վրա, և նրանց հետ էր Ումայր իբն ալ-Հուբաբ ալ-Սուլամին։ Ումայրը մագլցեց պարիսպը և մենակ շարունակեց կռվել, մինչև որ հայտնաբերեց հոռոմների [մուտքը]։ Մահմեդականները բարձրացան ու գրավեցին այն Ումայրի հետ միասին, որը դրանով (հաղթանակով) շատ էր հպարտանում։*

ՎԱԹՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(8 օգոստոս 685—27 հուլիս 686)

*էջ 364*

ՄՈՒԽՏԱՐԻ՝ ՔՈՒՖԱՅՈՒՄ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

. . . . . .

*Առաջին պաշտոնը, որ տվեց Մուխտարը*[54] *այն էր, որ Աբդալլահ իբն ալ-Հարիսին, ալ-Աշտարի եղբորը նշանակեց Հայաստանի կառավարիչ և Մուհամմադ իբն Ումայր իբն Աթարիդին՝ Ատրպատականի կառավարիչ, իսկ իբն ալ-Ռահման իբն Սաիդ իբն Կայսին Մոսուլի վրա [նշանակեց]։*

ՎԱԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(28 հուլիս 686—17 հուլիս 687)

*էջ 386*

ՄՈՒՍԱԲԻ՝ ՄՈՒԽՏԱՐԻ ԴԵՄ ԳՆԱԼՈՒ ԵՎ ՄՈՒԽՏԱՐԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

. . . . . .

*Աբդ ալ-Մալիք իբն Մարուան [խալիֆան] գրեց իբն ալ-Աշտարին՝ կոչ անելով հնազանդվել և ասաց՝ եթե համաձայնես, ապա քե՛զ կլինի Իրաքի [կառավարչությունը]։ Իբրահիմ [իբն ալ-Աշտարը] խորհրդակցեց ընկերների հետ, և նրանք տարակարծիք եղան։ Ասաց Իբրահիմը՝ եթե վիրավորած չլինեի Իբն Զիադին և Ասորիքի (Շամի) ազնվականներին, կընդունեի Աբդ ալ-Մալիքի առաջարկը, թեև իմ երկրից ու ընտանիքից ոչինչ չեմ նախընտրի։ Նա գրեց Մուսաբին, թե ուզում է միանալ նրան։ Մուսաբը գրեց նրան, որ պատրաստ է ընդունելու և նա եկավ ու հնազանդվեց։*

*Երբ Մուսաբը լսեց նրա գալստյան մասին, ալ-Մուհալլաբին ուղար-*

կեց, որպես Մոսուլի (Մաուսիլ), Ջազիրայի, Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ։

ՎԱԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(18 հուլիս 687—5 հուլիս 688)

էջ 389

ԽԱՐԻՋԻՆԵՐԻ ՖԱՐՍՈՒՄ ՈՒ ԻՐԱՔՈՒՄ ՄՂԱԾ ԿՌԻՎՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Այս տարում Մուսաբը Ումար իբն Ուբայդալլահ իբն Մուամմարին նըշանակեց Ֆարսի կառավարիչ և հանձնարարեց պայքարել ազրակի [հոսանքին պատկանող] խարիջիների (ապստամբ) դեմ։ Մուսաբի առաջին կառավարչության շրջանին և Համզա իբն Աբդալլահ իբն ալ-Զուբայրի կառավարչության ժամանակ նրանց դեմ պայքարը հանձնարարված էր Մուհալլաբին։ Երբ Մուսաբը [Աբդալլահ իբն Զուբայրի կողմից] կրկին [Իրաքի] կառավարիչ նշանակվեց, կամեցավ Մուհալլաբին Մոսուլի, Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ դարձնել։

ՀԱՏՈՐ ՉՈՐՐՈՐԴ

ՅՈԹԱՆԱՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

(25 հունիս 689—14 հունիս 690)

էջ 9

[Ապստամբ] Ջահհաֆը փախավ, իսկ Աբդ ալ-Մալիք [խալիֆան]՝ հրամայեց բռնել նրան, և նա անցավ հոռոմների երկիրը։

Ջահհաֆը թափառում էր հոռոմների երկրում՝ Տրապիզոնից (Թարաբուզանդա) մինչև Կարնո քաղաք (Կալիկալա)։ Նա Աբդ ալ-Մալիքի պալատականներից Կայս ցեղին պատկանող մեկին ուղարկեց իրեն համար երաշխավորագիր խնդրելու։ Աբդ ալ-Մալիքը տվեց երաշխավորագիրը և նա (Ջահհաֆը) վերադարձավ։

(23 մայիս 692—12 մայիս 693)

*Էջ 28*

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆԻ՝ ՋԱԶԻՐԱՅԻ ՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ ՆՇԱՆԱԿՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Աբդ ալ-Մալիքը իր եղբորը՝ Մուհամմադին, նշանակեց Ջազիրայի ու Հայաստանի կառավարիչ։ Սա արշավանք կատարեց ու ջարդեց թշնամուն։ [Մինչ այդ], Տառեխի (Բիրրիխ)[55] լիճը Հայաստանում ազատ էր [ձկնորսության համար] և ոչ ոք արգելք չէր դնում, այլ ով ուզում էր, վերցնում էր իր ցանկացածը։ Սակայն [Մուհամմադը] արգելեց ձկնորսությունը և [պաշտոնյա] նշանակեց, որը վերցնում էր [ձուկը] վաճառում ու գինը ստանում։ Նրանից հետո անցավ որդուն՝ Մարուանին, և երբ պետական իշխանությունը նրանց (Օմայյանների) ձեռքից գնաց, [այս իրավունքը] նրանցից վերցվեց և մինչև օրս մնում է այսպես արգելված։ Քանզի, ով որ վատ օրենք է սահմանում, ինքն է պատասխանատու դրա համար, ինչպես նաև այն մարդկանց համար, որոնք շարունակում են այն պահպանել մինչև վերջին հարության օրը, իսկ նրանց պատասխանատվությունը ոչ մի բանով չի կարելի պակասեցնել։*

*Այս տառեխը (Բիրրիխ) աշխարհի հրաշալիքներից է, քանզի փոքր ձուկ է, որը տարվա որոշ եղանակին է երևան գալիս լճում։ Առաջանում է մի գետի մեջ, որը թափվում է լիճը, այնքան շատ, որ կարելի է ձեռքով որսալ և մանավանդ հատուկ պատրաստված գործիքների միջոցով։ Երբ այդ եղանակը վերջանում է, այլևս ոչինչ չի մնում։*

*Էջ 28*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մուհամմադ իբն Մարուանը ամառային արշավանք կատարեց Ռումի երկիրը և հաղթեց։ Այդ տարում էր Օսման իբն Վալիդի ընդհարումը հոռոմների հետ՝ Հայաստանի կողմերում։ [Օսմանի հետ] կար չորս հազար ռազմիկ, իսկ հոռոմների մոտ՝ վաթսուն հազար։ Նա [Օսմանը] հաղթեց նրանց ու շատերին կոտորեց։*

## ՅՈԹԱՆԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(2 մայիս 694—20 ապրիլ 695)

էջ 41

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մուհամմադ իբն Մարուանր ամառային արշավանք կատարեց, երբ հոռոմները Մարաշի կողմից դուրս էին եկել ալ-Ղանիկ։

## ՅՈԹԱՆԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(21 ապրիլ 695—9 ապրիլ 696)

էջ 53—54

### ՄԱՀՄԵԴԱԿԱՆ ԴԻՐՀԵՄՆԵՐ ԵՎ ԴԻՆԱՐՍԵՐ ԹՈՂԱՐԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Աբդ ալ-Մալիք իբն Մարուանը թողարկեց դինարներ և դիրհեմներ։ Նա առաջինն էր մահմեդական ժամանակաշրջանում, որ այն երևան բերեց և մարդիկ դրանից օգտվեցին։

Թողարկման պատճառն այն էր, որ ռոոմներին ուղղված գրությունների սկզբում գրվում էր՝ «Ասա՝ նա՛ է միակ ալլահը» և հիշվում էր մարգարեի անունը՝ թվականի հետ միասին։ Իսկ Ռումի թագավորը գրեց նրան (խալիֆային). Դուք այս և այս բաները նոր եք մտցրել [նամակներում], թողեք դրանք, թե չէ մեր դինարների վրա ձեր մարգարեի մասին վատ բաներ կգրենք։ Այս խոսքերը շատ ծանր էին նրա (խալիֆայի) համար և կանչեց Խալիդ իբն Յազիդ իբն Մուավիային խորհրդակցելու ու ասաց նրան՝ արգելի՛ր նրանց դինարները և թողարկիր այնպիսի դրամներ, որոնց վրա բարձրյալն ալլահը հիշվի։ Եվ սա թողարկեց դինարներ ու դիրհեմներ։ Ապա Հաջջաջը թողարկեց դիրհեմներ վրան քանդակել տալով «Ասա՝ նա՛ է միակ ալլահը»։ Մարդիկ այն չընդունեցին Ղուրանի [խոսքերի] պատճառով, քանզի ամեն տեսակ աղտոտ ձեռք քսվում էր դրանց, և արգելվեց նորերը թողարկել։

Սակայն հրեա Սամիրը թողարկեց այդպիսին։ [Հաջջաջը] բռնեց նրան, որ սպանի։ Ասաց նրան [Սամիրը]՝ իմ դիրհեմների մաքրության աստիճանը ավելի բարձր է, քան քո դիրհեմներինը, ինչո՞ւ ես ինձ սպանում։ Սակայն նա (Հաջջաջը) չթողեց նրան։ Եվ սա (Սամիրը) մարդկանց համար սարքեց կշռաքարեր, որպեսզի իրեն բաց թողնեն, սակայն Հաջջաջը] այդ բանը չարեց։ Իսկ մարդիկ մինչ այդ [սահմանված] կշռաչափ

ջուներին, այլ առարկաները իրարով էին կշռում։ Երբ Սամիրը կշռաքարեր սահմանեց, մարդիկ այլևս իրար չէին խաբում։

Առաջինը, որ կշռի հարցում խստություններ մտցրեց և արծաթր իր նախորդներից ավելի զտեց, Օմար իբն Հուբայրան էր՝ Յազիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆայի] ժամանակ։ Նա դիրհեմները որակավոր (մաքուր) դարձրեց և [արծաթի] մաքրության աստիճանը բարձրացրեց ու խիստ հսկողություն սահմանեց։ Ապա Խալիդ իբն Աբդալլահ ալ-Կիսրին, Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆայի] օրերին, Իբն Հուբայրայից ավելի խստություններ մտցրեց։ Ապա [այդ գործին] նշանակվեց Յուսուֆ իբն Օմարը, որը խստությունը ծայրահեղ չափի հասցրեց։ Մի օր ստուգում կատարեց ու գտավ, որ մի դիրհեմի մեջ մեկ հաբբա[57] (հատիկ) պակաս էր։ Հրամայեց ամեն մի արհեստավորին հազար մտրակի հարված հասցնել, իսկ նրանք հարյուր արհեստավոր էին, ուստի մեկ հաբբայի համար հարյուր հազար մտրակի հարված հասցրեց։ Այսպիսով, ալ-Հուբայրիյյա, ալ-Խալիդիյյա և ալ-Յուսուֆիյյա [կոչվածները] Օմայյանների ամենամաքո դրամներն էին։ Ալ-Մանսուր [խալիֆան] դրանցից բացի այլ դրամներ չէր ընդունում խարաջի համար։

Առաջին դիրհեմները «մաքրուհա» (մերժված) էին կոչվում։ Ասվում է, որ մաքրուհա էին կոչվում Հաջջաջի թողարկած դրամները, որոնց վրա փորագրված կար «Ասա՝ նա՛ է միակ ալլահը» և գիտուն մարդիկ մերժեցին, քանզի ամեն տեսակ աղտոտ ձեռք կարող էր քսվել դրանց։

Օտարների [թողարկած] դիրհեմները տարբեր էին իրենց մեծությամբ ու փոքրությամբ։ Նրանք մեկ միսկալ (մսխալ) էին թողարկում, այսինքն քսան կիրաթ։ Կային նաև տասներկու կիրաթ և տասը կիրաթ[58] [քաշով], քանզի տարբեր միսկալներ կային։ Երբ մահմեդականության ժամանակ դիրհեմներ թողարկվեցին, վերցրեցին (գումարեցին) քսան կիրաթը, տասներկու կիրաթը ու տասը կիրաթը և դարձավ քառասուներկու կիրաթ, որը բաժանեցին երեքի և ստացվեց տասնչորս կիրաթ։ Այսպիսով, արաբական դիրհեմը տասնչորս կիրաթ է և տասը դիրհեմի կշիռը յոթր միսկալ է։ Ասվում է, որ Մուսաբ իբն ալ-Զուբայրը որոշ չափով դիրհեմներ թողարկեց իր եղբոր՝ Աբդալլահ իբն ալ-Զուբայրի օրոք, սակայն Աբդ ալ-Մալիքի ժամանակ ջարդվեցին։ Ճշմարտությունն այն է, որ Աբդ ալ-Մալիքն առաջինն էր, որ դիրհեմներ ու դինարներ թողարկեց։

էջ 55

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այս տարում Մուհամմադ իբն Մարուանը արշավեց Ռումի երկիրը Մալաթիայի կողմից։

## ՈՒԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

## (26 փետրվար 700—14 փետրվար 701)

*էջ 75*

*Այս տարում Աբդ ալ-Մալիք իբն Մարուան [խալիֆան] իր որդուն՝ Ուբայդալլահին, արշավանքի ուղարկեց և նա նվաճեց Կարնո քաղաքը (Կալիկալա)։*

## ՈՒԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

## (15 փետրվար 701—3 փետրվար 702)

*էջ 84*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում[39] Մուհամմադ իբն Մարուանը արշավեց Հայաստան հաղթեց և [հայերը] հաշտություն խնդրեցին և նա հաշտություն կնքեց ու կառավարիչ նշանակեց Աբու Շայխ իբն Աբդալլահին, սակայն նրանք դավաճանեցին ու սպանեցին նրան։ Ասվում է, որ նրան սպանեցին ութսուներեք թվականին։*

## ՈՒԹՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

## (24 հունվար 703—13 հունվար 704)

*էջ 94—95*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց Ռումի վրա. գրավեց Մամեստիան (Մասիսա), նրա բերդը կառուցեց և այնտեղ տեղավորեց երեքհարյուր քաջարի ռազմիկների, իսկ մինչ այդ մահմեդականները այնտեղ չէին տեղավորվել։ Նա այնտեղ մզկիթ կառուցեց։ Նույն տարում Մուհամմադ իբն Մարուանն արշավեց Հայաստան։*

*ՈՒԹՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ*

(14 հունվար 704—1 հունվար 705)

*էջ 102*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մուհամմադ իբն Մարուանն արշավեց Հայաստան և այստեղ անցկացրեց ամառն ու ձմեռը։*

*ՈՒԹՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

(2 հունվար 705—22 դեկտեմբեր 705)

*էջ 106*

*Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքն արշավեց Ռումի երկիրը։*

*ՈՒԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ*

(23 դեկտեմբեր 705—11 դեկտեմբեր 706)

*էջ 107*

## ՌՈՒՄԻ ԵՐԿԻՐ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Ասվում է, որ այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքն արշավեց Ռումի երկիրը, և նրանց մեծ կոտորած արեց Սաուսանայում, Մամեստիայի (Մասիսա) կողմերում և բերդը գրավեց։ Ասվում է նաև, թե այդ տարում արշավողը Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքն էր։ Սա գրավեց Հիսն Բուլակը, Հիսն ալ-Ախրամը, Հիսն Բուլուսը (Պողոսի բերդ) և Կումկումը և սպանեց արաբացածներից մոտավորապես հազար ռազմիկ, իսկ նրանց երեխաներին ու կանանց գերեվարեց։*

*ՈՒԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ*

(12 դեկտեմբեր 706—30 նոյեմբեր 707)

*էջ 108*

## ՏԻԱՆԱՅԻ (ԹՈՒԱՆԱ) ԳՐԱՎՈՒՄԸ ՌՈՒՄԻ ԵՐԿՐՈՒՄ

*Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը և Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավեցին Ռումի երկիրը։ Վալիդ [խալիֆան] գրել էր Հայաստանի տիրոջը[60], որ հայտնի Ռումի թագավորին, թե խա-*

զարները և Հայաստանի (Արմինիա) լեռների թագավորներից[61] ոմանք որոշել են հարձակվել նրա երկրի վրա։ Սա կատարեց [հրամանը] և Վալիդը Ասորիք ուղարկվելիք մատակարարումը հատկացրեց Հայաստանին, ավելացրեց զորքը և մեծացրեց սպառազինումը։ Նրանք շարժվեցին դեպի Ջազիրա և ապա թեքվեցին դեպի Ռումի երկիրը։ Նրանք հարձակվեցին հոռոմների վրա, վերջիններս փախուստի մատնվեցին, սակայն ետ եկան ու մահմեդականները պարտվեցին։ Մնաց Աբբասը մի խումբ մարդկանց հետ, որոնց մեջ էր իբն Մուհայրիզ ալ-Հաշմին։ Ասաց նրան Աբբասը՝ ո՞ւր է Ղուրանի [հավատացյալ]ժողովուրդը, որը դրախտն է ցանկանում։ Ասաց նրան իբն Մուհայրիզը՝ կանչի՛ր և նրանք կգան։ Կանչեց Աբբասը՝ ո՛վ Ղուրանի ժողովուրդ, և նրանք բոլորը եկան։ Ալլահը փախուստի մատնեց հոռոմներին, որոնք մտան Տիանա (Թուանա)։ Սակայն մահմեդականները պաշարեցին ու գրավեցին այն Ջումադա Ա [ամսին] (9 ապրիլ— 8 մայիս 707)։

էջ 109

## ՄԱՐԳԱՐԵԻ ՄԶԿԻԹԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԱՍԻՆ

. . . . . .

Վալիդը լուր ուղարկեց՝ Ռումի թագավորին տեղեկացնելով, որ քանդել է մարգարեի մզկիթը՝ վերակառուցելու նպատակով։ Ռումի թագավորը նրան ուղարկեց հարյուր հազար մսխալ (միսկալ) ոսկի, հարյուր գործավոր և քառասուն ուղտի բեռ խճանկարի [հատիկներ]։ Վալիդն այս բոլորն ուղարկեց Օմար իբն Աբդ ալ-Ազիզին։ Եկավ Օմարը մարդկանց հետ և հիմքերը դրեցին ու սկսեցին կառուցել։

Ասվում է, որ այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը կրկին արշավեց Ռումի երկիրը և երեք բերդ գրավեց՝ Հիսն Կուսթանթին (Կոստանդինի բերդ), Ղազալա և Հիսն ալ-Ախրամ։ Նա արաբացածներից[2] մոտավորապես հազար հոգու սպանեց և ունեցվածքը բռնագրավեց։

### ՈՒԹՍՈՒՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(1 դեկտեմբեր 707—19 դեկտեմբեր 708)

էջ 110

## ՌՈՒՄԻ ԴԵՄ ԱՐՇԱՎԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Ասվում է, որ այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը և Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավեցին Ռումի երկիրը։ Մասլա-

ման գրավեց Ամորիոն (Ամմուրիյյա) բերդը, իսկ Աբբասը գրավեց Ազ-րուլիյյան։ Նա բախվեց հոռոմների մի խմբի ու փախուստի մատնեց նը-րանց։ Ասվում է, որ Մասլաման շարժվեց դեպի Ամորիոն և, այնտեղ հանդիպելով բազմաթիվ հոռոմների, փախուստի մատնեց նրանց և ապա նվաճեց Հերակլիան (Հիրակլա) ու Կամունիյյան։ Աբբասը ամառային ար-շավանք կատարեց Բողանդոնի (Բադանդուն) կողմից։

էջ 113

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքն արշավեց Թուրքերի դեմ Ատրպատականի կողմից և այնտեղ նվաճեց բերդեր ու քաղաքներ։

## ԻՆՆՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

(20 նոյեմբեր 708—8 նոյեմբեր 709)

էջ 116

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքն արշավեց Ռումի երկիրը, նվաճեց Սուրիայում[13] եղած հինգ բերդ։ Աբբաս իբն ալ-Վալիդն արշավեց ու հասավ Արզն (Արզան) և Սուրիա։

Այդ տարում Վալիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] Կուրրա իբն Շա-րիքին կառավարիչ նշանակեց Եգիպտոսի վրա և այդ պաշտոնից հեռաց-րեց իր եղբորը՝ Աբդ ալ-Մալիք իբն Աբդ ալ-Մալիքին։

Այդ տարում հոռոմները գերեցին ծովի հրամանատար Խալիդ իբն Քիսանին, սակայն նրանց թագավորը նրան նվիրեց Վալիդին։

## ԻՆՆՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(9 նոյեմբեր 709—28 հոկտեմբեր 710)

էջ 119

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Աբդ ալ-Ազիզ իբն ալ-Վալիդը ամառային արշավանք կատարեց, և զորքի հրամանատարն էր Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը։

*Այդ տարում Վալիդ [խալիֆան] հեռացրեց իր հորեղբորը՝ Մուհամմադ իբն Մարուանին, Ջազիրայի ու Հայաստանի [կառավարչությունից] և դրանց վրա կառավարիչ նշանակեց իր եղբորը՝ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին։ Մասլաման արշավեց Թուրքերի դեմ, Ատրպատականի կողմից, մինչև որ հասավ ալ-Բաբ (Դարբանդ) և գրավեց քաղաքներ ու բերդեր, դրանց առջև քարանետ մեքենաներ դնելով։*

## *ԻՆՆՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ*

**(19 հոկտեմբեր 711—6 հոկտեմբեր 712)**

*էջ 129*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդն արշավեց Ռումի երկիրը, նվաճեց Սեբաստոպոլիսը (Սիբասթիյյա)[64], ալ-Մարզուբանայնը և Տարսոնը (Թարսուս)։*

*Այդ տարում Մարուան իբն ալ-Վալիդն արշավեց ու հասավ Խանջարա։*

*Այդ տարում Մասլաման կրկին արշավեց Ռումի երկիրը և Մալաթիայի կողմերում գրավեց Մասիսան (Մասա), Հիսն ալ-Հադիդը և Ղազալան։*

## *ԻՆՆՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ*

**(7 հոկտեմբեր 712—25 սեպտեմբեր 713)**

*էջ 131*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդն արշավեց Ռումի երկիրը, գրավեց Անտիոքը։*

*Այդ տարում Աբդ ալ-Ազիզ իբն ալ-Վալիդն արշավեց ու հասավ Ղազալա, Վալիդ իբն Հիշամ ալ-Մուայթին հասավ Բուրջ ալ-Համմամ[65], իսկ Յազիդ իբն Աբու Քաբշան՝ Սուրիա։*

*Այդ տարում երկրաշարժ եղավ Ասորիքում և տևեց քառասուն օր։ Երկիրն ավերվեց և մանավանդ Անտիոքը։*

ԻՆՆՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(26 սեպտեմբեր 713—15 սեպտեմբեր 714)

էջ 135

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդն արշավեց Ռում, նվաճեց Հեբակլիան (Հիրակլա) և այլ վայրեր։

Այդ տարում նվաճվեց Հնդկաստանի ծայրագույն մասը, բացի ալ-Քիրաջից և ալ-Մանդիլից։

Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդը նվաճեց Կիննասրինը։

Այդ տարում ալ-Վադդահին սպանվեց Ռումի երկրում, մոտավորապես հազար հոգու հետ։

ԻՆՆՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(16 սեպտեմբեր 714—4 սեպտեմբեր 715)

էջ 146

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Սուլայման իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] զորքեր ուղարկեց Կոստանդնուպոլսի դեմ և իր որդուն՝ Դաուդին, նշանակեց ամառային արշավանքի հրամանատար։ Սա գրավեց Հիսն ալ-Մարան[66]։

Այդ տարում Մասլաման արշավեց ալ-Վադդահիյյա երկիրը, գրավեց այն բերդը, որ նվաճել էր ալ-Վադդահիյյայի տեր Վադդահը։

Այդ տարում Օմար իբն Հուբայրան արշավեց Ռումի երկիրը ծովի կողմից և այնտեղ ձմեռեց։

ԻՆՆՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(25 օգոստոս 716—13 օգոստոս 717)

էջ 146—147

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԻ ՊԱՇԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում Սուլայման իբն Աբդ ալ-Մալիքը շարժվեց դեպի Դաբիկ և որք սպառազինեց իր եղբոր Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքի հետ, որ գնա Կոստանդնուպոլսի դեմ։

Եվ մեռավ Ռումի թագավորը ու եկավ Լևոնը (Ալյուն)[67] Ատրպատականից, իմաց տվեց նրան և երաշխավորեց Ռումի [պետության] նվաճումը և Մասլաման գնաց նրա հետ։ Շարժվեցին դեպի Կոստանդնուպոլիս և, երբ մոտեցան նրան, հրամայեց ամեն մի ձիավորի, որ իր հետ ձիու կարողության չափ մթերք՝ երկու մոդ ուտեստեղեն, տանի Կոստանդնուպոլիս։ Նրանք գործադրեցին այն և, երբ բերեցին, հրամայեց, որ մթերքը լեռան նման թափեն և ասաց մահմեդական [զինվորներին]՝ ոչինչ չուտեք սրանից, այլ ասպատակեցեք նրանց երկիրը և ցանեցեք։ Նա փայտից տներ կառուցեց և անցկացրեց ձմեռն ու ամառը։ Մարդիկ ցանեցին, իսկ [բերած] մթերքը դաշտում մնաց, քանզի մարդիկ ուտում էին ասպատակություններից ձեռք բերածը և իրենց ցանածը։

Մասլաման նեղ վիճակի մեջ դրեց հոռոմներին։ Նրա հետ էին երևելի մարդիկ՝ Խալիդ իբն Մաղանը, Մուջահիդ իբն Ջաբրը, Աբդալլահ իբն Աբի Զաքարիա ալ-Խուզաին և ուրիշներ։ Հոռոմները լուր ուղարկեցին Մասլամային, առաջարկելով ամեն մի գլխի դիմաց մի ոսկի տալ, սակայն նա չընդունեց։

Հոռոմները ասացին Լևոնին (Ալյուն)՝ եթե մահմեդականներին քշե- մեր կողմերից, քեզ թագավոր կդարձնենք։ Նա վստահեց նրանց։ Երբ եկավ Մասլաման, նա ասաց նրան՝ գիտես, որ հոռոմները իմացել են, որ դու կռվելու նպատակ չունես, և ձգձգում ես պատերազմը, քանի որ մթերք ունես։ Արդ եթե վառես այն, նրանք կգան քեզ կհնազանդվեն։ Եվ նա հրամայեց վառել. իսկ հոռոմները ուժեղացան և հարվածներ հասցրեցին մահմեդականներին այնքան, որ քիչ էր մնում ոչնչացնեին նրանց։ Այսպես մնացին, մինչև որ մեռավ Սուլայման [խալիֆան]։

*էջ 150*

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Դաուդ իբն Սուլայմանը արշավեց Ռումի երկիրը, նվաճեց Հիսն ալ-Մարան, որը Մալաթիայից այն կողմ էր։

Այդ տարում աշխարհում շատ երկրաշարժներ եղան և տևեցին վեց ամիս։

ԻՆՆՍՈՒՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(14 օգոստոս 717—2 օգոստոս 718)

*էջ 154*

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Օմար իբն Աբդ ալ-Ազիզ [խալիֆան] լուր ուղարկեց Մասլամային, որը Ռումի երկրում էր՝ հրամայելով ետ դառնալ իր մոտ

եղած մահմեդականների հետ միասին։ Ուղարկեց նրան ցեղային ձիեր և շատ մթերք, հրամայելով իր մարդկանց օգնել նրանց։

Այդ տարում թուրքերը հարձակվեցին Ատրպատականի վրա, սպանեցին մի խումբ մահմեդականների։ Օմար [խալիֆան] ուղարկեց Հատիմ իբն ալ-Նուման ալ-Բահիլիին, որն սպանեց այդ թուրքերին և նրանցից միայն քչերը ազատվեցին։ [Հատիմը] եկավ Օմարի մոտ՝ հիսուն գերիների հետ։

## ՀԱՐՅՈՒՐ ԹՎԱԿԱՆ

(3 օգոստոս 718—23 հուլիս 719)

*էջ 159—160*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Օմար իբն Աբդ ալ-Ազիզը հրամայեց Տարենդեի (Թարանդա) բնակիչներին այնտեղից տեղափոխվել Մալաթիա, իսկ Տարենդեն Ռումի երկրի կողմերում էր և Մալաթիայից երեք օրվա ճանապարհ (մարհալա)[53] այն կողմ էր գտնվում։ Աբդալլահ իբն Աբդ ալ-Մալիքը այնտեղ բնակեցրել էր մահմեդականների, երբ ութսուներեք թվին նվաճել էր այն, իսկ այդ ժամանակ Մալաթիան ավերակ էր։ Այնտեղ գալիս էին զինվորները Ջազիրայից, մնում մինչև ձյան իջնելը ու վերադառնում իրենց երկիրը։

Այդպես մնաց, մինչև որ Օմարը դարձավ խալիֆա ու հրամայեց նրանց (տարենդեցիներին) տեղափոխվել Մալաթիա։ Տարենդեն դատարկվեց քանզի նա անհանգստացած էր մահմեդականների համար և վախենում էր թշնամուց։ Նա ավերեց Տարենդեն և Մալաթիայի կառավարիչ նշանակեց Ջավանա իբն ալ-Հարասին։

Այդ տարում Օմար իբն աբդ ալ-Ազիզ [խալիֆան] Օմար իբն Հուբայրա ալ-Ֆիզարիին նշանակեց Ջազիրայի կառավարիչ։

## ՀԱՐՅՈՒՐ ՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(24 հուլիս 719—11 հուլիս 720)

*էջ 167—168*

### ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆԻ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում մեռավ Մուհամմադ իբն Մարուան իբն ալ-Հաքամը՝ Աբդ ալ-Մալիք [խալիֆայի] եղբայրը։ Նա եղել էր կառավարիչ Ջազի-

րայի, Հայաստանի ու Ատրպատականի, արշավել էր հոռոմների դեմ, իսկ Հայաստանի ժողովրդի դեմ՝ մի քանի անգամ։

Նա քաջ էր, ուժեղ, իսկ այդ բանի համար Աբդ ալ-Մալիքը նախանձում էր նրան։ Երբ ամեն ինչ դասավորվեց Աբդ ալ-Մալիքի օգտին, նա ցույց տվեց իր սրտում եղածը։ Մուհամմադը պատրաստվեց Հայաստանի դեմ արշավելու։ Երբ Աբդ ալ-Մալիքը ողջերթ էր մաղթում նրան, հարցրեց հեռանալու պատճառի մասին և նա ասաց.

Դու չես տեսնում, որ ազատորդուն վտարելը
Համասարազոր է նրան անարգելուն
Եթե երկուսս լինեինք մի աստիճանի
Կսուրայի, իսկ դու կմնայիր մոլորված։

Ասաց նրան Աբդ ալ-Մալիքը՝ երդվում եմ, որ պետք է մնաս, ալլահը վկա, ինձնից վատ բան չես տեսնի։ Եվ հաշտվեց նրա հետ։

[Հետագայում] երբ Վալիդ [խալիֆան] ուզեց հանել նրան, պահանջեց մեկին, որ կարողանար փոխարինել։ Միայն Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը հարմար գտնվեց այդ բանին (պաշտոնին)։

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

## (12 հուլիս 720—30 հունիս 721)

էջ 182

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Օմար իբն Հուբայրան արշավեց Ռումի երկիրը՝ Հայաստանի կողմից, երբ նա դեռ Ջազիրայի կառավարիչ էր, նախքան Իրաքի կառավարիչ դառնալը։ Նա հաղթեց նրանց, շատերին գերեվարեց և սպանեց[69] յոթհարյուր գերի։

Այդ տարում Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքը արշավեց Ռումի դեմ ու գրավեց Դալսան (Ռասլա)։

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

էջ 184

## (1 հուլիս 721—20 հունիս 722)

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Ասվում է, որ այդ տարում թուրքերը արշավեցին ալանների դեմ։

Այդ տարում ալ-Աբբաս իբն ալ-Վալիդը ասպատակեց Ռումի երկիրը, դրավեց մի քաղաք, որը կոչվում էր Դասլա (Ռասլա)։

## ՀԱՐՅՈՒՐ ՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(21 հունիս 722—9 հունիս 723)

*էջ 186*

### ԽԱԶԱՐՆԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ԴԵՄ

*Այդ տարում մահմեդականների զորքը մտավ Հայաստանի կողմից խազարաց երկիրը և նրա հրամանատարն էր Սաբիտ ալ-Նահրանին։ Խազարները հավաքվեցին մեծ բազմությամբ և նրանց օժանդակեցին ղփչաղները[70] ·(կիֆջակ) և Թուրքերի այլ [ցեղեր]։ Նրանք բախվեցին մահմեդականների հետ մի վայրում, որը կոչվում էր Մարջ ալ-Հիջարա (Քարերի մարդագետին) և ուժեղ ճակատամարտ տեղի ունեցավ։ Մահմեդականներից շատ մարդ սպանվեց, խազարները նրանց ճամբարը գրավեցին և ամեն ինչ կողոպտեցին։*

*Փախչողները հասան Ասորիք ու դիմեցին Յազիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆային] և նրանց հետ էր նաև Սաբիտը։ Յազիդը հանդիմանեց նրանց պարտության համար։ Սա (Սաբիտը) ասաց՝ ո՛վ իշխան հավատացելոց, ես չվախեցա և ոչ էլ խուսափեցի թշնամուն հանդիպելուց, այլ ձին ձիուն խառնված էր և մարդը՝ մարդուն։ Այնքան խոցեցի, մինչև որ նիզակս ջարդվեց և կոտորեցի, մինչև որ սուրս կոտրվեց։ Սակայն ալլահը, օրհնյալն ու բարձրյալը անում է ինչ որ կամենա։*

*էջ 186—187*

### ՋԱՌԱՀԻ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ ԴԱՌՆԱԼԸ, ԲԱԼԱՆՋԱՐԻ ԳՐԱՎՈՒՄԸ ԵՎ ԱՅԼՆ

*Երբ մահմեդականների հիշյալ պարտությունը տեղի ունեցավ, խազարները ցանկացան երկիրը գրավել և հավաքվեցին ու բանակ կազմեցին։ Այդ ժամանակ Յազիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] ալ-Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամիին նշանակեց Հայաստանի կառավարիչ և ստվար բանակ տվեց արշավելու խազարների և այլ թշնամիների դեմ և ասպատակելու նրանց երկիրը։*

*Ջառահը առաջ խաղաց, իսկ խազարները լսելով եկան կանգնեցին Բաբ ալ-Աբուաբում (Դաբրանդ)։ Ջառահը հասավ Պարտավ (Բարդաա), ուր մնաց, հանգստանալով իր զինակիցների հետ միասին։ Ապա շարժվեց խազարների դեմ, անցավ Կուր գետը և իմացավ, որ իր հետ եղածներից մեկը՝ այդ լեռների բնակիչներից, գրել է խազարաց թագավորին,*

իմաց տալով Ջառահի առաջխաղացման մասին։ Այդ ժամանակ Ջառահը հրամայեց իր մունետիկին հայտարարել բոլոր մարդկանց, թե ամիրը (հրամանատարը) մի քանի օր մնալու է այս վայրում, ուստի, պետք է ինչքան կարելի է շատ մթերք հավաքել։ Այդ մարդը դրեց խազարաց թագավորին, տեղեկացնելով, որ Ջառահը մնալու է այդ վայրում և խորհուրդ տվեց, որ առաջխաղացում չկատարի, ոոպեսզի մահմեդականները չըպատրաստվեն կռվի։ Երբ գիշերը վրա հասավ Ջառահը հրամայեց առաջ խաղալ և մեծ եռանդով շարժվեց, մինչև որ հասավ Բաբ ալ-Աբուաբ քաղաքը առանց հանդիպելու խազարների։ Նա մտավ քաղաքը ասպատակ սփռեց, հարձակվեց ու կողոպտեց նրա մերձակայքը։ [Ամեն ինչ] ավարի տվեցին և հաջորդ օրը վերադարձան։

Նրա դեմ ելան խազարները իրենց թագավորի որդու գլխավորությամբ, հանդիպեցին ալ-Ռան գետի մոտ և սաստիկ ճակատամարտ եղավ։ Ջառահն իր մարդկանց ոգևորեց, կռիվը սաստկացավ և նրանք հաղթեցին ու փախուստի մատնեցին, իսկ մահմեդականները հետապնդեցին նրանց կոտորելով ու գերեվարելով։ Շատ մարդ սպանվեց և մահմեդականները ավարի տվեցին խազարների ամբողջ ունեցվածքը։ [Մահմեդականներր] առաջ խաղացին մինչև որ կանգ առան Հուսայն (Բերդիկ) կոչված բերդի մոտ։ Բնակիչները երաշխավորագիր խնդրեցին գըրամական հարկ վճարելու դիմաց։ Ջառահը ընդունեց պայմանները և դուրս հանեց նրանց։ Ապա շարժվեց, գնաց մի քաղաք, որ կոչվում էր Յարղուա և վեց օր պաշարեց այն ու ջանասիրությամբ կռվեց։ Նրանք երաշխավորագիր խնդրեցին և նա տվեց նրանց։ Նա ստացավ բերդը և նրանց դուրս բերեց այնտեղից։

Ապա Ջառահը գնաց Բալանջար, որը նրանց նշանավոր բերդերից էր, ու պաշարեց այն։ Բերդի բնակիչներր երեքհարյուր սայլ էին հավաքել և իրար կապելով բերդը շրջապատել պաշտպանվելու համար և արգելելու մահմեդականներին մոտենալ բերդին։ Այդ սայլերը մեծագույն խոչընդոտը դարձան մահմեդականների առջև՝ կռվի ժամանակ։

Երբ մահմեդականները տեսան, թե ինչպիսի վնաս է գալիս այդ բանից, մոտավորապես երեսուն հոգի հավաքվեցին, որոնք երդվեցին մեռնել, իրենց սրերի պատյաններր կոտրեցին և մեկ մարդու պես դեպի սայլերր վազեցին։ Անհավատներր նույնպես կատաղի կռվեցին և այնքան նետ էին արձակում, որ արևի լույսը ծածկվում էր, սակայն սրանք (երեսուն մարդը) առաջ գնացին, մինչև որ հասան սայլերին։ Նրանք կախվեցին դրանցից և կտրեցին այն պարանները, որոնք պահում էին դրանք ու քաշեցին։ Ցած թափվեցին [պարանները] և դրանց ետևից նաև բոլոր սայլերր, քանի որ մեկը մյուսին էր կապված։ Ապա բոլոր [խազարները] գլորվեցին մահմեդականների դեմ, կռիվը տաքացավ ու

*սաստկացավ և այնքան դժվար վիճակ ստեղծվեց, որ «սրտերը հասան կոկորդը»։ Ապա խազարները փախուստի դիմեցին, իսկ մահմեդականները սրով գրավեցին բերդը և ամեն ինչ որ կար ավարի տվեցին Ռաբի Ա [ամսին] (19 օգոստոս—17 սեպտեմբեր)։ Ամեն մի հեծյալին բաժին ընկավ երեքհարյուր դինար, իսկ նրանք երեսուն հազարից քիչ ավելի էին։*

*Ապա Ջառահը վերցրեց Բալանջարի տիրոջ որդիներին և ընտանիքը և կանչելով նրան իր մոտ, վերադարձրեց ունեցվածքը, ընտանիքը, բերդը։ Նրան դարձրեց իր գործակալը (լրտես), որը պետք է տեղեկացներ անհավատների ամեն մի արածի մասին։ Ապա Բալանջարից հեռացավ ու պաշարեց Օլուբանդարը (Օլուղ Բենդեր) ուր կար մոտավորապես քառասուն հազար թուրք ընտանիք։ Նրանք հաշտություն կնքեցին Ջառահի հետ՝ տարեկան որոշ դրամական հարկի դիմաց։*

*Սակայն այդ երկրի ժողովուրդը հավաքվեց և փակեց մահմեդականների [վերադարձի] ճամփան։ Բալանջարի տերը գրեց Ջառահին տեղեկացնելով այդ մասին և սա արագ վերադարձավ, մինչև որ հասավ Մլի կոչված գավառը։ Վրա հասավ ձմեռը և մահմեդականները այնտեղ մնացին։ Ջառահը գրեց Յազիդ իբն Աբդ ալ-Մալիքին՝ ալլահի օգնությամբ կատարած իր նվաճումների և անհավատների որոշման մասին, օգնություն խնդրելով։ Սա խոստացավ զորք ուղարկել, սակայն մահը վրա հասավ նախքան զորք ուղարկելը։ [Նոր խալիֆա] Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքը [նամակ] ուղարկեց Ջառահին հաստատելով նրան պաշտոնի մեջ և օգնություն խոստանալով։*

## *ՀԱՐՅՈՒՐ ՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ*

## (10 հունիս 723—28 մայիս 724)

*էջ 193*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ջառահ ալ-Հաքամին արշավեց Ալանք (ալ-Լան) մինչև որ հասավ Բալանջարից այն կողմ [գտնվող] քաղաքներն ու բերդերը։ Մի մասը գրավեց և մեծ ավար վերցրեց։*

*Այդ տարում Մարուան իբն Մուհամմադը ամառային «աջ» արշավանք կատարեց, նվաճեց Իկոնիան (Կունիա) Ռումի երկրում և Կամախը (Քամախ)։*

## ՀԱՐՅՈՒՐ ՎԵՑ ԹՎԱԿԱՆ

## (29 մայիս 724—18 մայիս 725)

*էջ 196*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Սաիդ իբն Աբդ ալ-Մալիքը ամառային արշավանք կատարեց։ Նույն տարում Ջառահ իբն Աբդալլահն արշավեց Ալանք (ալ-Լան), դաշինք կնքեց բնակիչների հետ, որոնք պարտավորվեցին ջիզիա վճարել։*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹ ԹՎԱԿԱՆ

## (19 մայիս 725—7 մայիս 726)

*էջ 198*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Հիշամ [խալիֆան] հեռացրեց Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամիին Հայաստանի ու Ատրպատականի [փոխարքայությունից] և նշանակեց իր եղբորը՝ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին։ Մասլաման [Հայաստանի] կառավարիչ նշանակեց ալ-Հարիս իբն Ամրու ալ-Թաիին, որը Թուրքաց երկրում գրավեց բազում գավառներ ու գյուղեր և [Հայաստանում] մեծ ազդեցություն թողեց։*

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹ ԹՎԱԿԱՆ

## (8 մայիս 726—27 ապրիլ 727)

*էջ 199*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքն արշավեց Ռումի երկիրը՝ Ջազիրայից այն կողմ և գրավեց Կեսարիան (Կայսարիյյա), որը նշանավոր քաղաք էր։ Նույն տարում Իբրահիմ իբն Հիշամը արշավեց ու նվաճեց Ռումի բերդերից մեկը։*

Այդ տարում Թուրքաց թագավոր՝ խաքանի որդին, շարժվեց դեպի Ատրպատական, որոշ քաղաքներ պաշարեց։ Նրա դեմ դուրս եկավ ալ-Հարիս իբն Ամրու ալ-Թաին։ Նրանք բախվեցին և թուրքերը փախուստի դիմեցին։ Ալ-Հարիսը հետապնդեց նրանց, մինչև որ անցավ Արաքս (ալ-Ռաս, Արաս) գետը։ Ապա վերադարձավ խաքանի որդին, վերսկսեց սպատերազմը, սակայն պարտվեց, և թուրքերից շատ մարդ սպանվեց։

## ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆ ԹՎԱԿԱՆ

էջ 201

(28 ապրիլ 727—15 ապրիլ 728)

Այդ տարում Աբդալլահ իբն Ուկբա ալ-Ֆիհրին հարձակում կատարեց ծովի վրա։ Իսկ Մուավիա իբն Հիշամը՝ արշավեց Ռումի երկիրը և գրավեց մի բերդ, որի անունն էր Թիբա։

Այդ տարում Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքն արշավեց թուրքերի դեմ Ատրպատականի կողմից, ավարի տվեց, գերեվարեց և ողջ վերադարձավ։

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍ ԹՎԱԿԱՆ

(16 ապրիլ 728—4 ապրիլ 729)

էջ 205

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մասլաման արշավեց թուրքերի դեմ՝ Ալանաց դռներ (Բաբ ալ-Լան) կողմից։ Հանդիպելով խաքանին և նրա զորքերին, մոտավորապես մեկ ամիս կռվեց։ Սաստիկ անձրև եկավ և խաքանը փախուստի դիմեց ու հեռացավ։ Մասլաման վերադարձավ Զու-լ-Կարնայնի (երկկոտոշավոր)[71] ճանապարհով։

Այդ տարում Մուավիան արշավեց Ռումի երկիրը և գրավեց Սիմլան (Սիմալա)։ Այդ տարում ամառային արշավանքը գլխավորում էր Աբդալլահ իբն Ուկբա ալ-Ֆիհրին, իսկ ծովի վրա հրամանատար էր Աբդ ալ-Ռահման իբն Մուավիա իբն Հուդայջը։

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(5 ապրիլ 729—25 մարտ 730)

էջ 206

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մուավիա իբն Հիշամը ամառային «ձախ» արշավանք կատարեց, իսկ Սաիդ իբն Հիշամը՝ ամառային «աջ» արշավանք[72], մինչև որ

հասավ Կեսարիա (Կայսարիյյա)։ Ծովում հարձակում կատարեց Աբդալլահ իբն Աբի Մարիամը։ Հիշամ [խալիֆան] Ասորիքի և Եգիպտոսի կառավարիչ նշանակեց ալ-Հաքամ իբն Կայս իբն Մախրամա իբն Աբդ ալ-Մութալիբ իբն Աբդ Մանաֆին.

Այդ տարում Թուրքերը շարժվեցին դեպի Ատրպատական։ Նրանց դեմ դուրս եկավ ալ-Հարիս իբն Ամրուն և պարտության մատնեց։ Այդ տարում Հիշամը ալ-Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամիին նշանակեց Հայաստանի կառավարիչ, այդ պաշտոնից հանելով իր եղբորը՝ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին։ Սա խազարաց երկիրը մտավ Տփղիսի (Տաֆլիս) կողմից, դրավեց նրանց ալ-Բայդա (սպիտակ) քաղաքը և ողջ վերադարձավ։ Խազարները հավաքվեցին, կուտակվեցին և շարժվեցին դեպի մահմեդականների երկիրը, և սա դարձավ պատճառը Ջառահի սպանության, ինչպես կտեսնենք կամոքն ալլահի։

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

**(26 մարտ 730—14 մարտ 731)**

*էջ 207—208*

### ԱԼ-ՋԱՌԱՀ ԱԼ-ՀԱՔԻՄԻԻ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Այդ տարում սպանվեց ալ-Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամին։

Բանն այն էր, որ ինչպես նախապես հիշեցինք, նա մտել էր խազարաց երկիրը և նրանց պարտության մատնել։ Պարտությունից հետո խազարներն ու Թուրքերը հավաքվեցին Ալանաց (ալ-Լան) կողմից և նրանց դեմ դուրս եկավ ալ-Ջառահ իբն Աբդալլահը Ասորիքի զորքերով։ Տեղի ունեցավ ամենասաստիկ ճակատամարտը, որ մարդիկ տեսել էին։ Երկու կողմերն էլ համբերեցին, սակայն խազարներն ու Թուրքերը Թվով գերազանցում էին մահմեդականներին։ Ջառահը, իր հետ եղածներով, նահատակվեց Արդաբիլի դաշտում։ Նախապես նա իր եղբորը՝ ալ-Հաջջաջ իբն Աբդալլահին հաջորդ էր նշանակել, որպես Հայաստանի կառավարիչ։

Երբ Ջառահը սպանվեց, խազարների ցանկությունը բորբոքվեց և ներխուժեցին երկիրը, մինչև որ մոտեցան Մոսուլին։ Սա մեծ դժբախտություն էր մահմեդականների համար։

Ջառահը առատաձեռն էր, ազնիվ և Օմար իբն ալ-Ազիզ [խալիֆայի] կառավարիչներից էր ու նրա մասին շատ բանաստեղծներ ողբեր դրեցին։ Ասվում է, որ նա սպանվեց Բալանջարում։ Երբ մահվան լուրը հասավ Հիշամ [խալիֆային], կանչեց Սաիդ ալ-Հարաշիին և ասաց նրան՝ ինձ

տեղեկացրել են, որ Ջառահը եա է կանգնել անհավատների դեմ պայքարից։ Ասաց [Հարաշին]՝ ո՛չ, իշխա՛ն հավատացելոց, ալ-Ջառահը այնքան էր նվիրված ալլահին, որ հազիվ թե կռվից փախչեր, սակայն նա սպանվեց։ Ասաց [խալիֆան]՝ ինչ է կարծիքդ [դրության մասին]։ Ասաց՝ ուղարկիր ինձ քառասուն փոստի[73] ձիերով, ապա ամեն օր քառասուն մարդ ուղարկիր և գրիր զորքերի հրամանատարներին, որպեսզի ինձ օգնության հասնեն։ Այդպես էլ արեց Հիշամը։

Հարաշին շարժվեց և ամեն մի քաղաքով անցնելիս խանդավառում էր բնակիչներին, իսկ ովքեր կամենում էին մասնակցել ջիհադին, արձագանքում էին նրա կոչին։ Այսպես շարունակվեց, մինչև որ հասավ Արզն (Արզան) քաղաքը, ուր հանդիպեց Ջառահի զորքից մի խմբի։ Նրանք արտասվեցին և նա էլ նրանց նայելով, արտասվեց։ Նրանց փող բաժանեց ու իր հետ վերցրեց։ Դրանից հետո Ջառահի մարդկանցից ում որ հանդիպեց, վերցրեց իր հետ։ Նա հասավ Խլաթ, որի դռները փակել էին իր առջև։ Պաշարեց, գրավեց և ավարը բաժանեց իր ընկերակիցների միջև։ Ապա Խլաթից շարժվեց և աստիճանաբար բերդերն ու ամրոցները գրավելով հասավ Պարտավ (Բարդաա) ուր և իջևանեց։

Այդ ժամանակ Խականի որդին Ատրպատականում ասպատակում էր, ավարի տալիս, գերեվարում ու կոտորում։ Նա պաշարել էր Վարդանակերտ[74] (Վարսան) քաղաքը։ Հարաշին վախենալով, որ նրան կհաջողվի այն գրավել, իր մարդկանցից ոմանց թաքուն ուղարկեց Վարդանակերտի բնակիչների մոտ՝ հայտնելով իր ժամանումը, հրամայեց համբերել։ Նրա սուրհանդակը գնաց, սակայն խազարների հանդիպեց, որոնք բռնեցին նրան ու հարցաքննեցին։ Նա պատմեց և ճիշտ խոսեց։ Ասացին նրան, եթե անես այն, ինչ որ քեզ կհրամայենք, քեզ հետ լավ կվերաբերվենք և ազատ կարձակենք, թե չէ՝ կսպանենք։ Ասաց՝ իսկ ի՞նչ եք կամենում։ Ասացին՝ կասես Վարդանակերտի բնակիչներին, որ դուք ո՛չ մի օգնություն չեք ստանա և ոչ ոք չի կարող ձեր վիճակը բարելավել և կհրամայես քաղաքը մեզ հանձնել։ Նա համաձայնեց և երբ քաղաքին մոտեցավ, այնպես կանգնեց, որ բնակիչները լսեն նրա խոսքը։ Ասաց նրանց՝ գիտե՞ք ինձ։ Ասացին՝ դու այսինչն ես։ Ասաց՝ Հարաշին ասում է, որ հասել է այնինչ վայրը շատ զորքով և հրամայում է ձեզ պահել քաղաքը ու դիմանալ. քանզի այս երկու օրում ձեզ [օգնության] կհասնի։ Նրանք իրենց ձայները բարձրացրին կոչելով՝ մեծ է ալլահը և չկա աստված բացի ալլահից։

Խազարները սպանեցին այդ մարդուն և Վարդանակերտ քաղաքից հեռացան։ Հասավ Հարաշին իր զորքով, սակայն ոչ ոք չկար այնտեղ։ Հետապնդելով խազարներին, նա այնտեղից գնաց Արդաբիլ, իսկ խազարները այնտեղից էլ հեռացան։ Հարաշին իջավ Բաջարուան[75] (Բաջրավան) և նրա մոտ եկավ մի ձիավոր՝ սպիտակ ձիու վրա, ողջունեց նրան և ասաց՝ Կա-

մենում ես չիհադ[76] (սրբազան պատերազմ) և ավար։ Ասաց՝ ինչպե՞ս կարող եմ այդ բանին հասնել։ Ասաց՝ ահա խազարաց զորքը, տասը հազարով և նրանց հետ կան հինգ հազար մահմեդական գերիներ և գերեվարված ժողովուրդ։ Նրանք չորս փարսախի (ֆարսախ) վրա են։

Հարաշին գիշերանց գնաց և հասավ նրանց մոտ գիշերվա վերջում, երբ քնած էին։ Իր մարդկանց չորս կողմի վրա բաժանեց և արևածագին հանկարծակի հարձակվեց։ Մահմեդականները սրի քաշեցին նրանց և դեռ արևը չծագած արդեն բոլորն սպանված էին, բացի մի մարդուց։ Հարաշին նրանց ձեռքում գտնվող բոլոր մահմեդականներին ազատ արձակեց ու տարավ Բաջարուան։ Երբ մտան [քաղաքը], նրա մոտ եկավ սպիտակ ձիավորը, ողջունեց ու ասաց՝ ահա այնինչ վայրում կա խազարաց մի բանակ և նրա ձեռքում է մահմեդականների ունեցվածքը և Ջառահի կանանոցն ու զավակները։ Հարաշին շարժվեց այն կողմ և երբ [խազարները] սթափվեցին, մահմեդականներն արդեն նրանց մոտ էին։ Սրախողխող արեցին նրանց ու կոտորեցին ինչպես որ կամենում էին, և խազարներից փրկվեցին միայն մի քանի փախստականներ։ Ազատեցին նրանց մոտ գտնվող մահմեդական տղամարդկանց ու կանանց, ավարի տվեցին նրանց ունեցվածքը։ [Հարաշին] վերցրեց Ջառահի որդիներին. պատվեց ու հարգեց և բոլորին տարավ Բաջարուան (Բագարվան, Բադավան)։

Խազարաց զորքի հետ Հաբաշիի կատարածի լուրը հասավ նրանց թագավորի որդուն, որն այպանեց իր զորքը, ամբաստանեց որպես թուլամորթների ու երկչոտների։ Սակայն նրանք իրար ոգևորեցին և նրա հետ խորհրդակցեցին, որ կրկին հավաքի իր զորքը և վերադառնա Հարաշիի դեմ պայքարի։ Նա զորք հավաքեց Ատրպատականի կողմերից. և նրա մոտ շատ զորք կուտակվեց։ Հարաշին եկավ նրա դեմ և նրանք հանդիպեցին Բարզանդի հողում։ Սաստիկ և ահեղ ճակատամարտ եղավ. մահմեդականները մի քիչ թուլացան, սակայն Հարաշին քաջալերեց նրանց և հրամայեց դիմանալ։ Նրանք ետ դարձան և արիաբար կռվեցին։ Խազարների մոտ գտնվող մահմեդական գերիները օգնության կանչեցին նրանց, գոչելով՝ «մեծ է ալլահը» և «չկա աստված բացի ալլահից»։ Այդ լսելով. մահմեդականները իրար քաջալերեցին և բոլորն սկսեցին արտասվել, կարեկցելով գերիներին։ Մահմեդականները խիստ կոտորած տվին թշնամուն և փախուստի մատնեցին՝ հետապնդելով նրան մինչև Արաքս գետը։ Ապա վերադարձան ու հավաքեցին նրանց ճամբարում եղած ամբողջ ունեցվածքը, ավարը, ազատ արձակեցին թե՛ գերի ընկած ռազմիկներին և թե՛ գերեվարված աղգաբնակչությանը ու բոլորին տարան Բաջարուան։ Ապա խազարաց թագավորի որդին նորից հավաքեց իր մոտ գտնվող զորքերը և հարձակվեց Հարաշիի վրա։ Նա բանակ դրեց Բայլական գետի

*մոտ։ Տեղեկանալով այդ մասին, Հարաշին նրա դեմ դուրս եկավ մահմեդական զորքով և Բայլական գետի ափին հանդիպեց նրան։ Հարաշին խրախուսեց իր մարդկանց և սրանք արիաբար հարձակվեցին ու թուլացրին խազարների շարքերը։ Հարձակումները կրկնվեցին, իսկ խազարները մեծ դիմացկունություն ցուցաբերեցին, այսուհանդերձ պարտություն կրեցին և փախուստի դիմեցին։ Գետի մեջ խեղդվողների թիվը ավելի մեծ էր, քան սպանվածներինը։ Հարաշին հավաքեց ավարը և վերադարձավ Բաջարուան, բաժանեց՝ մեկ հինգերորդն ուղարկեց Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքին և տեղեկացրեց, թե ալլահը ինչ հաղթանակ էր պարգևել մահմեդականներին։ Հիշամը շնորհակալագիր ուղարկեց նրան։*

*Նա (Հարաշին) մնաց Բաջարուանում։ Եվ ահա ստացավ Հիշամի գրությունը, որը հրամայում էր նրան իր մոտ գալ։ Նա (Հիշամը) իր եղբորը՝ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին, նշանակել էր Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ։ Սա տեղ հասնելով՝ շարժվեց Թուրքերի դեմ սաստիկ ձմռանը, հետապնդելով նրանց երկրի մեկ ծայրից մյուսը։*

*էջ 214*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մուավիա իբն Հիշամը ամառային արշավանք կատարեց ու գրավեց Խարսիանոնը (Խարշանա)։*

### *ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ*

*էջ 214*

**(15 մարտ 731—2 մարտ 732)**

*Այդ տարում Մասլաման իր զորքերը սփռեց Խականի երկրում և քաղաքներ ու բերդեր գրավեց։ Նրանց կոտորեց, [ռազմիկներին] գերեց ու [ժողովրդին], գերեվարեց, հրկիզեց և նրան ենթարկվեցին Բալանջար լեռների այն կողմի մարդիկ։ Խականի որդին էլ սպանվեց և ահա այս բոլոր ազգերը՝ խազարները և ուրիշներ հավաքվեցին Մասլամայի դեմ այնպիսի բազմությամբ, որի թիվը միայն բարձրյալն ալլահը դիտի։ Մասլաման արդեն Բալանջարից այն կողմ էր, և երբ տեղեկացավ այս բոլորի մասին, հրամայեց իր մարդկանց կրակները (խարույկ) վառած թողնել և ապա թողնելով իր վրաններն ու բեռները, զորքի հետ փախուստի դիմեց։ Թուրքերին առջևից էին տանում, իսկ ուժեղները ետևից էին գնում, մեկ*

օրվա ճանապարհի (մարհալա) փոխարեն երկու օրվա ճանապարհ էին անցնում, մինչև՛որ կիսամեռ հասան Բաբ ալ-Աբուաբ (Դարբանդ)։

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(3 մարտ 732—20 փետրվար 732)

էջ 215—216

## ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ ՆՇԱՆԱԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան] Մարուան՝ իբն Մուհամմադ իբն Մարուանին, որն իր հորեղբորորդին էր, կառավարիչ նշանակեց Ջազիրայի, Ատրպատականի և Հայաստանի վրա։

Բանն այն էր, որ նա Հայաստանում Մասլամայի զորքի մեջ էր, երբ սա խազարների դեմ էր արշավում։ Երբ Մասլաման վերադարձավ, Մարուանը գնաց Հիշամի մոտ և աննկատելի ձևով ներս մտավ։ Հիշամը հարցրեց գալու պատճառը, իսկ [Մարուանը] ասաց՝ ինձ համար անտանելի է այն, ինչի մասին խոսելու եմ, բայց և այնպես ինձանից բացի ոչ ոք չի կարող այդ հարցը լուծել։ Ասաց՝ իսկ ի՞նչ է դա։ Ասաց. Մարուանը՝ խազարների ներխուժումը իսլամի երկիր, Ջառահի և այլ մահմեդականների սպանությունը հուսալքում առաջացրին մահմեդականների մեջ։ Հավատացյալց իշխանը որոշեց իր եղբորը՝ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին, ուղարկել նրանց (խազարների) դեմ, սակայն երդվում եմ ալլահով, որ նրա ոտքը հազիվ է դիպել նրանց ցածրադիր հողերին։ Երբ նա (Մասլաման) տեսավ իր զորքերի հոծ բազմությունը, ոգևորությամբ նամակ գրեց խազարներին՝ նրանց պատերազմ հայտարարելով։ Դրանից հետո երեք ամիս սպասեց, մինչև որ նրանք (խազարները) պատրաստվեցին ու զորք հավաքեցին։ Երբ մտավ նրանց երկիրը, չկարողացավ հաղթել նրանց և հասցրեց սոսկ գլուխն ազատել։ Կամենում եմ, որ ինձ թույլ տաս արշավանք կատարել, մեզանից ջնջել ամոթը և թշնամուց վրեժ լուծել։

Ասաց [խալիֆան]՝ թույլ եմ տալիս։

Ասաց՝ ինձ պետք է հարյուր քսան հազար զորք տաս։

Ասաց՝ համաձայն եմ։

Ասաց՝ բայց պետք է այդ բանը թաքուն պահես բոլորից։

Ասաց՝ համաձայն եմ և քեզ էլ Հայաստանի կառավարիչ եմ նշանակում։

Հրաժեշտ տվեց նրանց և գնաց Հայաստան որպես կառավարիչ։ Հի-

շամը զորքեր ուղարկեց Ասորիքից, Իրաքից և Ջաղիրայից։ Այսպիսով, նրա (Մարուանի) մոտ հավաքվեց հարյուր քսան հազար [կանոնավոր] զորք և կամավորներ։ Նա ձևացրեց, թե ալանների դեմ արշավանքի է գնում և իրոք դիմեց նրանց երկիրը, իսկ խազարաց թագավորին դիմեց հաշտություն առաջարկելով։ Սա համաձայնեց և մարդ ուղարկեց հաշտություն կնքելու նպատակով։ [Մարուանը] իր մոտ պահեց դեսպանին, մինչև որ վերջացրեց պատրաստությունը և արեց ինչ որ կամենում էր։ Ապա սկսեց կոպիտ խոսել նրանց (խազարների) հետ, պատերազմ հայտարարեց և նույն դեսպանի միջոցով այդ բանը հայտնեց նրա տիրոջը։ Սակայն հանձնարարեց իր մարդկանց, որ նրան (դեսպանին) տանեն երկար ճանապարհով, իսկ ինքը գնաց ամենակարճ ճանապարհով։ Երբ դեսպանը հասել էր տիրոջ մոտ, Մարուանն արդեն այնտեղ էր։ Նա տեղեկացրեց իր տիրոջը, թե ինչպես Մարուանը զորք է հավաքել ու պատրաստվել։

Խազարաց թագավորը խորհրդակցեց իր մերձավորների հետ, որոնք ասացին՝ սա քեզ խաբեց ու ներխուժեց քո երկիրը։ Եթե սպասես զորքդ հավաքելու, այդ բանը երկար կտևի և նա (Մարուանը) կանի ինչ որ կամենում է։ Իսկ եթե այս վիճակում դուրս գաս նրա դեմ կհաղթի քեզ ու փախուստի կմատնի։ Մեր կարծիքն այն է, որ պետք է նահանջել մինչև քո երկրի ամենախորքը և թողնել նրան, որ անի ինչ ուզում է։

Նա ընդունեց այդ առաջարկը և գնաց ինչպես ասել էին։ Մարուանը մտավ նրա երկիրը, խորացավ, ավերեց այն, ավարի տվեց, գերեվարեց ու հասավ մինչև ամենախորքերը։ Նա մի քանի օր մնաց, մինչև որ ստորացրեց նրանց և վրեժ լուծեց։ Նա մտավ Սարիրի (գահի) տիրոջ[18] երկիրը, կոտորեց ժողովրդին, գրավեց բերդերը։ Թագավորը հպատակվեց նրան և հաշտություն կնքեց, խոստանալով տալ 1500 երիտասարդ տղա, հինգ հարյուր սևահեր աղախին և հարյուր հազար մոդ ցորեն, որը պետք է տանեին Բաբ։ Մարուանը հաշտություն կնքեց Տումանի բնակիչների հետ հարյուր երիտասարդ տղա երկու մասով [տալու պայմանով], ինչպես նաև քսան հազար մոդ ցորեն [պահանջեց]։ Ապա մտավ Ջարիքիրան երկիրը և նրա թագավորի հետ հաշտություն կնքեց։ Ապա եկավ Համզին երկիրը, սակայն Համզինը մերժեց հաշտություն կնքել։ Նա պաշարեց ու գրավեց նրա բերդը։ Ապա եկավ Սուղդան և հաշտության պայմանագրով նվաճեց ու պարտավորեցրեց Թիրշանշահին տարեկան տասը հազար մոդ ցորեն տանել Բաբ (Դարբանդ)։ Ապա պաշարեց Լաքզի տիրոջ բերդը, որը մերժեց հարկ վճարել։ Լաքզի թագավորը դուրս եկավ՝ խազարաց թագավորի մոտ գնալու նպատակով, սակայն մի հովիվ նետով սպանեց նրան, առանց իմանալու, թե ով է։ Ապա Լաքզի ժողովուրդը Մարուանի հետ հաշտություն կնքեց, իսկ նա մի կառավարիչ նշանակեց նրանց մոտ։ Ապա գնաց Շարուան ամրոցը, որը ծովի ափին էր և բնակիչ-

ները հնազանդվեցին նրան, վերջապես դիմեց Դուղանիյյա (Դիզոյք), հաղթեց նրա (բնակիչներին) ու վերադարձավ։

Էջ 216—217

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մուավիա իբն Հիշամը ամառային «ձախ» արշավանք կատարեց ու հասավ Ակրանի արվարձանը (ռաբադ), իսկ Աբդալլահ ալ-Բաթթալը բախվեց Կոստանդինի (Կուսթանթին) և այլոց հետ։ Հաղթեց ու գերեց Կոստանդինին։

Այդ տարում Սուլայման իբն Հիշամը ամառային «աջ» արշավանք կատարեց ու հասավ Կեսարիա (Կայսարիյյա)։

Այդ տարում, Խականի պարտվելուց հետո, եկավ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքը ու կարգի բերեց գործերը, կառուցեց Բաբը։

Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչն էր Մարուան իբն Մուհամմադը։

ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(21 փետրվար 733—9 փետրվար 734)

Էջ 217

Այդ տարում Մուավիա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը։ Նույն տարում ժանտախտ եղավ Ասորիքում։

ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(10 փետրվար 734—30 հունվար 735)

Էջ 217

Այդ տարում Մուավիա իբն Աբդ ալ-Մալիքը ամառային արշավանք կատարեց Ռումի երկիրը։ Սաստիկ ժանտախտ եղավ Իրաքում։

ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(31 հունվար 735—19 հունվար 736)

Էջ 219

Այդ տարում Մուավիա իբն Հիշամը ամառային «ձախ» արշավանք կատարեց, իսկ Սուլայման իբն Հիշամը՝ ամառային «աջ» արշավանք Ջազիրայի կողմից և իր զոկատները սփռեց Ռումի երկրում։

Այդ տարում Մարուան իբն Մուհամմադը, որը Հայաստանի կառավարիչ էր, երկու բանակ ուղարկեց, որոնցից մեկը ալանաց (ալ-Լան) երեք բերդեր գրավեց, իսկ մյուսը պաշարեց Տումանշահը, իսկ ժողովուրդը հաշտություն կնքեց։

էջ 224

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչն էր Մարուան իբն Մուհամմադը։

ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(20 հունվար 736—7 հունվար 737)

էջ 224

Այդ տարում Հիշամ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆայի] երկու որդիները՝ Մուավիան և Սուլայմանը, արշավեցին Ռումի երկիրը։

էջ 226

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մարուան իբն Մուհամմադը Հայաստանից արշավեց Վարնիսի[*] երկիրը երեք կողմից։ Վարնիսը փախավ խազարաց երկիրը և ամրացավ մի բերդում։ Մարուանը բանակ դրեց նրա բերդի առջև, պաշարեց և քարանետ մեքենաներ (մանջանիկ) դրեց։ Վարնիսին սպանեց մի պատահական անցորդ, որը նրա գլուխն ուղարկեց Մարուանին։ Մարուանը այն ցուցադրեց բերդի պաշտպաններին, որի հետևանքով նրանք ընդունեցին նրա պայմանները։ Նա կոտորեց ռազմիկներին, իսկ նրանց ընտանիքները գերեվարեց։

Այդ տարում Հայաստանի կառավարիչն էր Մարուան իբն Մուհամմադ իբն Մարուանը։

ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(8 հունվար 737—28 դեկտեմբեր 737)

էջ 233—234

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Վալիդ իբն ալ-Կական արշավեց Ռումի երկիրը։

Այդ տարում Մարուան իբն Մուհամմադը արշավեց Հայաստան, մտավ

*ալանաց երկիրը և առաջ ընթացավ, մինչև որ հասավ խաղարաց երկիրը, անցավ Բալանջար, Սամանդար [քաղաքներով] և հասավ ալ-Բայդա (ըսպիտակ), ուր խականն էր լինում։ Սակայն խականը փախավ։*

## *ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆ ԹՎԱԿԱՆ*

**(29 դեկտեմբեր 737—17 դեկտեմբեր 738)**

*էջ 239*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Իսհակ իբն Սալմ ալ-Ուկայլին արշավեց Տումանշահ, գրավեց բերդերը և երկիրն ավերեց։*

*Այդ տարում Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչն էր Մարուան իբն Մուհամմադը։*

## *ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ*

**(18 դեկտեմբեր 738—6 դեկտեմբեր 739)**

*էջ 240*

*Այդ տարում Մասլամա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը և ցորենի շտեմարաններ (մաթամիր)[89] գրավեց։*

*էջ 245*

### ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆԻ ԱՐՇԱՎԱՆՔԻ ՄԱՍԻՆ

*[Հարյուր] քսանմեկ թվականին Մարուան իբն Մուհամմագ իբն Մարուանն արշավեց Հայաստանի [որոշ մասեր], որի կառավարիչն էր։ Հասավ Սարիրի տիրոջ բերդը, սպանեց ու գերեվարեց, ապա հասավ մի ուրիշ բերդ, սպանեց ու գերեվարեց. մտավ Ղումիկ[90] բերդը, որտեղ էր թագավորի դուստրը և նրա գահը։ Թագավորը փախավ նրանից ու հասավ մի բերդ, որը կոչվում էր խայղաջ, ուր նրա ոսկե գահն էր։ Մարուանը առաջ շարժվեց և ամբողջ ամառն ու ձմեռը կռվեց նրա դեմ։ Թագավորը համաձայնեց տարեկան տալ հազար գլուխ [անասուն] և հարյուր հազար մոդ [ցորեն]։*

*Մարուանր գնաց ու մտավ Ազրուբիթրան երկիրը, որի թագավորը հաշտություն կնքեց նրա հետ, ապա ներխուժեց Տուման երկիրը, որի հետ հաշտություն կնքեց։ Առաջ խաղաց, մինչև որ հասավ Համզին, որն ավերեց և ապա պաշարեց մեկ ամիս նրա բերդերից մեկը, մինչև որ ստիպեց հաշտություն կնքել։ Մարուանը եկավ Մասղարա երկիրը, որը հաշտու-*

թյամբ նվաճեց։ Ապա գրավեց Քիրանը, (Գիրան) և նրա հետ հաշտու-թյուն կնքեցին Թաբարսարանն ու Ֆիլանը և ծովափնյա բոլոր նահանգ-ները՝ Հայաստանից մինչև Թաբարիստան։

էջ 245

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մասլամա իբն Հիշամը արշավեց Ռումի երկիրը և գրա-վեց ցորենի շտեմարանները (մաթամիր)։*

*Այդ տարում Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչն էր Մարուան իբն Մուհամմադը։*

## *ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ*

(7 դեկտեմբեր 739—25 նոյեմբեր 740)

էջ 248

## ԲԱԹԹԱԼԻ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՄԻ ԽՈՒՄԲ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՀԵՏ՝ ՌՈՒՄԻ ԵՐԿՐՈՒՄ

*Այդ տարում մի խումբ մահմեդականների հետ Ռումի երկրում սպան-վեց Բաթթալը[*2], իսկ նրա բուն անունն էր Աբդալլահ Աբու-լ-Հուսայն ալ-Անթաքի (Անտիոքացի)։ Ասվում է նաև, որ [սպանվեց] հարյուր քսանե-րեք թվականին։ Նա հաճախ էր արշավում Ռումի երկիրը, ասպատակում և մեծ անուն ուներ նրանց մոտ ու վախենում էին նրանից։ Պատմվում է, որ նա նրանց երկիրը կատարած արշավանքներից մեկի ժամանակ իր ըն-կերակիցների հետ գիշերանց մտել է մի գյուղ, ուր մի կին իր լացող երե-խային ասում էր՝ լռի՛ր, թե չէ քեզ Բաթթալին կտամ, ապա բարձրացնում է ձեռքի վրա և ասում՝ վերցրու Բաթթա՛լ։ Իսկ նա վերցնում է [երեխային] նրա ձեռքից։*

*Աբդ ալ-Մալիքն իր որդու՝ Մասլամայի, հետ նրան ուղարկեց Ռումի երկիրը և հրամանատար դարձրեց Ջազիրայի ու Ասորիքի վրա։ Իր որդուն հրամայեց, որ նրան հանձնի առաջապահ զորքը։*

## *ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ*

(15 նոյեմբեր 741—3 նոյեմբեր 742)

էջ 254

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Սուլայման իբն Հիշամը ամառային արշավանք կատա-րեց։ Նա հանդիպեց Ռումի թագավոր Լևոնին (Ալյուն) և կողոպտեց [նրա ճամբարը]։*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

## (4 նոյեմբեր 742—24 հոկտեմբեր 743)

*էջ 261*

*Այդ տարում հոռոմները հարձակվեցին Զապետրայի (Զիբաթրա) վրա։ Սա մի հին բերդ է, որը դրավել էր Հաբիբ իբն Մասլամա ալ-Ֆիհրին. հոռոմները քանդեցին այն, ապա վերակառուցվեց, սակայն ո՛ ամուր ձևով և հոռոմները կրկին եկան ու քանդեցին Մարուան իբն Մուհամմադ ալ-Հիմարի (ավանակ) ժամանակ։ Ռաշիդը վերակառուցեց այն և զորք տեղավորեց։ Մամունի օրոք հոռոմները հարձակվեցին ու քանդեցին, իսկ Մամունը հրամայեց նորոգել ու ամրացնել։ Հոռոմները հարձակվեցին նաև Մուտասիմի օրոք, ինչպես հիշելու ենք, եթե ալլահը կամենա։ Այս բոլորը հենց այնպես հիշեցի, որովհետև չգիտեմ [բոլոր] դեպքերի թվականները։*

*Այդ տարում Վալիդ [խալիֆան] իր եղբորը՝ Ղամր իբն Յազիդին, [Ռումի դեմ] արշավանքի հրամանատար նշանակեց, իսկ ծովերի վրա հրամանատար կարգեց Ասուադ իբն Բիլալ ալ-Մուհազիին, որին ուղարկեց Կիպրոս որպեսզի բնակիչներին առաջարկի ընտրություն կատարել Ասորիք գնալ կամ Ռումի երկիրը։ Մի խումբ ցանկացավ մահմեդականների մոտ լինել և նրանց բերեցին Ասորիք, իսկ ուրիշներն ընտրեցին Ռումի երկիրը և նրանց էլ այնտեղ ուղարկեցին։*

## ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

## (25 հոկտեմբեր 743—12 հոկտեմբեր 744)

*էջ 264—266*

### ՎԱԼԻԴ ԻԲՆ ՅԱԶԻԴ ԻԲՆ ԱԲԴ ԱԼ-ՄԱԼԻՔԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ջումադա Բ ամսում սպանվեց ալ-Վալիդ իբն Յազիդ իբն Աբդ ալ-Մալիք [խալիֆան], որին Նակիս (տհաս, պակաս) էին կոչում։ Սպանության պատճառը նրա անառակությունն էր ու զեխությունը։ Երբ խալիֆա դարձավ, շարունակեց զբաղվել խաղամոլությամբ, հաճոյասիրությամբ, որսորդությամբ, գինեմոլությամբ և անառակությամբ, իսկ այս բանից դժգոհ էին ժողովուրդը և զորքը...։*

*[Սպանության] լուրը հասավ Մարուան իբն Մուհամմադին, որը Հայաստանում էր և գրեց Սաիդ իբն Աբդ ալ-Մալիք իբն Մարուանին հրամայելով մարդկանց արգելել, զգուշացնել դավադրություններից և վախեցնել վատ հետևանքներով...։*

Էջ 277

## ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴԻ ԸՄԲՈՍՏԱՑՈՒՄԸ

Այդ տարում Մարուան իբն Մուհամմադը ըմբոստացավ Յազիդ (Եզիդ) իբն ալ-Վալիդ [խալիֆայի] դեմ։

Դրա պատճառն այն էր, որ երբ Վալիդը սպանվեց, Աբդ ալ-Մալիք իբն Մարուան իբն Մուհամմադը,. Վալիդի եղբոր՝ ալ-Ղամր իբն Յազիդի հետ, Խառանում էր՝ [Ռումի դեմ] ամառային արշավանքից վերադարձից հետո։ Իսկ Ջազիրայում Աբդու իբն ալ-Ուիահ ալ-Ղասսանին կառավարիչ էր՝ Վալիդի կողմից նշանակված։ Երբ Վալիդը սպանվեց, Աբդուն շարժվեց դեպի Ասորիք, իսկ Աբդ ալ-Մալիք իբն Մարուան իբն Մուհամմադը հարձակվեց Խառանի (Հառան) ու Ջազիրայի վրա և գրավեց։ Ապա գրեց իր հորը, որը Հայաստանում էր, տեղեկացնելով այդ մասին և շտապեցնելով, որ օգնության հասնի։ Մարուանը երթի պատրաստվեց և մարդ ուղարկեց Սահմանային գոտին (Սուղուր)՝ այն կառավարելու և պաշտպանելու համար։ Նա ձևացրեց, որ Վալիդի արյան վրեժն է պահանջելու և առաջ խաղաց իր զինվորների հետ, միասին տանելով պաղեստինցի Սաբիտ իբն Նաիմ ալ-Ջուզամիին, որի հետ նրա բարեկամության պատճառն այն էր, որ Հիշամը [ժամանակին] բանտարկել էր նրան (Սաբիտին)։ Նրա բանտարկության պատճառն այն էր, որ երբ Աֆրիկայի կառավարիչ Քուլսում իբն Իյադին սպանել էին, Հիշամը [Սաբիտին] Աֆրիկա էր ուղարկել, սակայն սա զինվորներին փչացրել էր, իսկ Հիշամը բանտարկել տվեց նրան։ Մարուանն իր այցելություններից մեկում դիմեց Հիշամին և բարեխոսեց նրա համար։ Սա արձակեց նրան, և [Մարուանը] բարեկամացավ նրա հետ։

Արդ, երբ Մարուանը այսպիսի ընթացք բռնեց, Սաբիտ իբն Նաիմը (Նուայմ) հրամայեց Մարուանի մարդկանց, որոնք Ասորիքից էին եկել, թողնել Մարուանին և իրեն միանալ՝ Ասորիք վերադառնալու համար։ Նրանք պատասխանեցին նրա կոչին, և նրա մոտ Մարուանի մոտ եղածի կրկինը հավաքվեց և զգույշ դիրք բռնեցին։

Երբ առավոտ եղավ, պատերազմի պատրաստվեցին։ Մարուանը մունետիկներ ուղարկեց զորքերի մեջ, որոնք կանչում էին՝ ո՛վ Ասորիքի մարդիկ, ինչը ձեզ ստիպեց այդ անելու։ Տե՛ր, որ ես ձեզ լավ եմ վերաբերվել։ Պատասխանեցին՝ մենք քեզ հնազանդվում էինք ինչպես խալիֆայի, իսկ այժմ նա (խալիֆան) սպանվել է և Ասորիքի ժողովուրդը ընտրել է Յագիդին [որպես խալիֆա]. ուստի հետևելով Սաբիտին, կամեցանք մեր գավառները վերադառնալ։ Ասաց [Մարուանը]՝ ստում եք, դուք չեք ուզում այն, ինչ ասում եք, այլ ուզում եք կողոպտել ձեր ճանապարհին պատահած զիմմի մարդկանց ունեցվածքը։ Իմ և ձեր միջև մի-

այն սուրը կարող է դատել, սակայն եթե գաք ինձ մոտ և ձեզ կռվի տանեմ, ապա կթողնեմ, որ վերադառնանք ձեր գավառները։ Հնազանդվեցին նրան և նա ձերբակալեց Սաբիտ իբն Նուայմին ու որդիներին բանտարկեց, իսկ զինվորներին՝ հսկողության տակ տարավ, մինչև որ հասան Խառան ու հասցրեց Ասորիք։ Նա կոչ արեց Ջազիրայի [Միջագետքի] բնակիչներին, որ ներկայանան։ Ներկայացան քսան հազարից ավելի և նա պատրաստվեց Յազիդի դեմ գնալու։

Յազիդը գրեց նրան, համոզելով, որ իրեն տա ընտրությունը (բայա), իսկ ինքը նրան կտա այնքան իշխանություն, ինչքան Աբդ ալ-Մալիք իբն Մարուան [խալիֆան] տվել էր նրա հորը՝ Մուհամմադ իբն Մարուանին, այսինքն՝ Ջազիրան, Հայաստանը, Մոսուլն ու Ատրպատականը։ Մարուանը [խալիֆայի] ընտրությունը նրան տվեց, իսկ Յազիդը շնորհեց վերոհիշյալ նահանգների [իշխանությունը]։

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

## (11 սեպտեմբեր 747—30 օգոստոս 748)

էջ 316

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում ամառային արշավանք կատարեց Վալիդ իբն Հիշամը ու գրավեց ալ-Ամկը (ալ-Ումկ) և Մարաշի բերդը կառուցեց։

էջ 329

### ԻԲՐԱՀԻՄ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ԱԼԻ ԱԼ-ԻՄԱՄԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հիշել ենք նրա բանտարկության պատճառը, իսկ նրա մահվան մասին տարբեր կարծիքներ կան։ Ասվում է, որ Մարուանը նրան բանտարկեց Խառանում, ինչպես նաև Սաիդ իբն Հիշամ իբն Աբդ ալ-Մալիքին, նրա երկու որդիներին՝ Օսմանին և Մարուանին, ինչպես նաև Աբդալլահ իբն Օմար իբն Աբդ ալ-Ազիզին, ալ-Աբբաս իբն ալ-Վալիդ իբն Աբդ ալ-Մալիքին և Աբու Մուհամմադ ալ-Սուֆիանին։ Այս բոլորից Խառանում տեղի ունեցած մի համաճարակի զոհ գնացին ալ-Աբբաս իբն ալ-Վալիդը, Իբրահիմ իբն Մուհամմադ իբն Ալի ալ-Իմամը և Աբդալլահ իբն Օմարը։

Մարուանի՝ Զաբի մոտ կրած պարտությունից մեկ շաբաթ առաջ Սաիդ իբն Հիշամը և նրա հորեղբոր որդին, այլ բանտարկյալների հետ միասին, ապստամբեցին, սպանեցին բանտապետին և դուրս եկան։ Սակայն Խառանի բնակիչները, ամբոխի հետ միասին սպանեցին նրանց։ Խառանի բնակիչների սպանածների մեջ էին Շուրահիլ իբն Մասլամա իբն Աբդ

*ալ-Մալիքը, Աբդ ալ-Մալիք իբն Բիշր ալ-Տաղլիբին և չորրորդ Արմինիայի պատրիկը, որի անունն էր Քուշան*[85]։

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

**(20 օգոստոս 749—8 օգոստոս 750)**

**Էջ 330**

## ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆ ԻԲՆ ԱԼ-ՀԱՔԱՄԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Հարյուր երեսուներկու թվականի Զու-լ-Հիջջա [ամսից] երեք օր մնացած (6 օգոստոս 750) սպանվեց Մարուան իբն Մուհամմադը, Բու Սիրում, որը Եգիպտոսի գավառներից է։*

*Երբ Մարուանը Զաբի մոտ պարտվեց Աբդալլահ իբն Ալիից, եկավ Մոսուլ քաղաքը, ուր կային Հիշամ իբն Ամրու ալ-Տաղլիբին և Բիշր իբն Խուզայմա ալ-Ասադին, որոնք կամուրջը փակել էին։ Ասորիքի զորքերը գոռացին նրանց՝ սա հավատացելոց իշխան Մարուանն է։ Ասացին՝ սըտում եք, հավատացելոց իշխանը չի փախչի։ Եվ Մոսուլի բնակիչները հայհոյեցին նրան ու ասացին՝ ո՛վ ցնդած ապիկար, փառք ալլահին, որ ձեր իշխանությունը վերացրեց և պետությունը ոչնչացրեց։ Փառք ալլահին, որը մեր մարգարեի տան մարդկանց*[83] *բերեց [իշխանության գլուխ]։*

*Երբ այս խոսքերը լսեց, գնաց մի գյուղի ուղղությամբ և Տիգրիսն անցնելով դիմեց Խառան (Հառան), ուր իր եղբորորդին՝ Իբբան իբն Յազիդ իբն Մուհամմադ իբն Մարուանը կառավարիչ էր՝ [իր կողմից նշանակված]։ Այնտեղ մնաց քսան օրից մի քիչ ավելի։*

*Եկավ Աբդալլահ իբն Ալին, որը հասավ Մոսուլ ու մտավ [քաղաքը]։ Նա պաշտոնից հանեց Հիշամին և կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Սուլին։ Ապա հետապնդեց Մարուան իբն Մուհամմադին և երբ Աբդալլահը նրան մոտեցավ, Մարուանը իր զորքի ու ընտանիքի հետ փախավ՝ թողնելով Խառանում իր եղբորորդուն՝ Իբբան իբն Յազիդին, իսկ նրա հետ նաև Ումմ Օսմանին՝ Մարուանի դստերը։*

*Աբդալլահ իբն Ալին եկավ Խառան և նրան Իբբանը դիմավորեց սև*[84] *[դրոշակով] և ընտրությունը նրան տվեց։ Նա հնազանդվեց նրան (Աբդալլահին), իսկ վերջինս ապահովեցրեց նրան, ինչպես նաև Խառանի ու Ջազիրայի բոլոր բնակիչներին։*

*Իսկ Մարուանը գնաց Եմեսա (Հիմս), որի բնակիչները հպատակվեցին ու հնազանդվեցին նրան։ Նա այնտեղ երկու, թե՞ երեք օր մնաց ու հեռացավ։*

էջ 335

## ՋԱԶԻՐԱՅԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԻ՝ [ԽԱԼԻՖԱՅԻՑ] ՀՐԱԺԱՐՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ջազիրայի բնակիչները հրաժարվեցին Աբու-լ-Աբբաս Սաֆֆահից[35] և շարժվեցին դեպի Խառան, ուր Մուսա իբն Քաաբն էր, Սաֆ-ֆահի զորքերից երեք հազար հոգու հետ, և պաշարեցին նրան։ Սակայն Ջազիրայի ժողովուրդը ղեկավարող առաջնորդ չուներ։ Նրանց դեմ ելավ Իսհակ իբն Մուսլիմ ալ-Ուկայլին, որը եկավ Հայաստանից։ Սա դուրս էր եկել, երբ Մարուանի պարտության լուրը հասել էր նրան։ Ջազիրայի ժողովուրդը հավաքվեց ու պաշարեց Մուսա իբն Քաաբին մոտավորապես երկու ամիս։*

*Աբու-լ-Աբբասը իր եղբորը՝ Աբու Ջաֆարին, ուղարկեց իր մոտ եղած զորքերի հետ, որոնք Վասիթում պաշարել էին իբն Հուբայրային։ [Աբու Ջաֆարը] շարժվեց դեպի Կիրկիսիա և Ռակկա, որոնց բնակիչները հրաժարվել էին [Սաֆֆահին ընդունել]։ Ապա գնաց դեպի Խառան, իսկ Իսհակ իբն Մուսլիմը դիմեց Եդեսիա (Ռուհա)։ Այս բոլորը կատարվեց հարյուր երեսուներեք թվականին (750—751)։*

*Մուսա իբն Քաաբը դուրս եկավ Խառանից ու բախում ունեցավ Աբու Ջաֆարի հետ։ Իսհակ իբն Մուսլիմն իր եղբորը՝ Բաքքար իբն Մուսլիմին, ուղարկեց Ռաբիա [ցեղերի] մոտ՝ Դարա և Մարդին։ Այդ ժամանակ Ռաբիայի ցեղապետը մի մարդ էր Հարուրիյյա [տոհմից] և նրա անունն էր Բարիքա։ Աբու Ջաֆարը նրանց կողմը գնաց և խիստ բախումից հետո Բարիքան սպանվեց ճակատամարտում։ Բաքքարը գնաց իր եղբոր՝ Իսհակի, մոտ Եդեսիա և Իսհակը նրան փոխանորդ թողեց Եդեսիայում, իսկ ինքը Սամոսատ (Սումայսաթ) գնաց մեծ զորքով։ Աբու Ջաֆարը եկավ Եդեսիա և նրա ու Բաքքարի միջև ընդհարումներ եղան։*

*Սաֆֆահը գրեց Աբդալլահ իբն Ալիին՝ հրամայելով, որ իր զորքով գնա Սամոսատ։ Սա գնաց ու կանգ առավ Իսհակի մոտ Սամոսատում։ Այդ ժամանակ Իսհակը վաթսուն հազարով կանգնած էր Եփրատի այն ափին։ Աբու Ջաֆարը եկավ Եդեսիայից և Իսհակին յոթ ամիս պաշարեց Սամոսատում։ Իսհակն ասում էր՝ իմ վզին է ընտրության [պարտքը] և ես չեմ կարող այն մոռանալ, մինչև որ իմանամ նրա տերը մեռած կամ սպանված է։ Աբու Ջաֆարը նրան լուր ուղարկեց, թե Մարուանը սպանված է։ [Իսհակը] ասաց՝ պետք է վստահ լինեմ։ Երբ վստահ դարձավ, հաշտություն և երաշխավորագիր խնդրեց։ Այդ մասին Սաֆֆահին գրեցին և սա հրամայեց նրան ու ընկերակիցներին երաշխավորել։ Այդ մասին գրություն պատրաստվեց և Իսհակը եկավ Աբու Ջաֆարի մոտ, որի հետ ընկերության հիշատակներ ուներ, Ջազիրայի և Ասորիքի ժողովուրդը հանդարտվեց։ Աբու-լ-Աբբասն իր եղբորը՝ Աբու Ջաֆարին, նշանակեց Ջա-*

զիրայի, Հայաստանի, Ատրպատականի կառավարիչ։ Եվ այսպես մնաց [Աբու Ջաֆարը] մինչև խալիֆա դառնալը։

էջ 339

## ՅԱՀԻԱ ԻԲՆ ՄՈՒՀԱՄՄԱԴԻ՝ ՄՈՍՈՒԼԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ ՆՇԱՆԱԿՎԵԼՈՒ ԵՎ ԴՐԱ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ՊԱՏՄՎԱԾՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Սաֆֆահը իր եղբորը՝ Յահիա իբն Մուհամմադին Մոսուլի կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Սուլի փոխարեն։

Բանն այն է, որ Մոսուլի բնակիչները ընդվզեցին Մուհամմադ իբն Սուլի դեմ, ասելով՝ չենք ուզում արյունարբուի ստորադրյալին, և դուրս քշեցին նրան։ Սա գրեց Սաֆֆահին այդ մասին, իսկ վերջինս իր եղբորը՝ Յահիա իբն Մուհամմադին նշանակեց կառավարիչ և տասներկու հազար զորքով ուղարկեց։

Նա իջևանեց իշխանական պալատում, որը գլխավոր մզկիթի մոտ էր և ոչ մի վատ արարք չգործեց ժողովրդի դեմ ու ոչ մի բանի արգելք չդարձավ։ Ապա նրանց հրավիրեց և [հանկարծակի] տասներկու մարդ սպանեց։

Այդ ժամանակ բնակիչները փախան և զենք վերցրին։ Սակայն նա երաշխավորագիր տվեց և հրամայեց, որ մունետիկը կանչի, թե ով որ մզկիթ մտնի ապահովության մեջ կլինի։ Մարդիկ խուռներամ եկան, իսկ Յահիան մզկիթի դռների վրա մարդիկ նշանակեց, որոնք [մտնողներին] անխնա սրի քաշեցին։ Ասվում է, որ այսպիսով տասնմեկ հազար սպանվեց միայն կնիք[87] ունեցողներից, իսկ կնիք չունեցողներից՝ անհաշիվ։

Երբ գիշերը վրա հասավ, Յահիան լսեց կանանց ողբը, որոնց ամուսիններն սպանված էին։ Հարցրեց այդ մասին և նրան հայտնեցին։ Այն ժամանակ նա ասաց՝ վաղը կսպանեք նաև կանանց ու երեխաներին։ Այդպես էլ արեցին և երեք օր կոտորած եղավ։ Սակայն նրա բանակում կար մի զորավար, որը ձեռքի տակ ուներ չորս հազար զինչի (սևամորթ) և սրանք կանանց բռնությամբ հափշտակեցին։

Երբ Յահիան երրորդ օրը վերջացրեց կոտորածը Մոսուլում, չորրորդ օրը ձի նստած դուրս եկավ՝ իր հետ ունենալով [ռազմիկներ] մերկացրած նիզակներով ու սրերով։ Նրա ճամփան կտրեց մի կին՝ բռնելով ձիու սանձը։ Նրա մարդիկ ուզեցին սպանել նրան, սակայն նա արգելեց։ Կինն ասաց՝ մի՞թե դու Հաշիմի[88] տոհմից չես, մի՞թե ալլահի մարգարեի հորեղբորորդին չես։ Ինչպե՞ս ես թույլ տալիս, որ մահմեդական արաբ կանանց

[հափշտակեն] զինջիները (սևամորթները) և ամուսնանան։ [Յահյան] չպատասխանեց նրան և հրամայեց ապահով տեղ հասցնել, քանզի նրա խոսքերը ազդել էին իր վրա։ Հաջորդ օրը նա հրավիրեց զինջիներին դրամ բաժանելու պատրվակով։ Երբ հավաքվեցին, հրամայեց բոլորին կոտորել։

Ասվում է, որ Մոսուլի բնակիչների կոտորածի պատճառը նրանց համակրանքն էր Օմայանների նկատմամբ և ատելությունը՝ Աբբասյանների։ Մի կին իր գլուխն էր լվացել և խթմիյյա (տուղտ) բույսը տանիքից գցել էր ցած և սա ընկել էր խորասանյան ռազմիկներից մեկի գլխին։ Կարծելով, որ դիտմամբ է արված, նա հարձակվել էր տան վրա և սպանել բնակիչներին։ Քաղաքի ժողովուրդը ոտքի էր կանգնել ու սպանել նրան, որից հետո խռովությունը տարածվել էր։

էջ 340

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Սաֆֆահը իր եղբորը՝ Մանսուրին, նշանակեց Ջազիրայի, Ատրպատականի ու Հայաստանի կառավարիչ։

[Այսպիսով], Ջազիրայի, Հայաստանի և Ատրպատականի կառավարիչը դարձավ Աբու Ջաֆար Իբն Մուհամմադ Իբն Ալին։

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

## (9 օգոստոս 750—29 հուլիս 751)

էջ 341

## ՀՌՈՄՆԵՐԻ՝ ՄԱԼԱԹԻԱՆ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռումի թագավոր Կոստանդինը[89] եկավ Մալաթիա ու Կամախ (Քամախ)։

Նա պաշարեց Կամախը, որի բնակիչները օգնության կանչեցին Մալաթիայի ժողովրդին։ Այնտեղից եկավ ութ հարյուր ռազմիկ, որոնց հռոմները հաղթեցին, իսկ մահմեդականները փախուստի դիմեցին։ Հռոմները եկան պաշարեցին Մալաթիան։ Այդ ժամանակ Ջազիրան, ինչպես տեսանք, խռովյալ վիճակում էր, իսկ նրա կառավարիչ Մուսա իբն Քաաբը Խառանում էր։ Կոստանդինը Մալաթիայի ժողովրդին լուր ուղարկեց, թե ես ձեզ պաշարում եմ ոչ առանց տեղյակ լինելու մահմեդականների երկպառակության մասին, այնպես որ ես ձեզ կտամ երաշխավորագիր և դուք կգնաք իսլամի երկիրը, իսկ Մալաթիան ես կվերացնեմ։

*Սրանք չպատասխանեցին նրան, իսկ նա քարանետ մեքենա դրեց և նրանք հպատակվեցին ու հանձնեցին քաղաքը՝ երաշխավորագիր ստանալով, և ապա տեղափոխվեցին իսլամի երկիրը։ Նրանք իրենց հետ տարան ինչ որ կարող էին տանել, իսկ ինչ չէին կարող՝ գցեցին ջրհորներն ու կոյուղին։ Երբ նրանք շարժվեցին, հոռոմները տեղեկացան այդ մասին։ Նրանք գնացին ու ցրվեցին Ջավիրայի տարբեր կողմերում։*

*Ռումի թագավորն եկավ Կարնո քաղաք (Կալիկալա), կանգ առավ Մարջ ալ-Խիսիյյ (Ներքինու դաշտ) վայրում և ուղարկեց հայազգի Քուշանին, որը պաշարեց այն։ Եվ ահա քաղաքի բնակիչներից երկու հայ եղբայրներ պարիսպների մեջ անցք բացեցին և Քուշանը իր մարդկանց հետ մտավ քաղաք։ Նրանք հաղթեցին, տղամարդկանց կոտորեցին, կանանց գերեվարեցին։ Իսկ կառավարչին տարան Ռումի թագավորի մոտ։*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

## (30 հուլիս 751—17 հուլիս 752)

*էջ 344*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Սաֆֆահը Հիրայից Անբար փոխադրվեց Զու-լ-Հիջջա ամսին (19 հունիս—17 հուլիս 752)։*

*Այդ տարում[60] ճանապարհների [լույսի] և մղոնների նշաններ դրվեցին Քուֆայի և Մեքքայի միջև։ Ուխտավորներին առաջնորդեց Իսա իբն Մուսան, որը Քուֆայի կառավարիչն էր։ Իսկ Քուֆայի դատավորն էր իբն Աբի Լայլան։*

*Մադինայի, Մեքքայի (Մաքքա), Թաիֆի և Յամամայի կառավարիչն էր Զիադ իբն Ուբայդալլահը։*

*Եմենի (Յաման) կառավարիչն էր Ալի իբն ալ-Ռաբի ալ-Հարիսին։*

*Բասրայի և գավառների ու Տիգրիսի շրջանների ու Օմանի (Ումման) կառավարիչն էր Սուլայման իբն Ալին։ Իսկ դատավորն էր Իբադ իբն Մանսուրը։*

*Սինդի կառավարիչն էր Մուսա իբն Քաաբը։*

*Խորասանի, Ջիբալի կառավարիչն էր Աբու Մուսլիմը։*

*Պաղեստինի (Ֆիլասթին) կառավարիչն էր Սալիհ իբն Ալին։*

*Եգիպտոսի (Միսր) կառավարիչն էր Աբու Աունը։*

*Մոսուլի կառավարիչն էր Իսմաիլ իբն Ալին։*

*Հայաստանի (Արմինիա) կառավարիչն էր Յազիդ իբն Ուսայդը։*

*Ատրպատականի կառավարիչն էր Մուհամմադ իբն Սուլը։*

*Հարկային դիվանի [պետն] էր Խալիդ իբն Բարմաքը։*

*Ջազիրայի կառավարիչն էր (փոխարքա) Աբու Ջաֆար ալ-Մանսուրը, իսկ նրա տեղակալներն Ատրպատականի ու Հայաստանի վրա արդեն հիշել ենք։*

*Ասորիքի (Շամ) կառավարիչն էր Աբդալլահ իբն Ալին։*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

**(27 հունիս 754—15 հունիս 755)**

*էջ 349*

### ԱԲԴԱԼԼԱՀ ԻԲՆ ԱԼԻԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

*Ապա Աբդալլահ իբն Ալին եկավ կանգ առավ Մծբինում՝ և խրամատ փորեց։ Եկավ նաև Աբու Մուսլիմը[91] իր հետ եղած [զորքով]։ Մանսուր [խալիֆան] գրել էր Հասան իբն Կահթաբային, որ իր փոխանորդն (խալիֆա) էր Հայաստանում, հրամայելով նրան օգնություն դալ Աբու Մուսլիմին։ Սա եկավ Աբու Մուսլիմի մոտ՝ Մոսուլ։ Ապա Աբու Մուսլիմը շարժվեց դեպի Մծբինի կողմերը...։*

*էջ 350*

### ԱԲՈՒ ՄՈՒՍԼԻՄ ԽՈՐԱՍԱՆԻԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում սպանվեց Աբու Մուսլիմ ալ-Խորասանին՝ Մանսուրի ձեռքով։*

*Դրա պատճառն այն էր, որ Աբու Մուսլիմը գրեց Սաֆֆահին՝ թույլտվություն խնդրելով ուխտի գնալ [Մեքքա] նախկինի նման։ Սաֆֆահը գրեց Մանսուրին, որը Ջազիրայի. Հայաստանի ու Ատրպատականի [փոխարքան] էր, թե՝ Աբու Մուսլիմը գրել է ինձ թույլտվություն խնդրելով ուխտի գնալ, իսկ ես թույլ տվեցի, սակայն նա ուզում է նաև խնդրել. որ իրեն վերակացու նշանակեն ուխտագնացության շրջանում։ Ուստի դու գրիր ինձ ու թույլտվություն խնդրիր ուխտի գնալու, և ես թույլ կտամ. քանզի, եթե դու լինես Մեքքայում, նա չի համարձակվի քեզանից առաջ անցնել։*

*Մանսուրը գրեց եղբորը՝ Սաֆֆահին թույլտվություն խնդրելով ուխտի գնալու, և նա թույլ տվեց։ Սա եկավ Անբար։ Աբու Մուսլիմն ասաց՝ Աբու Ջաֆարը ուրիշ տարի չի գտել ուխտի գնալու. բացի այս տարվանից ու զայրացավ այս բանի համար։ Նրանք միասին գնացին ուխտի...,*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

**(16 հունիս 755—4 հունիս 756)**

*էջ 359*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ռումի թագավոր Կոստանդինը (Կուսթանթին) ելավ իսլամի երկրի դեմ, բռնությամբ մտավ Մալաթիա, ճնշեց ժողովրդին, քանդեց պարիսպը, սակայն խնայեց [մահմեդական] ռազմիկներին ու նրանց երեխաներին։*

*Այդ տարում ալ-Աբբաս իբն Մուհամմադ իբն Ալի իբն Աբդալլահ իբն ալ-Աբբասը ամառային արշավանք կատարեց Սալիհ իբն Ալիի և Իսա իբն Ալիի հետ։ Ասվում է նաև, որ սա [հարյուր] երեսունինը թվականին էր։ Սալիհը վերակառուցեց Մալաթիայի պարիսպներից այն, ինչ որ Ռումի թագավորը քանդել էր։*

## ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ

**(5 հունիս 756—24 մայիս 757)**

*էջ 359—360*

### ՀՌՈՄՆԵՐԻ ՀԱՐՁԱԿՄԱՆ ԵՎ ՆՐԱՆՑ ՀԵՏ ԳԵՐԻՆԵՐԻ ՓՐԿԱԳՆՄԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Սալիհ իբն Ալին և ալ-Աբբաս իբն Մուհամմադը ավարտեցին վերակառուցումը այն ամենի, ինչ հռոմները քանդել էին Մալաթիայում։ Ապա նրանք ամառային արշավանք կատարեցին Դարբ ալ-Հադասից և ներթափանցեցին Ռումի երկիրը։ Սալիհի հետ արշավանքի գնացին նաև երկու քույրերը Ումմ Իսան և Լուբաբան՝ Ալիի դուստրերը։ Նրանք երդվել էին, որ եթե Օմայանների պետությունը վերանա, իրենք կռվելու են հանուն ալլահի։ Մալաթիայի լեռնանցքի կողմից հարձակվեց Ջաֆար իբն Հանզալա ալ-Մուհրանին։*

*Այդ տարում գերիների փրկագնում եղավ Մանսուրի ու Ռումի թագավորի միջև։ Մանսուրը հռոմներից փրկագնեց Կարնո քաղաքի (Կալիկալա) գերիներին և այլոց, վերակառուցեց [քաղաքը] ու շենացրեց․ Բնակիչներին նորից վերադարձրեց քաղաք և Ջազիրայի մարդկանցից և այլ տեղերից զորք բերեց, որպեսզի հաստատվեն ու պաշտպանեն այն։*

*Դրանից հետո ամառային արշավանք տեղի չունեցավ մինչև [հարյուր] քառասունվեց թվականը (763—764), որովհետև Մանսուրը զբաղված էր Աբդալլահ իբն ալ-Հասան իբն Ալիի երկու որդիներով։*

*Ոմանք ասում են, որ Հասան իբն Կահթաբան [հարյուր] քառասուն թվականին ամառային արշավանք կատարեց Աբդ ալ-Վահհաբ իբն Իբրահիմ ալ-Իմամի հետ, իսկ Ռումի թագավոր Կոստանդինը հարյուր հազարով եկավ հասավ Ջայհան [գետը], բայց լսելով մահմեդականների հսկայական թվի մասին, խուսափեց նրանցից։ Դրանից հետո ամառային արշավանք չեղավ մինչև [հարյուր] քառասունվեց թվականը։*

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

(25 մայիս 757—13 մայիս 758)

*էջ 365*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մանսուրն իր եղբոր՝ Իբրահիմ ալ-Իմամի որդուն՝ Աբդ ալ-Վահհաբին և ալ-Հասան իբն Կահթաբային յոթանասուն հազար ռազմիկներով ուղարկեց Մալաթիա։ Նրանք իջան այնտեղ և վերակառուցեցին այն, ինչ հոռոմները քանդել էին։ Վեց ամսում ավարտեցին այդ արշավանքը, և Հասանը այդ գործում մեծ ջեր կատարեց։ Մանսուրն այնտեղ չորս հազար ռազմիկ բնակեցրեց, շատ զենք կուտակեց ու զինամթերք և կառուցեց Կալաուզիյյա[92] բերդը։ Երբ Ռումի թագավորը լսեց Աբդ ալ-Վահհաբի և Հասանի Մալաթիա գնալու մասին, հարյուր հազարով գնաց նրանց դեմ, կանգ առավ Ջայհան գետի մոտ, բայց լսելով մահմեդականների մեծ թվի մասին, ետ դարձավ։*

*Երբ Մալաթիան վերակառուցվեց, նրա բնակիչներից ողջ մնացածները վերադարձան։*

*Այդ տարում Մանսուրը հրամայեց Ջիբրայիլ իբն Յահիային վերակառուցել Մամեստիան (ալ-Մասիսա), որի պարիսպները երկրաշարժից քայքայվել էին, իսկ բնակիչները քչացել էին։ Սա կառուցեց պարիսպը և անվանեց ալ-Մամուրա (շեն), և այնտեղ մայր մզկիթ կառուցեց։ Հազար հոգու պարտավորեցրեց այն [պահպանել] և շատերի այնտեղ վերաբնակեցրեց։*

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(4 մայիս 759—21 ապրիլ 760)

*էջ 369*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Մանսուրը Ջազիրայի, Սահմանային գոտում (սուղուր) և Ավասիմի[93] կառավարիչ նշանակեց իր եղբորը՝ ալ-Աբբաս իբն Մուհամմադին։ Նա*

*Մոսուլից հեռացրեց իր հորեղբորը՝ Իսմայիլ իբն Ալիին, և կառավարիչ նշանակեց Մալիք իբն ալ-Հայսամ ալ-Խուզաիին։*

## ՀԱՏՈՐ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

**(1 ապրիլ 762—20 մարտ 763)**

*էջ 14—15*

### ԲԱՂԴԱԴ ՔԱՂԱՔԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մանսուրն սկսեց Բաղդադ քաղաքի կառուցումը։*

*Բանն այն էր, որ նա կառուցել էր ալ-Հաշիմիյյա[94] քաղաքը Քուֆայի կողմերում, սակայն երբ Ռավանդիյյա[95] [աղանդն] ապստամբեց, նա չուզեց այնտեղ բնակվել, մանավանդ, որ մոտ էր Քուֆային, որի բնակիչներին նա չէր վստահում. նրանք փչացրել էին իր զորքը։*

*Նա դուրս եկավ անձամբ բնակության վայր փնտրելու իր և զորքի համար։ Նա իջավ Ջարջարայա[96], ապա բարձրացավ Մոսուլ և քայլեց դեպի լեռը, կառուցման վայր փնտրելով։ Իր զինվորներից մեկը ետ էր մնացել Մադաինի (Տիզբոնի) մոտ աչքի ցավի պատճառով։ Ապա բժիշկը, որ բուժում էր նրան, հարցրեց Մանսուրի շրջագայության պատճառը։ Երբ զինվորը պատմեց նրան, նա ասաց՝ մենք գտել ենք մեզ մոտ եղած մի գրքում, որ մի մարդ, որը կոչվում է Միկլաս (ուղտ կթող) կկառուցի մի քաղաք Տիգրիսի ու Սարատի (Սարահ) միջև[97], որը կոչվում է ալ-Զաուրա։ Երբ հիմնի այն և սկսի կառուցումը, նրան խանգարելու է Հիջազում ծագած խռովությունը (ճեղքվածքը) և կանգնելու է շինարարությունը, սակայն գործը կարգավորվելու է։ Ապա ավելի մեծ վնաս (ճեղքվածք) կգա Բասրայի կողմից։ Սակայն բոլոր վնասվածքները կբուժվեն (կնորոգվեն) և նա կշարունակի կառուցումը, ապա երկար կապրի և իրենից հետո նրա թագավորությունը կմնա որդիներին։*

*Զինվորը եկավ Մանսուրի ճամբարը, որը լեռան կողմերում էր և պատմեց։ Սա ասաց՝ ալլահը վկա երեխա ժամանակ ինձ կոչում էին Միկլաս, իսկ հետո մոռացվեց։*

*Նա գնաց, մինչև որ հասավ այն վանքը, որն իր [հետագայում կառուցված] ալ-Խուլդ կոչված պալատի դիմացն էր և կանչեց վանահորը և Ռիհա (ջրաղաց) ալ-Բաթրիկի տեր պատրիկին, Բաղդադ [գյուղի] տիրոջը, Մուխարիմի[98] տիրոջը, Բուստան (այգի) ալ-Նաֆասի տիրոջը և ալ-Ատիկայի տիրոջը և ամեն մեկին հարցրեց իրենց տեղերի մասին, թե*

ինչպիսին է վիճակը շոգին ու ցրտին, անձրևների, ցեխի ժամանակ, մոծակների ու քնի հարմարության մասին։

Ամեն մեկը իր մոտ եղած վիճակի մասին պատմեց և վերջապես ընտրությունն ընկավ Բաղդադի վրա։ [Մանսուրը] խորհուրդ հարցրեց նրա տիրոջից։ Սա ասաց՝ ո՜վ հավատացելոց իշխան, հարցնում ես այս վայրերի մասին և ուզում ես ընտրություն կատարել։ Ես հարմար եմ գտնում, որ հաստատվես չորս թասուջների[99] վրա՝ արևմտյան կողմում կլինի երկու թասուջ, որոնք են Կաթրաբլ (Կաթրաբբուլ) և Բադարայա (Բադուրիյա), իսկ արևելյան կողմում՝ երկու թասուջ, որոնք են Նահր Բուկ և Քիլուադի։ Դու կլինես արմավենիների մեջ և ջրին մոտիկ, և եթե մի թասուջը չորանա և շինարարությունն ուշանա, մյուսի մեջ շինարարությունը կշարունակվի։ Ո՜վ հավատացելոց իշխան, դու կլինես Սարատ գետի վրա և պարենը քեզ կհասնի նավերով Ասորիքից, Ռակկայից, Արևմուտքից՝ Եգիպտոսի կողմերից։ Քեզ պարեն կգա Չինաստանից, Հնդկաստանից, Բասրայից, Վասիթից, Դիար Բաքրից, Ռումի երկրից, Մոսուլից և այլ կողմերից՝ Տիգրիսի վրայով։ Քեզ կգա պարենը Հայաստանից և նրա հետ կապված կողմերից, Տամարայի վրայով մինչև որ կապվի Զաբի հետ։ Դու կլինես գետերի միջև և թշնամին քեզ կարող է հասնել միայն կամուրջների և ջրաթմբերի վրայով։ Եթե կտրես կամուրջը կամ քանդես ջրաթումբը, նա քեզ չի հասնի։ Տիգրիսը, Եփրատը և Սարատը խրամատներ կլինեն այդ քաղաքի համար։ Դու միջին կետում կլինես Բասրայի, Քուֆայի, Վասիթի[100], Մոսուլի և Սավադի միջև, մոտիկ լինելով ցամաքին, ծովին և լեռանը։

Մանսուրի ցանկությունը ավելացավ այս վայրում հաստատվելու համար։ Ասվում է, որ երբ Մանսուրը կամեցավ իր Բաղդադ քաղաքը կառուցել, տեսավ մի [քրիստոնյա] վանականի, որին կանչեց ու ասաց ձեր գրքերում ասվա՞ծ է, թե այստեղ քաղաք պիտի կառուցվի։ Ասաց այո, այն կկառուցի մի Միկլաս։ Ասաց՝ ես փոքր ժամանակ միկլաս էի կոչվում։ Ասաց՝ ուրեմն դու ես նրա տերը։

Մանսուրն սկսեց գործը [հարյուր] քառասունհինգին և գրեց Ասորիք, ալ-Ջիբալ, Քուֆա, Վասիթ և Բասրա, որպեսզի արհեստավորներ և գործավորներ ուղարկեն։ Հրամայեց ընտրել առաքինի, արդարամիտ, աստվածավախ մարդկանց, որոնք կլինեին հավատարիմ և երկրաչափական գիտելիքներ կունենային։ Այս նպատակով եկածների մեջ էին Հաջջաջ իբն Արթատը և Աբու Հանիֆան։

Հրամայեց գծել քաղաքի [հատակագիծը] և փորել հիմքերը, հում աղյուսը թափեցին և թրծեցին։ Այս բոլորն սկսեց նրանով, որ հրամայեց մոխրով շրջագծել [հիմքերը] և այսպես մտավ [Մանսուրը] դռներից, պարիսպներից, կամարներից ու դահլիճներից [բակերից] ներս, որոնք

մոխրով գծած էին։ Ապա հրամայեց մոխրի վրա բամբակի սերմեր ցանել և վառել։ Այդպես էլ արեցին և նա նայելով վառվածին, հասկացավ ու պատկերացրեց հատակագիծը։ Եվ հրամայեց այդ նույն ձևով փորել հիմքերը։ Իր զորավարներից չորսին վերակացու նշանակեց [քաղաքի] ամեն մի քառորդի վրա, իսկ Աբու-Հանիֆային հանձնարարեց թրծած աղյուսի և հում աղյուսի գործը։

Դրանից առաջ [Մանսուրը] կամեցել էր, որ Աբու Հանիֆան ստանձնի դատական գործը և հանցագործությունների հսկողությունը, սակայն վերջինս չէր համաձայնվել։ Մանսուրը պնդեց, որ նա մնա և աշխատի։ Այսպիսով որոշվեց, որ նա Բաղդադի շինարարության մեջ վերակացու լինի հում և թրծած աղյուսի պատրաստության գործին՝ օգտագործելով եղեգը և նա առաջինն էր, որ այդ բանն արեց։ Մանսուրը պարսպի հիմքի լայնությունը դարձրեց ներքևից հիսուն կանգուն (զիրա)[101], իսկ վերևից քսան կանգուն։ Շինարարության մեջ նա օգտագործեց եղեգը և փայտը։ Նա իր ձեռքով դրեց առաջին աղյուսը՝ ասելով.

«Հանուն ալլահի և փառք նրան։ Հողը նրանն է, կժառանգեցնի ում որ կամենա իրեն երկրպագողներից, իսկ [բարի] վախճանը բարեպաշտներինն է»։ Ապա ավելացրեց. «Կառուցե՛ք ալլահի օրհնությամբ»։ Երբ պարիսպը մարդահասակ բարձրացավ, լուր եկավ, թե գլուխ է բարձրացրել Մուհամմադ Իբն Աբդալլահը։ [Մանսուրը] ընդհատեց աշխատանքը և գնաց Քուֆա, վերջացրեց կռիվը Մուհամմադի և եղբոր՝ Իբրահիմի[102], հետ։ Ապա վերադարձավ Բաղդադ և ավարտեց նրա կառուցումը։ Այստեղ նա հողամասեր հատկացրեց իր մերձավորներին։ Մանսուրը պատրաստել էր ամեն ինչ, որ անհրաժեշտ էր քաղաքի կառուցման համար՝ փայտ, կաղնի և այլ բաներ։ Մանսուրը Քուֆա գնալու ժամանակ իր փոխարեն շինարարության վերակացու էր նշանակել իր մաուլա Ասլամին։ Երբ սրան լուր հասավ, թե իբր Իբրահիմը հաղթել է Մանսուրի զորքին, վառեց այն շինանյութը, որ Մանսուրը թողել էր իրեն։ Երբ Մանսուրը լսեց այդ մասին գրեց ու այպանեց նրան։ Ասլամը գրեց, թե ինքը վախեցել էր, որ այդ բոլորը Իբրահիմի ձեռքը կանցնի։ [Մանսուրը] այլևս ոչինչ չասաց։ Քաղաքի կառուցման մասին խոսելու ենք [հարյուր] քառասունվեց թվականի տակ, կամոքն ալլահի։

էջ ՀՂ

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում թուրքերն ու խազարները հարձակվեցին Բաբ ալ-Աբուաբի վրա և Հայաստանում մեծ թվով մահմեդականների կոտորեցին։

Այդ տարում Մանսուրը Մալիք Իբն ալ-Հայսամին հանեց Մոսուլից և նշանակեց իր որդուն՝ Ջաֆար Իբն Աբի Ջաֆար ալ-Մանսուրին։ Նրա հետ ուղարկեց նաև Հարբ իբն Աբդալլահին, որը նրա մեծագույն զորավարներից էր և Բաղդադի զորականների պետը։ Նա Մոսուլի ներքին մասում կառուցեց մի պալատ, ուր ապրեց և մինչև օրս ծանոթ է Հարբի պալատ անունով։

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

## (21 մարտ 763—9 մարտ 764)

էջ 20

## ՄԱՆՍՈՒՐԻ ԲԱՂԴԱԴ ՏԵՂԱՓՈԽՎԵԼԸ ԵՎ ՆՐԱ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ

Այդ տարում Սաֆար [ամսին] (20 ապրիլ—18 մայիս) Մանսուրը Իբն Հուբայրա[103] քաղաքից տեղափոխվեց Բաղդադ և կառուցեց նրա [բուն] քաղաքը։ [Հարյուր] քառասունհինգ թվականին մենք հիշեցինք, թե ինչ պատճառներով Մանսուրը ձեռնարկեց Բաղդադ քաղաքի կառուցումը, իսկ այժմ կհիշենք հենց կառուցումը։

Երբ Մանսուրն արդեն որոշել էր կառուցել Բաղդադը, խորհրդակցեց մերձավորների հետ, որոնց մեջ էր Խալիդ իբն Բարմաքը[104], որը գծագրել էր հատակագիծը։ [Մանսուրը] խորհրդակցեց նրա հետ Մադաինը (Տիզբոն) և Իյուան Քիսրան (Խոսրովի պալատ) քանդելու և ավերակները Բաղդադ տեղափոխելու մասին։ Ասաց՝ [Խալիդը] ես համաձայն չեմ դրան, որովհետև սա իսլամի [երկրի] նշանավոր վայրերից մեկն է, որին նայողը եզրակացնում է, որ սա անցողիկ չի լինելու, ինչպես աշխարհիկ բաներն են, այլ կրոնական նշանակություն ունի, մանավանդ, որ Ալի իբն Աբու Թալիբի աղոթավայրն էլ այստեղ է։ Ասաց Մանսուրը [իրականում] դու դեմ ես այս բանին քո պարսիկ ազգակիցների սիրուն։ Եվ հրամայեց քանդել սպիտակ պալատը։ Մի կողմը քանդեցին և մասերը փոխադրեցին, սակայն պարզվեց, որ այսպիսով ավելի թանկ էր արժելու, քան նորը կառուցելը։ [Մանսուրը] կանչեց Խալիդ իբն Բարմաքին ու հայտնեց այս բանը։ Ասաց՝ ո՛վ հավատացելոց իշխան, ես դեմ էի այդ անելուն, բայց քանի որ արեցիր, կարծում եմ, որ պետք է լրիվ քանդես, որ չասեն, թե դու չկարողացար քանդել այն, ինչ ուրիշները կառուցել են։ Սակայն [Մանսուրը] չընդունեց և հրաժարվեց քանդելուց։

Նա տեղափոխեց Վասիթի դարպասները և հարմարեցրեց Բաղդադին, մի դարպաս էլ բերվեց Ասորիքից, մի ուրիշն էլ բերվեց Քուֆայից, որը

շինել էր Խալիդ իբն Աբդալլահ ալ-Կիսրին։ Նա քաղաքը կլոր կառուցեց, որպեսզի բնակիչների մի մասը մյուսներից ավելի մոտիկ չլինի տիրակալին (սուլթան)։ Երկու պարիսպ դրեց, ընդ որում ներքին պարիսպը արտաքինից ավելի բարձր էր։ Իր պալատը կառուցեց նրա մեջտեղում, իսկ պալատի կողքին՝ գլխավոր մզկիթը։ Մզկիթի հատակագիծը պատրաստել էր ալ-Հաջջաջ իբն Արթատը։

Հում աղյուսի [մեծությունը], որն օգտագործվում էր կառուցման մեջ, կանգունով կանգուն (զիրա) էր, իսկ մեկ աղյուսի կշիռը հարյուր տասնվեց ռաթլ[105] (լիտր) էր։

[Այդ ժամանակ] շուկաները քաղաքի ներսում էին, և ահա եկավ Ռումի թագավորի դեսպանը։ [Մանսուրը] հրամայեց Ռաբիին, որ նրան ման ածի քաղաքում։ Ասաց նրան՝ ինչպե՞ս տեսար։ Ասաց [դեսպանը]՝ լավ շինություններ տեսա, սակայն տեսնում եմ, որ քեզ հետ են թշնամիներդ՝. շուկայի մարդիկ։ Երբ դեսպանը վերադարձավ, [Մանսուրը] հրամայեց, որ նրանց դուրս բերեն դեպի Քարխի կողմերը։ Ասվում է, որ նրանց դուրս բերեցին, քանզի օտարականները մտնում էին [քաղաք] և գիշերում այնտեղ և հավանաբար նրանց մեջ լրտեսներ կային։ Ասվում է նաև, որ Մանսուրը հետևում էր Իբրահիմ իբն Աբդալլահի հետ ամեն դուրս եկողին, իսկ Բաղդադի մուհտասիբը[106] Աբու Զաքարիա Յահիա իբն Աբդալլահը Իբրահիմի հետ մտերիմ էր։ Սա ստորին խավի մարդկանցից մի խումբ հավաքեց և խռովություն բարձրացրեց Մանսուրի դեմ։ [Վերջինս] ճնշեց նրանց, Աբու Զաքարիային սպանեց ու շուկաներն էլ դուրս հանեց։ Նա հրամայեց, որ ամեն մի թաղամասում լինի նպարավաճառ, որը ծախի միայն բանջարեղեն և քացախ։

[Քաղաքի] կառուցման, ինչպես նաև մզկիթի, պալատի, շուկաների, պարիսպների, խրամատների ու դարպասների վրա ծախսված դրամի գումարը չորս միլիոն ութ հարյուր երեսուներեք դիրհեմ էր։ Վարպետ կառուցողը (պատ շարող) օրական ստանում էր մեկ կիրատ արծաթ, օրավարձով աշխատողը (ռուզքարի)[107] երկու հատիկ [արծաթ]։ Եվ նա [Մանսուրը] հաշվեց իր [վերակացու] զորավարների, նույնիսկ, ազատ նստած ժամանակը և ստիպեց մնացած փողը վերադարձնել, և գտնելով, որ Խալիդ իբն ալ-Սալտի մոտ մնում է տասնհինգ դիրհեմ, բանտարկեց նրան և փողը վերցրեց։

էջ 22

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մալիք իբն Աբդալլահ ալ-Խասամին, որը կոչվում էր «ամառային արշավանքների Մալիք» և Պաղեստինի բնակիչներից էր,

արշավեց Ռումի երկիրը, շատ ավար վերցրեց և վերադարձավ։ Երբ Դարբ (լեռնանցք) ալ-Հադասից տասնհինգ մղոն հեռավորության վրա էր Ռահուա (բարձունք) կոչված վայրում, երեք օր իջևանեց, վաճառեց ավարը, բաժանելով այն ըստ մասերի։ Այդ բարձունքը կոչվեց Ռահուատ Մալիք (Մալիքի բարձունք)։

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

## (10 մարտ 764—26 փետրվար 765)

էջ 22

### ՀԱՐԲ ԻԲՆ ԱԲԴԱԼԼԱՀԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում Աստարխան ալ-Խուարիզմին (Խորեզմցի) Թուրքերի զորքով հարձակվեց մահմեդականների վրա՝ Հայաստանում։ Գերեվարեց մահմեդականներին ու զիմմայի մարդկանց և մտավ Տփղիս (Տաֆլիս)։ Հարբը Մոսուլում էր իր երկու հազար ռազմիկներով Ջազիրայի ապստամբներին (խարիջիներին) հսկելու նպատակով։ Մանսուր [խալիֆան]՝ Թուրքերի դեմ կռվելու համար, ուղարկեց Ջիբրայիլ իբն Յահիային և Հարբ իբն Աբդալլահին, որոնք պարտություն կրեցին. Ջիբրայիլը փախուստի դիմեց, Հարբը սպանվեց, իսկ Ջիբրայիլի մարդկանցից շատերը նույնպես սպանվեցին։

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

## (27 փետրվար 765—15 փետրվար 766)

էջ 25

### ԽԱԼԻԴ ԻԲՆ ԲԱՐՄԱՔԻ՝ ԿԱՌԱՎԱՐԻՉ ՆՇԱՆԱԿՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մանսուրը Մոսուլի կառավարիչ նշանակեց Խալիդ իբն Բարմաքին։

Բանն այն է, որ քրդերը այդ նահանգում տարածվել ու ապականել էին։ Նա ասաց՝ ո՞ւմ եք առաջարկում։ Ասացին՝ ալ-Մուսայյիդ իբն Զուհայրին. Ումարա իբն Համզան առաջարկեց Խալիդ իբն Բարմաքին և [Մանսուրը] նրան նշանակեց կառավարիչ և այնտեղ ուղարկեց։

Սա լավ վերաբերվեց մարդկանց, իսկ ապականողներին ճնշեց ու կսպեց։ Երկրի ժողովուրդը սաստիկ վախենում էր նրանից, թեև նա լավ էր վերաբերվում՝ նրանց։

## ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(16 փետրվար 766—5 փետրվար 767)

*էջ 28*

*Այդ տարում ալ-Աբբաս իբն Մուհամմադը ամառային արշավանք կատարեց Ռումի երկիրը, իր հետ ունենալով ալ-Հասան իբն Կահթաբային և Մուհամմադ իբն ալ-Աշասին։ Սակայն Մուհամմադը մեռավ ճանապարհին։*

*Այդ տարում Մանսուրն ավարտեց Բաղդադ քաղաքի պարսպի և խրամատի կառուցումը և բոլոր աշխատանքներն ավարտեց։*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(13 դեկտեմբեր 771—1 դեկտեմբեր 772)

*էջ 38*

*Այդ տարում Ռումի թագավորը Մանսուրից հաշտություն խնդրեց՝ ջիզիա (գլխահարկ) վճարելու պայմանով։*

*Այդ տարում ամառային արշավանք կատարեց Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամին։*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(21 նոյեմբեր 773—10 նոյեմբեր 774)

*էջ 41*

*Այդ տարում ամառային արշավանք կատարեց Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամին։ Նա Բաթթալի մաուլա Սինանին ուղարկեց մի բերդի դեմ և վերջինս գերեվարեց ու ավարի տվեց։ Ասվում է, որ ամառային արշավանք կատարողը Զաֆար իբն Ասիմն էր։*

## ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(11 նոյեմբեր 774—30 հոկտեմբեր 775)

*էջ 48*

### ՄԱՆՍՈՒՐԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

. . . . .

*Ասվում է, որ Հայաստանի տերը (սահիբ Արմինիա) գրել էր Մանսու-*

րին, իմաց տալով, որ զինվորները խռովություն բարձրացրին և կողոպտեցին ինչ որ կար պետական գանձարանում (Բայտ ալ-մալ)[108]։ Իր [պատասխան] գրության մեջ [Մանսուրը] նշում է՝ հեռացի՛ր ով խայտառակված պաշտոնյա. եթե խելոք լինեիր, խռովություն չէին բարձրացնի և եթե խիստ լինեիր, չէին կողոպտի։

Այս և նրա այլ խոսքերը վկայում են նրա ճարտասանության և ճարտար լեզվի մասին։

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(9 հոկտեմբեր 777—27 սեպտեմբեր 778)

էջ 60

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Սումամա իբն ալ-Վալիդը ամառային արշավանք կատարեց [Ռումի երկիրը] և կանգ առավ Դաբիկում[109]։ Հռոմները Միքայելի (Միխայիլ) առաջնորդությամբ ելան ութսուն հազարով, եկան Մարաշի Ամկը (փոր), կոտորեցին, գերեվարեցին, ավարի տվին։ [Միքայելը] եկավ ու պաշարեց Մարաշը։ Ճակատամարտ եղավ և մահմեդականներից շատերն սպանվեցին։ Մարաշի բերդում գտնվում էր Իսա իբն Ալին, և հռոմները հեռացան Պիրամոս (Ջիհան) [գետը]։ Լուրը հասավ Մահդի [խալիֆային], որը զայրացավ ու պատրաստվեց Ռումի դեմ արշավանքի, ինչպես կհիշենք հարյուր վաթսուներկու թվականին։ Այս պատճառով մահմեդականները ամառային արշավանք չունեցան։

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(28 սեպտեմբեր 778—16 սեպտեմբեր 779)

էջ 62

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մահդին հիմնեց վերահսկող դիվանը (դիվան ալ-ազիմմա)[110] և վերակացու կարգեց իր մաուլա Ամրու իբն Մուրաբբային։

Մահդին դրամական միջոցներ նշանակեց բորոտներին և բանտարկյալներին՝ բոլոր կողմերում։

Այդ տարում հռոմները եկան ալ-Հադաս, քանդեցին նրա պարիսպը։ Ամառային արշավանք կատարեց ալ-Հասան իբն Կահթաբան ութսուն հազար կանոնավոր զորքով[111], բացի կամավորներից։ Նա հասավ Հիմմատ

*(Ջերմուկ) Ազրուլիյյա, շատ վայրեր հրդեհեց ու կործանեց Ռումի երկրում։ Նա չնվաճեց ոչ մի բերդ և ոչ էլ մարդկանց հանդիպեց։ Հոռոմները նրան կոչում էին վիշապ և ասում՝ եկել է Հիմմա (Ջերմուկ), որպեսզի լվացվի իր բորոտությունից։ Մարդիկ կռվից վերադարձան ողջ-առողջ։*

*Այդ տարում Յազիդ իբն Ուսայդ ալ-Սուլամին Կարնո քաղաքի (Կալիկալա) կողմից արշավեց և երեք բերդ գրավեց ու գերեվարեց մարդկանց։*

## *ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ*

## (17 սեպտեմբեր 779—5 սեպտեմբեր 780)

*էջ 63*

### ՌՈՒՄԻ ԵՐԿԻՐԸ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մահդին պատրաստվեց արշավել Ռումի երկիրը։ Ելավ արշավանքի և զորքը կանգնեց Բարդան [գետի] մոտ։ Նա հավաքել էր զորքը Խորասանից և այլ վայրերից և առաջ խաղաց։*

*Նա անցավ Եփրատը դեպի Հալեբ և այնտեղ եղած ժամանակ հալածել տվեց բոլոր անհավատներին (ղանադիկա), սպանեց նրանց և գրքերը դանակներով կտրտեց։ Այնտեղից դուրս եկավ և ճանապարհ գցեց իր որդուն՝ Հարուն ալ-Ռաշիդին, մինչև որ անցավ լեռնանցքը ու հասավ Պիրամոս (Ջիհան)։ Հարունը և իր ընկերակիցները՝ Իսա իբն Մուսան, Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը, Ռաբին, ալ-Հասան իբն Կահթաբան, ալ-Հասանը, Սուլայման իբն Բարմաքը և Յահիա իբն Խալիդ իբն Բարմաքը (վերջինիս էր հանձնարարված հոգ տանել զորքի, ծախսերի, նամակագրության և այլ բաների համար), եկան ու պաշարեցին Սամալու բերդը։ Հարունը երեսունութ օր պաշարեց, քարանետ մեքենաներ դրեց և ալլահը նրանց հնարավորություն տվեց նվաճելու երաշխավորագրի պայմանով և նրանք շատ հաղթանակներ տարան։*

*էջ 63*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մահդին իր որդուն՝ Հարունին ամբողջ Մաղրիբի, Ատրպատականի և Հայաստանի կառավարիչ նշանակեց։ Սա հարկային դրագիր (քարտուղար) նշանակեց Սաբիթ իբն Մուսային, իսկ նամակագրու-*

Թյան [քարտուղար] նշանակեց Յահիա իբն Խալիդ իբն Բարմաքին։ Այդ տարում [Մահդին] Զուֆար իբն Ասիմին պաշտոնանկ արեց Ջազիրայից և կառավարիչ նշանակեց Աբդալլահ իբն Սալիհին։

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(6 սեպտեմբեր 780—25 օգոստոս 781)

էջ 64

Այդ տարում Աբդ ալ-Քաբիր իբն Աբդ ալ-Համիդ իբն Աբդ ալ-Ռահման իբն Զայդ իբն Խաթթաբը Դարբ (լեռնանցք) ալ-Հադասից հարձակվեց Ռումի երկիրը։ Նրա դեմ ելան Միքայել պատրիկը (Միխայիլ ալ-Բաթրիկ) և հայազգի Տաճատ պատրիկը (Թազադ ալ-Արմանի ալ-Բաթրիկ)[112] իննըսուն հազարով։ Աբդ ալ Քաբիրը վախեցավ և արգելեց մարդկանց կռվել ու վերադարձավ։ Մահդին ուզեց սպանել նրան, բայց մեղքացավ ու բանտարկեց։

## ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(26 օգոստոս 781—14 օգոստոս 782)

էջ 65

### ՌՈՒՄԻ ԴԵՄ ԱՐՇԱՎԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մահդին իր որդուն՝ ալ-Ռաշիդին, ուղարկեց ամառային արշավանքի Ռումի դեմ Ջումադա Բ [ամսին] (21 հունվար—18 փետրվար), իննսունհինգ հազար ինը հարյուր իննսուներեք մարդկանցով։ Նրա հետ էր նաև Ռաբին։ Հարունը ներխուժեց Ռումի երկիրը։ Նրա դեմ ելավ Կոմսերի կոմս Նիկիտան (Նիկիթա Կումիս ալ-Կավամիսա)։ Նրա հետ մենամարտեց Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանին և խոցեց նրան, իսկ հոռոմները փախուստի դիմեցին։ Յազիդը գրավեց նրանց ճամբարը և առաջ խաղացին Դոմեստիկոսի (Դումուստուկ) դեմ, որը զինանոցների վերակացուն էր։ Սա հանձնեց նրանց հարյուր իննսուներեք հազար չորս հարյուր հիսուն դինար, իսկ արծաթ դրամով՝ քսանմեկ միլիոն տասնչորս հազար ութ հարյուր դիրհեմ։ Ռաշիդը առաջ խաղաց, մինչև որ հասավ Կոստանդնուպոլսի ծոցը։ Ռումի տերը այդ ժամանակ Օգոստան (Աղուսթա) էր, Լևոնի (Ալիուն) կինը[113], քանզի որդին դեռատի էր, իսկ նրա հայրը սպանվել էր, երբ նա մոր գրկում էր։

*Հաշտություն կայացավ նրա և Ռաշիդի միջև փրկագին վճարելու պայմանով, ինչպես նաև հոռոմները պետք է ուղղեցույց առաջնորդներ տային և շուկաներ բացեին ճանապարհի վրա, քանի որ [Ռաշիդը] մտել էր մի նեղ, վտանգավոր անցք։ Նա գոհացրեց [Ռաշիդի] պահանջը, իսկ փրկագինը որոշվեց վճարել տարեկան յոթանասուն հազար դինար և Ռաշիդը վերադարձավ։*

*Զինադադարը կնքվեց երեք տարվա համար։ Դեռ պայմանագրից առաջ մահմեդականները տարան հինգ հազար գլուխ գերի և վեց հարյուր քառասուներեք գլուխ [արջառ], քսան հազար գլուխ հեծնելու ուղտ՝ հարմարանքներով, հարյուր հազար գլուխ կով և ոչխար մորթեցին, ճակատամարտերում հիսունչորս հազար հոռոմների սպանեցին, իսկ գերիներից անխնա կոտորեցին երկու հազար իննսուն հոգու։*

## *ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ*

(3 հուլիս 786—21 հունիս 787)

*էջ 83*

*Այդ տարում Ռաշիդը ամբողջ Սահմանային գոտին անջատեց Ջազիրայից ու Կիննասրինից և դարձրեց մի շրջան, որը կոչվում էր ալ-Ավասիմ։ Նա հրամայեց շենացնել Տարսոնը (Թարսուս) Ֆարաջ ալ-Հատիմ ալ-Տուրքիի ձեռքով և բնակիչներ ուղարկեց։*

## *ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ*

(11 հուլիս 788—30 մայիս 789)

*էջ 86*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ռաշիդը Իսհակ իբն Մուհամմադին պաշտոնանկ արեց Մոսուլից և կառավարիչ նշանակեց Սաիդ իբն Սալմ ալ-Բահիլիին։ Ռաշիդը Յազիդ իբն Մազիադ իբն Զայիդային, որը Ման իբն Զայիդայի եղբորորդին էր, Հայաստանից պաշտոնանկ արեց և այնտեղ կառավարիչ նշանակեց իր եղբորը՝ Ուբայդալլահ իբն ալ-Մահդիին։ Այդ տարում ամառային արշավանք կատարեց Իսհակ իբն Սուլայման իբն Ալին։*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(20 մայիս 790—9 մայիս 791)

*էջ 88*

*Այդ տարում մեռավ Ռաուհ իբն Հատիմը։ Ռաշիդը գնաց Արարադ [Ջուգի-լեռը] և իջևանեց Բակիրդա և Բազիբդա [վայրերում]՝ Ջազիրատ իբն Ումարի շրջաններից, և այնտեղ պալատ կառուցեց։*

*[Այդ տարում] ամառային արշավանք կատարեց Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը։*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(28 ապրիլ 792—17 ապրիլ 793)

*էջ 94*

*Այդ տարում ապստամբ Ցադլը հանդես եկավ Մծբինի (Նասիբին) կողմերում, ժողովրդի ունեցվածքը հափշտակեց ու շարժվեց դեպի Դարա, Ամիդ և Արզն և նրանց ունեցվածքը ևս վերցրեց։ Այսպես արեց նաև Խլաթում, ապա վերադարձավ Մծբին և եկավ Մոսուլ, որի զորքը նրա դեմ դուրս եկավ, սակայն նա Զաբի մոտ հաղթեց։ Ապա նրանք կրկին եկան և Ցադլը իր ընկերների հետ սպանվեց։*

## ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(7 ապրիլ 794—26 մարտ 795)

*էջ 97*

### ԱՊՍՏԱՄԲ ԱԼ-ՎԱԼԻԴ ԻԲՆ ԹԱՐԻՖԻ ՀԱՆԴԵՍ ԳԱԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում ալ-Վալիդ իբն Թարիֆ ալ-Տաղլիբին ապստամբեց Ջազիրայում և Մծբինում սպանեց Իբրահիմ իբն Խազիմ իբն Խուզայմային։ Ապա ալ-Վալիդը առավել ուժեղացավ, մտավ Հայաստան ու քսան օր պաշարեց Խլաթը։ Մարդիկ նրանից ազատվեցին երեսուն հազար [դինա՞ր] փրկագնով։ Ապա գնաց Ատրպատական, հետո Հուլուան և Սավադ երկիրը (Ստորին Միջագետք), ապա անցավ Տիգրիսի արևմտյան կողմը, դիմեց Բալադ քաղաքը, ուր նրանից ազատվեցին հարյուր հազար փրկագնով։ Նա ասպատակեց Ջազիրան։*

*Ռաշիդը նրա դեմ ուղարկեց Յազիդ իբն Մազիադ իբն Զայիդա ալ-Շայբանիին, որը Ման իբն Զայիդայի եղբորորդին էր։*

Յազիդն սկսեց խորամանկել նրա հետ։ Բարմաքյանները, որոնք հակակրում էին Յազիդին, ասացին Ռաշիդին՝ Յազիդը խուսափում է Վալիդից խնայելով նրան, քանզի երկուսն էլ Վաիլ տոհմից են։ Նրանք ձգտում էին հավատացնել, թե Վալիդը թույլ է։ Ռաշիդը մի զայրացած նամակ գրեց նրան (Յազիդին), ասելով՝ եթե իմ ծառաներից մեկին ուղարկեի, քեզանից ավելի գործ կաներ, իսկ դու խաբեբա ես ու խարդախ։ Երդվում եմ ալլահով, որ եթե գործը չվերջացնես, քո գլուխը բերել կտամ։

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

(16 մարս 796—4 մարտ 797)

էջ 103

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռաշիդը քանդեց Մոսուլի պարիսպը՝ Աթթաֆ իբն Սուֆիան ալ-Ազդիի պատճառով։ Անձամբ գնաց այնտեղ, քանդեց պարիսպը և երդվեց, որ բնակիչներից ում որ հանդիպի, կսպանի։ Սակայն դատավոր Աբու Յուսուֆը հորդորեց նրան և արգելեց այդ բանն անել։ Աթթաֆը այնտեղից շարժվել էր դեպի Հայաստան, իսկ Ռաշիդը չկարողացավ բռնել նրան և գնաց Ռակկա, որը նստավայր (բնակավայր) դարձրեց։

Այդ տարում [Ռաշիդը] Սաիդ իբն Սալմին նշանակեց Ջազիրայի կառավարիչ։ Ամառային արշավանքը կատարեց Մուհամմադ իբն Մուավիա իբն Զուֆար իբն Ասիմը։

Այդ տարում Ռաշիդը Մոսուլի կառավարիչ նշանակեց Յահիա իբն Սաիդ ալ-Հարաշիին, որը վատ վերաբերվեց բնակչությանը, անիրավություն գործեց և պահանջեց անցած տարիների հարկը։ Քաղաքի բնակիչների մեծ մասը հեռացավ։

Այդ տարում Ռաշիդը հրամայեց կառուցել Անարզաբա (Այն Զարբա) քաղաքը, ամրացրեց և Խորասանից ու այլ վայրերից գնդեր տարավ և նրանց հողամասեր պարգևեց։

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(5 մարտ 797—21 փետրվար 798)

էջ 105

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռաշիդը արշավեց Ռումի երկիրը և գրավեց Սաֆսաֆ բերդը։

Այդ տարում Արդ ալ-Մալիք իբն Սալիհը արշավեց Ռումի երկիրը և հասավ Անկարա, գրավեց մի ցորենի շտեմարան։

Այդ տարում գերիների փրկագնում եղավ հոռոմների և մահմեդականների միջև և սա Աբբասյանների օրոք առաջին փրկագնումն էր։ Կասիմ իբն Ռաշիդը նրա (Ռաշիդի) կողմից վերակացու էր։ Իսկ [Ռումի] թագավորն էր Նիկեփորը (Նիկիֆուր)[114]։ Մարդիկ ուրախացան այդ բանի համար և Ռումի երկրում եղած բոլոր գերիները փրկագնով ազատվեցին։ Փրկագնումը կատարվում էր Լամիս [գետի] մոտ, ծովի ափին, իսկ նրա և Տարսոնի (Թարսուս) միջև տասներկու փարսախ կար։

Այս արարողությանը ներկա եղավ երեսուն հազար վարձատրվող (կանոնավոր) զորք՝ Աբու Սուլայմանի հետ։ Դուրս եկավ Տարսոնի վերակացու (մուտավալլի) ալ-Խադիմը, ինչպես նաև Սահմանային գոտու բնակիչներից մեծ բազմություն և գիտուն ու երևելի մարդիկ։ [Փրկագնված] գերիների թիվն էր երեք հազար յոթ հարյուր։ Ասվում է նաև, թե ավելի էր։

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(22 փետրվար 798—11 փետրվար 799)

էջ 107

Այդ տարում խազարաց թագավոր խականի դստերը [հարսնության] տարան Ֆադլ իբն Յահիայի համար։ Սակայն նա մեռավ Պարտավում (Բարդաա) և նրա հետ եղածները վերադարձան հոր մոտ, տեղեկացնելով, որ նա դավաճանաբար սպանվել է։ Սա պատրաստվեց իսլամի երկրի դեմ արշավելու։

[Այդ տարում] ամառային արշավանք կատարեց Աբդ ալ-Ռահման իբն Աբդ ալ-Մալիք իբն Սալիհը և հասավ [Կիլիկիայի] Եփեսոս (Աֆսուս) քարայրի մարդկանց (Ասհաբ ալ-Քահֆ)[115] քաղաքը։

Այդ տարում հոռոմները իրենց թագավոր Լևոնի որդի Կոստանդինի (Կուսթանթին[116] իբն Ալյուն) աչքերը կուրացրին և նրա մորը Իրենեին (Ռինի) նստեցրին գահին, որը կոչվեց Օգոստա (Աղուսթա)։

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(12 փետրվար 799—31 հունվար 800)

էջ 108

### ԽԱԶԱՐՆԵՐԻ՝ ԻՍԼԱՄԻ ԵՐԿԻՐԸ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում խազարները խականի դստեր պատճառով դուրս եկան Բաբ ալ-Աբուաբից (Դաբրանդ) և մահմեդականների ու զիմմիների կո-

*տորած սարքեցին, քշելով ավելի քան հարյուր հազար գլուխ [անասուն] և այնպիսի սարսափելի բաներ արեցին, որի նմանը երկրի վրա չէր լսվել։ Ռաշիդը Հայաստանի կառավարիչ նշանակեց Յազիդ իբն Մազյադին, ավելացնելով նաև Ատրպատականը և օգնական զորք տալով, ուղարկեց նրանց դեմ։ Նա Խուզայմա իբն Խազիմին ուղարկեց Մծբին (Նասիբին), որպեսզի օգնի Հայաստանի ժողովրդին։*

*Ասվում է, որ [խազարների] հարձակման պատճառը այն էր, որ Սաիդ իբն Սալմը սպանել էր ալ-Մունաջջիմ ալ-Սուլամիին և ահա սրա որդին գնացել էր խազարաց երկիրը և նրանց օգնության կանչել Սաիդի դեմ։ Սրանք հարձակվեցին և մտան Հայաստան [Բաբ ալ-Աբուաբի պարըսպի] ճեղքվածքից։ Սաիդը փախուստի դիմեց և [խազարները] մոտավորապես յոթանասուն օր մնացին։ Ապա Ռաշիդը Խուզայմա իբն Խազիմին ու Յազիդ իբն Մազիադին ուղարկեց, որոնք շտկեցին այն, ինչ որ փչացրել էր Սաիդը և դուրս քշելով խազարներին, ճեղքվածքը նորոգեցին։*

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(20 հունվար 801—9 հունվար 802)

*էջ 111*

*Այդ տարում Պարտավում մեռավ Յազիդ իբն Մազիադ իբն Զաիդա ալ-Շայբանին, որը Մաան իբն Զաիդայի եղբորորդին էր։ Նրա փոխարեն [կառավարիչ] նշանակվեց Ասադ իբն Յազիդը։ Յազիդը երևելի էր, առատաձեռն, ազնիվ և քաջարի։ Բանաստեղծները շատ ողբեր գրեցին նրա մասին։ Գրված ողբերից լավագույնը Աբու Մուհամմադ ալ-Տամիմիի հորինածն է։*

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(30 դեկտեմբեր 802—19 դեկտեմբեր 803)

*էջ 118*

### ՌՈՒՄ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Կասիմ իբն ալ-Ռաշիդը մտավ Ռումի երկիրը Շաբան (25 հուլիս—23 օգոստոս) ամսին, կանգնեց Կուրրայի մոտ ու պաշարեց այն։ Ուղարկեց նա Աբբաս իբն Ջաֆար իբն Մուհամմադ իբն ալ-Աշասին, որը պաշարեց Սինան բերդը, մինչև որ ընկճեց բնակիչներին։ Հոռոմները նրան երեք հարյուր քսան մահմեդական գերի ուղարկեցին, պայ-*

մանով, որ վերցնի ու հեռանա։ Նա համաձայնեց և հաշտությամբ հեռացավ նրանցից։ Այս կողմում Ռումի երկրում մեռավ Ալի իբն Իսան։

Այդ ժամանակ Ռումի տիրակալն էր մի կին, որի անունն էր՝ Իրինե (Ռինի)։ Նրան հոռոմները հանեցին և թագավորեցրին Նիկեփորին (Նիկիֆուր)։ Հոռոմները ասում են, թե իբր սա Ջաֆնա իբն Ղասսանի հետնորդներից էր։ Նախքան թագավորելը հարկերի տեսչության պետն էր։ Իրինեն հանվելուց (գահընկեց լինելուց) հինգ ամիս հետո մեռավ։

Երբ Ռումի երկրում իր իշխանությունը ամրապնդեց, Նիկեփորը գրեց Ռաշիդին. «Ռումի թագավոր Նիկեփորից՝ արաբաց թագավոր Հարունին։ Ինձանից առաջ եղած թագուհին քեզ դրել էր նավակի, իսկ իրեն զինվորի տեղ և քեզ ուղարկում էր այնպիսի գումարներ, որոնց կրկնակին դու պարտավոր էիր նրան ուղարկել։ Սակայն այդ բոլորը եղավ կանացի թուլության և տխմարության պատճառով։ Երբ կարդաս այս նամակը, վերադարձրու քեզ տրված դրամները և փրկիր քո անձը, վճարելով մեզ պատկանող գումարները, թե չէ սուրը կվճռի իմ և քո միջև»։

Երբ Ռաշիդը կարդաց նամակը, խիստ կատաղեց, այնպես որ ոչ ոք չէր կարող նրան նայել կամ խոսել նրա հետ, իսկ նրա ժողովականները ցրվեցին։ Նա բերել տվեց թանաք ու գրեց նամակի հետևում. «Հանուն ալլահի գթած ու գթառատի. հավատացելոց իշխան Հարունից՝ Ռումի շուն Նիկեփորին։ Կարդացի նամակդ, ո՛վ անհավատ կնոջ որդի, իսկ պատասխանը դու աչքերովդ կտեսնես և ոչ թե կլսես այդ մասին։ Ողջո՛ւյն»։

Նույն օրը նա շարժվեց, մինչև որ հասավ Հերակլիա (Հիրակլա)։ Գրավեց, կողոպտեց, հրկիզեց ու կործանեց։ Նիկեփորը հաշտություն խնդրեց տարեկան հարկ վճարել խոստանալով։ Նա (Ռաշիդը) համաձայնեց, սակայն, երբ վերադարձավ արշավանքից ու հասավ Ռակկա, Նիկեփորը խախտեց պայմանագիրը, քանզի ցուրտը սաստիկ էր և վստահ էր, որ Ռաշիդն այլևս չի կարող վերադառնալ։ Երբ [պայմանագիրը] խախտելու լուրը հասավ, ոչ ոք չհամարձակվեց Ռաշիդին իմաց տալ՝ չուզենալով այդպիսի ցուրտ ժամանակ կռվի վերադառնալ, վախենալով իրենց անձի համար և խղճալով Ռաշիդին։ Եվ ստիպված խորամանկեցին և համոզեցին զինվորներից մի բանաստեղծի՝ Աբու Մուհամմադ Աբդալլահ իբն Յուսուֆին, ասվում է նաև, թե դա Հաջջաջ իբն Յուսուֆ ալ-Տիմին էր։ Նա ասաց հետևյալ տողերը.

Խախտեց Նիկեփորը քո տված պայմանը,
Ուստի նրա բաժինն է դժոխքը։
Հրճվիր իշխան հավատացելոց, քանզի
Ալլահը հաղթանակ է տալու քեզ,

*Մի նոր հաղթանակ եղածների վրա,*
*Հավատում ենք դրոշին քո հաղթական։*

*Եվ այլ տողեր։*

*Երբ Ռաշիդը այս բոլորը լսեց, ասաց՝ իրոք այդպե՞ս է արել Նիկիփորը և հասկացավ, որ վեզիրները խորամանկություն էին արել այդ հարցում։ Նա կրկին դիմեց Ռումի երկիրը ամենավատ ժամանակ և մեծագույն դժվարություններով հասավ նրանց երկիրը ու մնաց այնտեղ, մինչև որ կարողացավ իր վրեժը հագեցնել և արեց, ինչ որ ուզում էր։*

*Ասվում է, որ Նիկեփորի արարքը և այս բանաստեղծական տողերը պատճառ դարձան Ռաշիդի առաջխաղացման և Հերակլիայի նվաճման, ինչպես կհիշենք հարյուր իննսուն թվականին, եթե բարձրյալն ալլահը կամենա։*

## ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

## (20 դեկտեմբեր 803—7 դեկտեմբեր 804)

*էջ 120*

*Այդ տարում Իբրահիմ իբն Ջիբրաիլը ամառային հարձակում կատարեց, մտավ Ռումի երկիրը՝ Սաֆսաֆի լեռնանցքից։ Ռումի թագավորը՝ Նիկեփորը, ելավ նրա դեմ, սակայն մի այլ հարցի պատճառով ետ մնաց։ Երբ հանդիպեց մահմեդական զորքին, երեք վերք ստացավ և շատ հռոմներ սպանվեցին, ինչպես ասում են՝ քառասուն հազար յոթ հարյուր մարդ։*

*Այդ տարում Կասիմ իբն Ռաշիդի զորքը հաստատվեց Դաբիկում։*

## ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

## (27 նոյեմբեր 805—16 նոյեմբեր 806)

*էջ 122*

### ՀԵՐԱԿԼԻԱՅԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ռաշիդը Հերակլիան նվաճեց ու կործանեց։ Նրա հարձակման պատճառը, ինչպես արդեն հիշեցինք, հարյուր ութսունյոթ թվականի տակ, Նիկեփորի ուխտադրուժ լինելն էր։ Նվաճումը կատարվեց Շավալ (20 օգոստոս—17 սեպտեմբեր) ամսին, պաշարումը տևեց երեսուն օր և (Ռաշիդը) գերեվարեց ժողովրդին։ Նա մտել էր երկիրը հարյուր երեսունհինգ հազար կանոնավոր զորքով, բացի հպատակներից, կամավորներից ու ոչ մի դիվանի չենթարկվողներից։*

Աբդալլահ իբն Մալիքը կանգ առավ Ձի-լ-Քիլա ամրոցի առջև, իսկ Դաուդ իբն Իսա իբն Մուսային [Ռաշիդը] ուղարկեց Ռումի երկրի խորքը յոթանասուն հազարով։ Սա ավերեց, կողոպտեց և ալլահը նրան հաղթանակ պարգևեց։ Շուրահբիլ իբն Ման իբն Զաիդան նվաճեց Սակալիբա ամրոցը և Դալսան։ Յազիդ իբն Մուխալլադը գրավեց Սաֆսաֆն ու Մալկունիան։

Ռաշիդն ուղղվեց Տիանա (Թուանա) և այնտեղ կանգ առավ։ Ապա հեռացավ, թողնելով Ուկբա իբն Ջաֆարին։ Նիկեփորն ուղարկեց ջիզիա (գլխահարկ) և խարաջ (հողահարկ)՝ իր գլխի համար՝ չորս դինար, որդու գլխի համար՝ երկու դինար, նույնքան էլ իր պատրիկների համար։ Նիկեփորը գրեց Ռաշիդին՝ Հերակլիայում գերի ընկած մի հարճի մասին, որն իր որդու նշանածն էր և սա ետ ուղարկեց նրան։

էջ 123

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռաշիդն ամառային արշավանք կատարեց և Մամունին, իր փոխանորդը նշանակելով Ռակկայում, նրան լիազորություններ տվեց։ Նա ամեն կողմ գրեց այդ մասին և նրան տվեց Մանսուրի մատանին (կնիքը) որպես բախտաբեր նշան, որի վրա փորագրված էր՝ ալլահն է իմ ապավենը, նրան եմ հավատում։

Այդ տարում հոռոմները հարձակվեցին Անարզաբայի (Այն Զարբա) և ալ-Քանիսա ալ-Սաուդայի (Սև եկեղեցի) վրա, ասպատակեցին շրջակայքը։

## ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

## (17 նոյեմբեր 806—5 նոյեմբեր 807)

էջ 127

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Յազիդ իբն Մուխալլադ ալ-Հուբայրին տասը հազարով արշավեց Ռումի երկիրը։ Հոռոմները նրան բռնեցին մի կիրճի մեջ և հիսուն հոգու հետ սպանեցին, իսկ մնացածները փախան։ Սա տեղի ունեցավ Տարսոնից երկու օրվա ճանապարհ հեռավորության վրա։

Այդ տարում Ռաշիդն ամառային արշավանքների պետ նշանակեց Հարսամա իբն Այանին, նախքան խորասանի կառավարիչ նշանակելը։ Նրան տվեց երեսուն հազար խորասանյան զորք։ Ռաշիդը Դարբ ալ-Հադասում հրամանատար նշանակեց Աբդալլահ իբն Մալիքին, իսկ Մարա-

շում՝ Սաիդ իբն Սալմ իբն Կուտայբային։ Հոռոմները հարձակվեցին և մա մեղականներին վնաս հասցնելով ,հեռացան։ Իսկ Սաիդն իր տեղից չշարժվեց։

Ռաշիդը Մուհամմադ իբն Յազիդ իբն Մազիադին ուղարկեց Տարսոն. նա 'Խարբ ալ-Հադասում մնաց Ռամադան ամսում երեք օր, ապա վերադարձավ Ռակկա։ Ռաշիդը հրամայեց Սահմանային գոտում քանդել եկեղեցիները և [սպառնաց], որ կպատժի զիմմի''' բնակչությանը, եթե իր հագուստով (տարազով) ու գրաստով չտարբերվի մահմեդականներից։ Նա Հարսամային հրամայեց վերակառուցել Տարսոն քաղաքը ու բնակչությունը ավելացնել, սա կատարեց հրամանը։ Այս գործին վերակացու նշանակվեց Ֆառուխ ալ-Խադիմին (ներքինի), որի համար Ռաշիդը Խորասանից երեք հազար զորք ուղարկեց, ապա Մամեստիայի (Մասիսա) բնակիչներից հազար հոգի, իսկ Անտիոքից ևս հազար։ Կառուցումը ավարտվեց հարյուր իննսուներկու թվականին։

## ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(6 նոյեմբեր 807—24 հոկտեմբեր 808)

էջ 128

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում խուռամյանները շարժվեցին Ատրպատականի կողմերը։ Ռաշիդը Աբդալլահ իբն Մալիքին ուղարկեց տասը հազար զորքով։ Սա կոտորեց, գերեվարեց [ժողովրդին] ու գերեց [ռազմիկներին]։ Նա [Ռաշիդին] հանդիպեց Կարմասինում, որը կարգադրեց կոտորել գերի ռազմիկներին և վաճառել գերեվարված [կանանց ու երեխաներին]։

Այդ տարում Ռաշիդը Սահմանային գոտու կառավարիչ նշանակեց Սաբիտ իբն Նասր իբն Մալիքին. սա արշավեց ու գրավեց մի ցորենի շտեմարան։ Այդ տարում գերիների փրկագնում եղավ Պոզանտիում (Բադանդուն)։

Այդ տարում երկրորդ փրկագնումն եղավ մահմեդականների՝ և հոռոմների միջև։ Այս գործին հսկում էր Սաբիտ իբն Նասր իբն Մալիք ալ-Խուզաին։ Մահմեդական գերիների թիվը երկու հազար հինգ հարյուր էր։

## ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(25 հոկտեմբեր 808—14 հոկտեմբեր 809)

էջ 137

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում սպանվեց Ռումի թագավոր Նիկեփորը Բուրջանի կողմից։ Նա իշխել էր յոթը տարի։ Նրանից հետո իշխեց որդին՝ Ստավրակիոսը

(Իստիբրակ)[118], որը վիրավոր էր և երկու ամսից մեռավ։ Նրանից հետո թագավորեց Գեորգի որդի Միքայելը (Միխայիլ իբն Ջուրջիս)՝ նրա փեսան քրոջ կողմից։

Այդ տարում Ամինն իր եղբորը՝ Կասիմ Մուտամինին, հանեց Ջազիրայից և կառավարիչ նշանակեց Կիննասրինի ու Ավասիմի վրա, իսկ Ջազիրայի վրա նշանակեց Խուզայմա իբն Խազիմին։

ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՋՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(15 նոյեմբեր 809—3 նոյեմբեր 810)

էջ 142

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում հոռոմները ապստամբեցին իրենց թագավոր Միքայելի դեմ, որը փախավ և վանական դարձավ։ Նա թագավորել էր մոտավորապես երկու տարի և նրանից հետո թագավորեց Լևոն (Ալյուն)[119] զորավարը։

Մոսուլի կառավարիչ էր Իբրահիմ իբն ալ-Աբբասը, որին նշանակել էր Ամին [խալիֆան]։

ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(22 օգոստոս 814—10 օգոստոս 815)

էջ 173—174

ԱԼԻԱԿԱՆ (ՇԻԱՅԱԿԱՆ) ԻԲՆ ԹԱԲԱԹԲԱՅԻ ՀԱՆԴԵՍ ԳԱԼՈՒ ՄԱՍԻՆ

. . . . . . . .

Ասվում է, թե իբն Թաբաթբայի՝ Աբու-լ-Սարայայի հետ դաշնակցելու պատճառն այն էր, որ վերջինս թեև նախապես ավանակներ էր վարձով տալիս, շուտով վիճակը լավացավ և մի քանի հոգի հավաքելով՝ Ջազիրայում սպանեց Տամիմ ցեղից մի մարդու և ունեցվածքը վերցրեց։ Նրան փնտրեցին, իսկ նա թաքնվեց, անցավ Եփրատը՝ դեպի Սիրիական ափը և այդ կողմերում ճանապարհ էր կտրում։ Ապա Հայաստանում միացավ (Ասադ իբն) Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանիին, իր հետ ունենալով երեսուն ձիավոր։ (Ասադը) նրան կռվի ուղարկեց Խուռամյանների դեմ, որոնց նա կոտորեց ու ջարդեց և նրանցից վերցրեց իր ծառա Աբու-լ-Շաուքին։ Երբ Ասադը հանվեց Հայաստանից, Աբու-լ-Սարայան գնաց Ահմադ իբն Մազիադի մոտ։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՄԵԿ ԹՎԱԿԱՆ

## (30 հուլիս 816—19 հուլիս 817)

*էջ 184*

### ԲԱԲԵԿ ԽՈՒՌԱՄՅԱՆԻ ԳՈՐԾԻ ՍԿԶԲԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Բաբեկ Խուռամին[120] գլխավորեց Ջավիդանյաններին՝ Բադդի տեր Ջավիդան իբն Սահլի կողմնակիցներին։ Նա հավատացնում էր, թե Ջավիդանի հոգին իր մեջ է մտել և սկսեց երկիրը ապականել ու փչացնել։ Ջավիդան նշանակում է մնայուն, հավիտյան, իսկ Խուռամ նշանակում է հաճույք և դա մոգերի ուսմունքն է։ Նրանց մոտ մարդը կարող էր ամուսնանալ իր մոր, քրոջ և աղջկա հետ և դրա համար էլ հաճույքի կրոն է կոչվում։ Նրանք հավատում են փոխակերպման ուսմունքին՝ այն, որ հոգիները մի կենդանի արարածից անցնում են մյուսին։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

## (17 հունիս 820—5 հունիս 821)

*էջ 197*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Մամուն [խալիֆան] Յահիա իբն Մուադին նշանակեց Ջազիրայի (Վերին Միջագետքի) կառավարիչ, իսկ Իսա իբն Մուհամմադ իբն Աբի Խալիդին՝ Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ, Բաբեկի դեմ պայքարելու պարտականությամբ։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹ ԹՎԱԿԱՆ

## (27 մայիս 822—15 մայիս 823)

*էջ 205*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Իրաքում գները բարձրացան այնքան, որ ցորենի մի կաֆիզը[121] Հարունիում հասել էր քառասունից հիսուն դիրհեմի։ Այդ տարում Մուհամմադ իբն Հաֆսը նշանակվեց Թաբարիստանի, Ռույանի և Դամավանդի (Դանբավանդ) կառավարիչ, իսկ մարդկանց (մահմեդականների) հետ ուխտագնացության ելավ Աբու Իսա իբն ալ-Ռաշիդը։*

Այդ տարում Մամուն [խալիֆան] հրամայեց Մոսուլի կառավարիչ ալ-Սայյիդ իբն Ոնսին հարձակվել Շայբան և այլ արաբական ցեղերի վրա, քանզի նրանք երկիրը ապականում էին։ Սա հարձակվեց, ներխուժեց նրանց կալվածները, կոտորեց, ունեցվածքը կողոպտեց ու վերադարձավ։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(4 մայիս 824—23 ապրիլ 825)

էջ 208

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մամուն [խալիֆան] Ալի իբն Սադակային՝ Զուրայկ կոչված, նշանակեց Հայաստանի ու Ատրպատականի կառավարիչ՝ հանձնարարելով պայքարել Բաբեկի դեմ։ (Ատրպատականում) նրան փոխանորդ նշանակվեց Ահմադ իբն ալ-Ջունայդ ալ-Իսքաֆին։ Բաբեկը սրան գերեց և Իբրահիմ իբն ալ-Լայսը նշանակվեց Ատրպատականի կառավարիչ։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(2 ապրիլ 827—21 մարտ 828)

էջ 215—216

### ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ՀՈՒՄԱՅԴԻ՝ ՄՈՍՈՒԼԸ (ՄԱՈՒՍԻԼ) ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մամունը Մուհամմադ իբն Հումայդ (Համիդ) ալ-Թուսիին ուղարկեց Բաբեկ խուռամյանի դեմ կռվելու և հրամայեց նաև, որ ճանապարհին անցնի Մոսուլի վրայով ու դրությունը կարգավորի՝ կռվելով Զուրայկ իբն Ալիի դեմ։ Մուհամմադը եկավ Մոսուլ իր զորքով ու հավաքեց այնտեղ եղած Յամանի ու Ռաբիա ցեղերի ռազմիկներին։ Նա առաջ խաղաց՝ պատերազմելու Զուրայկի դեմ։ Նրա հետ էր նաև Մուհամմադ իբն ալ-Սայյիդ իբն Ունս ալ-Ազդին։

Լուրը հասավ Զուրայկին, որը եկավ նրանց դեմ և իրար հանդիպեցին Զաբ [գետի] վրա։ Մուհամմադ իբն Հումայդը նամակ ուղարկեց նրան հնազանդության հրավիրելով, սակայն սա մերժեց և Մուհամմադը պայքարի ելավ։ Զուրայկը պարտվեց և լուր ուղարկեց՝ խնդրելով երաշխավորագիր (աման)։ Մուհամմադը տվեց և նրան ուղարկեց Մամունի մոտ։ Մա-

մունը գրեց Մուհամմադին, հրամայելով բռնագրավել Ջուրայկի բոլոր գյուղերը, քաղաքամերձ կալվածները (ռուստակ), ունեցվածքը և այլն, և նա այս բոլորն իրեն վերցրեց։ Մուհամմադը հավաքեց Ջուրայկի զավակներին, եղբայրներին ու տեղեկացրեց, թե ինչ էր հրամայել Մամունը։ Նրանք հնազանդվեցին։ [Մուհամմադը] ասաց նրանց՝ հավատացելոց իշխանը ինձ այսպես էր հրամայել, իսկ ես վերցրեցի միայն ինչ որ հաճելի թվաց, իսկ [մնացածը] վերադարձնում եմ ձեզ։ Նրանք շնորհակալություն հայտնեցին այդ բանի համար։

Ապա գնաց Ատրպատական, Մոսուլում փոխանորդ նշանակելով Մուհամմադ իբն ալ-Սայյիդին։ Նա գնաց Ատրպատականում տիրություն անող ապստամբների դեմ։ Նա ձերբակալեց Ալի իբն Մուռային և նրա նմաններին և ուղարկեց Մամունի մոտ, ապա ուղղվեց դեպի Բաբեկ ալ-Խուռամը, նրա դեմ պատերազմելու համար։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(22 մարտ 828—10 մարտ 829)

էջ 216

Այդ տարում Մամունը իր որդուն՝ Աբբասին, նշանակեց Ջազիրայի, Սահմանային գոտու և Ավասիմի կառավարիչ, իսկ իր եղբորը՝ Աբու Իսհակ ալ-Մուտասիմին, Ասորիքի և Եգիպտոսի կառավարիչ, հրամայելով տալ ամեն մեկին, ինչպես նաև Աբգալլահ իբն Թահիրին, հինգ հարյուր հազար դիրհեմ։ Ասվում է, որ ոչ մի ժամանակ որևէ մեկին այդքան դրամ չէր տվել։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(11 մարտ 829—27 փետրվար 830)

էջ 217—218

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԱԼ-ԹՈՒՍԻԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում սպանվեց Մուհամմադ իբն Հումայդ (Համիդ) ալ-Թուսին՝ Բաբեկ Խուռամյանի ձեռքով։

Բանն այն էր, որ [Մուհամմադը] վերջացնելով ապստամբների (մուտաղալլիբների) գործը [Ատրպատականում], ուղղվեց Բաբեկի կողմը։ Նա հավաքեց զորք, զենքեր (մեքենաներ) և պարեն։ Նրա մոտ հավաքվել

էին մեծ թվով կամավորներ տարբեր կողմերից։ Նա լեռնանցքներով ընթանում էր Բաբեկի կողմը և ամեն մի լեռնանցքից կամ դժվարանցանելի վայրից անցնելիս պահակներ էր թողնում այն պաշտպանելու համար, մինչև որ հասավ Հեշտադսար, ուր խրամատ փորեց և խորհրդակցեց [մարդկանց հետ] Բաբեկի քաղաքը մտնելու մասին։ Նրանք խորհուրդ տվեցին ինչ-որ մի կողմից մտնելու մասին։ Նա ընդունեց նրանց կարծիքը և պատրաստեց իր մարդկանց։ Կենտրոնում հրամանատար նշանակեց Մուհամմադ իբն Յուսուֆ իբն Աբդ ալ-Ռահման ալ-Թաիին, որը կոչվում էր Աբու Սաիդ, աջ թևում՝ ալ-Սաադի իբն Ասրամին, ձախ թևում՝ ալ-Աբբաս իբն Աբդ ալ-Ջաբբար ալ-Յակթինիին, իսկ ետևում կանգնեց Մուհամմադ իբն Հումայդը մի խմբով հսկելու և կարիքի դեպքում օգնելու նպատակով։

Բաբեկը լեռան վրայից հետևում էր նրանց և իր մարդկանց դարան էր մտցրել ամեն մի ժայռի տակ։ Երբ Մուհամմադի մարդիկ մոտեցան ու երեք փարսախ բարձրացան լեռը, դարանամուտ մարդիկ դուրս եկան, իսկ Բաբեկը իր մարդկանցով վերևից հարձակվեց նրանց վրա։ Հարձակվողները պարտվեցին։ Աբու Սաիդը և Մուհամմադ իբն Հումայդը հրամայեցին դիմանալ, սակայն (զինվորները) չլսեցին նրանց և կոտորվելով փախուստի դիմեցին։ Մուհամմադ իբն Հումայդն իր տեղում դիմացավ, սակայն նրա մոտ եղածները բոլորը փախան, բացի մի հոգուց և նրանք երկուսով նահանջեցին փրկվելու համար։ Մուհամմադը տեսավ մի խումբ, որը կռվում էր. մոտեցավ ու տեսավ, որ խուռամյանները կռվում էին իր մարդկանց մի խմբի հետ։ Երբ խուռամյանները նրան տեսան, նկատելով նրա վայելուչ արտաքինը, հարձակվեցին՝ Նա կռվի բռնվեց նրանց հետ, սակայն նրա ձիուն հարվածեցին նիզակով և սա ընկավ գետին։ Թափվեցին Մուհամմադ իբն Հումայդի վրա և սպանեցին նրան։

Մուհամմադը գովասանքների էր արժանացել և առատաձեռն էր։ Ողբացին նրան բանաստեղծները, մանավանդ շատ ողբեր գրեց ալ-Թաին։ Երբ նրա սպանվելու լուրը հասավ Մամունին, շատ վշտացավ նրա համար և նրա փոխարեն նշանակեց Աբդալլահ իբն Թահիրին, Բաբեկի դեմ կռվելու համար և սա առաջ խաղաց։

ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(28 փետրվար 830—17 փետրվար 831)

էջ 219

ՄԱՄՈՒՆԻ՝ ՌՈՒՄԻ ԵՐԿԻՐԸ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մամունը Ռումի դեմ գնաց Մուհառամ (28 փետրվար—29 մարտ) ամսին։ Գնալու ժամանակ Բաղդադում իրեն փոխանորդ նշա-

նակեց Իսհակ իբն Իբրահիմ իբն Մուսաբին, որին միաժամանակ կառավարիչ նշանակեց Սավադի (Ստորին Միջագետք) Հուլուանի և Տիգրիսի շրջանների վրա։

Մամունը գնաց Մոսուլի ճանապարհով, մինչև որ հասավ Մանբիջ, ապա Դաբիկ, Անտիոք, ապա Մամեստիա և Տարսոն, որտեղից մտավ Ռումի երկիրը Ջումադա Ա (26 հունիս—25 հուլիս) ամսին։ Նրա որդին՝ ալ-Աբբասը, Մալաթիայից հարձակվեց։

Մամունը կանգ առավ Կուռա[122] ամրոցի առջև, մինչև որ գրավեց ու քանդեց այն Ջումադա Ա ամսվա վերջին չորս օր մնացած։ Ասվում է, որ բնակիչները նրանից երաշխավորագիր խնդրեցին, և Մամունը տվեց։ Նա ուղարկեց Աշնասին Սունդուս ամրոցը և սա բերեց նրա բերդապահին։ [Մամունը] ուղարկեց Ուջայֆին ու Ջաֆար ալ-Խայյաթին Սինադ (Սինան) ամրոցի տիրոջ մոտ, որը հպատակվեց ու հնազանդվեց։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(18 փետրվար 831—6 փետրվար 832)

էջ 220

## ՀԵՐԱԿԼԻԱՅԻ ՆՎԱՃՄԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մամունը վերադարձավ Ռումի երկիրը։

Բանն այն էր, որ նա իմացավ, թե Ռումի թագավորը Տարսոնի ու Մամեստիայի բնակիչներից հազար վեց հարյուր հոգու կոտորել էր։ Նա շարժվեց ու մտավ Ռումի երկիրը Ջումադա Ա (16 հունիս—15 հուլիս) ամսին և մնաց մինչև Շաաբանի (13 սեպտեմբեր—11 հոկտեմբեր) կեսը։

Ասվում է, որ նրա հարձակման պատճառն այն էր, որ Ռումի թագավորը նրան նամակ էր գրել, սակայն նա շարժվեց առանց նամակը կարդալու։ Երբ մտավ Ռումի երկիրը, կանգ առավ Անթիղուի[123] առջև և բնակիչները հաշտություն խնդրեցին, ապա գնաց Հերակլիա, որի բնակիչները նույնպես հաշտություն խնդրեցին։ Նա իր եղբորը՝ Աբու Իսհակ Մուտասիմին, ուղարկեց, որը գրավեց երեսուն բերդ և ցորենի շտեմարան (մաթամիր)։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(7 փետրվար 832—26 հունվար 833)

էջ 221

Այդ տարում Մամունը վերստին հարձակվեց Ռումի երկրի վրա։ Կանգ առավ Լուլուայի առջև հարյուր օր, ապա հեռացավ իր փոխարեն

*թողնելով Ուջայֆին, որին բնակիչները խաբելով գերի բռնեցին։ Սա ութ օր մնաց նրանց ձեռքում, որից հետո արձակեցին նրան։*

*Եկավ Ռումի թագավոր Թեոփիլոսը (Տուֆիլ)[124], պաշարեց Ուջայֆին, սակայն Մամունը զորք ուղարկեց նրան, և Թեոփիլոսը, նախքան սրա հասնելը, հեռացավ։ Լուլուայի բնակիչները երաշխավորագրով հանձնվեցին Ուջայֆին։ Ռումի թագավորը հաշտություն խնդրեց, բայց այդ բանը տեղի չունեցավ։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

## (27 հունվար 833—15 հունվար 834)

*էջ 227*

### ՄԱՄՈՒՆԻ ՄԱՀՎԱՆ ԿՅԱՆՔԻ ՈՒ ՆԿԱՐԱԳՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում մեռավ Մամունը Ռաջաբ (23 հուլիս—21 օգոստոս) ամսվա վերջին տասներկու օր մնացած։ Երբ հիվանդությունը սաստկացավ և մահը մերձեցավ, խնամողն առաջարկեց նրան վկայություն տալ (շիհադա)[125]։ Նրա մոտ էր բժիշկ իբն Մասավայհը, որն ասաց այդ մարդուն (խնամողին)՝ թող նրան, այդ վիճակում նա չի տարբերում իր Տիրոջը և Մանիին[126]։ Մամունը աչքերը բացեց և ուզում էր ճզմել նրան, բայց ի վիճակի չէր։ Ուզեց խոսել, բայց չկարողացավ։ Ապա խոսեց ասելով՝ ո՜վ անմահ, ողորմիր մահկանացուիս, ապա մեռավ նույն պահին։*

*Երբ նա մեռավ, նրա Աբբաս որդին և եղբայրը՝ Մուտասիմը, տարան նրան Տարսոն և թաղեցին Ռաշիդի ծառա Խականի տանը։ Նրա վրա աղոթեց Մուտասիմը։ Նրա վրա պահակ դրեցին Տարսոնի բնակիչներից և ուրիշներից հարյուր հոգու, նրանցից ամեն մեկին տալով իննըսուն դիրհեմ։*

*Նրա խալիֆայությունը տևեց քսան տարի հինգ ամիս քսաներեք օր, բացի այն տարիներից, երբ նրան խալիֆա էին հռչակել Մեքքայում, իսկ եղբայրը՝ Ամինը, պաշարված էր Բաղդադում։ Նա ծնվել էր Ռաբի Ա ամսվա կեսին հարյուր յոթանասուն (3 հուլիս 786—21 հունիս 787) թվականին։ Նրա Քունիան էր Աբու-լ-Աբբասը։ Նա սպիտակ դեմք ուներ, գեղեցիկ էր, երկար մորուքով, ալեհեր։ Ասվում է նաև, որ նա թուխ էր, որոշ դեղնությամբ, երկար մորուքով, ալեհեր, հոնքերը իրար կպած, իսկ երեսի վրա սև խալ կար։*

*էջ 231*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մամունը վերադարձել էր Սալղուս և իր որդուն՝ Աբբասին, ուղարկել Տիանա (Թուանա), հրամայելով վերակառուցել այն։ Նա*

գործավորներ էր ուղարկել, որոնք մղոնով մղոն սկսեցին կառուցումը։ Նրա պարիսպը երեք փարսախ դարձրեց, նրա վրա չորս դարպաս դրեց, ամեն մի դարպասի վրա մի բերդ (աշտարակ)։ Նա նամակ գրեց տարբեր նահանգներ և պարտավորեցրեց, որ ամեն քաղաքից զորքեր փոխադրվեն Տիրան։ Ամեն մի ձիավորին նա տալիս էր հարյուր դիրհեմ, իսկ հետևակին՝ քառասուն դիրհեմ։

Այդ տարում Ջիբալի, Համադանի, Սպահանի (Իսբահան), Մասիբդանի (Մասբադան) և այլ վայրերի շատ բնակիչներ Խուռամյան կրոնն ընդունեցին և հավաքվելով իրար մոտ, Համադանի գավառում բանակ դրեցին։ Մուտասիմը նրանց դեմ զորք ուղարկեց, որոնց մեջ էր Իսհակ իբն Իբրահիմ Մուսաբը, որին նա Ջիբալի կառավարիչ նշանակեց Շավալ (20 հոկտեմբեր—17 նոյեմբեր) ամսին։ Սա գնաց նրանց դեմ և Համադանի կողմերում հաղթեց՝ սպանելով վաթսուն հազարի, իսկ մնացածները փախան Ռումի երկիրը։ Նրա հաղթանակի մասին նամակը կարդացվեց տարվիայի[127] օրը։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆ ԹՎԱԿԱՆ

(5 հունվար 835—25 դեկտեմբեր 835)

էջ 234

### ԱՖՇԻՆԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԽՈՒՌԱՄՅԱՆ ԲԱԲԵԿԻ ԴԵՄ

Այդ տարում Մուտասիմ [խալիֆան] Աֆշին Հայդար իբն Քաուսին նշանակեց Ջիբալի կառավարիչ և ուղարկեց Բաբեկի դեմ պատերազմի, և սա գնաց։

Բաբեկի երևան գալու սկիզբը երկու հարյուր մեկ թվականն էր և նրա քաղաքը Բադդն էր, նա խալիֆայի շատ զորքեր պարտության մատնեց ու կոտորեց և բազմաթիվ զորավարների սպանեց։ Երբ իշխանությունն անցավ Մուտասիմին, սա Աբու Սաիդ Մուհամմադ իբն Յուսուֆին Արդաբիլ ուղարկեց, հրամայելով վերակառուցել Բաբեկի քանդած բերդերը, որոնք գտնվում էին Զինջանի և Արդաբիլի միջև։ Նա ռազմիկների նշանակեց պահպանելու այն ճանապարհները, որոնցով պարենը բերվում էր Արդաբիլ։ Աբու Սաիդը գնաց այս բանի համար ու կառուցեց բերդերը։

Մի օր Բաբեկը մի ձիավոր ջոկատ ուղարկեց արշավանքի և սա որոշ շրջաններ ասպատակեց ու վերադարձավ։ Լուրը հասավ Աբու Սաիդին, որը հավաքեց մարդկանց և դուրս եկավ այդ ջոկատի հետևից։ Նա հասավ ինչ-որ ճանապարհի վրա և սաստիկ ընդհարման ժամանակ Աբու Սաիդը Բաբեկի մի խումբ մարդկանց սպանեց ու մի մեծ խումբ գերի

վերցրեց, փրկելով նախկինում [մահմեդականներից] գերի ընկածներին։ Նա [սպանվածների] գլուխները և գերիներին ուղարկեց Մուտասիմին։ Սա Բաբեկի մարդկանց առաջին պարտությունն էր։ Ապա տեղի ունեցավ երկրորդ պարտությունը Մուհամմադ իբն ալ-Բաիսի ձեռքով։

Բանն այն է, որ Մուհամմադը գտնվում էր իր մի ամուր բերդում, որը կոչվում էր ալ-Շահի, որը իբն ալ-Բաիսը գրավել էր իբն ալ-Ռավվադից և գտնվում էր Ատրպատականում։ Նա մի ուրիշ բերդ ևս ուներ Ատրպատականում, որը կոչվում էր Դավրեժ (Տաբրիզ)։ [Իբն ալ-Բայիսը] հաշտ էր Բաբեկի հետ, նրա ջոկատները գալիս էին իր մոտ, իսկ սա հյուրասիրում էր նրանց, այնպես որ նրանք վստահում էին նրան։ Մի օր Բաբեկն իր զորավարներից (իսբահբադ) մեկին, որի անունն էր Իսմատ, մի հեծյալ ջոկատի հետ ուղարկեց (Իբն ալ-Բաիսի մոտ)։ Նա իջևանեց իբն ալ-Բաիսի մոտ, որը, ըստ սովորության, հյուրասիրությունը ներքև [ստորին հարկը] ուղարկեց, իսկ նրան իր երևելի մարդկանց հետ վերև հրավիրեց։ Սա բարձրացավ, և նա կերցրեց ու գինի խմեցրեց, մինչև որ արբեցին։ Ապա նա հարձակվեց Իսմատի վրա, բայց վերջինիս խնդրանքով խնայեց, իսկ բոլոր նրա հետ եղածներին սպանեց։ Նա հրամայեց նրան (Իսմատին) մեկ առ մեկ վերև կանչել իր մարդկանց։ Հենց որ մեկին անունով կանչում էր և սա բարձրանում էր, նրա վիզը կտրում էին, մինչև որ [մնացածները] հասկացան ու փախան։.

Նա Իսմատին ուղարկեց Մուտասիմի մոտ։ Մուտասիմն Իսմատին հարցրեց Բաբեկի երկրի մասին և սա հայտնեց նրան ճանապարհների և նրա պատերազմելու ձևերի մասին։ Նա Իսմատին թողեց բանտարկված և այնտեղ մնաց մինչև Վասիկի [խալիֆայության] օրերը։

Ապա Աֆշինը գնաց Բաբեկի երկիրը։ Սա կանգ առավ Բարզանդում ու բանակ դրեց և նրա ու Արդաբիլի միջև եղած ճանապարհներն ու բերդերը հսկողության տակ դրեց։ Նա Մուհամմադ իբն Յուսուֆին ուղարկեց մի վայր, որ կոչվում էր Խուշ, և վերջինս այնտեղ խրամատ փորեց։ Իսկ Հայսամ ալ-Ղանավին կանգ առավ Արշակ գավառակում (ռուստակ), բերդը նորոգեց ու խրամատ փորեց։ Միականի Ալավայհը՝ «Աբնա» [կոչվածների][128] զորավարներից, տեղավորվեց գետի բերդում, որը Արդաբիլից այն կողմն էր գտնվում։

Անցորդներն ու կարավանները դուրս էին գալիս Արդաբիլից հսկող խմբի ընկերակցությամբ, մինչև որ հասնում էին գետի բերդը, ապա բերդի տերը նրանց տանում էր ալ-Հայսամ ալ-Ղանավիի մոտ։ Հայսամը հանդիպում էր նրանց որևէ այլ կողմից, որոշակի վայրում, որը ոչ ոք, հասնելուց հետո, չէր անցնում։ Հանդիպումից հետո վերցնում էր նրանց

մոտ եղածը և տալիս էր իր մոտ եղածը։ Ապա Հայսամն իր մարդկանց հետ հանդիպում էր ճանապարհի մեջտեղում Աբու Սաիդի մարդկանց, որոնց հետ զորախումբ էր լինում։ Նրանք վերցնում էին Հայսամի մոտ եղածը և իրենց մոտ եղածը հանձնում նրան։ Իթե իրենցից որևէ մեկը ճանապարհի մեջտեղը մյուսից շուտ հասներ, չպետք է առաջ անցներ։ Իսկ Աբու Սաիդը իր մոտ եղած զորքի հետ դնում էր Աֆշինի ճամբարը, ուր նրան հանդիպում էր Աֆշինի ջոկատի պետը, ընդունում էր նրանից նրա ընկերակցողներին և հանձնում իր հետ եղած ռազմիկներին։ Այսպես գործը ընթանում էր։

Երբ նրանք որևէ լրտես էին բռնում, տանում էին Աֆշինի մոտ. որը նրանց հետ լավ էր վարվում, նվերներ տալիս, հարցնում, թե Բաբեկը ինչքա՞ն էր տալիս և ինքը կրկնակին էր վճարում՝ համոզելով, որ լինեն իր լրտեսները և օգտվում էր նրանցից։

էջ 235—237

## ԱՖՇԻՆԻ ՄԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ ԲԱԲԵԿԻ ՀԵՏ

Այդ տարում տեղի ունեցավ Աֆշինի կռիվը Բաբեկի հետ, որի ընթացքում Բաբեկի մարդկանցից մեծ բազմություն կոտորվեց։

Մուտասիմ [խալիֆան] Ավագ Բուղային ուղարկել էր Աֆշինի մոտ։ Սա իր հետ ուներ փող՝ զինվորների և ծախսերի համար։ Հասավ Արդաբիլ. և Բաբեկը լուր ստանալով, պատրաստվեց իր մարդկանցով, որպեսզի նրա ճանապարհը կտրեն նախքան Աֆշինի մոտ հասնելը։ Սակայն լրտեսը եկավ և հայտնեց Աֆշինին այդ մասին։ Երբ Աֆշինը ստուգեց այդ լուրը, գրեց Բուղային, որ ձևացնի, թե ուզում է տեղից շարժվել և փողը բարձած ուղտերի վրա գալ իր (Աֆշինի) մոտ, ապա հասնելով դետի բերդը, իր մարդկանց պահի և բաց թողնի [միայն նրանց], որոնք ընկերակցում էին և փողը իր հետ ունենալով վերադառնա Արդաբիլ։ Բուղան այս բանն արեց, և կարավանը շարժվեց։ Լրտեսները եկան Բաբեկին տեղեկացրին, որ նա փողի հետ միասին հասել է գետը։ Նույն օրվա երեկոյան, որ Աֆշինը նշանակել էր Բուղային, նա Բարզանդից դուրս եկավ խուշ՝ մայրամուտի ժամանակ և կանգ առավ Աբու Սաիդի խրամատից դուրս։ Առավոտյան թաքուն հեծան ձիերը՝ առանց թմբուկներ խփելու ու դրոշներ պարզելու, հրամայելով մարդկանց ձայն չհանել և արագ առաջ խաղաց։ Շարժվեց նաև կարավանը, որն այդ օրը գետից անցնելով պետք է գնար Հայսամի կողմը։

Բաբեկը նույնպես պատրաստվեց իր մարդկանցով և շարժվեց դեպի գետի ճանապարհը, կարծելով, որ գտնելու է փողը։ Բաբեկի ձիավորները

հարձակվեցին կարավանի վրա, որի հետ էր դետի բերդի տերը։ Նա կռվի ելավ նրանց դեմ, սակայն սպանեցին նրան, ինչպես նաև նրա հետ եղած զինվորներին, վերցնելով այն ամենը, որ կար նրանց մոտ և ահա այդտեղ իմացան, որ փողը իրենց ձեռքից բաց են թողել։ Նրանք վերցրին նրա դրոշը և մարդկանց զգեստները և իրենք հագնվելով, կերպարանափոխվելով ուզեցին [խաբեությամբ] բռնել Հայսամ ալ-Ղանավիին և նրա հետ եղած մարդկանց։ Նրանք չգիտեին Աֆշինի դուրս գալու մասին և եկան, ձևացնելով, թե դետի բերդի տիրոջ մարդիկ են, սակայն չիմանալով, թե որն է դետի տիրոջ դրոշի տեղը, այլ տեղում կանգնեցին։

Եկավ Հայսամը, կանգնեց իր սովորական տեղում և նրան խորթ թվացին իր առջևում տեսած [մարդիկ]. Նա իր հորեղբոր տղային ուղարկեց, ասելով՝ գնա այդ գարշելիի մոտ և ասա, թե ինչու է այնտեղ կանգնել։ Գնաց և նրան էլ [այդ մարդիկ] խորթ թվալով, եկավ ու զեկուցեց։ [Հայսամը] այլ մարդկանց ուղարկեց և նրանք նույնպես, չճանաչեցին նրանց և տեղեկացրին [Հայսամին], թե Բաբեկը սպանել է գետի բերդի տիրոջը՝ Ալավայհին, ու նրա մարդկանց, վերցնելով դրոշները և զգեստները։ Հայսամը վերադարձավ, փրկելով կարավանը, որն իր հետ էր։ Նա և իր մարդիկ [կարավանի] ետևից էին ընթանում, պաշտպանելով նրան, մինչև որ կարավանը հասավ Արշակ բերդը։ Նա երկու հոգու ուղարկեց Աֆշինի և Աբու Սայիդի մոտ՝ իմաց տալու կատարվածի մասին և սրանք սրընթաց գնացին։

Հայսամը մտավ բերդը, իսկ Բաբեկը պաշարեց նրան։ Նա մի աթոռ դրեց բերդի դիմացի լեռներում և լուր ուղարկեց Հայսամին, թե՝ թող բերդն ու հեռացիր։ Հայսամը մերժեց և Բաբեկը կռիվ սկսեց, ըստ իր սովորության, գինի խմելով կռվի ընթացքում։

Երկու ձիավորները գնացին ու գտան Աֆշինին մեկ փարսախից պակաս հեռավորության վրա։ [Աֆշինն] ասաց իր առաջապահ զորքի հրամանատարին՝ տեսնում եմ երկու ձիավոր խիստ սրընթաց գալիս են, ապա ավելացրեց՝ զարկեք թմբուկները, պարզեցեք դրոշները, և սրընթաց գնացեք նրանց կողմը գոչելով՝ այստեղ ենք ահա, այստեղ ենք[129]։ Այդպես էլ արեցին, և մարդիկ ձիերի սանձերը բաց թողեցին և հասան Բաբեկին, որը նստած էր։ Նա դեռ չէր նստել իր ձին, երբ ձիավորները վրա հասան։ Սկսվեց կռիվը և Բաբեկի մարդկանցից ոչ ոք չազատվեց. միայն ինքը մի քանի ձիավորներով փախավ Մուզան (Մուկան), սակայն նրա ջոկատները նրանից կտրվեցին։

Աֆշինը վերադարձավ Բարզանդ, իսկ Բաբեկը մնաց Մուղանում։ Նա լուր ուղարկեց Բադդ և զորք ստանալով, նրա հետ հեռացավ Մուղանից, մինչև որ հասավ Բադդ։

Աֆշինը մնաց Բարզանդում՝ իր ճամբարում։ Մի օր մի կարավան

*անցավ. որի վրա հարձակվեց Բաբեկի խսբահբադը (սպահպետը) կողոպտեց և սպանեց այնտեղ եղած մարդկանց։ Աֆշինի զորքը այդ պատճառով սովի մատնվեց, իսկ Աֆշինը գրեց Մարաղայի տիրոջը, հրամայելով շտապ պարեն բերել։ Սա նրան ուղարկեց մի հսկայական կարավան, որի մեջ կար մոտավորապես հազար ցուլ, բացի ուրիշ գրաստից, որոնք պարեն էին տանում զինվորների ընկերակցությամբ։ Նրանց վրա հարձակվեց Բաբեկի մի ձիավոր ջոկատ, որն ամեն ինչ կողոպտեց։ [Աֆշինի] զորքը շատ նեղ վիճակում էր և Աֆշինը գրեց Շիրուանի տիրոջը, հրամայելով, որ իրեն մթերք բերեն և սա շատ ուտեստեղեն ուղարկեց ու փրկեց մարդկանց։*

*Աֆշինի մոտ եկավ Բուղան իր հետ եղածներով միասին։*

## *ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ*

**(26 դեկտեմբեր 835—13 դեկտեմբեր 836)**

*էջ 237—239*

## ԲԱԲԵԿԻ ԴԵՄ ԿՌՎԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Բաբեկը ընդհարում ունեցավ Ավագ (քաբիր, մեծ) Բուղայի հետ, որին փախուստի մատնեց։ Աֆշինը, նույնպես, կռիվ ունեցավ (Բաբեկի հետ) և հաղթեց նրան։*

*Բանն այն էր, որ Ավագ Բուղան եկել էր Աֆշինի մոտ իր հետ բերած փողերով և սա բաժանեց (փողերը) իր զորքի մեջ և կռվի պատրաստվեց Նովրուզից (իրանական ամանոր) հետո։ Նա Բուղային զորք ուղարկեց, որպեսզի Հեշտադսարի շուրջը պտտվի և կանգ առնի Մուհամմադ իբն Հումայդի խրամատների մոտ՝ այն փորելով ու ամրացնելով։ Բուղան գրնաց խրամատների մոտ, իսկ Աֆշինը Բարզանդից հեռացավ, շարժվեց նաև Աբու Սաիդը՝ Խուշից, և նրանք երկուսով ուզում էին Բաբեկի [դեմ գնալ] ու պայմանավորվեցին մի վայրում, որը կոչվում էր Դարուազ։*

*Աֆշինը խրամատ փորեց և նրա մոտ պարիսպ կառուցեց, իսկ նրա ու Բադդի միջև վեց մղոն կար։ Բուղան առանց Աֆշինի հրամանի պատրաստվեց և իր հետ տանելով պարեն ու պտտվելով Հեշտադսարի շուրջը, մտավ Բադդ գյուղը և այնտեղ կանգ առավ։ Ապա հազար հոգու ուղարկեց անասնակերի հետևից։ Նրանց դեմ դուրս եկան Բաբեկի զինվորները, որոնք խլեցին անասնակերը և ջարդեցին նրանց, ով իրենց հետ կռվի բռնվեց, իսկ մնացածներին գերի վերցրեցին։ Դրանցից երկուսին [Բաբեկը] ուղարկեց Աֆշինի մոտ, տեղեկացնելու կատարվածի մասին։*

*Բուղան վերադարձավ Մուհամմադ իբն Հումայդի խրամատը, ձևացնելով, որ փախուստի է դիմել և դրեց Աֆշինին՝ այդ բանն իմաց տալով*

և օգնություն խնդրելով։ Աֆշինը նրա մոտ ուղարկեց իր եղբորը՝ Ֆադլին, Ահմադ իբն ալ-Խալիլ իբն Հիշամին, իբն Ջաուշանին և միականի Ջանահին՝ ոստիկանապետին, Հասան իբն Սահլին, ինչպես նաև Ֆադլ իբն Սահլի ազգական երկու եղբայրներից մեկին, և նրանք բոլորը եկան Բուղայի մոտ։ Աֆշինը գրեց Բուղային, հիշեցնելով, որ նա Բաբեկի վրա պետք է հարձակվի իր նշանակած այն օրը [երբ ինքն էլ էր հարձակվելու], որպեսզի նրա վրա երկու կողմից հարձակում լինի։ Այդ օրը Աֆշինը Դարուաղից ելավ Բաբեկի դեմ, իսկ Բուղան դուրս եկավ խրամատից ու գնաց Հեշտադսար։ Սակայն մարդիկ չէին դիմանում սաստիկ ցրտին ու քամուն, ուստի վերադարձան ճամբար՝ կանչի հեռավորության վրա։ Երբ ցուրտ քամին փչեց և խիստ անձրևեց, Բուղան էլ վերադարձավ ճամբար։ Իսկ Աֆշինը, Բուղայի վերադառնալու մյուս օրը, հարձակվեց Բաբեկի մարդկանց վրա, գրավեց ճամբարը, նրա վրանները, գերեց նրա հետ եղած կնոջը և կանգ առավ Բաբեկի ճամբարում։

Մյուս օրը Բուղան պատրաստվեց ու բարձրացավ Հեշտադսար և հասավ զորքին, որն իրենից առաջ արդեն Բաբեկի վրա հարձակվել էր, և վերադարձավ, որոշ բան ձեռք բերելով նրանց կահ-կարասիից ու Թամբերից։ Նա իջավ Հեշտադսարից՝ Բադդ գնալու նպատակով, իսկ նրա առաջապահ զորքի հրամանատարն էր Դաուդ Սիահը։ Բուղան նրան լուր ուղարկեց, թե արդեն երեկո է. մարդիկ հոգնած են և մեզ ծանոթ վայր ենք հասել, ուստի ընտրիր մի լավ պաշտպանված լեռ, ուր կկարողանանք այս գիշեր բանակ դնել։ [Դաուդ Սիահը] բարձրացավ մի լեռ, որը նայում էր Աֆշինի ճամբարին։ Նրան ասացին՝ այս գիշեր այստեղ կմնանք մինչև վաղը և ապա կիջնենք կռվելու անհավատի դեմ, եթե ալլահը կամենա։ Այդ գիշեր ամպր պատեց, ցրտեց և ուժեղ ձյուն տեղաց, այնպես որ ցրտի սաստկությունից առավոտյան ոչ ոք չէր կարող իջնել ջուր վերցնելու կամ անասուններին խմեցնելու, քանզի շատ ձյուն էր եկել ու մառախուղ պատել։ Երբ երրորդ օրը եղավ, զինվորները ասացին Բուղային՝ մեր պաշարը վերջացել է, իսկ ցուրտը մեզ նեղում է, ուստի ամեն գնով մեզ իջեցրու՝ կամ վերադառնալու և կամ անհավատի վրա հարձակվելու նպատակով։

Մառախուղի և ձյան օրերին Բաբեկը գիշերով հարձակվել էր Աֆշինի ու նրա զորքի մի մասի վրա և Աֆշինը վերադարձել էր իր ճամբարը։ Իսկ Բուղան Թմբուկը խփել տվեց և իջավ լեռից՝ կամենալով հարձակվել Բադդի վրա, առանց իմանալու, թե ինչ էր կատարվել Աֆշինի հետ և կարծում էր, թե նա իր [նախկին] ճամբարում է։ Երբ ձորը իջավ, գտավ, որ երկինքը պարզ է, իսկ եղանակը հաճելի, բացի այն լեռան կատարից, ուր ինքն էր գտնվում։ Նա իր զորքը կարգի բերեց և ուղղվեց դեպի Բադդ

[և առաջացավ], մինչև որ գրեթե կպավ Բազդի լեռան, այնպես, որ իր եղած տեղից կես մղոն մնաց, որ տեսներ Բազդի տները։ Նրա առաջապահ գնդի մեջ կային մարդիկ, որոնց մեջ էր իբն ալ-Բաիսի ծառաներից մեկը. սա ազգականներ ուներ Բազդում։ Սրանց տեսան Բաբեկի առաջապահները և նրանցից մեկը ճանաչեց այդ ծառային։ Նրա հորեղբայրը հարցրեց, թե ո՞վ կար իր մոտ ազգականներից և սա պատասխանեց։ [Հորեղբայրը] ասաց՝ վերադարձիր և ասա, ում որ պետք է, թող հեռանա, մենք արդեն հաղթել ենք Աֆշինին, որը փախավ իր խրամատները, իսկ մենք ձեր դեմ երկու զորք ենք պատրաստել. շտապիր գնալ, գուցե ազատվես։ Ծառան վերադարձավ և տեղեկացրեց իբն ալ-Բաիսին, որն իմաց տվեց Բուղային։ Վերջինս խորհրդակցեց իր մերձավորների հետ։ Ոմանք ասացին՝ դա սուտ խաբեություն է, իսկ ուրիշներ՝ ահա լեռան կատարը, որտեղից կարելի է տեսնել Աֆշինի ճամբարը։ Բուղան մի քանի մարդկանցով բարձրացավ լեռան կատարը և չտեսնելով Աֆշինի զորքը, հասկացավ, որ հեռացել է։

Խորհրդակցեցին և որոշեցին, որ պետք է հեռանալ գիշերը վրա չհասած։ Հեռացան և արագ ընթանում էին, սակայն [Բուղան] չանցավ եկած ճանապարհով, քանզի շատ կիրճեր կային, այլ գնաց այն ճանապարհով, որը Հեշտադսարի շուրջն է պտտվում, ուր միայն մեկ կիրճ կար։ Զինվորները ճանապարհին զենքերը գցում էին և վախի մեջ էին։ Բուղան մի խումբ զորավարների հետ թիկունքում էր, քանի որ Բաբեկի առաջապահները, թվով տասը ձիավոր, հետապնդում էին։ Բուղան իր մարդկանց հետ խորհրդակցեց, ասելով՝ վախենում եմ, որ սրանք մեզ զբաղեցնելով ետ պահեն, որպեսզի հնարավորություն տան իրենց ընկերներին կիրճը գրավել։ Ֆադլը ասաց նրան՝ դրանք գիշերապահներն են, ուստի շտապիր և չդանդաղես, մինչև որ կիրճը անցնենք։ Մեկ ուրիշն ասաց՝ զորքը բաժան-բաժան է եղել, զինվորները զենքը գցել են, իսկ փողն ու զենքերը մնացել են ջորիների վրա առանց հսկողության և վստահ չենք, որ այն չեն տանի, նույնպես և գերին, որ այնտեղ է։ Նրանց հետ էր Ջավիդանի որդին գերի վիճակում, և ուզում էին նրան փոխանակել [որևէ մեկի հետ]։

Նրանք բանակ դրեցին մի անառիկ լեռան կատարին, սակայն մարդիկ զզված ու հոգնած լինելով իջան, քանի որ պարենը վերջացել էր։ Նրանք ուշադիր հսկում էին վերև բարձրանալու ճանապարհը, իսկ Բաբեկը այլ կողմից եկավ և հարձակվեց Բուղայի ու նրա զորքի վրա։ Բուղան փախավ հետիոտն, սակայն տեսնելով մի ձի՝ նստեց, Ֆադլ իբն Քաուսը վիրավորվեց, Ջանահ ալ-Սուքքարին և իբն Ջաուշանը սպանվեցին, իսկ Ֆադլ իբն Սահլի երկու ազգական եղբայրները գերի ընկան։ Բուղան և այլ մարդիկ ազատվեցին, իսկ Խուռամյանները չհետապնդեցին

*նրանց, վերցնելով դրամը, զենքերն ու գերուն։ Մարդիկ Հասան իրենց ճամբարը ու մտան խրամատները, և Բուղան տասնհինգ օր այսպես մնաց։*

*Աֆշինը նրան գրեց՝ հրամայելով վերադառնալ Մարաղա և օգնական ուժեր ուղարկել։ Բուղան գնաց Մարաղա, իսկ Աֆշինը այդ տարում զորքերը տեղավորեց ձմեռանոցներում, սպասելով մինչև գարնան գալը։*

*Այդ տարում սպանվեց Թարխանը՝ Բաբեկի մեծագույն զորավարնե՛րից մեկը։ Բանն այն էր, որ Բաբեկից թույլտվություն էր խնդրել, որպեսզի ձմեռն անցկացնի իր գյուղում, որը Մարաղայի կողմերում էր, իսկ Աֆշինը հետապնդում էր նրան և երբ տեղեկացավ նրա մասին, գրեց Թուրքին՝ Իսհակ իբն Իբրահիմի մաուլային, որը Մարաղայում էր, որպեսզի գիշերով գնա այդ գյուղը և սպանի նրան կամ գերի վերցնի։ Թուրքը արեց այդ բանը, գնաց ու սպանեց նրան, իսկ գլուխը կտրեց և ուղարկեց Աֆշինին։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

**(14 դեկտեմբեր 836—2 դեկտեմբեր 837)**

***էջ 239—240***

### ԿՐԿԻՆ ԲԱԲԵԿԻ ԴԵՄ ԿՌԻՎԸ

*Այդ տարում Մուտասիմ [խալիֆան] Ջաֆար ալ-Խայյաթին ուղարկեց Աֆշինի մոտ օգնության, ուղարկեց նաև Իտախին՝ երեսուն միլիոն դիրհեմով՝ զինվորների և ծախսերի համար։ Սա բոլորը հանձնեց Աֆշինին և վերադարձավ։*

*Այգ տարում ընդհարում տեղի ունեցավ Աֆշինի զինվորների և Բաբեկի զորավարներից մեկի միջև, որի անունն էր Ազին։*

*Բանն այն էր, որ երբ երկու հարյուր քսանմեկ թվականի ձմեռը վերջացավ, եկավ գարունը, և սկսվեց քսաներկու թվականը, և հենց որ հնարավորություն ստեղծվեց, Աֆշինը գնաց այն վայրը, որը կոչվում էր Գիլան (Քիլան) Ռուդ, որը նշանակում է Մեծ գետ։ Այստեղ նա խրամատ փորեց և գրեց Աբու Սաիդին, որպեսզի Բարզանդից գա Գիլան Ռուդի կողմերը, իսկ նրանց միջև երեք մղոն հեռավորություն կար։ Աֆշինը Գիլան Ռուդում հինգ օր մնաց։ Նրան իմաց տվին, թե Բաբեկի զորավարներից մեկը, որի անունն էր Ազին, բանակ է դրել նրա մոտ, իսկ իր ընտանիքին ձիավորների հետ ետ էր ուղարկել։ Բաբեկը մեկ անգամ ասել էր նրան՝ ավելի լավ է նրանց (ընտանիքը) բերդի մեջ պահել։ Ասել էր՝ չեմ ուզում պաշտպանվել հրեաներից, այսինքն մահմեդականներից. այլահը վկա նրանց (ընտանիքին) երբեք բերդ չեմ մտցնի։*

[Իմանալով այդ մասին], Աֆշինը ուղարկեց Ջաֆար իբն ալ-Ալա ալ-Սաադիին ձիավոր և հետիոտն մի խմբի հետ։ Նրանք գիշերով հասան մի նեղ կիրճ, որով մեկ-մեկ կարելի էր անցնել։ Մարդկանց մեծ մասը իրենց ձիերի սանձերը քաշեցին ու մագլցեցին լեռը և հափշտակեցին Ադինի կանանց և որդիներից մի քանիսին։

Այդ լուրը հասավ Ադինին։ Աֆշինը վախենում էր, որ նրանց ճանապարհը կկտրեն, ու հրամայեց, որ ամեն մի լեռան գլխին մարդիկ նշանակեն սև դրոշներով և նրանք վտանգ տեսնելու դեպքում դրոշները պետք է շարժեին։ Այդպես էլ արեցին։ Երբ նրանք Ադինի կանանց բռնեցին ու վերադարձան դեպի ճանապարհը, նախքան կիրճը անցնելը նրանց դեմ եկավ Ադինը իր մարդկանցով, նրանց մի մասին կոտորեց, իսկ կանանցից ոմանք ազատվեցին։ Լեռան վրա նշանակված մարդիկ դրոշները շարժեցին։ Ադինը մարդկանց ետ ուղարկեց, որ կիրճը բռնեն։ Երբ Աֆշինը տեսավ իր կողքի դրոշի շարժվելը, դինվորների մի խումբ ուղարկեց Մուզաֆֆար իբն Քայդարի հետ, որն աճապարեց նրանց մոտ։ Ապա ուղարկեց Աբու Սաիդին և Բուխարախուդային։ Երբ կիրճի մոտ եղած Ադինի հետիոտըն չոկատը տեսավ նրանց, թողեց ու գնաց ընկերների մոտ։ Այսպիսով, Ջաֆար իբն ալ-Ալան իր ընկերակիցների հետ հաղթեց և իր հետ տարավ Ադինի կանանցից (ընտանիքից) մի քանիսին։

էջ 240—245

## ԲԱԴԴԻ ԳՐԱՎՄԱՆ ԵՎ ԲԱԲԵԿԻ ԳԵՐԻ ԲՌՆՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում գրավվեց Բադդը՝ Բաբեկի քաղաքը։ Մահմեդականները մտան, ավերեցին ու կողոպտեցին։ Սա տեղի ունեցավ Ռամադան (7 օգոստոս—5 սեպտեմբեր) ամսվա վերջին տասը օր մնացած։

Բանն այն էր, որ Աֆշինը, երբ որոշեց Գիլան Ռուդից դուրս գալով մերձենալ Բադդին, հակառակ իր նախկին վարմունքի քիչ-քիչ էր առաջանում։ Նրան գրեց Մուտասիմ [խալիֆան], հրամայելով, որ ձիավոր մարդկանց գիշերապահ նշանակի, որպեսզի գիշերային հարձակումների առաջն առնեն, սակայն մարդիկ հոգնածության պատճառով ընդվզեցին, ասելով՝ մեր և թշնամու միջև չորս փարսախ կա, իսկ մենք այնպես ենք վարվում, կարծես թշնամին մեր կողքին է։ Մարդկանց առջև ծիծաղելի ենք դառնում։ Տար մեզ կովի, կամ մենք կհաղթենք, կամ նրանք։ Ասաց [Աֆշինը]՝ գիտեմ, որ ճշմարիտ եք ասում, սակայն հավատացելոց իշխանը ինձ այսպես է հրամայել։ Եվ, իրոք, նորից նամակ ստացավ Մուտասիմից, որը կրկին նույնն էր հրամայում։

Այդպես էլ շարունակեց [Աֆշինը] մի քանի օր և ապա իջավ Ռուդ ալ-Ռուդ և առաջացավ, մինչև որ հասավ այն վայրը, ուր անցյալ տարի ընդհարում էր եղել։ Այնտեղ նա տեսավ խուռամյանների մի հեծյալ ջոկատ, սակայն չկռվեց նրանց հետ։ Նա մնաց մինչև կեսօր, ապա վերադարձավ իր ճամբարը, ուր երկու օր մնալուց հետո վերադարձավ նախկինից ավելի մեծ զորքով, սակայն դարձյալ կռվի չբռնվեց։ Աֆշինը մնաց Ռուդ ալ-Ռուդում և հրամայեց քուհբանիներին[130], որոնք հետախույզներ էին, որ լեռների կատարին հայտնաբերեն այնպիսի վայրեր, ուր հետիոտն զինվորները կարող էին ամրանալ։ Նրանք ընտրեցին երեք լեռ, որոնց վրա ամուր բերդեր էին եղել, բայց ավերվել։ Նա իր հետ վերցնելով գործավորներ, ինչպես նաև չոր խմորեղեն և ցորենի ալյուր[131], գնաց այդ լեռները։ Նա հրամայեց գործավորներին քարերը տեղափոխել և փակել ճանապարհը դեպի լեռները, որպեսզի բերդի նման [պաշտպանված] դառնան։ Նա հրամայեց, որ քարե [պարսպից] դուրս ամեն մի ճանապարհի վրա խրամատ փորեն և ոչ մի ճանապարհ չթողնեն դեպի լեռը, բացի մի նեղ անցքից։ Այդ խրամատները փորելը վերջացավ տասը օրից, որի ընթացքում նա և իր զորքը գիշեր-ցերեկ պահպանում էին գործավորներին ու հետիոտն զորքին։ Երբ վերջացավ այդ գործը, հետիոտն զորքը տեղավորվեց նրա մեջ։

Իսկ Բաբեկը նրա մոտ պատգամաբեր ուղարկեց, որն իր հետ տարավ մեծ վարունգ, ձմերուկ և մանր վարունգ։ Նա հրամայել էր նրան ասել, որ դու [հավանաբար] զզվել և ձանձրացել ես չոր խմորեղեն ուտելուց, իսկ մենք այստեղ առատության մեջ ենք։ (Աֆշինը) ընդունեց այս բոլորը և ասաց՝ հասկացա, ինչ է ուզում ասել իմ եղբայրը, և վերև տանելով պատգամաբերին, ցույց տվեց, թե ինչ էր կատարված, ման ածեց բոլոր խրամատները և ասաց՝ գնա և պատմիր, ինչ որ տեսար։

Խուռամյանների մի խումբ մոտիկ էր գալիս Աֆշինի խրամատին ու գոռգոռում։ Աֆշինը ոչ ոքի չէր թողնում նրանց դեմ դուրս գալ։ Նրանք երեք օր այդ բանը կրկնեցին։ Ապա Աֆշինը դարան մտցրեց իր մարդկանց և երբ նորից եկան, սրանք հարձակվեցին և նրանք փախան ու այլևս չվերադարձան։

Աֆշինը դասավորեց իր զինվորներին և ամեն մեկին պարտավորեցրեց իր տեղը գրավել։ Նա ձիով անցնում էր, իսկ մարդիկ նրա առջև իրենց տեղում կանգնած էին։ Նա առավոտները մութն ու լույսին աղոթում էր, ապա հրամայում էր թմբուկները զարնել ու գրոհել։ Առաջ շարժվելու և կանգնելու նշանը թմբուկների հարվածներն էին, քանի որ մարդիկ շատ էին և շարքերով գնում էին լեռներով ու հովիտներով։ Երբ քայլում էին՝ խփում էին, իսկ կանգնելու համար դադարում էին խփելուց։ Բոլորը միա-

ւյին քայլում էին և միասին կանգնում։ [Աֆշինը] դանդաղ էր առաջ շարժվում։ Ամեն անգամ, երբ մի լեռնային հետախույզ (քուհբանի) լուր էր բերում, նա առաջ էր շարժվում կամ կանգնում։ Եթե ուզում էր [օրինակ] առաջանալ մինչև այն վայրը, ուր անցյալ տարի կռիվ էր եղել, թողնում էր Բուխարախուդայի լեռնանցքի գլխին հազար ձիավորով ու վեց հարյուր հետիոտն զինվորներով՝ ճանապարհը պահպանելու, որպեսզի խուռամյանները նրան հանկարծակիի չբերեն։

Բաբեկը, երբ զգում էր նրա գալուստը, իր մարդկանց մի խումբ էր ուղարկում, որ դարան մտնեն ձորում այդ լեռնանցքի տակ Բուխարախուդայի եղած տեղից ներքև։ Աֆշինը աշխատում էր Բաբեկի դարանի վայրը իմանալ, սակայն չէր կարողանում։ [Այն ժամանակ] նա հրամայեց Աբու Սաիդին, Ջաֆար ալ-Խայյաթին և Ահմադ իբն ալ-Խալիլին, որ ամեն մեկը նեղքի կիրճը մի ձիավոր ջոկատով։ Այսպիսով, այնտեղ կլիներ երեք ջոկատ տարբեր կողմերում։ Բաբեկը դուրս էր բերում իր զորքը և կանգնում այդ ջոկատների կողքին, որպեսզի նրանցից ոչ մեկը առաջ գնալով չհասնի Բադդի դուռը։ Նա իր զորքը դարան էր մտցնում և միայն քչերն էին մնում իր մոտ։

Աֆշինը նստում էր բարձր բլուրի վրա, որտեղից դիտում էր Բաբեկի պալատը, իսկ զորքը ջոկատներով [կանգնած էր]։ Ով որ նրա հետ էր կիրճի կողմից, իջնում էր իր ձիուց, իսկ ով որ այն կողմում էր՝ Աբու Սաիդի, Ջաֆարի և Ահմադ իբն ալ-Խալիլի հետ, թշնամուց հեռու չէր։ Բաբեկը և իր մարդիկ գինի էին խմում և զուռնա նվագում։ Աֆշինը կեսօրվա աղոթքից հետո վերադառնում էր խրամատները Ռուդ-ալ-Ռուդում, ընդ որում վերադառնում էր նախ և առաջ թշնամուն մոտիկ գտնվողը, ապա հաջորդը և ապա նրա հաջորդը, իսկ ամենավերջինը վերադառնում էր Բուխարախուդան, որովհետև նա թշնամուց ամենահեռուն էր կանգնած։ Երբ նրանք վերադառնում էին, խուռամյանները գոռում-գոչում էին նրանց ետևից։

Սակայն մի օր խուռամյաններր ձանձրացան ձգձգումից, իսկ Աֆշինը սովորականի նման գնաց. ձիավոր ջոկատները, որոնք կիրճի այն կողմում էին, երբ ետ դարձան և մնացել էր միայն Ջաֆար ալ-Խայյաթը, խուռամյանները բացին Բադդի դուռը և [ռազմիկների] մի խումբ հարձակվեց Ջաֆարի զինվորների վրա։ Աղաղակ բարձրացավ և Ջաֆարը անձամբ առաջ անցավ ու ետ մղեց խուռամյաններին դեպի Բադդի դուռը և աղմուկ բարձրացավ զորքի մեջ։ Ետ դարձավ Աֆշինը և տեսավ Ջաֆարին ու զինվորներին կռվելիս։ Երկու կողմից էլ առանձին մարդիկ դուրս եկան [կռվի]։ Իսկ Աֆշինը իր տեղում նստած զայրանում էր Ջաֆարի վրա, ասելով՝ փչացրեց իմ ծրագիրը։ Աղմուկը ավելի բարձրացավ և ահա Աբու Դուլաֆի հետ եղած կամավորները, առանց Աֆշինի հրամանի,

դիմեցին Ջաֆարի կողմը և մոտեցան Բաղդի պարիսպներին, որոշ վնաս պատճառեցին և քիչ էր մնում, որ բարձրանան ու մտնեն Բաղդ։

Ջաֆարը լուր ուղարկեց Աֆշինին, թե օգնիր ինձ հինգ հարյուր հետիոտն նետաձիգ զինվորներով, քանզի ես ուզում եմ, կամոքն ալլահի, մտնել Բաղդ։ Աֆշինը լուր ուղարկեց, թե՝ դու իմ գործը փչացրիր, կամաց-կամաց գլուխդ ազատիր, ազատիր նաև զինվորներիդ և հեռացիր։ Կամավորները աղմուկ բարձրացրին և մոտեցան Բաղդին։ Բաբեկի դարանամուտ մարդիկ կարծեցին, որ կռիվը սկսվել է, և մի մասը Բուխարախուդայի [կանգնած տեղի] տակից դուրս ցատկեց, իսկ ուրիշները այլ կողմերից դուրս թռան։ Բոլոր դարան մտած խուռամյանները շարժման մեջ մտան և ոչ ոք տեղում չմնաց, իսկ [Աֆշինի] զորքերը նրանց գլխի վերևում էին գտնվում։

Աֆշինն ասաց՝ փառք ալլահին, որ նրանց տեղերը (դարանը) հայտնի դարձրեց։ Ջաֆարը վերադարձավ իր մարդկանցով ու կամավորներով, եկավ Աֆշինի մոտ այպանեց նրան չօգնելու համար և նրանք խիստ լարվեցին իրար դեմ։ Եկավ կամավորներից մեկը՝ բերելով մի քարի կտոր ու ասաց Աֆշինին՝ գու մեզ ետ կանգնեցրիր այն բանից հետո, երբ արդեն պարսպից քար էի պոկել։ Ասաց [Աֆշինը], եթե գնաս կտեսնես, թե ովքեր էին քո ճանապարհին։ Նկատի ուներ դարանը, որը Բուխարախուդայի մոտ էր։ Նա ասաց Ջաֆարին՝ եթե այս դարանամուտ մարդիկ հարձակվեին, ի՞նչ կլիներ այս կամավորների վիճակը։ Ապա նա իր զինվորների հետ սովորականի նման վերադարձավ։ Երբ նրանք տեսան այն դարանը, որ Բուխարախուդայի մոտ էր, հասկացան, թե ինչ է եղել իրենց թիկունքում, և եթե Բուխարախուդան առաջ շարժվեր, նրանք (դարանամուտ մարդիկ) այդ վայրը կգրավեին և մահմեդականները ամբողջովին կկոտորվեին։

Ապա Աֆշինը օրերով մնաց իր խրամատներում, իսկ կամավորները բողոքում էին նրան անասնակերի, մթերքի և ռոճիկի ուշացման պատճառով։ Նա ասաց՝ ով կհամբերի, թող դիմանա, իսկ ով ոչ՝ ճանապարհը լայն է՝ թող գնա։ Հավատացելոց իշխանի զորքը ինձ բավական է։ Կամավորները հեռացան, ասելով՝ եթե Աֆշինը Ջաֆարին և մեզ թողներ կգրավեինք Բաղդը, սակայն նա կամենում է ձգձգել։ Նրան (Աֆշինին) հասան այս և այլ բամբասանքներ, որ կամավորները ասում էին նրա մասին։ Նրանցից մեկը, նույնիսկ, պատմում էր մյուսներին՝ երազումս տեսա ալլահի առաքյալին, որն ինձ ասաց՝ ասա Աֆշինին, որ թող դրա (Բաբեկի) դեմ կռվի և լրջորեն զբաղվի այդ գործով, թե չէ կհրամայեմ, որ լեռները քեզ վրա քարեր տեղան։ Մարդիկ խոսում էին այդ մասին և խոսքը հասավ Աֆշինին, որը կանչել տվեց նրան ու հարցրեց երազի մասին։ Նա

պատմեց և նա ասաց՝ ալլահը գիտի իմ նպատակները և թե ինչ եմ կամենում այս ժողովրդին և եթե ալլահը որևէ մեկի վրա քարեր տեղար, ապա կտեղար այս անհավատի վրա և մեզ էլ կաղատեր նրանից։ Կամավորներից մեկն ասաց՝ ով իշխան (ամիր) մի զրկիր մեզ նահատակ դառնալու [հնարավորությունից], քանի որ դա մեր առջև է։ Մեր նպատակն է ալլահից վարձատրություն ստանալ և նրա երեսը տեսնել։ Թող մեզ, մենակ առաջ գնանք քո թույլտվությամբ, չէ՞ որ ալլահը մեզ հաղթանակ կտա։ Աֆշինն ասաց՝ տեսնում եմ, որ դուք պատրաստակամ եք և կարծում եմ, որ այն կամենում է բարձրյալն ալլահը և թող բարին կատարվի, բարձրյալն ալլահի կամքով։ Տեսնում եմ, որ դուք և [խալիֆայի] ղորքը եռանդուն եք, և ես այն չգիտեի նախապես, սակայն այս ժամին, երբ լսեցի ձեր խոսքերը (հասկացա)։ Որոշեցեք, ալլահի ողորմածությամբ, որ օրը կուզեք, որպեսզի մենք նրա (Բաբեկի) դեմ դուրս գանք, քանզի ուժն ու ամրությունը միայն բարձրյալ և փառավորյալ ալլահի մեջ է։ Նրանք դուրս եկան [Աֆշինի մոտից] ուրախությամբ լի և հեռանալ ուզողները արգեն մնացին։ Աֆշինը նշանակեց նրանց [հարձակման] օրը և հրամայեց մարդկանց պատրաստվել։ Նա հրամայեց դրամները, պարենը և ջուրը բառնալ, իսկ հիվանդների համար ջորիների վրա պատգարակներ պատրաստել։ Նշանակված օրը նա զորքի հետ հարձակվեց, իսկ Բուխարախուդային թողեց իր տեղում՝ լեռնանցքի մոտ։ Նույն տեղում նստելով, ուր նստում էր նախկինում, Աֆշինը հրամայեց Աբու Դուլաֆին՝ ասա կամավորներին որ կողմն ավելի հեշտ է նրանց համար, թող այնտեղ էլ տեղավորվեն։ Ջաֆարին ասաց՝ ամբողջ զորքը քո առջև է՝ նետաձիգներ, նավթաձիգներ, վերցրու նրանցից, ում որ կամենում ես, գործիր ալլահի ողորմածությամբ և շարժվիր որտեղից ուզում ես։ Սա գնաց այն տեղը, ուր գտնվում էր [անցած] օրը։ [Աֆշինը] ասաց Աբու Սաիգին՝ դու և քո զինվորները կանգնեցեք ինձ մոտ, իսկ Ջաֆարին ասաց՝ կանգնի՛ր հենց այս տեղում և ցույց տվեց [ասելով]՝ եթե Ջաֆարը հետիոտն կամ ձիավոր զորք ուզենա, կօգնենք նրան։

Ջաֆարր կամավորների հետ առաջ անցավ և նրանք հարձակվեցին ու կառչեցին Բադդի պարիսպներին։ Ջաֆարը խփեց Բադդի դարպասին և այնտեղ կանգնեց կռվելով։ Աֆշինր նրան և կամավորներին դրամ ուղարկեց, որպեսշի բաժանեն նրանց, ովքեր առաջ կգնան. Նաև գործավորներ ուղարկեց կացիններով, ինչպես նաև ջուր, որ չծարավեն և չոր խմորեղեն ու ցորենի ապուր։ Դարպասի մոտ կռիվր երկարեց և խուռամյաններր դարպասր բաց անելով դուրս եկան Ջաֆարի դորքի դեմ և ետ մղեցին դարպասից, իսկ մյուս կողմից նեղում էին կամավորներին, որոնց ետ շպրտեցին պարսպից և ժայռեր նետեցին նրանց վրա։ Նրանք այնքան

վնասներ պատճառեցին [կամավորներին], որ սրանք այլևս ի վիճակի չէին պատերազմելու։ Ջաֆարն իր զինվորներից մոտավորապես հարյուր մարդու հետ կանգնեցին վահաններով պաշտպանված այնպես, որ պատնեշ դարձան երկուսի միջև և ոչ մեկը մյուսին չէր կարող մերձենալ։ Այսպես տևեց մինչև կեսօրվա աղոթքի ժամը և ապա նրանք ցրվեցին։

Աֆշինր իր մոտ եղած հետիոտն զորքն ուղարկեց կամավորներին, մի մասն էլ Ջաֆարին, որ չլինի թե թշնամին համարձակություն ունենա (ավելի նեղելու նրանց)։ Սակայն Ջաֆարն ասաց՝ ես [մարդկանց] պակասությունից չեմ նեղվում, այլ պարզապես կռվելու համար հարմար տեղ չեմ տեսնում։ [Աֆշինը] հրամայեց նրանց հեռանալ և նա հեռացավ։ Աֆշինը հրամայեց վիրավորներին և նետված քարերից թուլացածներին բարձրացնել ջորիների պատգարակների վրա։ Նրանք հեռացան և մարդիկ այդ տարում [քաղաքը] նվաճելուց հուսահատվեցին, իսկ կամավորների մեծ մասը ցրվեց։

Սակայն երկու շաբաթ անց Աֆշինը նորից պատրաստվեց։ Նա կես գիշերին հազար հետիոտն նետաձիգ ուղարկեց, որոնցից ամեն մեկին տվեց ջրի կաշե տոպրակ, չոր խմորեղեն, ինչպես նաև [նիզակին] չամրացված դրոշներ։ Նրանց հետ դրեց ուղեցույցներ և նրանք դժվարանցանելի լեռներով, տարբեր ճամփաներով քայլեցին, մինչև որ հասան բլրի ետևը, որի վրա [ընդհանրապես] կանգնում էր Ազինը։ Սա մի բարձր լեռ էր։ [Աֆշինը] հրամայել էր, որ նրանք այնպես գնան, որ ոչ ոք չիմանա և երբ տեսնեն Աֆշինի դրոշները, աղոթքը կատարեն և հենց որ տեսնեն ճակատամարտի սկսվելը, ապա թող դրոշները հագցնեն նիզակների վրա, թմբուկները խփեն, իջնեն լեռից և նետեր ու քարեր արձակեն խուռամյանների վրա։ Սակայն, եթե չտեսնեն [Աֆշինի] դրոշները, տեղից չշարժվեն, մինչև որ լուր ստանան։ Այդպես էլ արեցին։ Նրանք հասան լեռան կատարը կանուխ առավոտյան։ Մի գիշեր Աֆշինը լուր ուղարկեց զինվորներին, որ պատրաստվեն կռվի։ Նա ուղարկեց Բաշիր ալ-Տուրքիին և ֆերղանացի զորավարներին, որոնք իր հետ էին, հրամայելով քայլել, մինչև որ հասնեն այն բլրի տակ, որի վրա գտնվում էր Ազինը։ Նա գիտեր, որ Բաբեկը դարան է մտցրել այդ լեռան տակ։

Նրանք առաջ գնացին գիշերով և զորքի մեծ մասը այդ մասին չգիտեր։ Իսկ ինքը և զորքը արշալույսին առավոտյան աղոթքը կատարեցին, թմբուկները զարկին և հեծան [ձիերը]։ Նա եկավ այն վայրը, ուր միշտ կանգնում էր և, ըստ սովորության, նստեց։ Բուխարախուդային հրամայեց, որ կանգնի Ջաֆար ալ-Խայյաթի, Աբու Սաիդի և Ահմադ իբն Խալիլ իբն Հիշամի մոտ, իսկ ինքը կանգնած մնաց իր տեղում։ Այս բանը տարօրինակ թվաց զորքին։ Նա հրամայեց, որ մոտենան այն բլրին, որի վրա

էր Աղինր և շրջապատել նրան, իսկ նախապես այդ բանը արգելում էր նրանց։ Այս չորս զորավարների հետ շարժվեց նաև զորքը։

Ջաֆարը կանգնած էր [Բաղդի] դարպասի մոտ, նրա կողքին՝ Աբու Սաիդը, վերջինիս կողքին՝ Բուխարախուդան, իսկ Ահմադը՝ Բուխարախուդայի մոտ։ Նրանք բոլորվեցին բլրի շուրջը։ Կիրճի ներքևից աղմուկ բարձրացավ և Բաբեկի դարանամուտ մարդիկ հարձակվեցին Բաշիր ալ-Տուրքիի և ֆերղանացիների վրա ու կռվի բռնվեցին նրանց հետ։ Զորքը լսեց նրանց գոռում-գոչումը և ուզեց շարժվել, սակայն Աֆշինը մունետիկ ուղարկեց նրանց հայտնելու, թե Բաշիրն էր, որ գրգռել էր դարանամուտ մարդկանց, ուստի ոչ ոք թող տեղից չշարժվի և նրանք լռեցին։

Իսկ այն մարդիկ, որոնց [Աֆշինը] տարել էր լեռան կատարը, երբ զորքի գոռում-գոչումը լսեցին գրոշները ամրացրին նիզակների ծայրին։ Տեսավ զորքը, թե ինչպես դրոշները գլորվում (գրոհում) են լեռից ցած Աղինի ձիավորների վրա։ Աղինր իր մարդկանց ուղարկեց նրանց դեմ, իսկ Ջաֆարը իր մարդկանցով Աղինի վրա հարձակվեց, մինչև որ բարձրացան նրա մոտ և այնպիսի ուժեղ հարվածներ տվեցին, որ ստիպեցին իջնել ձորը։ Աբու Սաիդի զորքի մի մասն էլ հարձակվեց, սակայն պարզվեց, որ նրանց ձիերի ոտքերի տակ հորեր են փորված, որոնց մեջ ընկան ձիավորները։ Աֆշինը գործավորներ ուղարկեց, որ լցնեն հորերը և նրանք այդպես էլ արեցին։ [Մահմեդական] զորքը սաստիկ հարձակում գործեց նրանց վրա։ Աղինր լեռան վրա պատրաստել էր մի սայլ, որի վրա ժայռաբեկորներ կային և ահա, երբ զորքը հարձակվեց, նա ցած գլորել տվեց սայլը։ Զորքը ետ քաշվեց այնպես, որ [քարերը] ցած գլորվեցին։ Ապա զորքը հարձակվեց ամեն կողմից։

Երբ Բաբեկը տեսավ, որ իր զորքը ամեն կողմից շրջապատված է, դուրս եկավ Բաղդի այն կողմը, ուր Աֆշինն էր։ Եկավ նրա կողմը և Աֆշինին ասացին, թե Բաբեկը դիմում է քեզ։ Սա մոտեցավ այնքան, որ կարող էր լսել նրա և զորքերի խոսքերը, իսկ Աղինի շուրջը կռիվը շարունակվում էր։

[Բաբեկն] ասաց՝ ուզում եմ երաշխավորագիր ստանալ հավատացյալների իշխանից։

Աֆշինն ասաց՝ ես քեզ առաջարկել էի այն և դա քեզ կտրվի, երբ որ կամենաս։

Ասաց նրան [Բաբեկը]՝ հիմա եմ ուզում, միայն այն պայմանով, որ ինձ ժամանակ տաս ընտանիքս դուրս բերելու և պատրաստվելու։

Աֆշինն ասաց՝ խորհուրդ եմ տալիս այսօր դուրս գալ և ոչ վաղը։

Ասաց՝ ընդունում եմ։

Ասաց Աֆշինր՝ ապա ուղարկիր պատանդներին։

Ասաց՝ այո, այսինչն ու այնինչը գտնվում են այդ բլրի վրա, հրամայիր մարդկանցդ, որ կռիվը դադարեցնեն։

Եկավ Աֆշինի սուրհանդակը, որպեսզի մարդկանց ետ կանգնեցնի [կռվից], սակայն ասացին նրան՝ ֆերղանացիք դրոշներով արդեն մտան Բադդ և բարձրացել են դղյակը։ Այն ժամանակ [Աֆշինը] ձին նստեց և մարդկանց կանչելով մտավ [քաղաքը] և նրանք էլ ետևից մտան։ Զորքը դրոշներով բարձրացավ Բաբեկի դղյակը։ Այնտեղ իր չորս պալատներում [Բաբեկը] դարան էր մտցրել վեց հարյուր մարդ, որոնք դուրս եկան [հարձակվող] զորքի դեմ և կռվի բռնվեցին։ Իսկ Բաբեկը սրանից օգտվելով անցավ, մինչև որ աննկատելի մտավ կիրճը, որը Հեշտադսարից այն կողմ էր։

Աֆշինը և նրա զորքը կռվում էին դղյակների դռների մոտ։ Նա բերել տվեց նավթաձիգներին, որոնք հրկիզեցին այն և զորքը քանդեց դղյակները ու բոլոր խուռամյաններին կոտորեց։ Աֆշինը գերի վերցրեց Բաբեկի որդիներին ու ընտանիքը (կանանց)։ Նա այնտեղ մնաց մինչև երեկո և զորքին հրամայեց ցրվել ու նրանք վերադարձան Ռուդ ալ-Ռուդի խրամատները։

Իսկ Բաբեկը, Աֆշինի դուրս գալուց հետո, իր ընկերակիցների հետ վերադարձավ Բադդ և նրանք ուտելիք ու դրամ վերցրին ինչքան որ կարող էին։

Մյուս օրը Աֆշինը կրկին եկավ Բադդ և հրամայեց [լրիվ] կործանել դղյակները և հրկիզել այնպես, որ ոչ մի տուն չմնա։

Նա գրեց Հայաստանի բոլոր թագավորներին ու պատրիկներին, իմաց տալով, որ Բաբեկը մի քանի հոգու հետ փախել է և կանցնի նրանց կողմերով։ Նա հրամայեց նրանց, որ հսկողություն սահմանեն իրենց գավառներում և ոչ ոքի չթողնեն առանց ստուգման անցնել այդ կողմերով։

Եկան Աֆշինի լրտեսները և նրան տեղեկացրին, թե որտեղ է Բաբեկը։ Սա մի ծառաշատ և առատ խոտով կիրճի մեջ էր, որի ծայրը Ատրպատականի կողմն էր, մյուս՝ծայրը՝ Հայաստանի։ Ձիերը չէին կարող այնտեղ իջնել և եթե մեկը թաքնվեր, չէր երևա ծառերի ու ջրերի առատության պատճառով։ Այդ կիրճը կոչվում էր Ղայդա (Թավուտ)։ Աֆշինը կիրճը տանող բոլոր ճամփաներին խմբեր (դասակներ) նշանակեց՝ պահպանության համար, և դրանք տասնհինգ խումբ էին։

Այդ ժամանակ հասավ Մուտասիմ [խալիֆայի] հրովարտակը Բաբեկին երաշխավորագիր շնորհելու մասին։ Աֆշինը կանչեց Բաբեկի մարդկանցից նրանց, որոնց երաշխավորագիր էր տվել և տեղեկացրեց այդ մասին, հրամայելով, որ այդ գրությամբ գնան նրա մոտ։ Նրանց հետ էր

նաև [Բաբեկի] որդին։ Սակայն ոչ որ չհամարձակվեց գնալ՝ վախենալով նրանից։ [Աֆշինը] ասաց՝ նա կուրախանա այդ երաշխավորագրի համար։ Նրանք պատասխանեցին՝ մենք քեզանից լավ դիտենք նրան։ Ապա երկու մարդ ելան ու ասացին՝ երաշխավորիր, որ մեր ընտանիքին կհոգաս [եթե սպանվենք]։ Նա երաշխավորեց նրանց և վերցնելով գրությունը գնացին։ Երբ նրան (Բաբեկին) տեսան, տեղեկացրին, թե ինչու են եկել։ Նա մեկին սպանեց, իսկ մյուսին հրամայեց, որ այդ գրությամբ վերադառնա Աֆշինի մոտ։ Նրա որդին այդ երկուսի հետ նամակ էր ուղարկել նրան, իսկ նա ասաց՝ ասա այդ անառակ կնոջ որդուն, որ, եթե իմ որդին լինեիր, ինձ հետ կգայիր, սակայն դու իմ որդին չես։ Լավ է, որ մեկ օր ապրեիր որպես ազատ մարդ, քան թե քառասուն տարի՝ որպես ստոր ստրուկ։

Նա մնաց իր տեղում այդ թավուտի մեջ, մինչև որ պարենը վերջացավ։ Նա դուրս եկավ [դիտելու] վերոհիշյալ ճանապարհներից մեկը, որի պահապան զինվորները մի քիչ հեռացել էին, թողնելով միայն չորս հոգու՝ հսկողության համար։ Մի օր կեսօրին Բաբեկը իր մարդկանց հետ դուրս եկավ և չտեսնելով ոչ զորք և ոչ էլ այն պահապաններին, որոնք հսկում էին, կարծեց մարդ չկա։ Դուրս եկավ նա, նրա եղբայրները՝ Աբդալլահը, Մուավիան, մայրը և մի կին։ Նրանք շարժվեցին, կամենալով գնալ Հայաստան։ Նրանց տեսան պահակները և լուր ուղարկեցին իրենց ընկերներին, թե նկատեցին անծանոթ ձիավորների։ Սրանց պետն էր Աբու-լ-Սաջը։ Նրանք ձի նստեցին և գնացին նրա կողմը, տեսան Բաբեկին ու ընկերակիցներին, որոնք մի ջրի մոտ ճաշում էին։ Տեսնելով զորքը, [Բաբեկը] ձի նստեց իր ընկերակիցների հետ։ Նա փրկվեց [սակայն] Մուավիան, Բաբեկի մայրը և այն մյուս կինը բռնվեցին։ Աբու-լ-Սաջը նրանց ուղարկեց Աֆշինին։

Իսկ Բաբեկը գնաց Հայաստանի լեռները թաքնվելու։ Նա ուտելիքի կարիք զգաց, սակայն Հայաստանի պատրիկները պահպանում էին իրենց գավառները, կարգադրելով, որ եթե որևէ մեկը անցնի, բռնեն ու ստուգեն։ Բաբեկը սովածացավ և մի կիրճի մեջ տեսնելով մի հողագործի, ասաց իր ծառային՝ իջիր այդ հողագործի մոտ, վերցրու քեզ հետ դինարներ ու դիրհեմներ ու եթե հաց ունի, գնիր նրանից։ Հողագործը մի ընկեր ուներ, որն ինչ-որ կարիքի համար տեղ էր գնացել և երբ ծառան իջավ հողագործի մոտ նրանից ուտելիք վերցնելու, հողագործի այն ընկերը տեսավ և կարծելով, որ նա բռնի է վերցնում. ինչ որ վերցնում է, գնաց զինվորական պահակակետը և իմաց տվեց, թե սրով ու զենքով զինված մի մարդ հափշտակել է իր ընկերոջ հացը։ Սմբատի որդու (Իբն Սինբաթ) լեռներում գտնվող այս պահակակետի հրամանատարը տեղեկացրեց Սահլ իբն Սինբաթին։ Սա մի ջոկատով եկավ և հասավ հողագործին, իսկ ծառան

դեռ նրա մոտ էր։ Նա հարցրեց նրան և հողագործը պատմեց պատահածը։ Սառան պատմեց իր տիրոջ մասին և առաջնորդեց նրա մոտ։ Երբ նա (Սահլ իբն Սինբաթը) տեսավ Բաբեկի դեմքը, ճանաչեց, իջավ ու համբուրեց նրա ձեռքը, ասելով՝ ո՞ւր ես ուզում գնալ։ Ասաց՝ Ռումի երկիրը։ Ասաց՝ չես գտնի մի մարդ, որ ինձնից ավելի գնահատի քեզ, ես խալիֆա՛յի (սուլթան) հետ գործ չունեմ։ Այստեղի բոլոր պատրիկները քո հարազատներն են, դու նրանց [կանանցից] զավակներ ես ունեցել։

Բանն այն է, որ Բաբեկը հենց որ իմանում էր, թե [պատրիկներից] որևէ մեկը գեղեցիկ կին ունի, պահանջում էր[132]։ Եթե ուղարկեին նրան [գործը դրանով վերջանում էր], ապա թե ոչ՝ լույսը չբացված գնում էր, խլում նրան (կնոջը) և կողոպտում ունեցվածքն ու վերադառնում։ Սմբատի որդին այնպես խաբեց նրան, որ նա գնաց մինչև նրա ամրոցը, իսկ իր եղբորը Աբդալլահին ուղարկեց Ստեփանոսի (Իսթիֆանուսի) բերդը։

Սմբատի որդին Աֆշինին լուր ուղարկեց այդ մասին և Աֆշինը գրեց նրան խոստումներ անելով ու հույսեր տալով։ Նա ուղարկեց Աբու Սաիդին և Բուրմարային (Բուղբարա) իրենց ջոկատներով ու հրամայեց նրանց հնազանդ լինել [իբն Աինբաթին]։ Սմբատի որդին հրամայեց նրանց իր նշանակած տեղում նմալ և ասաց՝ տեղից չշարժվեք, մինչև որ իմ սուրհանդակը գա և կանեք այն, ինչ որ կասի ձեզ։

Ապա նա ասաց Բաբեկին՝ երևի ձանձրացար այս բերդից, եկ իջնենք որսի։ Բաբեկը համաձայնեց, բայց հենց որ բերդից իջան, Սմբատի որդին իմաց տվեց Աբու Սաիդին ու Բուրմարային՝ հրամայելով, որ նրանցից մեկը գա կիրճի մի կողմից, իսկ մյուսը՝ այլ կողմից։ Բանն այն է, որ նա չէր ուզում իր ձեռքով (Բաբեկին) նրանց հանձնել։ Մինչդեռ Բաբեկը և Սմբատի որդին որսում էին, նրանց վրա հարձակվեցին Աբու Սաիդը և Բուրմարան իրենց ջոկատներով։ Բաբեկի վրա կար սպիտակ քաթանե շապիկ։ Նրանք երկուսին էլ բռնեցին, հրամայելով Բաբեկին իջնել։ Նա ասաց՝ ովքեր եք դուք։ Ասաց՝ ես Աբու Սաիդն եմ, իսկ սա այնինչն է։ Նա իջավ, ապա ասաց Սմբատի որդուն վատ խոսքեր և հայհոյանքներ[133], ավելացնելով՝ դու ինձ ծախեցիր հրեաներին չնչին բանի դիմաց, եթե դրամ էիր ուզում, ես քեզ ավելին կտայի, քան նրանք են քեզ տալիս։

Աբու Սաիդը ձիու վրա նստեցրեց նրան և տարան Աֆշինի մոտ։ Երբ մոտեցան զորքին, Աֆշինը վերև բարձրացավ ու նստեց [մի գահի], դիտելով նրանց։ Նա իր զորքը երկու շարք կանգնեցրեց ու հրամայեց Բաբեկին իջեցնել ու երկու շարքի մեջտեղից քայլեցնել։ Աֆշինը նրան մտցրեց մի տուն և պահապաններ նշանակեց։

Սմբատի որդին Սահլը (իբն Սինբաթ)[134] (Բաբեկի) հետ ուղարկել էր իր Մուավիա որդուն, որին Աֆշինը հարյուր հազար դիրհեմ տվեց, իսկ

*Սահլին հրամայեց տալ մեկ միլիոն դիրհեմ, թանկարժեք քարերից ընդելուզված մի գոտի և պատրիկության թագ*[135]։

*Աֆշինը Իսա իբն Յունիս իբն Իսքաֆանուսին*[136] *լուր ուղարկեց, պահանջելով Բաբեկի եղբորը՝ Աբդալլահին։ Սա ուղարկեց նրան և [Աֆշինը] նրան բանտարկեց եղբոր հետ։ Ապա այդ մասին գրեց Մուտասիմին, իսկ վերջինս հրամայեց երկուսին էլ բերել իր մոտ։*

*Բաբեկը հասավ Բարզանդ՝ Աֆշինի մոտ, Շավվալ ամսվա վերջին տաս օր մնացած։ Աֆշինն ազատ արձակեց բազմաթիվ կանանց ու երեխաների, որոնք վկայեցին, որ Բաբեկը գերել էր նրանց, իսկ նրանք արաբ և գեհկան ազատներ էին*[137]*։ Նա հրամայեց նրանց հատկացնել մի մեծ փարախ ու հրամայեց, որ գրեն ու գտնեն իրենց հարազատներին։ Ով գալիս ու ճանաչում էր իր կնոջը, երեխային կամ հարճին և երկու վկա գտնում, տանում էր նրան։ Այսպիսով, մարդիկ շատերին տարան, սակայն շատերն էլ մնացին։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

### (3 դեկտեմբեր 837—22 նոյեմբեր 838)

*էջ 245—246*

### ԱՖՇԻՆԻ՝ ԲԱԲԵԿԻ ՀԵՏ ԳԱԼԸ

*Այդ տարում Աֆշինը եկավ Սամարա և իր հետ բերեց Բաբեկ ալ-Խուռամիին և եղբորը՝ Աբգալլահին, քսաներեք թվականի Սաֆար [ամսին]։*

*Այդ օրվանից, երբ Աֆշինը դուրս եկավ Բարղանդից, մինչև Սամարա հասնելը Մուտասիմ [խալիֆան] ամեն օր մի թանկարժեք զգեստ (խիլա) և մի նժույգ էր ուղարկում։ Երբ Աֆշինը հասավ Հուզայֆայի կամուրջը, նրան դիմավորեցին Մուտասիմի որդին՝ Հարուն ալ-Վասիկը և Մուտասիմի ամբողջ տունը։ Աֆշինը Բաբեկին վերցրեց իր մոտ՝ Մաթիրայի պալատը։ Նրա մոտ եկավ Ահմադ իբն Աբու Դուագը ծպտված նայեց Բաբեկին, խոսեց նրա հետ ու վերադարձավ Մուտասիմի մոտ նկարագրեց նրան։ Նրա մոտ եկավ նաև Մուտասիմը ծպտված ու տեսավ նրան։*

*Մյուս օրը Մուտասիմը հանդիսավոր հավաք կազմակերպեց։ Մարդիկ շարժվեցին Հասարակաց դռնից (Բաբ ալ-Ամմա) մինչև Մաթիրա։ Մուտասիմը նրան (Բաբեկին) անարգանքի ենթարկեց, հրամայեց փղի վրա նստել։ Նա նստեց և ժողովուրդը նրան ընկերակցեց մինչև Հասարակաց դուռը։*

*Մուհամմադ իբն Աբդ ալ-Մալիք ալ-Զայյատն ասաց.*

*Փղին զարդարել են ըստ սովորության,*
*Նա տանում է Խորասանի սատանային,*

Չէ՞ որ զարդարվում է մարմինը փղի
Միայն հանդիսավոր դեպքերում։

Ապա Բաբեկին բերեցին Մուտասիմի ապարանքը[138]։ Նա հրամայեց բերել Բաբեկի դահճին, ու հրամայեց կտրել նրա ձեռքերն ու ոտքերը։ Նա կտրեց և սա ընկավ։ Ապա հրամայեց գլխատել նրան ու գլխատեց նրան։ Նրա փորը պատռել տվեց և գլուխը ուղարկել տվեց Խորասան, իսկ իրանը խաչել տվեց Սամառայում։ Նա հրամայեց նրա եղբորը՝ Աբդալլահին, տանել Իսհակ իբն Իբրահիմի մոտ՝ Բաղդադ ու հրամայեց վերջինիս անել այն, ինչ որ ինքը Բաբեկին էր արել։ Նա այդպես էլ վարվեց՝ կտրեց գլուխը և նրան խաչեց արևելյան կողմում՝ երկու կամուրջների միջև։

Պատմում են, որ Աֆշինը Բաբեկի դեմ կռվի ժամանակ, բացի պարենից, նվերներից և օժանդակությունից, ամեն մի օրվա համար, որ ձի էր նստում ստացել էր հազար դիրհեմ, իսկ այն օրը, որ ձի չէր նստում՝ հինգ հարյուր դիրհեմ։ Քսան տարում Բաբեկի կողմից բոլոր սպանվածների թիվն էր երկու հարյուր հիսունհինգ հազար և հինգ հարյուր մարդ։ Հաղթել էր հետևյալ զորավարներին՝ Յահիա իբն Մուադ, Իսա իբն Մուհամմադ իբն Աբի Խալիդ, Ահմադ իբն ալ-Ջունայդ, որին գերել էր. Զուրայկ իբն Ալի իբն Սադակա, Մուհամմադ իբն Հումայդ ալ-Թուսի և Իբրահիմ իբն ալ-Լայս։ Բաբեկի հետ գերի ընկան երեք հազար երեք հարյուր ինն մարդ, իսկ նրա ձեռքում գերի ընկած յոթը հազար վեց հարյուր մահմեդական կանայք ու երեխաներ ազատվեցին։ Աֆշինի ձեռքն ընկան Բաբեկի որդիներից տասնյոթ հոգի, աղջիկներից ու կանանցից՝ քսաներեք կին։

Երբ Աֆշինը հասավ, նրան դիմավորեց Մուտասիմը, հագցրեց երկու ակնազարդ սուր[139], նվիրեց քսան միլիոն դիրհեմ, իսկ տասը միլիոն բաժանեց նրա զորքին, նրան զորահրամանատար նշանակեց Սինդ նահանգում ու բանաստեղծներ հատկացրեց, որ ներբողեն նրան։

էջ 246—247

## ՀՌՈՄՆԵՐԻ՝ ԶԱՊԵՏՐԱՅԻ ՎՐԱ ՀԱՐՁԱԿՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռումի թագավոր Միքայելի որդի Թեոփիլոսը (Տուֆիլ) հարձակման դուրս եկավ իսլամի երկրի դեմ։ Նա հարձակվեց Զապետրայի (Զիբաթրա) և այլ վայրերի բնակիչների վրա։

Բանն այն էր, որ երբ Բաբեկը նեղվեց Աֆշինից և կորստյան սպառնալիքի տակ էր, գրեց Ռումի Թեոփիլոս թագավորին, տեղեկացնելով, որ Մուտասիմն իր դեմ է ուղարկել բոլոր զորքերն ու ռազմիկներին, նույն-

իսկ իր դերձակին, այսինքն՝ Ջաֆար իբն Դինար ալ-Խայյաթին[140] և խոհարարին, այսինքն՝ Իտախին, այնպես որ իր դռանը մարդ չի մնացել։ Ուստի, եթե կամենում ես հարձակվել, քեզ խանգարող չի լինի։ Բաբեկը մտածում էր, որ եթե Ռումի թագավորը շարժվի, ապա իր վիճակը մասամբ կթեթևանա, քանի որ Մուտասիմն իր զորքը կուղարկի Ռումի դեմ։

Թեոփիլոսը ելավ հարձակման հարյուր հազարով։ Ասվում է, որ նրանց մեծ մասը [կանոնավոր] զորք էր, մոտավորապես յոթանասուն հազար, իսկ մնացածները՝ հպատակներ։ Սրանց հետ էին նաև Մուհամմիրաներ[141], որոնք լեռներն էին բարձրացել և հասել հոռոմների մոտ, երբ նրանց դեմ կռվում էր Իսհակ իբն Իբրահիմ իբն Մուսաբը։

[Թեոփիլոսը] հասավ Զապետրա, կոտորեց տղամարդկանց, իսկ երեխաներին ու կանանց գերեվարեց։ Հարձակվեց Մալաթիայի ու մահմեդականների այլ բերդերի բնակիչների վրա, գերեվարեց մահմեդական կանանց, իր առջև բերել տվեց գերիներին ու կուրացրեց, քթերն ու ականջները կտրել տվեց։ Նրանց դեմ դուրս եկան Ասորիքի ու Ջազիրայի սահմանային գոտու բնակիչները, բացի նրանցից, ովքեր չունեին գրաստ կամ զենք։

էջ 247—251

## ԱՄՈՐԻՈՆԻ (ԱՄՄՈՒՐԻՅԱ) ԳՐԱՎՄԱՆ ՄԱՍԻՆ

Երբ Ռումի թագավորը հարձակվեց և իսլամի երկրում գործեց վերոհիշյալ գործերը, լուրը հասավ Մուտասիմին, որը երբ լսեց, զայրացավ ու կատաղեց։ Նա լսեց, որ Հաշիմի ընտանիքից մի կին հոռոմների ձեռքը գերի ընկնելիս գոչել է՝ ով Մուտասիմ, իսկ նա իր գահից գոչեց՝ լսում եմ, լսում եմ, և անմիջապես վեր կենալով գոռաց իր պալատում՝ շեփորը, շեփորը։ Ապա նստեց իր ձին, որից կախված էր մի շղթա, խոփ և տոպրակ, սակայն չէր կարող երթի դուրս գալ, մինչև չպատրաստվեր ու զորքերը չհավաքեր։

Նա նստեց Հասարակաց պալատում (Դար ալ-Ամմա)[142], կանչեց Բաղդադի դատավորին, որը Աբդ ալ-Ռահման իբն Իսհակն էր և Շուբա իբն Սահլին, որոնց մոտ երեք հարյուր քսանութ հոգի կար արդարադատության մարդկանցից։ Նա վկա դարձրեց նրանց իր վակֆ[143] հայտարարած կալվածքների համար։ Մեկ երրորդը տվեց իր որդուն, մեկ երրորդը՝ բարձրյալն ալլահին, իսկ մեկ երրորդը՝ իր մառլաներին[144]։

Ապա շարժվեց գնաց Տիգրիսից արևմուտք Ջումադա Ա (31 մարտ—29 ապրիլ) ամսվա վերջին երկու օր մնացած։ Նա Ուջայֆ իբն Անբասային, Օմար ալ-Ֆարղանիին, Մուհամմադ Քուտահին և մի խումբ զորավարների

ուղարկեց Զապետրա՝ օգնելու նրա բնակիչներին։ Նրանք [հասնելով] տեսան, որ Ռումի թագավորը հեռացել էր իր երկիրը, գործելուց հետո այն, ինչ որ ասացինք։ Նրանք որոշ ժամանակ սպասեցին, մինչև որ մարգիկ վերադարձան իրենց գյուղերն ու ապահով դարձան։

Երբ Մուտասիմը հաղթեց Բաբեկին, ասաց՝ Ռումի ո՞ր քաղաքը ավելի անառիկ է և ամուր։ Ասացին՝ Ամորիոնը, դեռ ոչ ոք չի գրավել այն իսլամի երևան գալուց հետո։ Դա քրիստոնյաների լավագույն քաղաքն է և Կոստանդնուպոլսից ավելի պատվական։

Մուտասիմը շարժվեց Սուռա Ման Ռաաից (Սամառայից)։ Պատմվում է, որ նրա երթը քսաներկու թվականին էր, ասվում է նաև, թե քսանչորսին (838/839) էր։ Նա այնպես պատրաստվեց, որ իրենից առաջ ոչ մի խալիֆա այդպես չէր պատրաստվել։ Նա պատրաստել էր զենքեր, սարքավորումներ, մեքենաներ, հաց (ուտելիք), ջրամաններ, ջրի տիկեր և այլ բաներ։ Առաջապահ դարձրեց Իշնասին (Աշինաս), որին հետևում էր Մուհամմադ իբն Իբրահիմ իբն Մուսաբը, աջ կողմում՝ Իտախին, ձախ կողմում՝ Ջաֆար իբն Դինար իբն Աբդալլահ ալ-Խայյաթին, իսկ կենտրոնում՝ Ուջայֆ իբն Անբասային։

Երբ [Մուտասիմը] մտավ Ռումի երկիրը, իջևանեց ալ-Սինն գետի ափին, որը Սելևկիայի (Սալուկիյյա) վրա էր, ծովի մոտ, նրա և Տարսոնի միջև մի օրվա ճանապարհ էր և այնտեղ էր լինում գերիների փոխանակումը։ Մուտասիմը Աֆշինին ուղարկեց Սարուջ, հրամայեց ներխուժել Դարբ ալ-Հադասից (Հադասի լեռնանցք), նշանակելով օրը, երբ պետք է մտներ, և այն օրը, երբ պետք է իրար հանդիպեին։

Նա Իշնասին ուղարկեց Տարսոնի լեռնանցքը և հրամայեց՝ իրեն սպասել Սաֆսաֆի մոտ։ Իշնասը դուրս եկավ Ռաջաբ (29 մայիս—27 հունիս) ամսվա վերջից երկու օր առաջ։ Մուտասիմը Իշնասի ետևից ուղարկեց Վասիֆին, իսկ ինքը շարժվեց Ռաջաբ [ամսի] վերջից վեց օր մնացած (23 մայիս)։ Երբ Իշնասը հասավ Մարջ ալ-Ուսկուֆ [Կիլիկիայում], ստացավ Մուտասիմի նամակը Մաթամիրից, որի մեջ տեղեկացնում էր, որ Ռումի թագավորը իր առջև է և որ ինքը կամենում է նրա վրա հանկարծակի հարձակվել ու հրամայում էր մնալ տեղում, մինչև որ ինքը հասնի նրա մոտ։ Նա մնաց երեք օր։

Նրան (Իշնասին) տեղեկացրին, որ [Ռումի] թագավորը երեսուն օրից ավելի է, որ սպասում է Մուտասիմի առաջապահ զորքին, որպեսզի հարձակում կատարի, սակայն նա լուր էր ստացել, թե նրա երկիրը մտել է մի մեծ բանակ Արմենիակոնի (Արմինիակ) կողմից, այսինքն՝ Աֆշինի բանակը։

*Մուտասիմն Իշնասի եռևից ուղարկեց Վասիֆին, իսկ ինքը՝ Մուտասիմը, շարժվեց Ռաջաբ [ամսվա] վերջին վեց օր մնացած։*

. . . . . . . . . . . . . .

*Զորքը բերեց գերի ընկած ռազմիկների և գերեվարած խայտաբղետ ժողովրդին։ Մուտասիմը հրամայեց ազնվականներին անջատել մնացածներից։ Նա հրամայեց ավարը վաճառել մի քանի տեղերում, և հինգ օրից ավելի վաճառք կատարվեց, իսկ մնացածը նա հրամայեց վառել։ Որևէ բան վաճառելիս միայն երեք անգամ էին ձայն տալիս, ապա անմիջապես վաճառում, որպեսզի արագ վերջանա։ Իսկ ստրուկներին հինգ-հինգ կամ տաս-տաս էին աճուրդի հանում արագության համար։*

*Ավարը վաճառելու օրերին զորքը հարձակվեց ավարի վրա, սակայն Մուտասիմն իր ձին հեծած, սուրը ձեռքին, սրընթաց վազեց նրանց վրա և նրանք ետ քաշվեցին ու հրաժարվեցին կողոպուտից։*

*Նա [Մուտասիմը] վերադարձավ իր վրաններն ու նրա հրամանով Ամորիոնը կործանվեց ու հրկիզվեց։ Նա պաշարումը սկսել էր Ռամադանի (27 հուլիս—25 օգոստոս) վերջին վեց օր մնացած և այն պաշարել էր հիսունհինգ օր։ Նա գերի ընկածներին բաժանեց իր զորավարներին, իսկ ինքը գնաց Տարսոն։*

## *ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ*

(23 նոյեմբեր 838—11 նոյեմբեր 839)

*էջ 257*

## ԱՖՇԻՆԻ ԱԶԳԱԿԱՆ ՄԱՆՔԻՋՈՒՐԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ

*Երբ Աֆշինը Բաբեկի գործը վերջացրեց և վերադարձավ Սամառա. իր իշխանության տակ գտնվող Ատրպատականի կառավարիչ նշանակեց Մանքիջուրին (Մանգիջաուր), որը նրա ազգականներից էր։ Սա Բաբեկի գյուղերից մեկում հսկայական գումար էր գտել, բայց չէր հայտնել ո՛չ Մուտասիմին, ո՛չ էլ Աֆշինին։ Այդ մասին փոստի տերը (պաշտոնյան) գրեց Մուտասիմին, սակայն Մանքիջուրը նույնպես գրեց, հերքելով նրան, և նրանց միջև վեճ սկսվեց։ Մանքիջուրն ուզեց սպանել նրան, սակայն Արդաբիլի բնակիչները արգելեցին և Մանքիջուրը կռվի բռնվեց նրանց հետ։ Այս բանը լսելով Մուտասիմը հրամայեց Աֆշինին հեռացնել Մանքիջուրին և հսկայական զորքով ուղարկեց մի զորավարի։ Երբ Մանքիջուրն*

*այս բանը լսեց ապստամբեց [խալիֆայի դեմ] և հավաքելով թափառական հանցագործների (սաալիք), դուրս եկավ Արդաբիլից, սակայն [հիշյալ] զորավարը նրա դեմ դուրս գալով փախուստի մատնեց նրան։ Նա գնաց Ատրպատականի բերդերից մեկը, որը Բաբեկը քանդել էր և այն վերակառուցեց, նորոգեց, այնտեղ ամրացավ և մի ամիս մնաց, սակայն նրա զորքը ընդվզեց նրա դեմ ու նրան հանձնեց զորավարին։ Սա տարավ նրան Սամառա, և Մուտասիմը նրան բանտարկեց, իսկ Աֆշինին մեղադրեց այդ գործի համար։ Նրա (Մանքիջուրի) բերվելը տեղի ունեցավ երկու հարյուր քսանհինգ թվականին։*

*Ասվում է, թե Մանքիջուրի մոտ ուղարկված զորավարը Բուղա ալ-Քաբիրն էր (ավագ Բուղան) և թե Մանքիջուրը նրան հանձնվեց երաշխավորագիր ստանալով։*

*էջ 258*

## ԱԲԴԱԼԼԱՀԻ՝ ՄՈՍՈՒԼԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ ՆՇԱՆԱԿՎԵԼԸ ԵՎ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Այդ տարում Մոսուլի[146] նահանգում ապստամբեց քրդերի առաջնորդներից մեկը, որի անունն էր Ջաֆար իբն Ֆահրջաս, որին հետևեց քրդերի և այլ խռովարարների մի մեծ խումբ։ Մուտասիմը Մոսուլի կառավարիչ նշանակեց Աբդալլահ իբն ալ-Սայյիդ իբն Անաս ալ-Ազդիին և հրամայեց պայքարել Ջաֆարի դեմ։*

*Աբդալլահը եկավ Մոսուլ, իսկ Ջաֆարը տիրել էր Մատիսին։ Աբդալլահը գնաց նրա դեմ ու կռվեց և դուրս հանեց Մատիսից։ Սա դիմեց Դասին լեռը ու ամրացավ մի բարձրաբերձ անմատչելի վայրում, որը մի նեղ ճանապարհ ուներ։ Աբդալլահը այնտեղ էլ գնաց և թափանցեց կիրճերը, մինչև որ հասավ նրան ու կռվեց նրա հետ։ Ջաֆարը և նրան ընկերակցող քրդերը նեղեցին Աբդալլահին, քանի որ այդ վայրերը իրենց ծանոթ էին և ընդունակ էին կռվելու առանց ձիու։ Աբդալլահը փախուստի դիմեց, իսկ նրա հետ եղածների մեծամասնությունը սպանվեց։*

*Սակայն նրանցից մեկը, որի անունն էր Ռիբահ, կարողացավ քրդերին նեղ վիճակի մեջ դնել, ճեղքեց նրանց շարքերը, խոցեց ու կոտորեց նրանց և նրանց թիկունքի կողմն անցնելով կարողացավ նրանց ուշադրությունը շեղել իր ընկերներից, այնպես որ ով կարողացավ, ազատվեց։ Քրդերը կուտակվեցին նրա շուրջը, իսկ նա լեռան կատարից իրեն նետեց իր ձիու վրա։ Ներքևում գետ կար, ձին ընկավ գետի մեջ, իսկ Ռիբահը փրկվեց։*

*Ջաֆարի ձեռքը գերի ընկածների մեջ կար երկու մարդ. որոնցից մեկի անունն Իսմայիլ էր, իսկ մյուսինը՝ Իսհակ իբն Անաս։ Առաջինը*

Աբդալլահ իբն Սայյիդի հորեղբայրն էր, իսկ Իսհակը Ջաֆարի փեսան էր։ Ջաֆարը բերել տվեց նրանց իր մոտ։ Իսմայիլը կարծում էր, որ իրեն կսպանի, իսկ Իսհակին՝ ազգակից լինելու պատճառով չի [սպանի]։ Նա [Իսմայիլը] ասաց՝ ով Իսհակ, երեխաներիս քեզ եմ թողնում։ Իսհակը պատասխանեց նրան՝ կարծում՞ ես, որ կսպանվես, իսկ ես քեզանից հետո կմնա՞մ։ Ապա շուռ գալով Ջաֆարին ասաց՝ խնդրում եմ ինձ սպանիր նրանից առաջ, որպեսզի նրա սիրտը հանգստանա։ Եվ նա [Ջաֆարը] նախ սրան սպանել տվեց և ապա Իսմայիլին։

Երբ Մուտասիմը այս բանը լսեց, հրամայեց Իտախին հարձակվել Ջաֆարի վրա և կռվել նրա հետ։ Սա եկավ Մոսուլ [երկու հարյուր] քսանհինգ թվին և բարձրացավ Դասին լեռը և ճանապարհին անցավ Սուկ ալ-Ահագից (Կիրակնօրյա շուկա)։ Նրան հանդիպեց Ջաֆարը և նրանք սաստիկ կռվեցին։ Ջաֆարն սպանվեց, իսկ ընկերները ցրվեցին և այսպիսով վերջ գտավ մարդկանց պատճառած նրանց չարիքն ու վնասը։

Ասվում է, որ Ջաֆարը թույն խմեց, որն իր հետ ուներ, և մեռավ։ Իտախը ջարդեց քրդերին, շատերին կոտորեց, ունեցվածքը կողոպտեց, իսկ գերիներին, կանանց և ունեցվածքը հավաքեց, Տաքրիտ ուղարկեց։ Ասվում է, որ Իտախի հաղթանակը Ջաֆարի դեմ տեղի էր ունեցել [երկու հարյուր] քսանվեց թվին, սակայն ալլահն է միայն լավատեղյակ։

էջ 259

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մուհամմադ իբն Աբդալլահ ալ-Վարսանին ապստամբեց Վարդանակերտում (Վարսան), ապա հպատակություն հայտնեց և եկավ Մուտասիմի մոտ երաշխավորագիր խնդրելու՝ երկու հարյուր քսանհինգ թվականին։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(12 նոյեմբեր 839—30 հոկտեմբեր 840)

էջ 259

## ՄՈՒՏԱՍԻՄԻ ԶԱՅՐՈՒՅԹԸ ԱՖՇԻՆԻ ԴԵՄ ԵՎ ՆՐԱ ԲԱՆՏԱՐԿՈՒԹՅՈՒՆԸ

Այդ տարում Մուտասիմը զայրացավ Աֆշինի դեմ և բանտարկել տրվեց նրան։

Բանն այն էր, որ Աֆշինը Բաբեկի դեմ կռվի ժամանակ ինչ նվերներ որ ստանում էր Հայաստանի և Ատրպատականի ժողովրդից, ուղարկում էր

Աշրուսանա, իսկ նվերների [կարավանը] երբ անցնում էր Աբդալլահ իբն Թահիրի մոտով, վերջինս դրում էր Մուտասիմին տեղեկացնելով այդ մասին։ Մուտասիմը նախապես նրան գրել էր, որ իրեն տեղեկացնի ամեն ինչի մասին, որ ուղարկում էր Աֆշինը և Աբդալլահը կատարեց հրամանը։ Ամեն անգամ, որ Աֆշինի մոտ դրամ էր կուտակվում, նա իր մարդկանց գոտիների մեջ կապում էր և ուղարկում Աշրուսանա։

Մի անգամ նա շատ փող ուղարկեց իր մարդկանց հետ, որոնք հասան Նիշապուր (Նիսաբուր)։ Աբդալլահր մարդ ուղարկեց, ստուգել տվեց նրանց և դրամ գտան նրանց գոտիներում։ Ասաց՝ ձեզ որտեղից է այս դրամը։ Ասացին՝ Աֆշինինն է։ Նա ասաց՝ ստում եք, եթե իմ եղբայր Աֆշինը կամենար այսպիսի նվերներ ու դրամներ ուղարկել, [բացեիբաց] կգրեր ինձ ու կտեղեկացներ այդ մասին, դուք պարզապես գողեր եք։ Աբդալլահը վերցրեց դրամը և տվեց իր զինվորներին, իսկ Աֆշինին գրեց նրա մարդկանց ասածի մասին։ Նա ավելացրեց՝ ես չեմ հավատում, որ դու այդպիսի դրամներ ուղարկած լինես առանց ինձ տեղեկացնելու։ Ես այն բաժանեցի զինվորներին այն դրամի փոխարեն, որ հավատացելոց իշխանը ուղարկում է [այդ նպատակով]։ Եթե իրոք դա քո դրամն է, ինչպես նրանք ասում են, ապա հենց որ հավատացելոց իշխանից դրամը գա, այն ես քեզ կուղարկեմ, իսկ այլ դեպքում հավատացելոց իշխանի իրավունքն է այն ստանալ։ Ես այն վճարեցի իմ զինվորներին, քանզի ուզում եմ նրանց ուղարկել Թուրքաց երկիրը։

Աֆշինը գրեց՝ իմ և հավատացելոց իշխանի դրամները մեկ են ու խնդրեց, որ իր մարդկանց բաց թողնի և սա բաց թողեց։ Ահա այս էր թշնամության պատճառը երկուսի միջև, իսկ Աբդալլահը հետապնդում էր նրան։ Աֆշինը Մուտասիմից երբեմն լսում էր, որ ուզում է Աբդալլահին հեռացնել Խորասանից և ահա ինքը ցանկացավ այդ նահանգին տիրանալ։ Նա գրեց Մազիարին համոզելով ապստամբել [իշխանության դեմ], ենթադրելով, որ եթե նա ապստամբի, Մուտասիմը Աբդալլահին կհեռացնի Խորասանից և իրեն կնշանակի կառավարիչ, հանձնարարելով պայքարել Մազիարի դեմ։ Մենք արդեն տեսանք, թե ինչով վերջացավ Մազիարի գործը, ինչպես նաև Մանքիջուրի ապստամբությունը։

Մուտասիմը ստուգելով Աֆշինի գործը, զայրացավ նրա դեմ։ Աֆշինը զգաց այդ բանը և չգիտեր ինչ անել ու որոշեց իր պալատում մակույկներ պատրաստել և Մուտասիմի ու զորավարների զբաղված վիճակում հղած մի օր [Տիգրիսի վրայով] ընկնել Մոսուլի ճանապարհը, ապա անցնել Զաբ [գետը], այդ կողմերի վրայով անցնել Հայաստան, իսկ Հայաստանը նրա իշխանության տակ էր, ապա անցնել խազարաց երկիրը, շրջել Թուրքաց երկրում ու վերադառնալ Աշրուսանա և կամ խազարներին գրգռել

մահմեդականների դեմ։ Սակայն այդ բանը չկարողացավ անել և որոշեց մեծ ճաշկերույթ պատրաստել, հրավիրել Մուտասիմին ու զորավարներին, [ճաշի] մեջ թույն դնել և եթե նույնիսկ Մուտասիմը չգա զբաղված լինելու պատճառով, ապա կթունավորի զորավարներին՝ օրինակ՝ Իշնասին, Իտախին և ուրիշների։ Երբ նրանք դուրս կգան իր մոտից, ինքն էլ գիշերվա սկզբում կփախչի։ Նա սկսեց պատրաստվել այդ բանին, իսկ զորավարները [այդ ժամանակ] հերթով պահպանություն էին անում Մուտասիմի տանը, ինչպես (ընդհանրապես) անում են զորավարները։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

## (7 սեպտեմբեր 845—27 օգոստոս 846)

էջ 275

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում [գերիների] փոխանակում եղավ մահմեդականների և հռոմների միջև։ Մահմեդականները հավաքվեցին ալ-Լամիս գետի ափին Տարսոնից մեկ օրվա ճանապարհի վրա։ Վասիկը (խալիֆան) գնեց Բաղդադում և այլ վայրերում եղած հռոմներին։ Վասիկը Ահմադ իբն Սաիդ իբն Սալմ իբն Կուտայբա ալ-Բահիլիին Սահմանային գոտու և Ավասիմի կառավարիչ նշանակեց, հրամայելով նրան և Խական ալ-Խադիմին (ներքինի) ներկա լինել և ստուգել մահմեդական գերիներին։ Ով կասի Ղուրանը ստեղծված է[147] և ալլահը անտեսանելի է հանդերձյալում, փոխանակել նրան և տալ մեկ դինար, իսկ ով այդ բանը չի ասի, թողնել նրան հռոմների ձեռքում։

[Երկու հարյուր] երեսունմեկ թվականի Աշուրայի[148] օրը մահմեդականները իրենց հետ եղած գերիների հետ հավաքվեցին գետի ափին, եկան նաև հռոմները՝ իրենց հետ եղած գերիների հետ, և գետը ընկած էր երկուսի միջև։ Մահմեդականները բաց էին թողնում մի գերու, իսկ հռոմները նույնպես մի մահմեդական գերու էին բաց թողնում, որոնք գետի մեջտեղում իրար էին հանդիպում։ Եվ այսպես գալիս էին բոլորը և երբ գերին հասնում էր մահմեդականների մոտ, բոլորը գոռում էին՝ ալլահ աքբար (մեծ է ալլահը) և երբ [հռոմ] գերին հասնում էր հռոմների մոտ, սրանք էին գոռում, և այսպես մինչև վերջ։

Մահմեդական գերիների թիվը չորս հազար չորս հարյուր վաթսուն էր, կանայք ու երեխաները ութ հարյուր հոգի էին, իսկ մահմեդականնե-

*րի [իշխանության տակ գտնվող] ոչ մահմեդականները (զիմմա) հարյուր հոգի էին։*

*Գետը ծանծաղուտ ուներ, որտեղից էլ անցնում էին գերիները։ Ասվում է նաև, որ նրա վրա կամուրջ կար։*

*Երբ փոխանակումը ավարտեցին, Ահմադ իբն Սաիդ իբն Սալմ ալ-Բահիլին ձմեռային արշավանք կատարեց։ Մարդիկ ձյան և անձրևի տակ մնացին և երկու հարյուր մարդ մեռավ, նույնքան էլ գերի ընկավ, իսկ Պոդանտի (Բադանդուն) [գետի] մեջ շատերը խեղդվեցին։ Վասիկը զայրացավ Ահմադի վրա։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

## (28 օգոստոս 846—16 օգոստոս 847)

*էջ 278*

### ՄՈՒՏԱՎԱՔՔԻԼԻ ԽԱԼԻՖԱ ԴԱՌՆԱԼԸ

*Այդ տարում Մուտավաքքիլ ալ-ալլահ Ջաֆար իբն Մուտասիմին երդում (բայա)*[119] *տվեցին Վասիկի մահվանից հետո։*

*Բանն այսպես կատարվեց։ Երբ մեռավ Վասիկը, [խալիֆայական] տուն եկան Ահմադ իբն Աբու Դուադը, Իտախը, Վասիֆը, Օմար իբն Ֆարջը, Իբն Զայյատը և Աբու-լ-Վազիր Ահմադ իբն Խալիդը ու որոշեցին երդում տալ Մուհամմադ իբն ալ-Վասիկին, որն անմորուք կարճ տղա էր։ Նրան հագցրեցին սև շապիկ ու սաղավարտ և տեսան, որ կարճահասակ է։ Վասիֆն ասաց՝ ալլահից չեք վախենում, որ սրան խալիֆա եք հռչակում։ Նրանք վիճեցին, թե ո՞ւմ հռչակեն և շատերի անունները տվեցին։ Ապա բերել տվեցին Մուտավաքքիլին։ Երբ եկավ, Ահմադ իբն Աբի Դուադը հագցրեց նրան երկար [զբահը] և փաթթոց կապեց [գլխին] և աչքերի մեջտեղը համբուրեց, ասելով՝ ողջույն քեզ, ո՛վ իշխան հավատացելոց, և ալլահի գթությունն ու ողորմությունը քեզ։*

*Ապա լվացին Վասիկին, աղոթեցին նրա վրա ու թաղեցին։ Մուտավաքքիլի տարիքը [խալիֆա] հռչակման օրը քսանվեց էր։ Նա զինվորներին ութ ամսվա ռոճիկ վճարեց։ Երբ իբն Զայյատը կամեցավ նրան Մունտասիր (Հաղթանակող) պատվանունը տալ, Ահմադ իբն Աբու Դուադը ասաց՝ ես մի պատվանուն գտա, որը հարմար է՝ Մուտավաքքիլ ալալլահ (ալլահին ապավինող)։ Նա հրամայեց կնիք պատրաստել և այսպես էլ գրվեց (հայտնվեց) ամեն կողմ։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(5 օգոստոս 848—25 հուլիս 849)

*էջ 281—282*

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ԻԲՆ ԲԱՒՍԻ ՓԱԽՍՏՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մուհամմադ իբն ալ-Բաիս իբն ալ-Ջալիսը փախավ [բանտից]։*

*Փախուստի պատճառն այն էր, որ նա գերի էր ընկել Ատրպատականում և բերվել Սամառա։ Նա ուներ մի ծառա, որը կոչվում էր Խալիֆա։ Մուտավաքքիլ [խալիֆան] հիվանդ էր և Խալիֆա [կոչվածը] իբն ալ-Բաիսին հայտնեց, թե Մուտավաքքիլը մեռավ։ Սակայն վերջինս չէր մեռել, այլ [ծառան] ուզում էր իբն ալ-Բաիսին համոզել, որ փախչի և սա համաձայնություն տվեց փախչելու։ [Ծառան] ձիերը պատրաստեց և նրանք երկուսով փախան Ատրպատականում գտնվող մի վայր, որը կոչվում էր Մարանդ։ Ասվում է, որ նա ուներ Շահի և Յակդար ամրոցները։ Ասվում է նաև, որ Բաիսը Իսհակ իբն Իբրահիմ իբն Մուսաբի բանտում էր գտնվում։ Նրա համար բարեխոսել էր Բուղա ալ-Շարաբին, և նրան արձակել էին մոտավորապես երեսուն հոգուց երաշխիք վերցնելով, որոնցից էր Մուհամմադ իբն Խալիդ իբն Յազիդ իբն Մազիադ ալ-Շայբանին։ [Իբն ալ-Բաիսը] հաճախ այցելում էր Սամառա և այնտեղից էլ փախել էր Մարանդ և պարեն ամբարել։*

*Սա ամրացված քաղաք էր, ջրի աղբյուրներով, շատ պարտեզներով։ Նրա մոտ հավաքվեցին խռովության 'սիրահարներ' Ռաբիա և այլ ցեղերից։ Եվ այսպիսով նա ունեցավ երկու հազար երկու հարյուր մարդ։*

*[Այդ ժամանակ] Ատրպատականի կառավարիչն էր Մուհամմադ իբն Հատիմ իբն Հարսաման, որը բավարար չափով չհետապնդեց նրան, և Մուտավաքքիլը Ատրպատականի կառավարիչ նշանակեց Համդաուայհ իբն Ալի իբն ալ-Ֆադլ ալ-Սաադին, որին ուղարկեց փոստի [ձիերով]։ Սա զորք հավաքեց և գնաց իբն ալ-Բաիսի դեմ ու պաշարեց նրան Մարանդում։ Երբ պաշարումը երկարեց, Մուտավաքքիլն ուղարկեց Զիրաք ալ-Տուրքիին երկու հարյուր թուրք ձիավորներով, սակայն ոչինչ չկարողացավ անել։ Մուտավաքքիլն ուղարկեց Օմար իբն Սիսիլ իբն Քալին՝ ինը հարյուր ձիավորներով, սակայն ոչ մի օգուտ չտվեց։ Այն ժամանակ նա ուղարկեց Բուղա ալ-Շարաբիին՝ երկու հազար ձիավորներով։*

*Համդաուայհը, իբն Սիսիլը և Զիրաքը Մարանդի շուրջը հարյուր հազար ծառ էին կտրել և քսան քարանետ մեքենա էին զետեղել։ Իբն Բաիսը ևս դրեց նույնքան [քարանետներ] և նրանք չկարողացան մոտե-*

նալ պարսպին։ Ութ ամսվա պատերազմի ընթացքում Մուտավաքքիլի զորքից մոտավորապես հարյուր մարդ սպանվեց և չորս հարյուր՝ վիրավորվեց։ Նույնքան մարդ էլ տուժեց նրա (իբն ալ-Բաիսի) զորքից։

Համդաուայհը, Օմարը և Ջիրաքը կռվում էին նրա դեմ առավոտյան և երեկոյան, իսկ նրա մարդիկ, նիզակները ձեռքներին, պարաններով կախվում էին պարսպից և կռվի բռնվում նրանց հետ։ Երբ խալիֆայի զորքը հարձակվում էր, ապաստանում էին պարսպի ներսում ու պաշտպանվում։ Երբեմն նրանք բացում էին դարպասները, կռվում և ապա վերադառնում։

Երբ Բուղա ալ-Շարաբին մոտեցավ Մարանդին, Իսա իբն ալ-Շայխ իբն ալ-Սալիլին ուղարկեց՝ տալով երաշխավորագիր (աման) իբն ալ-Բաիսի զորքի համար, եթե իջնեն բերդից, և [առանձին] երաշխավորագիր նաև իբն ալ-Բաիսին, եթե նա իջնի ըստ Մուտավաքքիլի պայմանների։ Նրա մարդկանցից շատերը իջան ըստ երաշխավորագրի և ապա բացեցին քաղաքի դուռը, և Մուտավաքքիլի զորքը մտավ։ Իբն ալ-Բաիսը փախավ, սակայն զորքի մի մասը հասավ նրա հետևից և գերի բռնեց նրան։ Զինվորները կողոպտեցին նրա և մերձավորների տները, ինչպես նաև քաղաքի որոշ բնակիչների տները։ Ապա ընդհանուր երաշխիք (աման) տրվեց։ Գերի տարան իբն ալ-Բաիսի երկու քույրերին, երեք դուստրերին և բազմաթիվ աղախիններին։ Ապա մյուս օրը հասավ Բուղա ալ-Շարաբին և մունետիկի միջոցով արգելեց կողոպուտը։ Նա գրեց (խալիֆային) իր հաղթանակի մասին և իբն ալ-Բաիսին իր հետ տարավ նրա մոտ։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(26 հուլիս 849—14 հուլիս 850)

Էջ 284

### ՄՈՒՏԱՎԱՔՔԻԼԻ ՈՐԴԻՆԵՐԻՆ ԳԱՀԱԺԱՌԱՆԳ ՀՌՉԱԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մուտավաքքիլն իր երեք որդիներին գահաժառանգ հռչակեց։ Դրանք էին՝ Մուհամմադը, որին տվեց ալ-Մունտասիր Բիլլահ պատվանունը, Աբու Աբդալլահ Մուհամմադը և նրան տվեց ալ-Մուտազզ Բիլլահ պատվանունը և Իբրահիմը, որին տվեց ալ-Մուայյիդ Բիլլահ պատվանունը։ Նրանցից ամեն մեկին տվեց երկուական դրոշ՝ մեկը սև, որը գահաժառանգման (երդման) դրոշն էր, իսկ մյուսը՝ սպիտակ, որն աշխատանքի դրոշն էր։ Նրանցից ամեն մեկին տվեց հետևյալ [նահանգները]․

Մունտասիրին պարգևեց Աֆրիկա նահանգը (Իֆրիկիա) և ամբողջ

Մաղրիբը, Ավասիմը, Կիննասրինը, ամբողջ Սահմանային գոտին՝ Ասորիքի և Ջազիրայի մասերով, Դիար Մուզարը, Դիար Ռաբիան, Մոսուլը, Հիտը, Անան, Անբարը, Խաբուրը. Բաջուրմի շրջանները, Տիգրիսի շրջանները, Սավադի բոլոր գավառները, երկու սրբավայրերը[150], Եմենը, Հադրամաուտը, Յամաման, Բահրայնը, Սինդը, Մուքրանը, Կանդաբիլը, Ֆարաջ Բայթ ալ-Ջահաբը, Ահուազի շրջանները, Սամառայի բերքերը, Մահ ալ-Քուֆան, Մահ ալ-Բասրան, Մահ Սուրագանը, Միհրաջան Կողակը, Շահրզուրը, Սամղանը, Իսբահանը, Կումը, Կաշանը, ամբողջ Ջիբալը և Բասրայի արաբների հարկերը (սադակա)։

Մուտազզին պարգևեց Խորասանը իր հարակից մասերով, Թաբարիստանը, Ռեյը (Ռայ), Հայաստանը, Ատրպատականը, Պարսից (Ֆարիս) շրջանը, ապա ավելացրեց [երկու հարյուր] քառասուն թվին (854/855) բոլոր [հիշյալ] նահանգների դրամների հավաքումը և բոլոր փողերանոցների (դար ալ-Դարբ) հսկողությունը և հրամայեց, որ իր անունը դնի դիրհեմների վրա։

Իսկ Մուայյիդին պարգևեց Եմեսայի (Հիմս), Դամասկոսի (Դիմաշկ) և Պաղեստինի (Ֆիլասթին) ջունդերը[151]։

Էջ 285

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մուտավաքքիլը զիմմայի ժողովրդին (ոչ մահմեդականներին) հրամայեց կրել մեղրագույն պատմուճաններ (թայլասան), կապել զուննար [կոչված] գոտիներ և նստել թամբին փայտե ասպանդակներով, թամբի ետևում երկու գունդ կապել, իրենց ստրուկների (մամլուք) հագուստների վրա դրանց գույնից տարբեր գույնով երկու շերտ դնել չորս մատ մեծությամբ և իրարից տարբեր գույնով։ Նրանց կանայք դուրս գալուց պետք է կրեին մեղրագույն քող։ Նա արգելեց նրանց հանդիսավոր գոտիներ կապել։ Հրամայեց քանդել նորակառույց եկեղեցիները և տասանորդ (ուշր) վերցրեց նրանց տներից։ Նրանց տների դռների վրա պետք է սատանայի փայտե պատկերներ լինեին։ Արգելեց նրանց պետական (արքունի) պաշտոններ ստանալ և մահմեդականը չէր կարող նրանց ուսուցանել։ Արգելեց նրանց ծաղկազարդին խաչ ցուցադրել և կամ ճանապարհներում [խաչ] դնել։ Նա հրամայեց նրանց գերեզմանները հողին հավասարեցնել։ Այս բոլորի մասին նա գրավոր հայտնեց ամեն կողմ։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

## (15 հուլիս 850—4 հուլիս 851)

*էջ 288*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում հանկարծակի մեռավ Աբու Սաիդ Մուհամմադ իբն Յուսուֆ ալ-Մարուազին, որին տրված էր Հայաստանի և Ատրպատականի կառավարչությունը։ Նա մի կոշիկը հագել էր և [ոտքը] մեկնել էր մյուսը հագնելու, բայց հենց այդ պահին մահացել էր։ Մուտավաքքիլը նրա որդուն հանձնարարեց հոր վարած պատերազմը ղեկավարելու և իրավունք տվեց նահանգի հարկերը հավաքելու։ Նա գնաց և երկիրը զսպեց։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

## (5 հուլիս 851—22 հունիս 852)

*էջ 288—289*

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԻ՝ ԻՐԵՆՑ ԿԱՌԱՎԱՐՉԻ ԴԵՄ ԱՊՍՏԱՄԲԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Հայաստանի ժողովուրդը ապստամբեց իր կառավարիչ Յուսուֆ իբն Մուհամմադի դեմ և սպանեց նրան։*

*Բանն այն էր, որ Յուսուֆը երբ գնաց Հայաստան, նրան դիմավորեց մի պատրիկ, որի անունն էր Բագարատ որդի Աշոտի (Բակրաթ իբն Աշութ)[152] և կոչվում էր պատրիկների պատրիկ (բաթրիկ ալ-բաթարիկա)։ Սա նրանից երաշխավորագիր (աման) խնդրեց[153]։ Յուսուֆը նրան և որդուն[154] ձերբակալեց և ուղարկեց խալիֆայի դուռը։ Հայաստանի պատրիկները հավաքվեցին Աշոտի որդի Բագարատի եղբորորդու[155] մոտ և երդվեցին սպանել Յուսուֆին։ Նրանց հետ համաձայնեց նաև Մուսա իբն Զուրարան[156], որը Բագարատի փեսան էր աղջկա կողմից։ Լուրը հասավ Յուսուֆին, որին մերձավորները զգուշացրին, որ այնտեղ չմնա, սակայն նա չլսեց նրանց։*

*Երբ ձմեռը վրա հասավ, իջավ ձյունը, նրանք (հայերը) սպասեցին, մինչև որ ձյունը նստի։ Ապա եկան նրա մոտ Տարոն (Թաբուն)[157] քաղաքը և պաշարեցին նրան։ Նա դուրս եկավ քաղաքից, կռվեց նրանց հետ, սակայն նրանք սպանեցին նրան ու նրա զինակիցներին։ Իսկ ովքեր չէին կռվում նրա հետ, ասացին նրանց՝ հագուստներդ հանեցեք և մերկ փրկվեցեք։ Այդպես էլ արեցին և բոկոտն, մերկ գնացին. մեծ մասը ցրտից մե-*

ռավ և շատերի մատները պոկվեցին և [այսպես]փրկվեցին։ Այս բոլորը կատարվեց Ռամադան (26 փետրվար—26 մարտ) [ամսին]։

Դրանից առաջ Յուսուֆն իր մարդկանց բաժանել էր ըստ իր նահանգի շրջանների (ռուստակ) և ամեն մի ջոկատի դեմ ուղարկվեց պատրիկների մի խումբ, որոնք մեկ օրում կոտորեցին նրանց։

Երբ Մուտավաքքիլը լսեց այս բանը, նրանց դեմ ուղարկեց Բուղա ալ-Քաբիրին (Ավագ Բուղային)՝ Յուսուֆի արյան վրեժը լուծելու։ Նա գնաց Մոսուլի ու Ջազիրայի վրայով և սկսեց [իր գործունեությունը] Արզնում, ուր Մուսա իբն Զուրարան էր, որի եղբայրներն էին Իսմայիլը, Սուլայմանը, Ահմադը, Իսան, Մուհամմադը և Հարունը։ Բուղան Մուսա իբն Զուրարային ուղարկեց Մուտավաքքիլի մոտ։ Ապա նա հարձակվեց Յուսուֆին սպանողների վրա և կոտորեց մոտավորապես երեսուն հազար մարդ և մեծ թվով մարդկանց գերեվարեց ու վաճառեց։ Նա գնաց Աղբակ (ալ-Բակ)[158] երկիրը, գերեվարեց Աշութ (Աշոտ)[159] իբն Համզա (Համազասպ) Աբուլ-Աբբասին՝ Աղբակի տիրոջը, իսկ Աղբակը Վասպուրականի (Բուսֆուռաջան) գավառներից էր։ Ապա գնաց Դվին (Դաբիլ) քաղաքը Հայաստանում, մնաց մեկ ամիս, հետո գնաց Տփղիս (Տաֆլիս) ու պաշարեց այն։

էջ 291

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում ամառային արշավանք կատարեց Ալի իբն Յահիա ալ-Արմանին։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(23 հունիս 852—11 հունիս 853)

էջ 291—292

## ԲՈՒՂԱՅԻ՝ ՏՓՂԻՍՈՒՄ ԿԱՏԱՐԱԾՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հիշեցինք Բուղայի գնալը Տփղիս և պաշարելը։ Երբ Բուղան այնտեղ գնաց, ուղարկեց Զիրաք ալ-Տուրքիին, որը Կուր գետը անցավ։ Սա մեծ գետ էր, որի [արևմտյան] ափին էր Տփղիս քաղաքը, իսկ Սուղդաբիլը նրա արևելյան կողմում էր։ Երբ նա անցավ գետը, կանգնեց Տփղիսի հրապարակում (մայդան)։ Բուղան ուղարկեց նաև քրիստոնյա Աբու-լ-Աբբաս

ալ-Վարիսիին[160] Հայաստանի ժողովրդին՝ նրա արաբներին և օտարներին[161] (աջամ)։ [Ջիրաքը] եկավ Տփղիս Բաբ ալ-Ռաբադի[162] կողմից։ Իսհակ իբն Իսմայիլը՝ Օմայանների մաուլան, Տփղիսից դուրս եկավ Ջիրաքի դեմ և հանդիպեց նրան հրապարակի մոտ։ Բուղան կանգնած էր մի բարձր բլրի վրա և դիտում էր Ջիրաքի և Աբու-լ-Աբբասի գործողությունները։ Բուղան կանչեց նավթաձիգներին, որոնք կրակի տվեցին քաղաքը, հրկիզեցին այն, քանզի կառուցված էր սոճու փայտից։ Իսհակ իբն Իսմայիլը եկավ քաղաք և տեսավ, որ կրակը վառել էր իր պալատը և շրջապատել հարճերին։ Եկան թուրքերը և մաղրիբցիները[163] և գերի վերցրին նրան ու որդուն՝ Օմարին և երկուսին էլ բերեցին Բուղայի մոտ։ Նա հրամայեց Իսհակի վիզը կտրել, իսկ մարմինը խաչ հանել Կուր գետի վրա։ Սա մի գեր ծերունի էր խոշոր գլխով, շիլ աչքերով։ Քաղաքում վառվեց մոտավորապես հիսուն հազար մարդ, իսկ ով կրակից ազատվեց, գերի տարվեց և մեռյալներն էլ կողոպտվեցին։ Տարան նաև Իսհակի ընտանիքը և նրա հրդեհից հետո մնացած ամբողջ ունեցվածքը Սուղդաբիլում։ Սա մի ամրացված քաղաք էր Տփղիսի դիմացը, որը կառուցել էր Խոսրով (Քիսրա) Անուշիրուանը, իսկ Իսհակը ամրացրել էր այն և այնտեղ պահել իր ունեցվածքը, ինչպես և կնոջը՝ Սաբիրի տիրոջ դստերը[164]։

Ապա Բուղան իր զորքի մի մասի հետ Ջիրաքին ուղարկեց Գարդման (Ջարդաման), որը Պարտավի (Բարդաա) և Տփղիսի մեջտեղ էր գտնվում։ Սա գրավեց այն և նրա պատրիկին[165] գերի վերցրեց։ Ապա Բուղան գնաց Իսա իբն Յուսուֆի դեմ, որը Քւոիշ (Քատիշ)[166] ամրոցում էր Բայլականի գավառում։ Նա գրավեց այն և նրան գերի բռնելով տարավ։ Նրա հետ տարավ նաև Աբու-լ-Աբբաս ալ-Վարիսիին, որի անունն էր Սմբատ որդի Աշոտի (Սինբաթ իբն Աշութ)[167], ինչպես նաև Սմբատի որդի Սահլի որդի Մուավիային (Մուավիա իբն Սահլ իբն Սինբաթ)[168]՝ Առանի պատրիկին։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ

(12 հունիս 853—1 հունիս 854)

էջ 293

Այդ տարում Մուտավաքքիլ [խալիֆան] հրամայեց զիմմի ժողովրդին (ոչ մահմեդականներին) հագնել կրկնակի դեղին շապիկ՝ որպես պատմուճան և հեծնել միմիայն ջորի ու ավանակ, բայց ոչ ձի կամ նըժույգ։

Այդ տարում ամառային արշավանք կատարեց Ալի իբն Յահիա ալ-Արմանին[169]։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

### (22 մայիս 855—9 մայիս 856)

*էջ 295*

### ԳԵՐԻՆԵՐԻ ՓՈԽԱՆԱԿՈՒՄԸ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ԵՎ ՀՈՌՈՄՆԵՐԻ ՄԻՋԵՎ

*Այդ տարում մահմեդական. և հոռոմ գերիների փոխանակում եղավ այն բանից հետո, երբ Ռումի թագուհի Թեոդորան (Տուդուրա)[170] տասներկու հազար հոգի սպանել էր տվել մահմեդական գերիներից։ Նա առաջարկեց նրանց քրիստոնեությունն ընդունել, և ով ընդունեց, նրան համարեց, որ փոխարինում է սպանված քրիստոնյաներին, իսկ ով մերժեց՝ սպանվեց։ Մնացածների համար նա լուր ուղարկեց փոխանակում առաջարկելով։*

*Մուտավաքքիլը Շանիֆ (Շունայֆ) խադիմին (ներքինի)[171] ուղարկեց փոխանակման համար և պահանջեց դատավորաց դատավոր Ջաֆար իբն Աբդ ալ-Վահիդին, որ ներկա լինի փոխանակման [արարողությանը], իր փոխարեն մեկին թողնելով որպես դատավոր։ Նա թույլտվություն ստացավ և իր փոխարեն դատավոր նշանակեց Իբն Աբու-լ-Շավարիբին, որը երիտասարդ էր։ Փոխանակումը տեղի ունեցավ Լամիս գետի մոտ։ Մահմեդական գերիներն էին յոթ հարյուր ութսունհինգ տղամարդ և հարյուր քսանհինգ կին։*

*Այդ տարում Մուտավաքքիլը ամբողջ Շիշմաթ[172] գավառը դարձրեց ուշրիյյա[173] (տասանորդական), իսկ մինչ այդ խարաջիյյա (խարաջային) էր։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

### (10 մայիս 856—29 ապրիլ 857)

*էջ 297*

*Այդ տարում հոռոմները հարձակվեցին Սամոսատի (Սումայսաթ) կողմերը՝ Ալի իբն Յահիա ալ-Արմանիի ամառային արշավանքից հետո, և մոտեցան Ամիդին։ Նրանք դուրս եկան Ջազիրայի Սահմանային գոտուց (սուղուր), կողոպտեցին, գերեցին մոտավորապես տաս հազարի։ Նրանք մտան Աբրիկի (Արինի)[174] Կարբեասի (Կարիբաս)[175] գյուղի կողմից, ապա վերադարձան։ Նրանց հետապնդեցին Կարբեասը, Օմար իբն Աբդալլահ ալ-Ակթան և կամավորների մի խումբ, սակայն չհասան։ Մուտավաքքիլը գրեց Ալի իբն Յահիա ալ-Արմանիին, որ նրանց դեմ ձմեռային հարձակում կատարի։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(8 ապրիլ 859—27 մարտ 860)

*էջ 298—299*

*Այդ տարում Մաղրիբի երկրում երկրաշարժ եղավ, կործանվեցին բերդեր, տներ, կամուրջներ։ Մուտավաքքիլը երեք միլիոն դիրհեմ բաժանեց անտուն մնացածներին։*

*Երկրաշարժ եղավ Մահդիի ճամբարում (Ասքար ալ-Մահդի, Բաղդադի Ռուսաֆա), Մադաինում (Տիզբոն), ինչպես նաև Անտիոքում և շատ մարդ մեռավ, ու քանդվեց հազար հինգ հարյուր տուն, իսկ [քաղաքի] աշտարակներից իննսունից ավելին քանդվեց։ Ահռելի և աննկարագրելի ձայներ լսվեցին։ Քաղաքի մոտ եղած Ակրա (լերկ) լեռը պատռվեց և ընկավ ծովը։ Այդ օրը ծովը ալեկոծվեց և սև թանձր կեղտոտ ծուխ բարձրացավ, որի հետևանքով մի գետ մեկ փարսախ հեռավորության վրա ցրվեց, և չիմացան թե ուր։ Տիննիսի[1]⁶ ժողովուրդը, ինչպես ասվում է, հսկայական, երկարատև դղրդյուն լսեց, որից շատերը մեռան։ Երկրաշարժ եղավ Ջազիրայում, Սահմանային գոտում, Տարսոնում, Ադանայում, ինչպես նաև Ասորիքում։ Լաոդիկեի (Լադակիա) ժողովրդից միայն քչերը փրկվեցին։*

*Այդ տարում հոռոմները հարձակվեցին Սամոսատի (Սումայսաթ) վրա, կոտորեցին, գերեվարեցին [ժողովրդին] և մեծ թվով գերեցին [զինվորներին]։*

*Նույն տարում Ալի իբն Յահիա ալ-Արմանին ամառային արշավանք կատարեց։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(28 մարտ 860—16 մարտ 861)

*էջ 300*

*Այդ տարում Ամրու (Օմար) իբն Աբդալլահ ալ-Ակթան ամառային հարձակում կատարեց [Ռումի երկիրը]։ Նա տասնյոթ հազար գլուխ [անասուն] տարավ։ Արշավեց Կարբեասը (Կարիբաս) և տարավ հինգ հազար գլուխ [անասուն]։ Արշավեց նաև Ֆադլ իբն Կարինը, մոտավորապես քսան նավով և նվաճեց Անտիոքի բերդը։ Բալքաջուրը արշավեց, ավարի տվեց և գերեվարեց։ Արշավեց Ալի իբն Յահիա ալ-Արմանին և տարավ հինգ հազար գլուխ [ոչխար], իսկ ձիեր, ուղտեր և ավանակներ՝ մոտավորապես տաս հազար գլուխ։*

*Այդ տարում Մուտավաքքիլը տեղափոխվեց Ջաֆարիյա։*

*Այդ տարում գերիների փոխանակություն եղավ Սաֆար ամսին (27 ապրիլ—25 մայիս) Ալի իբն Յահիա ալ-Արմանիի ձեռքով։ Փոխանակվեցին երկու հազար երեք հարյուր վաթսունյոթ հոգի։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

## (7 մարտ 862—23 փետրվար 863)

*էջ 312*

*Այդ տարում Ալի իբն Յահիա ալ-Արմանին հանվեց Ասորիքի Սահմանային գոտուց և Ռամադան ամսին (29 հոկտեմբեր—27 նոյեմբեր) նշանակվեց Հայաստանի և Ատրպատականի կառավարիչ։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ

## (24 փետրվար 863—13 փետրվար 864)

*էջ 312—313*

## ՀՌՈՄՆԵՐԻ ԱՐՇԱՎԱՆՔԻ ԵՎ ԱԼԻ ԻԲՆ ՅԱՀԻԱ ԱԼ-ԱՐՄԱՆԻԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ջաֆար իբն Դինարը ամառային արշավանք կատարեց, գրավեց մի բերդ և ցորենի շտեմարաններ (մաթամիր)։ Օմար իբն Ուբայդալլահ ալ-Ակթան հրաման խնդրեց Ռումի երկիրը արշավելու։ [Ջաֆարը] թույլ տվեց և նա Մալաթիայի մարդկանցից բաղկացած մեծ զորքով գնաց։ Նրա դեմ դուրս եկավ Ռումի թագավորը՝ մեծ զորքով, Մարջ ալ-Ուսկուֆ վայրում։ Սաստիկ պատերազմ եղավ, որի ընթացքում երկու կողմից շատերն սպանվեցին։ Ապա նրան շրջապատեցին հռոմները, որոնք հիսուն հազար էին։ Սպանվեց Օմարը և նրա հետ եղածներից երկու հազար մահմեդական, Ռաջաբ ամսի (20 օգոստոս—18 սեպտեմբեր) կեսին։*

*Երբ Օմար իբն Ուբայդալլահը սպանվեց, հռոմները դուրս եկան Ջազիրայի սահմանային գոտի, ձեռք մեկնեցին մահմեդականների ունեցվածքին ու կանանց։ Այս բանը լսեց Ալի իբն Յահիան, որը Հայաստանից գալիս էր Նփրկերտ (Մայաֆարիկին), նրա և Սալսալայի[177] բնակիչների մի խմբի հետ։ Նա հարձակվեց, սակայն պարտվեց և մոտավորապես չորս հարյուր հոգու հետ սպանվեց Ռամադան ամսին (18 հոկտեմբեր—16 նոյեմբեր)։*

էջ 313

## ԽՌՈՎՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՂԴԱԴՈՒՄ

*Այդ տարում զինվորներր և վարձկանները Բաղդադում խռովություն բարձրացրին։*

*Բանն այն է, որ այստեղ և Սամառայում ու նրա մերձակայքում հասավ Օմար իբն Աբդալլահի (ալ-Ակթա) և Ալի իբն Յահիայի (ալ-Արմանի) սպանության լուրր, որոնք իսլամի քաջերից ու կռովի զորականներից էին և Սահմանային գոտում (սուղուր) կարևոր դեր էին կատարել մահմեդականների (հոռոմների դեմ) մղած պայքարում։ Ծանր էր այն, որ սրանք մեկր մյուսի ետևից էին սպանվել և մանավանդ մարդիկ դեռ չէին մոռացել Թուրքերի (ռազմիկների) Մուտավաքքիլ խալիֆային սպանելը, մահմեդական պետության գործերին միջամտելը։ Վերջիններս սպանում էին խալիֆաներին և իրենց ուզածին դարձնում խալիֆա, առանց հարգելու ո՛չ կրոնր, ո՛չ էլ մահմեդականներին։*

*Բազմությունը հավաքվեց Բաղդադում գոռոցներով ու չեփորներով և նրան միացան աբնա (արաբի ու պարսիկի խառնուրդ) կոչվածները, վարձկաններր, որոնք ռոճիկ էին պահանջում։ Սա տեղի ունեցավ Սաֆար ամսին (26 մարտ—25 ապրիլ)։ Նրանք բանտերի դռները բացեցին, բանտարկյալներին ազատեցին, երկու կամուրջներից մեկը վառեցին, իսկ մյուսը ջարդեցին։ Նրանք կողոպտեցին (քրիստոնյա) Հարունի Բիշր և Իբրահիմ որդիների տունր, որոնք Մուհամմադ իբն Աբդալլահի քարտուղարներն էին։ Ապա Բաղդադի ու Սամառայի հարուստները շատ դրամ տրամադրեցին և բաժանեցին այնպիսիներին, որոնք կռվի էին գնում Սահմանային գոտի։ Եկան մարդիկ Ջիբալից, Ֆարսից և այլ վայրերից հոռոմների դեմ կռվի գնալու, թեև խալիֆան ո՛չ հրաման էր տվել, ո՛չ զորք ուղարկել։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ
(2 փետրվար 865—21 հունվար 866)

էջ 329

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Հայաստանում երկու մարդ երևան եկան (ապստամբեցին), որոնց դեմ կռվեց Ալա իբն Ահմադը՝ Բուղա ալ-Շարաբիի նշանակած կառավարիչը (պաշտոնյան)։ Սա հաղթեց նրանց և նրանք բարձրացան մի ամրոց նույն տեղում։ Նա պաշարեց, քարանետ մեքենաներ դրեց ու փախուստի մատնեց նրանց։ Նրանք թաքնվեցին, իսկ բերդը գրավվեց։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

**(22 հունվար 866—10 հունվար 867)**

*էջ 333*

### ՄՈՒԱՅՅԻԴԻ ՇՆՈՐՀԱԶՈՒՐԿ ԼԻՆԵԼԸ ԵՎ ՄԱՀԸ

*Այդ տարվա Ռաջաբ ամսին Մուտազզ [խալիֆան] իր եղբորը Մուայյիդին, իրենից հետո գահը ժառանգելու [իրավունքից] զրկեց։*

*Բանն այն է, որ Հայաստանի կառավարիչ (ամիլ) ալ-Ալա իբն Ահմադը Մուայյիդին ուղարկել էր հինգ հազար դինար, որպեսզի իր գործերը կարգի բերի, և սա ուղարկեց Իսա իբն Ֆարխանշահին և վերցրեց [գումարը]։ Մուայյիդը Թուրքերին գրդեց Իսայի դեմ, իսկ մաղրիբցիները հակառակվեցին։ Մուտազզը Մուայյիդի և Աբու Ահմադի մոտ մարդ ուղարկեց և ձերբակալեց ու բանտարկեց երկուսին։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

**(9 դեկտեմբեր 869—28 նոյեմբեր 870)**

*էջ 359*

### ԻՍԱ ԻԲՆ ԱԼ-ՇԱՅԽԻ ԱՍՈՐԻՔԻՑ ՀԱՆՎԵԼԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ ՆՇԱՆԱԿՎԵԼԸ

*Երբ Իբն ալ-Շայխը գրավեց Դամասկոսը և այլևս հարկերը չուղարկեց Բաղդադ, այնպես պատահեց, որ Իբն ալ-Մուդաբբիրը մոտավորապես յոթ հարյուր հազար դինար Եգիպտոսից ուղարկեց Բաղդադ, սակայն Իսա իբն ալ-Շայխը ճանապարհին վերցրեց այն։ Բաղդադից նրա մոտ ուղարկվեց ծառա (խադիմ, ներքինի) Հուսայնը՝ դրամը պահանջելու։ Սա պատասխանեց, որ ծախսել է զինվորների վրա։ Հուսայնը նրան հրովարտակ տվեց Հայաստանի կառավարիչ դառնալու համար, միայն թե խալիֆա ճանաչեր Մուտամիդին, իսկ նա [նախապես] այդ բանից հրաժարվել էր։ Նա վերցրեց հրովարտակը ու ճանաչեց Մուտամիդին և սև հագավ, հուսալով, որ Ասորիքը կմնա իր ձեռքում։*

*Մուտամիդը ուղարկեց Ամաջուրին և նշանակեց Դամասկոսի ու շրջակա նահանգների կառավարիչ։ Սա եկավ մոտավորապես հազար հոգով և երբ մոտեցավ, Իսան նրա դեմ ուղարկեց իր որդուն՝ Մանսուրին, քսան հազար զինվորներով։ Երբ իրար բախվեցին, Մանսուրի զորքը պարտվեց, իսկ Մանսուրն սպանվեց։ Իսան թուլացավ ու գնաց Հայաստան՝ ծովափի ճանապարհով, իսկ Ամաջուրը Դամասկոսի կառավարիչ դարձավ։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ

## (7 նոյեմբեր 872—26 հոկտեմբեր 873)

*էջ 370*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում բախվեցին Մուհամմադ իբն ալ-Ֆադլ իբն Բայանը և Վահսուդան իբն Ջաստան ալ-Դայլամին և պարտվեց Վահսուդանը։*

*Այդ տարում հոռոմները հարձակվեցին Սամոսատի վրա, ապա իջան Մալաթիա, որի բնակիչները կռվեցին նրանց դեմ։ Հոռոմները պարտվեցին և սպանվեց պատրիկների պատրիկը։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

## (6 հոկտեմբեր 873—23 սեպտեմբեր 874)

*էջ 371*

### ՄՈՍՈՒԼՈՒՄ ԾԱԳԱԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՉԻ ՀԵՌԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Մուտամիդ ալալլահ խալիֆան Մոսուլի կառավարիչ էր նշանակել Ասատիքինին, որը թուրքերի մեծ զորավարներից էր։ Սա իր որդուն՝ Ադքուտիքինին երկու հարյուր հիսունինը թվականին Ջումադա Ա ամսին (5 մարտ—3 ապրիլ 873) այնտեղ ուղարկեց։ Երբ այդ տարվա Նիրուզ (նով-րուզ) օրը հասավ, որը Նիսան (ապրիլ) ամսի տասներեքն է, նա Ադքուտիքինին և Մոսուլի մեծամեծներին հրավիրեց հրապարակի վրա մի դմբեթավոր շենք և բերել տվեց հաճույքի միջոցներ, առատ գինի և բացահայտ կերպով խմեց, իսկ նրա ընկերակիցները բացեիբաց անառակություն էին անում և մարդկանց նկատմամբ վատ վերաբերվում։*

*Այդ տարում խիստ ցուրտ էր, որից փչացան ծառերը, պտուղները, ցորենը և գարին, իսկ նա փչացած բերքի հողահարկն (խարաջ) էր պահանջում։ Սա շատ վայրացրեց մարդկանց։ Հենց որ լսում էր, թե մեկի մոտ ընտիր նժույգ կա, խլում էր։ Մոսուլի բնակիչները համբերում էին, մինչև որ մի օր նրա մերձավորներից մեկը հարձակվեց մի կնոջ վրա ու բռնեց փողոցում, իսկ [կինը] պաշտպանվեց և օգնություն խնդրեց։ Իդրիս ալ-Հիմիարի անունով մի անձնավորություն, որը Ղուրանի գիտակ էր, բարեպաշտ, հասավ և ազատեց կնոջը նրա ձեռքից։ Զինվորը գնաց Ադքուտիքինի մոտ և բողոքեց այդ մարդուց։ Սա առանց գործն ստուգելու, բերել տվեց ու խիստ գանակոծության ենթարկեց նրան։*

*Մոսուլի մեծամեծները հավաքվեցին մայր մզկիթում և ասացին՝ համբերեցինք ունեցվածքը հափշտակելուն, հայհոյանքին, ավանդու-*

թյունները ոտնահարելուն, բռնությանը, սակայն գործը հասավ պատիվը անարգելուն։ Նրանք որոշեցին հեռացնել նրան և խալիֆային բողոքել։ Իսկ նա լսեց այդ մասին և իր զինվորներով ու նավթաձիգներով հարձակվեց։ Սաստիկ կռիվ եղավ, մինչև որ նրան դուրս բերեցին Մոսուլից և տունը ավարի տվին։ Մի քար կպավ նրան և վիրավորեց։ Այդ օրվանից նա գնաց իր քաղաքը, իսկ այնտեղից էլ Սամառա։ Մարդիկ հավաքվեցին Յահիա իբն Սուլայմանի մոտ և իշխանությունը նրան հանձնեցին։ Այդպես էլ եղավ և նա մնաց մինչև [երկու հարյուր] վաթսուն թվականի վերջը։

ՀԱՏՈՐ ՎԵՑԵՐՈՐԴ

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(16 հոկտեմբեր 874—5 հոկտեմբեր 875)

էջ 3

Այդ տարում՝ Շավալ ամսին, Մուտամիդը[178] նստեց հասարակաց տանը (դար ալ-ամմա) և իր որդուն՝ Ջաֆարին, գահաժառանգ հռչակեց, շնորհելով ալ-Մուֆավվադ իլալլահ պատվանունը և նրան [օգնական] տալով Մուսա իբն Բուղային։ Նրան կուսակալ նշանակեց [հետևյալ նահանգներում]՝ Աֆրիկա (Իֆրիկիա), Եգիպտոս (Միսր), Ասորիք (Շամ), Ջազիրա, Մոսուլ (Մաուսիլ), Հայաստան, Խորասանի ճանապարհը և Միհրաջանկոդակ։ Իր եղբորը՝ Աբու Ահմադին, փոխանորդ նշանակեց Ջաֆարին, նրան տալով ալ-Նասիր լիդին Իլլահ ալ-Մուվաֆֆակ պատվանունը, և նշանակելով կուսակալ [հետևյալ նահանգներին]՝ Արևելյան կողմեր (Մաշրիկ), Բաղդադ, Սավադ, Քուֆա, Մեքքայի ճանապարհը, Մադինա, Եմեն (Յաման), Քասքար, Տիգրիսի գավառները (Քուր Դիջլա), Ահուազ, Պարսք (Ֆարիս), Սպահան (Իսբահան), Կում, Քարաջ, Դինավար, Ռեյ (Ռայ), Զինջան և Սինդ։ Եվ նրանցից ամեն մեկին տվեց երկուական դրոշ՝ սև և սպիտակ։

էջ 7

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մուտամիդ ալալլահ խալիֆան Ատրպատականի կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Օմար իբն Ալի իբն Մուռ ալ-Թաի ալ-Մաուսիլիին։ Սա այնտեղ եկավ իր շուրջը հավաքելով խարիջիներից* և այլոց մեծ բազմություն։ Ատրպատականում դրանից առաջ կառավարիչ

* Իսլամի հոսանքներից մեկը։ Բառացի՝ ապստամբ։

էր ալ-Ալա իբն Ահմադ ալ-Ազդին, որը հաշմանդամ էր դարձել։ Սա պատգարակի վրա դուրս եկավ, որպեսզի թույլ չտա Մուհամմադ իբն Օմարին կառավարիչ դառնալ և կռվի բռնվեց։ Ալայի զորքը պարտվեց, և ինքն էլ գերի ընկավ։ Մուհամմադ իբն Օմար իբն Ալին գրավեց Ալայի բերդը և այնտեղից վերցրեց երեք միլիոն դիրհեմ, իսկ Ալան մեռավ նրա ձեռքում՝ գերության մեջ։

Այդ տարում Մուտամիդ ալալլահը Մոսուլի կառավարիչ նշանակեց ալ-Խադր իբն Ահմադ իբն Օմար իբն ալ-Խաթթաբ ալ-Տաղլիբիին։

ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(24 սեպտեմբեր 876—12 սեպտեմբեր 877)

էջ 14

ՀՌՈՄՆԵՐԻ՝ ԼՈՒԼՈՒԱՆ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում սլավոնները (սակալիբա)[179] Լուլուան[180] հանձնեցին հռոմներին։

Բանն այն է, որ Ահմադ իբն Թուլունը տարվեց Տարսոն (Թարսուս) արշավելու գաղափարով նախքան Եգիպտոսի կառավարիչ դառնալը։ Երբ Եգիպտոսի կառավարիչ դարձավ, ձգտում էր նաև Տարսոնն ստանալ, որպեսզի, իբրև կառավարիչ, [հռոմների դեմ] արշավանքներ կազմակերպի։ Նա գրեց Աբու Ահմադ ալ-Մուվաֆֆակին, խնդրելով այդ պաշտոնը, սակայն սա չընդառաջեց նրան և կառավարիչ նշանակեց Մուհամմադ իբն Հարուն ալ-Տաղլիբիին։ Սա նավ նստեց Տիգրիսի վրա և քամին նրան ափ գցեց, իսկ Մուսավիր ալ-Շարիի մարդիկ բռնեցին նրան ու սպանեցին։ Նրա փոխարեն նշանակվեց Մուհամմադ իբն Ալի ալ-Արմանին, որին տրվեց նաև Անտիոքը։ Սակայն Տարսոնի բնակիչները ապստամբեցին ու սպանեցին նրան։

Ապա կառավարիչ նշանակվեց Արխուզ (Ուրխուզ) իբն Յուլաղ (Ուլուղ) իբն Թարխան ալ-Տուրքին, որն այնտեղ գնաց, սակայն անփորձ և տգետ էր ու վատ վերաբերմունք ունեցավ։ Նա Լուլուայի մարդկանց ռոճիկն ու մթերքները ուշացրեց և սրանք ապստամբեցին ու գրեցին Տարսոն, բողոքելով՝ եթե մեր ռոճիկն ու մթերքը չուղարկեք, ապա բերդը հռոմներին կհանձնենք։ Տարսոնի մարդիկ ազդվեցին այդ բանից և իրենց մեջ հավաքեցին տասնհինգ հազար դինար, որ նրանց տանեն։ Արխուզը այն վերցրեց նրանցից՝ Լուլուայի մարդկանց տանելու համար, սակայն իր մոտ պահեց։ Երբ դրամը ուշացավ, սրանք բերդը հանձնեցին հռոմներին։ Տարսոնի ժողովրդի համար սա կործանում էր, [այդ բերդը] փուշ էր թշնամու կոկորդին, քանզի հռոմները հենց որ [հարձակման] էին դուրս

գալիս ցամաքով, թե ծովով, [բերդի պահապանները] տեսնում էին նրանց և ազդանշան տալիս։

Այդ լուրը հասավ Մուաամիդին, որը Ահմադ իբն Թուլունին նշանակեց Տարսոնի կառավարիչ և տեղում առանձին հրամանատար նշանակեց մեկին, որը կարողանար արշավանքներ կատարել հոռոմների դեմ և պահպանել այդ սահմանային ամրությունը։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(13 սեպտեմբեր 877—2 սեպտեմբեր 878)

էջ 16

## ԱԲԴԱԼԼԱՀ ԻԲՆ ՔԱՈՒՍԻ ԳԵՐԵՎԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում հոռոմները գերի բռնեցին Աբդալլահ իբն Ռաշիդ իբն Քաուսին։

Բանն այն էր, որ նա մտավ Ռումի երկիրը, Ասորիքի Սահմանային գոտու զորքից չորս հազար հոգու հետ և կողոպտեց ու կոտորեց։ Երբ Պոդանդիից (Բադանդուն) հեռացավ, նրա դեմ դուրս եկավ Սելևկիայի (Սալուկիյյա) պատրիկը և Կուռատ Քաուքաբի ու Խարսիանոնի (Խարշանա) պատրիկը և պաշարեցին մահմեդականներին։ Մահմեդականներն իջան ձիերից, կտրեցին նրանց ծնկատակի ջլերը ու կռվի անցան։ Նրանք բոլորն էլ սպանվեցին, բացի հինգ հարյուրից, որոնք մի մարդու նման հարձակվեցին և իրենց ձիերով ազատվեցին։ Հոռոմներն սպանեցին, ում որ կարողացան սպանել և գերեցին Աբդալլահ իբն Ռաշիդին, նրան վիրավորելուց հետո, ու տարան Ռումի թագավորի մոտ։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(23 օգոստոս 879—11 օգոստոս 880)

էջ 25

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

[Այդ տարում] իբն Քունդաջը գրավեց Մծբինը, Դիար Ռաբիան, իսկ իբն Այյուբը դիմեց Իսա իբն ալ-Շայխ ալ-Շայբանիին, որն Ամիդում էր, և նա օգնության եկավ։ Դիմեց նաև Աբու-լ-Մուղիզ[181] իբն Մուսա իբն Զուբարային, որն Արզնում էր, և նա էլ օգնության եկավ։ Իբն Քունդաջը վերադարձավ Մոսուլ և Մուտամիդ խալիֆայից հրովարտակ ստացավ Մոսուլի կառավարիչ դառնալու համար և այնտեղ էլ վերադարձավ։

Այն ժամանակ իբն ալ-Շայխը[182] և իբն Զուբարան և ուրիշներ երկու

հարյուր հազար դինար առաջարկեցին [իբն Քունդաջին], որպեսզի վերջինս նրանց հաստատի իրենց դավառներում։ Նա չընդառաջեց և սրանք հավաքվեցին կռվի։ Սակայն, երբ այս բանը տեսավ, դոհացրեց նրանց պահանջն ու վերադարձավ, իսկ նրանք էլ վերադարձան իրենց երկրները։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(12 օգոստոս 880—31 հուլիս 881)

էջ 36

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում ճակատամարտ տեղի ունեցավ մի կողմից Իսհակ իբն Քունդաջիկի և մյուս կողմից Իսհակ իբն Այյուբի, Իսա իբն ալ-Շայխի, Աբու-լ-Մաղրայի, Համդան իբն Համդանի և նրանց հարած Ռաբիա, Տաղլիբ, Բաքր և Եմենի (Յաման) ցեղերի մարդկանց միջև։ Իբն Քունդաջիկը նրանց փախուստի մատնեց Մծբին ու հետապնդեց մինչև Ամիդ։

Նա Ամիդի մոտ զորք թողեց Իսային պաշարելու համար, և Ամիդի մոտ նրանց միջև մի քանի ընդհարումներ տեղի ունեցան։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(1 օգոստոս 881—20 հուլիս 882)

էջ 40

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռումի թագավորը[183], որը կոչվում էր Սլավոնուհու որդի (իբն ալ-Սակլաբիյյա), պաշարեց Մալաթիան։ Վերջինիս օգնեց Մառաշի ու Հադասի զորքը և Ռումի թագավորը պարտվեց։ Ասորիքի Սահմանային դոտու կողմից ամառային արշավանք կատարեց իբն Թուլունի տեղակալ ալ-Ֆարղանին։ Սա հոռոմներից մի քանի տասնյակ հազար մարդ սպանեց և այնպես կողոպտեց ժողովրդին, որ ամեն մի ռազմիկի բաժինը քառասուն դինար դարձավ։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ

(21 հուլիս 882—10 հուլիս 883)

էջ 50

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում մեռավ Իսա ալ-Շայխ իբն ալ-Սալիլ ալ-Շայբանին, որի ձեռքում էին Հայաստանը և Դիար Բաքրը։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

(11 հուլիս 883—28 հունիս 884)

էջ 55

## ՀՌՈՄՆԵՐԻ ԴԵՄ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Այդ տարում հռոմները կովի դուրս եկան հարյուր հազարով և պաշարեցին Կալամիյյան, որը Տարսոնից վեց մղոնի վրա էր։ Նրանց դեմ գիշերով դուրս եկավ Բազմարը[184] և հարձակում կատարեց Ռաբի Ա ամսին (ութ սեպտեմբեր—7 հոկտեմբեր) և, ինչպես ասվում է, յոթանասուն հազար մարդ կոտորեց։ Սպանեց նրանց առաջնորդին, որը պատրիկների պատրիկ էր, նաև Կապադովկիայի (Ֆանադին) և Անատոլիկի (Բաթլիկ) պատրիկներին։ Կուռայի պատրիկը փախավ վերքերով ծածկված։ [Բազմարը] նրանցից խլեց յոթը ոսկե ու արծաթե խաչ, որոնց մեջ էր նրանց մեծագույն ոսկե խաչը՝ գոհարներով զարդարված։ Նա վերցրեց տասնհինգ հազար ձի և ջորի, ինչպես նաև թամբեր և այլ բաներ. [Նա վերցրեց] նաև զարդարուն սրեր, չորս ոսկե գահեր, իսկ երկու հարյուր՝ արծաթե, բազմաթիվ ամաններ, մոտավորապես տասը հազար դիպակե դրոշ, բազում դիպակ, մեծ քանակությամբ մետաքս (բաղյուն) և այլն։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(8 հունիս 886—27 մայիս 887)

էջ 61

## ՎԵՃԸ ԻԲՆ ԱԲՈՒ-Լ-ՍԱՋԻ ԵՎ ԻԲՆ ՔՈՒՆԴԱՋԻ ՄԻՋԵՎ ԵՎ ՋԱԶԻՐԱՅՈՒՄ ԻԲՆ ԹՈՒԼՈՒՆԻ ԱՆՎԱՆ ՀԻՇԱՏԱԿՈՒՄԸ [ԻԲՐԵՎ ՏԻՐԱԿԱԼԻ]

Այդ տարում Մուհամմադ իբն Աբու-լ-Սաջի և Իսհակ իբն Քունդաջի միջև հարաբերությունները սրվեցին, մինչդեռ նրանք [նախապես] հաշտ իշխում էին Ջազիրայում։

Բանն այն է, որ իբն Աբու-լ-Սաջը վեճ ունեցավ Իսհակի հետ կառավարման գործերում և ուզեց առաջինը լինել, իսկ Իսհակը չհնազանդվեց նրան։ Աբու-լ-Սաջը լուր ուղարկեց Եգիպտոսի տիրոջ՝ Ահմադ Իբն Թուլունի, որդուն՝ Խումարավայհին, հնազանդություն հայտնեց, նրա կողմն անցավ և իր գավառում, որն էր Կիննասրինը, խութբայում նրա

անունը հիշեց [որպես տիրակալի]։ Նա իր որդուն՝ Դիվդադին, ուղարկեց Խումարավայհի մոտ՝ որպես պատանդ և Խումարավայհը շատ փող ու ղարկեց նրան ու նրա զորավարներին։ Խումարավայհը եկավ Ասորիք և Բալիսի մոտ հանդիպեց իբն Աբու-լ-Սաջին։ Իբն Աբու-լ-Սաջը անցավ Եփրատը դեպի Ռակկա, բախվեց իբն Քունդաջի հետ և կռիվ տեղի ունեցավ, որի ժամանակ իբն Քունդաջը պարտվեց և իբն Աբու-լ-Սաջը դրավեց նրա ունեցվածքը։

Խումարավայհը անցավ Եփրատը և իջևանեց Ռաֆիկայում։ Իսհակը փախավ Մարդինի ամրոցը, իսկ իբն Աբու-լ-Սաջը պաշարեց նրան և այնտեղից գնաց Սինջար ու հաղթեց մի խումբ արաբ [բեդվինների]։ Իբն Քունդաջը Մարդինից գնաց Մոսուլ, իսկ իբն Աբու-լ-Սաջը Բառկաիդում հանդիպեց նրան, և [ռազմիկներին] դարանակալ պահեց։ Սրանք կռվի ժամանակ դուրս եկան իբն Քունդաջի դեմ և նա պարտվեց ու փախավ վերադառնալով Մարդին, ուր նախապես մնում էր։ Իբն Աբու-լ-Սաջը ուժեղացավ, նրա անունը բարձրացավ, տիրեց Ջազիրային ու Մոսուլին և սկսեց հիշել նախ Խումարավայհին և ապա՝ հենց իր անունը [մզկիթում]։

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

(23 մարտ 893—12 մարտ 894)

էջ 76

### ՄՈՒՏԱԴԻԴ [ԽԱԼԻՖԱՅԻ]՝ ՇԱՅԲԱՆԻՆԵՐԻ ԴԵՄ ԳՆԱԼԸ ԵՎ ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՆՐԱՆՑ ՀԵՏ

Այդ տարում Սաֆար [ամսի] մեկին Մուտադիդը Բաղդադից գնաց Շայբանիների դեմ՝ այն վայրը, ուր նրանք հավաքվում էին Ջազիրայի երկրում։ Երբ լսեցին նրա գալուստը, հավաքեցին իրենց ունեցվածքը և ընտանիքները։ Մուտադիդը արշավեց արաբ [բեդվինների] վրա, Սինի մոտ կողոպտեց նրանց ունեցվածքը, մեծ կոտորած արեց և մեծ թըվով էլ ջրախեղդ արեց Զաբի մեջ։ Սակայն մարդիկ չկարողանալով տանել իրենց վերցրած կողոպուտը, մի ոչխարը ծախում էին մեկ դիրհեմի, իսկ ուղտը հինգ դիրհեմի։ Նա գնաց Մոսուլ և Բալադ, ուր նրան ընդառաջ ելան Շայբանիները թողություն խնդրելով և պատանդներ տալով։ Նա համաձայնեց նրանց խնդրանքին ու վերադարձավ Բաղդադ։ Նա լուր ուղարկեց Ահմադ իբն Իսա իբն ալ-Շայխին, պահանջելով նրանից Ամիդում իբն Քունդաջիքից խլած ունեցվածքը։ Սա ուղարկեց նրան առատ նվերներով հանդերձ։

էջ 77

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Իսկ Շավալ ամսին (14 դեկտեմբեր 893—11 հունվար 894) լուսինը խավարեց և Դվինի ու ամբողջ երկրի ժողովուրդը խավարի մեջ մնացին։ Եվ խավարը մնաց, մինչև որ երեկոյան սև քամի փչեց և տևեց մինչև գիշերվա երրորդը։ Իսկ գիշերվա երրորդին երկրաշարժ եղավ և քաղաքն ավերվեց։ Նրա տներից միայն հարյուրի չափ տուն մնաց։ Սրանից հետո հինգ անգամ ցնցվեց։ Ավերակների տակից հանվածների թիվն էր հարյուր հիսուն հազար, բոլորն էլ մեռած։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(28 հունվար 898—16 հունվար 899)

էջ 91

*Այդ տարում Մուտադիդը Մուհամմադ իբն Աբու-լ-Սաջին կառավարիչ նշանակեց Ատրպատականի ու Հայաստանի վրա*[185]*։ Վերջինս [նախապես] տիրացել էր այդ [երկրներին] և ըմբոստացել։ Նա պատվական զգեստներ էր ուղարկել նրան [որպես ընծա]։*

*Այդ տարում մեռավ Ահմադ իբն Իսա իբն ալ-Շայխը և Ամիդում ու ենթակա հողերում նրան հաջորդեց որդին՝ Մուհամմադը, որպես բռնատիրացող։ Մուտադիդը Զու-լ-Հիջջա (19 դեկտեմբեր—16 հունվար) ամսում զորքով Մոսուլի վրայով եկավ նրա դեմ՝ Ամիդ, իր հետ ունենալով որդուն՝ Աբու Մուհամմադ Ալի ալ-Մուքտաֆիին։ Նա հասավ Ամիդ ու քարանետ մեքենաներ դնելով պաշարեց մինչև երկու հարյուր ութսունվեց թվականի Ռաբի Բ (16 ապրիլ—14 մայիս) ամիսը։ Մուհամմադ իբն Ահմադ իբն Իսան լուր ուղարկեց նրան, խնդրելով երաշխավորագիր իր, մերձավորների ու քաղաքի բնակիչների համար։ Մուտադիդը համաձայնեց, և սա դուրս եկավ ու հանձնեց քաղաքը։ Մուտադիդը ընտիր զգեստներ նվիրեց, պատվեց, սակայն քաղաքի պարիսպները քանդեց։ Ապա նրան լուր հասավ, որ Մուհամմադ իբն ալ-Շայխը ուզում է փախչել և նա ձերբակալեց նրան ու նրա ընտանիքը։*

## ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(7 հունվար 900—25 դեկտեմբեր 900)

էջ 94

### ՄՈՒՏԱԴԻԴԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՎԱՍԻՖԻ ԵՎ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ԴԵՄ

*Այդ տարում Մուհամմադ իբն Աբու-լ-Սաջի ծառա Վասիֆը Պարտավից (Բարդա) փախավ Մալաթիա, որը նրա տիրոջ կալվածներից էր։ Նա*

*դրեց Մուտադիդին, խնդրելով, որ իրեն կառավարիչ նշանակի Սահմանային գոտում։ Սա հարցաքննեց նրա սուրհանդակներին Վասիֆի տիրոջից հեռանալու մասին։ Նրանք նշեցին, որ նա հեռացել էր նախօրոք համաձայնելով, որ երբ Վասիֆը Սահմանային գոտու կառավարիչ դառնա, նրա տերը ետևից կգա և նրանք միասին կհարձակվեն Դիար Մուդարի վրա ու կգրավեն...։*

### *ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

**(30 սեպտեմբեր 908—19 սեպտեմբեր 909)**

*էջ 135*

**ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ**

*Այդ տարում [խալիֆան] Յուսուֆ իբն Աբու-լ-Սաջին նշանակեց Հայաստանի և Ատրպատականի կառավարիչ պարտավորեցնելով [վճարել] հարյուր քսան հազար դինար [տարեկան հարկ]։ Նա այնտեղ գնաց Դինավարից։*

### *ԵՐԿՈՒ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ*

**(29 օգոստոս 911—17 օգոստոս 912)**

*էջ 140*

**ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ**

*Այդ տարում Սահմանային գոտու հրամանատար Ռուստամը ամառային արշավանք կատարեց Տարսոնի կողմից, իր հետ ունենալով Դիմիանային։ Նա պաշարեց հայազգի Մլեհի (Մալիհ ալ-Արմանի)*[186] *բերդը, ապա մտավ նրա գավառը և հրկիզեց։*

### *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ*

**(17 նոյիս 915—4 նոյիս 916)**

*էջ 152*

**ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ**

*Այդ տարում հայազգի Մլեհը հարձակվեց Մարաշի վրա, ասպատակեց և նրա շրջակայքից շատերին գերեվարելով, վերադարձավ։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ*

(5 հուլիս 916—23 հունիս 917)

*էջ 154*

### ՅՈՒՍՈՒՖ ԻԲՆ ԱԲՈՒ-Լ-ՍԱՋԻ ՄԱՍԻՆ

*Իբն ալ-Ֆուրատի[187] առաջին վեզիրության հենց սկզբից Յուսուֆ իբն Աբու-լ-Սաջը, որպես Ատրպատականի ու Հայաստանի կառավարիչ, [իր ձեռքում ուներ] պատերազմական, կրոնական (աղոթքի), դատական և այլ գործեր։ Նա պարտավոր էր որոշակի գումար մուծել խալիֆայական դիվանը։ Երբ իբն ալ-Ֆուրատը հանվեց, և վեզիր դարձավ ալ-Խականին և նրանից հետո Ալի իբն Իսան, նրա մեջ ագահ ցանկություն առաջացավ և [խալիֆային] ուղարկվելիք հարկի մի մասը ուշացրեց։ Այսպիսով, նրա մոտ այնքան գրամ կուտակվեց, որ իրեն ի վիճակի զգաց [խալիֆային] հպատակվելուց հրաժարվել և այսպես մնաց մինչև այս տարին։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍ ԹՎԱԿԱՆ*

(1 մայիս 922—20 ապրիլ 923)

*էջ 172*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում հաջիբ Մուհամմադ իբն Նասրը[188] Մոսուլից գնաց Կարնո քաղաք (Կալիկալա)[189] ղազիների հրամանատարությունը ստանձնելու և այդ կողմից արշավեց Ռումի երկիրը։*

*Այդ տարում Տարսոնի զորքը մտավ Մալաթիա, հաղթեց, մտավ Ռումի երկիրը և, սպասվածից ավելի հաջողություն ունենալով, վերադարձավ։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ*

(19 մարտ 926—7 մարտ 927)

*էջ 185*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարվա Ռաբի Բ (16 հունիս—14 հուլիս) ամսում Մալաթիայի ու շրջակա գավառների վրա հարձակվեցին հոռոմները Դոմեստիկոսի (Դումուստուկ) հետ, որին ընկերակցում էր կիրճերի տեր հայազգի Մլեհը։ Նրանք պաշարեցին Մալաթիան, իսկ նրա բնակիչները դիմագրեցին։*

*Հոռոմները նրա արվարձանի (ծայրամաս) մի քանի դարպասներ գրավեցին ու ներս մտան, սակայն բնակիչները կռվեցին և դուրս քշեցին նրանց։ Հոռոմները քաղաքում ոչինչ ձեռք չբերեցին, սակայն նրա գյուղերից շատերը ավերեցին, նույնիսկ մեռելները դուրս բերեցին և մեջտեղը գցեցին, ապա հեռացան։*

*Մալաթիայի բնակիչները Ջումադա Ա ամսին (15 հուլիս—13 օգոստոս 926) դիմեցին Բաղդադ օգնություն խնդրելու, սակայն չստացան և ձեռնունայն վերադարձան։*

*[Այդ տարում] Տարսոնի զորքը ամառային արշավանք կատարեց և ավարով վերադարձավ։*

*Այդ տարում Տիգրիսը սառեց Մոսուլի մոտ՝ Բալադից մինչև ալ-Հադիսա, այնպես, որ սառույցի պնդությունից ձիերը անցնում էին գետի վրայով։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ*

**(8 մարտ 927—24 փետրվար 928)**

*էջ 186*

*Այդ տարում հոռոմները աշխուժացան և հարձակվեցին Սահմանային գոտու վրա, մտան Սամոսատ (Սումայսաթ) ու լրիվ կողոպտեցին՝ ունեցվածք, զենք և ամեն ինչ, իսկ մայր մզկիթում աղոթքի ժամանակ զանգ հնչեցրին։ Ապա մահմեդականները հետապնդեցին հոռոմներին, կռվի բռնվեցին և մեծ ավար վերցրեցին։*

*էջ 189—190*

## ՊԱՏԵՐԱԶՄԸ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՈՒ ՀՈՌՈՄՆԵՐԻ ՄԻՋԵՎ

*Այդ տարում Տարսոնից մի ձիավոր զորամաս դուրս եկավ Ռումի երկիրը։ Թշնամին հարձակվեց նրա վրա, և կռվի բռնվեցին, հոռոմները հաղթեցին ու մահմեդականներից չորս հարյուր հոգու բռնեցին ու անխնա սպանեցին։*

*Այդ տարում Դոմեստիկոսը (Դուսուստուկ)[190] մեծ բանակով շարժվեց Ռումի երկրից դեպի Դվին (Դաբիլ) քաղաքը, ուր Նասր ալ-Սուբուքին էր՝ պաշտպան զորքով։ Դոմեստիկոսը ուներ խոյեր (դաբբաբատ) և քարանետ մեքենաներ (մանաջիկ) և հրարձակ գործիքներ (սրվակներ), որոնցից ամեն մեկը տասներկու մարդ կարող էր վառել և այնքան ուժեղ կրակ ուներ ու*

*կպչում էր մարդուն, որ ոչ ոք չէր կարող դիմանալ։ Մահմեդականները ամենից ավելի դրանից էին վախենում։ Այդ մեքենաները ղեկավարում էր մի հրարձակ նետաձիգ, որը նրանց քաջագույններից էր, սակայն մի մահմեդական զինվոր նետահարեց նրան ու սպանեց և այլահը մահմեդականներին փրկեց նրանց չարիքից։*

*Դոմեստիկոսը նստում էր մի բարձր գահի վրա, որը նայում էր քաղաքին ու զորքին։ Նա հրամայեց կռիվն սկսել իր աչքի առջև։ Քաղաքի բնակիչները գիմագրեցին։ Հոռոմները Դոմեստիկոսի հրամանատարության տակ համառ պայքարով հասան քաղաքի պարիսպներին և այնտեղ բազմաթիվ ճեղքվածքներ բացին ու մտան քաղաք։ Քաղաքի ժողովուրդը և ներսի զորքը սաստիկ պատերազմ տվեցին, և մահմեդականները հաղթեցին ու հոռոմներին դուրս քշեցին, սպանելով մոտավորապես տասը հազար մարդ։*

*Այդ տարում Զու-լ-Կադա (28 դեկտեմբեր—26 հունվար) ամսում Սամալը իր ընկերակիցների հետ ողջ առողջ ամառային արշավանքից վերադարձավ Տարսոն։ Նա կռվի էր բռնվել հոռոմների մի մեծ խմբի հետ, մահմեդականները հաղթել էին, հոռոմներից շատերին սպանել և անհաշիվ ավար էին վերցրել։ Նրանց ավարի մեջ պետք է հաշվել և այն, որ Ռումի երկրում երեք հարյուր հազար գլուխ ոչխար էին մորթել, բացի ողջ վիճակում տարածից։ Նրանց դեմ դուրս եկավ մի մարդ Իբն ալ-Դահհաք անունով՝ մի քուրդ ցեղապետ, որը Ջաֆարի կոչված մի բերդ ուներ։ Սա մահմեդականությունից հավատափոխ էր եղել ու անցել Ռումի թագավորի կողմը, որը նրան մեծ պարգևներ էր տվել ու հրամայել վերադառնալ իր բերդը։ Մահմեդականները հանդիպեցին նրան, կռվեցին, գերեցին և սպանեցին նրան ու բոլոր ընկերակիցներին։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

## (25 փետրվար 928—13 փետրվար 929)

*էջ 198—199*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Դոմեստիկոսը մեծ բանակով Ռումի երկրից եկավ Հայաստան, պաշարեց Խլաթը*[191]*, որի բնակիչները հաշտություն կնքեցին։ Նա հեռացավ այնտեղից մզկիթից բեմը (մինբար) հանելուց և փոխարենը խաչ դնելուց հետո։ Այդ նույնը արեց նաև Բաղեշում (Բադլիս)։ Արզնի և այլ [քաղաքների] բնակիչները վախեցան նրանից ու թողնելով իրենց եր-*

*կիրը հեռացան, իսկ նրանց մեծամեծերը գնացին Բաղդադ՝ խալիֆայից օգնություն խնդրելու, բայց չստացան։*

*Այդ տարում յոթ հարյուր հոգի՝ հոռոմներ ու հայեր, հասան Մալաթիա և ունենալով րահեր ու բրիչներ, ձևացրին, որ իբր թե [սևագործ] աշխատանքով ապրողներ են։ Սակայն պարզվեց, որ կիրճերի տեր հայազգի Մլեհը (Մալիհ ալ-Արմանի) նրանց ուղարկել էր, որպեսզի մնան և, երբ որ ինքը պաշարի քաղաքը, այն իրեն հանձնեն։ Այդ բանն իմացան Մալաթիայի բնակիչները, կոտորեցին նրանց և ունեցվածքն էլ վերցրեցին։*

### *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ*

### (14 փետրվար 929—2 փետրվար 930)

*էջ 201—202*

### ՄՈՒԿՏԱԴԻՐԻ ԿՐԿԻՆ ԽԱԼԻՖԱ ԴԱՌՆԱԼԸ

*Ապա հետիոտն զորքը (ռաջջալա) եկավ (պահակազորքի պետ) Մունիսի տունը՝ գոռալով և պահանջելով Մուկտադիրին։ Եկան ծառաները (ներքինիներ) և փակեցին խալիֆայական տան (դար ալ-խիլաֆա, ապարանք) դռները։*

*Երբ Մուկտադիրին ասացին, որ դուրս գա, վախեցավ իր անձի համար, կարծելով, որ դա ծուղակ է և հրաժարվեց դուրս գալ։ Սակայն նրան դուրս բերեցին և հետիոտն ռազմիկները նրան իրենց վզին նստեցրած տարան մինչև խալիֆայական տունը։*

*Իսկ Բանի իբն Նաֆիսը, որ Մուկտադիրի ամենակատաղի թշնամիներից էր, հենց որ լսեց կատարվածի մասին, այսինքն թե նա (Մուկտադիրը) վերստին խալիֆա է դարձել, հեծավ մի նժույգ և փախավ Մոսուլ, ապա գնաց Հայաստան, իսկ հետո շարունակեց ճանապարհը, մինչև հասավ Կոստանդնուպոլիս և ընդունեց քրիստոնեությունը։*

*էջ 206*

*Այդ տարում Ջազիրայի սահմանային գոտում Մալաթիա, Նփրկերտ, Ամիդ, Արզն և այլ վայրեր իրենց թույլ զգացին հոռոմների առջև և որոշեցին հպատակվել Ռումի թագավորին ու հանձնվել նրան, քանզի Մուկտադիր բիլլահ խալիֆան ի վիճակի չէր նրանց պաշտպանել։ Մարդ ուղարկեցին Բաղդադ հանձնվելու թույլտվություն խնդրելով, հիշեցնելով իրենց*

*թույլ լինելը և օգնական զորք խնդրելով, որպեսզի պաշտպանվեն, սակայն ոչինչ չստացան ու վերադարձան։*

*Այս տարում Մուֆլիհ ալ-Սաջին բախվեց Դոմեստիկոսի հետ, նրանք կռվեցին և Դոմեստիկոսը պարտվեց, իսկ Մուֆլիհը նրա ետևից Ռումի երկիրը մտավ։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ*

**(3 փետրվար 930—23 հունվար 931)**

*էջ 208—209*

### ՆԱՍԻՐ ԱԼ-ԴԱՈՒԼԱ ԻԲՆ ՀԱՄԴԱՆԻ՝ ՄՈՍՈՒԼԻՑ ՀԱՆՎԵԼԸ ԵՎ ՆՐԱ ՓՈԽԱՐԵՆ ՍԱԻԴ ԵՎ ՆԱՍՐ ՀՈՐԵՂԲԱՅՐՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ ՆՇԱՆԱԿՈՒՄԸ

*Այս տարում Ռաբի Ա ամսին (3 ապրիլ—2 մայիս) Նասիր ալ-Դաուլա Հասան իբն Աբդալլահ իբն Համդանը Մոսուլից հանվեց և այնտեղ կառավարիչ նշանակվեցին Համդանի որդիներ Սաիդ և Նասր հորեղբայրները։ Նասիր ալ-Դաուլան նշանակվեց Դիար Ռաբիայի, Մծբինի, Սինջարի, Խաբուրի, Ռաս Այնի, ինչպես նաև Դիար Բաքրի, Նփրկերտի ու Արզնի կառավարիչ, որոշակի գումարի դիմաց և նա գնաց։ Սաիդը Մոսուլ հասավ Ռաբի Բ ամսին։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ*

**(24 հունվար 931—12 հունվար 932)**

*էջ 216—217*

### ՊԱՏԵՐԱԶՄԸ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՈՒ ՀՌՈՒՄՆԵՐԻ ՄԻՋԵՎ

*Այդ տարում Ռաբի Ա ամսին (23 մարտ—22 ապրիլ 931) Տարսոնի կառավարիչ Սամալը արշավեց Ռումի երկիրը։ Նա անցավ մի գետ, ապա ձյուն տեղաց, [ծածկելով] մինչև ձիերի կրծքերը։ Նրանց վրա հարձակվեց հոռոմների մի մեծ բազմություն, սակայն ալլահը մահմեդականներին հաղթանակ պարգևեց և նրանք հոռոմներից վեց հարյուր հոգու սպանեցին և մոտավորապես երեք հազար հոգու գերեվարեցին, կողոպտելով մեծ քանակությամբ ոսկի, արծաթ, դիպակ (դիբաջ) և այլ բաներ։*

*Այդ տարում Ռաջաբ ամսին (20 հուլիսի—18 օգոստոս 931) Սամալը վերադարձավ Տարսոն և մտավ Ռումի երկիրը մեծ զորքով՝ թե՛ ձիավոր, թե՛ հետիոտն։ Նրանք Ամորիոն (Ամմուրիյյա) հասան, ուր մեծ թվով*

հոռոմներ էին հավաքվել, սակայն հենց որ լսեցին Սամալի [գալստյան] մասին, ցրվեցին։ Մահմեդականները մտան և այնտեղ գտան շատ ապրանք ու մթերք, որը վերցրեցին և ապա վառեցին թշնամու բոլոր կառույցները։ Նրանք մտան Ռումի երկիրը և կողոպտելով, կոտորելով ու ավերելով հասան մինչև Անկարա, որն այժմ կոչվում է Անկիրիոն (Անքուրիյյա) և ողջ-առողջ վերադարձան, առանց որևէ վտանգի հանդիպելու։ Ավարի արժեքը կազմում էր հարյուր երեսունվեց հազար դինար։ Նրանք հասան Տարսոն Ռամադան ամսի (17 սեպտեմբեր—16 հոկտեմբեր 931) վերջում։

Այդ տարում Իբն ալ-Դայրանին[92] (Դերենիկի որդին) և Հայաստանի ծայրամասային [գավառների] այլ հայազգի [իշխաններ] գրեցին հոռոմներին, դրդելով հարձակվել իսլամի երկրի վրա և խոստանալով իրենց օգնությունը։ Հոռոմները մեծ բազմությամբ հարձակվեցին, ավերեցին Բերկրին (Բարքարի), Խլաթը իր շրջակայքով, մահմեդականներից շատերին սպանեցին և մեծ բազմություն գերեցին։ Այս լուրը հասավ Մուֆլիհին՝ Յուսուֆ իբն Աբու-լ-Սաջի ղուլամին, որն Ատրպատականի կառավարիչն էր։ Սա Հայաստան եկավ մեծ զորքով, որին հետևում էին կամավորներ և հասավ Ռամադան ամսին։ Նա դիմեց Իբն ալ-Դայրանիի երկիրը և կռվեց նրանց դեմ, որոնք առաջինի հետ համախոհ էին այդ ընդհարումների ժամանակ։ Նա սպանեց նրա մարդկանց, կողոպտեց նրանց ունեցվածքը։ Իբն ալ-Դայրանին ամրացավ իր մի բերդում։ Հայերից այնքան շատ կոտորեցին, որ ասվում է, թե դրանց թիվը հասնում էր հարյուր հազարի, սակայն ալլահը ավելի լավ գիտի։

Ռումի զորքերը գնացին Սամոսատ (Սումայսաթ) ու պաշարեցին։ Բնակիչները օգնություն խնդրեցին Սաիդ իբն Համդանից, որին Մուկտադիրը Մոսուլի ու Դիար Ռաբիայի կառավարիչ էր կարգել, պարտավորեցնելով արշավել Ռումի կողմերը և նրանցից փրկել Մալաթիան, որի բնակիչները վատ դրության մեջ լինելով հաշտություն էին կնքել հոռոմների հետ՝ նրանց հանձնելով քաղաքի բանալիները և սրանք դարձել էին մահմեդականների տերերը։ Արդ, երբ Սամոսատի բնակիչների սուրհանդակը եկավ Սաիդ իբն Համդանի մոտ, սա պատրաստվեց ու շտապ գնաց նրանց մոտ։ Հասավ, երբ հոռոմները գրեթե գրավելու վրա էին, սակայն երբ նա մոտեցավ, նրանք փախան։ Այնտեղից նա գնաց Մալաթիա, ուր կար հոռոմների բազմություն, ինչպես նաև հայազգի Մլեհի (Մալիհ ալ-Արմանի) զորքը։ Սրա հետ էր Մուկտադիրի [հին] զորապետ Բանի (Բունայյ) իբն Նաֆիսը, որը, լինելով հոռոմների ձեռքում, ընդունել էր քրիստոնեությունը։ Երբ իմացան, որ Սաիդը գալիս է, դուրս եկան քաղաքից, վախենալով, որ քաղաքի դրսի կողմից Սաիդը

*կգա իր զորքով, իսկ [ներսից] բնակիչները կապստամբեն ու կսպանեն իրենց։ Ուստի փախան, իսկ Սաիդը մտավ քաղաք, ապա, որպես փոխանորդ թողնելով իր զորապետներից մեկին, վերադարձավ։*

*Նա մտավ Ռումի երկիրը, որպես ղազի (հավատի մարտիկ), Շավվալ ամսին (17 հոկտեմբեր—15 նոյեմբեր 931)։ Նրա երկու առաջապահ զորամասերը, դեռ նախքան իր Ռումի երկիրը ներթափանցելը, արդեն հոռոմներից մեծ բազմություն կոտորել էին։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ*

**(22 դեկտեմբեր 933—10 դեկտեմբեր 934)**

*էջ 243*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Դոմեստիկոս (Դումուստուկ) Կուրկուասը (Կուրկաշ) հիսուն հազար հոռոմների հետ եկավ ու պաշարեց Մալաթիան երկար ժամանակ, այնպես որ բնակիչների մեծ մասը սովից մեռավ։ Նա երկու վրան խփեց, որոնցից մեկի վրա խաչ կար և ասաց՝ ով ուզում է քրիստոնյա դառնալ, թող գա այն վրանի մոտ, որի վրա խաչ կա, որ ստանա իր ընտանիքը և ունեցվածքը, իսկ ով ուզում է մահմեդական մնալ, թող մյուս վրանի մոտ գա և կստանա իր կյանքի ապահովությունը և ապահով տեղ կհասնի։ Մահմեդականների մեծ մասը եկավ այն վրանի մոտ, ուր խաչ կար, ցանկանալով ստանալ իրենց ընտանիքը և ունեցվածքը։ Մնացածներին մի պատրիկի հետ ապահով վայր ուղարկեց և երաշխավորագրով գրավեց (քաղաքը) Ջումադա Բ ամսի սկզբին, կիրակի օրը (19 մայիս 934)։ Նրանք տիրեցին նաև Սամոսատին, ավերեցին այդ շրջանը, շատ կոտորեցին ու սարսափելի արարքներ գործեցին և երկրի մեծ մասը նրանց ձեռքն ընկավ։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

**(8 նոյեմբեր 937—28 հոկտեմբեր 938)**

*էջ 267—268*

### ԼԱՇՔԱՐԻԻ՝ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԸ ԳՐԱՎԵԼՈՒ ԵՎ ՆՐԱ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Լաշքարի իբն Մարգին գրավեց Ատրպատականը*[193]*։ Այս Լաշքարին ավելի հզոր էր, քան վերոհիշյալը, քանզի Վաշմգիրի*[194] *տեղա-*

կալն էր Ջաբալ Նահանգում։ Նա շատ դրամ և զորք հավաքեց ու գնաց Ատրպատական, ուր այն ժամանակ իշխում էր Դայսամ իբն Իբրահիմ ալ-Քուրդին՝ իբն Աբու-լ-Սաջի մերձավորներից (զորականներից) մեկը։ Դայսամը զորք հավաքեց ու կռվեց Լաշքարիի հետ և պարտվեց, ապա,նորից եկավ, [զորք] հավաքեց ու կռվի բռնվեց, սակայն նորից պարտվեց։

Լաշքարին գրավեց նրա երկիրը, բացի Ատրպատականի մայրաքաղաք Արդաբիլից, քանզի նրա բնակիչները չուղեցին հանձնվել, հույսը դնելով քաղաքի անառիկության վրա, իսկ իրենք ևս քաջ և ուժեղ էին։ Լաշքարին նամակներ ուղարկեց խոստանալով լավ վերաբերմունք ցուցաբերել, քանզի նրանք լսել էին դեյլեմիկների (դայլամի)[195] Ջաբալ Նահանգում, Համադանում և այլուր ցույց տված վատ վերաբերմունքի մասին։ Նա երկար ժամանակ պաշարեց նրանց, ապա նրա զինվորները բարձրացան պարիսպը, մի քանի տեղ ծակեցին ու մտան քաղաքը։ Լաշքարին ցերեկը մտնում էր քաղաք, իսկ գիշերը՝ վերադառնում իր զորքի մոտ։ Սակայն քաղաքի բնակիչները պարսպի ճեղքվածքը փակեցին, ըմբոստացան նրա դեմ ու նորից սկսեցին պատերազմը։ Նա զղջաց իր դանդաղկոտության և անվճռականության համար։

Արդաբիլի բնակիչները լուր ուղարկեցին Դայսամին, տեղեկացնելով այդ վիճակի մասին և օր որոշեցին, որ դա, ընդ որում իրենք դուրս էին գալու Լաշքարիի դեմ կռվի, իսկ նա գալու էր ետևից։ Նա այդպես էլ արեց ու գնաց նրանց մոտ,՝ և նրանք նշանակված օրը դուրս եկան մեծ բազմությամբ ու կռվեցին Լաշքարու դեմ։ Դայսամը եկավ ետևից, և նա [Լաշքարին] սաստիկ պարտություն կրեց ու նրա մարդկանցից մեծ բազմություն կոտորվեց։

Նա փախավ Մուղան (Մուկան), որի իսբահբադը (սպահպետ), Իբն Դաուլա կոչված, պատվեց նրան ու լավ հյուրասիրություն ցույց տվեց։

Լաշքարին [զորք] հավաքեց ու շարժվեց Դայսամի դեմ։ Նրան օգնեց Իբն Դաուլան, իսկ Դայսամը փախավ ու անցավ Արաքս (Արաս) գետը. Լաշքարիի մարդկանցից ոմանք անցան գետը նրա ետևից, և Դայսամը պարտություն կրեց։ Նա գնաց Վաշմգիրի մոտ, որը Ռեյում (Ռայ) էր ու վախեցրեց նրան Լաշքարուց։ Դայսամը տարեկան որոշ գումար խոստացավ այն բանի համար, որ սա (Վաշմգիրը) իրեն զորք տա։ Վերջինս ընդառաջեց նրան և հետո զորք ուղարկեց։

Լաշքարիի զորականները գրեցին Վաշմգիրին, տեղեկացնելով. որ իրենք հնազանդ են նրան և երբ որ տեսնեն նրա զորքը, նրա կողմը կանցնեն՝ ընդդեմ Լաշքարու։ Սակայն Լաշքարին բռնեց այդ նամակներն ու ծածկեց այդ բանը նրանցից (Վաշմգիրի կողմնակիցներից)։ Երբ Վաշմգիրը մոտեցավ, հավաքեց իր զորքն ու հայտնեց ամեն ինչ և ասաց, որ

ինքը նրանց հետ չի կարող կռվել ու որոշել է գնալ Անձևացյաց (ալ-Զավազան) կողմերը՝ կողոպտելու ճանապարհի վրա գտնվող հայերին, ապա գնալ Մոսուլ, այն գրավելու և այլ վայրեր [արշավել]։ Նրանք համաձայնեցին, և նա գնաց Հայաստան, որի բնակիչները անտեղյակ նստած էին։ Նա կողոպտեց, ավարի տվեց, գերեվարեց ու հասավ Անձևացիք՝ իր հետ ունենալով ավարը։ Նա կանգ առավ մի հայի տիրույթներում։ Սա գրամ առաջարկեց նրան, միայն թե հանգիստ թողներ իրեն և իր երկիրը։ (Լաշքարին) համաձայնեց նրա հետ։ Ապա հայը ծուղակ լարեց մի կիրճում ու հրամայեց մի քանի հայերի, որ Լաշքարիի ունեցվածքից որևէ բան կողոպտեն ու գնան այգ կիրճի կողմը։ Նրանք այդպես էլ արեցին ու լուրը հասավ Լաշքարուն։ Սա հեծավ իր ձին ու հետապնդեց նրանց հինգ մարդկանցով, իսկ դարան մտածները դուրս գալով սպանեցին նրան ու ընկերներին։ Ապա եկան նրա զորքերը ու տեսնելով նրանց սպանված վիճակում, վերադարձան։ Նրանք հրամանատար ընտրեցին որդուն՝ Լաշքարիստանին, ու որոշեցին գնալ Տիննին լեռնանցքով, որը Ջուդի (Արարադ) լեռան այն կողմում էր և այնտեղ ապահով վայրում թողնելով իրենց հոտերը, վերադարձան հայազգի Ատոմի (Աթում ալ-Արմանի)[196] մոտ, որ վրեժ լուծեն նրանից։ Ատոմը այս բանը լսելով, մարդկանց տեղավորեց կիրճերի վրա, որպեսզի քարկոծեն նրանց ու թույլ չտան անցնելու։ Նրանք (հայերը) մեծ թվով մարդկանց սպանեցին և միայն քչերը փրկվեցին, որոնց մեջ էր Լաշքարիստանը։ Սա իր մարդկանցով գնաց Նասիր ալ-Դաուլա իբն Համդանի[197] մոտ՝ Մոսուլ, նրա զորքի մի մասը սրա մոտ մնաց, իսկ ուրիշները գնացին Բաղդադ։

Մոսուլում մնացածներին (Նասիրը) հորեղբորորդու՝ Աբու Աբդալլահ ալ-Հուսայն իբն Սաիդ իբն Համդանի, հետ ուղարկեց Ատրպատականի իր իշխանության տակ գտնվող մասը, այն ժամանակ, երբ Դայսամը այնտեղ էր եկել գրավելու նպատակով։ Աբու Աբդալլահն իր հորեղբորորդու՝ Նասիր ալ-Դաուլայի, կողմից կառավարիչի օգնական (մուավին) էր[198] նշանակվել Ատրպատականում, սակայն Դայսամը եկավ, կռվեց նրա դեմ, և Իբն Համդանը անկարող գտնվելով նրան դիմադրել, հեռացավ Ատրպատականից, իսկ Դայսամը գրավեց այն։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

## (25 սեպտեմբեր 941—14 սեպտեմբեր 942)

էջ 286

## ԴԵԼՄԻԿՆԵՐԻ՝ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երբ Մարզուբանը[199] գնաց Ատրպատական, Դայսամը նույնպես գնաց և երբ դեմ առ դեմ դուրս եկան պատերազմելու, դելմիկները (դայլա-

միներ) և նրանց ետևից նաև շատ քրդեր նորից անցան Մարզուբանի կողմը, նրա հովանավորության տակ։ Մարզուբանը հաղթեց Դայսամին և սա մերձավորների մի փոքրիկ խմբով փախավ Հայաստան՝ ապաստանելով Դերանիկի որդի Գագիկին (Ջաջիկ իբն ալ-Դայրանի) մոտ, քանզի նրանց միջև մտերմություն կար, և վերջինս պատվով ընդունեց նրան։ Դայսամը սկսեց կազմակերպել քրդերին։ Նրա մտերիմները խորհուրդ էին տալիս, որ հեռացնի իր զորքի մեջ եղած դելմիկներին (դայլամի), որոնք խորթ էին թե՛ ցեղով, թե՛ հավատով, սակայն նա չընդունեց։ Եվ Մարզուբանը տիրեց Ատրպատականին ու նրա գործերը հաջող էին, մինչև որ նրա հարաբերությունները փչացան իր վեզիրի՝ Ալի իբն Ջաֆարի, հետ։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

**(15 սեպտեմբեր 942—3 սեպտեմբեր 943)**

էջ 294

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռումի թագավորը լուր ուղարկեց Մուտտակի լիլլահ [խալիֆային], խնդրելով մի թաշկինակ, որի մասին ասում էին, թե Քրիստոսը իր երեսին էր քսել, և դեմքը նրա վրա էր պատկերվել։ Դա գտնվում էր Եդեսիայի (Ռուհա) եկեղեցիներից մեկում։ Նա նշում էր, որ եթե թաշկինակը (մանդիլ) իրեն ուղարկվի, ապա ինքը մեծ թվով մահմեդական գերիների ազատ կարձակի։

Մուտտակի լիլլահը հրավիրեց դատավորների (կադի), օրենսգետների (ֆակիհ) և նրանցից ֆատուա[200] պահանջեց։ Նրանք տարբեր կարծիքներ հայտնեցին. ոմանք համաձայն էին այն հանձնել [Ռումի] թագավորին և գերիներին փրկել, իսկ ուրիշներ ասացին՝ այս թաշկինակը հնագույն ժամանակներից եղել է իսլամի երկրում և Ռումի ոչ մի թագավոր այն չի պահանջել, ուստի հանձնելը նվաստացում է։ Հավաքվածների մեջ էր նաև Ալի իբն Իսա վեզիրը, որն ասաց՝ մահմեդականներին գերությունից, նեղությունից ու զրկանքից ազատելը ավելի լավ է, քան այդ թաշկինակը մեզ մոտ պահելը։ Եվ խալիֆան հրամայեց այն հանձնել և գերիներին ազատել։ Այդպես էլ արվեց և մարդ ուղարկվեց, որ գնա Ռումի երկրից գերիներին բերի, և [իրոք] սրանք ազատ արձակվեցին։

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ*

## (4 սեպտեմբեր 943—23 օգոստոս 944)

*էջ 297—298*

### ՌՈՒՍՆԵՐԻ՝ ՊԱՐՏԱՎ (ԲԱՐԴԱԱ) ՔԱՂԱՔԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում ռուսների[201] մի խումբ դուրս եկավ դեպի [Կասպից] ծով և հարձակվեց Ատրպատականի կողմերը։*

*Ծովի վրա նավելով նրանք բարձրացան Կուրն ի վեր, որը մեծ գետ է, և հասան Պարտավ (Բարդաա)։ Նրանց դեմ ելավ Մարզուբանի Նաիբը (տեղակալը)[22], Պարտավի դելմիկների ու կամավորների բազմությամբ, որոնց թիվը հինգ հազարից ավելի էր, և նրանք բախում ունեցան ռուսների հետ, սակայն, հազիվ մեկ ժամ անց, մահմեդականները պարտություն կրեցին։ Դելմիկները լրիվ կոտորվեցին, իսկ ռուսները [մահմեդականներին] հետապնդեցին դեպի քաղաք և, ով որ հեծնելու գրաստ ուներ, փախավ, լքելով քաղաքը։ Ռուսները գրավեցին քաղաքը, երաշխավորագիր (աման) առաջարկեցին և լավ վերաբերվեցին։ Ապա ամեն կողմից մահմեդականների զորքեր եկան և ռուսները կռվի էին բռնվում նրանց հետ, իսկ մահմեդականները չէին կարողանում դիմադրել նրանց։ Քաղաքի ռամիկը դուրս էր գալիս և քարկոծում ռուսներին ու աղաղակում։ Ռուսները այդ բանն արգելում էին նրանց, սակայն նրանք չէին հրաժարվում այդ բանից, բացի որոշ խելոքներից, որոնք ետ կանգնեցին, իսկ հասարակ ժողովուրդը և ռամիկը իրենց չէին զսպում։*

*Երբ այս բանը երկարեց, նրանց (ռուսների) մունետիկը հայտարարեց, որ քաղաքի ժողովուրդը պետք է երեք օրում դուրս գա։ Դուրս եկավ, ով որևէ [գրաստ] ուներ, որի միջոցով կարող էր դուրս գալ, սակայն մեծամասնությունը մնաց նշված ժամկետից հետո։ Ռուսները ջարդեցին նրանց, շատ ժողովուրդ կոտորեցին և կոտորելուց հետո էլ մի քանի տասնյակ հազար գերեվարեցին։ Մնացածներին հավաքեցին մզկիթում և ասացին՝ ձեր փրկագինը տվեք, թե չէ կկոտորենք։ Նրանց համար միջնորդեց մի քրիստոնյա և ամեն մի մարդու համար քսան դիրհեմ որոշեցին, սակայն այս բանը ընդունեցին միայն խոհեմները։ Երբ ռուսները տեսան, որ ոչինչ չի դուրս դալիս, բոլորին կոտորեցին և միայն փախչողներն ազատվեցին։ Նրանք [քաղաքի] բնակիչների ունեցվածքը ավարի տվին, գերեվարեցին և կանանցից, ով որ իրենց հաճելի թվաց, տարան։*

էջ 298

## ՄԱՐԶՈՒԲԱՆԻ՝ ՆՐԱՆՑ ԴԵՄ ԴՆԱԼԸ ԵՎ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Երբ ռուսները Պարտավի (Բարդաա) բնակիչների նկատմամբ վերոհիշյալը արեցին, մահմեդականները զայրացան և իրար կռվի կոչ արեցին։ Մարզուբան իբն Մուհամմադը հավաքեց մարդկանց և կռվի կոչ արեց։ Նրա մոտ երեսուն հազար մարդ հավաքվեց, որոնց հետ նա կռվի գնաց, սակայն չկարողացավ ռուսներին դիմադրել։ Թե՛ առավոտյան, թե՛ երեկոյան կռիվ էր տալիս, սակայն միշտ պարտված էին վերադառնում։ Այդպես տևեց մի քանի օր։

Արդ, ռուսները գնացել էին Մարաղայի կողմերը և որովհետև շատ միրգ էին կերել, հիվանդացան, և նրանց մեջ հիվանդություններ ու մահ տարածվեց։ Երբ գործը երկարեց, Մարզուբանը խորամանկություն գործադրեց։ Նա որոշեց մարդկանց դարանակալ պահել, իր զորքով հարձակվել, ապա նահանջ ձևացնել և երբ դարանակալ մարդիկ դուրս գային, ինքն էլ նորից հարձակվեր [ռուսների] վրա։ Այս բանը նա առաջարկեց իր զորքերին և նրանց դարան մտցրեց։ Ապա նրանք հանդիպեցին, ընդհարվեցին, և Մարզուբանն ու նրա զորքը փախուստ ձևացրին, իսկ ռուսները նրանց ետևից ընկան, մինչև որ դարանի տեղն անցան, սակայն [Մարզուբանի] մարդիկ շարունակեցին փախչել առանց ետ նայելու։

Մարզուբանը [հետագայում] պատմել է այդ մասին՝ գոռացի մարդկանց, որ ետ դառնան, սակայն նրանք այդ բանը չարեցին, որովհետև սաստիկ վախեցել էին ռուսներից, և ես հասկացա, որ եթե մարդիկ շարունակեն փախչել, ռուսները նրանց մեծ մասին կկոտորեն և ապա վերադառնալով դարանակալների մոտ, կկռահեն եղածը և սրանց ևս լրիվ կսպանեն։ Ապա ես մենակս ետ դարձա,— ասաց նա,— և ինձ հետևեցին եղբայրս ու ընկերս. ես պատրաստ էի շահիդ (հավատի նահատակ) դառնալ։ Այդ ժամանակ դելմիկների մեծ մասը ամոթից ետ դարձավ և մենք հարձակվեցինք, իսկ դարանակալներին մեր աղդանշանով կանչեցինք։ Նրանք հարձակվեցին [ռուսների] ետևից և քաջաբար կռվեցինք ու շատերին սպանեցինք, որոնց մեջ էր նրանց ամիրը (իշխանը)։ Մնացածները ապաստանեցին Շահրիստան կոչված քաղաքի բերդը, ուր նրանք շատ մթերք էին փոխադրել, ինչպես նաև գերիներին և ունեցվածքը։

Մարզուբանը նրանց համար կերպով պաշարեց, սակայն նրան լուր հասավ, թե Աբու Աբդալլահ ալ-Հուսայն իբն Սաիդ իբն Համդանը մտել է Ատրպատական ու հասել Սալմաստ։ Նրան ուղարկել էր վերջինիս հորեղբորորդին՝ Նասիր ալ-Դաուլան, որպեսզի նվաճի Ատրպատականը։ Երբ լուրը հասավ Մարզուբանին [մի զորամաս] թողեց ռուսների պաշարման համար, իսկ ինքը գնաց իբն Համդանի դեմ և ընդհարվեցին։ Ապա ձյուն

տեղաց. և իբն Համդանի զորքը ցրվեց, քանզի մեծ մասամբ անապատի արաբներ էին։ Նասիր ալ-Դաուլայից նամակ եկավ [իբն Համդանին]՝ իմաց տալով, որ Տուզունը մահացել է, իսկ ինքը կամենում է իջնել Բաղդադ և հրամայում էր նրան վերադառնալ, և սա ետ դարձավ։

Իսկ Մարզուբանի մարդիկ շարունակեցին կռվել ռուսների դեմ և հիվանդությունները տարածվեցին ռուսների մեջ։ Երբ նրանք թաղում էին մարդուն, հետը դնում էին նաև զենքերը, և [հետագայում] ռուսների հեռանալուց հետո մահմեդականները դրա մեծ մասը դուրս բերեցին։ Ապա նրանք (ռուսները) գիշերով բերդից դուրս եկան, իրենց մեջքի վրա տանելով ցանկացած ունեցվածքը և այլ բաներ։ Նրանք իջան Կուր և իրենց նավերը նստելով հեռացան։ Մարզուբանի զորքերը չկարողացան նրանց հետապնդել և տարած ունեցվածքը խլել նրանցից ու թողեցին նրանց։ Եվ ալլահը երկիրը մաքրեց նրանցից։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(13 օգոստոս 945—1 օգոստոս 946)

*էջ 317*

## ԵՐԿՐԻ (ՏԵՐՈՒԹՅԱՆ) ԲԱԺԱՆՈՒՄԸ ԱՎԱՏՆԵՐԻ (ԻԿԹԱ) ԵՎ ՆՐԱ ԿՈՐԾԱՆՈՒՄԸ[203]

Այդ տարում զորքը ըմբոստացավ Մուիզզ ալ-Դաուլա իբն Բուայհի դեմ և շատ անվայել խոսքեր ասացին, և նա պարտավորվեց որոշված ժամկետում վճարել նրանց ռոճիկը։ Այդ պատճառով նա ստիպված եղավ կողոպտել ժողովրդին և ապօրինի ճանապարհներով փողեր վերցնել։ Նա իր բոլոր զորավարներին ու մերձավորներին պարգևեց սուլթանի (տերունի) և կալվածատիրական (ամլաք) գյուղերը, որի պատճառով [պետական] դիվանների մեծ մասը դադարեց գործելուց և պաշտոնյաներն անգործ մնացին։ Երկիրն արդեն ավերվել էր երկպառակությունների, սղության և կողոպուտի պատճառով։

Զորավարները գրավեցին շեն գյուղերը և դրանք առավել շենացան և եկամուտը ավելացավ սրանց [բարձր] դիրքի շնորհիվ։ Իսկ Մուիզզ ալ-Դաուլան չկարողացավ այդ [կալվածները] ետ վերցնել նրանցից։ Ինչ վերաբերում է հասարակ [ստիճանավորներին], ապա նրանց վերցրած [հողերը] առավել ևս ավերվեցին և նրանք վերադարձրին ու փոխարենը [նորը] պահանջեցին ու տրվեց նրանց։ [Շարքային] զինվորականները հոգ չէին տանում գյուղերում ջրանցքներ փորելու և դրանց հունը մաքրե-

լու գործին և դրանք փչացան ու շատերը անօգտագործելի դարձան։ Ավատառուների[204] ղուլամները սկսեցին անիրավություն գործել [գյուղացիների նկատմամբ], հարկը ժամկետից շուտ էին հավաքում և եթե մեկը չէր կարողանում հարկը վճարել, ամբողջ ունեցվածքը գրավվում էր։

Ապա Մուիզզ ալ-Դաուլան ամեն մի տեղի պաշտպանությունը հանձնարարեց իր մերձավոր մեծամեծներից որևէ մեկին։ Սրանք այն դարձրին բնակելի [կալվածներ] և առավել ագահ դարձան և նրանց եղբայրներն էլ եկան հավաքվեցին։ Զորավարները բողոքում էին, թե հասույթը վատ է, սակայն ո՛չ վեզիրը, ո՛չ էլ ուրիշը չէր կարող այդ բանը ստուգել և եթե որևէ մեկը վիճեր [զորավարների հետ], ապա սրանք թշնամի էին դառնում նրան։ Այսպիսով, ամեն ինչ թողեցին նրանց կամքին, իսկ սրանք առավել ագահ դարձան և ոչ մի բանի առջև կանգ չէին առնում։

Մուիզզ ալ-Դաուլան անկարող դարձավ մթերք հավաքելու, աղետները և անակնկալները [դիմագրավելու] համար։ Եվ սկսեց ավելի շատ տիրույթներ պարգևել իր թուրք ղուլամներին, որին նախանձեցին դելմիկները և ծնունդ առան թշնամություն ու երկպառակություններ, որոնց մասին կխոսենք ստորև։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(11 հուլիս 948—30 հունիս 949)

էջ 330—331

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Սայֆ ալ-Դաուլա իբն Համդանը հարձակվեց Ռումի երկրի վրա, պատերազմ տեղի ունեցավ և պարտվեց Սայֆ ալ-Դաուլան, իսկ հոռոմները գրավեցին Մարաշը և պարտության մատնեցին Տարսոնի զորքը։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(18 մայիս 953—6 մայիս 954)

էջ 342

### ԴԱՅՍԱՄԻ ՓԱԽՈՒՍՏԸ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻՑ

Այդ տարում Ատրպատականից փախավ Դայսամ իբն Իբրահիմ Աբու Սալիմը, որն, ինչպես հիշել ենք, գրավել էր Ատրպատականը։

Փախուստի պատճառն այն էր, որ Ռուքն ալ-Դաուլա իբն Բուայհը[205] ձերբակալել էր նրա զորավարներից մեկին, որի անունն էր Ալի իբն Միսքի։ Սա փախավ բանտից և դիմեց Ջաբալ [Նահանգը], հավաքեց մարդկանց ու գնաց Մարզուբանի եղբոր՝ Վահսուդանի, մոտ։ Նրանք միաբանեցին և դաշնակցեցին Դայսամի դեմ։ Ապա Դայսամը գրավեց Սամիրամ բերդը, որի մասին կհիշենք։ Նրա նամակները ազատվելու մասին հասան եղբորը և Ալի իբն Միքսիին։ Նա գրեց նաև դելմիկներին՝ նրանց իր կողմը սիրաշահելու համար։ Սակայն Դայսամը չգիտեր Մարզուբանի ազատման մասին և կարծում էր, որ իր դեմ կռվում են Վահսուդանն ու Ալի իբն Միսքին։

Նա (Դայսամը) ուներ մի վեզիր, որը կոչվում էր Աբու Աբդալլահ ալ-Նաիմի։ [Դայսամը] աչք դրեց նրա ունեցվածքին, ձերբակալեց նրան և նրա փոխարեն նշանակեց մի մարդու, որը նախապես Նաիմիի քարտուղարն էր եղել։ Նաիմին խորամանկորեն զիջեց նրա բոլոր պահանջներին և համաձայնեց վճարել այդ քարտուղարի համար։ Դայսամը ազատ արձակեց [Նաիմիին], նրան հանձնեց քարտուղարին և նրան վերադարձրեց նախկին դիրքին։

Ապա Դայսամը դուրս եկավ Արդաբիլից՝ թողնելով նրան (Նաիմիին), որպեսզի պատրաստի այն փողերը, որ խոստացել էր։ Սակայն Նաիմին սպանեց իր քարտուղարին և իր ամբողջ ունեցվածքով փախավ Ալի իբն Միսքիի մոտ։ Երբ լուրը հասավ Դայսամին, որը Զինջանի մոտ էր, վերադարձավ Արդաբիլ։ Նրա դեմ ըմբոստացան դելմիկները, և նա իր մոտ եղած դրամները բաժանելով [հանգստացրեց նրանց]։

Երբ նա տեղեկացավ, որ Ալի իբն Միսքին փոքրաթիվ ջոկատով գնացել էր Արդաբիլ, ինքն էլ գնաց։ Նրանք հանդիպեցին ու ընդհարվեցին, դելմիկներն անցան Ալիի կողմը, իսկ Դայսամը մի քանի քրդերի հետ փախուստի դիմեց Հայաստան, որի թագավորները[206] նրան օգնեցին, որպեսզի գիմանա։

Նա լուր ստացավ, որ Մարզուբանը Սամիրամ ամրոցից դնացել է Արդաբիլ, գրավել Ատրպատականը և բանակ ուղարկել իր դեմ։ Նա չկարողացավ մնալ և Հայաստանից փախավ Բաղդադ, ուր հասավ հենց այս տարում։ Նրան դիմավորեց Մուիզզ ալ-Դաուլան, մեծարեց, լավ վերաբերվեց և նա գոհ վիճակում էր գտնվում։

Սակայն նրա մերձավորներն ու բարեկամները Ատրպատականից գրեցին նրան և ահա [երեք հարյուր] քառասուներեք թվին նա դուրս եկավ Բաղդադից։ Նա օգնական զորք խնդրեց Մուիզզ ալ-Դաուլայից[207], սակայն սա չտվեց, քանզի Մարզուբանը հաշտություն էր կնքել Ռուքն ալ-

Դաուլայի հետ և խնամիացել, իսկ Մուիզզ ալ-Դաուլան չկարողացավ Ռուքն ալ-Դաուլային հակառակ գործել։

Դայսամը գնաց Մոսուլ՝ Նասիր ալ-Դաուլա իբն Համդանի մոտ՝ օգնություն խնդրելու, սակայն սա չօգնեց նրան, ապա գնաց Ասորիք՝ Սայֆ ալ-Դաուլայի մոտ և մնաց մինչև երեք հարյուր քառասունչորս թվականը։

Այդ ժամանակ Բաբ ալ-Աբուաբի (Դարբանդ) ժողովուրդը ապստամբեց Մարզուբանի դեմ։ Նա գնաց նրանց դեմ արշավանքի և ահա Ատրպատականի քուրդ ցեղապետներից մեկը լուր ուղարկեց Դայսամին՝ հրավիրելով Ատրպատական և խոստանալով օգնել նրան իշխանությանը տիրանալու։ Սա գնաց ու գրավեց Սալմաստ քաղաքը։ Մարզուբանը զորավարներից մեկին ուղարկեց, և կռվի մեջ զորավարի մարդիկ անցան Դայսամի կողմը և նա պարտվեց, իսկ Դայսամը մնաց Սալմաստում։

Երբ Մարզուբանը [Դարբանդի] ապստամբների գործը վերջացրեց, վերադարձավ Ատրպատական։ Երբ մոտեցավ Դայսամին, վերջինս Սալմաստը թողեց ու հեռացավ Հայաստան ու դիմեց Դերանիկի որդուն (իբն ալ-Դայրանի) և Գագիկի որդուն (իբն Ջաջիկին)[208], քանի որ վստահում էր նրանց։ Մարզուբանը գրեց Դեբանիկի որդուն, հրամայելով ձերբակալել Դայսամին, սակայն սա չենթարկվեց։ Վերջապես ձերբակալեց նրան, վախենալով Մարզուբանից։ Երբ բռնեցին նրան, Մարզուբանը հրամայեց իրեն հանձնել և այս անգամ էլ [Արծրունին] չենթարկվեց, սակայն ի վերջո ստիպված եղավ հանձնել նրան։ Երբ Մարզուբանը ձեռք բերեց նրան. աչքերը փորել տվեց, կուրացրեց նրան և ապա բանտարկեց։

Երբ մեռավ Մարզուբանը, նրա մերձավորներից (զորականներից) մի քանիսը սպանեցին Դայսամին՝ վախենալով նրանում կուտակված ոխից։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

### (7 մայիս 954—26 ապրիլ 955)

*էջ 346—347*

### ՍԱՅՖ ԱԼ-ԴԱՈՒԼԱ ԻԲՆ ՀԱՄԴԱՆԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ

Այդ տարում Ռաբի Ա ամսին (5 հուլիս—3 օգոստոս) Սայֆ ալ-Դաուլա իբն Համդանը[209] արշավեց Ռումի երկիրը։ Նա կոտորեց, գերեց, գերեվարեց [ժողովրդին], ավարի տվեց։ Սպանվածների մեջ էր Դոմեստիկոսի որդի Կոստանդինը (Կուսթանթին), և այս բանը ծանր էր հոռոմներին և Դոմեստիկոսին։ Նա զորք հավաքեց հոռոմներից, ռուսներից, բուլղարներից և ուրիշներից ու շարժվեց դեպի Սահմանային գոտին (սուղուր)։

Նրա դեմ դուրս եկավ Սայֆ ալ-Դաուլա իբն Համդանը և նրանք հանդիպեցին Հադասի մոտ Շաաբան ամսին (30 նոյեմբեր—28 դեկտեմբեր) և սաստիկ կռիվ տեղի ունեցավ նրանց միջև, քանզի երկու կողմերը համառ դիմադրեցին։ Սակայն բարձրյալն ալլահը հաղթանակը տվեց մահմեդականներին և հոռոմները փախուստի դիմեցին։ Նրանցից ու նրանց ընկերացողներից մեծ բազմություն կոտորվեց, գերի ընկավ Դոմեստիկոսի փեսան, աղջկա տղան և բազում պատրիկներ, իսկ Դոմեստիկոսը վերադարձավ պարտված և ընկճված։

ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(15 ապրիլ 956—3 ապրիլ 957)

էջ 351

ՍԱՅՖ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ՝ ՌՈՒՄԻ ԵՐԿԻՐ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռաջաբ ամսին (9 հոկտեմբեր—7 նոյեմբեր) Սայֆ ալ-Դաուլա իբն Համդանը մեծ զորքով շարժվեց դեպի Ռումի երկիրը, արշավեց մինչև Խարշանա և Սարիխա, բազում բերդեր գրավեց ու գերեվարեց [ժողովրդին], գերեց, հրկիզեց, ավերեց ու շատերին կոտորեց։ Նա վերադարձավ Ադանա, մնաց այնտեղ մինչև եկավ Տարսոնի պետը, որին նա պատվական զգեստներ շնորհեց, շատ նվերներ տվեց ու վերադարձավ Հալեբ։

Երբ հոռոմները լսեցին, թե նա ինչ էր արել, հավաքվեցին ու հարձակվեցին Նփրկերտի վրա, հրկիզեցին երկիրը, կողոպտեցին, ավերեցին, գերեվարեցին ժողովրդին և, ամբողջ ունեցվածքը հափշտակելուց հետո, վերադարձան։

ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(4 ապրիլ 957—24 մարտ 958)

էջ 352

ՄԱՐԶՈՒԲԱՆԻ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռամադան ամսին (նոյեմբեր 957) Ատրպատականում մեռավ նրա տերը Սալլար Մարզուբանը։

Երբ նա [առողջանալու] հույսը կտրեց, իշխանությունը կտակեց իր եղբորը՝ Վահսուդանին, որից հետո պետք է անցներ իր որդուն՝ Ջաստան

*իբն ալ-Մարզուբանին։ Սակայն մինչ այդ նա դիմել էր բերդերի վրա իր թողած տեղակալներին, որ դրանք (բերդերը) իր մահվանից հետո հանձնեն միայն իր որդուն՝ Ջաստանին, որի մահից հետո պետք է տրվեին իր Իբրահիմ որդուն, իսկ եթե սա էլ մեռնի՝ իր [մյուս] որդուն՝ Նասիրին և եթե դրանցից ոչ մեկը չմնար, ապա իր եղբորը՝ Վահսուդանին։ Բայց, երբ այս կտակը տվեց իր եղբորը, տեղեկացրեց նրան իր և բերդերի հրամանատարների միջև եղած պայմանական նշանների մասին, որով նա կարող էր [հետագայում] այդ բերդերը ստանալ։*

*Երբ Մարզուբանը մեռավ, նրա եղբայրը՝ Վահսուդանը, [բերդերի հրամանատարներին] ուղարկեց իր կնիքը և պայմանական նշանները, սակայն նրանք ցույց տվեցին նրան առաջին կտակը։ Վահսուդանը կասկածեց, որ եղբայրը խաբել է իրեն։ Նա մնաց իր եղբորորդիների մոտ, սակայն,. երբ նրանք իշխանությունը իրենց ձեռքը վերցրին առանց նրա, նա հեռացավ Արդաբիլից, ապաստանելով Թարոմ։*

*Իշխանությունը վերցրեց Ջաստանը, իրեն ենթարկելով եղբայրներին, իսկ վեզիր նշանակվեց Աբու Աբգալլահ ալ-Նաիմին։ Նրան ներկայացան իր հոր զորավարները, բացի Ջաստան իբն Շարմազանից, որը վճռել էր գրավել Հայաստանը, քանի որ նրա կառավարիչն էր [համարվում]։*

*Իսկ Վահսուդանը սկսեց երկպառակություն մտցնել իր եղբորորդիների միջև, իրար դեմ գրգռել և թշնամիներին դրդել նրանց դեմ, մինչև որ հասավ իր նպատակին և նրանցից մի քանիսին սպանեց։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ*

(3 մարտ 960—19 փետրվար 961)

*էջ 357*

### ՄՈՒՍՏԱՋԻՐ ԲԻԼԼԱՀԻ՝ ԵՐԵՎԱՆ ԳԱԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ատրպատականում ալ-Մուքտաֆի Բիլլահ [խալիֆայի] որդի Իսայի որդիներից մեկը երևան եկավ, որը կրում էր Մուստաջիր Բիլլահ անունը։*

*Նա [հավատարմության] երդում տվեց Մուհամմադի ընտանիքից սերվող Ռիդային, բրդե զգեստ հագավ, արդարություն էր գործում, հրամայում էր բարիք [գործել] և արգելում չարիքը։ Նրա հետևորդները շատացան։*

*Նրա երևան գալու պատճառն այն էր, որ Ատրպատականի տեր Ջաստան իբն ալ-Մարզուբանը թողել էր իր հոր՝ զորքով զբաղվելու սովորու-*

թյունը և զբաղվում էր խաղերով ու կանանց հետ հավաքույթներով։ Այդ ժամանակ Ջաստան իբն Շարմակնը Հայաստանում ամրացած էր, իսկ Վահսուդանը Թարոմում էր և բանսարկություններ էր գցում իր եղբորորդիների մեջ, որպեսզի կռվեն իրար հետ։ Ջաստան իբն ալ-Մարզուբանը ձերբակալեց իր վեզիր Նաիմիին, բայց քանի որ սա ազգակցական կապ ուներ Ջաստան իբն Շարմազանի վեզիր Աբու-լ-Հասան Ուբայդալլահ իբն Մուհամմադ իբն Համդույայի (Համդավայհ) հետ, ապա վերջինս ըմբոստացավ Նաիմիի ձերբակալման համար և իր տիրոջը՝ իբն Շարմազանին դրդեց, որ նամակագրության մեջ մտնի Հայաստանում գտնվող Իբրահիմ իբն ալ-Մարզուբանի հետ։ Սա գրեց և դրդեց նրան [Ատրպատականում] իշխանությանը տիրանալու, և, իրոք, սա եկավ, հարձակվեց Մարաղայի վրա ու գրավեց այն։

Երբ Ջաստան իբն ալ-Մարզուբանն այդ բանն իմացավ, նամակ գրեց իբն Շարմազանին, որի վեզիրն էր Աբու-լ-Հասանը։ Նա երկուսի հետ էլ լավացրեց իր հարաբերությունները և վստահեցրեց, որ ազատ կարձակի Նաիմիին և այսպիսով [իբն Շարմազանը] հրաժարվեց Իբրահիմին օգնելուց։ Սակայն [իբն ալ-Մարզուբանը] և իր եղբայրը իմացան, որ իբն Շարմազանը կեղծում է իրենց և նրանք նամակների միջոցով պայմանավորվեցին նրա դեմ (պայքարել)։ Այդ ժամանակ Նաիմին փախավ Ջաստան իբն ալ-Մարզուբանի բանտից ու գնաց Մուղան, նամակ գրեց Իբն Իսա իբն ալ-Մուքտաֆի Բիլլահին ու հրապուրեց նրան խալիֆայական իշխանությամբ, խոստանալով զորք հավաքել ու նրա անունով տիրել Ատրպատականին, իսկ եթե հնարավորություն ունենա՝ նաև Իրաքին։ [Իբն Իսան] եկավ նրա կողմը երեք հարյուր հոգով, և այստեղ եկավ նաև Ջաստան իբն Շարմազանը, և սա ուժեղացավ ու մարդիկ նրան [հավատարմության] երդում տվեցին, և նրա գործը հաջողություն գտավ։ Նրանց դեմ դուրս եկան Մարզուբանի որդիները՝ Ջաստանը և Իբրահիմը, կռվելու նպատակով։ Երբ նրանք բախվեցին, Մուստաջիրի մարդիկ փախուստի դիմեցին, իսկ ինքը գերի ընկավ և ոչնչացվեց։ Ասվում է, որ նա սպանվեց, ասվում է նաև, թե՝ մեռավ [բնական մահով]։

էջ 357

## ՎԱՀՍՈՒԴԱՆԻ՝ ԻՐ ԵՂԲՈՐՈՐԴԻՆԵՐԻՆ ԲՌՆԵԼՈՒ ԵՎ ՍՊԱՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Իսկ Վահսուդանը, երբ տեսավ իր եղբորորդիների անհամաձայնությունը և թե ինչպես նրանցից ամեն մեկը ձգտում էր մյուսին դավել, Մուստաջիրի հետ կռվից հետո գրեց Իբրահիմին ու հրավիրեց իր մոտ այցելության։ Սա եկավ, հորեղբայրը հյուրասիրեց նրան և այնքան նվեր-

ներ տվեց, որ սա լիացավ։ Նա գրեց նաև իր մյուս եղբորորդուն՝ Նասիրին՝ ու հրապուրեց նրան։ Սա թողնելով իր եղբորը՝ Ջաստանին, գնաց Մուղան, իսկ զորքը կարծելով, որ արդեն առիթ է ներկայացել ավար (ունեցվածք) ձեռք բերելու, մեծ մասամբ լքեց Ջաստանին ու գնաց եղբոր՝ Նասիրի ետևից։ Այսպիսով, սա եղբորից՝ Ջաստանից, ավելի ուժեղ դարձավ ու գրավեց Արդաբիլը, սակայն երբ զինվորները Նասիրից դրամ պահանջեցին, վերջինս չկարողացավ գոհացնել, մանավանդ որ հորեղբայրը՝ Վահսուդանը, հրաժարվեց նրան օգնելուց։ Երբ նա [Նասիրը] իմացավ, որ վերջինս սոսկ հրապուրում է նրան, նամակ գրելով իր եղբորը՝ Ջաստանին, հաշտվեց նրա հետ ու գաշնակցեց։

Սակայն, քանի որ գրամական խիստ նեղության մեջ էին, գործերը խառն էին, իսկ գավառների կառավարիչները բռնության միջոցով իրենց ձեռքի տակ եղած [տիրույթների] տերերն էին դարձել, ապա Ջաստանը և Նասիրը՝ Մարզուբանի որդիները, ստիպված եղան իրենց մոր հետ գնալ հորեղբոր՝ Վահսուդանի մոտ։ Նրանք նախօրոք նամակ գրեցին նրան և պայմանագրեր վերցնելուց հետո նրա մոտ գնացին։ Սակայն, երբ գնացին, սա դավաճանեց, ուխտադրուժ եղավ ու ձերբակալեց նրանց՝ Ջաստանին, Նասիրին և նրանց մորը՝ իրեն ենթարկելով զորքը։ Նա իշխանությունը հանձնեց իր որդուն՝ Իսմայիլին, տալով իր բերդերի մեծ մասը և դրամ բաժանելով գոհացրեց զորքը։

[Այդ ժամանակ] Իբրահիմ իբն ալ-Մարզուբանը գնացել էր Հայաստան[210]։ Սա կռվի պատրաստվեց Իսմայիլի դեմ, նպատակ ունենալով իր երկու եղբայրներին ազատել հորեղբոր՝ Վահսուդանի բանտից։ Երբ Վահսուդանը այս բանը լսեց և տեսավ, որ բոլորը տրամագրված են իր դեմ, աճապարեց սպանել եղբոր որդիներին՝ Ջաստանին ու Նասիրին, ինչպես նաև նրանց մորը։ Նա գրեց Ջաստան իբն Շարմազանին, պահանջելով հարձակվել Իբրահիմի վրա։ Նա զորք և գրամ ուղարկեց նրան և սա կատարեց նրա պահանջը։ Իբրահիմը ստիպված եղավ փախչել ու վերադառնալ Հայաստան, իսկ իբն Շարմազանը տիրացավ նրա ճամբարին ու Մարաղա քաղաքին, Ուրմիայի հետ միասին[211]։

Էջ 358

## ՍԱՅՖ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ՝ ՌՈՒՄԻ ԵՐԿԻՐԸ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այգ տարում Սայֆ ալ-Դաուլան մեծ զորքով արշավեց Ռումի երկիրը, շատ հաղթանակներ տարավ, հրկիզեց ու գրավեց բազում բերդեր և վերցնելով մեծ թվով գերիներ ու ավար, հասավ Խարսիանոն (Խարշանա)։ Ապա հոռոմները բռնեցին կիրճերը և, երբ նա ուզեց վերադառնալ, նրա

հետ եղած Տարսոնի զորքերը ասացին նրան՝ հոռոմները տիրացել են քո թիկունքում գտնվող կիրճերին (լեռնանցքներին) և չես կարող այստեղից վերադառնալ։ Ավելի լավ է, որ մեզ հետ վերադառնաս։ Սակայն նա չընդունեց, քանզի համառ էր իր կարծիքի վրա, սիրում էր պնդել և ոչ ոքի հետ չէր խորհրդակցում, որ չասվի, թե ուրիշի կարծիքով շարժվեց։ Նա վերադարձավ նույն կիրճով, որի միջով եկել էր և ահա նրա առջև ելան հոռոմները, խլեցին նրա ամբողջ ավարն ու բեռները, կոտորեցին նրա մարդկանց ու շատերին սպանեցին ու գերեցին։ Նա մեծ դժվարությամբ հազիվ կարողացավ փրկվել երեք հարյուր մարդկանց հետ միասին։ Սա է խելոք մարդկանց կարծիքը անտեսելու վատ հետևանքը։ Իսկ ճշմարտությունը միայն ալլահը դիտի։

ՀԱՏՈՐ ՅՈԹԵՐՈՐԴ

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(9 փետրվար 962—29 հունվար 963)

էջ 5

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այս տարվա Ջումադա Բ (7 հուլիս—4 օգոստոս) ամսին Սայֆ ալ-Դաուլան վերակառուցեց Անազարբան (Այն Զարբա) և իր հաջիբին Տարսոնի բնակիչներից բաղկացած զորքով ուղարկեց Ռումի երկիրը։ Սրանք ավերեցին, կոտորեցին, գերեվարեցին ու վերադարձան։ Իսկ հոռոմները հարձակվեցին Սիս (Սիսիյյա) ամրոցի վրա ու տիրեցին։

Այդ տարում Սայֆ ալ-Դաուլայի ծառա (ղուլամ) Նաջան զորքով հարձակվեց Խարբերդի (Հիսն Զիյադ) վրա։ Հոռոմների մի զորամաս դիմադրեց նրան, սակայն նա հաղթեց և հոռոմներից հինգ հարյուր հոգի հանձնվեց երաշխավորագրով։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(30 հունվար 963—18 հունվար 964)

էջ 7

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այս տարում Ռաբի Ա (30 մարտ—28 ապրիլ) ամսին հայերը հետիոտն (ռաջջալա) մեծ բազմությամբ հավաքվելով դուրս եկան Եդեսիայի դեմ, հարձակվեցին, կողոպտեցին, գերեցին և լի ավարով վերադարձան։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

**(19 հունվար 964—6 հունվար 965)**

*էջ 9*

### ՆԱՋԱՅԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՈՒ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՍԱՅՖ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՐՈՇ ՄԱՍԵՐԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Մենք արդեն հիշեցինք, թե ինչ էր արել Սայֆ ալ-Դաուլա իբն Համդանի ծառա (ղուլամ) Նաջան խառանի ժողովրդին [երեք հարյուր] հիսուներկու թվականին և թե ինչպես խլել էր նրանց ունեցվածքը։ Երբ այս դրամները կուտակվեցին նրա մոտ, նա իրեն ուժեղ զգալով երախտամոռ դարձավ, ապերախտ գտնվեց իր բարերարի նկատմամբ և ամբարշտությամբ շարժվեց դեպի Նփրկերտ (Մայյաֆարիկին) ու հարձակվեց Հայաստանի վրա, որի շատ մասերին տիրել էր մի արաբ՝ Աբու-լ-Վարդը[212], նրա հետ կռվեց Նաջան, և սպանեց Աբու-լ-Վարդին։ Նա գրավեց նրա բերդերը, ինչպես նաև Խլաթը, Մանասկերտը (Մանազքիրդ), Մուշը և այլ վայրեր։ Նրա մոտ շատ հարստություն կուտակվեց Աբու-լ-Վարդի ունեցվածքը հափշտակելուց և նա ապստամբեց Սայֆ ալ-Դաուլայի դեմ։

Այնպես պատահեց, որ այդ ժամանակ Մուիզզ ալ-Դաուլա իբն Բուայհը Բաղդադից շարժվեց դեպի Մոսուլ և Մծբին ու գրավեց և դուրս քշեց Նասիր ալ-Դաուլային, ինչպես կհիշենք շուտով։ Նաջան գրեց նրան, երբ նա Մծբինում էր, խնդրելով նրա օգնությունը իր տերերի՝ Համդանի տոհմի դեմ։ Սակայն երբ Մուիզզ ալ-Դաուլան վերադարձավ Բաղդադ ու հաշտվեց Նասիր ալ-Դաուլայի հետ, Սայֆ ալ-Դաուլան հարձակվեց Նաջայի վրա, քանի որ սա ապստամբել և ըմբոստացել էր։ Երբ նա հասավ Նփրկերտ, Նաջան փախավ, իսկ Սայֆ ալ-Դաուլան գրավեց նրա քաղաքներն ու բերդերը, որ սա իր հերթին գրավել էր Աբու-լ-Վարդից։ Նաջայի մերձավորներից որոշ մարդիկ երաշխավորագիր խնդրեցին նրանից (Սայֆ ալ-Դաուլայից), սակայն նա սպանեց նրանց։ Երաշխավորագիր խնդրեց նաև Նաջայի եղբայրը և նա լավ վերաբերվեց ու հարգեց նրան։ Նա (Սայֆ ալ-Դաուլան) մարդ ուղարկեց Նաջայի մոտ, համոզելով ու սպառնալով, որ վերադառնա, և սա եկավ նրա մոտ։ Նա լավ վերաբերվեց և նրան վերադարձրեց իր պաշտոնին։ Սակայն Սայֆ ալ-Դաուլայի ղուլամները (ծառաները) նրա ներկայությամբ հարձակվեցին Նաջայի վրա Սայֆ ալ-Դաուլայի տանը Նփրկերտում և սպանեցին նրան [երեք հարյուր] հիսունչորս թվականի Ռաբի Ա ամսին (18 մարտ—16 ապրիլ)։ Սայֆ ալ-Դաուլան շատ վատ զգաց, իսկ Նաջային դուրս տա-

րան ու գցեցին ջրի ու կեղտերի առուն, ուր նա մնաց մինչև հաջորդ օրը. ապա հանեցին ու թաղեցին նրան։

էջ 9

## ՀՌՈՄՆԵՐԻ ՄԱՄԵՍՏԻԱՆ ՊԱՇԱՐԵԼԸ ԵՎ ԽՈՐԱՍԱՆԻՑ ՌԱԶՄԻԿՆԵՐԻ ՀԱՍՆԵԼԸ

*Այդ տարում հռոմները Դոմեստիկոսի հետ պաշարեցին Մամեստիան (Մասիսա), բնակիչների դեմ կռվեցին և պարիսպը ծակեցին, սակայն բնակիչները նրա շուրջը ուժեղ դիմադրություն ցուցաբերեցին, մինչև որ նրանց ետ մղեցին՝ սաստիկ կռվից հետո։ Հռոմները հրկիզեցին նրա, ինչպես նաև Ադանայի ու Տարսոնի գավառները, քանի որ վերջիններիս բնակիչները օգնել էին սրա ժողովրդին։ Մահմեդականներից տասնհինգ հազար մարդ կոտորվեց։ Հռոմները երկրում մնացին տասնհինգ օր, սակայն ոչ ոք նրանց չդիմադրեց։ Նրանք գների թանկության և ուտելիքի պակասի պատճառով ետ դարձան։ Այդ ժամանակ Խորասանից Ասորիք եկավ մի մարդ՝ կռվելու նպատակով, իր հետ ունենալով մոտավորապես հինգ հազար ռազմիկ։ Նրանց ճանապարհը անցնում էր Հայաստանի ու Նփրկերտի վրայով։ Երբ Սաֆար ամսին (18 փետրվար—17 մարտ) հասան Սայֆ ալ-Դաուլայի մոտ, նրանց կռվի տարավ Ռումի երկրի դեմ, որպեսզի մահմեդականներին զորավիգ լինեն։ Սակայն տեսնելով, որ հռոմները վերադարձել են, խորասանյան ռազմիկներն էլ ցրվեցին Սահմանային գոտում (սուղուր)՝ թանկության պատճառով։ Նրանց մեծ մասը եկավ Բաղդադ, այնտեղից էլ գնաց Խորասան։*

*Երբ Դոմեստիկոսը վերադառնում էր Ռումի երկիրը Մամեստիայի, Ադանայի և Տարսոնի բնակիչներին լուր էր ուղարկել, թե ես հեռանում եմ ձեզանից ոչ թե թուլության, այլ անասնակերի պակասության և ուժեղ թանկության պատճառով։ Սակայն ես կվերադառնամ և ձեզանից, ով որ հեռացած լինի, կփրկվի, իսկ ում որ տեղում գտնեմ՝ կսպանեմ։*

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(28 դեկտեմբեր 965—16 դեկտեմբեր 966)

էջ 18

## ԻԲՐԱՀԻՄ ԻԲՆ ԱԼ-ՄԱՐԶՈՒԲԱՆԻ ՓԱԽՈՒՍՏԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Իբրահիմ իբն ալ-Մարզուբանը Ատրպատականից փախավ Ռեյ։*

Թանն այն էր, որ երբ Իբրահիմը պարտվեց Ջաստան իբն Շարմազանից, ինչպես հիշեցինք, երեք հարյուր քառասունինը թվականին, ապա նա գնաց Հայաստան և սկսեց պատրաստվել վերադառնալու համար Ատրպատական, իսկ Հայաստանի թագավորներն (տերերն) էին[213] հայեր և քրդեր։ Նա նամակագրություն ունեցավ Ջաստան իբն Շարմազանի հետ, հաշտվեց նրա հետ, և նրա մոտ շատ զորք հավաքվեց։

Այնպես պատահեց, որ [այդ ժամանակ] նրա հորեղբոր Վահսուդանի որդի Իսմայիլը մեռավ, և Իբրահիմը գնաց տիրացավ Արդաբիլին։ Աբու-լ-Կասիմ իբն Մասիքին եկավ Վահսուդանի մոտ և նրան միացավ։ Իբրահիմը գնաց իր հորեղբոր՝ Վահսուդանի դեմ իր եղբայրների վրեժը պահանջելով։ Վերջինս վախեցավ և իբն Մասիքիի հետ գնաց Դայլամի երկիրը, իսկ Իբրահիմը տիրացավ իր հորեղբոր գավառներին, հարվածեց նրա մերձավորներին ու գրավեց նրա ունեցվածքը։ Վահսուդանը հավաքեց զորքը և վերադարձավ իր Թարոմ (Թարում) բերդը, իսկ Աբու-լ-Կասիմ Մասիքիին զորքով ուղարկեց Իբրահիմի դեմ։ Նրանք իրար հանդիպեցին և մեծ ընդհարում եղավ, իսկ Իբրահիմը պարտվեց ու նրան հետապնդեցին, սակայն չհասան։ Նա գնաց մենակ, մինչև որ հասավ Ռեյ՝ Ռուքն ալ-Դինի մոտ։ Սա հյուրասիրեց նրան, լավ վերաբերվեց, քանի որ Իբրահիմի քրոջ ամուսինն էր և այդ պատճառով չափազանց հարգեց նրան և բազում ընծաներ ու պարգևներ տվեց։

*էջ 18*

## ԽՈՐԱՍԱՆՅԱՆ ՂԱԶԻՆԵՐԻ ԵՎ ՌՈՒՔՆ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ ՎԵՃԸ

Այս տարում Ռամադան ամսին (21 օգոստոս—19 սեպտեմբեր) Խորասանից դուրս եկավ մի մեծ բազմություն, որի թիվը հասնում էր քսան հազարի ու ժամանեց Ռեյ, որպես ղազի (հավատի ռազմիկ) կռվի գնալու նպատակով։ Լուրը հասավ [Բուայհի] Ռուքն ալ-Դաուլային, այն մասին, թե եկել են մեծ բազմությամբ, նրա երկրի ծայրամասերում չարագործություններ են կատարել, իսկ նրանց զորապետները այդ բանը չեն արգելել նրանց։ Նրա վեզիրը՝ ուստադ (ուսուցիչ, գիտնական) Աբու-լ-Ֆադլ իբն ալ-Ամիդը առաջարկեց չթողնել նրանց երկիրը մտնել։ Սակայն Ռուքն ալ-Դինն ասաց՝ թող այլ թագավորներ չկարծեն, թե ղազիների մի խմբից վախեցա։

Երբ նրանք Ռեյ հասան, զորապետները Իբն ալ-Ամիդի մոտ հավաքվեցին և իրենց ծախսերի համար դրամ պահանջեցին։ Նա խոստացավ, սակայն նրանք հանդգնորեն թելադրեցին, ասելով՝ պահանջում ենք այս

երկրի ամբողջ խարաջը (հարկը), քանզի դա արքունի գանձարանին (բայտ ալ-մալ) է պատկանում։ Չէ՞ որ հոռոմները, ինչպես տեղյակ եք, ինչեր են արել մահմեդականներին, գրավել են ձեր երկիրը, նույնն արել են նաև հայերը, իսկ մենք ղազիներ ենք, աղքատ ու թափառական և ավելի իրավունք ունենք [պետական] դրամների նկատմամբ, քան դուք։

էջ 19—20

## ՀՈՌՈՄՆԵՐԻ ՀԱՐՁԱԿՈՒՄԸ ԻՍԼԱՄԻ ԵՐԿՐԻ ՎՐԱ

Այդ տարվա Շավվալ (20 սեպտեմբեր—18 հոկտեմբեր) ամսին հոռոմները ելան ու հարձակվեցին Ամիդ քաղաքի վրա և պաշարեցին ու կռվեցին նրա բնակիչների հետ։ Երեք հարյուր մարդ կոտորեցին, չորս հարյուր հոգի գերեցին, սակայն չկարողացան գրավել։ Նրանք դիմեցին Դարա ու մոտեցան Մծբինին։ Նփրկերտից եկող մի քարավան հանդիպեց նրանց, որը գրավեցին։ Մարդիկ Մծբինից փախան, նրանցից վախենալով, այնքան որ մեկ անասունի (գրաստի) վարձը հարյուր դիրհեմ դարձավ։

Սայֆ ալ-Դաուլան, որը Մծբինում էր, կապ հաստատեց արաբների հետ, որպեսզի նրանց հետ փախչի։ Սակայն այնպես պատահեց, որ հոռոմները հեռացան նախքան նրա փախուստը կկայանար և նա մնաց իր տեղում։

Նրանք (հոռոմները) Ջազիրայից գնացին Ասորիք (Շամ), պաշարեցին Անտիոքը, երկար ժամանակ կռվեցին նրա բնակիչների դեմ, սակայն չկարողանալով գրավել, շրջակայքը ավերեցին, կողոպտեցին ու վերադարձան Տարսոն։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ

(14 նոյեմբեր 969—3 նոյեմբեր 970)

էջ 37

## ՀՈՌՈՄՆԵՐԻ ՄԱՆԱԶԿԵՐՏԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռումի թագավորը զորք ուղարկեց Մանազկերտ (Մալազքիրդ), որը Հայաստանում է, և պաշարեց այն ու նեղը գցելով տեղի մահմեդականներին, բռնի ուժով գրավեց[214]։ Նրանց (հոռոմների) ուժը ավելացավ, և երկրի տարբեր կողմերում մահմեդականները վախենում

էին նրանցից։ Երկիրը անտեր էր մնացել, առանց պաշտպանի և [հոռոմները] ուր որ կամենային կհարձակվեին։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(12 հոկտեմբեր 972—1 հոկտեմբեր 973)

էջ 49

### ՀՌՈՄՆԵՐԻ ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԴՈՄԵՍՏԻԿՈՍԻ ԳԵՐԻ ԸՆԿՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում ընդհարում տեղի ունեցավ Հիբատուլլահ իբն Նասիր ալ-Դաուլա իբն Համդանի և Դոմեստիկոսի (Դումուստուկի) միջև Նփըրկերտի (Մայյաֆարիկին) գավառում։

Բանն այն է, որ, ինչպես հիշեցինք, Դոմեստիկոսը արշավել էր իսլամի երկիրը և կողոպտել Դիար Ռաբիան ու Դիար Բաքրը։ Երբ Դոմեստիկոսը տեսավ, որ դիմադրող չկար, ցանկացավ տիրանալ նաև Ամիդին։ Նա առաջ շարժվեց, իսկ այնտեղ կար Աբու-լ-Հայջա իբն Համդանի ղուլամ Հազարմարդը։ Սա նամակ գրեց, օգնություն և օժանդակություն խնդրելով Աբու-Տաղլիբից[215], բացատրելով դրությունը։ Վերջինս նրա մոտ ուղարկեց իր եղբորը՝ Աբու-լ-Կասիմ Հիբատուլլահ իբն Նասիր ալ-Դաուլային, և սրանք երկուսով պատրաստվեցին Դոմեստիկոսի դեմ կռվի ու եկան հանդիպեցին նրան Ռամադանի վերջին։ Դոմեստիկոսը մեծ զորքով էր, սակայն այն երկուսը նրան հանդիպեցին մի կիրճում, որի միջով ձիերը չէին կարող անցնել, իսկ հոռոմները պատրաստ չէին, ու պարտվեցին և մահմեդականները գերի վերցրեցին Դոմեստիկոսին։ Սա բանտարկված մնաց, մինչև որ հիվանդացավ երեք հարյուր վաթսուներեք թվականին։ Աբու Տաղլիբը շատ ջանք թափեց նրան բուժելու, հավաքեց բժիշկներին, սակայն ոչինչ չօգնեց ու մեռավ։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(19 օգոստոս 977—8 օգոստոս 978)

էջ 92—93

### ԱԴՈՒԴ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ՝ ՀԱՄԴԱՆԻ ՏՈՀՄԻ ՏԻՐՈՒՅԹՆԵՐԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երբ Աբու Տաղլիբը և Բախտիարը պարտվեցին, Ադուդ ալ-Դաուլան շարժվեց դեպի Մոսուլ և Ջու-լ-Կադա [ամսի] տասներկուսին գրավեց այն հարակից շրջանների հետ։

Աբու Տաղլիբը կարծեց, որ սա ևս ուրիշների նման մի քիչ մնալուց հետո հաշտություն կկնքի և կվերադառնա, սակայն Ադուդ ալ-Դաուլան շատ վճռական էր։ Մոսուլ գալիս իր հետ բերել էր պարեն, անասնակեր և Մոսուլն ու նրա նահանգը ճանաչող մարդկանց։ Նա վստահ հաստատվեց Մոսուլում ու ձիավոր ջոկատներ ուղարկեց փնտրելու համար Աբու Տաղլիբին։

Աբու Տաղլիբը լուր ուղարկեց նրան, խնդրելով, որ երաշխավորի իր տիրույթները, սակայն Ադուդ ալ-Դաուլան չընդառաջեց և ասաց՝ այս երկիրը ինձ համար ավելի ցանկալի է, քան Իրաքը։

Աբու Տաղլիբի մոտ էին Մարզուբան իբն Բախտիարը, Աբու Իսհակը և Աբու Թահիրը՝ Մուիզզ ալ-Դաուլայի որդիները, ինչպես նաև նրանց մայրը, որը Ումմ (մայր) Բախտիարն էր՝ իրենց իրերով։

Աբու Տաղլիբը շարժվեց դեպի Մծբին (Նասիբին), իսկ Ադուդ ալ-Դաուլան մի ջոկատ ուղարկեց Ջաղիրատ իբն Ումար՝ իր հաջիբ (սենեկապետ) Աբու Հարբ Թուղանի գլխավորությամբ։ Մի ջոկատ էլ ուղարկեց Սինջարի ճանապարհը՝ Աբու Տաղլիբին գտնելու, հրամանատար նշանակելով Աբու-լ-Վաֆա Թահիր իբն Մուհամմադին։

Աբու Տաղլիբը աճապարեց, եկավ Նփրկերտ և այնտեղ հաստատվեց իր ընտանիքի հետ, սակայն երբ լսեց Աբու-լ-Վաֆայի գալուստը իր դեմ, շարժվեց դեպի Բաղեշ (Բաղլիս)՝ իր հետ տանելով իր կանանց և ընտանիքի անդամներին։ Աբու-լ-Վաֆան հասավ Նփրկերտ, որի դռները փակ էին իր առջև։ Սա անառիկ բերդ էր՝ հոռոմների հին բերդերից։ Նա թողեց ու գնաց Աբու Տաղլիբին փնտրելու, իսկ վերջինս Կարինից (Արզան ալ-Ռում) հեռացել էր Հասանիյյա, որը Ջազիրայի շրջաններից էր, բարձրացել էր Քավաշի ամրոցը և այլ ամրոցներ հավաքելով իր ամբողջ ունեցվածքը։ Աբու-լ-Վաֆան վերադարձավ Նփրկերտ ու պաշարեց այն։

Երբ Ադուդ ալ-Դաուլան լսեց, թե Աբու Տաղլիբը գնացել է իր բերդերը, ինքն անձամբ գնաց նրա դեմ, սակայն չգտավ նրան, այլ միայն նրա (Աբու Տաղլիբի) մերձավորներից շատերը հանձնվեցին նրան։ Նա վերադարձավ Մոսուլ և Աբու Տաղլիբի հետևից զորք ուղարկեց իր բարեկամ զորավարներից մեկի հետ, որի անունն էր Թուղան։ Աբու Տաղլիբը փախավ Բաղեշ (Բաղլիս), կարծելով, որ ոչ ոք չի հետևի իրեն, սակայն Թուղանը հետապնդեց, և նա Բաղեշից փախչելով դիմեց Ռումի երկիրը, որպեսզի հարաբերության մեջ մտնի նրանց Վարդ ալ-Ռումի կոչված թագավորի հետ, որը թագավորական ընտանիքից չէր, այլ բռնությամբ թագավոր էր դարձել։ Հոռոմները նրան չենթարկվեցին և մեկ ուրիշին բերեցին իրենց թագավորների որդիներից, և պատերազմը երկարեց նրանց միջև։ Այս Վարդը ազգակցական կապ հաստատեց Աբու

Տաղլիբի հետ, որպեսզի հզորանա, սակայն Աբու Տաղլիբն էր, որ կարիք ուներ նրա օգնությանը։

Երբ Աբու Տաղլիբը Բաղեշից հեռանում էր, Ադուդ ալ-Դաուլայի զորքը հասավ նրա ետևից և ցանկացավ կողոպտել նրա մոտ եղած ամբողջ ունեցվածքը, քանզի լսել էր, որ շատ մեծ է։ Երբ զորքը հարձակվել էր, հրամանատարը գոչեց՝ ձեռք չտաք այդ հարստությանը, որովհետև դա Ադուդ ալ-Դաուլայինն է։ Այդ ժամանակ [զինվորները] ետ կանգնեցին կռվից։ Տեսնելով, որ նրանք թուլացան, Աբու Տաղլիբը հարձակվեց նրանց վրա և պարտության մատնեց՝ մեծ կոտորած սարքելով։ Ազատվելով նրանցից, նա եկավ Հիսն Զիյադ, որն այժմ հայտնի է Խարբերդ (Խարտբիրտ) անունով։

Հիշյալ Վարդը գրեց նրան, տեղեկացնելով, որ հռոմները հավաքվել են իր դեմ և օգնություն խնդրեց, ասելով՝ եթե վերջացնեմ [այս գործը], կգամ քեզ մոտ [օգնության]։ Աբու Տաղլիբն իր զորքից մի մաս ուղարկեց, սակայն այնպես պատահեց, որ Վարդը պարտվեց։ Աբու Տաղլիբը, երբ այդ բանն իմացավ, հույսը կտրեց հաղթանակից, վերադարձավ իսլամի երկիրը ու հաստատվեց Ամիդում։ Այստեղ նա մնաց երկու ամիս, մինչև որ Նփրկերտը գրավվեց։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(9 օգոստոս 978—28 հուլիս 979)

էջ 95

### ՆՓՐԿԵՐՏԻ, ԱՄԻԴԻ ԵՎ ԱՅԼ ՎԱՅՐԵՐԻ ԳՐԱՎՈՒՄԸ ԴԻԱՐԲԱՔՐՈՒՄ ԱԴՈՒԴ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ ԿՈՂՄԻՑ

Երբ Աբու-լ-Վաֆան վերադարձավ Աբու Տաղլիբին հետապնդելուց, պաշարեց Նփրկերտը (Մայյաֆարիկին), որի կառավարիչն էր Հազարմարդը։ Սա կազմակերպեց քաղաքի պաշտպանությունը և երեք ամիս կատաղի կռվեց Աբու-լ-Վաֆայի դեմ։ Ապա մեռավ Հազարմարդը և Աբու Տաղլիբին այդ մասին գրվեց և նա հրամայեց, որ նրա փոխարեն դրվի Համդանինների ծառաներից (ղուլամ) Մունիսը, որը դարձավ կառավարիչ։ Աբու-լ-Վաֆան ելք չգտնելով, նամակ գրեց քաղաքի երևելիներից Ահմադ իբն Ուբայդալլահին, սիրաշահելու նպատակով։ Սա համաձայնեց ու սկսեց քաղաքի հպատակներին (ժողովրդին) սիրաշահել Աբու-լ-Վաֆայի կողմը, և սրանք ևս համաձայնեցին, ու նրա ազդեցությունն

ումեղացավ։ Վերջինս լուր ուղարկեց Մունիսին, պահանջելով քաղաքի բանալիները, որը չկարողացավ մերժել, քանի որ [Ահմադը] համակիրներ շատ ուներ, և նա ուղարկեց [բանալիները], խնդրելով, որ իր համար երաշխավորագիր ստանա։ Ահմադ իբն Ուբայդուլլահը լուր ուղարկեց Աբու-լ-Վաֆային, որը երաշխավորեց նրա (Մունիսի) և ամբողջ բնակչության [անվտանգությունը]։ Այսպիսով դռները բացվեցին և քաղաքը հանձնվեց։

Աբու-լ-Վաֆան Նփրկերտը պաշարելու ժամանակ իր ջոկատներն էր ուղարկել դրացի բերդերը, որոնք բոլորը գրավվեցին։ Երբ Աբու Տաղլիբն այս լսեց, ինքը և իր քույրը՝ Ջամիլան, Ամիդից գնացին Ռահբա, և հրամայեց իր մերձավորներից ոմանց ապաստան խնդրել Աբու-լ-Վաֆայից, և նրանք արեցին։

Ապա Աբու-լ-Վաֆան եկավ պաշարեց Ամիդը։ Բնակիչները այս տեսնելով, Նփրկերտի բնակիչների օրինակին հետևեցին և երաշխավորագիր ստանալով քաղաքը հանձնեցին։ Աբու-լ-Վաֆան տիրեց ամբողջ Դիարբաքրին, և Աբու Տաղլիբի մերձավորները եկան հանձնվելու, իսկ նա երաշխավորեց նրանց և վերադարձավ Մոսուլ։

## ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(15 հունիս 893—3 հունիս 984)

*էջ 121—122*

### ՄԱՐՈՒԱՆԻՆԵՐԻ ՔԵՌԻ ԲԱԴ ԱԼ-ՔՈՒՐԴԻԻ ԵՎ ՆՐԱ՝ ՄՈՍՈՒԼԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում ումեղացավ Բադ ալ-Քուրդին[216], իսկ նրա անունն էր Աբու Աբդալլահ ալ-Հուսայն իբն Դուստաք։ Նա Համիդիյյա քրդերից էր։ Սկզբում հաճախ էր ասպատակում Դիար Բաքրի Սահմանային գոտին (սուղուր)։ Հաստամարմին էր, ջլապինդ և ուժեղ։

Երբ Ադուդ ալ-Դաուլան գրավեց Մոսուլը, սա եկավ նրա մոտ [ծառայության], սակայն, երբ Ադուդ ալ-Դաուլան տեսավ նրան, վախեցավ և ասաց՝ չեմ կարծում, որ ինձ մոտ մնա և իրոք, հենց որ դուրս եկավ, փախավ։ Նրա դուրս գալուց հետո Ադուդ ալ-Դաուլան հրամայեց ձերբակալել ու բերել նրան, որովհետև, ասաց Դաուլան, նա ջլապինդ է և ուժեղ, նրանում չարություն կա և այդպիսինին չի կարելի [կենդանի] թողնել։ Հայտնեցին, որ փախել է, նա այլևս չհետաքրքրվեց նրանով։

Նա (Բադը) գնաց Դիար Բաքրի Սահմանային գոտին և մնաց, մինչև որ հաջողություն գտավ, ուժեղացավ ու Ադուդ ալ-Դաուլայի մահվանից հետո գրավեց Նփրկերտը (Մայյաֆարիկին) ու Դիար Բաքրի մեծ մասը։ Նրա մարդկանցից մի խումբ եկավ ու գրավեց Մծբինը։

[Բուայհի] Սամսամ ալ-Դաուլան[217] զորք պատրաստեց և ուղարկեց Աբու Սադ Բահրամ իբն Արդաշիրի հետ, սակայն կռվում պարտվեց Բահրամը և նրա մերձավորների մի խումբ գերի ընկավ, իսկ Բադի ուժն ավելացավ։ Սամսամ ալ-Դաուլան ուղարկեց հաջիբ Աբու-լ-Կասիմ Սագ իբն Մուհամմադին՝ մեծ զորքով, և բախվեցին Բաջլայայում, Խաբուր ալ-Հուսայնիյյայի վրա, Քավաշի գյուղի մոտ։ Սաստիկ կռիվ եղավ, Սագը և ընկերները փախուստի դիմեցին, իսկ Բադը շատ դելմիկների (դայլամի) բռնեց, սպանեց ու գերեվարեց, ապա անխնա կոտորեց գերիներին։

Երբ Բադը փախուստի մատնեց դելմիկներին ու Սագին և արեց այն, ինչ որ ասվեց, Սագը կանխեց նրան ու մտավ Մոսուլ, և Բադը նրան հետապնդեց։ Ժողովուրդը ապստամբեց Սագի դեմ՝ դելմիկների վատ վերաբերմունքի պատճառով։ Սա հազիվ ազատվեց նրանցից, իսկ Բադը մտավ Մոսուլ ու գրավեց։

Նրա ուժն ավելացավ, դուրս եկավ ծայրամասայինների շարքից ու դասվեց մեծամեծների շարքը և նա մտածեց գրավել Բաղդադը և այնտեղից վերացնել դելմիկներին։ Սամսամ ալ-Դաուլան վախեցավ ու մտահոգվեց և միայն այս հարցով էր զբաղվում։ Նա զորք հավաքեց նրա դեմ ուղարկելու համար, սակայն տարին վերջացել էր։

Իմ (Իբն ալ-Ասիրի) մտերիմ Համիդիյյա քրդերից մեկը, որ Բադի մասին հետաքրքրվում է, ինձ պատմել է, որ Բադի քունյան[218] էր Աբու Շուջա, անունը Բադ, իսկ Աբու Աբդալլահը Հուսայն իբն Դուստաքն է՝ Բադի եղբայրը։

Նա սկզբում հոտեր էր արածացնում, հյուրասեր էր ու առատաձեռն, իր ունեցած ոչխարները մորթում էր ու մարդկանց հյուրասիրում և այդ պատճառով, որպես առատաձեռն հայտնի դարձավ։ Նրա մոտ զորք հավաքվեց, սկսեց ճանապարհ կտրել և ինչ որ ստանում էր բաժանում էր։ Նրա մարդկանց թիվը աստիճանաբար շատացավ, և նա սկսեց արշավանքներ կատարել, ապա մտավ Հայաստան, գրավեց Արճեշ (Արջիշ) քաղաքը և դա առաջին քաղաքն էր, որ նա գրավել էր։ Նա ուժեղացավ և այնտեղից գնաց Դիար Բաքր ու գրավեց Ամիդ քաղաքը, ապա Նփրկերտը (Մայյաֆարիկին) և Դիար Բաքրի այլ քաղաքներ։ Գրավեց նաև Մոսուլը, ինչպես արդեն հիշեցինք։

## ԴՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

## (24 մայիս 985—12 մայիս 986)

*էջ 126—127*

### ՎԱՐԴ ԱԼ-ՌՈՒՄԻԻ ԱԶԱՏ ԱՐՁԱԿՄԱՆ, ՆՐԱ ԳՈՐԾԵՐԻ ԵՎ ՌՈՒՍՆԵՐԻ ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այգ տարում Սամսամ ալ-Դաուլան ազատ արձակեց Վարդ ալ-Ռումիին[219], որի բանտարկության մասին խոսել ենք։*

*Արդ, նա բաց թողեց և ազատ արձակեց նրան այն պայմանով, որ մեծ թվով մահմեդական գերիների արձակեր, Ռումի բերդերից յոթը շըրջակա գավառների (ռուստակ) հետ միասին հանձներ և քանի կենդանի էր իսլամի երկրի վրա չհարձակվեր ո՛չ նա, ո՛չ էլ նրա մերձավորներից որևէ մեկը։ Նա նրան (Վարդին) դրամ և այլ բաներ մատակարարեց, և սա գնաց Ռումի երկիրը։ Ճանապարհին շատերին ներգրավեց, թե՛ անապատի, թե՛ այլ վայրերի բնակիչներից և հրապուրեց նրանց նվերների ու կողոպուտի հույսով։ Նա եկավ, մինչև որ հասավ Մալաթիա, գրավեց այն և, այսպիսով, իր դիրքը ուժեղացրեց, օգտագործելով նաև այն դրամները և միջոցները, որ այնտեղ կային։ Նա դիմեց Վարդիս իբն Լաունին, հետը նամակագրություն ունեցավ և նրանք պայմանավորվեցին, որ Կ. Պոլիսը (Կուսթանթինիյյա) և ծոցի՝ նրան հարող հյուսիսային շրջանները Վարդիսին լինեն, իսկ ծոցից այս կողմ (հարավում) ընկածը՝ Վարդին։ Նրանք դաշնակցեցին և միացան։*

*Վարդիսը [հանկարծ] ձերբակալեց Վարդին ու բանտարկեց, բայց զղջաց և շուտով ազատ արձակեց։ Վարզիսն անցավ ծոցն ու պաշարեց Կ. Պոլիսը, որտեղ կային երկու թագավորներ՝ Ռոմանոսի (Արմանուս) որդիներ Վասիլը (Բասիլ) և Կոստանդինը (Կուսթանթին)։*

*Նա (Վարդիսը) նրանց շատ նեղեց, և նրանք նամակով դիմեցին ռուսների (Ռուսիյյա) թագավորին, օգնության կանչեցին և նրան ամուսնացրին իրենց քրոջ հետ։ Սակայն [նրանց քույրը] մերժած լինելով հանձնըվել այլակրոնին, նա (ռուսների թագավորը) քրիստոնյա դարձավ, և սա ռուսների մոտ քրիստոնեության սկիզբն էր։ Նրանք ամուսնացան, և նա (ռուսաց թագավորը) գնաց Վարդիսի դեմ ու կռվեց նրա հետ։ Վարդիսն սպանվեց և երկու թագավորները իրենց իշխանությունը պահպանեցին։ Նրանք նամակ գրեցին Վարդին հաստատելով նրա իշխանությունը այն ամենի վրա, որ իր ձեռքում էր։ Սա երկար ապրելուց հետո մեռավ։ Ասվում է, որ նա թունավորումից մեռավ։*

*Վասիլը (Բասիլ) առաջ գնաց թագավորության կառավարման մեջ։ Նա քաջ էր, արդար, իմաստուն և նրա թագավորությունը հարատևեց։*

*Նա երեսունհինգ տարի պատերազմեց բուլղարների հետ, հաղթեց նրանց, շատերին իրենց երկրից դուրս քշեց և հոռոմների բնակեցրեց։ Նա բարյացակամ էր վերաբերվում մահմեդականներին և համակրանք ուներ նրանց նկատմամբ։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ*

**(31 մարտ 990—19 մարտ 991)**

*էջ 143*

## ՄԱՐՈՒԱՆԻ ՈՐԴԻՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՍԿԻԶԲԸ

*Երբ Բադն սպանվեց, նրա քեռորդին՝ Աբու Ալի իբն Մրուանը (Մարուան) զորքի մի մասի հետ գնաց Հիսն Քայֆա (Հիսն Քեյֆ), որը Տիգրիսի վրա է և լավագույն ամրոցներից է։ Այնտեղ էր Բադի կինը իր ընտանիքով։ Երբ հասավ բերդը, ասաց քեռու կնոջը՝ քեռիս ինձ ուղարկել է քեզ մոտ կարևոր գործով։ Նա հավատաց նրան, և երբ [քեռորդին] բարձրացավ նրա մոտ, տեղեկացրեց նրա մահը և համոզեց, որ իր հետ ամուսնանա, և նա համաձայնեց՝ բերդում և այլ վայրերում իշխելու պայմանով։*

*Սա գնաց ու նվաճեց բազում բերդեր, մինչև որ գրավեց իր քեռու բոլոր տիրույթները։ Գնաց Նփրկերտ, ուր եկան նաև Աբու Թահիրը և Աբու Աբդալլահը՝ Համդանի որդիները, որոնք աչք ունեին նրա (Նփրկերտի) վրա։ Նրանց մոտ էր Բադի գլուխը։ Սրանք տեսնելով Աբու Ալիի ուժեղանալը, կռվի մտան նրա հետ ու ընդհարվեցին։ Սակայն հաղթեց Աբու Ալին և գերեց Աբդալլահ իբն Համդանին, որին լավ վերաբերվեց ու ազատ արձակեց։ Սա գնաց իր եղբոր՝ Աբու Թահիրի մոտ, որը պաշարել էր Ամիդը և առաջարկեց նրան հաշտվել Իբն Մրուանի (Մարուանի) հետ, սակայն նա մերժեց և ինքն էլ ստիպված եղավ նրան միանալ ու գնալ Իբն Մրուանի դեմ։ Սակայն կռվում պարտվեցին և Աբու Աբդալլահն էլ գերի ընկավ։ Նա [Իբն Մրուանը] վատ վերաբերվեց նրանց, մինչև որ Եգիպտոսի տերը գրեց նրան, բարեխոսեց և նա ազատ արձակեց նրանց։*

## *ԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ*

**(9 մարտ 992—25 փետրվար 993)**

*էջ 158*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ռումի թագավորը եկավ Հայաստան, պաշարեց Խլաթը, Մանազկերտը (Մալազքիրդ) և Արճեշը (Արջիշ)։ Մարդիկ վախեցան նրա-*

նից, ապա նրա հետ հաշտություն կնքեց Աբու-ալ-Հասան իբն Մարուանը, տաս տարվա համար, և Ռումի թագավորը վերադարձավ։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆ ԹՎԱԿԱՆ

(20 հունվար 1029—8 հունվար 1030)

էջ 335

## ՅԱՄԻՆ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ՝ ՌԵՅԸ (ՌԱՅ) ԵՎ ՋԱԲԱԼ ՆԱՀԱՆԳԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Յամին ալ-Դաուլա Մահմուդ իբն Սեբուքթեգինը (Սաբուքտաքին)[220] գնաց դեպի Ռեյյ (Ռայ)։ Նրա մոտ եկավ Մինուչիհր իբն Կաբուսը, որը Վրկանի (Ջուրջան) և Թաբարիստանի տերն էր և բերեց նրան չորս հարյուր հազար դինար և շատ նվերներ։

Իսկ Ռեյի տեր Մաջդ ալ-Դաուլա իբն Ֆախր ալ-Դաուլա իբն Բուայհը[221] նրան (Մահմուդին) գրել էր՝ բողոքելով իր զինվորներից։ Սա զբաղված էր կանանցով և [ձեռագիր] մատյանների ընթերցանությամբ և ընդօրինակությամբ։ Նրա մայրն էր թագավորությունը կառավարում և, երբ մեռավ, զորքը [իշխանությունը] խլելու ցանկություն ունեցավ, և դրությունը խառնաշփոթ էր։

Երբ նրա գրությունը հասավ Մահմուդին, նրա դեմ ուղարկեց մի զորք, որի հրամանատարն էր իր հաջիբը, հրամայելով ձերբակալել Մաջդ ալ-Դաուլային։ Երբ զորքը հասավ Ռեյ, Մաջդ ալ-Դաուլան ձիով ընդառաջ ելավ, սակայն նրան ու որդուն Աբու Դուլաֆին ձերբակալեցին։ Ձերբակալման լուրն առնելուն պես Յամին ալ-Դաուլան եկավ Ռեյ ու հասավ Ռաբի Բ (19 ապրիլ—17 մայիս) ամսին։ Նա մտավ [պալատ] ու վերցրեց հազար-հազար (միլիոն) դինար (ոսկեդրամ), հինգ հարյուր հազար դինար արժողությամբ գոհարեղեն, վեց հազար հատ զգեստ, իսկ գործիքներ և այլ բաներ անհաշիվ։

Իր մոտ բերել տվեց Մաջդ ալ-Դաուլային ու ասաց՝ չե՞ս կարդացել Շահնամեն՝ Պարսից պատմությունը, և Թաբարու պատմագիրքը, որը մահմեդականների պատմությունն է։ Ասաց՝ կարդացել եմ։ Ասաց՝ չի երեվում, որ կարդացել ես, իսկ ճատրակ (շաթրանջ, շախմատ) չե՞ս խաղացել։ Ասաց՝ խաղացել եմ։ Ասաց՝ տեսե՞լ ես մի արքա (շահ), որ մոտենա այլ արքայի։ Ասաց՝ ոչ։ Ասաց՝ իսկ ինչը քեզ ստիպեց, որ քո անձը հանձնես քեզանից ուժեղին։ Եվ նրան ձերբակալված ուղարկեց Խորասան։

Ապա նվաճեց Ղազվինը (Կազուին) և նրա ամրոցները...

Եվ Մահմուդի անունն էր հիշվում [ուրբաթ օրվա] խութբայի ժամանակ Ջաբալ նահանգի մեծ մասում, մինչև Հայաստանի սահմանները։

էջ 339—340

## ՂՈՒԶԶԵՐԻ (ՕՂՈՒԶՆԵՐԻ)՝ ԱՏՐՊԱՏԱԿԱՆՈՒՄ ԿԱՏԱՐԱԾ ԳՈՐԾԵՐԻ ԵՎ ՀԵՌԱՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

*Արդեն հիշել ենք, որ Ղուզզերի (ալ-ղուզզ)[222] մի խումբ հասել էր Ատրպատական, Վահսուդանը պատվեց նրանց ու խնամիացավ՝ հուսալով, որ օգնություն կստանա և կկանխի նրանց չարագործությունները։ Նրանց զորավարների անուններն էին՝ Բուկա, Քուքտաշ, Մանսուր և Դանա։ Սակայն նրա հույսերը չիրականացան, քանզի նրանք անմիջապես անցան չարագործության, ապականության, սպանության և կողոպուտի։ Գնացին Մարաղա (չորս հարյուր) քսանինը թվականին, վառեցին մզկիթը, անխնա կոտորեցին հասարակ ժողովրդին, ինչպես նաև Հադբանիյյա քրդերին։ Դրությունը ծանրացավ, և չարիքը շատացավ։ Երբ քրդերը տեսան, թե ինչ էր կատարվում իրենց հետ և իրենց երկրում, որոշեցին բանակցել և համաձայնություն կայացնել, որպեսզի ետ մղեն նրանց (օղուզների) չարիքը։ Այսպիսով, Աբու-լ-Հայջա իբն Ռաբիբ ալ-Դաուլան և Ատրպատականի տեր Վահսուդանը համաձայնեցին և սկսեցին համատեղ գործել։ Նրանց միացավ նաև այդ երկրի ժողովուրդը, և սկսեցին վրեժ լուծել ղուզզերից։ [Վերջիններս] տեսնելով, որ երկրի ժողովուրդը իրենց դեմ ոտքի է կանգնել պայքարի, հեռացան Ատրպատականից, քանզի անկարելի էր այնտեղ մնալը։*

. . . .

*Երբ Ալա ալ-Դաուլան հեռացավ Ռեյից, նրան հետևեց ղուզզերի մի խումբ, սակայն չհասավ նրան և թեքվեց դեպի Քարաջ, կողոպտեց և ամենաայլանդակ արարքները գործեց։ Նրանցից մի խումբ Նասուղլիի գլխավորությամբ գնաց Ղազվին (Կազուին), որի բնակիչները դիմադրեցին, սակայն հաշտություն կնքեցին՝ յոթ հազար դինար [վճարելու պայմանով] և նրանց հպատակվեցին։ Նրանցից մի խումբ կար Ուրմիայում, որը գնաց Հայոց երկիր (Բիլադ ալ-Արման), հարձակվեց, ջարդեց, շատերին կոտորեց, կողոպտեց, գերեվարեց ու վերադարձավ Ուրմիա՝ Աբու-լ-Հայջա ալ-Հադբանիի գավառը։ Այստեղ նրանց հետ կռվի մտան քրդերը, որոնք զայրացած էին նրանց (օղուզների) վատ հարևանությունից։ Շատերն սպանվեցին, և ղուզզերը կողոպտեցին ամբողջ երկիրը և քրդերից շատերին սպանեցին։*

*էջ 341*

## ՂՈՒԶԶԵՐԻ՝ ԴԻԱՐ ԲԱՔՐ ՄՏՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*[Չորս հարյուր] երեսուներեք թվին (31 օգոստոս 1041—20 օգոստոս 1042) ղուզզերը հեռացան Ատրպատականից։*

*Պատճառն այն է, որ Իբրահիմ Յաննալը[27], որը Թուղրիլ բեկի եղբայրն էր, գնաց Ռայյ։ Սակայն, երբ այնտեղ եղած ղուզզերը լսեցին, վախից թողեցին Ջաբալ երկիրը և հեռացան, գնացին Ատրպատական։ Բայց այստեղ ևս չէին կարող մնալ, քանի որ վատ էին վերաբերվել նրա ժողովրդին և Իբրահիմ Յաննալը իրենց ետևում էր, իսկ նրանից վախենում էին, որովհետև նրա Թուղրիլ բեկ և Դաուդ եղբայրների հպատակներն էին։ Այդ պատճառով նրանք իրենց հետ վերցրին մի խումբ քրդերի, որոնք ճանապարհը գիտեին, անանցանելի լեռներով գնացին Անձևացիք (ալ-Զավազան) և այնտեղից դուրս եկան Ջազիրատ իբն Ումար։*

*Բուկան, Նասուղլին և ուրիշներ եկան Դիար Բաքր, կողոպտեցին Կարդան, Բազաբդան, ալ-Հասանիյյան և Ֆիշաբուրը, իսկ Մանսուր իբն Ղիզուղլին մնաց Ջազիրայի արևելյան կողմերում։ Նրա հետ նամակագրեց Ջազիրայում իշխող Սուլայման իբն Նասր ալ-Դաուլա իբն Մարուանը՝ առաջարկելով հաշտություն կնքել և մնալ Ջազիրայում, մինչև որ ձմեռն անցներ, որից հետո այլ ղուզզերի հետ կգնար Ասորիք։ Նրանք հաշտություն կնքեցին և հավատարմություն երդվեցին։ Սակայն Սուլայմանը գավագրություն էր նյութում [Մանսուրի դեմ]։ Նա հանդիսավոր ճաշկերույթ սարքեց ու հրավիրեց նրան, սակայն, երբ սա մտավ Ջազիրայի [իրեն պատկանող մասը], նա ձերբակալել տվեց նրան, բանտարկեց, իսկ նրա զորքը ցրվեց ամեն կողմ։*

*Երբ այդ մասին իմացավ Կարվաշը, մեծ զորք ուղարկեց, որին միացան Բաշնավի քրդերը, Ֆանսքի զորքը և Նասր ալ-Դաուլայի զորքը։ Նրանք հետապնդեցին ղուզզերին, հասան ու կռվի բռնվեցին նրանց հետ։ Ղուզզերը առաջարկեցին վերադարձնել ամեն ինչ, որ իրենք ավարի էին տվել, պայմանով, որ երաշխավորագիր (աման) տրվի, սակայն չտրվեց։ Այն ժամանակ [ղուզզերը] կռվեցին այնպես, ինչպես կկռվեին մահվան [ըսպառնալիքից] վախեցող մարդիկ, և արաբներից շատերին սպանեցին ու նրանք ցրվեցին։*

*Ղուզզերից ոմանք գնացել էին Մծբին (Նասիբին) և Սինջար՝ արշավանքի, սակայն վերադարձան Ջազիրա ու պաշարեցին այն։ Արաբները գնացին Իրաք՝ այնտեղ ձմեռելու համար, իսկ ղուզզերը ավերեցին Դիար Բաքրը, կողոպտեցին, կոտորեցին։ Նասր ալ-Դաուլան վերցրեց իր որդու՝ Սուլայմանի մոտ [դերի վիճակում] գտնվող ղուզզերի ամիր Մանսուրին*

և նամակ գրեց ղուզզերին՝ առաջարկելով դրամ տալ ու Մանսուրին ազատ արձակել, պայմանով, որ հեռանան իր տիրույթներից և նրանք համաձայնեցին։ Նա բաց թողեց Մանսուրին, որոշ գումար ուղարկեց, սակայն [ղուզղերը] դավաճանեցին և է՛լ ավելի մեծ չարիքներ գործեցին։ Նրանց մի մասը գնաց Մծրին (Նասիբին), Սինջար և Խաբուր, կողոպտեց ու վերադարձավ. մի մասն էլ գնաց Ջուհայնա և ալ-Ֆարջի կողմերն ու կողոպտեցին։ Նրանցից վախենալով Կարվաշը մտավ Մոսուլ։

էջ 342

## ՄՈՍՈՒԼԻ ԺՈՂՈՎՐԴԻ՝ ՂՈՒԶԶԵՐԻ ԴԵՄ ԱՊՍՏԱՄԲԵԼՈՒ ԵՎ ՆՐԱՆՑ ՀԵՏ ԿԱՏԱՐՎԱԾԻ ՄԱՍԻՆ

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Երբ նրանք (ղուզղերը) երկար մնացին այդ երկրում և պատահեց այն, ինչ որ հիշել ենք, ալ-Մալիք Ջալալ ալ-Դաուլա իբն Բուայհր գրեց Թուղրիլ բեկին, պատմելով եղածի մասին։ Նրան գրեց նաև Նասր ալ-Դաուլա իբն Մարուանը, բողոքելով նրանց (ղուզզերի) դեմ[227]։

[Թուղրիլ բեկը] գրեց Նասր ալ-Դաուլային՝ լսեցի, որ մեր ստրուկները (աբիդ)[228] եկել են ձեր երկիրը և դու դրամներ ես ծախսել նրանց վրա։ Դու սահմանային գոտու (սաղր) տեր ես և պետք է օժանդակություն ցուցաբերես անհավատների դեմ կռվում։ Նա խոստանում էր, որ (զորք) կուղարկի, որպեսզի նրանց դուրս բերի նրա երկրից։ Իսկ նրանք (ղուզզերը) հարձակվում էին Հայոց երկրի (Բիլադ ալ-Արման) վրա, կողոպտում էին, գերեվարում այնքան շատ, որ գեղեցիկ հարճի գինը իջել էր հինգ դինարի, իսկ տղաներին (ղուլամ) ոչ ոք չէր ուզում։

Ինչ վերաբերում է Թուղրիլ բեկի՝ Ջալալ ալ-Դաուլային գրած նամակին, ապա նրանում նա ներողություն էր խնդրում, ասելով, որ այդ թուրքմենները մեր ստրուկները, ծառաներն ու հպատակներն էին, միշտ ծառայության մեջ լինելով։ Սակայն երբ ձեռնարկեցինք Մահմուդ իբն Սաբուքտաքինի տոհմի գործերով զբաղվելուն և լիազորված էինք Խորեզմի գործերը դասավորելու, սրանք խուժեցին դեպի Ռեյ, ապականեցին, փչացրին և մենք մեր զինվորներով Խորասանից իջանք նրանց ետևից, ենթադրելով, որ երաշխավորագիր կխնդրեն, ներողություն ու թողություն կաղերսեն, բայց մոռացել էին պատկառանքն ու համեստությունը։ Պետք է նրանց մեր դրոշներին հպատակեցնել և մեր զորությամբ ըմբոստներին տալ արժանի հատուցում, լինեն մոտիկ, թե հեռու, ասպատակեն, թե օգնության գան։

էջ 343

## ՄՈՍՈՒԼԻ ՏԵՐ ԿԱՐՎԱՇԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՂՈՒԶԶԵՐԻ ԴԵՄ

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Եվ ալլահը Մոսուլի ժողովրդին ազատեց նրանց (ղուզզերի) չարիքից և Կարվաշը հետապնդեց նրանց մինչև Մծբին ու վերադարձավ։

Նրանք (ղուզզերը) դիմեցին Դիար Բաքր, կողոպտեցին, ապա թեքվեցին հայերի և հոռոմների (երկրների) դեմ, կողոպտեցին նրանց և գնացին Ատրպատական։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(9 հունվար 1030—28 դեկտեմբեր 1030)

էջ 349

## ՌՈՒՄԻ ԹԱԳԱՎՈՐԻ՝ ԱՍՈՐԻՔԻ ՎՐԱ ՀԱՐՁԱԿՎԵԼՈՒ ԵՎ ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռումի թագավորը[229] Կ. Պոլսից երեք հարյուր հազար զինվորներով հարձակվեց Ասորիքի վրա։ Նրանք հասան Հալեպ, որի տերն էր Շիբլ ալ-Դաուլա Նասր իբն Սալիհ իբն Միրդասը, և կանգ առան մեկ օրվա հեռավորության վրա։ Նրանք խիստ ծարավեցին, իսկ ժամանակն ամառ էր։ Նրա (թագավորի) մարդիկ տարբեր տրամադրություններ ունեին. ոմանք նախանձում էին նրան, ոմանք ատում։ Նրա հետ էր նաև Իբն Դուկասը, որը նրա մեծամեծներից էր և կամենում էր թագավորի մահը, որպեսզի նրանից հետո ինքը թագավորի։

Թագավորն ասաց՝ կարծում եմ պետք է սպասենք, մինչև որ անձրևներ գան ու ջուրը շատանա։ Իբն Դուկասը այս կարծիքը մերժեց և խորհուրդ տվեց աճապարել, քանզի չարիք էր կամենում և դավադրություն էր նյութել։ Նա առաջ շարժվեց, իսկ Դուկասի որդին և Լուլույի որդին տասը հազար ձիավորներով բաժանվեցին և այլ ճանապարհով ընթացան։ Թագավորի մտերիմներից ոմանք տեղեկացրին, որ Դուկասի որդին և Լուլույի որդին քառասուն հոգու հետ որոշել են սպանել իրեն։ Նա զգացվեց ու վախեցավ այս բանից և անմիջապես վերադարձավ։ Դուկասի որդին հասավ նրա ետևից ու հարցրեց վերադարձի պատճառը։ Նա ասաց՝ արաբները մեզ շրջապատել էին և նրանք մոտ են։ Նա անմիջապես ձերբակալեց Դուկասի որդուն, Լուլույի որդուն և մյուսներին։ Մարդիկ վրդովվեցին և իրարանցման մեջ ընկան։

Թագավորը հեռացավ, իսկ արաբները, գյուղացիները և նույնիսկ

*հայերը հետապնդեցին նրանց կոտորելով, կողոպտելով և թագավորից խլեցին չորս հարյուր ջորի բեռնավորված դրամով (ունեցվածքով) և ըզգեստներով։ Հոռոմներից շատերը մեռան ծարավից։ Փրկվեց միայն թագավորը, սակայն նրա ունեցվածքից ու գանձերից ոչինչ չփրկվեց և ալլահը հավատացյալներին փրկեց կոտորածից, քանզի հզոր է ու բարեգութ։*

*Նրա վերադարձի մասին այլ բան էլ է պատմվում։ Արաբների մի խումբ, ոչ շատ բազմամարդ, մոտենում է նրա զորքին և հոռոմները կարծելով, որ դա շուրջկալ է, չեն իմանում ինչ անել, այն աստիճանի, որ թագավորը հագնում է սև կոշիկ, մինչդեռ սովորաբար նրանց թագավորները կարմիր կոշիկ են հագնում։ Բայց նա թողնելով [կարմիրը] սևն է հագնում, որպեսզի իրեն չճանաչեն հետապնդողները։ Նրանք փախուստի դիմեցին և մահմեդականները ավարի տվեցին ինչ որ կար նրանց մոտ։*

*էջ 351*

## ՖԱԴԼՈՒՆ ԱԼ-ՔՈՒՐԴԻԻ՝ ԽԱԶԱՐՆԵՐԻ (ՋՈՒՐԶԵՐ) ԴԵՄ ԱՐՇԱՎԵԼՈՒ ԵՎ ՆՐԱ ՀԵՏ ՊԱՏԱՀԱԾԻ ՄԱՍԻՆ

*Այս Ֆադլուն ալ-Քուրդին[230] իր ձեռքում ուներ Ատրպատականի մի մասը, որին նա տիրացել էր ու իշխել։ Այնպես պատահեց, որ այդ տարում նա արշավեց խազարների (ջուրզեր) դեմ, կոտորեց նրանց, գերեվարեց ու մեծ ավար վերցրեց։ Երբ վերադառնում էր իր երկիրը, դանդաղեցրեց իր ընթացքը և անտարբեր գտնվեց, կարծելով, որ արդեն նրանց ջարդել ու թուլացրել էր։ Սակայն նրանք (ջուրզերը) ուշադիր հետևեցին նրան և հարձակվեցին, կոտորելով տաս հազար հոգուց ավելի նրա մերձավորներից ու կամավոր զորքից. Նրանք վերստին ձեռք բերեցին նրանց տարած ավարը և իրենք կողոպտելով մահմեդական զորքերի ունեցվածքը, վերադարձան։*

### *ՀԱՏՈՐ ՈՒԹԵՐՈՐԴ*

### *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ*

### (19 դեկտեմբեր 1031—6 դեկտեմբեր 1032)

*էջ 3*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Նասր ալ-Դաուլա իբն Մարուանի տեղակալը (Նաիբ) Ջազիրայում տաս հազարից ավելի զորք հավաքեց և արշավեց իրեն հարևան հայերի վրա, մեծ հարվածներ հասցրեց, շատ կողոպտեց ու գերեվարեց և հաղթական վերադարձավ։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(26 նոյեմբեր 1033—16 նոյեմբեր 1034)

էջ 7

## ՀՌՈՄՆԵՐԻ՝ ԲԵՐԿՐԻ (ԲԱՐՔԱՐԻ) ԱՄՐՈՑԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Սա Հայոց [երկրին] սահմանակից ամրոց էր և գտնվում էր Վահսուդան իբն Մամլանի քեռորդի Աբու-լ-Հայջա իբն Ռաբիբ ալ-Դաուլայի ձեռքում։ Նրա և իր քեռու հարաբերությունները վատացան և վերջինս հոռոմներին լուր ուղարկեց, համոզելով գրավել այն (Բերկրին)։ [Ռումի] թագավորը մեծ զորք ուղարկեց, որը գրավեց այն։ Երբ լուրը հասավ խալիֆային, մարդ ուղարկեց հաշտեցնելու Աբու-լ-Հայջային և քեռուն, որպեսզի համատեղ ուժերով ամրոցը գրավեն։ Նրանք հաշտվեցին, սակայն չկարողացան այն վերստին գրավել։ Նրանց միացավ նաև կամավորների մի մեծ խումբ, սակայն չկարողացան [վերագրավել], քանզի հոռոմները հաստատուն կերպով ոտք էին գրել [այնտեղ]։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(5 նոյեմբեր 1035—25 հոկտեմբեր 1036)

էջ 11

## ՍԱՍՈՒՆՑԻՆԵՐԻ (ՍԱՆԱՍԻՆԱ) ՉԱՐԱՄՏՈՒԹՅՈՒՆԸ, ՈՒԽՏԱՎՈՐՆԵՐԻ ԳԵՐԵՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՏԱՐԱԾԻ ԵՏ ԲԵՐՎԵԼԸ

*Այդ տարում Ատրպատականից, Խորասանից, Թաբարիստանից և այլ երկրներից մեծ բազմություն եկավ ուխտի գնալու և սրանք իրենց ճանապարհը ընտրեցին Հայաստանի ու Խլաթի վրայով։ Նրանք եկան Անի և Ոստան (Վասթան), սակայն այդ կողմերի հայերը ընդվզեցին նրանց դեմ։ Նրանց օգնեցին սասունցիք (Սանասինա), որոնք նույնպես հայեր են, սակայն անառիկ բերդեր ունեն Խլաթի մոտ և դաշինք ունեն Խլաթի տիրոջ հետ։ Այդ բերդերը ըստ պայմանագրի իրենց ձեռքում պահեցին ինքնուրույն կերպով, մինչև հինգ հարյուր ութսուն թվականը (1184—1185)[231], երբ մահմեդականները գրավեցին այդ բերդերը և նրանց դուրս քշեցին այնտեղից, ինչպես հիշելու ենք կամոքն ալլահի։*

*Երբ [սասունցիք] պայմանավորվեցին երկրի հպատակ (ռաիյյա)[232] հայերի հետ, բռնեցին ուխտավորներին, շատերին սպանեցին, գերեցին, գերեվարեցին ու ունեցվածքը կողոպտեցին։ Այս բոլորը տարան Ռումի*

*կողմերը, և հայերը ցանկացան նաև տիրանալ այդ երկրին։ Նասր ալ-Դաուլա իբն Մարուանը, երբ լսեց այս լուրը, զորք հավաքեց, որոշելով հարձակվել նրանց վրա։ Սակայն սասունցիների թագավորը (Մալիք ալ-Սանասինա), երբ իմացավ ու տեսավ նրա՞ց ջանքերը, նամակ գրեց ու խոստացավ վերադարձնել իր մարդկանց վերցրած ամբողջ [ավարը], արձակել գերիներին և գերեվարված [ժողովրդին]։ Սա հաշտության համաձայնեց և ետ դարձավ, քանզի նրանք (սասունցիք) անառիկ բերդեր ունեն. նեղ կիրճեր և հոռոմներին մերձակա են, իսկ [Նասրը] վախենալով, որ օդնության կկանչեն նրանց ու կպաշտպանվեն, հաշտություն կնքեց։*

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ*

(14 հոկտեմբեր 1037—2 հոկտեմբեր 1038)

*էջ 15*

### ԱԲԽԱԶՆԵՐԻ՝ ՏՓ՝ԼԻՍԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ԵՎ ԵՏ ԴԱՌՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում աբխազաց թագավորը[233] Տփղիս քաղաքը պաշարեց, սակայն բնակիչները պաշտպանվեցին, իսկ նա պաշարեց ու նեղեց նրանց այնքան, որ սննդամթերքը և պարենը վերջացավ։ [Մահմեդական] բնակիչները լուր ուղարկեցին Ատրպատական՝ հրահրելով մահմեդականներին և օգնության կանչելով։ Երբ ղուզզերը Ատրպատական հասան, ապա աբխազները լսելով նրանց մոտիկ լինելը և թե ինչ էին արել հայերի հետ, խիստ վախեցած հեռացան Տփղիսից։*

*Երբ Ատրպատականի տեր Վահսուդանը տեսավ ղուզզերի ուժը և թե ինչպես ինքը թույլ էր նրանց դիմաց, սիրաշահեց, խնամիական կապեր հաստատեց նրանց հետ և նրանց ապավինեց ինչպես նախապես հիշել ենք։*

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ*

(16 հունիս 1048—4 հունիս 1049)

*էջ 48*

### ԻԲՐԱՀԻՄ ՅԱՆՆԱԼԻ՝ ՌՈՒՄԻ ԴԵՄ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Իբրահիմ Յաննալը արշավեց Ռումի դեմ, հաղթեց և ավար բերեց։*

*Բանն այն է, որ Մավարաննահրից (Մա վարա ալ-նահր)[234] ղուզզերի*

մեծ բազմություն եկավ նրա մոտ, իսկ նա ասաց՝ իմ երկիրը չի կարող ձեզ տեղավորել ու գոհացնել ձեր կարիքները։ Կարծում եմ, որ պետք է արշավեք Ռումի երկիրը և կռվեք հանուն ալլահի, ավար վերցրեք, իսկ ես կգամ ձեր ետևից և ձեզ զորավիգ կլինեմ։ Այդպես էլ արեցին ու գնացին նրա առջևից, իսկ նա հետևեց նրանց։ Հասան Մանազկերտ (Մալազքիրդ), Արզան ալ-Ռում և Կալիկալա, ապա հասան Տրապիզոն (Թարաբզուն) և մինչև այլ վայրեր։ Նրանց դեմ ելավ հոռոմների և աբխազների հիսուն հազարանոց մի մեծ բանակ։ Նրանք կռվի բռնվեցին, որը սաստկացավ և բազում ընդհարումներ եղան։ Մերթ սրանք էին հաղթում, մերթ նրանք, սակայն ի վերջո հաղթանակը մահմեդականներինը եղավ և նրանք մեծ կոտորած տվեցին հոռոմներին, փախուստի մատնեցին նրանց և մեծ թվով պատրիկների գերի վերցրեցին։ Գերվածների մեջ էր աբխազաց թագավոր Կարիթը, որն իր համար առաջարկեց երեք հարյուր հազար դինար, և հարյուր հազար [արժողությամբ] ընծաներ, սակայն նա (Յաննալը) չընդառաջեց նրան։ Նա շարունակեց ավերել, կողոպտել, մինչև որ իր և Կ. Պոլսի միջև մնացել էր տասնհինգ օրվա [ճանապարհ]։ Մահմեդականները գրավեցին այն կողմերը, կողոպտեցին, ավարի տվեցին ամեն ինչ։ Գերեվարեցին հարյուր հազար մարդուց ավելի, այնքան գրաստ, ջորիներ, ավար և հարստություն խլեցին, որ անհնար էր հաշվել։ Ասվում է, որ ավարը տարան տասը հազար սայլի վրա, ընդ որում ավարի մեջ կար տասնինն հազար զրահ։

Սրանից առաջ Ռումի երկիրը մտել էր ղուզզերի մի խումբ Թուղրիլբեկի մի ազգականի գլխավորությամբ, որը մեծ գործ չկատարեց, նրա ընկերակիցներից շատերը սպանվեցին, ու նա վերադարձավ։ Ահա նրանից հետո մտավ Իբրահիմ Յաննալը և արեց այն, ինչ որ հիշեցինք։

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

**(12 ապրիլ 1054—1 ապրիլ 1055)**

*էջ 67*

### ԹՈՒՂՐԻԼԲԵԿԻ՝ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԸ ԳՐԱՎԵԼՈՒ ԵՎ ՌՈՒՄԻ ԴԵՄ ԱՐՇԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Թուղրիլբեկը եկավ Ատրպատական, դիմեց Դավրեժ (Տաբրիզ), որի տերն էր ամիր Աբու Մանսուր Վահսուդան իբն Մուհամմադ ալ-Ռավվադին։ Սա հպատակվեց նրան, անունը խութբայի մեջ հիշել տըվեց, նվիրեց, ինչ որ նրան դուր կգար և իր որդուն պատանդ տվեց։ Այս-

*տեղից Թուղրիլբեկը եկավ Գանձակի (Ջանզա) տիրոջ՝ ամիր Աբու-լ-Ասուարի, մոտ և նա էլ հպատակվեց ու խութբայում հիշեց նրա անունը։ Այսպես, այդ բոլոր կողմերից [դեսպաններ] ուղարկեցին, հնազանդություն հայտնելով նրան, անունը խութբայի մեջ հիշելով և զորք ուղարկելով, իսկ նա նրանց թողեց իրենց տիրույթներում։ Նա վերցրեց նրանցից պատանդներ և եկավ Հայաստան ու դիմեց Մանազկերտ (Մալազքիրդ), որը պատկանում էր հոռոմներին։ Նա պաշարեց այն, ժողովրդին նեղեց և շրջակա դավառները կողոպտեց ու ավերեց, սակայն սա մի անառիկ քաղաք էր։ Դիար Բաքրի տեր Նասր ալ-Դաուլա իբն Մարուանը բազում ընծաներ և զորք ուղարկեց։ Նա դրանից առաջ էլ նրա անունը հիշում էր խութբայում և հնազանդություն էր հայտնել նրան։*

*Սուլթան Թուղրիլբեկը հոռոմների դեմ արշավանքի ընթացքում մեծ գործեր կատարեց և շատ կողոպտեց, սպանեց, գերեվարեց և արշավելով հասավ Կարնո քաղաք (Արզան ալ-Ռում), ապա, երբ ձմեռը վրա հասավ, վերադարձավ Ատրպատական, առանց Մանազկերտը (Մալազքիրդ) դրավելու[237]։ Նա ձևացրեց, թե [Ատրպատականում] մնալու է մինչև ձմեռվա վերջը, ապա վերադառնալու ու շարունակելու է նվաճումները, սակայն դիմեց դեպի Ռեյ և այնտեղ մնաց մինչև (չորս հարյուր) քառասունյոթ թվականն ու վերադարձավ Իրաքի կողմերը, ինչպես հիշելու ենք, եթե ալլահը կամենա։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

**(21 մարտ 1056—9 մարտ 1057)**

*էջ 79*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Իրաքի ճանապարհները փակվեցին՝ կողոպտվելու րսպառնալիքի պատճառով, և գները բարձրացան, թանկությունը շատացավ, սննդամթերք և այլ բաներ ճարելը դժվարացավ։ Մարդիկ սկսեցին մեռելներ ուտել և սաստիկ համաճարակ սկսվեց, մահացումները շատացան, այնպես որ մեռելներին թաղում էին առանց լվանալու և պատանքելու։ Մսի մի լիտրը (ռաթլ) ծախում էին մեկ դինար, չորս հավը՝ մեկ դինար, երկու լիտր գինին՝ մեկ դինար, մեկ սերկևիլը՝ մի դինար. մեկ նուռը՝ մեկ դինար և այսպես ամեն ինչ։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(6 փետրվար 1060—23 հունվար 1061)

*էջ 90*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այս տարում վախճանվեց ալ-Կաիմ Բիամր Իլլահ [աբբասյան] խալիֆայի (1031—1075) մայրը, որի անունն էր Կաթր ալ-Նադա (ցողի կաթիլ), ասվում է նաև Բադր ալ-Դուջա (դիշերվա լուսին), կոչվել է նաև Իլմ (գիտությո՞ւն)։ Նա հայ ստրկուհի (աղախին) էր։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(26 հունվար 1061—14 հունվար 1062)

*էջ 92*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այս տարում Դամասկոսում վախճանվեց Աբու-լ-Կասիմ Ալի իբն Մուհամմադ իբն Յահիա ալ-Շիմշաթին։ Սա փիլիսոփայական գիտություններից գիտակ էր երկրաչափությանը և մաթեմատիկային։ Նրա անունով էր Դամասկոսի մայր մզկիթի մոտ գտնվող ռիբաթը (մենաստան)։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(4 հունվար 1063—24 դեկտեմբեր 1063)

*էջ 94*

### ՍՈՒԼԹԱՆԻ՝ ԲԱՂԴԱԴ ԳԱԼՈՒ ԵՎ ԽԱԼԻՖԱՅԻ ԱՂՋԿԱ ՀԵՏ ԱՄՈՒՍՆԱՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Մուհառամ ամսին, սուլթան Թուղրիլբեկը Հայաստանից գնաց Բաղդադ։ Խալիֆան ուզեց նրան [անձամբ] դիմավորել, բայց նա ազատեց նրան (խալիֆային) այդ բանից, և նրան ընդունելու եկավ վեզիր իբն Ջահիրը (Ջուհայր)։*

*էջ 96*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում ամիր ալ-Ջույուշ (զորաց հրամանատար)[238] Բադրը տիրեց Դամասկոսին (Դիմաշկ) և կառավարիչ նշանակվեց Եգիպտոսի տեր*

*Մուստանսիր [խալիֆայի] կողմից։ Նա այնտեղ հասավ Ռաբի Բ ամսի քսաներեքին (25 ապրիլ) և մնաց։ Սակայն նրա և զորքերի միջև տարակարծություն առաջացավ, և նրանք [զինվորները] ապստամբեցին նրա դեմ։ Հասարակ ժողովուրդը նրանց կողմնակից եղավ և նա, անկարող լինելով նրանց ճնշել, հեռացավ [չորս հարյուր] հիսունվեցի Ռաջաբ ամսին (19 հունիս—18 հուլիս 1064)։*

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

**(25 դեկտեմբեր 1063—12 դեկտեմբեր 1064)**

*էջ 98*

*Ջումադա Ա ամսի յոթին (27 ապրիլ) խալիֆան հանդիսավոր ընդունելություն սարքեց և տեսնվեց [Ալբ Արսլանի] դեսպանների հետ՝ Ալբ Արսլանին (Ալփ Արսլան) սուլթանություն տալու նպատակով։ Նա պատվական զգեստներ շնորհեց նրան ժողովրդի ներկայությամբ։ Դիվանի կողմից ուղարկվեց նակիբ[233] Թիրադ ալ-Զայնաբին՝ հավատարմության երդում վերցնելու համար։ Սրանք [բոլորը] հասան նրա (Ալբ Արսլանի) մոտ, երբ Նախճավանում (Նակչուան) էր, որը Ատրպատականի մեջ է, և նա հագավ պատվական զգեստներ (խիլա), հավատարմության երդում (բայա) տալով խալիֆային։*

*էջ 98—100*

## ԱԼԲ ԱՐՍԼԱՆԻ՝ ԱՆԻ ՔԱՂԱՔԸ ԵՎ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ԱՅԼ ՎԱՅՐԵՐԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Ապա սուլթանը Ռեյից դուրս եկավ Ռաբի Ա ամսի մեկին (22 փետրրվար) ու գնաց Ատրպատական։ Նա հասավ Մարանդ, որոշած լինելով կռվել և արշավանք կատարել հոռոմների դեմ։ Երբ նա Մարանդում էր, նրա մոտ եկավ թուրքմենների ամիրներից մեկը, որը հաճախ էր արշավել հոռոմների դեմ և անունն էր Թուղդաքին։ Սրա հետ իր ցեղակիցների մեծ բազմություն կար, որը ջիհադի (սրբազան պայքարի) սովոր էր և այդ երկիրը ճանաչում էր։ Սա համոզեց նրան հարձակվել [այդ] երկրի վրա, խոստանալով ցույց տալ այնտեղ գնալու ուղիղ ճանապարհը։ Նա (սուլթանը) գնաց նրա հետ, որը զորքը տարավ այդ երկրի կիրճերով ու լեռնային ճանապարհներով ու հասավ Նախճավան (Նակչուան)։ Նա հրամայեց նավեր պատրաստել՝ Արաքս (Արաս) գետը անցնելու համար։*

*Նրան ասվեց, որ Ատրպատականում Խոյի (Խուայյ) և Սալմաստի (Սալմաս) բնակիչները հրաժարվել են հնազանդվելուց, ամրանալով իրենց երկրում։ Նա (Ալբ Արսլանը) նրանց դեմ ուղարկեց Խորասանի ամիդին[234] (կառավարչին), որը կոչ արեց հնազանդվել, իսկ հակառակ դեպքում*

սպառնաց, նրանք հնազանդվեցին և անցնելով նրա կողմը, դարձան նրա զինվորները։

Այստեղ նրա մոտ հավաքվեցին անթիվ թագավորներ ու զորքեր և երբ զորքերի հավաքումն ու նավերի պատրաստումն ավարտվեց, շարժվեց[241] դեպի վրաց (Քուրջ) երկիրը, իր փոխարեն զորքի հրամանատար նշանակելով իր որդուն՝ Մալիքշահին, և վեզիր Նիզամ ալ-Մուլքին։ Մալիքշահը և Նիզամ ալ-Մուլքը ուղղվեցին դեպի մի ամրոց[242], ուր շատ հռոմներ կային։ Նրա բնակիչները դուրս եկան և զորքից շատերին բռնելով, սպանեցին։ Սակայն Նիզամ ալ-Մուլքը և Մալիքշահը իջան և կռվի ելնելով, սպանեցին ամրոցի մարդկանց ու ներխուժելով սպանեցին ամրոցի ամիրին (հրամանատարին), և մահմեդականները գրավեցին այն։

Այստեղից նրանք գնացին Սուրմարի ամրոցը, ուր կան հոսող ջրեր ու պարտեզներ։ Նրանք կռվեցին ու գրավեցին այն և բնակիչներին դուրս բերեցին։ Սրա մոտակայքում կար մի այլ ամրոց, որը Մալիքշահը գրավեց և ուզեց քանդել, սակայն Նիզամ ալ-Մուլքը համոզեց չանել այդ, ասելով, որ սա սահմանային ամրություն է (սաղր) մահմեդականների համար և ռազմիկներ, ռազմամթերք, դրամ ու զենք մատակարարելուց հետո այս ամրոցները հանձնեց Նախճավանի (Նախչուան) ամիրին։

Մելիքշահը և Նիզամ ալ-Մուլքը շարժվեցին դեպի Մարիամ Նիշին[243], ուր շատ վանականներ ու քահանաներ (հոգևորականներ) կային։ Քրիստոնյա թագավորներն ու նրանց ժողովուրդը բարյացակամ էին այս քաղաքի բնակիչների նկատմամբ։ Սա մի ամրացված քաղաք էր, որի պարիսպները պատրաստված էին հսկայական պինդ քարերով, որոնք կապարի ու երկաթի միջոցով իրար լին կապված, իսկ նրա մոտ կար մի մեծ գետ։

Նիզամ ալ-Մուլքը պատրաստեց կռվի համար պետք եղած նավերը և այլ բաներ ու կռվի բռնվեց։ Կռիվը տևեց գիշեր ու ցերեկ, իսկ նա զինվորներին կռվի էր բերում հերթով։ Անհավատները հոգնեցին և հուսահատությունը պատեց նրանց։ Մահմեդականները հասան նրա պարիսպները և աստիճաններ դնելով վեր բարձրացան, քանզի բրիչները բթացան քարի կարծրության պատճառով։ Երբ բնակիչները մահմեդականներին պարսպի վրա տեսան, թուլացան և հուսալքվեցին։ Մելիքշահը մտավ քաղաքը Նիզամ ալ-Մուլքի հետ և նրանք վառեցին ու կործանեցին եկեղեցիները, բնակիչներից շատերին կոտորեցին և շատերը մահմեդականություն ընդունելով մահվանից փրկվեցին։

Ալբ Արսլանը իր մոտ կանչեց որդուն և Նիզամ ալ-Մուլքին, ուրախանալով, որ ալլահի օգնությամբ իր որդին նվաճումներ էր կատարել։ Մալիքշահը իր ճանապարհին գրավեց բազմաթիվ ամրոցներ, բերդեր և ան-

համար թվով քրիստոնյաներ գերեվարեց։ Ապա գնացին Սաբիդշահր[244], որի բնակիչների և մահմեդականների միջև սաստիկ կռիվ տեղի ունեցավ և այդ ժամանակ բազմաթիվ մահմեդականներ նահատակվեցին։ Սակայն ալլահի օգնությամբ նվաճվեց և Ալբ Արսլանը գրավեց և այնտեղից գնաց Աալ Լալ[245] քաղաքը, որն ամրակուռ էր, բարձր պարիսպներով, բարձրաբերձ կ՚րտվածքներով. արևելյան և արևմտյան կողմերից գտնվում էր բարձր լեռան վրա, իսկ լեռան վրա կային բազմաթիվ բերդեր։ Մյուս երկու կողմերում կար մի անանցանելի մեծ գետ։ Երբ մահմեդականները այն տեսան, հասկացան, որ անկարելի է գրավել ու նվաճել այն։ Սրա, ինչպես նաև վերոհիշյալ նվաճված վայրերի թագավորը վրացի (քուրջ) էր։

Սուլթանը գետի վրա մեծ կամուրջ կառուցել տվեց և կռիվը բորբոքվեց ու վիճակը ծանրացավ։ Քաղաքից երկու մարդ դուրս եկան օգնություն խնդրելու և երաշխավորագիր հայցելու, խնդրելով սուլթանից, որ մի զորամաս ուղարկի, և նա ուղարկեց մի բավական մեծ զորամաս։ Երբ սրանք կամուրջն անցան, քաղաքի բնակիչ վրացիք (քուրջ) շրջապատեցին նրանց, սկսեցին կռվել ու շատերին կոտորեցին, իսկ մահմեդականները ճանապարհի նեղ լինելու պատճառով չկարողացան փախչել։ Վրացիք դուրս եկան քաղաքից, հարձակվեցին լորքի վրա և կռիվը սաստկացավ։

Այդ ժամանակ սուլթանը աղոթում էր և լսելով գոռում-գոչյումը, չվերկացավ, մինչև որ ավարտեց աղոթքը, ապա նստեց [իր ձին] և հարձակվեց անհավատների վրա ու սկսեց կռիվը։ Մահմեդականները «Ալլահ աքբար» (Մեծ է ալլահը) գոչելով հարձակվեցին, իսկ նրանք սկսեցին փախուստը ու մտան քաղաք և մահմեդականներն էլ նրանց ետևից։ Մտավ նաև սուլթանը ու գրավեց այն։ Բնակիչների մի խումբ ապաստանեց քաղաքի աշտարակներից մեկը և մահմեդականները կռվի բռնվեցին նրանց հետ։ Սուլթանը հրամայեց աշտարակի շուրջը փայտ լցնել ու վառել։ Այդպես էլ արվեց և աշտարակը վառվեց այնտեղ եղածների հետ միասին։ Սուլթանը վերադարձավ իր վրանները, իսկ մահմեդականները քաղաքից անթիվ անհամար ավար տարան։ Երբ գիշերը վրա հասավ, սաստիկ քամի փչեց և աշտարակը վառող կրակը դեռ բավական բոցավառ լինելով քամուց տարածվեց և ամբողջ քաղաքը վառեց։ Սա տեղի ունեցավ [չորս հարյուր] հիսունվեց թվականի Ռաջաբ ամսին (19 հունիս—18 հուլիս)։

Սուլթանը գրավեց մի ամուր բերդ, որն այդ քաղաքի մերձակայքում էր և ապա շարժվեց դեպի Կարսի կողմերը և Անի քաղաքը, որին մոտիկ կային երկու գավառներ, որոնք կոչվում էին Դաբի՞լ (Դասիլ), Ուարդա և Նուրա[246]։ Սրանց բնակիչները դուրս եկան, հնազանդվեցին իսլամին և [մահմեդականները] քանդեցին եկեղեցիներն ու մզկիթներ կառուցեցին։

Այնտեղից նա գնաց Անի քաղաքը և, երբ հասավ, տեսավ, որ ամուր և խիստ անառիկ քաղաք է։ Նրա երեք քառորդը գտնվում էր Արաքս

*(Արաս) գետի վրա, իսկ մի քառորդը՝ արագահոս խորը գետի վրա էր, որի մեջ եթե խոշոր քարեր նետեին, [ջուրը] կարող էր ջարդել ու քշել-տանել։ Ճանապարհը դեպի քաղաք գնում էր մի խրամատի միջով, որի վրա պինդ քարից պարիսպ կար։ Սա մի շեն ու բազմամարդ քաղաք էր, ուր կար հինգ հարյուրից ավելի եկեղեցի։*

*Նա պաշարեց և սկսեց նեղել նրանց, սակայն մահմեդականները հուսահատվեցին գրավելուց, երբ տեսան, թե ինչ անառիկ է։ Սուլթանը փայտե աշտարակ շինել տվեց, լցրեց զինվորներով և դրեց քարանետ մեքենա (մանջանիկ) նետաձիգների հետ միասին։ Սրանք հոռոմներին քշեցին պարիսպից հեռու ու մահմեդականները մոտեցան, որպեսզի քանդեն այն և ահա ալլահի ողորմածությամբ պատահեց այն, ինչ նրանց հաշվի մեջ չկար (մտքից չէր անցնում)՝ պարսպից մի մեծ կտոր փուլ եկավ առանց պատճառի[247]։ Նրանք քաղաք մտան և անթիվ անհամար կոտորեցին բնակիչներին, այնքան, որ մահմեդականներից շատերը դիակների շատության պատճառով չկարողացան քաղաք մտնել։ Նրանք գրեթե նույնքան էլ գերի տարան։*

*Այս նվաճումների ուրախ լուրը տարածվեց երկրում և մահմեդականները հրճվեցին։ Բաղդադում՝ խալիֆայական տան մեջ, նվաճման մասին նամակը կարդացվեց։ Ալբ Արսլանին ուղարկվեց խալիֆայի գրությունը, որի մեջ գովում էր նրան և աղոթում նրա համար։*

*[Ալբ Արսլանը] այնտեղ (Անիում) թողեց մի ամիր (հրամանատար) հսկայական զորքի հետ միասին ու վերադարձավ։ Վրաց (Քուրջի) թագավորը[248] գրեց նրան հաշտության մասին, և [սուլթանը] պայմանագիր կնքեց ամեն տարի ջիզիա (գլխահարկ) վճարելու պայմանով, և նա ընդունեց։*

*Այնտեղից դուրս գալով, սուլթանը[249] դիմեց Սպահան (Իսբահան), ապա Քիրման և նրան ընդունեց եղբայրը՝ Կաուրտ բեկը, Ջաղրի (Չագրի) բեկ Դաուդի որդին։ Ապա գնաց Մերվ (Մարվ) և իր որդուն Մալիքշահին ամուսնացրեց Մավարաաննահրի խականի դստեր հետ և հանդիսավորապես [դուստրը] բերվեց նրա մոտ։ Մյուս որդուն՝ Արսլանշահին ամուսնացրեց Ղազնայի տիրոջ դստեր հետ և այսպիսով միացան երկու տները՝ Սելջուկի (Սալջուկ) ու Մահմուդի, և համաձայնություն կայացավ։*

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ*

(20 նոյեմբեր 1069—8 նոյեմբեր 1070)

*Էջ 107*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այս տարում զորահրամանատար (ամիր ալ-Ջույուշ) Բադրը Եգիպտոսից մեծ զորքով գնաց ու պաշարեց Տյուրոսը (Սուր), որը գրավել էր*

դատավոր Այն ալ-Դաուլա իբն արու Ուկայլը։ Երբ նա (Բադրը) պաշարեց, դատավորը օգնության կանչեց Ասորիքի Թուրքերի առաջնորդ ամիր Կուրլույին։ Սա եկավ տասներկու հազար ձիավորներով և պաշարեց Սիդոն (Սայդա) քաղաքը, որը զորահրամանատար Բադրի ձեռքում էր։ Այդ ժամանակ Բադրը հեռացավ և Թուրքերն էլ վերադարձան։ Սակայն Բադրը մեկ տարի ևս շարունակեց Տյուրոսի պաշարումը ցամաքից ու ծովից և այնքան նեղեց բնակիչներին, որ հացի լիտրը (ռաթլ) կես գինարով (ոսկեդրամ) էին վերցնում։ Այսուհանդերձ նա (Բադրը) չհասավ իր նպատակին ու հեռացավ։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(9 հոկտեմբեր 1070—28 սեպտեմբեր 1071)

էջ 109—110

### ՌՈՒՄԻ ԹԱԳԱՎՈՐԻ՝ ԽԼԱԹ ԳԱԼՈՒ ԵՎ ԳԵՐԻ ԸՆԿՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռումի թագավոր Ռոմանոսը (Արմանուս) դուրս եկավ երկու հարյուր հազար հոռոմների, ֆրանկների, արևմտյան [ազգերի], ռուսների, պածինակների (բաջանաք) և վրացիների (քուրջ) ու այդ երկըրներից եկած ուրիշ խմբերի[250] բազմությամբ, և եկան հսկայական զորքով ու գեղեցիկ հանդերձանքով, դիմեցին իսլամի երկիրը։ Նա եկավ Խըլաթ նահանգի Մանազկերտ (Մալազքիրդ) քաղաքը։ Այս լուրը հասավ Ալբ Արսլանին, երբ նա վերադարձել էր Հալեբից և Ատրպատականի Խոյ (Խուայյ) քաղաքում էր։ Նա լսեց, թե ինչպիսի մեծ զորքով էր եկել Ռումի թագավորը, սակայն չկարողացավ իր զորքերը ի մի հավաքել, քանզի նրանք հեռու էին գտնվում, իսկ թշնամին մոտ էր։ Նա իր գանձերը կնոջ ու Նիզամ ալ-Մուլքի հետ ուղարկեց Համադան, իսկ ինքն իր մոտ եղած տասնհինգ հազար հեծյալներով ճանապարհ ընկավ։ Նա ասաց նրանց՝ ես կռվելու եմ [ճակատագրին] հնազանդ և համբերատար կերպով. եթե ողջ մնամ, դա կլինի ալլահի ողորմությունը, իսկ եթե նահատակվեմ, ապա իմ որդին՝ Մալիքշահը իմ գահաժառանգն է։

Նրանք շարժվեցին առաջ, և երբ թշնամին մոտեցավ, նա առաջապահ զորամաս ուղարկեց, որը Խլաթի մոտ հանդիպեց ռուսների[251] (ռուսիյյա) առաջապահ զորամասին, որի մեջ կային տասը հազար հոռոմներ։ Նրանք բախվեցին և ռուսները պարտվեցին, նրանց առաջապահի հրամանատարը գերի ընկավ, տարվեց սուլթանի մոտ և նրա քիթը կտրեցին։ Ավարը նա ուղարկեց Նիզամ ալ-Մուլքին, հրամայելով, որ ուղարկի Բաղդադ։

Երբ երկու զորքերը իրար մոտեցան, սուլթանը լուր ուղարկեց Ռումի թագավորին հաշտություն խնդրելով, բայց սա ասաց՝ հաշտություն

կկնքվի միայն Ռեյում։ Սուլթանը վրդովվեց այս բանի համար։ Նրա իմամը (կրոնապետ) և ֆակիհը (իրավագետ) Աբու Նասր Մուհամմադ իբն Աբդ ալ-Մալիք ալ-Բուխարի ալ-Հանաֆին ասաց՝ դու այն հավատի համար ես կռվում, որին ալլահը խոստացել է օգնություն և հաղթանակ, բոլոր մյուս կրոնների նկատմամբ։ Ես հույս ունեմ, որ բարձրյալն ալլահը քո անունով է գրել այս հաղթանակը։ Ելիր նրանց դեմ ուրբաթ օրը մայրամուտից հետո, այն ժամին, երբ քարոզիչները մինբարներից (մզկիթի բեմերից) աղոթելու են սրբազան պայքարի ռազմիկների հաղթանակի համար, իսկ աղոթքը անպատասխան չի մնա։

Երբ այդ ժամը հասավ, [իմամը] նրանց հետ աղոթք կատարեց և սուլթանն արտասվեց, մարդիկ ևս լաց եղան նրա հետ, նա աղոթեց, և նրանք աղոթեցին նրա հետ։ Նա ասաց՝ ով կամենում է հեռանալ, թող գնա, քանզի այստեղ չկա տիրակալ (սուլթան), որը հրամայի կամ արգելի։ Նա դեն գցեց աղեղն ու նետը և վերցրեց սուրն ու գուրզը և իր ձիու պոչը ձեռքով կապեց։ Նույնը արեց նաև նրա զորքը։ Նա սպիտակ հագավ ու օծվելուց հետո ասաց՝ եթե սպանվեմ, սա է իմ պատանքը։

Նա արշավեց հոռոմների դեմ, իսկ նրանք [նույնպես] դուրս եկան նրա դեմ։ Երբ մոտեցավ նրանց, իջավ ձիուց, իր դեմքը շփեց հողին, արտասվեց և երկար աղոթեց։ Ապա հեծավ իր ձին և սկսեց հարձակումը ու զորքը նույնպես հարձակվեց։ Մահմեդականները մնացին [հոռոմների] մեջտեղում և փոշին նրանց անջատել էր իրարից։ Մահմեդականները կոտորեցին նրանց ինչքան որ կամեցան, ալլահը հաղթանակ պարգևեց նրանց[152], հոռոմները փախուստի դիմեցին և անհամար զոհեր տվեցին, այնպես, որ երկիրը ծածկվեց սպանվածների դիակներով։

Գերի ընկավ Ռումի թագավորը։ Նրան բռնեց Քաուհարայինի (Գաուհարայինի) ծառաներից (ղուլամ) մեկը և ուզեց սպանել, քանզի չգիտեր նրան, բայց թագավորի մոտ գտնվող մի ծառա ասաց՝ մի սպանիր, սա թագավորն է։ Այս ծառային Քաուհարայինը [ժամանակին] առաջարկել էր Նիզամ ալ-Մուլքին, բայց վերջինս արհամարհանքով հրաժարվել էր։ Քաուհարայինը գովել էր նրան, իսկ Նիզամ ալ-Մուլքը [կատակով] ասել էր՝ գուցե նա Ռումի թագավորին գերի բռնած բերի՞։ Այդպես էլ եղավ։ Երբ ծառան թագավորին գերի բերեց Քաուհարայնի մոտ, սա տեղեկացրեց սուլթանին թագավորի գերի ընկնելը և նա հրամայեց բերել իր մոտ։ Երբ բերեցին, սուլթան Ալբ Արսլանը երեք անգամ իր ձեռքով մտրակի հարված տվեց, ասելով՝ չէ՞ որ ես քեզ հաշտություն առաջարկեցի, իսկ դու մերժեցիր։ Թող ինձ այպանելը և արա ինչ որ կամենում ես, ասաց նրան [թագավորը]։ Սուլթանն ասաց՝ ի՞նչ կանեիր ինձ, եթե գերի վերցնեիր։ Ասաց՝ վատ կվերաբերվեի։ Իսկ ի՞նչ ես կարծում, ես քո նկատմամբ ի՞նչ կանեմ։ Ասաց՝ կամ կսպանես ինձ, կամ խայտառակ ցու-

ցադրության կենթարկես մահմեդական երկրներում, իսկ վերջինը, որը քիչ հավանական է, ներում կշնորհես, դրամ վերցնելով և ինձ քո տեղակալը դարձնելով։ Ասաց՝ հենց այդպես էլ որոշել եմ անել։

Նա [թագավորի] համար փրկագին նշանակեց հազար հազար (մեկ միլիոն) հինգ հարյուր հազար դինար, պարտավորեցնելով, որ Ռումի զորքեր ուղարկվեն, հենց որ ինքը պահանջի և ազատ արձակի Ռումի երկրում եղած բոլոր [մահմեդական] գերիներին։ Այդպես էլ գործերը կարգավորվեցին։ Նա [թագավորին] տվեց մի վրան և տասը հազար դինար ուղարկեց, որպեսզի պատրաստություն տեսնի և պատրիկների մի մասին էլ ազատ արձակեց։ Մյուս օրը Ռումի թագավորն ասաց՝ ո՞րն է խալիֆայի կողմը, ցույց տվեցին նրան, և նա ելավ գլուխը բացեց ու երկրպագեց, որպես ծառայության նշան։ Սուլթանը հաշտություն կնքեց հիսուն տարվա համար, զորքի ընկերակցությամբ ուղարկեց նրան իր երկիրը և նրան ապահով տեղ հասցրեց։ Մեկ փարսախ տարածության վրա սուլթանը ուղեկցեց նրան։

Իսկ Ռումի (երկրում) լսելով ճակատամարտի լուրը, թագավորի դեմ ապստամբություն բարձրացրեց Միքայելը (Միխայիլ), որը տիրացավ երկրին։ Երբ Ռոմանոս (Արմանուս) թագավորը հասավ Դուկիա[2.3] ամրոցը և լսեց կատարվածը, բուրդ հագավ և խստակրոն կյանք վարեց։ Նա լուր ուղարկեց Միքայելին, տեղեկացնելով, թե ինչ էր որոշվել սուլթանի հետ և ասաց՝ եթե ուզում ես ընդունիր այն, ինչ որոշված է, իսկ եթե ոչ՝ վերցրու [իշխանությունը]։ Միքայելը պատասխանեց, որ նախընտրում է ընդունել որոշվածը և խնդրեց նրա միջնորդությունը սուլթանի կարծիքը հարցնելու համար։

Ռոմանոսը (Արմանուս) հավաքեց իր մոտ ունեցած հարստությունը, որը երկու հարյուր հազար դինար էր և ուղարկեց սուլթանին, ինչպես նաև մի ոսկե ափսե, գոհարներով զարդարված՝ իննսուն հազար դինար արժողությամբ և երդվեց, որ ավելին չի կարող վճարել։ Ապա Ռոմանոսը (Արմանուս) գրավեց հայոց կողմերը և նրանց երկիրը։ Իսկ բանաստեղծներըներբողեցին սուլթանին և շատ հաճախ հիշում էին այս նվաճումը։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

### (6 սեպտեմբեր 1073—26 օգոստոս 1074)

էջ 118

Չորս հարյուր վաթսունվեց թվականին Եգիպտոսում իշխանության տեր դարձավ Բադր ալ-Գամալի (Ջամալի) զորահրամանատարը (ամիր ալ-ջույուշ)։ Նա սպանեց Ալդիգիզին, վեզիր իբն Քադինային և պահակա-

զորքի մարդկանց մի խմբի։ Նա պետության ղեկն իր ձեռքում պահեց մինչև իր մահը։ Նրանից հետո իշխեց որդին՝ Աֆդալը։ Նրանց մասին խոսվելու է ստորև։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(5 օգոստոս 1076—24 հուլիս 1077)

էջ 123

### ԱԿՍԻՍԻ՝ ԿԱՀԻՐԵՆ ՊԱՇԱՐԵԼՆ ՈՒ ՎԵՐԱԴԱՐՁԸ

Ասորիքի պատմիչներից մեկը հիշել է, թե Ակսիսը (Աթսիզ) երբ հասավ Եգիպտոս (Կահիրե), զորահրամանատարը (ամիր ալ-ջույուշ Բադրը) զորքը կազմակերպեց և արաբներից ու երկրի այլ բնակիչներից մեծ զորք հավաքեց։ Նրանք ընդհարվեցին և Ակսիսը (Աթսիզ) փախուստի մատնվեց և նրա զորքի մեծ մասը կոտորվեց ու փախավ։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(14 հուլիս 1078—3 հուլիս 1079)

էջ 126

Այդ տարում Տաջ ալ-Դաուլա (պետության թագ) Տուտուշ իբն Ալփարսլանը գրավեց Դամասկոսը։

Բանն այն է, որ նրա եղբայր Մալիքշահ (Մելիքշահ) սուլթանը, չորս հարյուր յոթանասուն (1077—1078) թվականին նրան պարգևել էր Ասորիքի իշխանությունը և ամեն ինչ, որ կնվաճեր այդ կողմերում։

Նա եկավ Հալեբ ու պաշարեց, իսկ բնակչությունը սաստիկ սովի ենթարկվեց։ Նա իր մոտ ուներ թուրքմենների մեծ զորք և աՀա Դամասկոսի տեր Ակսիսը (Աթսիզ) նրանից օգնություն խնդրեց, հայտնելով, որ եգիպտական զորքերը իրեն պաշարել են Դամասկոսում։ Զորահրամանատար (ամիր ալ-ջույուշ) Բադրը Եգիպտոսից զորք էր ուղարկել Նասր ալ-Դաուլա կոչված մի զորավարի գլխավորությամբ, որը պաշարել էր Դամասկոսը։ Ուստի Ակսիսը Տաջ ալ-Դաուլա Տուտուշին լուր էր ուղարկել օգնության կանչելով և վերջինս եկավ պաշտպանելու Ակսիսին։ Երբ եգիպտացիք լսեցին նրա մոտենալու մասին, վախեցած նրա ձեռքից փախան գրեթե պարտված վիճակում։

Ակսիսը դուրս եկավ պարսպի մոտ գիմավորելու Տուտուշին, սակայն վերջինս զայրացավ, թե ինչու [ընդառաջ չէր եկել] և միայն պարսպի մոտ էր սպասում ու մեղադրեց նրան։ Ակսիսն ուզեց արդարանալ տարբեր

*ձևերով, սակայն Տուտուշը չընդունեց այդ խոսքերը և անմիջապես ձերբակալել տալով սպանեց նրան ու գրավեց քաղաքը։*

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ*

**(10 մայիս 1084—28 ապրիլ 1085)**

*էջ 134*

### ՊԱՏԵՐԱԶՄԸ ՖԱԽՐ ԱԼ-ԴԱՈՒԼԱ ԻԲՆ ՋՈՒՀԱՅՐԻ ԵՎ ԻԲՆ ՄԱՐՈՒԱՆԻ ՈՒ ՇԱՐԱՖ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ ՄԻՋԵՎ

*Արդեն հիշել ենք, որ Ֆախր ալ-Դաուլա իբն Ջուհայրը (խալիֆայի նախկին վեզիրը) սուլթանական զորքերով շարժվեց դեպի Դիար-Բաքր։ Այս տարում սուլթանը (Մելիքշահ) նորից զորք ուղարկեց, որի հետ էր Ուրտուկ (Արտուկ) իբն Աքսաբը և հրամայեց օգնել նրան (Ֆախր ալ-Դաուլային)։ [Դիար Բաքրի տեր] Իբն Մարուանը գնացել էր [Հալեբի տեր] Շարաֆ ալ-Դաուլայի մոտ և օգնություն խնդրել, այն պայմանով, որ ինքը նրան կզիջի Ամիդը։ Նրանք իրար երգվեցին, սակայն ամեն մեկը գիտեր, որ մյուսը ստում է, քանի որ թշնամանք կար նրանց միջև, սակայն միացել էին Ֆախր ալ-Դաուլայի դեմ պայքարում։*

*Երկու կողմերի միջև սաստիկ կռիվ սկսեց և արաբներր պարտվեցին։ Վեզիր Ֆախր ալ-Դաուլան և Ուրտուկը ճակատամարտին ներկա չեն եղել, իսկ նրանց թուրքմեն ռազմիկները գրավել էին արաբների վրանների ճամբարները (հիլլա) և տարել նրանց ձիերը։ Շարաֆ ալ-Դաուլան պարտվեց և մտավ Ամիդի պարիսպից ներս։ Ֆախր ալ-Դաուլան պաշարեց նրան ու նրա ընկերակիցներին։*

*Իբն Ջուհայրը (Ֆախր ալ-Դաուլա) գնաց Նփրկերտ և ապա Խլաթ։*

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ*

**(29 ապրիլ 1085—17 ապրիլ 1086)**

*էջ 139*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այս տարում Ռաբի Ա ամսին (27 հունիս—26 հուլիս) զորահրամանատարը (ամիր ալ-Ջույուշ, Բադր) եգիպտական զորքով հասավ Ասորիք. պաշարեց Դամասկոսը, ուր նստում էր նրա տերը՝ Տաջ ալ-Դաուլա Տուտուշը։ Նա (Բադրը) նեղեց նրան ու կռվեց, սակայն չկարողանալով ոչինչ նվաճել, վերադարձավ Եգիպտոս։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

**(16 մարտ 1089—5 մարտ 1090)**

*էջ 150*

### ԵԳԻՊՏԱԿԱՆ ԶՈՐՔԻ ԱԿՐԱՆ (ԱՔՔԱ) ԵՎ ԱՍՈՐԻՔԻ ԱՅԼ ՎԱՅՐԵՐ ՆՎԱՃԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այս տարում Եգիպտոսի զորքը դուրս եկավ դեպի Ասորիք մի քանի զորահրամանատարներով ու պաշարեց Տյուրոս (Սուր) քաղաքը։ Այն գրավել էր դատավոր Այն ալ-Դաուլա իբն աբու Ուկայլը, որը պաշտպանվեց նրանցից, սակայն մեռավ և որդիները իշխեցին։ Երբ եգիպտական զորքը պաշարեց նրանց (որդիներին), դիմագրելու բավական ուժ չունենալով, հանձնեցին քաղաքը։*

*Ապա զորքերը շարժվեցին դեպի Սիդոն (Սայդա) և այնտեղ ևս նույնը կատարվեց, ապա գնացին դեպի Ակրա, պաշարեցին, բնակիչներին նեղեցին ու գրավեցին։ Ապա հարձակվեցին Բիբլոսի (Ջուբայլ) վրա, որը նույնպես նվաճեցին։ Նրանք (եգիպտացիք) բարեկարգեցին այս երկրի վիճակը և կարգ ու կանոն հաստատեցին և ապա վերադարձան Եգիպտոս։ Զորահրամանատարը (ամիր ալ-Ջույուշ, Բադր) այս քաղաքներում կառավարիչներ (ամիր) և բարձրաստիճան պաշտոնյաներ (ամիլ) նշանակեց։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

**(1 փետրվար 1093—20 հունվար 1094)**

*էջ 167*

### ՏՈՒՏՈՒՇԻ՝ ԴԻԱՐ ԲԱՔՐԸ, ԱՏՐՊԱՏԱԿԱՆԸ ՆՎԱՃԵԼՈՒ ԵՎ ԱՍՈՐԻՔ ՎԵՐԱԴԱՌՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

*Երբ Տաջ ալ-Դաուլա Տուտուշը*[251] *վերջացրեց արաբների հետ իր գործերը և Մոսուլի ու այլ վայրերի նվաճումը Ռաբի Բ ամսին (1 մայիս—29 մայիս), եկավ Դիար Բաքր, Իբն Մարուանի ձեռքից վերցրեց Նփրկերտը և ամբողջ Դիար Բաքրը։ Այնտեղից նա գնաց Ատրպատական։*

*էջ 168*

### ԵԳԻՊՏԱԿԱՆ ԶՈՐՔԵՐԻ՝ ՏՅՈՒՐՈՍԸ [ԿՐԿԻՆ] ՊԱՇԱՐԵԼՈՒ ԵՎ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այս տարում Ջումադա Բ ամսին (29 հունիս—27 հուլիս) Եգիպտոսի ալիական (շիայական) տեր (խալիֆա) ալ-Մուստանսիր բիլլահի զորքերը գրավեցին Տյուրոսը (Սուր)։*

*Բանն այն է, որ երբ չորս հարյուր ութսուներկու թվականին Մուստանսիր [խալիֆայի] վեզիր, զորահրամանատար (ամիր ալ-ջույուշ) Բադրը*

առաջնորդել էր զորքերը դեպի Տյուրոս (Սուր) և Ասորիքի (Շամ) այլ ծովափնյա քաղաքները, դրանց ներսում գտնվող [զորքերը] մերժել էին հպատակվել, սակայն [Բադրը] գրավել էր, կարգավորել տեղական գործերը և կառավարիչներ նշանակել։ Նա Տյուրոսի կառավարիչ էր նշանակել մի ամիրի, որին կոչում էին Մունիր ալ-Դաուլա ալ-Ջույուշի։ Սա ապստամբել էր Մուստանսիրի ու զորահրամանատարի դեմ և պաշտպանվել Տյուրոսում։

Ահա սրա դեմ Եգիպտոսից զորք ուղարկվեց, իսկ Տյուրոսի բնակչությունը մեղադրում էր Մունիր ալ-Դաուլային իր տիրակալի դեմ ապստամբելու համար, և երբ եգիպտական զորքերը հասան Տյուրոս, պաշարեցին ու կռվեցին, ապա բնակիչները պստամբեցին և Մուստանսիրի ու զորահրամանատարի (Բադրի) անունները կանչեցին։ Նրանք հանձնեցին քաղաքը և եգիպտական զորքերը մտան առանց դիմադրության կամ պաշտպանության հանդիպելու, մեծ կողոպուտ վերցրեցին, գերեցին Մունիր ալ-Դաուլային, նրա մերձավորներին ու տարան Եգիպտոս։ Քաղաքի բնակչությունից վաթսուն հազար դինար պահանջվեց, որը ծանր էր։ Երբ Մունիր ալ-Դաուլան գերիների հետ Եգիպտոս տարվեց, բոլորը կոտորվեցին և ոչ ոքի ներում չշնորհվեց։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ
## (21 հունվար 1094—10 հունվար 1095)

*էջ 170*

### ԱԼ-ՄՈՒԿՏԱԴԻ ԲԻԱՄՐԻԼԼԱՀ [ԽԱԼԻՖԱՅԻ] ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

Նա ապրեց երեսունութ տարի, ութ ամիս և յոթ օր։ Իր խալիֆայության [շրջանն] էր տասնինն տարի և ութ ամսից երկու օր պակաս։ Նրա մայրը հայ ստրկուհի էր (ումմ վալադ), որի անունն էր Արգավան (Արջուան)[255] և կոչվում էր Կուռատ ալ-Այն։ Նրա մայրն ապրեց, նրա, նրա որդու ալ-Մուստազհիր Բիլլահի և թոռան ալ-Մուստարշիդ Բիլլահի խալիֆայության օրերը։

*էջ 170—171*

### ԿԱՍԻՄ ԱԼ-ԴԱՈՒԼԱ ԱԿՍՈՒՆԿՈՒՐԻ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՏՈՒՏՈՒՇԻ ՏԻՐԵԼԸ ՀԱԼԵԲԻՆ, ՋԱԶԻՐԱՅԻՆ, ԴԻԱՐ ԲԱՔՐԻՆ, ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻՆ ՈՒ ՀԱՄԱԴԱՆԻՆ ԵՎ ՆՐԱ ԱՆՈՒՆՈՎ ԽՈՒԹԲԱ ՀԻՇՎԵԼԸ ԲԱՂԴԱԴՈՒՄ

Այս տարի Ջումադա Ա ամսին (19 մայիս—17 հունիս) սպանվեց Կասիմ ալ-Դաուլա Ակսունկուրը, Մոսուլի մեր թագավորների՝ նահատակ Զանգի իբն Ակսունկուրի որդիների պապը։

*Երբ Տուտուշը գրավեց Խառանը, Եգեսիան շարժվեց դեպի Ջաղիրա, որին ամբողջովին նվաճեց, ապա գրավեց Դիար Բաքրը և Խլաթը և ապա դիմեց դեպի Ատրպատական ու բոլոր քաղաքները նվաճեց։*

*էջ 172*

## ԵԳԻՊՏՈՍՈՒՄ ԱՄԻՐ ԱԼ-ՋՈՒՅՈՒՇԻ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Եգիպտոսում Զու-լ-Կադա· ամսին (12 նոյեմբեր— 11 դեկտեմբեր) մեռավ զորքի տեր, Ամիր ալ-ջույուշ (զորահրամանատար) Բադր ալ-Ջամալին (Գամալի)։ Նա անցել էր ութսուն տարին և նա էր, որ տնօրինում էր և կառավարում Մուստանսիր (խալիֆայի) օրոք։*

*Սա (Մուստանսիր խալիֆան) նշանակել էր նրան Ասորիքի (Շամ) կառավարիչ չորս հարյուր հիսունհինգ թվականին (1063)։ Իր և հպատակների ու զորքի միջև Դամասկոսում պատահած պատճառով, վախեցավ իր անձի համար և դուրս գալով, հեռացավ։ Նա [զորք] հավաքեց ու կուտակեց, ապա եկավ Ասորիք և լրիվ գրավեց այն (չորս հարյուր) հիսունվեց թվականին (1063—1064)։ Ապա Դամասկոսի ժողովուրդը նորեն ապստամբեց և նա փախավ այնտեղից (չորս հարյուր) վաթսուն թվականին (1067—1068)։ Ժողովուրդն ու զորքը ավերեցին ամիրի պալատը։ Ապա Ամիր ալ-ջույուշը գնաց Եգիպտոս, հաջողություն ունեցավ և իշխանության տերը դարձավ։*

. . . . . . . . . . . . . . . . . .

*Երբ Բադրը մեռավ, նրա գործերը վերցրեց որդին՝ Աֆդալը։*

*էջ 172—173*

## ՄՈՒՍՏԱՆՍԻՐԻ ՄԱՀՎԱՆ ԵՎ ՈՐԴՈՒ՝ ՄՈՒՍՏԱԼԻԻ, ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆԸ ՏԻՐԱՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

. . . . . . . . . . . . . . . . . .

*Երբ մեռավ (Մուստանսիրը), նրան հաջորդեց Աբու-լ-Կասիմ Ահմադ ալ-Մուստալի Բիլլահը։ Նա ծնվել էր չորս հարյուր վաթսունյոթ թվականի Մուհառամ ամսին։ Նա (Մուստանսիրը), իր կենդանության օրոք, խալիֆայությունը կտակել էր իր Նիզար որդուն, սակայն Աֆդալը[256] հանեց նրան և [խալիֆա] հռչակեց Մուստալի Բիլլահին։*

*Նրա հանելու պատճառն այն էր, որ Աֆդալը մի անգամ, Մուստանսիրի օրոք, ձի նստած մտավ պալատի բակը ոսկե դռնից։ Նիզարը դուրս էր գալիս, իսկ միջանցքը մութ էր և Աֆդալը չտեսավ նրան։ Նիզարը գոռաց՝ իջիր ձիուց ո՛վ չուն հայ, ինչ անքաղաքավար ես։ Սա ոխ պահեց*

*նրա դեմ և, երբ մեռավ Մուստանսիրը, հեռացրեց նրան, վախենալով իր անձի համար և [խալիֆա] հռչակեց Մուստալիին։*

*Նիզարը փախավ Ալեքսանդրիա (ալ-Իսքանդարիյյա), ուր Նասիր ալ-Դաուլա Աֆտաքինն էր և այստեղ Ալեքսանդրիայի ժողովուրդը [խալիֆա] հռչակեց նրան, կոչելով ալ-Մուստաֆա Լիդինիլլահ. մարդիկ նրան խութբա տվեցին ու անիծեցին Աֆդալին։ Նրան օժանդակեց նաև Ալեքսանդրիայի դատավոր (կադի) Ջալալ ալ-Դաուլա իբն Ամմարը։*

*Աֆդալը գնաց նրանց դեմ, պաշարեց Ալեքսանդրիան, սակայն պարտված վերադարձավ։ Ապա ավելացրեց զորքը ու գնաց [կրկին] պաշարեց, գրավեց այն ու բռնելով Աֆտաքինին սպանեց։ Մուստալին բռնեց Նիզարին ու վրան պատ շարել տվեց, ու սա մեռավ։ Սպանեց նաև դատավոր Ջալալ ալ-Դաուլա իբն Ամմարին ու նրան օժանդակողներին։*

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ*

(9 դեկտեմբեր 1097—27 նոյեմբեր 1098)

*էջ 186*

## ՖՐԱՆԿՆԵՐԻ՝ ԱՆՏԻՈՔԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

. . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Երբ ֆրանկները[257] որոշեցին Ասորիքի (Շամ) վրա հարձակվել. գնացին Կ. Պոլիս, որպեսզի նեղուցը անցնելով մտնեն մահմեդականների երկիրը, ընթանալով ցամաքի ճամփով, որն ավելի դյուրին էր։ Սակայն, երբ այնտեղ հասան, Ռումի թագավորը արգելեց նրանց իր երկրի միջով անցնել, ասելով՝ չեմ թողնի, որ անցնեք իսլամի երկրները, մինչև որ երդում չտաք, որ ինձ կհանձնեք Անտիոքը։ Նրա նպատակն էր դրդել նրանց, որ հարձակվեն իսլամի երկրների վրա՝ հույս ունենալով, որ թուրքերը նրանցից ոչ ոքի կենդանի չեն թողնի, քանի որ տեսավ սրանց (ֆրանկների) հաստատակամությունը և ուժը։ Նրանք համաձայնեցին և անցան նեղուցը Կ. Պոլսի մոտ [չորս հարյուր] իննսուն թվականին և հասան Կիլիջ Արսլան իբն Սուլայման իբն Կուտուլմիշի երկիրը, որն [ընդգրկում է] Իկոնիան այլ [շրջանների] հետ միասին։ Երբ հասան, Կիլիջ Արսլանն իր զորքով դիմադրեց և արգելք եղավ, սակայն նրանք կռվեցին ու հաղթեցին [չորս հարյուր] իննսուն թվականի Ռաջաբ ամսին (4 հունիս—3 հուլիս)։ Նրա երկրի միջով անցնելով նրանք մտան հայազգի Լևոնի որդու (իբն Լայուն ալ-Արմանի)[258] երկիրը, որի միջով անցան և դուրս եկան Անտիոք (Անթաքիա) ու պաշարեցին։*

*Երբ նրա (Անտիոքի) տեր Բաղի Սիյանը լսեց նրանց հարձակման*

*մասին, վախեցավ այնտեղ ապրող քրիստոնյաներից։ Մի օր մահմեդականներին դուրս բերեց քաղաքից և հրամայեց խրամատ փորել։ Մյուս օրն էլ քրիստոնյաներին դուրս բերեց, որպեսզի խրամատ փորեն, սակայն առանց մահմեդականների։ Նրանք մինչև երեկո աշխատեցին և երբ կամեցան քաղաք մտնել, նա արգելեց նրանց, ասելով՝ Անտիոքը ձերն է, այն նվիրեցեք ինձ, մինչև որ իմանամ, թե ինչ կլինի իմ ու ֆրանկների հարցը։ Ասացին՝ իսկ ով կպահի մեր երեխաներին ու կանանց. ասաց՝ նրանց ես հոգ կտանեմ։ Իսկ սրանք ելան գնացին ֆրանկների մոտ։ Անտիոքի պաշարումը տևեց ինն ամիս...*[25]։

*[Բաղի Սիյանը] բացեց քաղաքի դուռը և երեսուն ծառաներով (ղուլամ) փախավ...։ Երբ նա գետին ընկավ, ընկերակիցները ուզեցին նրան ձի նստեցնել, սակայն նա ուժ չուներ, քանի որ մահամերձ էր։ Նրանք թողեցին նրան ու հեռացան։ Նրա մոտով անցավ մի հայ մարդ, որը փայտահատ էր։ Նա վերջին շունչն էր փչում, երբ սա սպանեց նրան ու գլուխը տարավ ֆրանկների մոտ՝ Անտիոք։ Ֆրանկները գրել էին Հալեբի ու Դամասկոսի տերերին, թե մենք կամենում ենք գրավել միայն այն երկիրը, որը [նախապես] Ռումի ձեռքում էր գտնվում և ուրիշ բան չենք ցանկանում։ Այս բանն ասացին խորամանկորեն, խաբելու համար, որպեսզի Անտիոքի տիրոջը չօգնեն։*

## *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ*

## (28 նոյեմբեր 1098—16 նոյեմբեր 1099)

*էջ 189*

## ՖՐԱՆԿՆԵՐԻ՝ ՍՈՒՐԲ ՔԱՂԱՔԸ (ԵՐՈՒՍԱՂԵՄ) ԳՐԱՎԵԼԸ

*Սուրբ քաղաքը Տաջ ալ-Դաուլա Տուտուշին էր պատկանում, և նա որպես պարգևական տիրույթ (իկթա) տվել էր Ուրտուկ Թուրքմենի որդուն՝ Սուկմանին։ Երբ Ֆրանկները Անտիոքի մոտ հաղթեցին թուրքերին ու կոտորեցին, թուրքերը թուլացան և ցրվեցին։ Եգիպտացիք տեսնելով թուրքերի թուլացումը, առաջ խաղացին Բադր ալ-Գամալիի (Ջամալիի) որդի Աֆդալի հրամանատարության տակ և պաշարեցին քաղաքը։ Քաղաքում էին Ուրտուկի որդիները՝ Սուկմանն ու Իլղազին.*

*Նրանք (եգիպտացիք) քառասունից ավելի քարանետ մեքենաներ (մանջանիկ) դրեցին և պարսպի շատ մասեր քանդեցին, սակայն բնակիչները ուժեղ դիմադրեցին, և կռիվն ու պաշարումը տևեց քառասուն օրից ավելի։ Վերջապես, չորս հարյուր ութսունինը թվականի Շա՛աբան ամսին (1096)· գրավեցին՝ երաշխավորագիր (աման) տալով։ Աֆդալը Սուկմա-*

նին, Իլղազիին և նրանց հետ եղածներին լավ վերաբերվեց, նրանց պարգևներ տվեց և բաց թողեց։ Սրանք գնացին Դամասկոս, ապա անցան Եփրատը։ Սուկմանը հաստատվեց Եդեսիայում, իսկ Իլղազին գնաց Իրաք։

Եգիպտացիք [Երուսաղեմում] տեղակալ (նաիբ) նշանակեցին Իֆտիխար ալ-Դաուլա (պետության պարծանք) կոչված մի ամիրի, որն այնտեղ մնաց, մինչև որ ֆրանկները Ակրան (Աքքա) պաշարելուց ու չգրավելուց հետո պաշարեցին այն (Երուսաղեմը)։ Երբ հասան, քառասուն օրից ավելի պաշարեցին...։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

## (17 նոյեմբեր 1099—5 նոյեմբեր 1100)

էջ 195

## ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՖՐԱՆԿՆԵՐԻ ԴԵՄ

Զու-լ-կաադա (սեպտեմբեր) ամսին ընդհարում տեղի ունեցավ Մալաթիայի մոտ, Գյումուշթեգին իբն Դանիշմանդ Տիլուի (Թայլու) և ֆրանկ պետերից Բոհեմունդի (Բիմունդ) միջև։ Սա կոչվել էր Դանիշմանդ, քանզի նրա հայրը ուսուցիչ էր եղել թուրքմենների մոտ։ Գյումուշթեգինի վիճակը շատ փոփոխություններ կրեց, մինչև որ նա տիրեց Մալաթիա, Սեբաստիա (Սիվաս) և այլ քաղաքների։

Մալաթիայի տերը[260] նրան (Բոհեմունդին) գրել էր և իր մոտ հրավիրել։ Սա եկավ հինգ հազարով, սակայն բախվելով Իբն Դանիշմանդի հետ, պարտություն կրեց ու գերի ընկավ։ Ապա ծովի ճանապարհով եկան յոթ ֆրանկ կոմսեր (կամամիսա) և կամեցան փրկել Բոհեմունդին։ Նրանք հասան Անկիրիոն (Անքուրիյյա) կոչված բերդը, գրավեցին և այնտեղի մահմեդականներին կոտորեցին, ապա ուրիշ բերդի վրա հարձակվեցին, ուր Իսմաիլ իբն Դանիշմանդն էր ու պաշարեցին։ (Գյումուշթեգին) Իբն Դանիշմանդը մեծ զորք հավաքեց և շարժվեց ֆրանկների դեմ։ Նա (իր մարդկանց) դարան մտցրեց և կռիվն սկսելուց հետո դարանակալները դուրս եկան, իսկ ֆրանկները, որոնք երեք հարյուր հազար էին, կոտորվեցին և միայն երեք հազարը գիշերը գաղտնի փախավ վիրավոր վիճակում։

Ապա Իբն Դանիշմանդը շարժվեց դեպի Մալաթիա, որը գրավեց ու տիրոջը գերի բռնեց։ Անտիոքը պաշտպանող ֆրանկները դուրս եկան նրա դեմ, իսկ նա կռվեց ու ջարդեց նրանց։ Այս դեպքերը կատարվեցին մի քանի ամսվա ընթացքում։

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(6 նոյեմբեր 1100—25 հոկտեմբեր 1101)

*էջ 201*

### ՖՐԱՆԿՆԵՐԻ՝ ԱՍՈՐԻՔՈՒՄ ԿԱՏԱՐԱԾ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ասորիքում (Շամ) ֆրանկների թագավոր և Սուրբ քաղաքի (Երուսաղեմ) տեր Գոդֆրիդը (Քունդիֆրի)[261] շարժվեց դեպի Ակրա (Աքքա)՝ Ասորիքի ափին և պաշարեց, սակայն նետը կպավ նրան և սպանվեց։ Նա Հոբբե (Յաֆա) քաղաքը շենացրել և հանձնել էր մի ֆրանկ կոմսի, որի անունն էր Թանկրետ (Թանքրի)։*

*Երբ Գոդֆրիդն սպանվեց, նրա եղբայր Բալդուինը (Բաղդուին) եկավ Սուրբ քաղաքը՝ հինգ հարյուր ձիավորներով ու հետևակներով։ Լուրը հասավ Դամասկոսի (Դիմաշկ) տեր Դուկակին, որը նրա դեմ ելավ իր զորքով, և նրա հետ էր ամիր Ջանահ ալ-Դաուլան՝ իր զորքով։ Կռվեցին ու հաղթեցին ֆրանկներին։*

*Այդ տարում ֆրանկները Ջազիրայում գրավեցին Սարուջ քաղաքը։*

*Բանն այն է, որ ֆրանկները գրավել էին Եդեսիա (Ռուհա) քաղաքը, նրա բնակիչներից գրավոր [հրավեր] ստանալով, քանզի նրա մեծամասնությունը հայեր են[262], իսկ մահմեդականները այնտեղ շատ քիչ են։ Արդ, Սուկմանը Սարուջում թուրքմենների մեծ բազմություն հավաքեց ու հարձակվեց։ Նրանք [ֆրանկները] կռվի ելան նրա դեմ ու փախուստի մատնեցին Ռաբի Ա ամսին (հունվար)։ Մահմեդականների այս պարտությունից հետո, ֆրանկները գնացին Սարուջ, պաշարեցին, գրավեցին, ժողովրդից շատերին կոտորեցին, կանանց գերեվարեցին, նրանց ունեցվածքը կողոպտեցին, և միայն փախչողները փրկվեցին։*

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(15 հոկտեմբեր 1102—4 հոկտեմբեր 1103)

*էջ 217*

### ԲԱՐՔԻԱՐՈՒԿԻ ԵՎ ՄՈՒՀԱՄՄԱԴԻ ՄԻՋԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

. . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Երբ Բարքիարուկը լսեց սուլթան Մուհամմադի և Մալիք Մաուդուդի[263] միաբանության մասին, առանց կանգ առնելու եկավ, [սակայն] հասավ Մաուդուդի մահվանից հետո։ Մաուդուդի զորքը համաձայնել էր սուլթան*

*Մուհամմադին հպատակություն հայտնել և երդում էր տվել նրան։ Սրանց մեջ էին Սուքման ալ-Կութբի և Մուհամմադ իբն Բաղի Սիյան, որի հայրը Անտիոքի տերն էր՝ Կիլիջ Արսլան իբն ալ-Սաբ ալ-Ահմարը[264]։ Երբ Բարքիարուկը հասավ, նրանց երկուսի միջև կռիվ տեղի ունեցավ Խոյի (Խուայյ) դարպասի մոտ՝ Ատրպատականում, մայրամուտի ժամանակ և տևեց մինչև գիշերային աղոթքը։ Եվ պատահեց, որ ամիր Այաղն իր հետ վերցնելով հինգ հարյուր կազդուրված ձիավորներ, նրանց կռվի տարավ, զորքը երկու կողմից սեղմեց սուլթան Մուհամմադի զորքը, ջարդեց նրան ու փախուստի մատնեց։*

*Սուլթան Բարքիարուկը գնաց մի սար՝ Մարաղայի ու Դավրեժի (Տաբրիզ) միջև, ուր առատ խոտ և ջուր կար և այնտեղ մնաց մի քանի օր, ապա շարժվեց դեպի Զինջան։ Իսկ սուլթան Մուհամմադն իր մերձավորների մի խմբի հետ գնաց Արճեշ (Արջիշ), որը Հայաստանում է, ճակատամարտից[265] քառասուն փարսախ հեռավորության վրա։ Սա Խլաթի գավառներից է, ամիր Սուքման ալ-Կութբիի տիրույթներից։ Նա այնտեղից գնաց Խլաթ, և նրա հետ հարաբերության մեջ մտավ ամիր Ալին՝ Արզան ալ-Ռումի տերը[266], ապա գնաց Անի, որի տերն էր Ֆազլուն ալ-Ռավվադիի եղբայր Մինուչիհրը[267]։ Այնտեղից գնաց Դավրեժ (Տաբրիզ), որն Ատրպատականում է։*

### *ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ*

### (5 հոկտեմբեր 1103—22 սեպտեմբեր 1104)

*էջ 220*

## ՍՈՒԼԹԱՆ ԲԱՐՔԻԱՐՈՒԿԻ ԵՎ ՄՈՒՀԱՄՄԱԴԻ ՄԻՋԵՎ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ռաբի Բ ամսին հաշտություն կայացավ երկու սուլթանների՝ Բարքիարուկի ու Մուհամմադի, Մալիքշահի երկու որդիների միջև[268]։*

*Բանն այն է, որ պատերազմները երկարեցին երկուսի միջև, ապականությունն էր տիրում, [մարդկանց] ունեցվածքը կողոպտում էին, արյուն էր թափվում, քաղաքները կործանվում էին, գյուղերը հրկիզվում էին, իսկ իշխանությունը բոլորի կամայականության և քմահաճույքի առարկա էր դարձել։ Թագավորները դարձել էին պարտված (կորցրել էին իրենց գիրքն ու հեղինակությունը), մինչդեռ նրանք հաղթական էին [ու հզոր], իսկ մեծամեծ ամիրները այս բանը նախընտրում էին, որպեսզի իրենց կողմից խլած իշխանությունը մնա և ընդարձակվի։*

Այդ ժամանակ սուլթան Բարքիարուկը Ռեյում էր։ Նրա անունը խութբայի մեջ հիշել էին այնտեղ, Ջիբալում, Թաբարիստանում, Խուզիստանում, Ֆարսում, Դիար Բաքրում, Ջաղիրայում, երկու պատվական սրբավայրերում (Մեքքա և Մադինա)։ Սուլթան Մուհամմադը Ատրպատականում էր և նրա անունը խութբայի մեջ հիշում էին այնտեղ, Առանում, Հայաստանում, Սպահանում և ամբողջ Իրաքում, բացի Տաքրիտից։

ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(23 սեպտեմբեր 1104—12 սեպտեմբեր 1105)

էջ 227

ՍՈՒԿՄԱՆ ԻԲՆ ՈՒՐՏՈՒԿԻ ՄԱՀԸ

Քիրբուկա [զորավարը] դուրս եկավ Մոսուլից, հարձակվեց Ամիդի վրա և կռվեց նրա տիրոջ դեմ։ Վերջինս, որ թուրքմեն էր, օգնության կանչեց Սուկմանին և սա եկավ։

Սուկմանը պարտվեց, և նրա եղբորորդին՝ Յակուտին, գերի ընկավ։ Քիրբուկան նրան բանտարկեց Մարդինում։

Յակուտին մնաց բանտում, մինչև որ Ուրտուկի (Արտուկ) կինը եկավ Քիրբուկայի մոտ և խնդրեց արձակել նրան։ Սա արձակեց նրան (Յակուտիին), որը հաստատվեց Մարդինի մոտ։

Նա ասպատակում էր [Մարդինի] խլաթի դռնից մինչև Բաղդադ։

էջ 228

Յակուտիից հետո Մարդինին տիրեց եղբայրը՝ Ալին, որը հպատակվեց [Մոսուլի աթաբեկ] Ջուքիրմիշին և տեղակալ թողեց մի ուրիշ Ալիի։ Այս վերջինը Մարդինից լուր ուղարկեց Սուկմանին, հայտնելով, որ քո եղբորորդին կամենում է Մարդինը հանձնել Ջուքիրմիշին։ Սուքմանն անձամբ եկավ և վերցրեց քաղաքը։ Նրա մոտ եկավ եղբորորդի Ալին և բերդը պահանջեց, իսկ նա (Սուկմանը) պատասխանեց թե՝ վերցրել եմ, որպեսզի մեր տունը (իշխանությունը) կանգուն մնա և նրան պարգևեց Ճապաղ ջուրը (Ջաբալ ջուր) ու նրան այնտեղ փոխադրեց։

ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ

(13 սեպտեմբեր 1105—1 սեպտեմբեր 1106)

էջ 235—236

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այս տարում Բաղդադ եկավ մի մարդ՝ բողարկվածներից (ալմորավիդներ), Մաղրիբի (Հյուսիսային Աֆրիկա) տիրակալներից։ Նա դիմեց

*խալիֆայական պալատը (դար ալ-խիլաֆա) և պատվով ընդունվեց։ Նրա հետ էր նաև մի մարդ, որը կոչվում էր Ֆակիհ (իրավագետ հոգևորական) և նույնպես քողարկվածներից (մուլասսամուն) էր։ Այս հոգևորականը քարոզեց պալատի մզկիթում, ուր մեծ բազմություն հավաքվեց։ Նա ըաբողում էր երեսը քողարկված և միայն աչքերն էին երևում։*

*Այս քողարկվածը զորահրամանատար (ամիր ալ-ջույուշ) Աֆդալի որդու հետ մասնակցել էր ֆրանկների դեմ պատերազմին և իրեն լավ դըրսևորել։*

*Նրա Բաղդադ գալու պատճառն այն էր, որ [սուննի] մաղրիբցիները Եգիպտոսի տեր ալիականների (ֆաթիմիների) մասին խիստ վատ կարծիք ունեին և ուխտագնացության [Մեքքա] գնալիս Եգիպտոսի [տիրույթներից] չէին անցնում։*

*Զորահրամանատար (ամիր ալ-ջույուշ) Բադրը, Աֆդալի հայրը, կամեցել էր նրանց հետ լեզու գտնել, սակայն նրանք չէին ընդառաջել, ուստի նա (Բադրը) հրամայել էր կոտորել, նրանցից ով որ պատահի։ Սա, երբ Աֆդալը պաշտոնի գլուխ էր անցել (դարձել վեզիր), լավ էր վերաբերվել և օգտագործել էր նրանց ֆրանկների դեմ պատերազմում։ Ահա վերոհիշյալը մեկն էր նրանցից, որ նրա կողքին կռվեցին։*

## *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԹՎԱԿԱՆ*

## (2 սեպտեմբեր 1106—21 օգոստոս 1107)

*էջ 240*

### ԿԻԼԻՋ ԱՐՍԼԱՆԻ՝ ՄՈՍՈՒԼԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Գնաց [Կիլիջ Արսլանը] Մոսուլ ու տիրեց նրան Ռաջաբ ամսի քսանհինգին (22 մարտ)։ Կիլիջ Արսլանի կողմնակիցներն էին Ամիդի տեր Իբրահիմ իբն Յաննալ ալ-Տուրքմանին և Մուհամմադ իբն Ջաբակ ալ-Տուրքմանին՝ Հիսն Զիյադի տերը, որը Խարբերդն (Խարտբիրտ) է։ Իբրահիմ իբն Յաննալի՝ Ամիդին տիրանալու պատճառն այն էր, որ երբ Տաջ ալ-Դաուլա Տուտուշը տիրել էր Դիար Բաքրին, այն հանձնել էր նրան և այդպես էլ մնացել էր նրա ձեռքում։ Իսկ Մուհամմադ իբն Ջաբակի՝ Խարբերդին (Հիսն Զիյադ) տիրելու պայմանները հետևյալներն էին. այս բերդը գտնվում էր Փիլարտոս Հոռոմի (Ֆիլարդուս[269] ալ-Ռումի)՝ Ռումի թագավորի թարգմանի ձեռքում, իսկ Եդեսիան (Ռուհա) և Անտիոքը (Անթաքիա) սրա գավառներից էին։ Երբ Սուլայման իբն Կուտուլմիշը՝ Կիլիջ Արսլանի հայրը, տիրեց Անտիոքին, իսկ Ֆախր ալ-Դաուլա իբն Ջուհայրը (Ջահիր) տիրեց Դիար Բաքրին, Փիլարտոսը (Ֆիլարդուս) չկարողացավ Հիսն Զիյադ [բերդը] մատակարարել սննդամթերքով ու մարդկանցով, այն*

*գրավեց Ջաբակը, իսկ Փիլարտոսը մահմեդականացավ սուլթան Մալիք շահի մոտ։ Սա կառավարիչ նշանակեց նրան Եդեսիայում և այնտեղ նա մնաց մինչև իր մահը։ Նրանից հետո այն գրավեց Ամիր Բուզանը։*

*Հիսն Ջիյադին մոտիկ կար մի ուրիշ [բերդ], մի հոռոմի ձեռքում, որի անունն էր Իֆրանջի (ֆրանկ), որը ճանապարհներ էր կտրել և շատ մահմեդականներ կոտորել։ Ջաբակը նրան նվեր ուղարկեց և բարեկամություն հաստատեց, որպեսզի մեկը մյուսին օգնեն, և վերջինս համաձայնեց։ Այսպիսով, Ջաբակը օգնում էր Իֆրանջիին ճանապարհ կտրելու և այլ բաների մեջ, իսկ Իֆրանջին օգնում էր Ջաբակին։ Երբ արդեն մեկը մյուսին վստահում էր, Ջաբակը լուր ուղարկեց, թե ուզում է ինչ-որ տեղ գնալ և խնդրեց նրա մարդկանց։ Սա ուղարկեց, և երբ նրանք միասին գնում էին, ճանապարհին [Ջաբակը] կապեց նրանց, տարավ Իֆրանջիի բերդը և ասաց բնակիչներին՝ ալլահը վկա, եթե չհանձնեք Իֆրանջիին, սրանց բոլորի գլուխները կկտրեմ և բերդը բռնի ուժով կգրավեմ և բոլորից կսպանեմ մի մարդու պատճառով։ Սրանք բերդի գուռը բացին և Իֆրանջիին նրան հանձնեցին։ Նա մաշկը քերթեց, ունեցվածքն ու դենքը խլեց, իսկ սա շատ հզոր էր։ Ջաբակը մեռավ և նրան հաջորդեց որդին՝ Մուհամմադը։*

## *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ*

**(11 օգոստոս 1108—30 հուլիս 1109)**

*էջ 252*

## ՄԱՈՒԴՈՒԴԻ ԵՎ ՍՈՒԼԹԱՆԻ ԶՈՐՔԻ՝ ՄՈՍՈՒԼԸ ԳՐԱՎԵԼՈՒ ԵՎ ՄԱՈՒԴՈՒԴԻ ԿԱՌԱՎԱՐԻՉ ԴԱՌՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

*Երբ [Մուհամմադ] սուլթանը ազատվեց Սադակայի[270] գործերից և սպանեց նրան, դիմեց Բուրսուկի որդիներին՝ [Խլաթի տեր] Սուքման ալ-Կութբիին, Մաուդուգ իբն Ալտունտեգինին, Ակսունկուր ալ-Բուրսուկիին, Նասր իբն Մուհալհիլ իբն Աբի-լ-Շաուք ալ-Քուրդիին և Արբելայի (Իրբիլ) տիրոջը՝ Աբու-լ-Հայջային, որպեսզի շարժվեն դեպի Մոսուլ և Ջաուլիի երկիրը ու նրանից նվաճեն։ Սրանք ճանապարհ ընկան դեպի Մոսուլ և տեսան, որ Ջաուլին ապստամբել է, Մոսուլի պարիսպները վերակառուցել և ամրացրել այն, ինչ Ջիքիրմիշն էր կառուցել, իսկ քաղաքը ապահովել էր պարենով, մթերքով ու մեքենաներով։*

*էջ 253—254*

## ԿՈՄՍԻ ԵՎ ԱՆՏԻՈՔԻ ՏԻՐՈՋ ՄԻՋԵՎ ՊԱՏԱՀԱԾ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Երբ կոմսը (կումս)[271] ազատ արձակվեց և գնաց Անտիոք, նրա տեր Թանքրետը (Թանքրի) նրան տվեց երեսուն հազար գինար, ձիավորներ, զենք, զգեստ և այլ բաներ, իսկ Թանքրետը վերցրել էր Եգեսիան կոմսի մերձավորներից, երբ սա բանտարված էր։ Այժմ սա (կոմսը) գիմեց նրան այն վերադարձնելու համար, բայց նա (Թանքրետը) չընդունեց։ Նա (կոմսը) դուրս եկավ նրա մոտից, գնաց Տալլ Բաշիր և երբ նրա մոտ եկավ Ջոսլինը, որին Ջաուլին ազատ էր արձակել, շատ ուրախացավ։*

*Անտիոքի տեր Թանքրետն այս երկուսի դեմ կռվի դուրս եկավ իր զորքով, նախքան նրանց ուժեղանալը, զորք հավաքելը, Ջաուլիի նրանց միանալը և օգնելը։ Նրանք կռվեցին և կռիվը վերջացնելուց հետո հավաքվեցին իրար մոտ, ճաշեցին ու զրուցեցին։ Կոմսը իր մոտ եղած մահմեդական գերիներից հարյուր վաթսունը բաց թողեց, որոնք բոլորը Հալեբի հասարակ (գյուղական) ժողովրդից էին։ Նա հագցրեց ու ճանապարհ գցեց նրանց։*

*Թանքրետը վերադարձավ Անտիոք առանց Եգեսիայի (Ռուհա) մասին որևէ հստակ որոշում առնելու։ Իսկ կոմսն ու Ջոսլինը հարձակվեցին Անտիոքի տեր Թանքրետի բերդերի վրա, և կոմսը ապաստանեց Քուվասիլի[272] նահանգը։ Սա հայ էր և նրա մոտ կային շատ հավատափոխ (մահմեդականներ) և ուրիշներ։ Նա տեր էր Ռաբանի, Քեսունի (Քայսում) և Հալեբից հյուսիս գտնվող ուրիշ շատ ամրոցների։ Նա կոմսին օգնեց հավատափոխների հազար ձիավորով ու երկու հազար հետիոտն [զինվորներով]։ Նրանց դեմ հարձակվեց Թանքրետը և նրանք կռվեցին Եգեսիայի համար։ Միջնորդեց պատրիարքը (բաթրաք), որը նրանց մոտ նույնն է, ինչ որ իմամը մահմեդականների մոտ, որի հրամանը չի մերժվում։ Եպիսկոպոսներից (մութրան) և քահանաներից շատերը վկայեցին, որ Թանկրետի (Թանքրի) քեռին Բոհեմունգը (Բիմունգ), երբ կամեցել էր նավ նստել ու գնալ իր երկիրը, կարգադրել էր, որ Եգեսիան պետք է վերադարձվեր կոմսին, հենց որ գերությունից ազատվեր։ Ուստի Թանքրետը հրաժարվեց իր հավակնություններից և վերադարձրեց այն Սաֆար ամսի իննին (18 սեպտեմբեր 1108)։*

*էջ 257*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Շավվալ ամսին (մայիս 1109), Խլաթի տեր ամիր Սուքման ալ-Կութբին[273] տիրացավ Նփրկերտին (Մայյաֆարիկին)՝ երաշխավորագրով (աման), այն բանից հետո, երբ երկար ամիսներ պաշարեց ու նեղեց բնակիչներին։ Մթերքն սպառվեց, սովն ուժեղացավ, և բնակիչները հանձնվեցին։*

## *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ*

**(20 հուլիս 1110—9 հուլիս 1111)**

*էջ 260—261*

## ԵԳԻՊՏԱՑԻՆԵՐԻ՝ ԱՍԿԱԼՈՆԸ (ԱՍԿԱԼԱՆ) ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Ասկալոնը[274] եգիպտացի ալավիներին էր պատկանում, պապ ալ-Ամիր Բիահքամիլլահ խալիֆան այնտեղ կառավարիչ նշանակեց մի մարդու, որի անունն էր Շամս ալ-Խիլաֆա։*

*Սա սկսեց ֆրանկների թագավոր Բալդուինի (Բաղդուին) հետ նամակագրության մեջ մտնել. նրա հետ հաշտ հարաբերության մեջ էր, նրան գրամ և թանկարժեք իրեր էր նվիրել։ Այսպիսով, Եգիպտոսի իշխանությանը չէր ենթարկվում, սակայն բացեիբաց չէր ըմբոստանում։ Երբ այս լուրը հասավ Եգիպտոսի տեր ալ-Ամիր Բիահքամիլլահին և նրա վեզիր Ամիր ալ-ջույուշ (զորաց հրամանատար) ալ-Աֆդալին, դայրացան և մի բանակ պատրաստեցին ու իրենց մեծ զորավարներից մեկի հետ ուղարկեցին Ասկալոն։ Նա պետք է ձևացներ, թե գնում է սրբազան պատերազմի (ընդդեմ քրիստոնյաների), սակայն նրան գաղտնի պատվիրված էր, որ, մոտենալով Ասկալոնին, ձերբակալի Շամս ալ-Խիլաֆային, հենց որ վերջինս իրեն ներկայանա, և ինքը փոխարինի նրան որպես Ասկալոնի կառավարիչ։ Զորքը շարժվեց, սակայն Շամս ալ-Խիլաֆան իմացավ դրության մասին, հրաժարվեց ներկայանալ եգիպտական զորքին, բացեիբաց ապստամբեց և իր մոտ եղած եգիպտական զորքը դուրս բերեց [Ասկալոնից]՝ վախենալով նրանից։*

*Երբ Աֆդալը տեղեկացավ այդ մասին, վախեցավ, որ նա Ասկալոնը կարող է ֆրանկներին հանձնել։ Նրա մոտ մարդ ուղարկեց, սիրտը շահեց, հանգստացրեց, վերահաստատեց իր իշխանության մեջ և նրան վերադարձրեց Եգիպտոսում ունեցած կալվածները։*

Սակայն Շամս ալ-Խիլաֆան կասկածելով Ասկալոնի բնակիչներին, հայերի մի խումբ (ջոկատ) բերեց և իրեն վորք դարձրեց։ Այսպես էր դրությունը մինչև հինգ հարյուր չորս թվականի վերջը։

Այս բանը վրդովեցրեց քաղաքի բնակիչներին, և նրանց մեծամեծները հարձակվեցին, երբ նա ձիով գնում էր, ու վիրավորեցին նրան, և նա փախավ իր տունը։ Նրանք հետապնդեցին ու սպանեցին նրան։ Կողոպտեցին նրա տունն ամեն ինչով։ Օգտվելով առիթից, կողոպտեցին նաև այլ հարուստների տները։

Նրանք Եգիպտոս՝ տիրակալին (խալիֆային) և Աֆդալին լուր ուղարկեցին, որոնք ուրախացան ու վարձատրեցին այս ավետիսը բերողին և նոր կառավարիչ ուղարկեցին, որը պետք է բարյացակամ լիներ բնակիչներին և լավ վարք ունենար։ Այս բանը կատարվեց և վերացավ այն, ինչից վախենում էին։

*էջ 261*

## ՖՐԱՆԿՆԵՐԻ՝ ԱՍԱՐԻԲ ԲԵՐԴԸ ԵՎ ԱՅԼ ՎԱՅՐԵՐ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Անտիոքի տերը ֆրանկներից զորք հավաքեց՝ ձիավոր ու հետիոտն, և դիմեց դեպի Ասարիբ բերդը, որը Հալեբին մոտ էր, երեք փարսախ[275] հեռավորության վրա։ Նա պաշարեց այն, արգելեց պարենի մուտքը (բերդ), և այնտեղ գտնվող մահմեդականները նեղվեցին։ Նրանք բերդից անցք փորեցին և փորձեցին նրանով հասնել Անտիոքի տիրոջ վրանի մոտ ու սպանել նրան։

Երբ այս բանն արեցին և մոտեցել էին նրա վրանին, մի հայ տղա, ապաստանելով նրա մոտ, հայտնեց այս մասին և սա (Անտիոքի տերը) զգուշացավ նրանցից և ուժերը լարելով կարողացավ բռնությամբ և ուժով գրավել բերդը։ Երկու հազար մարդ կոտորեց և գերեվարեց մնացածներին։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(10 հուլիս 1111—27 հունիս 1112)

*էջ 262*

## ԶՈՐՔԵՐԻ ԱՌԱՋԽԱՂԱՑՈՒՄԸ ՖՐԱՆԿՆԵՐԻ ԴԵՄ ԿՌՎԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Այդ տարում հավաքվեցին այն զորքերը, որոնք սուլթան [Մուհամմադի] հրամանով պետք է գնային ֆրանկների դեմ։ Դրանց [հրամանատարներն] էին՝ Մոսուլի տեր ամիր Մաուդուդը, Դիար Բաքրի տեր ամիր Սուքման ալ-Կուտբին, Բուրսուքի որդիներ Իլենքին ու Զանգին՝ Համադանի ու հարևան շրջանների տերերը, Մարաղայի տեր Ահմադիլը։ Գրել էին

նաև Արբելայի (Իրբիլ) տեր Աբու-լ-Հայջային և Մարդինի տեր ամիր Իլ-ղազիին ու Բաքջիյյա ամիրներին՝ գալու միանալու Մալիք Մասուդին և Մաուդուդին։ Եկան, բացի Մարդինի տեր Իլղազիից, որն ուղարկել էր իր որդուն՝ Այազին, իսկ ինքը մնացել էր։

Երբ հավաքվեցին և շարժվեցին Սինջար քաղաքի դեմ, ֆրանկների բաղում բերդեր նվաճեցին, կոտորեցին այնտեղ գտնվողներին և որոշ ժամանակ պաշարեցին Եդեսիան (Ռուհա)։ Ապա հեռացան առանց գրավելու։

Բանն այն էր, որ ֆրանկները հավաքվել էին ձիավոր ու հետիոտն, և գնացել էին Եփրատ գետի մոտ, այն անցնելու և մահմեդականների կողմից Եդեսիան գրավելը արգելելու նպատակով։ Երբ գետը հասան ու լսեցին, որ մահմեդականները շատ են, մնացին Եփրատի մոտ։ Հենց որ այս տեսան մահմեդականները, Եդեսիայից հեռացան Խառան (Հառան), որպեսզի ֆրանկները հրապուրվելով անցնեն Եփրատը և իրենք կռվի բռնվեն նրանց հետ։

Երբ նրանք հեռացան, ֆրանկները իրենց պարենով ու պաշարներով եկան Եդեսիա։ Նրանք քաղաքն ապահովեցին ամեն ինչով, իսկ մինչ այդ պարենը սակավ էր և քիչ էր մնացել քաղաքը գրավվեր։ Ապա հեռացրին քաղաքից հիվանդներին, տկարներին, տնանկներին, վերադարձան Եփրատ և անցան Ասորիքի կողմը ու ասպատակեցին Հալեբի գավառները, փչացրին, կողոպտեցին, կոտորեցին, գերեվարելով մեծ բազմություն։

Բանն այն է, որ ֆրանկները, երբ անցել էին Վերին Միջագետքի (Ջազիրա) կողմը, Հալեբի տեր Մալիք Ռիդուանը հարձակվել ու նվաճել էր ֆրանկների ձեռքում գտնվող որոշ գավառներ, նրանց կողոպտել ու կոտորել էր։ Ահա թե ինչու ֆրանկները Եփրատն անցնելով արեցին այն, ինչ պատմեցինք։

Իսկ սուլթանի զորքը, երբ լսեց ֆրանկների վերադարձը և Եփրատն անցնելը, գնաց Եդեսիան պաշարելու, սակայն տեսնելով, որ նրանք (քաղաքի բնակիչները) ուժեղ են ու ինքնավստահ ստացած պաշարով և ունեն շատ ռազմիկներ, հուսահատվեցին ու հեռացան։ Նրանք անցան Եփրատը և Տելլ Բաշիրը և քառասունհինգ օր պաշարելուց հետո ձեռնունայն հեռացան ու գնացին Հալեբ։ Սակայն Մալիք Ռիդուանը փակեց Հալեբի դռները և մերժեց հարաբերություն ունենալ նրանց հետ։

Այստեղ Սուքման ալ-Կութբի ամիրը հիվանդացավ ու կամեցավ վերադառնալ, սակայն մեռավ Բալիսում։ Նրա մարդիկ դագաղի մեջ դրեցին նրան և իրենց հետ վերցնելով շարունակեցին ընթացքը։ Նրանց հետապնդեց Իլղազին, որպեսզի կողոպտի։ Նրանք, իրենց մեջտեղում պահելով դագաղը, կատաղի դիմադրություն ցուցաբերեցին։ Իլղազին պարտվեց ու փախավ, իսկ նրանք կողոպտեցին նրա ունեցվածքն ու գնացին իրենց երկիրը։

## *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

(28 հունիս 1112—17 հունիս 1113)

***էջ 265***

*Այդ տարում մեռավ կիրճերի տեր հայազգի Վասիլը (Բասիլ ալ-Արմանի)[276], [որի տիրույթները գտնվում էին] Լևոնի որդու (իրն Լայուն) երկրում։ Անտիոքի տեր Թանքրեդը (Թանքրի) Ջումադա Բ ամսի մեկին (23 նոյեմբեր) եկավ նրա երկիրը՝ տիրելու ցանկությամբ, սակայն ճանապարհին հիվանդացավ, վերադարձավ Անտիոք ու մեռավ Ջումադա Բ ամսի ութին։ Նրանից հետո իշխեց քեռորդին՝ Սարխալան (Սիրջալ)[277]։ Այս առթիվ վեճ առաջացավ ֆրանկների միջև, իսկ քահանաներն ու վանականները հաշտեցրին նրանց, և նրա գործերը կարգավորվեցին։*

## *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹ ԹՎԱԿԱՆ*

(7 հունիս 1114—26 մայիս 1115)

***էջ 269***

### ՄԱՐԱՇԻ ԵՎ ԱՅԼ ՎԱՅՐԵՐԻ ՏԻՐՈՋ ՀՊԱՏԱԿՎԵԼԸ ԲՈՒՐՍՈՒԿԻԻՆ

*Այդ տարում վախճանվեց Հայոց թագավորներից մեկը[278], որի անունն էր Գող Վասիլ (Քուվասիլ) և Մարաշի, Քեսունի (Քայսում), Ռաբանի և այլ վայրերի տերն էր։ Նրա իշխանությանը տիրացավ կինը ու պաշտպանվեց ֆրանկներից։ Նա զինվորներին լավ վերաբերվեց և նամակ գրեց Աքսունկուր ալ-Բուրսուկիին[279], որը Եդեսիան էր պաշարել ու հրավիրեց նրա մերձավորներից (հրամանատարներից) մեկին, որպեսզի նրան ենթարկվի։ Սա ուղարկեց Խաբուրի տիրոջը՝ ամիր Սունկուր Դազդարին, որին, երբ եկավ, նա (կինը) հարգեց ու մեծ նվերներ տվեց։ Նրա այստեղ գտնվելու ժամանակ, ֆրանկների մի զորամաս եկավ ու բախվեց վերջինիս զորքի հետ, որը բաղկացած էր մոտավորապես հարյուր ձիավորից։ Խիստ ընդհարում տեղի ունեցավ, սակայն մահմեդականները հաղթեցին ֆրանկներին ու մեծ մասին կոտորեցին։ Իսկ Սունկուր Դազդարը վերադարձավ, նրա (կնոջ) կողմից նվերներ տանելով Մալիք Մասուդին և ալ-Բուրսուկիին և նա (կինը) հպատակություն հայտնեց։ Երբ ֆրանկները իմացան այդ բանը, շատերը, որոնք այդ կնոջ մոտ էին ծառայում, վերադարձան Անտիոք։*

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(2 ապրիլ 1120—21 մարտ 1121)

*էջ 293—294*

### ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ԻՍԼԱՄԻ ԵՐԿՐԻ ՎՐԱ ՀԱՐՁԱԿՄԱՆ ԵՎ ՏՓՂԻՍԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում վրացիք (ալ-Քուրջ)[280], որոնք ալ-Ջուրզ էլ են կոչվում, հարձակվեցին իսլամի երկրի վրա։ Նրանք հնում էլ ասպատակություններ էին կատարել, սակայն դադարել էին Մալիքշահի ժամանակ, մինչև սուլթան Մուհամմադի [իշխանության] վերջը։*

*Այդ տարում նրանք հարձակվեցին, և նրանց հետ կային նաև ղփչաղներ (կիֆջակ) և դրացի այլ ժողովուրդներ։ Նրանց հարևան [մահմեդական] երկրների ամիրները իրար գրեցին ու հավաքվեցին։ Նրանց մեջ էր ամիր Իլղազին, Դուբայս իբն Սադական[281], որը նրա մոտ էր, Մալիք Թուղրիլ իբն Մուհամմադը և նրա աթաբեկ Քինտուղդին։ Թուղրիլին էին պատկանում Առան երկիրը և Նախճավանը (Նակջուան) մինչև Արաքս (Արաս)։ Նրանք հավաքվեցին ու դիմեցին վրացիների կողմը, երբ մոտեցան Տփղիսին, մահմեդականների զորքն արդեն բազմամարդ էր՝ երեսուն հազար։ Նրանք հանդիպեցին իրար և երկու կողմում էլ դասավորվեցին պատերազմի։ Ղփչաղներից երկու հարյուր մարդ դուրս եկավ, և մահմեդականները կարծելով, որ ուզում են հանձնվել, չզգուշացան նրանցից։ Սրանք (ղփչաղները) մտան նրանց մեջ ու սկսեցին նետահարել, և մահմեդականների շարքերում շփոթություն ընկավ։ Հեռու կանգնածները կարծելով, որ նահանջը սկսվել է, փախուստի դիմեցին և մարդիկ իրար հետևելով փախան, իրարանցման սաստկությունից իրար էին խփում ու մեծ թվով սպանվեցին։ Անհավատները տասը փարսախ հետևեցին նրանց, կոտորելով ու գերեվարելով։ Նրանց (մահմեդականների) մեծ մասը րսպանվեց և չորս հազար հոգի գերի ընկավ։ Մալիք Թուղրիլը, Իլղազին և Դուբայսը ազատվեցին։*

*Վրացիք դարձյալ կողոպտեցին իսլամի երկիրը և պաշարեցին Տփղիս քաղաքը։ Կռիվը սաստկացավ նրանում եղած [զորքի] դեմ, դրությունը լրջացավ և բնակիչները ծանր վիճակի մատնվեցին։ Պաշարումը տևեց մինչև (հինգ հարյուր) տասնհինգ թվականը (1121—1122), և նրանք բռնի ուժով գրավեցին [քաղաքը]։ Երբ բնակիչները զգացին իրենց անհուսալի վիճակը, դատավորին և խաթիբին (քարոզիչ) ուղարկեցին վրացիների մոտ երաշխավորագիր խնդրելով։ Սակայն վրացիք կարևորություն չտվեցին նրանց խնդրանքին, հայհոյեցին նրանց և բռնի ուժով մտան քաղաք, քանդեցին ու կողոպտեցին։ [Մահմեդական] փախստականները հասան*

*Բաղդադ [հինգ հարյուր] տասնվեց թվականին (12 մարտ 1122—29 փետրրվար 1123), օգնություն և պաշտպանություն խնդրելով։ Նրանք լսեցին, որ սուլթան Մահմուդը[282] Համադանում է և դիմեցին օգնություն խնդրելու։ Սա գնաց Ատրպատական ու կանգ առավ Դավրեժում (Տարրիզ) Ռամադան ամսին և զորք ուղարկեց վրացիների դեմ, որի հետ կատարվածի մասին հիշատակվելու է, եթե ալլահը կամենա։*

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(22 մարտ 1121—11 մարտ 1122)

*էջ 303*

### ԱՄԻՐ ԱԼ-ՋՈՒՅՈՒՇԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ռամադան ամսի 23-ին (5 դեկտեմբեր 1121) սպանվեց ամիր ալ-ջույուշ (զորաց հրամանատար) Աֆդալը՝ Բադր ալ-Ջամալիի (Ջամալի) որդին, որը Եգիպտոսի իշխանության տերն էր (վեզիր) և կառավարիչը։*

*Նա ձի հեծած գնացել էր զինանոց, որպեսզի, ըստ տոնական օրերի ընդունված սովորության, զենք բաժանի զորականներին։ Նրա հետ եկել էր հետիոտն և հեծյալ մեծ բազմություն (զորք)։ Բայց ահա փոշի բարձրացավ [ամբոխի երթից], և նա հեռացրեց բազմությունը և ինքը մենակ, երկու հոգու ընկերակցությամբ գնաց և երբ հասավ զենք փայլեցնողների շուկան, նրա դիմաց դուրս եկան երկու հոգի, որոնք դանակներով խփեցին նրան ու վիրավորեցին։ Եկավ նաև երրորդը ետևից ու դանակով խփեց նրա կողին։ Նա ձիուց ընկավ։ Նրա մարդիկ եկան ու երեքին էլ սպանեցին, իսկ նրան հոգևարքի մեջ տարան իր բնակարանը։*

*Նրա մոտ եկավ խալիֆան և ցավակցեց նրան, ապա հարցրեց ունեցվածքի մասին։ Նա ասաց՝ ինչ վերաբերում է հայտնի [հարստությանը], այդ մասին տեղյակ է Աբու-լ-Հասան իբն Ուսամա քարտուղարը։ Սա Հալեբից էր և նրա հայրը Կահիրեի (ալ-Կահիրա) դատավոր էր եղել։ Իսկ թաքուն [հարստության] մասին տեղյակ է Իբն ալ-Բաթաիհին։ Նրանք երկուսն էլ ասացին՝ ճիշտ է։*

*Երբ մեռավ Աֆդալը, նրա բնակարանից այնքան ունեցվածք տարան, որի մասին միայն ալլահը գիտի։ Խալիֆան քառասուն օր մնաց նրա բնակարանում։ Քարտուղարները (գրագիրները) նրա մոտ արձանագրում էին բերված իրերը, իսկ անասունները գիշեր ցերեկ փոխադրում էին։ Նրա մոտ գտնվեցին այնպիսի արժեքավոր և զարմանահրաշ հազվագյուտ իրեր, որոնց նմանը տեսնված չէր։*

Նրա որդիները ձերբակալվեցին։ Նա հիսունյոթ տարեկան էր։ Իր հորից հետո իշխեց քսանութ տարի։

*էջ 304*

## ՆՓՐԿԵՐՏԸ ԻԼՂԱԶԻՆ ԱՎԱՏ (ԻԿԹԱ) ՏՐՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում սուլթան Մահմուդը Նփրկերտ քաղաքը, որպես ավատ պարգևեց Իլղազի ամիրին։

Բանն այն է, որ նա իր տասնյոթ տարեկան որդուն՝ Հուսամ ալ-Դին Տիմուրտաշին, ուղարկել էր սուլթանի մոտ միջնորդելու Դուբայս իբն Սադակայի համար և նրա կողմից հայտնելու, որ հնազանդ է լինելու, հարկերը վճարելու է, ձիավորներ է հայթայթելու և ամեն օր Հիլլային[283] տրամադրելու է հազար դինար ու ձի։ Նրա միջնորդն էր դատավոր Բահա ալ-Դին Աբու-լ-Հասան Ալի իբն ալ-Կասիմ իբն ալ-Շահրզուրին, որն այդ հարցով անդադար զբաղվեց, բայց ապարդյուն։ Երբ (Հուսամ ալ-Դինը) ուզեց վերադառնալ, սուլթանը նրա հորը, որպես ավատ, պարգևեց Նփրրկերտ քաղաքը, որը նախապես պատկանում էր Խլաթի տեր ամիր Սուքմանին։ Իլղազին վերցրեց այն և մնաց նրա ու նրա որդիների ձեռքում, մինչև որ հինգ հարյուր ութսուն (1184—1185) թվականին Սալահ ալ-Դին Յուսուֆ իբն Այյուբը այն գրավեց, ինչպես հիշելու ենք, եթե ալլահը կամենա։

*էջ 304*

## ԲԱԼԱՔ ԻԲՆ ԲԱՀՐԱՄԻ՝ ԵԴԵՍԻԱՆ ՊԱՇԱՐԵԼԸ ԵՎ ՆՐԱ ՏԻՐՈՋԸ ԳԵՐԵԼԸ

Այդ տարում Իլդազիի եղբորորդին՝ Բալաք իբն Բահրամը, շարժվեց Եդեսիա քաղաքի դեմ ու պաշարեց, իսկ այն պատկանում էր ֆրանկներին։

Նա որոշ ժամանակ պաշարեց, սակայն չկարողանալով հաղթել, հեռացավ։ Նրա մոտ եկավ մի թուրքմեն ու հայտնեց, որ Եդեսիայի ու Սարուջի տեր Ջոսլինը (Ջուսլին) ի մի է հավաքել իր ձեռքի տակ եղած զորքերը և որոշել է հանկարծակի նրա վրա հարձակվել։ Բալաքի զորքերն այդ ժամանակ ցրված էին և մնացել էր միայն չորս հարյուր ձիավոր։ Սակայն նա պատրաստվեց պատերազմի։

Շուտով եկան ֆրանկները։ Բարեբախտաբար ֆրանկները հասան մի այնպիսի տեղ, ուր հողը նոր էր ջրված և նրանց ձիերը ցեխի մեջ խրվեցին, ասպետները իրենց զենքի ծանրության պատճառով չկարողացան

*աճապարել ու վազել, իսկ Բալաքի մարդիկ նրանց վրա նետերի տարափ տեղացին։ Ոչ ոք չկարողացավ փախչել և Ջոսլինը գերի ընկավ։ Նրան դրեցին ուղտի մորթու մեջ և վրան կարեցին։ Բալաքը նրանից պահանջեց Ծղեսիան հանձնել, իսկ սա մերժեց և առաջարկեց հսկայական գումար տալ ու մեծ թվով մահմեդական գերիների ազատ արձակել։ Բալաքն այդ առաջարկը մերժեց և նրան տարավ Խարբերդ (Խարտբիրտ) ու բանտարկեց։ Նրա հետ գերի էր ընկել նաև նրա մորաքրոջ որդին, որի անունն էր Գիլյոմ (Գուլիամ)։ Սա (Ջոսլինը) անհավատների սատանա [ռազմիկներից] էր։ Բալաքը գերել էր նաև նրա նշանավոր ասպետներից ու բանտարկել։*

### *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

(12 մարտ 1122—29 փետրվար 1123)

*էջ 309*

### ԻԼՂԱԶԻԻ ՄԱՀՎԱՆ ԵՎ ԴՐԱՆԻՑ ՀԵՏՈ ՀԱԼԵՊԻ ՎԻՃԱԿԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Ռամադան ամսին (3 նոյեմբեր—3 դեկտեմբեր), Նըփըրկերտում (Մայյաֆարիկին) մեռավ Իլղազի իբն Ուրտուկը*[284] *և նրա որդին՝ Հուսամ ալ-Դին Տիմուրտաշը, տիրեց Մարգին դղյակը, իսկ Սուլայման որդին՝ Նփրկերտը։ Հալեպում էր [իշխում] նրա եղբորորդին Բադր ալ-Դաուլա Սուլայման իբն Աբդալ-Ջաբբար իբն Ուրտուկը և նա մնաց, մինչև որ հորեղբորորդին այն վերցրեց նրանից։*

### *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ*

(1 մարտ 1123—18 մարտ 1124)

*էջ 312—313*

### ՖՐԱՆԿՆԵՐԻ՝ ԽԱՐԲԵՐԴԸ ԳՐԱՎԵԼՈՒ ԵՎ ՆՐԱՆՑԻՑ ԵՏ ՎԵՐՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Ռաբի Ա ամսին (29 ապրիլ—29 մայիս) ֆրանկները գրավեցին Խարբերդը (Խարտբիրտ, Խարտաբիրտ)*[285]*, որը Դիար Բաքրի գավառներից էր։*

*Բանն այն է, որ Բալաք իբն Բահրամ իբն Ուրտուկը, որը Խարբերդի տերն էր, պաշարեց Քարքար (Կառկառ) ամրոցը, որը Խարբերդի մոտ էր։ Ասորիքի ֆրանկները այս բանը լսեցին, և ֆրանկների թագավոր Բալդուինը (Բաղդուին) իր զորքով եկավ նրան դուրս քշելու այդտեղից. վախենա-*

*լով, որ նրան տիրելով կարող է ուժեղանալ։ Երբ Բալաքը լսեց նրա մոտիկ գտնվելը, գնաց նրա դեմ և ընդհարվեցին Սաֆար ամսին (31 մարտ—28 ապրիլ), կռվեցին, և ֆրանկները նահանջեցին, ու նրանց թագավորը գերի ընկավ մի խումբ մեծամեծ ասպետների հետ, որոնց նա բանտարկեց Խարբերդի ամրոցում։ Այդ ամրոցում էին նաև Եդեսիայի տեր Ջոսլինը և ֆրանկ առաջնորդներից ուրիշներ, որոնց նա գերել էր [հինգ հարյուր] տասնհինգ թվականին։ Բալաքը Խարբերդից գնաց Խառան Ռաբի Ա ամսին ու գրավեց այն։ Ֆրանկները խորամանկություն գործադրեցին՝ սիրաշահելով որոշ [մահմեդական] զինվորների և հաղթելով, գրավեցին ամրոցը, իսկ Բալդուին թագավորը գիշերը ուղտի վրա հեռացավ իր երկիրը։ Լուրը հասավ [ամրոցի] տիրոջը՝ Բալաքին, որը կրկին եկավ իր զորքով, պաշարեց, նեղեց բերդում եղածներին և ֆրանկների ձեռքից գրավելով, այնտեղ զինվորներ նշանակեց պաշտպանության համար, իսկ ինքը վերադարձավ։*

*էջ 313*

## ՍՈՒԼԹԱՆ ՄԱՀՄՈՒԴԻ՝ ՎՐԱՑ ԴԵՄ ՏԱՐԱԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում սաստկացան վրաց (քուրջ) չարագործությունները իսլամի երկրում և մարդկանց դրությունը վատացավ, մանավանդ Դարբանդ-Շիրուանի ժողովրդի, որոնց մեծամեծների մի բազմամարդ խումբ գնաց սուլթանի մոտ՝ բողոքելու նրանց ձեռքից իրենց քաշածի մասին։ Նրանք պատմեցին իրենց անզորության և երկիրը պաշտպանելու մեջ անկարող լինելու մասին։*

*Սա եկավ վրացիների դեմ, երբ սրանք հասել էին Շամախի։ Սուլթանը կանգ առավ մի այգում, իսկ վրացիք շարժվեցին նրա դեմ։ [Սուլթանի] զորքը սաստիկ վախեցավ, և վեզիր Շամս ալ-Մուլք Օսման իբն Նիզամ ալ-Մուլքը խորհուրդ տվեց սուլթանին այստեղից ետ գնալ, սակայն Շիրուանի ժողովուրդը, երբ այս բանը լսեց, դիմեց սուլթանին ու ասաց՝ մենք կկռվենք, քանի դու մեզ հետ ես, իսկ եթե հեռանաս, մահմեդականների ոգին կթուլանա և կկործնեն։ Նա ընդունեց նրանց խոսքն ու մնաց իր տեղում և գիշերն անցկացրեց լարված տրամադրությամբ ու կռվի վճռականությամբ։ Եվ ալլահը հաջողություն բերեց նրանց՝ վրացիների ու ղփչաղների միջև վեճ ու թշնամություն սերմանելով։ Նրանք այդ գիշեր կռվեցին ու փախստականների նման հեռացան և այսպիսով «ալլահը հավատացյալներին ազատեց այդ պատերազմից» (Ղուրան, ԼԳ, 25)։*

*Սուլթանը որոշ ժամանակ մնաց Շիրուանում, ապա վերադարձավ Համադան և հասավ Ջումադա Բ ամսին (27 հուլիս—25 օգոստոս)։*

*ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ*

(1 նոյեմբեր 1133—21 հոկտեմբեր 1134)

*էջ 343*

## ԱԹԱԲԵԿ ԶԱՆԳԻԻ (ԶԱՆՔԻ)՝ ԱՄԻԴԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ԵՎ ՍՈՒՐ ԲԵՐԴԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Աթաբեկ Զանգին[236] և Մարդինի տեր Տիմուրտաշը հավաքվեցին, դիմեցին Ամիդ քաղաքն ու պաշարեցին այն։ Նրա տերը լուր ուղարկեց Հիսն Քայֆայի (Քեյֆ) տիրոջը՝ Դաուդ իբն Սուքմանին, օգնության կանչելով։ Սա հավաքեց իր և այլոց զորքն ու գնաց Ամիդ, որպեսզի նրանց դուրս քշի։ Նրանք հանդիպեցին Ամիդի դռան մոտ ու ճակատամարտը տեղի ունեցավ Ջումադա Բ ամսին (29 մարտ—26 ապրիլ), կռվեցին, և Դաուդը պարտվեց ու փախուստի դիմեց, իսկ զորքի մի մասը կոտորվեց։*

*Զանգին և Տիմուրտաշը շարունակեցին Ամիդը պաշարել, [շրջակա] ծառերը կտրատեցին, երկիրը ապականեցին և այնտեղից վերադարձան առանց արդյունքի հասնելու։ Զանգին գնաց ու պաշարեց Սուր բերդը, որը Դիար Բաքրում է, նեղեց նրա [զորքը] և գրավեց այդ տարվա Ռաջաբ ամսին (27 ապրիլ—26 մայիս)։*

*էջ 344*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Մալաթիայի տեր Դանիշմանդը հաղթեց Ասորիքում գտնըվող ֆրանկներին և նրանցից շատերին կոտորեց ու գերեվարեց։*

*Այդ տարում խալիֆան հաշտվեց Աթաբեկ Զանգիի հետ։*

*ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ*

(22 հոկտեմբեր 1134—10 հոկտեմբեր 1135)

*էջ 346—347*

## ՀԱՍԱՆ ԻԲՆ ԱԼ-ՀԱՖԻԶԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Արդեն հինգ հարյուր քսանվեց թվականի տակ հիշել ենք, որ Եգիպտոսի տեր (խալիֆա) ալ-Հաֆիզ Լիդինիլլահն իր որդուն՝ Հասանին, վե-*

*գիր էր նշանակել և գահաժառանգ հայտարարել։ Սա մնաց. մինչև այս տարին և մեռավ թունավորված։*

. . . . . . . . . . . . . . . . . . .

*Երբ Հասանը մեռավ, Հաֆիզը վեզիր նշանակեց ամիր Տաջ ալ-Դաուլա (տերության թագ) Վահրամին (Բահրամ)[28], որը քրիստոնյա էր։ Սա իշխանության տեր դարձավ և հայերին պաշտոնների նշանակեց, իսկ մահմեդականները արհամարհվեցին։ Այդ մասին հիշելու ենք հինգ հարյուր երեսունմեկ թվականին, եթե բարձրյալն ալլահը կամենա։*

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

## (29 սեպտեմբեր 1136—18 սեպտեմբեր 1137)

*էջ 356*

## ՎԱՀՐԱՄԻ՝ ՀԱՖԻԶԻ ՎԵԶԻՐՈՒԹՅՈՒՆԻՑ ՀԱՆՎԵԼԸ ԵՎ ՌԻԴՈՒԱՆԻ ՎԵԶԻՐ ՆՇԱՆԱԿՎԵԼԸ

*Այդ տարում Ջումադա Ա ամսին (25 հունվար—23 փետրվար) Եգիպտոսի (Միսր) տեր ալ-Հաֆիզ Լիդինիլլահ ալավի (խալիֆայի) վեզիր Տաջ ալ-Դաուլա Վահրամը (Բահրամը) փախավ։*

*Նրան վեզիր էր նշանակել իր որդու՝ Հասանի, սպանությունից հետո, հինգ հարյուր քսանինը թվականին (1134—1135)։ Սա հայ քրիստոնյա էր, կարողացավ երկիրը իր իշխանության տակ առնել, հայերին պաշտոնի նշանակեց, իսկ մահմեդականներին հանեց։ Նա և իր նշանակած հայերը վատ վերաբերվեցին, արհամարհեցին [մահմեդականներին] և փափագեցին նրանց [պաշտոնները]։*

*Եգիպտոսի ժողովրդի մեջ այդ բանից խորշեց Ռիդուան իբն ալ-Ռիհինին, որը զայրանալով և անհանգստանալով մեծ զորք հավաքեց ու քայլեց Կահիրեի (ալ-Կահիրա) վրա։ Վահրամը լսելով, առանց կռվի ու պատերազմի փախավ Սաիդ (Հարավային Եգիպտոս)։ Նա դիմեց Ասուան քաղաքը, որի կառավարիչը արգելեց նրան մտնել ու կռվեց նրա հետ, իսկ սևամորթները շատ հայերի կոտորեցին։ Երբ նա չկարողացավ Ասուան մտնել, լուր ուղարկեց Հաֆիզին երաշխավորագիր խնդրելով։ Սա տվեց և նա վերադարձավ Կահիրե ու բանտարկվեց պալատում։ Որոշ ժամանակ մնալուց հետո վանական դարձավ ու դուրս եկավ բանտից։*

էջ 358

## ՌՈՒՄԻ ԹԱԳԱՎՈՐԻ՝ ԻՐ ԵՐԿՐԻՑ ԱՍՈՐԻՔ ԳԱԼՈՒ ՄԱՍԻՆ

*Նախապես ասվեց, որ ֆրանկները Կ. Պոլսի (Կուսթանթինիյյա) թագավորին լուր ուղարկեցին՝ օգնության կանչելով և հիշեցնելով, թե ինչ էր արել Զանգին։ Նրանք համոզում էին նրան օգնության հասնել այս երկրին, քանի դեռ ուրիշները չէին տիրել և դեռ ավելորդ չէր նրա գալը։ Սա պատրաստվեց և ջանասիրությամբ ճանապարհ ընկավ։ Սկզբում ծովի վրա [նավ] նստեց և եկավ Ատտալիա (Անթալիա), որը (նախապես) նրանն էր ծովի ափին։ Այստեղ խարիսխ գցեց և մնաց, սպասելով նավերի գալստյանը, որոնց մեջ կային իր բեռները և զենքը։ Երբ հասան, այդտեղից նա գնաց Նիկիա, որը պաշարեց, ու նրա տերերը հաշտություն կնքեցին՝ դրամական [հարկ] վճարելու պայմանով։ Ասվում է նաև, որ նա նվաճեց այն (առանց պայմանի)։ Այստեղից նա գնաց Ադանա և Մամեստիա (Մասիսա) քաղաքները, որոնք կիրճերի, ամրոցների տեր հայազգի Լևոնի որդու (իբն Լայուն ալ-Արմանի) ձեռքում էին։ Նա երկուսն էլ պաշարեց ու գրավեց։ Ապա գնաց Անարզաբա (Այն Զարբա), պաշարեց ու բռնի ուժով գրավեց։ Նա տիրեց Տալլ Համդունին և ժողովրդին տեղափոխեց Կիպրոս (Կուբրուս) կղզին։ Ապա Ալեքսանդրեկ (Իսքանդարիյյա) նավահանգստից անցնելով, դուրս եկավ Ասորիք, պաշարեց Անտիոքը, Զուլ-Կադա ամսին (21 հուլիս—19 օգոստոս), նեղեց ժողովրդին, և այնտեղ էր նրա ֆրանկ տերը՝ Ռայմոնդը (Ռիմունգ)։ Նրանց միջև դեսպաններ երթևեկեցին, և նրանք հաշտություն կնքեցին։ Նա այնտեղից գնաց Բաղրաս և դրա վրայով մտավ հայազգի Լևոնի որդու (իբն Լայուն ալ-Արմանի) երկիրը, իսկ վերջինս շատ հարստություն տվեց ու նրան հպատակվեց։ Սակայն ալլահը գիտի ճշմարտությունը։*

### ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

**(19 սեպտեմբեր 1137—7 սեպտեմբեր 1138)**

էջ 359

## ՌՈՒՄԻ ԹԱԳԱՎՈՐԻ՝ ԱՍՈՐԻՔ ԳԱԼՈՒ, ԲՈՒԶԱԱՆ ԳՐԱՎԵԼՈՒ ԵՎ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԱՐԱԾՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Մենք հինգ հարյուր երեսունմեկ թվականի տակ հիշեցինք Ռումի թագավորի՝*[288] *իր երկրից դուրս գալու և ֆրանկների ու Լևոնի որդու (իբն Լայուն) հետ ընդհարվելու մասին։*

Իսկ այս տարում նա հասավ Ասորիք, և մարդիկ շատ վախեցան։ Նա դիմեց Բուզաա, պաշարեց այն։ Իսկ սա գեղեցիկ քաղաք էր Հալեբից վեց փարսախ հեռավորության վրա։ Եվ ահա Հալեբի մեծամեծների մի խումբ դիմեց Աթաբեկ Զանգիին, որը պաշարել էր Եմեսան (Հիմս), և նրանից օգնություն ու պաշտպանություն խնդրեցին։ Սա նրանց բազմաթիվ զորքեր ուղարկեց, որոնք մտան Հալեբ այն պաշտպանելու հոռոմների պաշարումից։

էջ 363

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Մարդինի տեր Հուսամ ալ-Դին Տիմուրտաշ Իլղազին գրավեց Հատտախ բերդը՝ Դիար Բաքրում։ Այն գրավեց ինչ-որ մեկից՝ Մարուանի տոհմից, որի [տոհմը] ամբողջ Դիար Բաքրի տերն էր։ Սա նրանց վերջին մնացորդներից էր։

Այդ տարում մեռավ Դիար Բաքրի, Բաղեշ (Բադլիս) ու Արզն [քաղաքների] տեր Թուղան Արսլանը, որից հետո իշխեց որդին՝ Ֆարնին, որը կարգավորեց գործերը։

Այդ տարում՝ Սաֆար ամսին (19 հոկտեմբեր—16 նոյեմբեր), մեծ երկրաշարժ եղավ Ասորիքում, Ջազիրայոնմ, Դիար Բաքրում, Մոսուլում, Իրաքում և այլ երկներում։ Շատ ավերածություն եղավ, և ավերակների տակ շատ ժողովուրդ մնաց։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(28 օգոստոս 1139—16 օգոստոս 1140)

էջ 368

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Գանձակում (Քանջա, Գանջա) և Ատրպատականի ու Առանի այլ կողմերում երկրաշարժ եղավ, սակայն ամենաուժեղը Գանձակում էր, ուր շատ տներ կործանվեցին։ Անհամար ժողովուրդ զոհվեց, ասվում է, որ մեռածների թիվը երկու հարյուր երեսուն հազար էր։ Մեռածների թվում էին երկրի տեր Կարասունկուրի երկու որդիները։ Կործանվեց մի ամրոց, որի տերն էր Մուջահիդ ալ-Դին Բիհրուզը, որն այնտեղ մեծ քանակությամբ գանձեր ու ունեցվածք կորցրեց։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(17 օգոստոս 1140—7 օգոստոս 1141)

*էջ 369*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Արդաբիլ քաղաքում մեռավ Ատրպատականի ու Առանիյյայի տեր Աթաբեկ Կարասունկուրը, որը հիվանդացել էր թոքախտով։ Սա Թուղրիլ թագավորի մամլուքներից էր և Ատրպատականն ու Առանը (Առանիյյա) հանձնվեցին ամիր Ջաուլի Թուղրիլիին։*

*Այդ տարում՝ Ռաջաբ ամսին (10 փետրվար—11 մարտ), Մալաթիայի և այլ վայրերի տեր Դանիշմանդը հոռոմների մի խմբի հաղթեց, որոնց կոտորեց ու ավարի տվեց ունեցվածքը։*

## ՀԱՏՈՐ ԻՆՆԵՐՈՐԴ

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

(27 հուլիս 1142—15 հուլիս 1143)

*էջ 6*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում մեռավ Մալաթիայի ու Սահմանային գոտու (Սաղր) տերը Մուհամմադ իբն Դանիշմանդը*[289]*, և նրա երկրին տիրացավ Իկոնիայի (Կունիյյա)*[290] *տեր Մասուդ Իբն Կիլիջը, որը սելջուկներից էր։*

*Այդ տարում Ռումի մեծ զորք եկավ Ասորիք ու պաշարեց ֆրանկներին Անտիոքում։ Դուրս եկավ նրա տերը, հանդիպեց Ռումի թագավորին և իրենց հարաբերությունները բարելավեց ու մտավ իր քաղաքը, իսկ այդ տարվա Ռամադան ամսին (20 մարտ—18 ապրիլ) նա մեռավ։*

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(16 հուլիս 1143—3 հուլիս 1144)

*էջ 7*

### ԱԹԱԲԵԿԻ՝ ԴԻԱՐ ԲԱՔՐԻ ՈՐՈՇ ՄԱՍԵՐԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Աթաբեկ Զանգին շարժվեց դեպի Դիար Բաքր և մի քանի քաղաքներ ու բերդեր գրավեց։ Դրանցից էին Թանզա քաղաքը, ապա Սղերդ (Իսիրդ) ու Հիզան քաղաքները և ալ-Դուկ, Մաթլիս, Բանիսբա*

(Բատիսիյյա), Ջու-լ-Կարնայն ամրոցները և ուրիշ վայրեր, ուր իրենից առաջ ուրիշները չէին հասել։ Մարդինի շրջանում գրավեց ֆրանկների ձեռքում եղած Համլին, ալ-Մուազիր, Տալլ Մաուզիր և այլ բերդեր, որոնք Ջոսլինին էին պատկանում։ Նա բոլորի դրությունը կարգավորեց, պահպանության համար զորք նշանակեց։ Ապա դիմեց Ամիդ ու Հանի քաղաքները և պաշարեց։ Նա մնաց այդ կողմերում, կարգի բերելով իր նվաճած [վայրերը] և պաշարեց չնվաճվածները։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ

(4 հուլիս 1144—23 հունիս 1145)

էջ 8—9

### ԵԴԵՍԻԱՅԻ ԵՎ ՋԱԶԻՐԱՅԻ ՈՐՈՇ ՎԱՅՐԵՐԻ ԳՐԱՎՄԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Ջումադա Բ ամսին (29 նոյեմբեր—27 դեկտեմբեր), Աթաբեկ Իմադ ալ-Դին Ջանգի իբն Ակսունկուրը ֆրանկներից գրավեց Եդեսիա քաղաքը, ինչպես նաև նրանց այլ բերդերը Ջազիրայում։

Նրանց վնասը համակել էր ամբողջ Ջազիրան և չարիքը տարածվել, նրանց ասպատակությունները հասել էին ամենահեռավոր անկյունները, մինչև Ամիդ, Մծբին (Նասիբին), Ռաս ալ-Այն և ալ-Ռակկա։ Նրանց թագավորությունը այդ երկրում տարածվում էր Մարդինի մոտից մինչև Եփրատ, ինչպես Եդեսիա (Ռուհա), Սարուջ, ալ-Բիրա, Սինն իբն Աթիյյա, Համլին (Ջամլին), ալ-Մաուզիր և Կարադի ու այլ վայրեր։ Այս շրջանները, ինչպես նաև Եփրատից արևմուտք ընկած այլ վայրեր, պատկանում էին Ջոսլինին, որը մեծ հեղինակություն էր ֆրանկների մեջ և նրանց զորքի հրամանատարը, քանզի քաջ էր ու խորամանկ։

Աթաբեկը գիտեր, որ եթե գնար այն պաշարելու, այնտեղ կհավաքվեին պաշտպան ֆրանկները և անկարելի կլիներ գրավել անառիկության պատճառով։ Ուստի զբաղվեց Դիար Բաքրով, որպեսզի այն տպավորությունը թողնի, թե ժամանակ չունի նրանց երկիրը արշավելու։ Երբ (ֆրանկները) տեսան, որ նա անկարող է Դիար Բաքրի Ուրտուկիյյա [տոհմի] և այլ տերերի հետ կռիվը կես թողնելու, հանգստացան, և Ջոսլինը թողեց Եդեսիան, անցավ Եփրատը՝ դեպի արևմտյան կողմերը։ Եկան Աթաբեկի լրտեսներն ու տեղեկացրին կատարվածի մասին։ Նա երթի կոչ արեց իր զորքին (հրամայելով), որ մյուս օրը Եդեսիայի կռվից ոչ որ ետ չմնա։ Ամիրներին իր մոտ հավաքեց ու ասաց՝ ճաշը մատուցեք, և ավելացրեց, իմ սեղանի վրա ինձ հետ թող ուտի միայն նա, ով ինձ հետ կխոցվի Եդեսիայի դռան մոտ։ Միայն մի ամիր մոտեցավ նրան, ինչպես

նաև մի տղա, որի համարձակության և քաջության մասին չգիտեին, մինչդեռ ոչ ոք չէր կարող նրան հավասարվել պատերազմում։ Ամիրն ասաց տղային՝ ի՞նչ գործ ունես դու այստեղ։ Աթաբեկն ասաց՝ թող նրան, ալլահը վկա, ես տեսնում եմ մի դեմք (մի մարդ), որն ինձանից ետ չի մնալու։

Նրանք զորքի հետ շարժվեցին առաջ և հասան Եդեսիա։ Նա առաջինն էր, որ հարձակվեց և տղան էլ նրա հետ։ Ֆրանկների հեծելազորից (խայյալա) մի ասպետ (ֆարիս) հարձակվեց Աթաբեկի վրա, իսկ հիշյալ ամիրը նրա առաջը կտրեց և խոցեց ու սպանեց, փրկելով նահատակին* (Աթաբեկին)։ Նա (Աթաբեկը) քսանութ օր պաշարեց քաղաքը, կռվեց և բազում հարձակումներ գործեց։ Եկան քանդողները և քաղաքի պարիսպը ծակեցին։ Նա շտապում էր կռվի մեջ, քանզի վախենում էր, որ ֆրանկները կհավաքվեն, կհարձակվեն և կստիպեն թողնել քաղաքը։ Եվ ահա փլվեց այն մասը (բադնա), որ քանդողները ծակում էին և նա քաղաքը գրավեց բռնի ուժով։ Նա պաշարեց միջնաբերդը և այն էլ գրավեց։ Ապա կողոպտեցին մարդկանց ունեցվածքը, գերեվարեցին երեխաներին և կոտորեցին ռազմիկներին։

Սակայն, երբ Աթաբեկը դիտեց քաղաքը, նրան դուր եկավ և մտածեց որ նման քաղաքի կործանումը [խելոք] քաղաքականություն չէ։ Նա հրամայեց իր զորքին ետ տանել [գերված] տղամարդկանց, կանանց ու երեխաներին իրենց տները, վերադարձնել ավարը՝ կահ-կարասի և այլ պիտույքներ։ Ամեն ինչ վերադարձվեց և ոչ ոք ոչինչ չկորցրեց, բացի չնչին բաներից, որ զինվորները մոռացել էին։ Քաղաքը վերստացավ իր նախկին վիճակը և նա զորք թողեց այն պաշտպանելու։

Նա (Աթաբեկը) գրավեց Սարուջը և Եփրատից (ալ-Ֆուրատ) արևելք ֆրանկների ունեցած այլ վայրերը, բացի ալ-Բիրայից, որն ամուր էր և անառիկ Եփրատի ափին։ Նա գնաց պաշարեց, սակայն [քաղաքը] շատ մթերք և զորք ուներ, որի շնորհիվ պաշարված դիմացավ, մինչև որ նա հեռացավ այնտեղից, ինչպես պատմելու ենք, եթե ալլահը կամենա։

Պատմվում է, որ տոհմաբանությունների և պատմության տեղյակ մի իմաստուն ասել է. Սիկիլիայում կղզու տերը ծովի վրա մի ջոկատ էր ուղարկել արևմտյան Տրիպոլիս (Թարաբուլուս) ու նրա շրջանները և նրանք կողոպտել ու կոտորել էին։ Իսկ Սիկիլիայում կար մի գիտուն ու բարեպաշտ մահմեդական, որին կղզու տերը հարգում, պատվում էր, նրա կարծիքը նկատի առնում և նրան նախապատվություն էր տալիս քահանաների ու վանականների նկատմամբ։ Այդ պատճառով նրա նահանգի ժողովուրդը ասում էր, որ նա (կղզու տերը) մահմեդական էր։ Մի օր սա

* Աթաբեկ Զանգին պատմիչների մոտ կոչվում է շահիդ (նահատակ)։

(կղզու տերը) նստած էր մի հյուրասենյակում, որը նայում էր դեպի ծովը և ահա գալիս է մի գեղեցիկ նավ, որի [մարդիկ] պատմում են, որ նրա զորքը մտել է իսլամի երկիրը, կողոպտել, կոտորել և հաղթանակ տարել։ Այդ մահմեդականը նստած էր նրա կողքին, սակայն ննջում էր։ Ասում է նրան թագավորը՝ ո՛վ այսինչ, չե՞ս լսում, թե ինչ են ասում, ասում է՝ ո՛չ, ասում է՝ նրանք պատմում են այսպես և այսպես, ինչո՞ւ Մուհամմադը (մոռացել) այդ երկիրը և նրա ժողովրդին։ Ասաց (մահմեդականը)՝ նա բացակա էր, որովհետև ներկա է եղել Եդեսիայի նվաճմանը, որը մահմեդականները նոր են իրագործել։ Ներկա եղող ֆրանկները ծիծաղում են. թագավորն ասում է՝ մի ծիծաղեք, ալլահը վկա, նա միայն ճշմարտությունն է ասում։ Մի քանի օրից Ասորիքի ֆրանկներից լուր է հասնում նրա (Եդեսիայի) գրավման մասին։ Բարեպաշտ և կրոնասեր մարդկանցից լսել եմ, որ մի բարեպաշտ մարդ երազում տեսել է (Եդեսիայի) նահատակին (Աթաբեկին) և հարցրել նրան, թե ի՞նչ է արել քեզ ալլահը և նա ասել է՝ ներեց (իմ մեղքերը) Եդեսիայի նվաճման փոխարեն։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

(24 հունիս 1145—12 հունիս 1146)

էջ 11

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում մեռավ Բուրունկուշ ալ-Զաքավին՝ Իսֆահանի տերը, որը նույնպես Իրաքում շիհնա[291] էր (ոստիկանապետ)։ Սա մի հայազգի էր, որ ծառա էր եղել վաճառականներից մեկի մոտ։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(13 հունիս 1146—1 հունիս 1147)

էջ 13

### ԱԹԱԲԵԿ ԻՄԱԴ ԱԼ-ԴԻՆ ԶԱՆԳԻԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՎԱՐՔԻ ՈՐՈՇ ԳԾԵՐԻ ՄԱՍԻՆ

[Զանգիի] իշխանությանը տիրանալուց հետո, թշնամիները շրջապատել էին նրա երկիրը։ Ամեն մեկն աչք էր դրել նրա տիրույթներին ու կամենում էր գրավել, իսկ ինքը իր տիրույթները պահպանելուց բացի, տարի չէր անցնում, որ նվաճումներ չկատարեր։ Մուստարշիդ Բիլլահ խալիֆայի տիրույթները սահմանակից էին Տաքրիտի կողմից. և նա եկել պա-

*շարել էր Մոսուլը։ Մյուս՝ Շահրզուրի կողմից նա նկատում էր սուլթան Մասուդի [գործունեությունը]։ Նույնպիսին էին հարաբերությունները Խըլաթի տեր Իբն Սուկմանի, Հիսն Քայֆայի տեր Դաուդ իբն Սուկմանի և Ամիդի ու Մարդինի տիրոջ հետ։ Սրան ավելացրեք նաև ֆրանկներին, որոնք սահմանակից էին Մարդինից մինչև Դամասկոս և հենց Դամասկոսի ամիրներին։ Այս տարբեր նահանգները (իշխանությունները) շրջապատել էին նրա տիրույթները ամեն կողմից, իսկ ինքը մեկ այս կողմից էր հարձակվում, մեկ այն, մեկ գրավում էր, մեկ խորամանկում, այնպես որ ամեն մեկից մի բան նվաճել էր։*

*էջ 14*

## ԱԹԱԲԵԿԻ ՄԱՀՎԱՆԻՑ ՀԵՏՈ ԵԴԵՍԻԱՅԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Ջոսլին Ֆրանկը (Ջուսլին ալ-Ֆիրինջի)՝[292] Եդեսիայի [նախկին] տերը, իր տիրույթներից, այսինքն՝ Տելլ Բաշիրից և դրացի վայրերից նամակ դրեց Եդեսիայի բնակիչներին, որոնք ընդհանրապես հայեր էին, համոզեց նրանց ըմբոստանալու և մերժելու մահմեդականների [տիրապետությունը] և քաղաքն իրեն հանձնելու։ Նրանք համաձայնեցին, և նա նշանակեց այն օրը, երբ ինքը կհասներ նրանց մոտ։*

*Նա իր զորքով գնաց Եդեսիա, գրավեց քաղաքը, սակայն միջնաբերդում գտնվող մահմեդականները գիմադրեցին, և նա կռվեց նրանց հետ։ Լուրը հասավ Նուր ալ-Դին Մահմուդ իբն Զանգիին, որը Հալեբում էր և սա աճապարանոք հասավ իր զորքով։ Երբ [Զանգին] մոտեցավ, Ջոսլինը դուրս եկավ ու փախավ, վերադառնալով իր տիրույթները։ Նուր ալ-Դինը մտավ քաղաք, կողոպտեց ու գերեվարեց ժողովրդին և այս անգամ արդեն [քաղաքը] կողոպտվեց ու դատարկվեց իր բնակչությունից և քչերը մնացին։ Այսուհանդերձ, շատերը կարծում են, թե քաղաքը կողոպտվեց այն ժամանակ, երբ (վերոհիշյալ) նահատակը (Աթաբեկը) գրավեց քաղաքը, սակայն սա ճիշտ չէ։*

*Եդեսիայի ապստամբության լուրը հասել էր Սայֆ ալ-Դին Ղազիին, որը զորք ուղարկեց, սակայն նրան կանխել էր [եղբայրը]՝ ալ-Մալիք Նուր ալ-Դինը, որը մտել էր քաղաք ու կողոպտել, իսկ վերջիններս (Ղազիի զորքը), որոնք դեռ ճանապարհին էին, ետ դարձան։*

*էջ 15*

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում սուլթան Մասուդը բանտարկեց իր եղբորը՝ Սուլայմանին, Տաքրիտի բերդում։*

Այդ տարում մեռավ Առանիյյայի և Ատրպատականի որոշ մասերի տեր ամիր Ջաուլի ալ-Թուղրիլին։ Նա սկսել էր ապստամբության պատրաստվել, բայց մահը հանկարծակի վրա հասավ՝ արյունահոսություն ունեցավ և մեռավ։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(20 ապրիլ 1151—7 ապրիլ 1152)

էջ 29—30

## ՆՈՒՐ ԱԼ-ԴԻՆԻ՝ ՋՈՍԼԻՆԻՑ ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՋՈՍԼԻՆԻ ԳԵՐԻ ԸՆԿՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Նուր ալ-Դին Մահմուդն իր զորքը հավաքեց ու գնաց Ջոսլին Ֆրանկի երկիրը, որը Հալեբի հյուսիսում էր։ Նրանում էին Տալլ Բաշիրը. Այնթապը (Այն Տաբ), Ազազը և այլ վայրեր։ Նա որոշեց պաշարել ու գրավել այն։ Ջոսլինը, ալլահի անեծքը նրա վրա, ֆրանկների անպարտելի ասպետն էր, թե՛ քաջ, թե՛ խելոք։ Սա երբ իմացավ այդ մասին, շատ ֆրանկների հավաքեց ու գնաց Նուր ալ-Դինի դեմ։ Նրանք բախվեցին ու ընդհարվեցին։ Մահմեդականները պարտվեցին, կոտորվեցին, և մեծ բազմություն գերի տարվեց։

Գերի ընկածների մեջ էր Նուր ալ-Դինի զինակիրը (սիլահդար)։ Ջոսլինը վերցրեց նրան ու Նուր ալ-Դինի զենքերը և ուղարկեց Իկոնիայի և Ակսարայի տեր ալ-Մալիք Մասուդ իբն Կիլիչ Արսլանին, ասելով՝ սա քո փեսայի զենքերն են և հետագայում սրանից ավելին էլ է գալու։

Երբ Նուր ալ-Դինը այս մասին իմացավ, շատ վիրավորվեց և հնարներ մտածեց Ջոսլինի դեմ, իր հանգիստը կորցրեց վրեժի մասին մտածելով։ Նա Թուրքմենների ամիրների մի խումբ կանչեց, լավ վարձատրեց, պայմանով, որ Ջոսլինին բերեին ու հանձնեին սպանված կամ գերի բռնված, քանզի գիտեր, որ եթե ինքը անձամբ գնար, նա կպաշտպանվեր իր զորքով ու բերդերով։

Թուրքմենները նրա (Ջոսլինի) վրա լրտեսներ նշանակեցին։ Երբ սա որսի դուրս եկավ, սրանցից մի խումբ հասավ նրա ետևից ու բռնեց նրան։ Նա դրամ խոստացավ նրանց, և սրանք համաձայնեցին բաց թողնել, եթե դրամը [անմիջապես] բերվեր։ Նա մարդ ուղարկեց բերելու։ Սակայն նրանցից մեկը գնաց Հալեբ Նուր ալ-Դինի տեղակալ (Նաիբ) Աբու Բաքր իբն ալ-Դայայի մոտ ու տեղեկացրեց դեպքերի մասին, և նա զորք ուղարկեց։ Սա վրա հասավ թե՛ Թուրքմեններին, թե՛ Ջոսլինին, որին գերի բռնեց և նրա (Նուր ալ-Դինի) մոտ տարավ։

*Նրա (Ջոսլինի) գերի բռնվելը մեծագույն նվաճումներից էր, որովհետև սատանա էր, չարագործ, մահմեդականների համար սպառնալիք և դաժան՝ սրտով։ Այսպիսով ամբողջ քրիստոնեությունը մեծ վնաս կրեց, երբ սա գերի ընկավ, Նուր ալ-Դինը եկավ ու կարճ ժամանակում գրավեց նրա բերդերը՝ Տալլ Բաշիր, Այնթաբ (Այն Տաբ), Ազազ, Տալլ Խալիդ, Կուրուս, ալ-Ռավանդան, Բուրջ ալ-Ռուսաս, Հիսն ալ-Բարա, Քաֆր Սուդ, Քաֆր Լասա, Տլուք (Դուլուք), Մարաշ, Նահր ալ-Ջաուզ և այլ վայրեր նրա կալվածներում։*

*Ամեն անգամ, որ Նուր ալ-Դինը մի բերդ էր գրավում, այնտեղ էր տանում տասը տարվա անհրաժեշտ ամեն ինչ բերդերի համար։ Սա էր նրա սովորությունը, քանզի վախենում էր, որ ֆրանկների կողմից որևէ չարիք կհասնի մահմեդականներին և երկիրը անպաշտպան կմնար թշնամու դիմաց։*

### *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ*

### (8 ապրիլ 1152—28 մարտ 1153)

*էջ 37*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում մեռավ Մարդինի ու Սփրկերտի տեր Հուսամ ալ-Դին Տիմուրտաշը։ Նրա իշխանությունը երեսուն տարուց ավելի տևեց։ Նրան հաջորդեց որդին՝ Նաջմ ալ-Դին Ալբին (Ալփի)։*

### *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ*

### (29 մարտ 1153—17 մարտ 1154)

*էջ 43*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Հայաստանում վրացիների (քուրջերի) և Կարնո քաղաքի (Արզան ալ-Ռում)*[293] *տեր Սալդուկի միջև սաստիկ պատերազմ եղավ, Սալդուկը պարտվեց։ Վրացիները նրան գերեցին և ապա ազատ արձակեցին։*

### *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ*

### (7 մարտ 1155—24 փետրվար 1156)

*էջ 47*

*Այդ տարում Անի քաղաքում*[294] *Հայոց կրոնավորները (քահանաներ) ապստամբեցին և այն գրավելով ամիր Շադդադից, հանձնեցին եղբորը՝ Ֆադլունին։*

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

## (31 դեկտեմբեր 1160—20 դեկտեմբեր 1161)

*էջ 73*

### ԻԲՆ ԱԿՍՈՒՆԿՈՒՐԻ ԵՎ ԷԼՏԿՈՒԶԻ ԶՈՐՔԻ ՄԻՋԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

*Երբ հաշտություն կայացավ Ելտկուզ.(Իլդիգուզի)[295] և Ինանջի[296] միջև, նա (Ելտկուզը) [մարդ] ուղարկեց, Մարաղայի տիրոջ Իբն Ակսունկուր ալ-Ահմադիլիին հրավիրեց՝ գալ, հպատակություն հայտնել սուլթան Արսլան շահին[297]։ Սա հրաժարվեց այդ բանից, ասելով՝ ինձանից հրաժարվեք, ես սուլթան (տիրակալ) ունեմ։*

*Ելտկուզը զորք հավաքեց իր որդու՝ Բահլավանի, հետ մեկտեղ։ Լուրը հասավ իբն Ակսունկուրին, որը իմաց տվեց Խլաթի տեր Շահ Արմանին, դաշնակցեց նրա հետ, ու ձեռք ձեռքի տվեցին։ Շահ Արմանը մեծ զորք ուղարկեց ներողություն խնդրելով, որ ինքը չի գալու, որովհետև գտնվում էր (իշխում էր) մի սահմանային ամրությունում (սաղր), որը թողնել չէր կարող։ Այսպիսով, իբն Ակսունկուրը ուժեղացավ, նրա զորքը մեծացավ ու գնաց Բահլավանի դեմ։ Նրանք ընդհարվեցին Ասբիռուդ գետի վրա ու կռիվը սաստկացավ։ Բահլավանը ամենախայտառակ ձևով փախուստի դիմեց և նա ու իր զորքը հասան Համադան՝ տխուր վիճակում։ Նրա մերձավորների մեծ մասը երաշխավորագիր խնդրելով [հանձնվեց] իբն Ակսունկուրին, և վերջինս հաղթական վերադարձավ իր երկիրը։*

*էջ 75*

### ՍԱԼԻՀ ԻԲՆ ՌՈՒԶԶԻԿԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՈՐԴՈՒ՝ ՌՈՒԶԶԻԿԻ ՎԵԶԻՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Ռամադան ամսին, սպանվեց հայազգի ալ-Մալիք ալ-Սալիհ Աբու-լ-Ղարատ Թալաի իբն Ռուզզիքը՝[298] Եգիպտոսի տեր ալավի (շիայական) ալ-Ադիդ [խալիֆայի] վեզիրը։*

*Նրա սպանության պատճառն այն էր, որ նա տերության մեջ մեծ բռնակալ էր դարձել և իր ձեռքն էր վերցրել հրամայելու, արգելելու և հարկերը տնօրինելու [իրավունքը], քանի որ Ադիդը փոքրահասակ էր և հենց ինքն էր նրան նշանակել։ Նա ճնշեց մարդկանց, շատ մեծամեծների հեռացրեց ու ցրեց երկրում, որպեսզի չապստամբեն իր դեմ, իսկ իր դստերն ամուսնացրեց Ադիդի հետ։ Պալատի կանայք նրան թշնամի էին, իսկ Ադիդի հորաքույրը դրամ ուղարկեց Եգիպտոսի իշխաններին և հրավի-*

րեց նրանց սպանելու [Սալիհին]։ Այս հարցում նրա ամենամեծ թշնամին մի մարդ էր, որը կոչվում էր Իբն ալ-Դաի։ Նրանք (դավադիրները) սպասեցին նրան պալատի մի դահլիճում։ Երբ մտավ [դահլիճ], հանկարծակի խփեցին դանակներով և մահացու վերքեր հասցրեցին։ Նրան տարան իր տունը դեռ կենդանի վիճակում։ Նա լուր ուղարկեց Ադիդին, մեղադրելով, որ հակառակ նրան մատուցած իր ծառայությունների համաձայնվել էր իրեն սպանել տալ։ Ադիդը երդվեց, որ բոլորովին տեղյակ չէ և ոչ մի համաձայնություն չի տվել։ [Սալիհը] ասաց՝ եթե իրոք անմեղ ես, ապա քո հորաքրոջը ինձ հանձնիր, որպեսզի վրեժս լուծեմ։ [Ադիդը] հրամայեց ձերբակալել և ուղարկել նրան։ [Սալիհը] բռնի բերել տվեց նրան իր մոտ և սպանեց, իսկ վեզիրությունը կտակեց իր որդուն՝ Ռուզզիքին, որը կոչվեց ալ-Ադիլ (արդար)։ Հոր մահից հետո սա ստանձնեց իշխանությունը։

Սալիհը լավ, ճարտար լեզվով բանաստեղծություններ ունի, որոնք վկայում են նրա հարուստ արժանիքների մասին։

էջ 77

## ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ (ՔՈՒՐՋ) ԱՆԻ ՔԱՂԱՔԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Շաբան ամսին (26 հուլիս—23 օգոստոս), վրացիք (քուրջ) հավաքվեցին իրենց թագավորի շուրջ ու շարժվեցին դեպի Անի քաղաքը՝ Առան (Արման)[299] երկրում, գրավեցին[300] ու շատերին կոտորեցին։

Երբ տեղեկացավ Խլաթի տեր Շահ Արման իբն Իբրահիմ իբն Սուքմանը, հավաքեց զորքը, նրա հետ հավաքվեցին նաև մեծ թվով կամավորներ։ Եկավ նրանց դեմ, հանդիպեց նրանց, ու կռվեցին։ Մահմեդականները պարտվեցին, նրանց մեծ մասն սպանվեց, շատերը գերի ընկան, իսկ Շահ Արմանը պարտված հեռացավ և նրա հետ իր զորքից վերադարձավ միայն չորս հարյուր ձիավոր[301]։

էջ 77

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում վրացիների (քուրջ) և Կարնո քաղաքի (Արզան ալ-Ռումի) տեր ալ-Մալիք Սալդուկ իբն Ալիի միջև կռիվ ու պատերազմ տեղի ունեցավ, որի մեջ Սալդուկը և իր զորքը պարտվեցին, իսկ ինքը գերի ընկավ։ Նրա Շահ Բանուար (Բանու) քրոջ հետ ամուսնացել էր Խլաթի տեր Շահ Արման իբն Սուքման Իբն Իբրահիմ իբն Սուքմանը։ Սա (քույրը)

մի թանկարժեք նվեր ուղարկեց վրաց (քուրջ) թագավորին, խնդրելով նրանից ազատել իր եղբորը։ [Թագավորը] ազատ արձակեց, և սա վերադարձավ իր երկիրը։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

### (21 դեկտեմբեր 1161—9 դեկտեմբեր 1162)

էջ 79—80

### ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՈՒ ՎՐԱՑ ՄԻՋԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Շաաբան ամսին (16 հուլիս—13 օգոստոս), վրացիք (քուրջ) հավաքվեցին մեծ բազմությամբ՝ երեսուն հազար ռազմիկ, և մըտան մահմեդականների երկիրը ու դիմեցին Դուին[592] քաղաքը Ատրպատականում։ Գրավեցին այն, կողոպտեցին և նրա ու շրջակայքի բնակիչներից տասը հազար մարդ կոտորեցին, նրանց կանանց հափշտակեցին ու շատերին գերեվարեցին։ Կանանց մերկացրին և բոբիկ ու մերկ քայլել տվեցին, վառելով նաև գլխավոր մզկիթը և [այլ] մզկիթներ։

Երբ իրենց երկիրը հասան, վրացի կանայք դատապարտեցին մահմեդականների կանանց նկատմամբ արածը, ասելով՝ դուք մահմեդականներին ստիպում եք մեր նկատմամբ անել այն, ինչ որ դուք արել եք նրանց կանանց և հագցրեցին նրանց։

Երբ լուրը հասավ Ատրպատականի, Ջաբալի ու Սպահանի տեր Շամս ալ-Դին Իլդիգուզին, հավաքեց իր զորքն ու կուտակեց. նրան միացավ Խլաթի տեր Շահ Արման իբն Սուքման ալ-Կութբին, Մարաղայի տեր իբն Ակսունկուրը և ուրիշներ։ Հավաքվեց մի մեծ զորք, որի թիվը հիսուն հազար ռազմիկից ավելի էր և շարժվեց դեպի վրաց (քուրջ) երկիրը (հինգ հարյուր) հիսունութ թվականի Սաֆար ամսին, կողոպտեցին, հափշտակեցին կանանց ու երեխաներին, գերեվարեցին տղամարդկանց։ Վրացիք (քուրջ) նրանց դեմ ելան, և սաստիկ ճակատամարտ եղավ, որի ընթացքում երկու կողմերն էլ դիմացան և նրանց միջև պատերազմը մեկ ամսից ավելի տևեց։ Մահմեդականները հաղթեցին, իսկ վրացիք փախուստի դիմեցին և շատերն սպանվեցին, ինչպես նաև դերի ընկան։

Պարտության պատճառն այն էր, որ վրացիներից մեկը եկավ Իլդիգուզի մոտ, ընդունեց մահմեդականությունը և ասաց ՝ տուր ինձ զորք, որ ես իմ իմացած ճանապարհով տանեմ ու ետևի կողմից հասցնեմ վրաց ճամբարը այնպես, որ նրանք այդ բանը չկռահեն։ [Իլդիգուզը] վստահեց նրան, տվեց զորք և նշանակեց վրաց [ճամբարը] հասնելու օրը։ Երբ այդ

օրը հասավ, մահմեդականները հարձակվեցին վրացիների վրա և երբ կռվում էին, հասավ մահմեդականացած վրացին զորքի հետ միասին, գոռացին ալլահ աքբար և թիկունքից հարձակվեցին վրացիների վրա։ Սրանք պարտվեցին ու շատերը կոտորվեցին, իսկ մահմեդականները նրանց ունեցվածքից անհաշիվ ավար տարան, քանզի [վրացիք] հույս դնելով իրենց թվի վրա, վստահ էին իրենց հաղթանակին, իսկ ալլահը հուսախափ արեց նրանց։ Մահմեդականներր երեք օր ու գիշեր հետապնդում, կոտորում ու գերեվարում էին և հաղթական վերադարձան։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

## (18 նոյեմբեր 1164—6 նոյեմբեր 1165)

*էջ 91*

## ԿԻԼԻՋ ԱՐՍԼԱՆԻ ԵՎ ԻԲՆ ԴԱՆԻՇՄԱՆԴԻ ՄԻՋԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում թշնամություն ընկավ Իկոնիայի (Կունիյյա) և Ռումի երկրից իրեն հարևան [հողերի] տեր ալ-Մալիք Կիլիջ Արսլան իբն Մասուդ իբն Կիլիջ Արսլանի[303] և Մալաթիայի ու Ռումի այլ մասերի տեր Յաղի Արսլան իբն Դանիշմանդի միջև և սաստիկ պատերազմ տեղի ունեցավ։

Բանն այն է, որ Կիլիջ Արսլանր ամուսնացել էր ալ-Մալիք Սալդուկ իբն Ալի իբն Աբու-լ-Կասիմի դստեր հետ։ Հարսը տարվեց Կիլիջ Արսլանի մոտ մեծ օժիտով, որի արժեքը չդիտենք։ Մալաթիայի տեր Յաղին հարձակվեց նրա վրա, հափշտակեց հարսին իր ամբողջ ունեցվածքով և կամեցավ ամուսնացնել նրան իր եղբորորդու՝ Զու-լ-Նուն իբն Մուհամմադ իբն Դանիշմանդի հետ։ Նա հրամայեց հարսին հրաժարվել մահմեդականությունից և ամուսնացրեց իր եղբորորդու հետ։

Կիլիջ Արսլանը հավաքեց իր զորքը և շարժվեց իբն Դանիշմանդի դեմ։ Նրանք իրար հանդիպեցին, պատերազմեցին ու պարտվեց Կիլիջ Արսլանր։ Նա օգնություն խնդրեց Ռումի թագավորից, որր մեծ զորք ուղարկեց նրան։

Այդ օրերին մեռավ Յաղի Արսլան իբն Դանիշմանդը և Կիլիջ Արսլանը տիրեց նրա երկրի մի մասին։ Նա հաշտվեց Մալիք Իբրահիմ իբն Մուհամմադ իբն Դանիշմանդի հետ, որր տիրացել էր երկրին հորեղբոր՝ Յաղի Արսլանի [մահվանից] հետո։ Զու-լ-Նուն իբն Մուհամմադ իբն Դանիշմանդր տիրացավ Կեսարիա (Կայսարիյյա) քաղաքին, իսկ Շահան Շահ իբն Մասուդր՝ Կիլիջ Արսլանի եղբայրր, տիրացավ Անկիրիոն (Անքուրիյյա)

քաղաքին և նրանց միջև հարաբերությունները կարգավորվեցին, ու համաձայնություն գոյացավ։

*ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ*

(7 նոյեմբեր 1165—27 հոկտեմբեր 1166)

*էջ 94*

ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում վրացիք (քուրջ) մեծ զորքով դուրս եկան և ասպատակեցին տարբեր գավառներ, մինչև որ հասան Գանձակ (Քանջա, Գանջա) կոտորեցին, գերեցին, շատերին գերեվարեցին և անհաշիվ կողոպտեցին։*

*ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ*

(5 հոկտեմբեր 1168—24 սեպտեմբեր 1169)

*էջ 101*

ԱՍԱԴ ԱԼ-ԴԻՆ ՇԻՐՔՈՒՀԻ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

. . . . . . . . . . . . . . . . . . .

*Ինչ վերաբերում է նրա (Շիրքուհի) գործունեության սկզբնավորմանը և Նուր ալ-Դինի մոտ ծառայության մտնելուն, ապա (պիտի ասենք), որ նա և եղբայրը՝ Նաջմ ալ-Դին Այյուբը՝ Շադիի երկու որդիները, Ատրպատականի (*sic*) Դուին քաղաքից են։ Նրանք ծագում են քրդական ալ-Ռավադիյյա [ցեղից], իսկ այս ցեղի մարդիկ ամենաազնիվ քրդերից են։ Նրանք եկան Իրաք ու ծառայության մտան Բաղդադի շիհնա (ոստիկանապետ, կառավարիչ) Մուջահիդ ալ-Դին Բիհրուզի մոտ։*

*ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՎԱԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ*

(23 օգոստոս 1172—11 օգոստոս 1173)

*էջ 119*

ԼԵՎՈՆԻ ՈՐԴԻ ՄԼԵՀԻ՝ ՌՈՒՄԻ ԴԵՄ ՏԱՐԱԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Ջումադա Ա ամսին (19 դեկտեմբեր—18 հունվար), Հալեբին հարևան լեռնանցքների երկրի տեր հայազգի Լևոնի որդի Մլեհը*

(Մալիհ իբն Լայուն) հաղթեց Կ. Պոլսի (Կուսթանթինա) Ռումի զորքին։

Բանն այն է, որ հիշյալ Մլեհը ենթակա էր Նուր ալ-Դինին, որը նրան ավատական ընդարձակ տիրույթներ (իկթա) էր տվել և միաժամանակ Նուր ալ-Դինի ծառայության մեջ էր, ֆրանկների դեմ նրա պատերազմների կազմակերպիչն ու ընկերակիցը։ [Նուր ալ-Դինի] այս վերաբերմունքը հետևանք էր խելացիության։ Երբ Նուր ալ-Դինին ասացին, թե ի՞նչ իմաստ ունի նրան ծառայության ընդունելը և Ասորիքում տիրույթներ շնորհելը, նա պատասխանեց՝ նրան օգտագործում եմ իր կրոնի (միլլատ)[304] մարդկանց դեմ պայքարելու համար և այդ միջոցով իմ զինվորների մի մասը ազատում եմ դրացի երկրների վրա հարձակվելու [պարտականությունից]։ Սակայն Մլեհն (Մալիհ)[305] էլ իր հերթին հենվում էր Նուր ալ-Դինի վրա դրացի հայերի և հոռոմների դեմ [պայքարելու համար]։ Ադանա, Մամեստիա (Մասիսա) և Տարսոն (Թարսուս) քաղաքները Կ. Պոլսի տիրոջ՝ Ռումի թագավորի ձեռքում էին, իսկ Մլեհը վերցրեց նրանից, որովհետև դրանք իր երկրին հարևան էին։ Ռումի թագավորը մեծ զորք ուղարկեց նրա դեմ, (հրամանատար) նշանակելով իրեն ազգական մի քանի հայտնի պատրիկների։ Մլեհը Նուր ալ-Դինի զորքերի հետ նրանց դեմ դուրս եկավ պատերազմի և համառ կռվից հետո հոռոմները պարտվեցին, շատերն սպանվեցին ու գերի ընկան։ Մլեհի ուժն ավելացավ, իսկ հոռոմները իրենց հույսը կտրեցին այդ երկրից։ Մլեհը Նուր ալ-Դինին ուղարկեց իր ավարի զգալի մասը և երեսուն հոգի [հոռոմների] նշանավոր ու երևելի մարդկանցից։ Նուր ալ-Դինը սրա մի մասը ուղարկեց ալ-Մուստադի Բիամր-Իլլահ խալիֆային և գրեց նրան, հպարտանալով ձեռք բերված հաղթանակով [որպես իրենը ներկայացնելով], քանի որ իր զինվորներն էլ էին այն իրագործել։

էջ 120

## ՆՈՒՐ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԿԻԼԻՋ ԱՐՍԼԱՆԻ ԵՐԿՐԻ ՎՐԱ ՀԱՐՁԱԿՄԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում Նուր ալ-Դին Մահմուդ իբն Զանգին շարժվեց դեպի Իզզ ալ-Դին Կիլիջ Արսլան իբն Մասուդ իբն Կիլիջ Արսլանի թագավորությունը, որի մեջ են Մալաթիա, Սեբաստիա (Սիվաս), Ակսարա և այլ վայրեր, պատերազմելով գրավելու նպատակով։

Բանն այն էր, որ Կիլիջ Արսլանը հարձակվել էր Մալաթիայի ու Սեբաստիայի տեր Զու-լ-Նուն իբն Դանիշմանդի վրա, գրավել նրա երկիրը և քշել նրան՝ թողնելով վտարված ու միայնակ վիճակում։ Սա եկավ ապաստանեց Նուր ալ-Դինին և օգնություն խնդրեց նրանից։ Նուր ալ-Դինը հյուրընկալեց նրան, լավ վերաբերվեց, արքայավայել պատիվներ

ցույց տալով, օժանդակություն ու օգնություն խոստացավ՝ նրա իշխանությունը վերականգնելու համար։ Ապա նա լուր ուղարկեց Կիլիջ Արսլանին միջնորդելով, որ վերադարձնի [Իբն Դանիշմանդի] թագավորությունը, բայց Նուր ալ-Դինը պատասխան չստացավ և շարժվեց նրա դեմ։ Նա սկսեց Քեսունի, Բահասնիի, Մարաշի ու Մարզուբանի և նրանց միջև ընկած վայրերի նվաճումով։ Մարաշը գրավեց Զու-լ-Կադա ամսի սկզբին, իսկ ապա մնացածը։

Դրանից հետո իր զորքի մի մասը ուղարկեց Սեբաստիա (Սիվաս), որը նվաճեց։ Երբ Նուր ալ-Դինը այդ երկիրն էր մտել, Կիլիջ Արսլանը Ասորիք տանող ճանապարհներից ետ քաշվելով, գնացել էր իր երկրի միջին մասը և այնտեղից նամակ ուղարկել Նուր ալ-Դինին՝ սիրաշահելով ու հաշտություն խնդրելով։ Նուր ալ-Դինը կանգ առավ և հանուն այս խնդրի առանց պատերազմի կարգավորմանը, հրաժարվեց իր նպատակից։ Այդ ժամանակ անհանգստացնող լուրեր եկան ֆրանկների կողմից և նա համաձայնեց հաշտություն կնքել՝ պայմանով, որ [Կիլիջ Արսլանը] օգնական զորք տար պատերազմի համար։ Նա (Նուր ալ-Դինը) ասաց նրան՝ դու դրացի ես հոռոմներին և չես հարձակվում դրանց վրա, մինչդեռ քո ձեռքում է գտնվում իսլամի երկրի մի ընդարձակ մասը, ուստի պետք է ինձ հետ մասնակցես այս արշավանքին։ Վերջինս ընդառաջեց նրան, իսկ Սեբաստիան մնաց Նուր ալ-Դինի տեղակալների ձեռքում որպես Զու-լ-Նունին ենթակա*[քաղաք] և զորքը նույնպես մնաց Զու-լ-Նունի ծառայության մեջ, մինչև Նուր ալ-Դինի մահը։ Դրանից հետո [Նուր ալ-Դինի] զորքը ետ դարձավ և Կիլիջ Արսլանը նորից գալով տիրացավ [Սեբաստիային] և նրա որդիների ձեռքում մնում է մինչև օրս՝ վեց հարյուր քսան երկու թվականը (1225)։

Երբ Նուր ալ-Դինն այս արշավանքից վերադարձավ, Բաղդադից նրա մոտ եկավ Քամալ ալ-Դին Աբու-լ-Ֆադլ Մուհամմադ իբն Աբդալլահ իբն ալ-Շահրզուրիի դեսպանը, բերելով խալիֆայի հրովարտակը՝ [նրան պարգևելու] Մոսուլը, Ջազիրան, Արբելան (Իրբիլ), Խլաթը (Խիլաթ), Ասորիքը, Կիլիջ Արսլանի երկիրը և Եգիպտոսը։

էջ 121—122

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այս տարում [Թուրքմեններր] ասպատակեցին Համադանի գավառները, կողոպտեցին Դինավարը, կանանց գերեվարեցին, իսկ Ելթկուզը (Իլդիգիզ), որն այդ ժամանակ Նախճավանում (Նախիջևան) էր իր զորքով, շտապ հարձակվեց։

Այդ տարում Նուր ալ-Դին Մահմուդ իբն Զանգին դեսպան ուղարկեց խալիֆայի մոտ։ Սա տանում էր մի նամակ, որի մեջ [Նուր ալ-Դինը] հիշատակում էր իր ծառայությունները [արքունի] դիվանին, իր մղած կրոնական պայքարը (ջիհադ) անհավատների դեմ և նրանց քաղաքների գրավումը, խնդրելով, որ իր իշխանությունը հաստատվի իր ձեռքում եղած երկրների՝ Եգիպտոսի, Ասորիքի, Ջազիրայի, Մոսուլի և իրեն ենթակա Դիար Բաքրի վրա, ինչպես նաև այս բոլորին դրացի Խլաթի ու Կիլիջ Արսլանի երկրի նկատմամբ։ Խնդրում էր, որ իրեն տրվեն նաև իր հոր Զանգիի ստացած պարգևական տիրույթները Իրաքի Սավադում (սևահող)։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(19 հունիս 1178—7 հունիս 1179)

էջ 145

### ԹԱՆԿՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՄԱՃԱՐԱԿԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում անձրևները բոլորովին դադարել էին ամբողջ Ասորիքում, Ջազիրայում, Իրաքում, Դիար Բաքրում, Մոսուլում, Ջիբալում, Խլաթում և այլ վայրերում. տիրեց թանկությունը և դա ընդհանուր էր բոլոր երկրներում։

Մարդիկ աղոթքով անձրև հայցեցին, սակայն անձրև չտեղաց, սնունդ չէր ճարվում և մարդիկ մեռելներ էին ուտում։ Այսպես տևեց մինչև [հինգ հարյուր] յոթանասունհինգ թվականի վերջը։ Ապա սկսեց նաև ուժեղ և ընդհանուր համաճարակ ու շատերը մահացան։ Հիվանդությունը հիմնականում մեկ տեսակ էր՝ ուղեղապատակի բորբոքում (մենինգիտ, սիրսամ) և մարդիկ չէին հասցնում մեռելները թաղել։ Որոշ երկրներ ավելի վատ վիճակում էին, քան մյուսները։

Ապա ալլահը ողորմեց իր ծառաներին, երկրներին ու անասուններին անձրևներ ուղարկեց ու գները իջեցրեց։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(8 հունիս 1179—27 մայիս 1180)

էջ 148

### ԱԼ-ՄՈՒՍՏԱԴԻ ԲԻԱՄՐ ԻԼԼԱՀԻ ՄԱՀԸ ԵՎ ԱԼ-ՆԱՍԻՐ ԼԻԴԻՆ ԻԼԼԱՀԻ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅՈՒՆԸ

Այդ տարում Զու-լ-Կաադա ամսին (դեկտեմբեր) վախճանվեց իմամ (խալիֆա) ալ-Մուստադի Բիամր-Իլլահը, այսինքն՝ հավատացելոց իշ-

խան Աբու Մուհամմադ Հասան իբն Յուսուֆ ալ-Մուստանջիդը։ Նրա մայրը հայազգի ստրկուհի էր (ում վալադ), որը կոչվում էր Ղադդա (Թարմ, Նուրբ)։

### ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

### (28 մայիս 1180—16 մայիս 1181)

*էջ 151*

## ՍԱԼԱՀ ԱԼ-ԴԻՆԻ՝ ՀԱՅԱԶԳԻ ԼԵՎՈՆԻ ՈՐԴՈՒ ԵՐԿԻՐԸ ՀԱՐՁԱԿՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Սալահ ալ-Դինը հարձակվեց հայազդի Լևոնի որդու (իբն Լայուն ալ-Արմանի)[306] երկիրը, Կիլիչ Արսլանի հետ գործը վերջացնելուց հետո։*

*Բանն այն է, որ հայազգի Լևոնի որդին մի խումբ Թուրքմենների հրավիրել էր իր երկիրը, դրամական նվերներ տվել ու հրամայել, որ իրենց հոտերը արածացնեն իր երկրում, իսկ իր երկիրը ամրակուռ էր, ամբողջովին ծածկված անառիկ բերդերով և այնտեղ մտնելը դժվար էր, քանզի [շրջապատված էր] լեռնանցքներով ու անանցանելի լեռներով։ Սակայն հետո նա դավաճանեց նրանց, կանանց գերեվարեց, ունեցվածքը խլեց, իսկ տղամարդկանց՝ տարիքավորներին կոտորելուց հետո, մի մասին գերեվարեց։*

*Սալահ ալ-Դինը[307] իջավ Ասուադ (Սև) գետի մոտ և սկսեց նրա երկիրը ասպատակել։ Լևոնի որդին անհանգստացավ լեռան գլխին գտնվող իր մի բերդի համար [վախենալով], որ կգրավվի, ուստի քանդեց ու հրկիզեց այն։ Երբ Սալահ ալ-Դինը այդ մասին լսեց, շտապեց նրա մոտ և հասավ նախքան նա կհասցներ գանձերն ու պարենը տեղափոխել։ Նա կողոպտեց, և մահմեդականները ավար վերցրեցին։ Լևոնի որդին լուր ուղարկեց, [խոստանալով] ազատ արձակել իր մոտ եղած գերիներին, գերեվարած [կանանց] և վերադարձնել փողերը, պայմանով, որ հեռանային իր երկրից։ Սալահ ալ-Դինը ընդունեց և դրությունը կարգավորվեց։ Գերիներն արձակվեցին և ունեցվածքը վերադարձվեց, իսկ Սալահ ալ-Դինը այնտեղից հեռացավ Ջումադա Բ ամսին (23 հոկտեմբեր—20 նոյեմբեր)։*

### ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

### (7 մայիս 1182—25 ապրիլ 1183)

*էջ 157--158*

## ՍԱԼԱՀ ԱԼ-ԴԻՆԻ՝ ՄՈՍՈՒԼԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Երբ Սալահ ալ-Դինը նվաճեց Մծբինը (Նասիբին), իր մոտ խորհրդակցելու հավաքեց ամիրներին ռ: մեծամեծ խորհրդականներին, թե ո՞ր*

երկրից սկսի և ո՞րի վրա հարձակվի՝ Մոսուլի՞, Սինջարի՞, թե՞ Ջազի-րատ Իրն Ումարի։ Նրանց միջև տարակարծություն եղավ։ Մուզաֆֆար ալ-Դին-Քաուքաբրի իբն Զայն ալ-Դինն ասաց՝ պետք է սկսել Մոսուլից, քանի որ դա մեր ձեռքում է և արգելող չկա, իսկ Իզզ ալ-Դինն ու Մուջա-հիդ ալ-Դինը երբ լսեն մեր գալստյան մասին, կթողնեն այն և կհեռանան լեռնային ամրոցները։ Նրա ասածը հաստատեց [Սալահ ալ-Դինի] հոր-եղբոր Շիրքուհի որդին՝ Նասիր ալ-Դին Մուհամմադը։ Սա մեծ նվեր-ներ էր տվել Սալահ ալ-Դինին, որպեսզի Մոսուլը գրավելուց հետո իրեն պարգևի [որպես տիրույթ], իսկ Սալահ ալ-Դինը ընդունել էր, քանի որ համակրում էր նրան։ Եվ շարժվեց Սալահ ալ-Դինը դեպի Մոսուլ, իսկ նրա տեր Իղղ ալ-Դինը և տեղակալ Մուջահիդ ալ-Դինը մեծ զորք էին հա-վաքել Մոսուլում։

. . . . . . . . . . . . . . . . . . .

Սուրհանդակներ ուղարկվեցին Իզզ ալ-Դինին և Մուջահիդ ալ-Դինին՝ հաշտության համար։ Իղղ ալ-Դինը պահանջեց վերադարձնել այն հողերը, որ նրանից գրավել էին, իսկ Սալահ ալ-Դինը պատասխանեց, որ այդ դեպքում պետք է Հալեբը իրեն տրվեր։ Իզզ ալ-Դինը և Մուջահիդ ալ-Դինը հրաժարվեցին։ Ապա [Սալահ ալ-Դինը] զիջեց և համաձայնեց վերա-դարձնել իր գրաված հողերը, պայմանով, որ [Մոսուլի տերը] հրաժար-վեր Հալեբի տիրոջը օգնելուց։ Սակայն այս ևս չընդունվեց և Իզզ ալ-Դինը ասաց՝ նա իմ եղբայրն է և ունի ինձ հետ դաշնագրեր ու պայմանագրեր, որոնք չեմ կարող խախտել։ Սուրհանդակներ ուղարկեցին նաև Ատրպա-տականի տեր Կիլիջ Արսլանը և Խլաթի տեր Շահ Արմանը, նույն այս առ-թիվ, սակայն գործերը չկարգավորվեցին ու հաշտություն չկայացավ։ Երբ Սալահ ալ-Դինը տեսավ, որ Մոսուլում ոչ մի արդյունքի չի հասնում և, բացի նեղությունից ու հոգնությունից, ոչինչ չի ստանում, և որ Սինջարում գտնվող մոսուլական զորքերը իր զորքի ու մարդկանց ճանապարհն են փակում, Մոսուլից այնտեղ դիմեց։

է. 159

## ԻԶԶ ԱԼ-ԴԻՆԻ ԵՎ ՇԱՀ ԱՐՄԱՆԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարվա Զու-լ-Հիջջա ամսին (28 մարտ—25 ապրիլ) Մոսուլի տեր Աթաբեկ Իզզ ալ-Դինը և Խլաթի տեր Շահ Արմանը միացան Սալահ ալ-Դինի դեմ պայքարի համար։

Բանն այն էր, որ Իզզ ալ-Դինի սուրհանդակները եկել էին Շահ Ար-մանի մոտ՝ օգնություն և օժանդակություն խնդրելու Սալահ ալ-Դինի դեմ։ Շահ Արմանը մի քանի սուրհանդակներ էր ուղարկել Սալահ ալ-Դինին՝ միջ-նորդելու համար, որ հրաժարվի Մոսուլից և ընդհանրապես Իզզ ալ-Դինին

[հանգիստ թողնի]։ Սակայն [Սալահ ալ-Դինը դրական] պատասխան չէր տվել և նույնիսկ կոպտել էր նրան։ Վերջին անգամ [Շահ Արմանը] ուղարկեց նրան իր մամլուք Սայֆ ալ-Դին Բաքտամուրին, որը [հետագայում] Շահ Արմանից հետո տիրեց Խլաթին։ Սա եկավ [Սալահ ալ-Դինի] մոտ, երբ նա պաշարում էր Սինջարը և պահանջեց նրանից, որ թողնի պաշարումը և հեռանա։ [Շահ Արմանը] ասել էր, որ նա առաջարկի հեռանալ, այլապես պետք է սպառնար, որ կհարձակվի ու կպատերազմի։ Բաքտամուրը այս առաջարկը հաղորդեց [Սալահ ալ-Դինին], բայց սա ձգձգեց պատասխանը, հույս ունենալով, որ շուտով կգրավի [Սինջարը]։ Երբ Բաքտամուրը այս տեսավ, հաղորդեց նրան սպառնալի առաջարկը և զայրացած հեռացավ, չընդունելով նրա նվիրած զգեստները կամ ընծաները։ Նա տեղեկացրեց իր տիրոջը և վախեցրեց, որ վատ կլինի, եթե ինքը անհոգ ու անտարբեր գտնվի Սալահ ալ-Դինի նկատմամբ։ Շահ Արմանը շարժվեց Խլաթից, որի դրսում իր վրաններն էր խփել և գնաց Մարդին, իսկ սրա տերն էր Կութբ ալ-Դին իբն Նաջմ ալ-Դին Ալբին, որը Շահ Արմանի քեռորդին էր և Իզզ ալ-Դինի քեռու որդին ու [միաժամանակ] նրա աները, քանի որ Իզզ ալ-Դինը ամուսնացել էր Կութբ ալ-Դինի դստեր հետ։ Շահ Արմանի հետ եկել էր նաև Բաղեշի (Բաղլիս) և Արզանի տեր Դաուլատ Շահը, իսկ Աթաբեկ Իզզ ալ-Դինը Մոսուլից եկավ իր զորքով, առանց բեռների։

Սալահ ալ-Դինը գրավել էր Սինջարը և այնտեղից գնացել Խառան (Հառան) ու ցրել իր զորքերը։ Երբ լսեց նրանց միավորման մասին, լուր ուղարկեց իր եղբորորդուն՝ Տակի ալ-Դինին, որը Համայում էր, հրավիրելով նրան։ Սա արագ հասավ ու խորհուրդ տվեց հեռանալ, սակայն ուրիշներ զգուշացրին այդ բանից։ Իսկ Սալահ ալ-Դինը ցանկություն ուներ հեռանալ և նա գնաց Ռաս Այն։ Երբ լսեցին նրա հեռանալը, բաժանվեցին. Շահ Արմանը վերադարձավ Խլաթ, պատճառաբանելով, թե ուզում է զորք հավաքել ու նորից գալ, Իզզ ալ-Դինը վերադարձավ Մոսուլ, իսկ Կութբ ալ-Դինը մնաց Մարդինում։ Սալահ ալ-Դինը մի քանի օր կանգ առավ Ջաուզամում՝ Մարդինից ոչ հեռու։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆ ԹՎԱԿԱՆ

**(14 ապրիլ 1184—3 ապրիլ 1185)**

*էջ 166—167*

## ՄԱՐԴԻՆԻ ՏԻՐՈՋ ՄԱՀՎԱՆ ԵՎ ՈՐԴՈՒ ԻՇԽԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում մեռավ Մարդինի տեր Կութբ ալ-Դին Իլղազի իբն Նաջմ ալ-Դին իբն Ալբի իբն Տիմուրտաշ իբն Իլղազի իբն Ուրտուկը, և նրանից

հետո իշխեց որդին՝ Հուսամ ալ-Դին Բուլակ Արսլանը, որը մանուկ էր։ Նրա դաստիարակությամբ ու իշխանության տնօրինմամբ զբաղվեց նրա հոր մամլուք Նիզամ ալ-Դին ալ-Բուկուշը։ Իսկ Խլաթի տեր Շահ Արմանը, որը Կութբ ալ-Դինի մորեղբայրն էր, իշխեց նրա պետության մեջ և ինքն էր, որ նշանակեց ալ-Բուկուշին՝ որդու հետ միասին։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(4 ապրիլ 1185—23 մարտ 1186)

էջ 167—169

### ՍԱԼԱՀ ԱԼ-ԴԻՆԻ՝ ՄՈՍՈՒԼԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ԵՎ ԱՊԱ ՇԱՀ ԱՐՄԱՆԻ ՄԱՀՎԱՆ ՊԱՏՃԱՌՈՎ ՀԵՌԱՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Սալահ ալ-Դին Յուսուֆ իբն Այյուբը երկրորդ անգամ պաշարեց Մոսուլը։

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Այստեղ նա մնաց Ռաբի Բ ամսի (3 հունիս—1 հուլիս) սկզբից մինչև ամսի վերջը։ Ապա այնտեղից նա գնաց Նփրկերտ (Մայյաֆարիկին)։

Բանն այն էր, որ Խլաթի տեր Շահ Արմանը մեռավ Ռաբի Բ ամսի իննին, և մահվան լուրը հասավ նույն ամսի քսանին, իսկ նա (Սալահ ալ-Դինը) որոշեց գնալ ու տիրանալ [նրա երկրին], քանզի Շահ Արմանը չէր թողել ո՛չ որդի, ո՛չ էլ որևէ մեկը իր ընտանիքից, որպեսզի իրենից հետո տիրի երկրին։ Նրանից հետո տիրացավ նրա մամլուքը, որի անունը Բաքտամուր էր և մականունը՝ Սայֆ ալ-Դին։ Սալահ ալ-Դինը խորհրդակցեց իր ամիրների ու վեզիրների հետ, որոնք տարբեր կարծիքներ ունեին։ Մի մասը համոզում էր, որ մնա ու շարունակի Մոսուլի պաշարումը, իսկ ով որ դեմ էր (Մոսուլի) աթաբեկների տանը վնաս հասցնելուն, համոզում էր, որ հեռանա, ասելով, թե Խլաթի նահանգը ավելի ընդարձակ է և մեծ, անտեր է և իշխող չկա և ահա ինքը կարող էր դառնալ նրա տերը, պահպանել ու պաշտպանել, մանավանդ, որ եթե տիրեր (Խլաթին), սրա (Մոսուլի) գրավման գործը կդյուրանար և այլն։ Իսկ (Սալահ ալ-Դինը) տատանվում էր և ահա այնպես պատահեց, որ Խլաթի (Խիլաթ) մի քանի երևելի բնակիչներից ու ամիրներից նամակներ եկան, հրավիրելով նրան քաղաքը գրավելու։

Նա շարժվեց Մոսուլից, իսկ այն նամակները, որ գրել էին, ծուղակ էր և խորամանկություն։ Բանն այն է, որ Ատրպատականի, Համադանի և այդ երկրի տեր Շամս ալ-Դին ալ-Բահլավան իբն Իլդիգուզը գալիս էր

այդ երկիրը գրավելու։ Դրանից առաջ նա իր աղջկան ամուսնացրել էր Շահ Արմանի հետ, թեկուզ վերջինս մեծահասակ էր, որպեսզի այդ ճանապարհով տիրի Խլաթին (Խիլաթ) ու նրա գավառներին։ Երբ (Խլաթում) լսեցին նրա մերձենալու մասին, գրեցին Սալահ ալ-Դինին, հրավիրելով, որ ստանձնի երկրի իշխանությունը, որպեսզի նրա միջոցով հաղթեն Բահլավանին, իսկ նրան էլ ետ մղեն Բահլավանի միջոցով, և երկիրը իրենց կմնար։

Շարժվեց Սալահ ալ-Դինը ու նրա առաջապահ զորքի գլխին էր հորեղբորորդին՝ Նասիր ալ-Դին Մուհամմադ իբն Շիրքուհը, Մուզաֆֆար ալ-Դին իբն Զայն ալ-Դինը և ուրիշներ։ Նրանք գնացին Խլաթ (Խիլաթ), իջան Թուանայի[308] մոտ՝ Խլաթից ոչ հեռու, և Սալահ ալ-Դինը շարժվեց դեպի Նփրկերտ։ Իսկ Բահլավանը գնաց Խլաթ (Խիլաթ) և գնում էին սուրհանդակները Խլաթի բնակչության ու նրա, ինչպես նաև [Խլաթի] ու Սալահ ալ-Դինի միջև։ Վերջապես նրանք (Խլաթի ժողովուրդը) իրենց գործերը կարգավորեցին Բահլավանի հետ և դարձան նրան կողմնակից ու հպատակության խութբա տվեցին։

էջ 169

## ՍԱԼԱՀ ԱԼ-ԴԻՆԻ՝ ՆՓՐԿԵՐՏԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երբ Սալահ ալ-Դինը գալիս էր Խլաթ, իր ճանապարհը թեքեց դեպի Նփրկերտ, ցանկանալով գրավել այն, քանզի նրա տերը՝ Մարդինի տեր Կութբ ալ-Դինը, ինչպես հիշեցինք, մահացել էր և իշխում էր նրա մանկահասակ որդին։ [Այս երկիրը] Շահ Արմանի և նրա զորքի իշխանության տակ էր և երբ վերջինս մահացավ, Սալահ ալ-Դինը ցանկություն ունեցավ գրավել այն։

Երբ տեղ հասավ, տեսավ, որ [քաղաքը] լի է ռազմիկներով և այնտեղ էր հանգուցյալ Կութբ ալ-Դինի կինը իր աղջիկների հետ, իսկ սա Հիսն [Քայֆայի] տիրոջ՝ Նուր ալ-Դին Մուհամմադի քույրն էր։ Սալահ ալ-Դինը պաշարեց այն Ջումադա Ա ամսի (31 հուլիս—29 օգոստոս) սկզբին։ [Դիմադրող] զորքի հրամանատարն էր մի ամիր, որի անունն էր Բուրունկուշ, իսկ մականունը՝ Ասադ ալ-Դին։ Սա քաջարի էր և լավ էր պաշտպանում քաղաքը։ Կռիվը սաստկացավ, գործի դրվեցին քարանետ (մանջանիկ) ու խորտակիչ մեքենաներ (առադատ), սակայն Սալահ ալ-Դինը իր նպատակին չհասավ։

Երբ այս տեսավ, հրաժարվեց բռնի ուժից ու պատերազմից և դիմեց խորամանկության։ Նամակ ուղարկեց Կութբ ալ-Դինի կնոջը, որ քաղաքում էր, ասելով, որ Ասադ ալ-Դին Բուրունկուշը համաձայնել է քաղաքը մեզ

հանձնել, իսկ մենք կճանաչենք քեզ որպես եղբորդ՝ Նուր ալ-Դինի, իրավունքների [ժառանգորդ] նրա մահվանից հետո և կուզենանք, որ դու բաժին ունենաս այդ գործում։ Իսկ ես քո աղջիկներին կամուսնացնեմ իմ որդիների հետ և, այսպիսով, Նփրկերտը և մյուս վայրերը կմնան քո իշխանության տակ։ [Միաժամանակ] գրեց Ասադին՝ իմաց տալով, որ խաթունը (քաղաքի տիրուհին) արդեն հակված է մերձենալու սուլթանին (Սալահ ալ-Դինին), իսկ Խլաթի [մեծամեծները] գրել են իրեն, թե պատրաստ են հանձնվելու, ուստի լավ մտածիր։ Պատահաբար [այդ ժամանակ] Խլաթից սուրհանդակ հասավ [տեղեկացնելով], թե պատրաստ են հպատակվելու և հրավիրում էին նրան (Սալահ ալ-Դինին), ինչպես մի ժամանակ արել էին։ Սալահ ալ-Դինը հրամայեց սուրհանդակին մտնել Նփրկերտ։ Վերջինս ասաց Ասադին՝ դու ո՞ւմ համար ես կռվում, ահա ես եկել եմ Խլաթը հանձնելու Սալահ ալ-Դինին։ Սրա ուժերը թուլացան և մարդ ուղարկեց [Սալահ ալ-Դինին], առաջարկելով իր կալվածները և հարստությունը։ Նա ընդունեց և քաղաքը հանձնվեց Ջումադա Ա ամսին (31 հուլիս—29 օգոստոս)։ Նրա որդիներից մի քանիսը ամուսնացան խաթունի (տիրուհու) մի քանի աղջիկների հետ, իսկ նրան տրվեց Հատտախ ամրոցը, որպեսզի ինքը և մնացած աղջիկները այնտեղ ապրեն։

էջ 170—171

## ՋԱԶԻՐԱՅՈՒՄ ԵՎ ՄՈՍՈՒԼՈՒՄ ԹՈՒՐՔՄԵՆՆԵՐԻ ՈՒ ՔՐԴԵՐԻ ԽՌՈՎՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում խռովություն սկսեց թուրքմենների ու քրդերի միջև Ջազիրայում, Մոսուլում, Դիար Բաքրում, Խլաթում, Ասորիքում, Շահրըզուրում և Ատրպատականում։ Անհաշիվ մարդ սպանվեց, մի քանի տարի տևեց, ճանապարհները կտրվեցին, մարդկանց ունեցվածքը կողոպտվեց, արյուն հոսեց։

Բանն այն է, որ մի թուրքմեն ամուսնացել էր մի թուրքմեն կնոջ հետ և [իր տան] ճանապարհն անցնում էր Անձևացիքի (Զավզան) քրդերի մի ամրոցի մոտով։ Եկան բնակիչները և թուրքմեններից պահանջեցին, որ իրենք էլ [մասնակցեն] հարսանեկան խնջույքին, սակայն սրանք չընդունեցին։ Նրանք սկսեցին վիճել և բանը հասավ կռվի։ Բերդի տերը իջավ և սպանեց փեսային։ Սկսվեց խռովությունը, թուրքմենները կռվի ելան և քրդերից մեծ բազմություն կոտորեցին։ Ոտքի ելան քրդերը և նրանք էլ թուրքմեններին կոտորեցին։ Չարիքը տարածվեց ու շարունակվեց։ Վերջապես, Մուջահիդ ալ-Դին Կայմազն իր մոտ հրավիրեց քրդերի ու թուրքմեն-

ների գլխավորներին, հաշտեցրեց, պատվական պատմուճաններ, զգեստներ և այլ բաներ նվիրեց, շատ դրամ պարգևեց։ Այսպիսով, վերջ դրվեց խռովությանը և ալլահն ազատեց [երկիրն] այդ չարիքից և վերստին տիրեց վստահությունն ու ապահովությունը։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(13 մարտ 1187—1 մարտ 1188)

*Էջ 188*

## ԽՌՈՎՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԱՖԱՏ ԼԵՌԱՆ ՄՈՏ ԵՎ ԻԲՆ ՄՈՒԿԱԴԴԱՄԻ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Այս տարում Արաֆատի տոնի օրը սպանվեց Շամս ալ-Դին Մուհամմադ իբն Աբդ ալ-Մալիքը, որը ծանոթ է Իբն Մուկադդամ անվամբ և Սալահ ալ-Դինի հայտնի ամիրներից էր։

Նա սպանվեց հետևյալ պարագաներում։ Երբ մահմեդականները նվաճեցին Երուսաղեմը (բայտ ալ-Մակդիս), նա Սալահ ալ-Դինից խնդրեց, որ ուխտագնացություն կազմակերպի Երուսաղեմ։

Նրան թույլատրվեց և այդ տարին ուխտավորներ հավաքվեցին Ասորիքից մեծ բազմությամբ, Իրաքից, Մոսուլից, Ջազիրայից, Խլաթից, հոռոմների երկրից, Եգիպտոսից և այլ վայրերից, որպեսզի միաժամանակ այցելեն Երուսաղեմ ու Մեքքա։

Իբն Մուկադդամը ուխտագնացության վերակացու նշանակվեց։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(2 մարտ 1188—18 փետրվար 1189)

*Էջ 195*

## ԲԱՂՐԱՍԻ ԳՐԱՎՄԱՆ ՄԱՍԻՆ

Ապա [Սալահ ալ-Դինը] Դարբ Սաքից (Դարբսաք) գնաց Բաղրաս բերդը ու պաշարեց։ Այն պաշարելու մասին տարբեր կարծիքներ կային իր զորականների մեջ։ Ոմանք համաձայն էին, իսկ ոմանք էլ՝ դեմ։ [Վերջիններս] ասում էին, թե ամուր բերդ է և անառիկ ամրոց, մոտ է Անտիոքին (Անթաքիա) և տարբերություն չկա, սա կամ Անտիոքը պաշարելու մեջ։ [Բոլոր դեպքերում] անհրաժեշտ է, որ զորքերի մեծամասնությունը լինի Անտիոքի դիմաց հսկողի (յազաք)[209] դերում և քանի որ այդպիսին է դրությունը, ապա քիչ կլինի կռվողների թիվը և անկարելի կլինի այնտեղ հասնել։ Սակայն աղոթքով ապավինելով բարձրյալն ալլահին, [Սալահ ալ-

Դինը] շարժվեց և զորքերի մեծ մասը դարձրեց Հսկող (յաղաք)՝ Անտիոքի դիմաց։ Նրանք ասպատակում էին շրջակա գավառները, սակայն զգույշ էին, վախենալով Անտիոքի բնակիչներից, քանի որ շատ մոտ էր։ Սալահ ալ-Դինը մի խումբ ձիավորների հետ կռվում էր (Բաղրաս) ամրոցի առջև. նա քարանետ մեքենաներ դրեց, սակայն չկարողացավ վնասել,՛ քանի որ [բերդը] շատ բարձր էր։ Երբ բերդի գրավումը ուշացավ, գերակշռեց այն տեսակետը, թե գրավելը անկարելի է, և մահմեդականները նեղվեցին իրենց մոտ ջրի պակասությունից։ Սակայն Սալահ ալ-Դինը հրամայեց ջրավազաններ կառուցել ու ջուրը բերել լցնել, և այսպիսով, նրանց գործը թեթևացավ։

Այսպիսին էր դրությունը, երբ ամրոցի դարպասը բացվեց ու դուրս եկավ մի մարդ, որը երաշխավորագիր (աման) էր խնդրում։ Նրան ընդառաջեցին և թույլ տրվեց մոտենալ։ Նա մոտեցավ ու խնդրեց բերդում գտնըվողներին երաշխավորագիր տալ, մինչև որ բերդը հանձնեն այնտեղ եղած ամեն ինչով՝ ըստ Դարբ Սաքի անձնատվության պայմանների։ [Սալահ ալ-Դինը] համաձայնեց, իսկ պատգամավորը վերադարձավ, իր հետ տանելով մահմեդական դրոշները, որոնք բարձրացվեցին ամրոցի կատարին։ Ներսում եղածները իջան, իսկ մահմեդականները ստանձնեցին բերդը նրանում եղած գանձերով, հարստությամբ ու զենքով։ Սալահ ալ-Դինը հրամայեց քանդել [բերդը] և իրոք քանդեցին։ Իսկ սա մեծ վնաս էր մահմեդականներին, քանզի Հայոց տեր (Սահիբ ալ-Արման) Լևոնի որդին (իբն Լայուն), որը սահմանակից էր, իր երկրից եկավ, նորոգեց նրա կառուցվածքը, կատարելագործեց և այնտեղ նշանակեց իր զինվորների մի խումբ, որն այնտեղից ասպատակում էր դրացի երկիրը և սրանից շատ տուժեց Հալեբի շրջակայքի ժողովուրդը։ Այն մինչև օրս նրանց (հայերի) ձեռքում է։

էջ 195

## ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՈՒ ԱՆՏԻՈՔԻ ՏԻՐՈՋ ՄԻՋԵՎ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Երբ Սալահ ալ-Դինը գրավեց Բաղրասը, որոշեց գնալ Անտիոք ու պաշարել այն։ Նրա տեր Բոհեմունդը (Բիմունգ) վախեցավ այդ բանից և [մարդ] ուղարկեց Սալահ ալ-Դինի մոտ ու հաշտություն խնդրեց, խոստանալով իր մոտ եղած բոլոր մահմեդական գերիներին արձակել։ Սալահ ալ-Դինը իր մեծամեծների հետ խորհրդակցեց և մեծ մասը խորհուրդ տվեց համաձայնել, որպեսզի զինվորները վերադառնային, հանգստանային ու կարգավորեին իրենց գործերը՝ Նա համաձայնեց և հաշտություն կնքեց

*ութ ամսվա համար, որի սկիզբը Տիշրին Ա (հոկտեմբեր) ամսի[310] մեկն էր, իսկ վերջը Այյար (մայիս) ամսի վերջին օրը։ Նա իր պատգամավորին ուղարկեց Անտիոքի տիրոջ մոտ, որպեսզի նրան երդվել տա և նրա մոտ եղած գերիներին ազատի։*

*Այդ ժամանակ Անտիոքի տերը ֆրանկների մոտ ամենաբարձր հեղինակություն և ամենամեծ տիրույթներն ուներ։ Ֆրանկները Կոմսի (Կումս) մահվանից հետո նրան էին հանձնել Տրիպոլիսը (Թարաբուլուս) իր բոլոր գավառներով, բացի արգեն ունեցածից, քանզի կոմսը տղա զավակ չուներ, և երբ [Բոհեմունդին] հանձնեցին Տրիպոլիսը, սա իր ավագ որդուն այնտեղ տեղակալ նշանակեց։*

## *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

(8 փետրվար 1190—28 հունվար 1191)

*էջ 207*

## ԳԵՐՄԱՆՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐԻ՝ ԱՍՈՐԻՔ ՀԱՍՆԵԼՈՒ ԵՎ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

*Այգ տարում գերմանների (ալմանների) թագավորը[311] դուրս եկավ իր երկրից։ Սրանք ֆրանկների մի տեսակն են, ամենաբազմամարդը և ամենաուժեղը նրանց մեջ։ Նրան (գերմանների թագավորին) հուզում էր մահմեդականների Սուրբ քաղաքը (ալ-Բայտ ալ-Մուկադգաս) գրավելը։ Նա հավաքեց իր զորքը, կարիքները ապահովեց և իր երկրից շարժվեց դեպի Կ. Պոլիս (Կուսթանթինիյյա)։ Ռումի. թագավորը սուրհանդակ ուղարկեց Սալահ ալ-Դինին՝ իմաց տալով և նշելով, որ ինքը նրան (գերմանների թագավորին) չի թողնելու, որ իր երկրից անցնի։ Բայց երբ գերմանների թագավորը հասավ Կ. Պոլիս, սրա թագավորը չկարողացավ արգելել նրան անցնելու, քանի որ գերմանները մեծ բազմությամբ էին։ Սակայն արգելեց նրանց պարեն տալ և թույլ չտվեց, որ իր հպատակներից որևէ մեկը նրանց ուզածը տա։*

*Սրանք պարենի ու մթերքի մեծ պակաս ունեցան, մինչև որ անցան Կ. Պոլսի ծոցը և մտան իսլամի երկիրը, որը Կիլիջ Արսլան իբն Մասուդ իբն Կիլիջ Արսլան իբն Կուտուլմիշ իբն Սալջուկի թագավորությունն էր։ Երբ նրա սահմանը հասան, նրանց դեմ դուրս եկան թուրքմենները և հետապնդում ու կոտորում էին նրանց, հենց որ միայնակ էին գտնում, կողոպտում, ինչքան որ կարող են։ Ժամանակը ձմեռ էր և ցուրտը այս երկրում շատ խիստ է լինում, իսկ ձյունը կուտակվում է։ Ցուրտը, անոթությունը և թուրքմենները կոտորեցին նրանց և թիվը պակասեց (նրանք նվազեցին)։*

Երբ Իկոնիա (Կունիա) քաղաքին մերձեցան, նրանց դեմ դուրս եկավ Կութբ ալ-Դին Մալիքշահ իբն Կիլիջ Արսլան թագավորը, որ կանգնեցնի նրանց, սակայն չկարողացավ ու վերադարձավ Իկոնիա՝ հոր մոտ։ Այս որդին իր հորը չեզոքացրել էր [իշխանությունից], և որդիները տարածվեցին երկրում ու ամեն մեկը մի կողմին տիրացավ։ Երբ Կութբ ալ-Դինը վերադարձավ նրանց (գերմանների) մոտից, վերջիններս նրա ետևից եկան ու հասան Իկոնիա և բանակ դրեցին։ Նրանք նվեր ուղարկեցին Կիլիջ Արսլանին և ասացին նրան՝ մենք քո երկիրը չէ, որ եկել ենք և այն չէ, որ ցանկանում ենք, այլ մեր նպատակն է գնալ Սուրբ քաղաքը (ալ-Բայտ ալ-Մուկադդաս)։ Նրանք խնդրեցին, որ թույլ տա իր հպատակներին, որ դուրս բերեն ինչ որ իրենց պետք է՝ ուտեստեղեն և այլ բաներ։ [Կիլիջ Արսլանը] թույլատրեց և նրանք ստացան ինչ որ կամենում էին, կշտացան, պաշար հավաքեցին ու շարժվեցին առաջ։ Նրանք պահանջեցին Կութբ ալ-Դինից, որ իր հպատակներին հրամայի իրենց չհետապնդել, ինչպես նաև իրենց հանձնել որոշ ամիրների՝ որպես պատանդ։ Սա վախենալով նրանցից (գերմաններից), հանձնեց քսանից ավելի ամիրների, որոնց ատում էր, և նրանք տարան։ Սակայն ավազակները և ուրիշներ չհրաժարվեցին նրանց հետապնդելուց ու նեղելուց, իսկ գերմանների թագավորը բռնեց նրանց ու շղթայեց և ոմանք մեռան գերության մեջ, ոմանք էլ փրրկագնով ազատվեցին։

Առաջ խաղաց գերմանների թագավորը, մինչև որ հասավ Հայոց երկիրը (Բիլագ ալ-Արման), որի տերն էր Լևոնի որդի Ստեփանեի որդի Լևոնը (Լաֆուն իբն Իսթիֆանա իբն Լայուն)։ Սա պարենավորեց նրանց մըթերքով ու անասնակերով, իր երկրում տեղ տվեց և հպատակություն հայտնեց։ Ապա շարժվեցին դեպի Անտիոք և նրանց ճանապարհին կար մի գետ, որի մոտ իջան նրանք։ Թագավորը մտավ գետը լողանալու և խեղդվեց այնպիսի տեղում, ուր ջուրը մարդու մեջքին չի հասնի և ալյահը ազատեց (մեզ) նրա չարիքից։

Նրա մոտ էր որդին, որը դարձավ թագավոր և քայլեց դեպի Անտիոք[312]։ Նրան ընկերակցողները այլևս չէին ենթարկվում։ Ոմանք նախընտրեցին վերադառնալ իրենց երկիրը և թողեցին նրան (թագավորին), ոմանք կամեցան նրա եղբորը թագավորեցնել և նույնպես վերադարձան, իսկ ովքեր, որ նրան կողմնակից էին, եկան միասին և նրանց թիվը քառասուն հազարից ավելի էր։ Սրանց մեջ համաճարակ ու մահ տարածվեց և երբ նրանք Անտիոք հասան, կարծես գերեզմանից դուրս եկած լինեին։ Անտիոքի տերը նեղվեց նրանցից և հեշտացրեց նրանց երթը դեպի Ակրան (Աքքա) պաշարող ֆրանկների մոտ։ Նրանք անցան Ջաբալա, Լաոդիկե (Լագակիյյա) և այլ վայրերից, որոնք մահմեդականները գրավել էին։ Նրանց դեմ դուրս եկան Հալեբի և այլ վայրերի զորքեր, շատերին գերեցին,

*որոնց մեծ մասը մեռավ։ Նրանք հասան Տրիպոլիս (Թարաբուլուս), մի քանի օր մնացին, սակայն մահացումներն այնքան շատացան, որ միայն մոտավորապես հազար մարդ մնաց։ Ապա ծովի ճամփով գնացին Ակրա-յում (Աքքա) գտնվող ֆրանկների մոտ։ Երբ հասան, իմացան, թե (վերջին-ներս) ինչ փորձանքներից էին անցել ճանապարհին և ինչպիսի տարակար-ծությունների մեջ էին, իրենք էլ վերադարձան իրենց երկիրը, սակայն նրանց նավերը ընկղմվեցին և ոչ ոք չփրկվեց։*

## *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ*

**(29 հունվար 1191—17 հունվար 1192)**

*էջ 212—213*

### ՏԱԿԻ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԵՓՐԱՏԸ ԱՆՑՆԵԼԸ, ԽԱՌԱՆ ՈՒ ՋԱԶԻՐԱՅԻ ԱՅԼ ՎԱՅՐԵՐԻՆ ՏԻՐԱՆԱԼԸ, ԵՐԹԸ ԴԵՊԻ ԽԼԱԹ ՈՒ ՄԱՀԸ

*Այդ տարում՝ Սաֆար ամսին (28 փետրվար—28 մարտ), Տակի ալ-Դինը Ասորիքից գնաց Ջազիրայի Խառան (Հառան), Եդեսիա (Ռուհա) քաղաքները, որոնք իր հորեղբայր Սալահ ալ-Դինը Մուզաֆֆար ալ-Դինից առնելուց հետո, պարգևել էր նրան որպես տիրույթ (իկթա), բացի այն տիրույթներից, որ արդեն ուներ Ասորիքում։ Նա նրա (Սալահ ալ-Դինի) հետ որոշեց, որ երկիրը ավատ (իկթա) տրվի ռազմիկներին և նրանք իր հետ վերադառնան, որպեսզի նրանց միջոցով կարողանա ճնշել ֆրանկնե-րին։ Երբ անցավ Եփրատը և երկրի վիճակը կարգավորվեց, գնաց Նփըր-կերտ, որն իրենն էր։ Սակայն երբ այնտեղ հասավ, իր մեջ նորից ցանկու-թյուն առաջացավ դրացի երկրները ևս նվաճելու։ Նա գնաց Հանի քաղա-քը, որը Դիար Բաքրի մեջ էր, պաշարեց և իր յոթ հարյուր ձիավորներով տիրեց։*

*Երբ Խլաթի տեր Սայֆ ալ-Դին Բաքտամուրը լսեց նրա՝ Հանին գրա-վելը, զորք հավաքեց ու գնաց նրա դեմ։ Նրա զորքը հասավ չորս հազար ձիավորի։ Սակայն երբ ընդհարվեցին, Խլաթի զորքը չդիմացավ Տակի ալ-Դինի [զորքերին] և փախուստի դիմեց, իսկ Տակի ալ-Դինը հետապըն-դեց նրան (Խլաթի տիրոջ) ու մտավ նրա երկիրը։ [Մինչ այդ] Բաքտա-մուրը բռնել էր իր տիրոջ՝ Շահ Արմանի վեզիր Մաջդ ալ-Դին իբն Ռաշիկին ու բանտարկել մի բերդում, սակայն երբ պարտվեց, գրեց բերդապահին՝ հրամայելով սպանել իբն Ռաշիկին։ Սուրհանդակը հասավ այն ժամանակ, երբ Տակի ալ-Դինը պաշարել էր բերդը։ Վերջինս վերցրեց նամակը, տի-րեց բերդին և ազատ արձակեց իբն Ռաշիկին։ Ապա գնաց Խլաթ ու պաշա-*

րեց, սակայն, բավարար բազմությամբ զորք չունենալով, չկարողացավ իր նպատակին հասնել և դարձավ դեպի Մանազկերտ, որը պաշարեց. բնակիչներին նեղեց ու երկար մնաց։ Երբ [բնակիչները] նեղվեցին, նրանից մի քանի օր ժամկետ խնդրեցին և նա համաձայնեց։ Սակայն Տակի ալ-Դինը հիվանդացավ ու մեռավ նախքան ժամկետի լրանալը՝ երկու օր առաջ, իսկ նրա զորքը ցրվեց։ Նրա որդին ու մերձավորները նրան մեռած վիճակում տարան Նփրկերտ, իսկ Բաքտամուրը վերականգնեց իր դիրքը, ուժեղացավ և իշխանությունը կայունացավ, մինչդեռ ոչնչացման սպառնալիքի առջև էր։ Այս այն պարագան էր, երբ ասվում է «թեթևացում՝ գառնությունից հետո», քանզի իբն Ռաշիկը մահվանից ազատվեց, իսկ Բաքտամուրը գերի ընկնելուց փրկվեց։

էջ 218

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այտ տարում Ռումի տեր Մուիզզ ալ-Դին Կայսար Շահ իբն Կիլիջ Արսլանը Ռամազան ամսին (22 սեպտեմբեր—21 հոկտեմբեր) եկավ Սալահ ալ-Դինի մոտ։

Նրա գալստյան պատճառն այն էր, որ հայրը՝ Իզզ ալ-Դին Կիլիջ Արսլանը, իր թագավորությունը որդիների միջև բաժանելիս, այս որդուն տվել էր Մալաթիան, իսկ Կութբ ալ-Դին Մալիք Շահ որդուն՝ Սեբաստիան։ Սակայն Կութբ ալ-Դինը հարձակվել էր հոր վրա, ձերբակալել, խելագար հայտարարել ու խլել նրա իշխանությունը։ Նա [որոշել էր] ստիպել նրան (հորը) վերցնել Մալաթիան իր եղբորից և իրեն հանձնել։

Մուիզզ ալ-Դինը վախեցած գնաց Սալահ ալ-Դինի մոտ ապավինելով ու ապաստանելով նրան։ Սալահ ալ-Դինը նրան պատվեց և ամուսնացրեց իր եղբոր՝ ալ-Մալիք ալ-Ադիլի, աղջկա հետ։ [Այն ժամանակ] Կութբ ալ-Դինը հրաժարվեց իր ծրագրից, իսկ Մուիզզ ալ-Դինը վերադարձավ Մալաթիա Զու-լ-Կադա ամսին (20 նոյեմբեր—19 դեկտեմբեր)։

## ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(18 հունվար 1192—6 հունվար 1193)

էջ 220

## ԱՖԴԱԼԻ ԵՎ ԱԴԻԼԻ ՋԱԶԻՐԱ ԳՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

Արդեն հիշել ենք Տակի ալ-Դին Ումար իբն Սալահ ալ-Դինի մահվան և նրա որդու՝ Նասիր ալ-Դին Մուհամմադի՝ Ջազիրան գրավելու մասին։ Երբ սա գրավեց, լուր ուղարկեց Սալահ ալ-Դինին՝ խնդրելով հաստա-

*տել իր իշխանությունը այդ, ինչպես նաև Ասորիքում իր հոր ունեցած երկրամասերի վրա։ Սակայն Սալահ ալ-Դինը հարմար չտեսավ, որ այդքան երկիր հանձնվի մի տղայի և չընդունեց։*

*Սա որոշեց այլևս չենթարկվել [Սալահ ալ-Դինին], քանի որ վերջինս զբաղված էր ֆրանկների հետ։ Եվ ահա, ալ-Աֆդալ Ալի իբն Սալահ ալ-Դինը խնդրեց իր հորից, որ իրեն, որպես տիրույթ, պարգևի այն, ինչ որ Տակի ալ-Դինը ուներ, բացի Դամասկոսից (Դիմաշկ) և նա (Սալահ ալ-Դինը) ընգառաջեց նրան ու հրամայեց դնալ [իր նոր կալվածները]։ Սա իր զորքով եկավ Հալեբ, իսկ Սալահ ալ-Դինը դրեց արևելյան երկրամասերի տերերին, ինչպես Մոսուլի, Սինջարի, Ջազիրայի, Դիար Բաքրի և այլ վայրերի տերերին, հրամայելով զորք տալ իր որդուն՝ Աֆդալին։*

*Երբ Տակի ալ-Դինի որդին այս բոլորը տեսավ, իմացավ, որ ինքը անզոր է նրանց դիմաց և նամակ դրեց իր հոր հորեղբորը՝ ալ-Մալիք ալ-Ադիլին[313], խնդրելով շտկել իր հարաբերությունները Սալահ ալ-Դինի հետ։ Սա համաձայնեցրեց Սալահ ալ-Դինի հետ, հարաբերությունները բարելավեց և որոշեցին, որ այն, ինչ նրա (Նասիր ալ-Դինի) հորն էր պատկանում Ասորիքում, նրան մնա, իսկ Ջազիրան վերցվի նրանից։ Այդպես էլ արվեց։ Այսպիսով, Ջազիրան, այսինքն Խառանը, Եդեսիան, Սամոսատը, Նփրկերտը և Հանին Սալահ ալ-Դինը տվեց Ադիլին և նրան ուղարկեց Տակի ալ-Դինի որդու մոտ, որպեսզի նրանից ստանա այդ երկիրը, նրան էլ ուղարկի իր մոտ, իսկ Աֆդալին՝ որտեղ հանդիպի, ետ վերադարձնի։*

*ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ՈՒԹՍՈՒՆԻՆՆ ԹՎԱԿԱՆ*

**(7 հունվար—26 դեկտեմբեր 1193)**

**ՍԱԼԱՀ ԱԼ-ԴԻՆԻ ՄԱՀՎԱՆ ՈՒ ՎԱՐՔԻ ՄԱՍԻՆ**

*էջ 225*

*Նախքան հիվանդանալը նա իր մոտ կանչեց որդուն՝ ալ-Աֆդալ Ալիին և եղբոր ալ-Մալիք ալ-Ադիլ Աբու Բաքրին և խորհուրդ հարցրեց, թե ինչ անի, ասելով՝ ֆրանկների հետ մեր գործերը վերջացրել ենք և այս կողմերում մեզ զբաղեցնող չկա։ Ո՞ր կողմը հարձակվենք։ Եղբայրը՝ Ադիլը, խորհուրդ տվեց հարձակվել Խլաթի վրա, քանզի նա խոստացել էր նրան պարգևել, եթե նվաճի։ Որդին՝ Աֆդալը, խորհուրդ տվեց հարձակվել Ռումի երկիրը, նրա այն մասը, որ Կիլիճ Արսլանի որդիների ձեռքում է գտնվում, ավելացնելով՝ թեև այդ երկիրը ունի շատ քաղաքներ, զորք. ունեցվածք, այսուհանդերձ դյուրին կնվաճվի։ Միաժամանակ ցամաքի կողմից ֆրանկների ճանապարհի վրա է և եթե գրավենք, նրանց թույլ չենք տա միջով անցնել։*

Ասաց [Սալահ ալ-Դինը] երկուսդ էլ սխալ եք ու համարձակությունից զուրկ։ Ես կգամ նախ հոռոմների երկիրը, իսկ դու, ասաց եղբորը, կվերցնես իմ որդիներից մի քանիսին և իմ զորքի մի մասը ու կգնաս Խլաթ և ես երբ վերջացնեմ գործերս հոռոմների երկրում, կգամ քեզ մոտ և կշարժվենք դեպի Ատրպատական ու կմտնենք Պարսից (Աջամ) երկիրը, ուր մեզ դիմագրող չկա։

Ապա իր եղբորը՝ Ադիլին, հրամայեց գնալ Քարաք (ամրոցը), որն իրեն էր պատկանում և ասաց՝ պատրաստվիր ու սպասիր երթի։ Սակայն, երբ վերջինս մեկնեց Քարաք, Սալահ ալ-Դինը հիվանդացավ ու մեռավ։

էջ 228—229

### ԽԼԱԹԻ ՏԵՐ ԲԱՔՏԱՄՈՒՐԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Ջումադա Ա ամսին (5 մայիս—4 հունիս), սպանվեց Սայֆ ալ-Դին Բաքտամուրը՝ Խլաթի տերը։ Նրա սպանության և Սալահ ալ-Դինի մահվան միջև երկու ամիս կար։ Նա չափազանց ուրախություն ցուցաբերեց Սալահ ալ-Դինի մահվան առթիվ, սակայն ալլահը նրան երկար ապրել չտվեց։ Երբ Սալահ ալ-Դինի մահը լսեց, այնչափ ուրախացավ, որ մի գահ պատրաստեց, վրան նստեց և իրեն հռչակեց ալ-Սուլթան ալ-Մուազզամ Սալահ ալ-Դին։ Նրա պատվանունն էր Սայֆ ալ-Դին, սակայն փոխելով իրեն անվանեց Աբդ ալ-Ազիզ։ Նրա մոտ խանգարում ու շփոթություն առաջացավ և պատրաստվեց գնալ արշավանքի Նփրկերտ (Մայյաֆարիկին), այն պաշարելու նպատակով, սակայն մահը վրա հասավ։

Նրա սպանության պատճառն այն էր, որ Զահիր ալ-Դին Շահ Արմանի մամլուքներից մեկը՝ Հազարդինարին, ուժեղացել էր, շատ կողմնակիցներ ուներ և ամուսնացել էր Բաքտամուրի աղջկա հետ։ Եվ ահա նա ցանկացավ իշխանությանը տիրանալ և մարդ ուղարկելով սպանել տվեց նրան։ Նրա սպանությունից հետո Խլաթի քաղաքների վրա իշխեց Հազարդինարին։

Բաքտամուրը ողորմած էր խստակյացներին (սուֆի)[314]։

### ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

(23 հոկտեմբեր 1199—11 հոկտեմբեր 1200)

էջ 249—250

### ԱԼ-ՄԱԼԻՔ ԱԼ-ԱԴԻԼԻ՝ ԵԳԻՊՏՈՍԻՆ ՏԻՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Եկավ [Սալահ ալ-Դինի եղբայր] Ադիլը և պաշարեց Կահիրեն (ալ-Կահիրա), իսկ [Սալահ ալ-Դինի որդի] Աֆդալը հավաքեց ամիրներին ու

*խորհրդակցեց, բայց տեսնելով նրանց թուլությունը, դեսպան ուղարկեց իր հորեղբորը, հաշտություն կնքելու և երկիրը (Եգիպտոս) նրան հանձնելու համար, փոխարենը տիրույթներ պահանջելով։ Նա պահանջեց Դամասկոսը, սակայն պատասխան չստացավ, պահանջեց Խառանն ու Եդեսիան, նույնպես պատասխան չստացավ, ապա պահանջեց Նփրկերտը, Հանին ու Ճապաղ ջուրը (Ջաբալ ջուր) և հորեղբայրը համաձայնեց ու հաշտություն կնքեցին։*

*Աֆդալը Կահիրեից (Եգիպտոսից) դուրս եկավ և Ռաբի Բ ամսի 18-ի (փետրվար 7) շաբաթ օրվա գիշերը, Ադիլի հետ հանդիպելուց հետո, գնաց Սարխադ [Դամասկոսի մոտ]։ Ադիլը մտավ Կահիրե նույն Ռաբի Բ ամսի 18-ի շաբաթ օրվա ցերեկը։*

*Երբ Աֆդալը հասավ Սարխադ, մարդ ուղարկեց վերցնելու համար Նփրկերտը, Հանին ու Ճապաղ ջուրը, սակայն Նաջմ ալ-Դին Այյուբ իբն ալ-Մալիք ալ-Ադիլը հրաժարվեց հանձնել Նփրկերտը, իսկ մյուսները տվեց։*

## *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ*

## (12 հոկտեմբեր 1200—30 սեպտեմբեր 1201)

*էջ 255*

## ՌՈՒՔՆ ԱԼ-ԴԻՆԻ՝ ՄԱԼԱԹԻԱՆ ԻՐ ԵՂԲՈՐԻՑ [ԽԼԵԼՈՒ] ԵՎ ԿԱՐՆՈ ՔԱՂԱՔԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Ռամադան ամսին (5 հունիս—5 հուլիս), Ռուքն ալ-Դին Սուլայման իբն Կիլիջ Արսլանը գրավեց Մալաթիա քաղաքը, որն իր եղբոր՝ Մուիզզ ալ-Դին Կայսար Շահին, էր պատկանում։ Նա գնաց ու բաղում օրեր պաշարելուց հետո գրավեց և այնտեղից գնաց Կարնո քաղաք (Արզան ալ-Ռում), որը պատկանում էր ալ-Մալիք իբն Մուհամմադ իբն Սալդուկի տղային։ Նրա տոհմը երկար ժամանակ տիրում էր Կարնո քաղաքին։ Երբ այնտեղ գնաց ու մոտեցավ, նրա տերը, վստահելով նրան, դուրս եկավ հաշտություն կնքելու՝ Ռուքն ալ-Դինի ուզած պայմաններով, սակայն վերջինս ձերբակալեց նրան, իր մոտ բանտարկեց ու գրավեց երկիրը։ Սա վերջինը եղավ իր տոհմի այն մարդկանցից, որոնք իշխեցին [այդ քաղաքում]։*

*էջ 255*

## ԱՄԻԴԻ ՏԵՐ ՍՈՒԿՄԱՆԻ ՄԱՀՎԱՆ ԵՎ ԵՂԲՈՐ՝ ՄԱՀՄՈՒԴԻ, ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Այդ տարում մեռավ Ամիդի և Հիսն Քայֆայի տեր Կութբ ալ-Դին Սուկման իբն Մուհամմադ իբն Կարա Արսլան իբն Դաուդ իբն Սուկմանը։ Նա մեռավ ընկնելով պատշգամբից (ջաուսակ), որը նրա Հիսն Քայֆա բերդի դրսում էր։ Նա իր եղբորը (Մահմուդին) սաստիկ ատում էր ու խորշում նրանից։ Նրան հեռացրել ու տարել էր Հիսն Մանսուր՝ իր տիրույթների ծայրամասում։ Նա Այաս անունով մի մամլուքի ամուսնացրել էր իր քրոջ հետ, և սաստիկ սիրում էր նրան և իր իշխանության ժառանգորդ էր դարձրել։*

*Երբ մեռավ, իրենից հետո մի քանի օր իշխեց [մամլուքը] և սկսեց սպառնալ Կութբ ալ-Դինի վեզիրին ու պետության այլ ամիրներին։ Սրանք գաղտնի լուր ուղարկեցին եղբորը՝ Մահմուդին, հրավիրելով իրենց մոտ։ Նա ջանասիրությամբ ճանապարհ ընկավ, հասավ Ամիդ, որտեղ իրենից առաջ իր եղբոր մամլուք Այասն էր հասել, սակայն վերջինս չփորձեց դիմադրել։ Մահմուդը ստանձնեց ամբողջ երկիրը, իշխեց ու բանտարկեց մամլուքին։ Որոշ ժամանակ բանտում մնալուց հետո Ռումի տերը միջնորդեց նրա համար, և սա բանտից արձակվեց ու գնաց Ռում, դառնալով նրա ամիրներից մեկը։*

### *ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԻՆՆՍՈՒՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ*

### (20 սեպտեմբեր 1202 —9 սեպտեմբեր 1203)

*էջ 260*

## ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ԴՈՒԻՆ[315] ՔԱՂԱՔԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում վրացիք (քուրջ)[316] գրավեցին Դուին քաղաքը, որն Ատրպատականում էր, կողոպտեցին, անկարգություններ արեցին, բնակիչներից շատերին կոտորեցին։ Սա, ինչպես նաև ամբողջ Ատրպատականը (Ադարբայջան), պատկանում էր ամիր Աբու Բաքր իբն Բահլավանին, որն, ըստ իր սովորության, գիշեր-ցերեկ զբաղված էր խմելով, ո՛չ զգաստանում էր, ո՛չ սթափվում, ո՛չ էլ թագավորության, հպատակների ու զորքի գործերով էր զբաղվում, ամեն ինչ հեռու էր վանել իր սրտից և այնպես էր պահում իրեն, կարծես այդ բոլորը իրեն չէր վերաբերում։*

Այդ երկրի (Դուինի շրջակայքի) բնակիչները հաճախ էին օգնության դիմում, նրան տեղեկացնելով վրացիների (քուրջ) հարձակվելու ցանկության մասին, բայց կարծես խուլ ժայռի դիմաց էին գոռում։

Երբ այդ տարում վրացիք (քուրջ) Դուին քաղաքը պաշարեցին, մի խումբ մարդիկ օգնություն խնդրելու գնացին, սակայն նա օգնություն չցուցաբերեց։ Ամիրների մի մասը զգուշացրեց, թե նրա անտարբերությունը, անփութությունը և իր ասածի վրա համառելը վատ վախճան կունենան, սակայն չլսեց նրանց։

Երբ այս վիճակը երկարեց, մարդիկ թուլացան և չդիմացան, իսկ վրացիք (քուրջ) սրով նվաճեցին [երկիրը] և արեցին այն, ինչ որ վերևում հիշեցինք։ Ապա, երբ վիճակը կայունացավ, վրացիք (քուրջ) բնակիչների մնացորդի հետ լավ վերաբերվեցին։ Թող ալլահը հսկի մահմեդականներին և նրանց ուժ տա պաշտպանելու սահմանային ամրությունները (սուղուր), որոնք պաշտպանության կարիք ունեն, մանավանդ այս երկիրը։ Հիրավի մենք ալլահին ենք պատկանում և նրա մոտ էլ կվերադառնանք։ Այն, ինչ արել էին վրացիք (քուրջ) Դուինի ժողովրդին՝ սպանություն, գերեվարություն և այլ չարագործություններ, ապա այդ մասին միայն լսելիս մարդու մարմինը կդողա։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(29 օգոստոս 1204—17 օգոստոս 1205)

էջ 268

## ԱՄԻԴԻ ՏԻՐՈՋ՝ ԽԱՐԲԵՐԴԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ՈՒ ՎԵՐԱԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

Խարբերդը (Խարտբիրտ, Խարտաբիրտ) Իմադ ալ-Դին իբն Կարա Արսլանին էր պատկանում։ Նրա մահվանից հետո տիրեց որդին՝ Նիզամ ալ-Դին Աբու Բաքրը, որն ապավինեց [Ռումի տեր] Ռուքն ալ-Դին իբն Կիլիջ Արսլանի [հովանավորությանը], իսկ նրանից հետո եղբորը՝ Ղիյաս ալ-Դինին, որպեսզի պաշտպանվի իր հորեղբորորդուց՝ Նասիր ալ-Դին Մահմուդ իբն Մուհամմադ իբն Կարա Արսլանից և իրոք պաշտպանվեց։

Ամիդի տերը ապավինել էր ալ-Մալիք ալ-Ադիլի հովանավորությանը և հպատակ էր նրան։ Վերջինս եկավ իր որդու՝ ալ-Մալիք ալ-Աշրաֆի հետ Մոսուլի տիրոջ կռվին մասնակցելու, այն պայմանով, որ սա զորք ուղարկի Խարբերդը գրավելու։ Նա [Խարբերդը] գրավելու ցանկություն էր ունեցել Ռուքն ալ-Դինի մահվանից հետո։

Երբ այս տարին հասավ, պահանջեց այն, որ որոշված էր։ Նրա հետ գնացին ալ-Մալիք ալ-Աշրաֆը և Ջազիրայի զորքերը՝ Սինջարից, Ջա-

զիրատ իբն Ումարից, Մոսուլից և այլ վայրերից։ Նրանք պաշարեցին [բերդը] Շաաբան ամսին (24 մարտ–22 ապրիլ), իսկ Ռամադանին (22 ապրիլ—22 մայիս) գրավեցին նրա արվարձանը (ռաբադ)[317]։ Նրա տերը միացել էր Ղիյաս ալ-Դինին, երբ վերջինս Ռումի երկրի տերն էր դարձել, հպատակ դառնալով նրան, ուստի, երբ Ամիդի տերը պաշարեց Խարբերդը, նրա տերը դիմեց Ղիյաս ալ-Դինին՝ օգնական զորք խնդրելով, որ հեռացնի [թշնամուն]։ Սա մեծ զորք պատրաստեց՝ վեց հազար ձիավորից բաղկացած և ուղարկեց Սամոսատի (Սումայսաթ) տիրոջ՝ ալ-Մալիք ալ-Աֆդալի հետ։ Երբ զորքը Մալաթիա հասավ, Ամիդի տերը և նրա ընկերակիցները Խարբերդից հեռացան, իջան դաշտը, պաշարեցին այն լիճը, որը կոչվում էր Սահնինի լիճ, ուր երկու բերդ կար՝ մեկը Ամիդի տիրոջը, իսկ մյուսը՝ Խարբերդի տիրոջը։ Սա պաշարեց ու գրավեց Զու-լ-Հիջջա ամսի երկուսին (21 հուլիս)։ Խարբերդի տերը Ռումի զորքերով եկավ դեպի Խարբերդի կողմերը, Ամիդի տերը հեռացավ լճից, ամրացրեց իր գրաված բերդը, սակայն հիվանդության պատճառով նահանջեց մեկ օրվա ճանապարհ (մարհալա) ու կանգ առավ։ Սուրհանդակների միջոցով Ռումի զորքը պահանջում էր վերադարձնել լիճը, իսկ Ամիդի տերը հրաժարվում էր։ Երբ խնդիրը երկարեց, բերդը մնաց Ամիդի տիրոջ ձեռքում և երկու զորքերը բաժանվեցին ու ամեն մեկը վերադարձավ իր երկիրը։

էջ 269

## ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ԻՍԼԱՄԻ ԵՐԿԻՐԸ ԱՍՊԱՏԱԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում վրացիք (քուրջ) Ատրպատականի կողմից արշավեցին իսլամի երկիրը, բռնություններ ու ավերածություն գործելով, կողոպտելով ու գերեվարելով, ապա ներխուժեցին Խլաթի գավառը, որը Հայաստանում էր, երկրի խորքերը մտան, մինչև որ հասան Մանազկերտ։ Մահմեդականներից ոչ ոք կռվի դուրս չեկավ նրանց դեմ և նրանք տարածվեցին երկրում, կողոպտելով, գերեվարելով և ինչքան առաջ էին գնում, մահմեդական զորքերը այնքան նահանջում էին։ Ապա նրանք ետ դարձան։ Թող ալլահը հոգ տանի Իսլամի երկրին ու ժողովրդին, ուժ տա նրա պաշտպաններին, պահպանի սահմանային ամրություններն ու հարվածի թշնամիներին։

Այդ տարում վրացիք (քուրջ) հարձակվեցին Խլաթի երկիրը, հասան Արճեշ (Արջիշ) ու նրա գավառները կողոպտեցին, գերեվարեցին, ավերեցին երկիրն ու գնացին Խլաթ գավառում գտնվող ալ-Տին բերդը, որը Կարնո քաղաքին (Արզան ալ-Ռում) մերձավոր էր։ Խլաթի տերը հավաքեց իր զորքը և դիմեց Թուղրիլ Շահին՝ Արզանի տիրոջ Կիլիջ Արսլանի որդուն,

օգնության կանչելով նրան վրացիների (քուրջ) դեմ։ Սա իր ամբողջ զորքըն ուղարկեց և նրանք [բոլորը] եկան վրացիների (քուրջ) դեմ, բախվեցին նրանց հետ, կռվեցին և վրացիք (քուրջ) պարտվեցին։ Սպանվեց փոքր Զաքարեն (Զաքարի)[318], որը նրանց գլխավոր առաջնորդներից էր և վրացիների այս զորքի առաջնորդն ու հրամանատարը։ Մահմեդականները տիրացան նրանց ունեցվածքին, զենքերին, ձիերին և այլ բաներին, նրանցից մեծ բազմություն կոտորելով ու գերեվարելով։ Ապա նա [Խլաթի տերը] վերադարձավ իր երկիրը։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(18 օգոստոս 1205—7 օգոստոս 1206)

*էջ 282*

## ՄԱՐԱՂԱՅԻ ՏԻՐՈՋ ՈՒ ԱՐԲԵԼԱՅԻ ՏԻՐՈՋ ՀԱՐՁԱԿՈՒՄԸ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ՝ ՎՐԱ

Այդ տարում Մարաղայի տերը՝ Ալա ալ-Դինը, համաձայնեց Արբելայի (Իրբիլ) տեր Մուզաֆֆար ալ-Դին Քաուքաբրիի հետ, որպեսզի հարձակվեն Ատրպատականի վրա ու գրավեն այն նրա տիրոջ՝ Աբու Բաքր իբն իբն ալ-Բահլավանի, ձեռքից, որը գիշեր-ցերեկ զբաղված էր հարբեցողությամբ, թողել էր պետական գործերը, զորքի ու հպատակների հսկողությունը։

Արբելայի (Իրբիլ) տերը եկավ Մարաղա ու միանալով նրա տիրոջ՝ Ալա ալ-Դինի հետ, գնացին Դավրեժի (Տաբրիզի) կողմը։ Երբ նրա տեր Աբու Բաքրը իմացավ, լուր ուղարկեց Ջաբալի, Համադանի, Իսֆահանի ու Ռայյի և դրանց միջև ընկած երկրների տիրոջը՝ Իտղամիշին, որն իր հոր՝ Բահլավանի մամլուքներից էր. Աբու Բաքրին հպատակ, սակայն [ըստ էության] դարձել էր երկրի տերը և հաշվի չէր նստում Աբու Բաքրի հետ։ Ահա սրան լուր ուղարկեց Աբու Բաքրը, օգնության կանչելով և դրությունը բացատրելով, իսկ վերջինս այն ժամանակ Իսմաիլիների[313] (Իսմաիլիյյա) քաղաքում էր։ Երբ լուրը հասավ, մեծ զորքով եկավ ու հասնելով լուր ուղարկեց Արբելայի (Իրբիլի) տիրոջը, ասելով՝ մենք քո մասին լսել էինք, որ սիրում ես գիտության մարդկանց ու բարեգործներին և բարյացակամ ես նրանց նկատմամբ։ Հետևաբար, քո մասին կարծում էինք, որ բարեգործ ու բարեպաշտ ես։ Արդ, տեսնում ենք հակառակը, [քանի որ] դու հարձակվել ես իսլամի երկրի վրա, ուզում ես կոտորել մահմեդականներին, կողոպտել նրանց ունեցվածքը և խռովություն բարձրացնել։ Եթե

*այդպիսին ես, ուրեմն դու անխելք ես։ Լինելով մի գյուղի տեր, հարձակվում ես մեզ վրա, որ իշխում ենք Խորասանի դռներից մինչև Խլաթ (Խիլաթ) և Արբելա (Իրբիլ)։ Ենթադրենք, որ սրան (Աբու Բաքրին) պարտության մատնեցիր, չգիտե՞ս, որ նա ունի մամլուքներ, որոնցից մեկը ես եմ։ Եթե նա ամեն մի գյուղից մի ջոկատ (շիհնա) վերցնի և կամ ամեն մի քաղաքից տասը հոգի, ապա նրա մոտ քո զորքից մի քանի անգամ ավելին կհավաքվի։ Քեզ համար ավելի լավ է, որ վերադառնաս քո քաղաքը։ Այս ամենը ասում եմ քեզ խնայելու համար։*

*Այս նամակից հետո նա շարժվեց նրա դեմ և երբ Մուզաֆֆար ալ-Դինը կարդաց ու իմացավ, որ Իտղամիշը առաջ էր շարժվել, որոշեց ետ դառնալ։ Սակայն Մարաղայի տերը ամեն կերպ փորձեց նրան տեղում հաստատ պահել, համոզելով, որ զորքն իրեն հանձնի։ Վերջինս ասաց նրան՝ նրա բոլոր ամիրները ինձ գրել են, որ հենց հարձակվեմ, իմ կողմը կանցնեն։ Սակայն Մուզաֆֆար ալ-Դինը չընդունեց այս խոսքերը, վերադարձավ իր քաղաքը և վախենալով հետապնդումից ընթացավ դժվարանցանելի ճանապարհներով, կիրճերով ու բարձր լեռնանցքներով։*

*Ապա Աբու Բաքրը և Իտղամիշը գնացին Մարաղա, պաշարեցին և ապա նրա տիրոջ հետ հաշտություն կնքվեց, այն պայմանով, որ նա Աբու Բաքրին հանձնի մի բերդ, որը կռվախնձոր էր, իսկ Աբու Բաքրը նրան տվեց Ուստավա և Ուրմիա քաղաքները ու հեռացավ։*

*էջ 282*

## ԼԵՎՈՆԻ ՈՐԴՈՒ՝ ՀԱԼԵԲԻ ԳԱՎԱՌՆԵՐԻ ԴԵՄ ԱՐՇԱՎԱՆՔԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում կիրճերի տեր հայազգի Լևոնի որդին (իբն Լայուն ալ-Արմանի) մի քանի անգամ արշավեց Հալեբի նահանգի վրա, կողոպտեց, հրկիզեց, գերեց և գերեվարեց։ Հալեբի տեր ալ-Մալիք ալ-Զահիր Ղազի իբն Սալահ ալ-Դին Յուսուֆը հավաքեց իր զորքը և այլ թագավորների օգնության կանչելով, հավաքեց բազմաթիվ հեծյալ ու հետիոտն [զորք] ու Հալեբից գնաց Լևոնի որդու կողմը։ Իսկ Լևոնի որդին իր երկրի մի այնպիսի մասում էր, Հալեբի երկրից այն կողմ, ուր գնալու համար ճանապարհ չկար, քանզի նրա ամբողջ երկիրը գնալու համար չկար այլ ճանապարհ, բացի քարքարոտ լեռներից ու դժվարանցանելի կիրճերից և իրենցից զատ ոչ ոք չէր կարող մտնել։ Ճանապարհը անանցանելի էր մանավանդ Հալեբի կողմից։*

*Զահիրը կանգ առավ Հալեբից հինգ փարսախ հեռավորության վրա։ Նա իր զորքի մի մասը առաջապահ նշանակեց մի մեծ ամիրի գլխավո-*

րությամբ, որն իր հոր մամլուքներից էր ու կոչվում էր Մայմուն ալ-Կասրի (պալատային), Եգիպտոսի Ալավի (Ֆաթիմյան) խալիֆաների պալատի (կասր) անունով, քանզի հայրը նրանցից (Ֆաթիմյաններից) էր ստացել այդ [մամլուքին]։ Ջահիրը սննդամթերք և զենք ուղարկեց իր մի բերդը, որը դրացի էր Լևոնի որդուն և կոչվում էր Դարբ Սաք։ Նա լուր ուղարկեց Մայմունին, որ իր զորքի մի մասը ուղարկի այս ռազմամթերքին ընկերակցելու համար մինչև Դարբ Սաք։ Այդպես էլ արեց նա և իր զորքի մեծ մասն ուղարկեց, իսկ ինքը մնաց փոքր զորամասով։ Լուրը հասավ Լևոնի որդուն, որն շտապ հասավ ու, գտնելով նրան փոքրաթիվ զորքով, կռվի բռնվեց նրա հետ։ Երբ կռիվը սաստկացավ, Մայմունը լուր ուղարկեց Ջահիրին իմաց տալով այդ մասին, սակայն սա հեռու էր նրանից։ Պատերազմը երկարեց, իսկ Մայմունը պաշտպանում էր իր անձն ու բեռները փոքրաթիվ մահմեդականներով մեծաթիվ հայերի դեմ։ Մահմեդականները փախուստի գիմեցին, իսկ թշնամին հաղթեց, կոտորեց ու գերեվարեց։ Մահմեդականները ևս երկարատև կռվի ընթացքում սպանեցին հայերի։ Հայերը վերցրեցին մահմեդականների բեռները, ավարի տվին ու տարան։ Ճանապարհին նրանց պատահեցին այն մահմեդականները, որոնք զինամթերքի հետ գնում էին Դարբ Սաք, սակայն չհասկացան ինչ էր կատարվել և միայն զգուշանում էին թշնամուց։ Թշնամին հարձակվեց նրանց վրա, սրի քաշեց և կռիվը խիստ սաստկացավ։ Այստեղ ևս մահմեդականները փախուստի դիմեցին, իսկ հայերը ավարի հետ միասին վերադարձան իրենց երկիրը և ամրացան իրենց լեռներում ու բերդերում։

էջ 283

## ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՎԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում վրացիք (քուրջ) մեծ բազմությամբ ներխուժեցին Խլաթի նահանգը Հայաստանում, կողոպտեցին, կոտորեցին մեծ թվով, գերեցին [զորքը] ու գերեվարեցին [մահմեդական ժողովրդին], տարածվեցին երկրով մեկ, առանց վախի և Խլաթի [երկրից] ոչ ոք նրանց դեմ դուրս չեկավ կանգնեցնելու։ Նրանք շարունակեցին կողոպտել, գերեվարել, իսկ երկիրը մնացել էր անտեր, անպաշտպան, քանզի նրա տերը մանուկ էր, իսկ իրական կառավարողը իշխանություն չուներ զորքի վրա։

Երբ մարդկանց դժբախտությունը սաստկացավ, ըմբոստացան, սկսեցին իրար դրդել, և այդ նահանգի մահմեդական զորքերը հավաքվեցին։ Նրանց վրա ավելացան նաև բազմաթիվ կամավորներ և բոլորը միասին վախով լցված գնացին վրացիների (քուրջ) դեմ։ Բարեպաշտ սուֆիներից մեկը երազում տեսավ Շայխ Մուհամմադ ալ-Բուստիին, որը մաքրակրոն

մարդկանցից էր և մեռած, սուֆին ասաց նրան՝ քեզ այստեղ եմ տեսնում, ասաց նրան՝ եկել եմ մահմեդականներին օգնելու թշնամիների դեմ։ Սա ուրախությամբ պարթնեց և քանի որ Բուստին երևելի տեղ էր գրավում իսլամական աշխարհում, եկավ զորքի հրամանատարի ու [Խլաթի տիրոջ] գործերի կառավարչի մոտ ու պատմեց իր երազը։ Սա շատ ուրախացավ և որոշեց անպայման գնալ վրացիների (քուրջ) դեմ։ Նա իր զորքով գնաց և մի տեղում կանգ առավ։

Լուրը հասավ վրացիներին (քուրջ), որոնք որոշեցին հանկարծակիի բերել մահմեդականներին ու հովտից դեպի վեր տեղափոխվեցին, ուր մնացին, որպեսզի գիշերը հանկարծակի հարձակվեն մահմեդականների վրա։ Սակայն մահմեդականները իմացան և հարձակվեցին վրացիների (քուրջ) վրա և կիրճի գլուխն ու ելքը բռնեցին, իսկ այդ կիրճը բացի այդ երկու [անցքից] այլ ճանապարհ չուներ։ Երբ վրացիք (քուրջ) այդ տեսան, հասկացան, որ կորած են և իրենց ձեռքերը թուլացան։ Մահմեդականները համարձակություն ստացան ու նեղեցին նրանց, կռվեցին, շատերին կոտորեցին ու նույնքան էլ գերեցին։ Վրացիներից (քուրջ) միայն քչերին հաջողվեց փախչել։ Այսպիսով, ալլահը մահմեդականներին ազատեց նրանց չարիքից, մինչդեռ նրանք կործանման էին դատապարտված։

էջ 284

## ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ռումի տեր Ղիյաս ալ-Դին Խոսրով Շահը հարձակվեց Տրապիզոնի (Թարաբզուն) վրա ու պաշարեց նրա տիրոջը, որը դուրս էր եկել նրա հնազանդությունից։ Նա նեղեց նրան և այսպիսով, կտրվեցին ճանապարհները Ռումի, ռուսների, ղփչաղների (կիֆջակ) և այլ երկրներից, թե՛ ցամաքից, թե՛ ծովից և ոչ ոք այնտեղից չեկավ Ղիյաս ալ-Դինի երկիրը։ Մեծ վնաս հասավ մարդկանց, քանզի այդ երկրների հետ առևտուր էին անում ու մտնում էին նրանց երկիրը։ Գալիս էին վաճառականները [նաև] Ասորիքից, Իրաքից, Մոսուլից, Ջազիրայից և այլ երկրներից։

Սրանցից (վաճառականներից) մի մեծ խումբ հավաքվել էր Սեբաստիայում (Սիվաս), բայց քանի որ ճանապարհը չէր բացվել, մեծ վնաս կրեցին և բախտավոր էր համարվում նա, ով կարողանում էր գոնե իր դրամագլուխը ազատել։

Այդ տարում Ատրպատականի ու Առանի տեր Աբու Բաքր իբն ալ-Բահլավանը ամուսնացավ վրաց (քուրջ) թագավորի աղջկա հետ։

Բանն այն էր, որ վրացիք հաճախ էին արշավում նրա երկրի վրա՝ տեսնելով նրա թուլությունը, հարբեցողությամբ, խաղամոլությամբ ու

Նման բաներով տարվելը, թագավորության գործերը վարելուց և երկիրը պաշտպանելուց հրաժարվելը։ Ինքն էլ այդ բանն զգաց, սակայն չուներ արժանապատվություն և պատվասիրություն, որպեսզի, զզվելով այդ մոլորություններից, թողներ այն, ինչ որ վնասակար էր իր համար։ Տեսնելով, որ չի կարող երկիրը պաշտպանել [սրով], նա դիմեց penis-ով[320] պաշտպանվելու գաղափարին։ Նա նշանվեց ու ամուսնացավ նրանց թագավորի աղջկա հետ, իսկ վրացիք (քուրջ) հրաժարվեցին կողոպտելուց ու ասպատակելուց։ Այսպիսով, պատահեց այն դեպքը, որի մասին ասվում է «Իր սուրը պատյան դրեց ու մերկացրեց իր penis-ը»։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(8 օգոստոս 1206—27 հուլիս 1207)

*էջ 288*

### ՂԻՅԱՍ ԱԼ-ԴԻՆ ՔԱՅ ԽՈՒՍՐԱՈՒԻ՝ ԱՆԹԱԼԻԱ ՔԱՂԱՔԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում, Շաաբան ամսի երեքին (5 մարտ), Իկոնիայի (Կոնիա) և Ռումի երկրի տեր Ղիյաս ալ-Դին Քայ Խուսրաուը[321] երաշխավորագրով (աման) գրավեց Անթալիա[322] քաղաքը, որը ծովի ափին էր և պատկանում էր հոռոմներին։

Բանն այն է, որ այդ թվականից առաջ նա պաշարել էր, երկար մնացել, նրա պարսպի մի քանի աշտարակներ քանդել և մնում էր միայն սրով գրավել այն և ահա նրանում գտնվող հոռոմները լուր ուղարկեցին մերձակա Կիպրոս (Կուբրուս) կղզու ֆրանկներին, օգնության կանչեցին։ Երբ սրանց զորքը հասավ, Ղիյաս ալ-Դինը հուսահատվեց ու հեռացավ։ Նա իր զորքի մի մասը թողեց իր և նրանց երկրի միջև գտնվող լեռներում ու հրամայեց նրանց պարենի [ճանապարհը] կտրել։ Այսպես շարունակվեց, մինչև որ քաղաքի ժողովուրդը նեղության մեջ ընկավ և երբ նրանց վիճակը ծանրացավ, պահանջեցին ֆրանկներից, որ դուրս գան և ետ մղեն մահմեդականներին, [փրկելով] նրանց ճնշումից։ Ֆրանկները կարծեցին, որ հոռոմները ուզում են այս ձևով իրենց դուրս բերել քաղաքից։ Անհամաձայնությունն սկսեց նրանց մեջ և ընդհարվեցին։ Հոռոմները լուր ուղարկեցին մահմեդականներին, խնդրելով, որ վերցնեն քաղաքը։ Սրանք հասան ու նրանց հետ միանալով սկսեցին կռվել ֆրանկների դեմ։ Ֆրանկները փախուստի դիմեցին, մտան միջնաբերդը ու պատսպարվեցին։

Մահմեդականները լուր ուղարկեցին, կանչելով Ղիյաս ալ-Դինին, որը գտնվում էր Իկոնիա քաղաքում։ Սա մի զորամասի հետ անճապարանոք առաջ շարժվեց, հասավ Շաաբան ամսի երկուսին, և համաձայնություն կայացավ նրա ու հոռոմների միջև։ Ամսի երեքին նա ստանձնեց քաղա-

քը, պաշարեց միջնաբերդը, ուր ֆրանկներն էին, այն էլ գրավեց և բոլոր ֆրանկներին կոտորեց։

էջ 288

## ԽԼԱԹԻ ՏԵՐ ԲԱՔՏԱՄՈՒՐԻ ՈՐԴՈՒ ՀԵՌԱՑՄԱՆ, ԲԱԼԲԱՆԻ ՏԵՐ ԴԱՌՆԱԼՈՒ, ՄԱՐԴԻՆԻ ՏԻՐՈՋ ԽԼԱԹ ԳՆԱԼՈՒ ԵՎ ՎԵՐԱԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում Խլաթի (Խիլաթ) զորքը ձերբակալեց իր տիրոջը՝ Բաքտամուրի որդուն, և տեր դարձավ Բալբանը (Բալաբան)՝ Շահ Արման իբն Սուքմանի մամլուքը։ Խլաթի ժողովուրդը գրեց Նասիր ալ-Դին Ուրտուկ իբն Իլղազի իբն Ալբի Տիմուրտաշ իբն Իլղազի իբն Ուրտուկին՝ հրավիրելով իրենց մոտ։

Բանն այն է, որ Բաքտամուրի որդին դեռ տղա էր ու անփորձ։ Նա ձերբակալել էր Շահ Արմանի մամլուքներից ամիր Շուջա ալ-Դին Կուտլուղին, որը նրա աթաբեկն էր ու երկրի կառավարիչը և լավ վերաբերմունք ուներ զինվորների ու հասարակ ժողովրդի նկատմամբ։ Երբ սրան սպանեց, զինվորները և հասարակ ժողովուրդը դժգոհեցին, իսկ ինքը (Բաքտամուրի որդին) զբաղված էր հաճույքներով, խաղամոլությամբ, հարբեցողությամբ։ Եվ ահա Խլաթի ժողովրդից ու զինվորներից մի խումբ գրեց Մարդինի տիրոջը՝ Նասիր ալ-Դինին, հրավիրելով իրենց մոտ։ Նրանք գրեցին հենց նրան և ոչ այլ թագավորների, որովհետև նրա հայրը՝ Կութբ ալ-Դին Իլղազին, Շահ Արման Իբն Սուքմանի քեռորդին էր։ Շահ Արմանը իր կենդանության ժամանակ մարդկանցից հպատակության երդում էր վերցրել նրա համար, քանզի ինքը տղա չուներ։ Արդ, երբ այս դեպքը պատահեց, հիշեցին այդ երդումը և ասացին՝ հրավիրենք և տեր դարձնենք, քանի որ Շահ Արմանի ընտանիքից է։ Գրեցին ու հրավիրեցին նրան։

Սակայն Շահ Արմանի մամլուքներից մեկը, որի անունն էր Բալբան, Բաքտամուրի տղայի նկատմամբ թշնամական դիրք բռնեց և, ըմբոստանալով նրա դեմ, Խլաթից հեռացավ Մանազկերտի երկիրը, տիրացավ նրան, զորք հավաքեց մեծ բազմությամբ ու գնալով Խլաթի դեմ, ուզեց գրավել այն։

Սա զուգադիպեց Մարդինի տիրոջ գալստյանը, իսկ վերջինս կարծում էր, որ ոչ ոք չի խանգարի իրեն, և քաղաքը կհանձնեն։ Սա կանգնեց Խլաթին մոտիկ վայրում մի քանի օր, և Բալբանը նրան[լուր] ուղարկեց, ասելով՝ Խլաթի ժողովուրդը ինձ մեղադրում է, թե ես քեզ համակրում եմ, իսկ նրանք արաբներից խորշում են։ Լավ կլինի, որ դու մեկ օրվա ճանա-

պարհ եմ գնաս ու սպասես, եթե քաղաքն ստանձնեմ, քեզ կհանձնեմ, քանզի ես չեմ կարող նրան տիրել։ Մարդինի տերը այդպես էլ արեց և երբ Խլաթից հեռացավ, [Բալբանը] լուր ուղարկեց, ասելով՝ վերադարձիր քո երկիրը, ապա թե ոչ կհարձակվեմ քեզ վրա ու կկոտորեմ քեզ և քո ընկերակիցներին։ Սա քիչ զորք ուներ, ուստի վերադարձավ Մարդին։

Խառանի ու Ջազիրայի տեր ալ-Մալիք ալ-Աշրաֆ Մուսա իբն ալ-Ադիլ Աբու Բաքր իբն Այյուբը, երբ լսեց, որ Մարդինի տերը ուզում է գնալ Խլաթ, լուր էր ուղարկել նրան, ասելով՝ եթե գնաս Խլաթ, ես էլ քո երկրի վրա կհարձակվեմ, քանզի վախենում էր, որ սա Խլաթին տիրանալով իրենց վրա գերակշռություն կունենա։

Ուստի, երբ սա Խլաթ գնաց, Աշրաֆը զորք հավաքեց ու դիմեց Մարդին նահանգը, խլեց նրա [հարկերի] հասույթը ու կանգ առավ Դունայսարում, մինչև որ փողերը հավաքի։ Այս բանը վերջացնելուց հետո նա վերադարձավ Խառան։ Սակայն Մարդինի տիրոջ նման ինքն էլ, ինչպես ասում են, դուրս եկավ երկու կոտոշ գտնելու, սակայն վերադարձավ առանց ականջների։

Բալբանը զորք հավաքեց ու պաշարեց Խլաթը, նեղեց բնակիչներին։ Այնտեղ էր Բաքտամուրի տղան, որը քաղաքում եղած զինվորներին ու հասարակ ժողովրդին հավաքելով դուրս եկավ նրա դեմ։ Նրանք ընդհարվեցին և Բալբանը իր հետ եղածներով միասին փախուստի մատնվեց ու վերադարձավ այն վայրերը, որոնք արդեն իր ձեռքում էին, այսինքն՝ Մանազկերտ, Արճեշ և այլ բերդեր։ Նա շատ զորք հավաքեց ու կրկին պաշարեց Խլաթը, նեղեց բնակիչներին և ստիպեց նրանց լքել Բաքտամուրի որդուն, [տարիքով] փոքր լինելու, կառավարման մեջ անփորձության և հաճույքներով ու խաղամոլությամբ զբաղվելու համար։ Սրանք բանտարկեցին նրան ամրոցում և լուր ուղարկեցին Բալբանին, երդվել տալով իրենց պայմանները ընդունել և համաձայնեցին քաղաքն ու Բաքտամուրի որդուն [հանձնել նրան]։ Սա տիրացավ Խլաթի բոլոր գավառներին, բանտարկեց Բաքտամուրի որդուն այնտեղի մի բերդում, և ամրապնդվեց նրա իշխանությունը։ Օրհնյալ լինի նա, որը երբ որևէ բանի հաջողությունը կամենում է, նախադրյալներ է պատրաստում։ Դեռ երեկ Շամս ալ-Դին Մուհամմադ իբն Բահլավանը և Սալահ ալ-Դին Յուսուֆը հարձակվել էին, սակայն ոչ մեկը չկարողացավ գրավել, իսկ այժմ այս թույլ մամլուքը, որը չուներ ո՛չ զորք, ո՛չ տիրույթներ, ո՛չ ունեցվածք, հեշտությամբ տիրեց։

Ապա Նփրկերտի տեր Նաջմ ալ-Դին Այյուբ իբն ալ-Ադիլը շարժվեց դեպի Խլաթի նահանգը, որի բազմաթիվ բերդեր գրավել էր, ինչպես Մուսայի (Մովսես) բերդն ու քաղաքը։ Երբ Խլաթին մոտեցավ, Բալբանը ան-

զոր ձևացավ նրան դիմադրելու, իսկ սա ոգևորվեց և առաջ խաղաց։ Բալբանը նրան ճամփան կտրեց, կռվի բռնվեց ու պարտության մատնեց։ Սրա ռազմիկներից քչերը փրկվեցին, այն էլ վիրավոր վիճակում, իսկ ինքը Նփրկերտ (Մայյաֆարիկին) վերադարձավ։

էջ 289

## ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ԿԱՐՍ ՔԱՂԱՔԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՈՒ ՆՐԱՆՑ ԹԱԳՈՒՀՈՒ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում վրացիք (քուրջ) գրավեցին Կարս բերդը, որը Խլաթի գավառներում էր։ Նրանք պաշարեցին երկար ժամանակ, նեղեցին բնակիչներին և այդ գավառի մի քանի տարվա հարկը վերցրեցին, իսկ Խլաթի բնակիչները չէին օգնում նրանց և չէին ձգտում թեթևացնել նրանց վիճակը։ Տեղի կառավարիչը սուրհանդակներ էր ուղարկում օգնություն ու պաշտպանություն խնդրելու վրացիների (քուրջ) դեմ, սակայն ոչ մի պատասխան չէր ստանում։ Երբ խնդիրը երկարեց ու տեսավ, որ ոչ ոք չէր օգնում, հաշտություն կնքեց վրաց (քուրջ) հետ՝ [պարտավորվելով] ամրոցը հանձնել և (փոխարենը) նրանցից ստանալ շատ ունեցվածք և տիրույթներ (իկթա)։ Այսպիսով, [Կարսը] դարձավ բազմաստվածյանների[323] (հեթանոսական) երկիր այն բանից հետո, երբ միաստվածյանների երկիր էր։

Մենք ալլահինն ենք և նրանն ենք դառնալու։ Թող ալլահը հաղթություն պարգևի իսլամին ու նրա ժողովրդին, քանզի մեր ժամանակի թագավորները տարվել են իրենց զվարճություններով, խաղամոլությամբ, անիրավությամբ [և մոռացել] սահմանային ամրությունները պահպանել, երկիրը պաշտպանել։ Սակայն բարձրյալն ալլահը տեսնելով իսլամի պաշտպանների սակավությունը, ինքն ստանձնեց [նրա պաշտպանությունը], նա մահ բերեց վրաց (քուրջ) թագուհուն, որից հետո նրանց միջև տարակարծություններ սկսվեցին և այդպիսով ալլահը վերջ տվեց նրանց չարագործություններին մինչև տարվա վերջը։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(28 հուլիս 1207—15 հուլիս 1208)

էջ 296

## ՆԱՋՄ ԱԼ-ԴԻՆ ԻԲՆ ԱԼ-ՄԱԼԻՔ ԱԼ-ԱԴԻԼԻ՝ ԽԼԱԹԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում ալ-Մալիք ալ-Աուհադ[324] Նաջմ ալ-Դին Այյուբ իբն ալ-Մալիք ալ-Ադիլ Աբու Բաքր իբն Այյուբը գրավեց Խլաթ քաղաքը։

Բանն այն է, որ նա տիրում էր Նփրկերտ քաղաքին՝ հոր կողմից [նշանակված]։ Սակայն, երբ լսեց Բալբանի՝ Խլաթը գրավելու մասին, ինչպես հիշեցինք, ինքը գնաց Մուշ քաղաքը պաշարեց ու գրավեց այն, ինչպես նաև հարևան այլ քաղաքներ։ Բալբանի դիրքը չէր ամրացել, որ կարողանար նրան դիմադրել։ Այն (Մուշը) գրավելուց հետո, [Նաջմ ալ-Դինը] ցանկացավ Խլաթը ևս գրավել և առաջ շարժվեց։ Բալբանը պարտության էր մատնել նրան, ինչպես արդեն հիշել ենք։ Սա վերադարձավ իր երկիրը, զորք հավաքեց, հայրը նույնպես նրան զորք ուղարկեց և [այսքանով] նա հարձակվեց Խլաթի վրա։ Նորից Բալբանը ելավ նրա դեմ, ընդհարվեցին ու կռվեցին, Բալբանը պարտվեց, իսկ Նաջմ ալ-Դինը գրավեց այդ երկիրը և շատ այլ վայրեր։ Բալբանը մտավ Խլաթ և պատրսպարվեց ու դեսպան ուղարկեց Արզան ալ-Ռումի տեր Մուղիս ալ-Դին Թուղրիլ Շահ իբն Կիլիջ Արսլանին՝ օգնության կանչելով Նաջմ ալ-Դինի դեմ։ Սա եկավ անձամբ իր զորքով և նրանք միասին պարտության մատնեցին Նաջմ ալ-Դինին, պաշարեցին Մուշը և արդեն պետք է գրավեին, երբ իբն Կիլիջ Արսլանը դավաճանեց Խլաթի տիրոջը և սպանեց նրան՝ ցանկանալով նրա երկիրը։ Սպանելուց հետո նա գնաց Խլաթ, սակայն բնակիչները դիմադրեցին նրան և նա գնաց Մանազկերտ, որի բնակիչները նույնպես ետ մղեցին նրան ու հրաժարվեցին նրան [հնազանդվելուց]։ Երբ տեսավ, որ երկրի ոչ մի մասը չկարողացավ [գրավել], իր երկիրը վերադարձավ։

Այդ ժամանակ Խլաթի բնակիչները Նաջմ ալ-Դինին լուր ուղարկեցին հրավիրելով, որպեսզի իշխանությունը նրան հանձնեն։ Նա եկավ ու տիրեց Խլաթին ու նրա գավառներին, բացի մի փոքր մասից։ Դրացի թագավորները չէին ուզում նրա իշխանության հզորացումը, քանզի վախենում էին նրա հորից։ Նրանից վախենում էին նաև վրացիք (քուրջ) և ատում նրան։ Նրանք անընդհատ հարձակումներ էին գործում Խլաթի գավառների ու նրա երկրի վրա։ Նաջմ ալ-Դինը մնում էր Խլաթում՝ չկարողանալով հեռանալ այնտեղից, իսկ մահմեդականները այդ բանից շատ վնաս կրեցին։ Խլաթի զորքերից մի մաս հեռացավ ու գրավեց Վան ամրոցը, որը մեծագույն և ամենից անառիկ բերդերից էր։ Նրանք (անջատված զորքերը) ըմբոստացան Նաջմ ալ-Դինի դեմ. Նրանց շուրջը զորք հավաքվեց և նրանք գրավեցին Արճեշ (Արջիշ) քաղաքը։

Նաջմ ալ-Դինը լուր ուղարկեց իր հորը՝ ալ-Մալիք ալ-Ադիլին, տեղեկացնելով վիճակը և օգնություն ու զորք խնդրելով։ Սա զորքի հետ ուղարկեց նաև նրա եղբորը՝ ալ-Մալիք ալ-Աշրաֆ իբն ալ-Ադիլին։ Այսպիսով, երկուսը միասին մեծ զորք հավաքեցին ու պաշարեցին Վան ամրոցը, ուր խլաթեցիք (ալ-խիլաթիյյա) էին [ամրացել] և համառ կռիվներից հետո սրանք այլևս չկարողացան դիմադրել, հաշտությամբ հանձ-

*նեցին ամրոցը և այնտեղից դուրս եկան։ Նաջմ ալ-Դինը գրավեց այն, և ամրապնդվեց նրա իշխանությունը Խլաթում ու նրա գավառներում, իսկ եղբայրը՝ ալ-Աշրաֆը վերադարձավ իր երկիրը՝ Խառան (Հառան) և Եդեսիա (Ռուհա)։*

*էջ 297*

## ԽԼԱԹՈՒՄ ԽՌՈՎՈՒԹՅԱՆ ԵՎ ԲՆԱԿԻՉՆԵՐԻՑ ՇԱՏԵՐԻ ՍՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Երբ ալ-Մալիք ալ-Աուհադ Նաջմ ալ-Դին ալ-Ադիլը գրավեց Խլաթն ու նրա գավառները, այնտեղից գնաց Մանազկերտ, որպեսզի այնտեղ ևս կարգ հաստատի և անի ինչ որ անհրաժեշտ էր։ Երբ Խլաթից դուրս եկավ, բնակիչներն ըմբոստացան տեղի զորքի դեմ և դուրս քշեցին։ Նրանք ապստամբեցին, պաշարեցին ամրոցը, որտեղ ալ-Աուհադի մերձավորներն էին և Շահ Արմանի նշանաբանով կոչ արեցին, թեպետև նա վաղուց մեռած էր։ Սրանով ուզում էին ասել, թե պետք է իշխանությունը վերադարձնել [նախկին] տերերին ու նրանց մամլուքներին։*

*Լուրը հասավ ալ-Մալիք ալ-Աուհադին, որը վերադարձավ նրանց մոտ։ Մինչ այդ նա զորք էր ստացել Ջազիրայից, որի շնորհիվ ուժեղացավ ու պաշարեց Խլաթը։ Բնակիչների մեջ տարաձայնություն կար՝ մի մասը հակվեց նրա կողմը՝ ի հեճուկս ուրիշների։ Նա տիրեց [Խլաթին] և բնակիչներից մեծ բազմություն կոտորեց, մեծամեծների մի խումբ գերեց ու տարավ Նփրկերտ, ընդ որում ամեն օր մարդ էր ուղարկում ու մի մասին սպանել տալիս և միայն քչերը փրկվեցին։ Այս դեպքից հետո Խլաթի բնակչությունը ստորացած վիճակում էր, իսկ երիտասարդների մեջ տարակարծություն կար։ [Նախապես] նրանց ձեռքում էր իշխանությունը և [այժմ] մարդիկ ազատվեցին նրանց չարագործությունից, քանզի մեկին թագավոր էին նշանակում, մյուսին՝ սպանում. իսկ պետությունը հեղինակություն չուներ, որովհետև ամբողջ իշխանությունը նրանց ձեռքում էր։*

### *ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ*

**(16 հուլիս 1208—5 հուլիս 1209)**

*էջ 299*

## ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ԱՐՃԵՇԸ ԳՐԱՎԵԼՈՒ ԵՎ ՎԵՐԱԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

*Այգ տարում վրացիք (քուրջ) զորքով մտան Խլաթի նահանգը և դիմեցին դեպի Արճեշ քաղաքը, պաշարեցին ու սրով գրավե-*

ցին. կողոպտեցին ամբողջ ունեցվածքը, ապրանքները և այլ բաներ։ Նրանք ժողովրդին գերեվարեցին, [քաղաքը] հրկիզեցին և ամբողջովին կործանեցին։ Բնակիչներից ոչ ոք չմնաց, այնպես որ դարձավ ամայի «Կարծես դեռ երեկ հարուստ չէր եղել» (Ղուրան, Բ, 261, Ժ, 25)։ Հայաստանի տեր[325] Նաջմ ալ-Դին Այյուբը Խլաթ քաղաքում էր՝ բազմամարդ զորքով, սակայն որոշ պատճառներով չգնաց վրացիների (քուրջ) դեմ, ինչպես, օրինակ, [վրացիների] շատությունը և իր վախը Խլաթի ժողովրդից, որոնց նա շատ կոտորել ու վնաս էր պատճառել։ Նա վախենում էր, որ եթե դուրս գա [քաղաքից], այլևս չի կարող վերադառնալ։ Եվ քանի որ դուրս չեկավ անհավատների դեմ կռվի, սրանց ոչ ոք չխանգարեց և ապահով վերադարձան իրենց երկիրը։

Այս բոլորը թեև շատ ծանր էր իսլամի ու նրա ժողովրդի համար, այսուհանդերձ ոչինչ բան է համեմատելով այն պատահածի հետ, որ հիշելու ենք վեց հարյուր տասնչորս (1217—1218) և տասնյոթ (1220—1221) թվականների միջև[326]։

### ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ

(10 ապրիլ 1217—29 մարտ 1218)

էջ 317

### ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ԴԱՄԻԵԹԸ ՖՐԱՆԿՆԵՐԻ ՁԵՌՔԻՑ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երբ ֆրանկները տիրեցին Դումիեթին (Դիմիաթ) ու հաստատվեցին, իրենց ձիավոր ջոկատները սփռեցին բոլոր շրջակա գավառները։

Ալ-Մալիք ալ-Քամիլը անընդհատ նամակներ էր ուղարկում իր երկու եղբայրներին՝ Դամասկոսի տեր Մուազզամին և Ջազիրայի ու Հայաստանի տեր ալ-Մալիք ալ-Աշրաֆին և այլոց, խնդրելով օգնության հասնել ու համոզելով անձամբ ներկայանալ, իսկ եթե հնարավոր չէ, միայն զորք ուղարկել։

### ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

(30 մարտ 1218—18 մարտ 1219)

էջ 324—325

### ՀԱՔՔԱՐԻՅՅԱՅԻ ԵՎ ԱՆՁԵՎԱՑԻՔԻ ԲԵՐԴԵՐԻ ՎԵՐԱԴԱՐՁՎԵԼԸ ԲԱԴՐ ԱԼ-ԴԻՆԻՆ

Երբ Զանգին[327] տիրեց Հաքքարիյյայի ու Անձևացիքի (Զավազան) բերդերին, նրա բնակիչներին չվերաբերվեց այնպես, ինչպես նրանք ենթադրում էին, բարեգործություն և ողորմածություն չցուցաբերեց, այլ, ընդ-

հակառակը, նեղեց նրանց։ Նրանք [բնակիչները] լսել էին Բադր ալ-Դինի ու իր զորքի՝ հպատակների նկատմամբ ունեցած վերաբերմունքի մասին՝ բարեգործությունը, գրամ չխնայելը, և ցանկանում էին վերադարձնել նրան [երկիրը], սակայն վախը խանգարում էր նրանց՝ նկատի ունենալով անցյալի դեպքերը։ Սակայն այժմ զայրանալով նրա (Զանգիի) գործերից, վեց հարյուր տասնյոթ թվին, Մուհառամ ամսին լուր ուղարկեցին Բադր ալ-Դինին, առաջարկելով [բերդերը] հանձնել նրան։ Նրանից խնդրեցին երդում ու ներում իրենց համար, հիշելով, որ որոշ տիրույթներ իրենց պետք է լինեին։ Նա ընդունեց և լուր ուղարկեց ալ-Մալիք ալ-Աշրաֆին, թույլտվություն խնդրելով, սակայն սա թույլ չտվեց։

Զանգին վերադարձավ Աշրաֆի մոտից, մեծ զորք հավաքեց, պաշարեց Իմադիյյա բերդը, սակայն արդյունքի չհասավ։ Սրանք (բնակիչները) կրկին գրեցին Բադր ալ-Դինին [բերդերը] հանձնելու մասին։ Սա [նորից] գրեց ալ-Մալիք ալ-Աշրաֆին այդ մասին, նվիրեց ևս մի բերդ, Մծբինը (Նասիբին) և մի գավառ երկու գետերի միջև, որպեսզի թույլ տա, և նա թույլ տվեց։ Նա ուղարկեց իր տեղակալներին, որոնք վերցրեցին բերդերը և լավ վերաբերվեցին ժողովրդին։ Զանգին հեռացավ, իսկ Բադր ալ-Դինը իր խոստումը հարգեց։

Երբ մյուս բերդերի զինվորները այս բանը լսեցին, թե ինչ լավ վերաբերմունքի էին [այդ բերդերը] արժանացել, ցանկացան իրենք ևս հանձնվել։ Եկան տեղակալները, և բնակիչները համաձայնվեցին հնազանդվել ու հպատակվել։

Զարմանալին այն է, որ երբ զորքեր էին եկել Ասորիքից, Ջազիրայի Դիար Բաքրից, Խլաթից և այլ վայրերից բերդերը գրավելու համար, չըկարողացան այն վերցնել, իսկ երբ ցրվեցին, իրենք բնակիչները եկան ու խնդրեցին, որ վերցվեն [բերդերը]։ Այսպիսով, ամեն ինչ վերջացավ հաշտությամբ, առանց բռնության։

էջ 326—327

## ԱԼ-ՄԱԼԻՔ ԱԼ-ԱԴԻԼԻ ՄԱՀՎԱՆ ԵՎ ՈՐԴԻՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

. . . . . . . . . . . . . . . .

Նրա տարիքը յոթանասունհինգ էր ու մի քանի ամիս, քանզի ծնվել էր հինգ հարյուր քառասուն թվականի Մուհառամ ամսին։

Նա Դամասկոսին (Դիմաշկ) տիրացավ հինգ հարյուր իննսուներկու թվականի Շաաբան ամսին՝ [վերցնելով] իր եղբորորդի Աֆդալի ձեռքից, իսկ Եգիպտոսին (Միսր) տիրացավ հինգ հարյուր իննսունվեց թվականի Ռաբի Բ ամսին՝ դարձյալ նրա ձեռքից։

*Աղիլն իր կենդանության օրոք երկիրը բաժանել էր զավակների միջև, ընդ որում Եգիպտոսը տվել էր ալ-Մալիք ալ-Քամիլ Մուհամմադին, Դամասկոսը (Դիմաշկ), Սուրբ քաղաքը (ալ-Կուդս, Երուսաղեմ), Թաբարիան Հորդանանը (ալ-Ուրդուն), ալ-Քարաքը և այլ հարևան բերդեր՝ իր որդուն՝ Մուազզամ Իսային, Ջազիրայի մի մասը, Նփրկերտը և Խլաթը իր գավառներով՝ իր որդուն՝ ալ-Մալիք ալ-Աշրաֆ Մուսային, Եգեսիան՝ իր որդուն՝ Շիհաբ ալ-Դին Ղազիին, իսկ Ջաբար բերդը՝ իր որդուն՝ ալ-Հաֆիզ Արսլան Շահին։*

*Երբ մեռավ, ամեն մեկը իր հոր տված թագավորության մեջ հաստատվեց և շատ համբերաշխ էին։ Նրանց միջև վեճ չկար, ինչպես լինում է թագավորների որդիների միջև՝ իրենց հայրերից հետո, այլ մեկ մարդու նման էին, մեկը մյուսին վստահում էր, այնպես որ մենակ, առանց զորքի մեկը մյուսի մոտ էր գնում անվախորեն, և, բնականաբար, հզորացավ նրանց թագավորությունը, և նրանց գործերը ավելի լավ ընթացան, քան իրենց հոր [ժամանակ]։*

### *ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ*

(19 մարտ 1219—7 մարտ 1220)

*էջ 327—328*

### ՔԱՅ ՔԱՈՒՍԻ ՄԱՀՎԱՆ ԵՎ ԵՂԲՈՐ՝ ՔԱՅ ԿՈՒԲԱԴԻ, ԹԱԳԱՎՈՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում մեռավ Իկոնիայի, Ակսարայի, Մալաթիայի և նրանց միջև ընկած Ռումի երկրների տեր ալ-Մալիք ալ-Ղալիբ (նվաճող թագավոր) Իզզ ալ-Դին Քայ Քաուս իբն Քայ Խուսրաու իբն Կիլիջ Արսլանը։*

*Նա իր զորքերը հավաքել էր ու գնացել Մալաթիա՝ ալ-Մալիք ալ-Աշրաֆի երկիրը, արշավելու նպատակով, ըստ այն պայմանավորվածության, որ կար նրա և Ամիդի տեր Նասիր ալ-Դինի ու Արբելայի (Իրբիլ) տեր Մուզաֆֆար ալ-Դինի միջև։ Վերջիններս իրենց երկրում նրան էին խութբա տվել և նրա անունը դրոշմել դրամի վրա։ Նրանք որոշել էին հարձակվել ալ-Մալիք ալ-Աշրաֆի և Մոսուլի [տեր] Բադր ալ-Դինի վրա։*

*Քայ Քաուսը շարժվեց դեպի Մալաթիա, որ խանգարի ալ-Մալիք ալ-Աշրաֆին գնալ Մոսուլ, նրա տիրոջը՝ Բադր ալ-Դինին, օգնելու, այն հույսով, որ գուցե Մուզաֆֆար ալ-Դինը Մոսուլում հաջողության հասնի։ Սակայն նա թոքախտ ուներ և երբ հիվանդությունը սաստկացավ, վերադարձավ ու մեռավ։*

*Նրանից հետո թագավորեց եղբայրը՝ Քայ Կուբադը, որին բանտարկել*

էր Քայ Քաուսը, երբ երկրի տերն էր դարձել։ Որոշ մերձավորներ հանձնարարել էին սպանել նրան, սակայն նա այդ բանը չարեց։ Երբ նա մեռավ, որդիները, մանկահասակ լինելու պատճառով, հարմար չէին թագավորության և ահա զինվորները [բանտից] դուրս բերեցին Քայ Կուբադին ու թագավորեցրին։

Ասվում է նաև, որ երբ հիվանդությունը սաստկացավ, Քայ Քաուսը բանտից բերել տվեց նր.ան [եղբորը] և թագավորությունը նրան կտակեց ու մարդկանց ստիպեց [հավատարմության] երդում տալ։

Երբ սա թագավորեց, նրա դեմ դուրս եկավ հորեղբայրը՝ Կարնո քաղաքի (Արզան ալ-Ռում) տերը։ Բացի դրանից, [Քայ Կուբադը] վախենալով նաև իրեն հարևան հոռոմներից, լուր ուղարկեց ալ-Մալիք ալ-Աշրաֆին, հաշտություն կնքեց և նրանք բարեկամության, իրար օգնելու պայման դրեցին և խնամիացան։ Այսպիսով, Աշրաֆը ազատվեց այդ կողմից եկող չարիքից և զբաղվեց իր ձեռքում եղած [երկրները] բարեկարգելով։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

### (8 մարտ 1220—24 փետրվար 1221)

էջ 329—330

### ԹԱԹԱՐՆԵՐԻ[329] ԻՍԼԱՄԻ ԵՐԿԻՐԸ ՄՏՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երկար տարիներ չէի կամենում հիշել այս դեպքերը, սարսափ ու զըզվանք զգալով։ Երկար տատանվում էի, և ո՞ւմ համար հեշտ է գրել իսլամի ու մահմեդականների ողբը և ո՞վ կարող է հանգիստ գրել այդ մասին։ Ո՜հ, երանի թե մայրս ինձ չծներ և մեռած լինեի նախքան այս (դեպքերը) ու մնայի բոլորից մոռացված։

Սակայն որոշ ընկերներ ինձ համոզեցին գրել այդ մասին, իսկ ես տատանվում էի, սակայն տեսա, որ այդ գործից հրաժարվելն անօգուտ է։

Բանն այն է, որ խոսքը մեծ դեպքի և ահռելի դժբախտության մասին է, որի նմանը օրերն ու գիշերները չեն ծնել։ Դա համավ բոլոր մարդկանց և մասնավորապես մահմեդականներին։ Եթե որևէ մեկը ասեր, թե այն օրվանից, որ ալլահը ստեղծել է Ադամին, մինչև օրս աշխարհը նման դըժբախտության չի հանդիպել, ճշմարիտ կլիներ, քանզի տարեգրությունները չունեն ոչ մի նման կամ մոտավոր բան։

[Պատմական] գրույցների մեջ որպես մեծ իրադարձություն հիշատակվում է, թե ինչ էր արել Նաբուգոդոնոսորը (Բուխտունուսսուր) Իսրայելի որդիներին։ Նա կոտորել էր և ավերել Սուրբ քաղաքը (ալ-Բայտ ալ-Մուկադդաս, Երուսաղեմ)։ Սակայն ինչ էր Սուրբ քաղաքը, համեմա-

տելով այն բանի հետ, որ այդ անիծյալները երկրներ քանդեցին, որոնց ամեն մի քաղաքը Սուրբ քաղաքից մի քանի անգամ մեծ է, իսկ ինչ են Իսրայիլի որդիք այն սպանվածների համեմատությամբ, քանզի մի քաղաքում սպանվածների թիվը ավելի շատ էր, քան Իսրայիլի որդիք։ Գուցե մարդկությունը մինչև դարի վախճանը և աշխարհի վերջը այլևս չի տեսնի նման իրադարձություն, բայց եթե միայն Գոգի (Յաջուջ) ու Մագոգի (Մաջուջ) ժամանակ։ Նույնիսկ Դաջջալը (Նեռ, հակաքրիստոս) խնայում է իր հետևորդներին և ոչնչացնում միայն իրեն չլսողներին։ Իսկ սրանք (թաթարները) ոչ ոքի չէին խնայում, կոտորում էին կանանց, տղամարդկանց ու երեխաներին, հղի կանանց որովայնը ճեղքում ու սպանում սաղմը։ Ճշմարիտ է, որ մենք ալլահին ենք պատկանում և նրան ենք վերադառնալու։

Այս ի՞նչ աղետ էր, որի կայծերը թռան ու տարածվեց չարիքն ամենուրեք և քամուց քշված ամպի նման լցրեց երկիրը։ Չինաստանի (ալ-Սին) կողմից դուրս եկած մարդիկ հասնում են մինչև Թուրքիստան, ինչպես Քաշղար և Բալասաղուն, ապա այնտեղից դեպի Մավարաաննահր, ինչպես Սամարկանդ, Բուխարա և այլ վայրեր, տիրում են և նրա ժողովրդին անում այն, ինչ որ հիշելու ենք։ Ապա նրանց մի մասը անցնում է Խորասան, լրիվ նվաճում, կործանում, կոտորում ու կողոպտում։ Անցնում են Ռեյ, Համադան և ալ-Ջաբալ և այնտեղ եղած երկրները մինչև Իրաքի սահմանը, ապա դիմում են Ատրպատական ու Աղվանք (Առանիյա), ավերում ու մեկ տարուց պակաս շրջանում ժողովրդի մեծ մասին կոտորում են, այնպես որ հազվադեպ փրկվում է միայն փախստականը։ Սա չլսված բան է։

Ապա, երբ վերջացրին գործը Ատրպատականում և Աղվանքում, գնացին Դարբանդ-Շիրուան, տիրեցին նրա քաղաքներին, բացի այն բերդից, ուր նրանց թագավորն էր։ Այնտեղից գնացին Ալանաց (ալ-Լան) երկիրը և ալ-Լաքզ և այնտեղ եղած տարբեր ցեղերին լրիվ կոտորեցին, կողոպտեցին ու ավերեցին [երկիրը], ապա ուղղվեցին դեպի Ղփչաղների (Կիֆջակ) երկիրը, որոնք թուրքերի մեջ ամենաբազմամարդն են, և ում որ հանդիպեցին, կոտորեցին։ Մնացածները փախան անտառներն ու լեռների գագաթները, թողնելով իրենց երկիրը, իսկ թաթարները նվաճեցին։ Նրանք այս բանն արեցին ամենակարճ ժամանակում, պարզապես արշավի ժամանակ։

Մի ուրիշ խումբ գնաց Ղազնա և նրա շրջաններն ու դրացի երկրները՝ Հնդկաստան (ալ-Հինդ), Սիջիստան, Քիրման և այնտեղ արեցին նույնը և դեռ ավելի վատ։

Սա նմանը չլսված բան է։ Ալեքսանդրը (Իսքանդար), որի համար

պատմիչները ասում են, որ տիրեց ամբողջ աշխարհին, նման արագությամբ չի տիրացել, այլ մոտավորապես տասը տարվա ընթացքում։ Նա ոչ ոքի չի սպանել, այլ մարդկանցից պահանջում էր միայն հպատակություն։ Սրանք (թաթարները) մոտավորապես մեկ տարում տիրեցին աշխարհի մեծագույն մասին, ամենալավ, ամենաքաղաքակիրթ, ամենախիտ բնակեցված և ամենակիրթ ժողովուրդ ունեցող երկրներին։ Իսկ այն երկրներում, որ նրանք չէին նվաճել, ամեն մարդ վախով էր քնում, սպասում ու հետևում, թե երբ կգան։

Նրանք (թաթարները) կարիք չունեն պարենի և օգնության, քանզի նրանց հետ են իրենց հոտերը, կովերը, ձիերը և այլ կենդանիներ։ Միայն նրանց միսն են ուտում, իսկ իրենց հեծած անասունները սմբակներով գետինն են փորում և ուտում բույսերի արմատները ու չգիտեն գարին։ Այս պատճառով, երբ նրանք որևէ տեղ իջևանում են, դրսից որևէ բանի կարիք չեն ունենում։

Ինչ վերաբերում է նրանց կրոնին, ապա նրանք պաշտում են արեգակը իր ծագած ժամանակ։ Նրանք ոչ մի բան արգելված չեն համարում և ուտում են բոլոր կենդանիներին, նույնիսկ շներ, խոզեր և այլն։ Չգիտեն ամուսնությունը, այլ մեկից ավելի տղամարդիկ կարող են մոտենալ մի կնոջ և, երբ երեխան ծնվում է, չգիտի իր հորը։

Այս ամբողջ ընթացքում իսլամը և մահմեդականները այնպիսի պատուհասների հանդիպեցին, որոնց նմանը ոչ ոքի չի պատահել։ Այս թաթարները, ալլահը նրանց այլանդակի, եկան արևելքից ու գործեցին այն, ինչից լսողը սարսափում է և կկարդաս [ով ընթերցող] մանրամասն բացատրված, եթե ալլահը կամենա։

Նման (աղետ) էր, օրինակ, ֆրանկների, ալլահի անեծքը նրանց վրա, դուրս գալը արևմուտքից դեպի Ասորիք (Շամ) և ապա Եգիպտոս (Միսր), Դամիեթի (Դիմիաթ) ամրությունները գրավելը։ Նրանք կամենում էին [ամբողջովին] գրավել Եգիպտոսն ու Ասորիքը, եթե չլիներ ալլահի ողորմածությունը և նրա օժանդակությունը նրանց դեմ։ Այս բոլորը մենք հիշել ենք վեց հարյուր տասնչորս թվականի տակ։

Մի [աղետ] էլ այն էր, որ ովքեր այս երկու խմբերից (թաթարներից ու ֆրանկներից) ազատ են, նրանք էլ իրար դեմ սուր են բարձրացնում և խռովությունը միշտ առկա է։ Այս էլ ենք նշել։

Հայցում ենք ալլահից, որ իսլամին ու մահմեդականներին հաղթանակ շնորհի, քանզի այլևս չկա իսլամի պաշտպան, զորավիգ ու պահապան։

Բանն այն է, որ թաթարները կարողացան այս բոլորն անել, քանզի չկար արգելող և դրա չլինելու պատճառն այն էր, որ Մուհամմադ Խորեզմ

Շահը տիրել էր ամբողջ երկրին, սպանելով մյուս թագավորներին և ինքը մենակ մնացել էր երկրի սուլթան (տիրակալ)։ Երբ նրանցից (թաթարներից) պարտվեց, ոչ ոք չմնաց երկրում, որ կանգնեցնի նրանց ու պաշտպանի երկիրը։

էջ 335—336

## ԹԱԹԱՐՆԵՐԻ՝ ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ՀԱՍՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երբ ձմեռը վրա հասավ, թաթարները Համադանում ու Ջաբալ նահանգում խիստ ցրտի հանդիպեցին և շատ ձյուն տեսան, ուստի գնացին Ատրպատական։ Ճանապարհին գյուղերում ու փոքր քաղաքներում կոտորեցին ու կողոպտեցին, ինչպես նախապես արել էին [այլ վայրերում] և ավերելով ու վառելով հասան Դավրեժ, ուր կար (իշխում էր) Ատրպատականի տեր Ուզբեք իբն ալ-Բահլավանը։ Սա դուրս չեկավ նրանց դեմ, ոչ էլ մտածեց նրանց հետ կռվելու մասին, քանզի, ինչպես միշտ, զբաղված էր անվերջ հարբեցողությամբ, գիշեր ու ցերեկ, առանց սթափվելու։ Սակայն նա մարդ ուղարկեց ու հաշտություն կնքեց՝ դրամ, զգեստներ ու կենդանիներ (գրաստ) խոստանալով և այս բոլորը ուղարկեց։ Նրանք հեռացան այնտեղից դեպի ծովի ափերը, քանի որ այնտեղ ցուրտը պակաս էր և ուզում էին ձմեռել, մանավանդ որ այնտեղ արոտավայրեր շատ կային իրենց կենդանիների համար։

Նրանք հասան Մուղան, ապա շեղվեցին դեպի վրաց (քուրջ) երկիրը։ Նրանց դեմ ելավ վրացիների (քուրջ) մեծ զորք՝ մոտավորապես տասը հազար ռազմիկ։ Կռիվը տեղի ունեցավ և վրացիք փախուստի մատնվեցին, մեծ մասը կոտորվեց։ Վրացիք Ատրպատականի տեր Ուզբեքին լուր ուղարկեցին՝ առաջարկելով նրան միասին դիմադրել թաթարներին։ Նրանք համաձայնեցին հավաքվել ձմեռն անցնելուց հետո։ Լուր ուղարկեցին նաև Խլաթի ու Ջազիրայի տեր ալ-Մալիք ալ-Աշրաֆ իբն ալ-Մալիք ալ-Ադիլին, խնդրելով նրանից համաձայնել իրենց հետ։ Նրանք բոլորը կարծում էին, որ թաթարները ձմեռը կհամբերեն մինչև գարուն։ Սակայն այդպես չեղավ, այլ [թաթարները] շարժվեցին ու գնացին դեպի վրաց երկիրը։ Նրանց միացավ Ուզբեքի մամլուքներից մի թուրք մամլուք, որի անունն էր Ակուշ։ Սա հավաքեց այդ երկրի լեռների ու դաշտերի (անապատների) բնակիչներից թուրքմենների ու քրդերի և այլոց։ Այսպիսով մեծ բազմություն հավաքվեց։ Նա թաթարների հետ թղթակցեց՝ նրանց միանալու նպատակով։ Նրանք ընդառաջեցին այդ բանին ու համակրեցին նրան իրենց ցեղային հարազատության պատճառով։

Նրանք հավաքվեցին ու գնացին վրաց (քուրջ) երկիրը թաթարների վորքի առջից։ Գրավեցին նրանց բերդերից մեկը, ապա քանդեցին երկիրը, կողոպտեցին ժողովրդին, ունեցվածքը կողոպտեցին, մինչև որ հասան Տփղիսի մոտ։ Վրացիք հավաքվեցին ու դուրս եկան լրիվ սպառազինությամբ։ Սկզբում Ակուշը ընդհարվեց նրանց հետ այն մարդկանցով, որոնց հավաքել էր իր շուրջը. Սաստիկ կռիվ եղավ, որի ընթացքում երկու կողմերն էլ դիմացան և Ակուշի մարդկանցից շատերը սպանվեցին։ Վրա հասան թաթարները, երբ վրացիք արդեն հոգնել էին կռվից։ Նրանցից շատերը կոտորվեցին ու չդիմացան թաթարների առջև՝ խայտառակ պարտություն կրելով և ամեն կողմից սրի մատնվելով։ Նրանք անթիվ անհամար կոտորվեցին։ Ճակատամարտը տեղի ունեցավ այդ տարվա Զու-լ-Կադա ամսին (28 դեկտեմբեր—26 հունվար)։ Ապա նրանք կողոպտեցին երկրի այն մասերը, որոնք նախապես չէին կողոպտվել։

Այս թաթարների հետ կատարվեց այնպիսի բան, որի նմանը չի եղել ո՛չ հին և ո՛չ էլ նոր ժամանակներում։ Մի խումբ մարդիկ դուրս եկան Չինաստանի սահմաններից և մի տարի չանցած նրանց մի մասը հասավ Հայաստան աշխարհը այս կողմից, իսկ Համադանի կողմից հարևան դարձան Իրաքին։ Ալլահը վկա, որ մեզանից հետո եկողները շատ ժամանակ անց, երբ կարդան այս դեպքերի մասին գրված տողերը, չեն հավատա, կկասկածեն և իրավունք ունեն [կասկածելու]։ Ով կկասկածի, թող կարդա այն, ինչ գրել ենք մենք և բոլոր նրանք, ովքեր հավաքել են պատմական դեպքերը մեր օրերում, մի ժամանակ, երբ բոլորը՝ գիտուն, թե անգետ, լավ գիտեն այս դեպքերը, քանզի դրանք հանրահայտ են։

Թող ալլահը մահմեդականներին և իսլամին պարգևի այնպիսի մարդիկ, ովքեր կկարողանան պահպանել ու պաշտպանել նրանց։ Նրանք (մահմեդականները) նման հզոր թշնամու հետ գործ ունեցան այնպիսի ժամանակ, երբ ունեին մահմեդական թագավորներ, որոնց հետաքրքրությունը իրենց որովայնից ու հաճույքներից այն կողմ չէր անցնում։ Մարգարեի երևան եկած օրից ի վեր, մինչև այսօր մահմեդականները չեն տեսել այսպիսի ցավ ու նեղություն, ինչպիսին նրանց պատճառեցին այս անհավատ, թշնամի թաթարները։ Նրանք ոտք դրեցին Մավարաաննահր երկիրը, գրավեցին, ավերեցին, իսկ սա մի ընդարձակ երկիր է։ Նրանց մի մասն անցավ գետը (Ամու Դարիա), մտավ Խորասան, գրավեց և այնտեղ արեց նույնը, ապա գրավեց Ռեյը, ալ-Ջաբալ երկիրը, Ատրպատականը։ Վերջապես նրանք հասան վրաց (քուրջ) երկիրը և նվաճեցին այն։

Մյուս թշնամին ֆրանկներն են, որոնք իրենց երկրից գալով հայտնըվեցին Ռումի երկրի ծայրում՝ հյուսիս արևմտյան կողմում։ Նրանք

հասան Եգիպտոս, գրավեցին Դամիեթը (Դամիաթ), ուր և մնացին։ Իսկ մահմեդականները չկարողացան նրանց հեռացնել այնտեղից և դուրս մղել։ Եգիպտոսի մնացած մասերը նույնպես վտանգի տակ են։

Մահմեդականների համար ամենասարսափելին այն է, որ նրանց սուլթան Խորեզմ (Խուրիզմ) Շահ Մուհամմադը անհայտացել էր և ոչ ոք չգիտեր, թե իրոք ինչ էր պատահել նրան։ Մերթ ասվում է, որ մեռել է Համադանում և թաքուն են պահում նրա մահը, մերթ ասվում է, թե Պարսից (Ֆարս) երկիրն է մտել, այնտեղ մահացել և այդ բանը ծածկել են, որպեսզի թաթարները չհետապնդեն։ Մերթ էլ ասվում է, թե գնացել է Թաբարիստան, նավ է նստել և ապա մահացել այնտեղի կղզիներից մեկում։ Մի խոսքով նա մահացել է։ Վերջապես ճշտվեց նրա՝ Թաբարիստանի ծովում մեռած լինելու լուրը։ Սա սարսափելի է այն պատճառով, որ Խորասանը, Իրաքը, Պարսկաստանը (Աջամ) մնացին լքված, անպաշտպան, առանց որևէ տիրակալի, որը պահպաներ նրանց։ Իսկ թշնամին շրջում էր երկրում, խլելով իր ուզածը և չուզածը թողնելով։ Նրանք քաղաք չթողեցին որ չկործանեն, ինչի կողքով անցնում էին, հրկիզում ու կողոպտում էին, իսկ ինչ որ իրենց պետք չէր, վառում էին։ Նրանք կույտերով հավաքում էին մետաքսը, նույնպես և այլ ապրանքներ ու կրակ էին տալիս։

էջ 339

## ԹԱԹԱՐՆԵՐԻ՝ ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ԳԱԼՈՒ, ԱՐԴԱԲԻԼԻՆ ՏԻՐԵԼՈՒ ԵՎ ԱՅԼ ԲԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Երբ թաթարները Համադանի [գրավումը] վերջացրին, գնացին Ատրպատական, հասան Արդաբիլ, տիրեցին, շատ կոտորեցին, մեծ մասը ավերեցին և այնտեղից գնացին Դավրեժ (Տաբրիզ), որը կառավարում էր Շամս ալ-Դին ալ-Թուղրաին։ Նա բնակիչներին համախմբեց, մինչդեռ նրա տեր Ուզբեք իբն Բահլավանը հեռացել էր։ Սա մի անփույթ ամիր էր, որը շարունակում էր գիշեր-ցերեկ գինարբուքով զբաղվել։ Նա մեկ-երկու ամիս չէր երևում մարդկանց և երբ որևէ ահազանգ էր լսում, սարսափահար էր լինում։ Նրան էր պատկանում ամբողջ Ատրպատականն ու Առանը, սակայն նա ալլահի ամենաթույլ արարածն էր, որն ի վիճակի չէր երկիրը պաշտպանելու հարձակվող թշնամուց։

Երբ նա լսեց թաթարների գալուստը Համադանից, թողեց Դավրեժը (Տաբրիզ) ու գնաց Նախճավան (Նակչուան), իսկ իր ընտանիքն ու կանանց ուղարկեց Խոյ (Խուայյ), որպեսզի իրենից հեռու լինեն։

Հիշյալ ալ-Թուղրաին իր ձեռքը վերցրեց քաղաքի կառավարումը, միավորեց բնակիչներին և քաջալերեց, որ չհանձնվեն՝ զգուշացնելով ըն-

կրճվելու ու անփութության հետևանքներից։ Նա իր ջանասիրությամբ ու կարողությամբ ամրացրեց քաղաքը։ Երբ Թաթարները մոտեցան ու լսեցին, թե ինչպես քաղաքի ժողովուրդը միահամուռ կերպով պատրաստ է կռվի և որ ամրացրել են քաղաքը, նորոգել պարիսպներն ու խրամատները, լուր ուղարկեցին, պահանջելով [միայն] դրամ և զգեստներ։ Նրանք իրար միջև համաձայնվեցին, թե ինչ քանակությամբ պետք է տային թե՛ մեկից, թե՛ մյուսից, [բնակիչները] ուղարկեցին և սրանք վերցնելով գնացին Սարաու քաղաքը, կողոպտեցին, բոլորին կոտորեցին և ապա գնացին Բայլական, որն Առանում է։ Իրենց անցած բոլոր քաղաքներն ու գյուղերը կողոպտեցին, ավերեցին, և բնակիչներից ում որ բռնեցին, սպանեցին։

Երբ Բայլական էին հասել ու պաշարել, բնակիչները խնդրեցին, որ իրենց մոտ մի դեսպան ուղարկվի, որպեսզի նրա հետ խաղաղության պայմանները որոշեին։ Սրանք (Թաթարները) իրենց մեծամեծներից ու առաջնորդներից մեկին դեսպան ուղարկեցին, սակայն բնակիչները սպանեցին նրան։ Թաթարները հարձակվեցին, կռվեցին, ապա սրի ուժով գրավեցին քաղաքը [վեց հարյուր] տասնութ թվականի Ռամադան ամսին (30 հոկտ.—28 նոյ.) ու սրի քաշեցին, կենդանի չթողնելով ո՛չ փոքրին, ո՛չ մեծին, ո՛չ էլ կանանց, այն աստիճանի, որ հղի կանանց որովայններն էին պատռում և սպանում սաղմերը։ Նախ բռնաբարում էին կանանց, ապա սպանում։

Պատահում էր, որ նրանցից որևէ մեկը ճանապարհին գնալիս հանդիպում էր մի խումբ մարդկանց, բոլորին մեկ-մեկ սպանում էր, սակայն ոչ ոք նրա վրա ձեռք չէր բարձրացնում։

Նրա [Բայլականի] և շրջակայքի կողոպուտն ու ավերումը վերջացնելուց հետո, նրանք գնացին Գանձակ (Քանջա) քաղաքը, որը Առան երկրի մայր [քաղաքն] է, սակայն իմանալով նրա բնակիչների բազմամարդության և վրացիների (քուրջ) դեմ հաճախակի կռիվների ընթացքում ձեռք բերած քաջության ու քաղաքի անառիկության մասին, չհարձակվեցին, այլ լուր ուղարկեցին բնակիչներին՝ պահանջելով դրամ ու զգեստներ։ Սրանք ուղարկեցին ինչ որ պահանջվում էր, և նրանք (Թաթարները) հեռացան։

էջ 339

## ԹԱԹԱՐՆԵՐԻ՝ ՎՐԱՑ ԵՐԿԻՐԸ ՀԱՍՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երբ Թաթարները իրենց գործը վերջացրին մահմեդական երկրներում՝ Ատրպատականում և Առանում, մի մասը [սրով] նվաճելով, իսկ մի մասը հաշտությամբ [գրավելով], շարժվեցին դեպի վրաց (քուրջ) երկիրը [329], որը նույնպես այդ երկրամասում է։

Վրացիք (քուրջ) նրանց դեմ պատրաստվել էին և մեծ զորք էին հավաքել իրենց երկրի սահմանային կողմերում, որպեսզի թաթարներին արգելեն ներս մտնել։ Եկան թաթարները և ընդհարվեցին նրանց հետ, սակայն վրացիք չկարողացան դիմանալ, փախուստի դիմեցին, սրի քաշվեցին և միայն փախստականը կարողացավ փրկվել։ Ինձ տեղեկացրել են, որ [թաթարները] նրանցից մոտավորապես երեսուն հազար հոգու կոտորել են, կողոպտել նրանց երկիրը և ավերել՝ ըստ իրենց սովորության։

Երբ փախստականները Տփղիս (Տաֆլիս) հասան, ուր նրանց թագավորն էր, այլ զորախմբեր ևս հավաքվեցին և ուղարկվեցին թաթարների դեմ, որպեսզի արգելեն իրենց երկրի միջին մասերը մտնել։ Սակայն տեսան, որ թաթարները մտել են երկիրը և այլևս ոչ մի լեռ, կիրճ կամ այլ բան չի խանգարում նրանց։ Երբ տեսան նրանց արածը, վերադարձան Տփղիս (Տաֆլիս) և երկիրը դատարկեցին, իսկ թաթարները իրենց ուզածը արեցին երկրում՝ կողոպտեցին, կոտորեցին, ավերեցին, սակայն տեսնելով, որ երկիրը շատ կիրճեր ու լեռնանցքներ ունի, չհամարձակվեցին խորքը ներթափանցել ու ետ դարձան։

Վրացիների սիրտը մեծ վախ ընկավ։ Լսել եմ վրաց մեծամեծներից մեկից, որը դեսպան էր եկել և ասում էր՝․եթե որևէ մեկը ձեզ ասի, թե թաթարները պարտվել կամ գերի են ընկել, չհավատաք, իսկ եթե ասեն, թե սպանվել են, հավատացեք, քանզի այդ մարդիկ երբեք չեն փախչում։ Նրանցից մեկին գերի էինք բռնել, բայց սա իրեն ձիուց ցած գցեց, գլուխը այնքան խփեց քարին, մինչև որ մեռավ ու այդպիսով գերի չընկավ։

էջ 339—340

## ՆՐԱՆՑ՝ ԴԱՐԲԱՆԴ-ՇԻՐՈՒԱՆ ՀԱՍՆԵԼՈՒ ԵՎ ԱՐԱՐՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Երբ թաթարները վրաց (քուրջեր) երկրից վերադարձան, դիմեցին Դարբանդ-Շիրուան, պաշարեցին Շամախի քաղաքը, կռվի բռնվեցին բնակիչների հետ, որոնք համառ կերպով դիմացան պաշարմանը։ Սակայն թաթարները աստիճաններով բարձրացան պարիսպը։ Ասվում է նաև, որ նրանք հավաքեցին ուղտերի, կովերի, ոչխարների և մեռածների դիակներ թե՛ իրենցից, թե՛ ուրիշներից և այս բոլորը իրար վրա գցելով ստեղծվեց մի բլուր, որի վրա բարձրանալով քաղաքի վրա տիրապետող դիրք ունեցան։ Կռվեցին բնակիչների հետ, սակայն սրանք դիմացան, և երեք օր սաստիկ կռիվ եղավ։ Երբ արդեն քիչ էր մնացել, որ [թաթարները] գրավեին, նրանք իրար ասացին՝ սրից ազատում չկա, ուստի ավելի լավ է համբերել ու պատվով մեռնել։ Այդ գիշեր նրանք դիմացան։

Գիշերը դիակները նեխեցին ու [կույտը] նստեց և թաթարները այլևս պարիսպի դիմաց բարձր դիրք չունեին և ոչ էլ գերակշռություն կռվի մեջ։ Սակայն նրանք կրկին գրոհեցին և սկսեցին կռվել։ Բնակիչները հոգնած, ուժասպառ ու թուլացած էին, ուստի ընկճվեցին, իսկ թաթարները գրավեցին քաղաքը, շատերին կոտորեցին, ունեցվածքը կողոպտեցին և այլանդակություններ գործեցին։ Այնտեղ իրենց դործը վերջացնելով՝ նրանք կամեցան անցնել Դարբանդը, սակայն չկարողացան ու լուր ուղարկեցին Դարբանդ-Շիրուանի թագավոր Շիրուան Շահին, որ իրենց դեսպան ուղարկի հաշտության [պայմանադիր] կնքելու համար։ Սա տասը մարդ ուղարկեց իր մերձավոր մեծամեծներից։ Սրանք մեկին սպանեցին, իսկ մնացածներին ասացին՝ եթե մեզ ցույց տաք անցնելու ճանապարհը, ձեզ երաշխավորագիր կտանք, ապա թե ոչ, սրա նման կսպանենք։ Ասացին՝ Դարբանդը ոչ մի ճանապարհ չունի, այլ կա մի տեղ, որ համարվում է եղած ճանապարհների ամենահեշտ (անցանելին)։ Նրանք միասին գնացին այդ ճանապարհով, անցան [Դարբանդը], այն իրենց ետևր թողնելով։

էջ 340

## ԹԵ ԻՆՉ ԱՐԵՑԻՆ ՆՐԱՆՔ ԱԼԱՆԱՑ ՈՒ ՂՓՉԱՂՆԵՐԻ ՀԵՏ

Երբ թաթարները անցան Դարբանդ-Շիրուանը, մտան այն գավառները, որտեղ ապրում էին շատ ազգեր (ցեղեր), որոնցից են ալանները (ալ-Լան), լաքզերը (ալ-Լաքզ) և թուրքերի ցեղեր։ Նրանք շատ կողոպտեցին, կոտորեցին լաքզերին, որոնք թե՛ մահմեդական են, թե՛ անհավատ, և այդ երկրում իրենց թշնամի բնակչությանը սրի քաշեցին։ Նրանք հասան ալաններին, որոնք բազմաթիվ ազգերից (ցեղերից) են բաղկացած։ Սրանք լսել էին նրանց (թաթարների) մասին և ջանասիրությամբ հավաքել բազմաթիվ ղփչաղների (կիֆջակ)։ Նրանք ընդհարվեցին, սակայն ոչ մի կողմը մյուսին չհաղթեց։

Թաթարները լուր ուղարկեցին ղփչաղներին, ասելով՝ մենք և դուք մի ցեղից ենք, այդ ալանները ձեզանից չեն, իսկ դուք օգնում եք, ոչ էլ ձեր կրոնը նրանց կրոնին նման է։ Մենք ձեզ պայման ենք դնում, որ ձեզ ձեռք չենք տա և կտանք այնքան դրամ ու զգեստ, ինչքան կամենաք, միայն թե մի մտեք մեր և նրանց միջև։ Նրանք պայմանավորվեցին տալ դրամ, զգեստներ և այլ բաներ և իրոք նրանք (թաթարները) այս բոլորը տարան նրանց մոտ՝ ըստ պայմանավորվածության, իսկ ղփչաղները հեռացան։

*Թաթարները հարձակվեցին ալանների վրա, սաստիկ կոտորեցին, կողոպտեցին, գերեվարեցին [ժողովրդին]։ Ապա նրանք գնացին ղփչաղների մոտ, որոնք իրենց ապահով զգալով, ցրված էին, քանի որ պայմանագիր ունեին։ Սրանք չսթափվեցին, մինչև որ [թաթարները] հարձակման անցան, մտան նրանց երկիրը և հերթով ջարդեցին և խլեցին նրանցից իրենց տվածի երկու անգամից ավելի։ Հեռու ապրող ղփչաղները, երբ լսեցին այս մասին, առանց կռվի փախան ու հեռացան, ոմանք ապաստան գտան անտառներում, ոմանք լեռներում, իսկ մի մասն էլ փախավ ռուսաց երկիրը։*

*էջ 344—345*

## ԱՇՐԱՖԻ ԽԼԱԹԸ ԻՐ ԵՂԲՈՐԸ՝ ՇԻՀԱԲ ԱԼ-ԴԻՆ ՂԱԶԻԻՆ ՀԱՆՁՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարվա վերջերին ալ-Մալիք ալ-Աշրաֆ Մուսա իբն ալ-Ադիլը Խլաթ քաղաքը Հայաստանի բոլոր գավառներով և Նփրկերտ քաղաքը Դիար Բաքրից, ինչպես նաև Հանի քաղաքը, որպես տիրույթ, պարգևեց իր եղբորը՝ Շիհաբ ալ-Դին Ղազի իբն ալ-Ադիլին, նրանից վերցնելով Եդեսիա (Ռուհա) և Սարուջ քաղաքները՝ Ջազիրա երկրում։ Նա նրան տարավ Խլաթ, վեց հարյուր տասնութ թվականի սկզբին։*

*Բանն այն է, որ թաթարների՝ վրաց (քուրջ) երկիրը հարձակվելուց, հաղթելուց, կողոպտելուց ու ժողովրդին խիստ կոտորելուց հետո, վրացիք [դեսպան] ուղարկեցին Ատրպատականի ու Առանի տեր Ուզբեքին, առաջարկելով նրան դաշինք ու պայմանագիր կնքել թաթարներին ետ մղելու համար։ Նրանք այդ նպատակով [նամակ] ուղարկեցին ալ-Մալիք ալ-Աշրաֆին, ասելով բոլորին՝ եթե չհամաձայնեք մեզ հետ այդ մարդկանց դեմ կռվել և ետ մղել մեր երկրից, անձամբ ու զորքով մասնակցելով այս կարևոր գործին, ապա մենք նրանց հետ կմիանանք ձեր դեմ։*

*Դեսպանները հասան Աշրաֆի մոտ այն ժամանակ, երբ նա պատրաստվում էր գնալ Եգիպտոս ֆրանկների դեմ կռվելու։ Սա նրա համար ավելի կարևոր էր շատ պատճառներով։ Առաջին՝ ֆրանկները գրավել էին Դամիեթը (Դիմիաթ), ու Եգիպտոսը նվաճման սպառնալիքի առջև էր և եթե նրանք գրավեին, ապա ո՛չ Ասորիքում, ո՛չ էլ այլուր այլևս [Այյուբյանների] ոչ մի տիրույթ չէր մնա։ Երկրորդ՝ ֆրանկները ավելի ուժեղ էին և տիրելու ավելի ձգտում ունեին, [քան թաթարները]։ Եթե մի գյուղ գրավեին, չէին թողնի, մինչև որ համոզվեին, որ այլևս մեկ օր էլ պաշտպանվելու հնարավորություն չունի։ Երրորդ՝ ֆրանկները աչք ունեին Ադիլյան*

*(Այյուբյան) տան իշխանական [գլխավոր] աթոռին, որը Եգիպտոսն էր, իսկ թաթարները այնտեղ չէին հասել, սրանց (Այյուբյանների) հողերը չէին անցել և իշխանությանը աչք չունեին, այլ նրանց նպատակն էր պարզապես կողոպտել, կոտորել, երկիրը ավերել և այսպես գնալ երկրից երկիր։*

*Ուստի, երբ նրա մոտ հասան վրաց դեսպանները, պատասխան տվեց, պատճառաբանելով, որ ստիպված էր գնալ Եգիպտոս՝ ետ մղելու ֆրանկներին։ Նա ասաց նրանց՝ Խլաթ նահանգը ես որպես տիրույթ պարգևել եմ եղբորս ու նրան այնտեղ հաստատել, որպեսզի ձեզ մոտ լինի։ Ես նրա մոտ զորք եմ թողել և, երբ որ օգնության կարիք ունենաք, նա կգա թաթարներին ետ մղելու։*

*Իսկ ինքը, ինչպես ասացինք, գնաց Եգիպտոս։*

## *ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ*

## (25 փետրվար 1221—14 փետրվար 1222)

*էջ 346—347*

### ՏԱՐԲԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում մահմեդականները ֆրանկների ձեռքից վերագրավեցին Դամիեթը (Դիմիաթ) Եգիպտոսում, ինչպես նախապես մանրամասն նկարագրել ենք։*

*Այդ տարում՝ Սաֆար ամսին (7 ապրիլ—6 մայիս), թաթարները գրավեցին Մարաղան, կործանեցին, հրկիզեցին, բնակիչների մեծ մասին կոտորեցին, ունեցվածքը կողոպտեցին, կանանց գերեվարեցին։ Դրանից հետո թաթարները գնացին Համադան, պաշարեցին, բնակիչները կռվի ելան, սակայն թաթարները հաղթեցին, անթիվ անհամար կոտորեցին, կողոպտեցին երկիրը։ Ապա շարժվեցին դեպի Ատրպատական և նորից կողոպտեցին ու ինչ որ նախորդ հարձակման ժամանակ չէին հափշտակել, այս անգամ տարան։*

*Նրանք հասան Առան երկրի Բայլական քաղաքը, որը պաշարեցին ու գրավեցին, բնակիչներին կոտորեցին այնքան, որ գրեթե բնաջինջ արեցին։ Երկրի մեծ մասի բնակիչներին կոտորեցին, կողոպտեցին ունեցվածքը։ Նրանք գնացին Դարբանդ-Շիրուան, պաշարեցին Շամախի քաղաքը, գրավեցին ու բնակիչներից շատերին կոտորեցին, ապա շարժվեցին դեպի ալանաց (ալ-Լան) և լաքզերի (ալ-Լաքզ) ու հարևան ցեղերի (երկրները) ու կոտորեցին նրանց։*

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՍՆԻՆԸ ԹՎԱԿԱՆ

## (15 փետրվար 1222—3 փետրվար 1223)

*էջ 348—349*

### ՂՓՉԱՂՆԵՐԻ ՄԻ ԽՄԲԻ՝ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ՎՐԱ ՀԱՐՁԱԿՎԵԼՈՒ, ՎՐԱՑԻՆԵՐԻ ՀԵՏ ՆՐԱՆՑ ԱՐԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՐԱՆՑ ՀԵՏ ՊԱՏԱՀԱԾԻ ՄԱՍԻՆ

*Երբ թաթարները գրավեցին ղփչաղների (կիֆչակ) հողը, սրանք ցրվեցին։ Մի խումբ դիմեց Ռուսաց երկիրը, մի այլ խումբ ցրվեց լեռներում։ Իսկ մի մեծ խումբ հավաքվեց ու գնաց Դարբանդ-Շիրուան։*

*Սրանք (ղփչաղները) մարդ ուղարկեցին նրա տիրոջը, որի անունն էր Ռաշիդ և ասացին՝ թաթարները տիրել են մեր երկրին, հափշտակել մեր ունեցվածքը, ահա եկել ենք քեզ մոտ, որպեսզի քո երկրում ապրենք, կլինենք քո մամլուքները (ստրուկները), քեզ համար երկրներ կնվաճենք, իսկ դու մեր սուլթանը (տիրակալը) կլինես։ Սակայն նա չընդունեց այդ բանը, զգուշանալով նրանցից։ Նրանք կրկին նամակ ուղարկեցին, ասելով՝ մեր զավակներին ու կանանց պատանդ կթողնենք քեզ մոտ, պարտավորեցնելով հնազանդ լինել, ծառայել քեզ, հպատակվելով քո իշխանությանը։ Նա չպատասխանեց նրանց պահանջին։ Այս անգամ խնդրեցին, որ հնարավորություն տա իր քաղաքում պարենավորվելու, ընդ որում, տասը-տասը [հոգի] պետք է մտնեին և անհրաժեշտը գնելուց հետո, հեռանային նրա քաղաքից։ Նա համաձայնեց և նրանք սկսեցին խմբերով մտնել ուզածը գնել ու դուրս գալ։*

*Սակայն նրանց (ղփչաղների) մեծամեծներից ու երևելիներից մեկը եկավ Ռաշիդի մոտ ու ասաց՝ ես եղել եմ սուլթան Խորեզմ Շահի ծառայության մեջ, ես մահմեդական եմ, իսկ կրոնը ինձ դրդում է քեզ խորհուրդ տալ։ Գիտցիր, ղփչաղները քո թշնամիներն են, ուզում են քեզ նենգել, թույլ մի տուր, որ նրանք մնան քո երկրում։ Ինձ զորք տուր, որ կռվեմ նրանց հետ ու դուրս բերեմ երկրից։*

*Այդպես էլ արեց [Ռաշիդը] ու հանձնեց նրան մի զորամաս, տալով պետք եղած զենքը և այլ բաներ։ Նա գնաց ու հարձակվեց ղփչաղների մի խմբի վրա, մի մասին կոտորեց, մյուս մասին կողոպտեց։ Սակայն ղփչաղները տեղից չշարժվեցին կռվի համար, այլ ասացին՝ մենք ալ-Մալիք (թագավոր) Շիրուան Շահ Ռաշիդի մամլուքներն (ստրուկներն) ենք, ուստի չենք կռվի նրա զորքի դեմ։*

*Երբ այս ղփչաղ առաջնորդը վերադարձավ, իր հետ ունենալով Ռաշիդի տված զորքը՝ անվնաս վիճակում, [Ռաշիդը] ուրախացավ։ Ապա ղփչաղները թողեցին իրենց եղած տեղը ու երեք օր գնացին։ Այս ղփչաղը*

ասաց Ռաշիդին՝ զորք եմ ուղում, որպեսզի հետապնդեմ նրանց։ Նա հրամայեց զորք տալ ինչքան որ կամենա։ Սա հետապնդեց ղփչաղներին, ջարդեց նրանց վերջապահ [դունդը] ու կողոպտեց։ Նրա մոտ եկավ ղփչաղների մի մեծ բազմություն՝ տղամարդիկ ու կանայք, իրենց մազերը կտրած, արտասվելով և իրենց հետ ունեին մի դագաղ, որը շրջապատել ու արտասվում էին։ Ասացին՝ քո բարեկամ այսինչը մահացել է, նա կտակել էր, որ իրեն բերենք քեզ մոտ, որ դու թաղես ուր որ կամենաս, իսկ մենք կլինենք քեզ հետ։

Սա վերցրեց այն, ինչպես նաև նրան ողբացողներին ու վերադարձավ Շիրուան Շահ Ռաշիդի մոտ, տեղեկացնելով, որ հանգուցյալը նրա բարեկամն էր, ուստի բերել է իր հետ, իսկ նրա հարազատները խնդրեցին, որ լինեն իր հետ ու ծառայեն իրեն։ Սա (Ռաշիդը) թույլ տվեց, որ քաղաք մտնեն և այնտեղ իջևանեն։ Այս մարդիկ եկան այդ առաջնորդի հետ, հեծնում էին նրա հեծնելու հետ միասին և նրա հետ բարձրանում էին միջնաբերդ, ուր Ռաշիդն էր, նստում նրա մոտ և միասին էին խմում թե՛ նրանք, թե՛ նրանց կանայք։

Եվ ահա Ռաշիդը սիրեց այն մարդու կնոջը, որի համար ասում էին, թե մահացել է։ Սակայն նա չէր մահացել, այլ այս բանն արել էին, որպես ծուղակ, որպեսզի մտնեին քաղաք, իսկ նա, որին մեռած էին հայտարարում, իրենց հետ էր նստած և Ռաշիդը չէր ճանաչում նրան։ Նա ղփչաղների ամենամեծ երևելիներից էր։ Այսպես մնացին մի քանի օր և ամեն օր տարբեր խմբերով ղփչաղներ էին գալիս։ Նրանք հավաքվեցին միջնաբերդում և կամենում էին բռնել Ռաշիդին ու երկիրը գրավել։ Սա կռահեց, դուրս եկավ միջնաբերդի գաղտնի գռնից ու փախավ Շիրուան։

Ղփչաղները տիրեցին միջնաբերդին ու ասացին քաղաքի ժողովրդին. մենք ձեզ համար Ռաշիդից լավ ենք։ Նրանք իրենց մնացած մարդկանց իրենց մոտ բերեցին և քաղաքում եղած ամբողջ զենքը գրավելով տիրացան Ռաշիդի միջնաբերդում եղած ունեցվածքին։

Ապա դուրս գալով միջնաբերդից դիմեցին Կապաղակ (Կաբալա), որը վրացիներին էր պատկանում, իջան այնտեղ ու պաշարեցին։ Երբ Ռաշիդը լսեց նրանց միջնաբերդից դուրս գալը, եկավ ու գրավեց, կոտորելով այնտեղ եղած բոլոր ղփչաղներին։ Կապաղակում եղած ղփչաղները այս բանը չկռահեցին և մի զորամաս ուղարկեցին միջնաբերդ, իսկ Ռաշիդը նրանց ևս կոտորեց։ Լուրը հասավ ղփչաղներին ու նրանք վերադարձան Դաբրանդ՝ այլևս հույս չունենալով գրավել միջնաբերդը։

Երբ նրանք պաշարում էին Կապաղակը, նրա տերը լուր էր ուղարկել, ասելով՝ ես [մարդ] կուղարկեմ վրաց թագավորին, որպեսզի ձեզ ուղարկի պատմուճաններ ու զգեստներ և մենք միանալով՝ ձեզ հետ, կտիրենք

երկրին։ Սրանք մի քանի օր չկողոպտեցին այդ նահանգը, սակայն շուտով իրենց ձեռքերը երկարեցին, [կրկին] կողոպտեցին ու ապականեցին։ Նրանք կողոպտեցին ամբողջ Կապաղակի երկիրը և Հասան Գանձակ (Գանջա, Քանջա), որը Առան երկրում էր ու պատկանում էր մահմեդականներին։ Նրանք կանգ առան այստեղ։ Գանձակի ամիրը, որը Ատրպատականի տեր Ուզբեքի մամլուքն էր Քուշխարա անունով, զորք ուղարկեց, որը թույլ չտվեց, որ նրանք մտնեն այդ երկիրը։ Նա դեսպան ուղարկեց, ասելով՝ նենգությամբ վարվեցիք Շիրուանի տիրոջ հետ ու գրավեցիք նրա միջնաբերդը, նենգությամբ վերաբերվեցիք Կապաղակի տիրոջ հետ և նրա երկիրը կողոպտեցիք, էլ ո՞վ կվստահի ձեզ։ Նրանք պատասխանեցին՝ մենք եկել էինք միայն ծառայելու ձեր սուլթանին, սակայն Շիրուան Շահը արգելեց մեզ ձեր մոտ գալու, ուստի գնացինք նրա երկիրը ու գրավեցինք նրա միջնաբերդը, ապա այն լքեցինք, սակայն ոչ վախից։ Ինչ վերաբերում է Կապաղակի տիրոջը, ապա նա ձեր թշնամին է և. եթե ցանկանայինք գնալ վրացիների մոտ, չէինք անցնի Դարբանդ-Շիրուանի ճանապարհով, քանզի դա ամենադժվար, հոգնեցուցիչ ու հեռավոր ճանապարհն է, այլ կմտնեինք նրանց երկիրը սովորական ձևով։ Մենք ձեզ ուղարկում ենք պատանդներ։

Երբ [ամիրը] այս բանը լսեց, գնաց նրանց կողմը։ Ղփչաղներն իմացան այդ բանը և ահա երկու ձիավոր ամիրներ, որոնք նրանց առաջնորդներից էին, փոքրաթիվ մարդկանցով եկան նրա մոտ, հանդիպեցին ու խոնարհաբար ողջունելով, ասացին՝ մենք եկել ենք ձեզ մոտ փոքր թվով, որպեսզի իմանաք, թե մեր նպատակն է միայն հավատարմություն ու ծառայություն առաջարկել ձեր սուլթանին։ Քուշխարան թույլ տվեց նրանց գնալ ու տեղավորվել Գանձակի մոտ։ Նա ամուսնացավ նրանցից մեկի դստեր հետ և լուր ուղարկեց իր տիրոջը՝ Ուզբեքին բացատրելով վիճակը։ Սա հրամայեց նրանց [նվիրել] պատմուճաններ (խիլա) և տեղավորել Քիլքուն[330] լեռան մոտ և այնտեղ էլ արեցին։

Սակայն վրացիք վախեցան այդ բանից ու զորք հավաքեցին, որպեսզի հանկարծակի հարձակվեն նրանց վրա։ Լուրը հասավ Գանձակի ամիր Քուշխարային, որը տեղեկացրեց ղփչաղներին, հրամայելով վերադառնալ և տեղավորվել Գանձակի մոտ։ Նրանք եկան և այնտեղ տեղավորվեցին։

Իսկ ղփչաղ ամիրներից մեկը մի խմբի հետ դնաց վրացիների (քուրջ) դեմ, հանկարծակիի բերեց նրանց, շատերին սպանեց ու փախուստի մատնեց, ավարի տվեց նրանց ունեցվածքը, կոտորեց, գերեվարեց և բոլորին փախուստի մատնեց։ Ղփչաղները վերադարձան Քիլքուն լեռը և նախկինի նման այնտեղ կանգ առան։ Նրանց տեղավորելուց հետո, ղփչաղ ամիրնե-

րից մի ուրիշը ուզեց վրացիների հետ անել այն, ինչ իր ընկերն էր արել։ Երբ Քուշխարան լսեց, լուր ուղարկեց զգուշացնելով չշարժվել, մինչև որ պարզի վրացիների (քուրջ) գրությունը։ Սակայն սա առանց տեղեկանալու շարժվեց դեպի նրանց երկիրը իր զորքի հետ միասին։ Նա կողոպտեց, ավերեց և ավար վերցրեց։

Իսկ վրացիք (քուրջ) եկան մի ճանապարհով, որ միայն իրենք գիտեին ու կանխեցին նրան և երբ սա հասավ, կռվի ելան նրա դեմ, նրան ու ընկերակիցներին հանկարծակիի բերելով, սրի քաշեցին և շատերին կոտորեցին, նրանցից ետ խլելով ավարը։ Նա և իր զորքը ամենախայտառակ վիճակում վերադարձան ու դիմեցին Պարտավ։

Լուր ուղարկեցին Քուշխարային, խնդրելով, որ ինքը զորքի հետ գա, որպեսզի հարձակում գործեն վրացիների (քուրջ) դեմ ու վրեժ լուծեն։ Սակայն նա այդպես չարեց և զգուշացրեց նրանց, ասելով՝ դուք ինձ չհնազանդվեցիք և ձեր կարծիքով շարժվեցիք, ես ձեզ նույնիսկ մի ձիավոր չեմ տա։ Նրանք լուր ուղարկեցին, խնդրելով ետ տալ պատանդներին, որոնք նրա մոտ էին, սակայն նա չտվեց։ Այդ ժամանակ նրանք հավաքվեցին և բազմաթիվ մահմեդականների գերեցին պատանդների փոխարեն։ Սակայն երկրի մահմեդականները ապստամբեցին նրանց դեմ, կռվի ելան ու շատերին կոտորեցին։

Նրանք (ղփչաղները) վախեցան ու գնացին Շիրուան, ապա անցան ալ-Լաքզ երկիրը։ Մահմեդականները, վրացիք, լաքզերը և ուրիշներ համարձակություն ստանալով հարձակվեցին, ոչնչացրին նրանց կոտորելով, կողոպտելով, գերելով ու գերեվարելով, այնպես որ նրանց մի մամլուքը Դարբանդ-Շիրուանում վաճառվում էր չնչին գնով։

էջ 349

## ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ԲԱՅԼԱԿԱՆԸ ԱՎԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Ռամադան ամսին (9 հոկտեմբեր—8 նոյեմբեր), վրացիք (քուրջ) իրենց երկրից գնացին Առան երկիրը ու դիմեցին Բայլական քաղաքը, որ թաթարները ավերել էին ու կողոպտել ինչպես արդեն հիշեցինք։

Երբ թաթարները գնացին ղփչաղների երկիրը, ողջ մնացածները վերադարձել էին քաղաք ու ինչքան հնարավոր էր, վերականգնել էին պարիսպները։ Մինչ այս վիճակում էին, եկան վրացիք, մտան երկիրը, գրավեցին։ Մահմեդականները արդեն սովորել էին, որ երբ վրացիք գրավում էին մի քաղաք, նրանց (բնակիչների) հետ լեզու էին գտնում որոշ գումարի դի-

*մաց և վերադառնում էին։ Այնպես որ, վրացիք լավագույն թշնամիներն էին։*

*Այս անգամ էլ մահմեդականները կարծեցին, որ նույն բանը կարող են անել և պետք եղած դիմադրությունը չցուցաբերեցին և ոչ էլ փախան նրանց ձեռքից։ Երբ վրացիք գրավեցին քաղաքը, սրի քաշեցին ժողովրդին, կոտորեցին ու կողոպտեցին թաթարների նման։ Այս բոլորը կատարվում էր, իսկ Ատրպատականի տեր Ուզբեք իբն ալ-Բահլավանը, որը Դավրեժ (Տաբրիզ) քաղաքում էր, ո՛չ տեղից էր շարժվում, ո՛չ ազնվության, ո՛չ էլ բարի գործի [ընդունակ էր], այլ տարված էր ուտելով, անվերջ հարբեցողությամբ ու անառակությամբ։ Թող ալլահը խայտառակի նրան և մահմեդականներին այնպիսի մարդիկ տա, որոնք կպաշտպանեն նրան ու կըպահպանեն երկիրը։*

## *ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆ ԹՎԱԿԱՆ*

**(4 փետրվար 1223—23 հունվար 1224)**

*էջ 350—351*

## ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՈՒ ՎՐԱՑԻՆԵՐԻ ՄԻՋԵՎ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԿՌՎԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Շաաբան ամսին (30 օգոստոս—28 սեպտեմբեր), Սուրմարի ամրոցի տերը, որը Հայաստանի գավառներից է, գնաց Խլաթ, քանզի հպատակ էր Խլաթի տիրոջ, որն այդ ժամանակ Շիհաբ ալ-Դին Ղազի իբն ալ-Ադիլ Աբու Բաքր իբն Այյուբն էր։*

*Նա եկավ, իր փոխարեն տեղում թողնելով իր ամիրներից մեկին։ Սա զորք հավաքեց ու հարձակվեց վրաց (քուրջ) երկրի (Հյուսիսային Հայաստանի) վրա, կողոպտեց բազմաթիվ գյուղեր ու վերադարձավ։ Վրացիք (քուրջ) լսեցին այս բանը և Դուինի տերը, որի անունն էր Շալուա և վրաց (քուրջ) մեծամեծ իշխաններից էր, զորք հավաքեց, շարժվեց դեպի Սուրմարի, այն օրերով պաշարեց, կողոպտեց քաղաքը, նրա շրջակայքը ու վերադարձավ։*

*Սուրմարիի տերը տեղեկանալով այդ մասին, վերադարձավ Սուրմարի և հասավ այն օրը, երբ վրացիք (քուրջ) հեռացել էին։ Նա վերցրեց զորքը ու հետապնդեց նրանց և հարձակվելով վերջապահ [գնդի] վրա, կոտորեց, ավար վերցրեց և փրկեց իր երկրից վերցրած նրանց ավարը։*

*Ապա Դուինի տերը զորք հավաքեց և շարժվեց դեպի Սուրմարի, որպեսզի պաշարի այն։ Լուրը հասավ նրա տիրոջը, որը ամրացրեց [Սուրմարին], պաշար և այլ անհրաժեշտ բաներ կուտակեց։ Նրան (Սուրմարի տիրոջը) տեղեկացրին, թե վրացիք (քուրջ) Դուինի և Սուրմարիի միջև մի*

*կիրճում են կանգ առել, որը նեղ էր և ահա նա իր ամբողջ զորքով արագ-ընթաց շարժվեց, որպեսզի հանկարծակիի բերի վրացիներին (քուրջ)։ Նա հասավ նրանց գտնված կիրճը առավոտյան արշալույսին, իր զորքը երկու մասի բաժանեց, ընդ որում մի մասը պետք է կիրճի վերևից [հարձակ-վեր], իսկ մյուս մասը՝ ներքևից։ Հարձակվեցին վրացիների (քուրջ) վրա, որոնք անտեղյակ էին, սրի քաշեցին. կոտորեցին ու գերեվարեցին։ Գերի ընկածների մեջ էր նաև Դուինի իշխան (ամիր) Շալուան՝ մեծամեծների մի խմբով։ Վրացիներից (քուրջ) ով որ ազատվեց, ամենավատ վիճակում վերադարձավ քաղաք։*

*Ապա վրաց (քուրջ) թագավորը լուր ուղարկեց Ջազիրայի տիրոջը ալ-Մալիք ալ-Աշրաֆ Մուսա իբն ալ-Ադիլին, որը Խլաթը և գավառները տվել էր ամիր Շիհաբ ալ-Դինին, ասելով՝ կարծում էինք, թե մենք ձեզ հետ խաղաղության մեջ ենք, իսկ Սուրմարիի տերը ահա այսպիսի արարքներ է գործել։ Եթե հաշտության մեջ ենք, ցանկանում ենք, որ գերությունից արձակեք մեր մարդկանց։ Իսկ եթե խաղաղությունը մեր միջև արդեն խախտված է, ապա հայտնեցեք մեզ, որպեսզի մենք միջոցներ ձեռք առնենք։ Աշրաֆը լուր ուղարկեց Սուրմարիի տիրոջը, հրամայելով արձա-կել գերյալներին և վրացիների (քուրջ) հետ հաշտությունը վերանորոգել։ Այսպես էլ արեց, խաղաղությունը վերահաստատվեց և գերիները ազատ արձակվեցին։*

*էջ 351—352*

## ՄԻ ՏԱՐՕՐԻՆԱԿ ԴԵՊՔ, ՈՐԻ ՆՄԱՆԸ ՉԻ ԵՂԵԼ

*Վրաց (քուրջ) թագավորական ընտանիքից մնացել էր միայն մի կին, որին և փոխանցվել էր թագավորությունը։ Սա ստանձնեց այն, տնօ-րինեց գործերը և կառավարեց։ Նրանք փնտրեցին նրա համար մի տը-ղամարդ թագավորական ընտանիքից, որն ամուսնանար նրա հետ ու որպես տեղակալ տնօրիներ թագավորության գործերը նրա փոխարեն, սակայն նրանց մեջ չկար մի հարմար անձնավորություն։*

*Այդ ժամանակ Կարնո քաղաքի (Արզան ալ-Ռումի) տերն էր Մուղիս ալ-Դին Թուղրիլ Շահ իբն Կիլիջ Արսլան իբն Մանսուր Կիլիջ Արսլանը, որի տոհմը նշանավոր էր որպես իսլամի մեծագույն թագավորների [ընտանիք], քանզի նրանք սելջուկյան թագավորներից էին սերում։ Սա մի մեծ որդի ուներ և վրացիներին լուր ուղարկեց խնդրելով թագուհուն իր որդու հետ ամուսնացնել։ Նրանք հրաժարվեցին նրան բավարարել, ասելով՝ չենք կարող այդ անել, քանզի մահմեդականը չի կարող մեր վրա իշխել։ Նա ասաց՝ իմ որդին քրիստոնյա կդառնա ու կամուսնանա նրա*

հետ։ Այն ժամանակ համաձայնեցին։ Սա հրամայեց իր որդուն և նա քրիստոնեությունն ընդունեց ու ամուսնացավ թագուհու հետ։

Նա տեղափոխվեց նրա (թագուհու) մոտ և դարձավ վրաց (քուրջ) երկրի տիրակալը ու մնաց քրիստոնյա։

Այս թագուհին սիրում էր իր ստրուկներից (մամլուք) մեկին, իսկ ամուսինը նրա մասին վատ բաներ էր լսում, սակայն իր թուլության պատճառով չէր կարողանում խոսել։ Մի օր նա մտավ ու տեսավ նրան ստրուկի հետ անկողնում պառկած։ Նա վրդովվեց և արգելեց նրան այդ բանը, սակայն նա (թագուհին) ասաց նրան՝ եթե համաձայն չես այս բանին, դու գիտես [անելիքդ]։ Ասաց՝ ես համաձայն չեմ այդ բանին։ Սա (թագուհին) նրան տեղափոխել տվեց այլ քաղաք և հանձնարարեց. որ թույլ չտան ազատ շարժվել և արգելափակեց նրան։

Նա (թագուհին) մարդ ուղարկեց ալանաց (ալ-Լան) երկիրը, երկու գեղեցկադեմ տղամարդկանց բերել տվեց և մեկի հետ ամուսնացավ, ապա որոշ ժամանակ նրա հետ մնալուց հետո բաժանվեց և մեկ ուրիշին բերել տվեց Գանձակից (Քանջա), որը մահմեդական էր։ Նրանից պահանջեց քրիստոնեությունն ընդունել, որպեսզի ամուսնանա նրա հետ, սակայն սա չհամաձայնեց։ Ուզեց ամուսնանալ նրա հետ, թեկուզ մնար մահմեդական, սակայն իշխանների բազմությունը և նրանց հետ Իվանեն (Իուանի), որը վրաց (քուրջ) զորքի հրամանատարն էր, ընդդիմացան նրան և ասացին՝ քո արարքներով մեզ խայտառակեցիր թագավորների մեջ, այժմ էլ ուզում ես մահմեդականի հետ ամուսնանալ, այս բանը մենք երբեք թույլ չենք տա։

Այս գործը դեռ անորոշ է մնում նրանց մեջ, իսկ Գանձակից եկած մարդը դեռ նրանց մոտ է, չի ընդունում քրիստոնեությունը, սակայն նա (թագուհին) սիրում է նրան[331]։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՄԵԿ ԹՎԱԿԱՆ

(23 հունվար 1224—12 հունվար 1225)

*էջ 353—354*

### ՇԻՀԱԲ ԱԼ-ԴԻՆ ՂԱԶԻԻ՝ ԻՐ ԵՂԲՈՐ ԱԼ-ՄԱԼԻՔ ԱԼ-ԱՇՐԱՖԻ ԴԵՄ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ԵՎ ԽԼԱԹԸ ՆՐԱՆԻՑ ՎԵՐՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ալ-Մալիք ալ-Աշրաֆ Մուսա իբն ալ-Ադիլ Աբու Բաքր իբն Այյուբը իր եղբորը՝ Շիհաբ ալ-Դին Ղազիին, որպես տիրույթ պարգևել էր Խլաթը և Հայաստանի բոլոր նահանգները, ավելացնելով նաև Նփրկերտը (Մայյաֆարիկին), Հանին և Ճապաղջուրը (Ջաբալ ջուր)։ Սրանով էլ չբավարարվեց [Աշրաֆը] և նրան դարձրեց իր ձեռքի տակ եղած բոլոր երկրների

գահաժառանգ և բոլոր տեղակալներին (նաիբ) ու զորականներին երդվել տվեց նրան [հնազանդ լինել]։

Երբ [Ղազին] ստացավ Հայաստանը, եկավ, ինչպես հիշեցինք, և մնաց մինչև վեց հարյուր քսան թվականի վերջը։ Ապա սկսեց ըմբոստանալ իր եղբոր՝ ալ-Մալիք ալ-Աշրաֆի դեմ. չէր հնազանդվում և հրաժարվում էր ենթարկվելուց։ Աշրաֆը գրեց նրան, համոզելով և մեղադրելով արածների համար։ Սակայն սա չհրաժարվեց իր արարքներից, այլ նույն բանը շարունակեց։ Նա համաձայնեց իր մյուս եղբոր՝ Դամասկոսի տեր ալ-Մուաղզամ Իսայի և Արբելայի (Իրբիլ) տիրոջ՝ Մուզաֆֆար ալ-Դին իբն Զայն ալ-Դինի հետ, ապստամբելու ու միասին կռվելու Աշրաֆի դեմ։ Նրանք բացահայտորեն ցուցաբերեցին այս [վերաբերմունքը], և Աշրաֆը իմանալով՝ լուր ուղարկեց իր Եգիպտոսի եղբորը՝ ալ-Քամիլին, տեղեկացնելով այդ մասին, քանզի նրանց միջև համաձայնություն կար։ Նա օգնություն խնդրեց նրանից և զորքեր պատրաստելով լուր ուղարկեց իր եղբորը՝ Դամասկոսի (Դիմաշկ) տիրոջը, ասելով՝ եթե քաղաքից դուրս շարժվես, կհարձակվեմ ու կգրավեմ այն։ Իսկ սա գնացել էր Ջայիրա, ըստ իր և նրա (Արբելայի) տիրոջ միջև եղած պայմանավորվածության, սակայն, երբ հասավ եղբոր նամակը և իմացավ զորքերի պատրաստման մասին, վերադարձավ Դամասկոս։ Արբելայի տերը հավաքեց զորքերը, գնաց դեպի Մոսուլ և նրա հետ պատահեց այն, ինչի մասին կհիշենք, եթե ալլահը կամենա։

Իսկ Աշրաֆը, երբ եղբոր ըմբոստությունը տեղի ունեցավ, զորքեր հավաքեց Ասորիքից (Շամ), Ջազիրայից ու Մոսուլից, գնաց դեպի Խլաթ։ Երբ մոտեցավ եղբայրը, Ղազին վախեցավ և ուժ չունենալով կռվի մեջ նրան դիմադրելու, զորքը ցրեց երկրով մեկ, որպեսզի ամրացնի այն և սպասեց, որ Արբելայի տերը շարժվի դեպի Մոսուլ ու Սինջար, եղբայրը՝ Դամասկոսի տերը՝ դեպի Աշրաֆի երկիրը՝ Եփրատի մոտ, այսինքն, Ռակկա, Խառան և այլ վայրեր, իսկ Աշրաֆը այդ ժամանակ ստիպված կլիներ ետ դառնալ Խլաթից։ Սակայն Աշրաֆը շարժվեց նրա կողմը դեպի Խլաթ, որի բնակիչները ուզում էին նրան և նրա իշխանությունն էին նախընտրում՝ նրա ունեցած լավ վերաբերմունքի և Ղազիի վատ վերաբերմունքի պատճառով։ Երբ նա պաշարեց [Խլաթը], բնակիչներն այն հանձնեցին նրան Ջումադա Բ ամսի տասներկուսին (31 հունիս), երկուշաբթի օրը։

Ղազին մնաց [քաղաքի] միջնաբերդում ամրացած, սակայն երբ գիշերը վրա հասավ, իջավ իր եղբոր մոտ ներողություն խնդրելու։ Աշրաֆը այպանեց նրան, սակայն թողեց, չպատժեց նրա արարքը, միայն երկիրը վերցրեց նրա ձեռքից, թողնելով սոսկ Նփրկերտը (Մայյաֆարիկին)։

է՛ 354

## ԱՐԲԵԼԱՅԻ ՏԻՐՈՋ՝ ՄՈՍՈՒԼԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Արդեն հիշատակել ենք Արբելայի (Իրբիլ) տիրոջ՝ Մուղաֆֆար ալ-Դին Քաուքաբրի իբն Զայն ալ-Դին Ալիի, Խլաթի տիրոջ՝ Շիհաբ ալ-Դին Ղազիի և Դամասկոսի (Դիմաշկ) տիրոջ՝ ալ-Մուաղզամ Իսայի, համաձայնությունը ալ-Մալիք ալ-Աշրաֆի երկիրը արշավելու մասին։

Ինչ վերաբերում է Դամասկոսի տիրոջը, ապա նա [քաղաքից] հազիվ մի քանի օրվա ճանապարհ (մարահիլ) էր գնացել, երբ վերադարձավ, որովհետև նրա եղբայրը՝ Եգիպտոսի տերը, [լուր] ուղարկեց նրան, սպառնալով, որ եթե Դամասկոսից հեռանա, ապա ինքը կհարձակվի ու կպաշարի այն։ Իսկ Ղազին մնաց Խլաթում պաշարված և, ինչպես հիշել ենք, այն վերցվեց նրանից։ Սակայն Արբելայի տերը հավաքեց իր զորքը, գնաց Մոսուլ քաղաքը պաշարեց և այնտեղ կանգ առավ Ջումադա Բ ամսի տասներեքին, երեքշաբթի օրը, հույս ունենալով, որ ալ-Մալիք ալ-Աշրաֆը հենց որ լսի, թե ինքն այստեղ է, կթողնի Խլաթը, իսկ Ղազին նրան կհետևի և դրությունը կխառնվի ու Դամասկոսի տերը համարձակություն կունենա իր մոտ գալու։

Նա տեղավորվել էր Մոսուլի դիմաց, իսկ նրա տեր Բադր ալ-Դին Լուլուն ամրացրել էր այն, պարիսպների վրա զինվորներ նշանակելով, պաշարման գործիքներ բերելով և պաշար հավաքելով։ Այսուհանդերձ, Արբելայի տերը ցանկացավ պաշարել Մոսուլը, որովհետև այստեղի զորքի մեծ մասը գնացել էր Խլաթ ալ-Մալիք ալ-Աշրաֆի հետ և տեղում զորքը քիչ էր։ Ամբողջ երկրում թանկություն էր տարածվել, իսկ գները Մոսուլում այնպիսին էին դարձել, որ երեք ձուն մեկ դինար արժեր։ Ահա այս պատճառով էր, որ նա որոշեց պաշարել։ Գալուց հետո, նա երեք օր մնաց, ապա հեռացավ Ջումադա Բ ամսի վերջից յոթ օր մնացած (10 հունիս 1227), ուրբաթ օրը։ Նրա հեռանալու պատճառն այն էր, որ տեսավ, թե ինչպես քաղաքը ամրացված էր և պաշարը այնքան առատ էր, որ երկար ժամանակ կարող էր բավարարել։ Նա լսել էր նաև, որ ալ-Մալիք ալ-Աշրաֆը տիրել էր Խլաթին։ Նա այլևս հույս չուներ նրա տիրոջից, ինչպես նաև Դամասկոսի տիրոջից և մնաց մեն-մենակ։

Այս լուրերն ստանալուց հետո նա հուսահատվեց, հասկացավ, որ սխալվել է ու վերադարձավ իր քաղաքը, նա կանգ առավ Զաբի վրա և երկարացրեց իր մնալը Մոսուլի մոտ։ Նա չէր կռվում, այլ պարզապես երբեմն նրա թուրք [ռազմիկներից] ոմանք հարձակվում էին քաղաքի վրա և այնտեղից մի քանի ձիավորներ ու հետիոտն էին դուրս գալիս ու սկըսում էր կարճատև կռիվը, ապա ցրվում էին և ամեն մի խումբ վերադառնում էր իր տիրոջ մոտ։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԿՈՒ ԹՎԱԿԱՆ

(13 հունվար 1225—1 հունվար 1226)

*էջ 355*

### ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ԳԱՆՁԱԿ ՔԱՂԱՔԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում վրացիք (քուրջ) զորքի մեծ բազմությամբ գնացին Գանձակ (Քանջա) քաղաքը՝ Առան երկրում, նպատակ ունենալով պաշարել այն։ Նրանք իրենց ամբողջ ուժը գործադրեցին, որովհետև Գանձակի ժողովուրդը բազմամարդ էր, շատ ուժեղ և վրացիների հետ հաճախակի ընդհարումների հետևանքով մեծ քաջություն էր ձեռք բերել։ Երբ վրացիք հասան նրանց մոտ, մերձեցան ու մի քանի օր կռվեցին բնակիչների հետ, որոնք պարիսպների ետևում էին և նրանցից ոչ ոք չէր երևում։ Սակայն մի օր Գանձակի մարդիկ քաղաքից դուրս եկան իրենց զորքերի հետ միասին և վրացիների հետ սաստիկ ու համառ կռիվ տեղի ունեցավ քաղաքից դուրս։*

*Երբ վրացիք այս բանը տեսան, համոզվեցին, որ իրենք ի վիճակի չեն քաղաքը գրավել և հեռացան այն բանից հետո, երբ Գանձակի բնակիչները նրանց պարտության էին մատնել։*

*էջ 356—357*

### ԱԼ-ՄԱԼԻՔ ԱԼ-ԱՖԴԱԼԻ ԵՎ ԱՅԼ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ

. . . . . . . . . . . . . .

*Այդ տարում մեռավ Կարնո քաղաքի (Արզան ալ-Ռում) տեր Մուղիս ալ-Դին Թուղրիլ իբն Կիլիջ Արսլանը։ Սա իր որդուն ուղարկել էր վրացիների (քուրջ) մոտ, որը քրիստոնեացել ու ամուսնացել էր վրաց թագուհու հետ։ Երբ մեռավ, նրանից հետո որդին թագավորեց։*

*Այդ տարում մեռավ Երզնկայի (Արզինքան) տերը։ Նույն տարում մեռավ նաև Խարբերդի տեր Իզզ ալ-Դին ալ-Խադար իբն Իբրահիմ իբն Աբու Բաքր իբն Կարա Արսլան իբն Դաուդ իբն Սուկմանը։ Նրանից հետո իշխեց որդին՝ Նուր ալ-Դին Ուրտուկ Շահը, որի օրոք, ինչպես և նրա հոր ժամանակ, պետական գործերի կառավարիչն էր Մուին ալ-Դին Աբդ ալ-Ռահմանը։*

# ՇԻՐՈՒԱՆ ՇԱՀԻ ՊԱՇՏՈՆԱՆԿ ԱՐՎԵԼՈՒ ԵՎ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ՝ ՎՐԱՑԻՆԵՐԻՆ ՀԱՂԹԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Շիրուան Շահի դեմ ապստամբեց որդին, հանեց նրան իշխանությունից, երկրից հեռացրեց ու նրա փոխարեն թագավորեց։*

*Բանն այն է, որ Շիրուան Շահը վատ վարքի տեր էր, ապականիչ, անարդար և հպատակների դրամն ու կալվածներն էր խլում։ Ասվում է նաև, որ կանանց ու տղաներին էր ձեռք գցում։ Նրա բռնությունները մարդկանց համար անտանելի դարձան և որոշ զորականներ, նրա որդու հետ համաձայնելով, նրան քշեցին երկրից։*

*Որդին իշխեց և լավ վերաբերմունք ցուցաբերեց ու նրան սիրեցին զորքն ու հպատակները։ Որդին իր հորը [լուր] ուղարկեց, ասելով՝ եթե կամենում ես որոշ ամրոցներ քեզ կթողնեմ, շատ ռոճիկ կտամ քեզ և ում որ կամենաս։ Այս քայլին ես դիմեցի քո վատ վարմունքի, երկրի ժողովրդի նկատմամբ անիրավության և ժողովրդի՝ քեզ ու քո տերությունը ատելու պատճառով։*

*Երբ հայրը լսեց այս բանը, գնաց վրացիների (քուրջ) մոտ, օգնություն խնդրեց, և վրացիք որոշեցին նրան զորք տալ, որի միջոցով կվերականգներ իր իշխանությունը, իսկ նա խոստացավ նրանց տալ իր երկրի կեսը։ Նրան մեծ զորք տվեցին և նա եկավ ու մոտեցավ Շիրուան քաղաքին։ Որդին զորք հավաքեց ու բացատրեց դրությունը։ Ասաց՝ երբ վրացիք պաշարեն մեզ, գուցե հաղթեն և այն ժամանակ հայրս մեզանից ոչ ոքի չի խնայի, վրացիք կվերցնեն երկրի կեսը, գուցե և ամբողջը. իսկ դա սարսափելի է։ Կարևոր է, որ մենք մեկ թափով հարձակվենք ու բախվենք նրանց հետ։ Եթե հաղթենք, փառք ալլահին, իսկ եթե նրանք մեզ հաղթեն, ապա պաշարման մեջ կընկնենք։*

*Նրանք համաձայնեցին նրա հետ և նա իր փոքրաթիվ զորքով՝ հազար ձիավոր, դուրս եկավ ու հանդիպեց վրացիներին, որոնք երեք հազար էին։ Ընդհարվեցին ու կռվեցին, Շիրուանի ժողովուրդը դիմացավ, իսկ վրացիք պարտվեցին, շատերը կոտորվեցին կամ գերի ընկան։ Ով փրկվեց, վերադարձավ ամենավատ վիճակում և նրանց հետ էր նաև գահընկեց եղած Շիրուան շահը։ Վրաց առաջնորդները ասացին նրան՝ քեզանից ոչ մի լավ բան չտեսանք, մենք քեզ չենք մեղադրում, բայց և այնպես մի մնա մեր երկրում։ Նա բաժանվեց նրանցից ու մնաց անորոշ վիճակում, չիմանալով ում մոտ ապաստանել։*

*Իսկ որդին հաստատվեց թագավորության մեջ, զորքին ու հպատակ-*

*ներին լավ վերաբերվեց, վերադարձրեց մարդկանց կալվածներն ու բռնագրավված ինչքը, և նրանք ուրախացան նրա իշխանությամբ։*

*էջ* 357—358

## ԴԱՐՁՅԱԼ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ՝ ՎՐԱՑԻՆԵՐԻՆ ՀԱՂԹԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում վրացիների (քուրջ) մի զորամաս Տփղիսից դուրս եկավ դեպի Ատրպատական և Ուզբեքի ձեռքում եղած երկրները։ Նրանք կանգ առան լեռներում մի կիրճից այն կողմ, որի միջով կարող էր անցնել միայն մեկ ձիավոր իր ձիու հետ։ Նրանք տեղավորվեցին, կարծելով, որ ապահով են մահմեդականների [հարձակումից], որոնց նրանք թույլ էին համարում և իրենց ուժեղ էին զգում, ամուր դիրքով, որն անմերձենալի էր։*

*Սակայն մահմեդականների մի զորամաս ձիեր հեծնելով դիմեց վրաց երկիրը և [այն կողմից] հասավ այդ կիրճը։ Նրանք անցան իրենց վրտանգի ենթարկելով, իսկ վրացիք սթափվեցին միայն այն ժամանակ, երբ արդեն մահմեդականները հարձակվել էին նրանց վրա և սրով կոտորում էին։ Սրանք կոտորեցին ինչպես ուզում էին, իսկ մնացյալը փախուստի դիմեց, ո՛չ հայրն էր որդուն ուշադրություն դարձնում, ո՛չ եղբայրը՝ եղբորը։ Նրանցից մի մեծ խումբ գերի ընկավ։*

*Այս բանը շատ վիրավորական էր վրացիների համար, որոնք որոշեցին իրենց վրեժը լուծել և պատրաստվեցին Ատրպատական արշավելու ու մահմեդականներին կոտորելու։ Նրանք սկսեցին պատրաստվել ըստ իրենց որոշման։*

*Այն ընթացքում, երբ նրանք զբաղված էին, լուր հասավ Ջալալ ալ-Դին իբն Խորեզմ (Խուրիզմ) Շահի՝ Մարաղա գալու մասին, ինչպես կհիշենք, եթե ալլահը կամենա։ Վրացիք հրաժարվեցին իրենց նպատակից և լուր ուղարկեցին Ատրպատականի տեր Ուզբեքին, հրավիրելով նրան համաձայնել [միասին] ետ մղելու Ջալալ ալ-Դինին։ Նրան վախեցրին վրացիք, ասելով՝ եթե մեզ հետ չհամաձայնեք, ապա նախ քո երկիրը կգրավի, հետո մերը։*

*Սակայն Ջալալ ալ-Դինը նրանց կանխեց նախքան համաձայնության գալն ու հավաքվելը և կատարվեց այն, ինչ որ հիշելու ենք, եթե ալլահը կամենա։*

Հջ 359

## ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻՑ ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Նախորդ տարիների տակ հիշել ենք, թե ինչ էին անում վրացիք (քուրջ) իսլամի երկրում՝ Խլաթում ու նրա գավառներում, Ատրպատականում, Առանում, Կաբինում (Արզան ալ-Ռում), Դարբանդ-Շիրուանում։ Սրանք նահանգներ էին, որ նրանց երկրին դրացի էին, և նրանք մահմեդականների արյունն էին թափում այդ երկրներում, հափշտակում ունեցվածքը, գրավում երկիրը, իսկ մահմեդականները գտնվում էին նրվաստացման ու ճնշման տակ։ Ամեն օր հարձակվում էին, կոտորում նրանց և ցանկացած գումարներր վերցնում նրանցից։ Ամեն անգամ, որ մենք և [բոլոր] մահմեդականներր նման բաներ էինք լսում, խնդրում էինք բարձրյալն ալլահից, որ իսլամին և մահմեդականներին տա այնպիսի մարդիկ, որոնք կպաշտպանեին նրանց և նրանց վրեժր կլուծեին։*

*Իսկ Ատրպատականի տեր Ուզբեքը զբաղված էր իր որովայնի և տռփանքի գոհացումով։ Հարբած վիճակից չէր սթափվում և եթե նույնիսկ սթափվում էր, զբաղվում էր ձվի բախտախաղով (ղումար)։ Դեռ չի լսվել, որ որևէ թագավոր զբաղված լիներ նման բանով։ Նա ոչ մի օգտակար բանով չէր զբաղվում և ոչ էլ ինքնասիրություն ուներ։ Այսպիսով, երկիրը անպաշտպան էր, զորքերը կամայականությամբ էին զբաղված, իսկ ժողովուրդը ճնշված էր։ Ով կամենար կարող էր մի զորախումբ հավաքելով երկրի որևէ մասը գրավել, ինչպես հիշեցինք Բուղդիի, Այբաք ալ-Շամիի և Իղան՝ Թայիսիի մասին։*

*Բայց բարձրյալն ալլահը այս երկրի ժողովրդին նայեց ողորմած հայացքով և գթաց, ուղարկելով այս Ջալալ ալ-Դինին*[332]*, որը շուտով կըտեսնենք, թե ինչպես հաղթեց վրացիներին և իսլամի ու մահմեդականների վրեժը լուծեց։*

*Ջալալ ալ-Դինի և վրացիների (քուրջերի) ընդհարումը տեղի ունեցավ այս տարվա Շաաբան ամսին (8 օգոստոս—5 սեպտեմբեր)։ Բանն այն է, որ առաջին օրվանից, երբ Ջալալ ալ-Դինն այս երկրներում երևաց, ասում էր՝ ես ուզում եմ հարձակվել վրաց (քուրջ) երկրի վրա, պատերազմել նրանց հետ ու գրավել նրանց երկիրը։ Հենց որ տիրեց Ատրպատականին, լուր ուղարկեց վրացիներին, հայտնելով [գալիք]պատերազմի մասին, որին նրանք պատասխանեցին՝ մեզ վրա հարձակվեցին թաթարները, որոնք [գիտես] թե ինչ արեցին քո հորը, որը թագավորությամբ ավելի հզոր էր քեզանից, ավելի շատ զորքով և ինչպես գիտես ավելի ուժեղ սրտով։ Նրանք գրավեցին ձեր երկիրր, սակայն մենք նրանց վրա ուշադրություն չդարձրինք և ի վերջո նրանք նախընտրեցին մեզ հետ խաղաղության մեջ լինել։*

Սրանք (վրացիք) սկսեցին զորք հավաքել և կուտակեցին ավելի քան յոթանասուն հազար ռազմիկ։ Նա շարժվեց նրանց դեմ ու գրավեց Դուին քաղաքը, որը վրացիներինն (քուրջ) էր և վերցրել էին մահմեդականներից, ինչպես հիշել ենք։ Այստեղից նա գնաց նրանց դեմ։ Նրանք ընդհարվեցին նրա հետ և սաստիկ ու ահավոր կռիվ տեղի ունեցավ, ընդ որում ամեն մի կողմր դիմադրեց հակառակորդին, սակայն վրացիք պարտվեցին։ Նա (Ջալալ ալ-Դինը) հրամայեց անխնա կոտորել և ոչ ոքի կենդանի չթողնել։ Ըստ մեր ստուգումների նրանցից քսան հազար կոտորվեց, ասվում է նաև, թե ավելին [կոտորվեց]։ Ասվում է նույնպես, որ բոլորը կոտորվեցին ու ցրվեցին, իսկ մեծամեծներից շատերը գերի ընկան, որոնց մեջ էր Շալուան[333]։ Այսպիսով, պարտությունը վերջնական էր։

Փախուստի դիմեց նաև Իվանեն (Իուանի)[334], որը բոլոր վրացիների (քուրջ) առաջնորդն էր, նրանց գլխավորը և զորավիգը։ Նրանք թագավոր չունեին, քանզի նրանց վրա կին էր թագավորում։ Իրավացի է ալլահի առաքյալը, երբ ասում է. «Հաջողություն չեն ունենա․ մարդիկ, որոնք կնոջ ձեռքով են ղեկավարվում»։ Երբ Իվանեն (Իուանի) փախուստի դիմեց, նրան հետապնդեցին, իսկ նա բարձրացավ իրենց ամրոցներից մեկը՝ այդ ճանապարհի վրա, և այնտեղ պատսպարվեց։ Ջալալ ալ-Դինը [զորք] թողեց, որ պաշարի և արգելի նրան իջնելուց, իսկ իր զորքերը ցրեց վրաց երկրում, որպեսզի կողոպտեն, կոտորեն, գերեվարեն ու քանդեն և եթե չլինեին Դավրեժից (Տաբրիզ) եկած լուրերը, որ նրան ստիպեցին վերադառնալ, ապա առանց դժվարության և արգելքի կգրավեր երկիրը, քանզի ժողովուրդը հյուծված էր, մի մասը սպանված, մյուս մասը գերի, իսկ մնացածը՝ փախստական։

*Էջ 359—360*

## ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԴԱՎՐԵԺ ՎԵՐԱԴԱՐՁԻ, ԳԱՆՁԱԿ ՔԱՂԱՔԸ ԳՐԱՎԵԼՈՒ ԵՎ ՈՒԶԲԵՔԻ ԿՆՈՋ ՀԵՏ ԱՄՈՒՍՆԱՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

Երբ Ջալալ ալ-Դինը վրացիներին փախուստի մատնեց ու մտավ երկիրը, այնտեղ տարածեց իր զորքերը։ Նա նրանց [զորքերին] հրամայեց այնտեղ մնալ իր եղբոր՝ Ղիաս ալ-Դինի հետ, իսկ ինքը վերադարձավ Դավրեժ (Տաբրիզ)։

Նրա վերադարձի պատճառը հետևյալն էր։ Իր վեզիր Շարաֆ ալ-Մուլքին նա թողել էր Դավրեժում, որպեսզի քաղաքը պահպանի և հպատակների գործերը վարի։ Սակայն նրան տեղեկություն հասավ, որ Դավրեժի ռաիսը[335] (պետը) և Շամս ալ-Դին ալ-Թուղրաին, որն առաջին դեմ-

քըն էր քաղաքում և այլ երևելիներ հավաքվել էին ու համաձայնել՝ չենթարկվել Ջալալ ալ-Դինին և քաղաքը վերստին հանձնել Ուզբեքին։ Ասում էին՝ Ջալալ ալ-Դինը գնացել է վրաց երկիրը, սակայն ուժը չի պատի նրանց։ Եթե Ուզբեքն ու վրացիք միաբանեն ու հարձակվեն նրա վրա, նրա գործերը կփչանան ու կպարտվի։ Նրանք այնպես էին հաշվել, որ Ջալալ ալ-Դինը դանդաղ կընթանա դեպի վրաց երկիրը, զգուշության համար հաճախ կանգ առնելով։

Երբ այս բանը որոշել էին, լուրը հասավ վեզիրին, որը Ջալալ ալ-Դինին տեղեկացրեց վիճակի մասին։ Նրան (Ջալալ ալ-Դինին) լուրը հասավ այն ժամանակ, երբ արդեն մոտեցել էր վրաց երկրին, սակայն նա ոչինչ ցույց չտվեց, շուտափույթ շարժվեց վրացիների դեմ, ընդհարվեց ու պարտություն մատնեց նրանց։ Երբ վերջացրեց, ասաց իր զորքի ամիրներին՝ տեղեկացել եմ այսպես և այսպես։ Դուք մնացեք ու շարունակեցեք անել այն, ինչ անում էիք, կոտորեցեք, ում որ բռնեք և ավերեցեք նրանց երկիրը, ինչքան կարող եք։ Ես զգուշացա այն հայտնել ձեզ, նախքան վրացիների պարտությունը, որպեսզի ձեզ չպատի թուլությունն ու վախը։

Նրանք մնացին նույն վիճակում, իսկ ինքը վերադարձավ Դավրեժ, ձերբակալեց ռաիսին, ալ-Թուղրաիին և այլոց։ Հրամայեց ռայիսին ման ածել քաղաքում և ով նրանից անիրավություն էր տեսել, թույլատրեց որ սիրտը հովացնի, իսկ վերջինս իրոք անիրավ էր եղել։ Մարդիկ խիստ ուրախացան այս բանի համար և ապա նա սպանեց նրան։ Մնացածներին բանտարկեց և երբ այս գործն ավարտել էր ու քաղաքում կարգ ու կանոն հաստատել, ամուսնացավ սուլթան Թուղրուլի դստեր՝ Ուզբեքի կնոջ հետ։ Այս ամուսնությունը (նիքահ) օրինավոր էր, քանի որ հաստատված էր, թե Ուզբեքը երդվել էր նրան ապահարզան (թալակ)[336] տալ, եթե ինքն սպաներ իր մամլուքին, որի անունն էր ... որին, սակայն, հետո սպանեց։

Երբ ապահարզանը այս երդումի շնորհիվ իրականացավ, Ջալալ ալ-Դինը ամուսնացավ և որոշ ժամանակ Դավրեժում մնալուց հետո, զորքը տարավ դեպի Գանձակ (Քանջա) քաղաքը, գրավեց, իսկ Ուզբեքը հեռացավ, մտավ Գանձակի բերդը և ամրացավ։ Լսել եմ, որ Ջալալ ալ-Դինի զորքը կողոպտել էր այս բերդի շրջակայքը ու խլել [մարդկանց] ունեցվածքը։ Ուզբեքը լուր ուղարկեց Ջալալ ալ-Դինին, բողոքելով և ասաց՝ այս բանը թույլ չէի տա նույնիսկ իմ բարեկամներին, ես խնդրում եմ ետ քաշել այս շրջանի վրա երկարող ձեռքերը։ Ջալալ ալ-Դինը զորք ուղարկեց, որպեսզի [բերդը] պահպանեն թե՛ իր մարդկանցից, թե՛ ուրիշների ոտնձգությունից։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆԵՐԵՔ ԹՎԱԿԱՆ

(2 հունվար 1226—21 դեկտեմբեր 1226)

*էջ 366—367*

### ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ՝ ՏՓՂԻՍԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Ռաբի Ա ամսին (2 մարտ—31 մարտ), Ջալալ ալ-Դին իրն Խորեզմ (Խուարիզմ) Շահը վրացիներից (քուրջ) գրավեց Տփղիս քաղաքը։*

*Սա տեղի ունեցավ հետևյալ ձևով։ Մենք արդեն հիշատակել ենք վեց հարյուր քսաներկու թվականի պատերազմը նրա ու նրանց (վրաց) միջև և նրանց (վրաց) պարտությունն ու նրա վերադարձը Դավրեժ (Տաբրիզ) այնտեղ պատահած խռովության պատճառով։ Երբ Ատրպատականում կարգ հաստատեց, վերադարձավ վրաց երկիրը այդ տարվա Զու-լ-Հիջջա ամսին (4 դեկտեմբեր 1225—1 հունվար 1226), և այդ տարին լրացավ ու հասավ վեց հարյուր քսաներեք թվականը. նա հարձակվեց նրանց երկրի վրա։ Սրանք կրկին զորք էին հավաքել և կուտակել էին իրենց դրացի ազգերի՝ ալանների, լազերի, ղփչաղների և այլոց [զորքերը]։ Նրանք հավաքվեցին անհամար բազմությամբ, և սա համարձակություն տվեց նրանց ու սուտ երազներով իրենք իրենց խաբեցին։ Սատանան նրանց հաղթանակ խոստացավ, իսկ «սատանան (շեյթանը) կտա միայն սուտ խոստումներ» (Ղուրան, Դ, 119)։ Նա (Ջալալ ալ-Դինը) տարբեր տեղերում նրանց համար դարան սարքեց։ Նրանք հանդիպեցին, ընդհարվեցին և վրացիք փախուստի դիմեցին, ընդ որում եղբայրը մոռացել էր եղբորը և հայրը որդուն, ամեն մեկին իր անձն էր հետաքրքրում։ Մահմեդականների սուրը ամեն կողմից չարդեց նրանց և շատ քչերը միայն ազատվեցին։*

*Ջալալ ալ-Դինը հրամայեց ոչ ոքի չխնայել և բոլորին կոտորել ու հետապնդել փախստականներին։ Նրա մերձավորները խորհուրդ տվեցին հարձակվել նրանց թագավորի նստավայր Տփղիսի վրա, սակայն նա ասաց՝ (առայժմ) կարիք չկա, որ մեր զինվորներին պարիսպների տակ կոտորենք, իսկ երբ ոչնչացնեմ վրացիներին, այն ժամանակ երկիրը կգրավեմ առանց դժվարության։ Զորքերը հետապնդեցին նրանց և հալածեցին, մինչև որ գրեթե ոչնչացրին։ Այդ ժամանակ նա գնաց Տփղիս և բանակ դրեց նրա մոտ։*

*Մի օր նա իր զորքի մի մասի հետ մոտ գնաց [քաղաքին], դիտելու և որոշելու հարձակման ու կռվի կետերը։ Երբ մոտեցավ, իր հետ եղած*

զորքի մեծ մասը տարբեր վայրերում դարանակալ պահեց, իսկ ինքը մոտավորապես երեք հազար ձիավորով առաջ շարժվեց։ Երբ այնտեղ [քաղաքում] գտնվող վրացիք նրան տեսան, համարձակություն ստացան, կարծելով, որ նրա հետ քիչ զորք կա։ Չգիտենալով մյուսների (դարանակալ եղածների) մասին, նրանք դուրս եկան ու կռվի բռնվեցին, իսկ նա (Ջալալ ալ-Դինը) նահանջեց և նրանք ավելի համարձակ դարձան, կարծելով, որ նահանջում է, ու հետապնդեցին։ Երբ [դարանակալ] զորքերի եղած վայրերի մեջտեղում էին, վերջիններս դուրս եկան և սրի քաշեցին նրանց, ընդ որում մեծ մասը կոտորվեց, իսկ մնացածները փախան ու մտան քաղաք։ Մահմեդականները հետապնդեցին նրանց և երբ քաղաքին մոտեցան, [քաղաքի] մահմեդականները իսլամի նշանաբանը[337] գոռացին և Ջալալ ալ-Դինի անունը տվեցին։ Վրացիք հուսալքվեցին և հանձնվեցին, քանզի նրանց զորքերը վերոհիշյալ ճակատամարտերում [մեծ մասամբ] կոտորվել էին, նրանց թիվը նվազել էր, իսկ նրանց սրտերը ահով ու վախով էին լցված։

Մահմեդականները քաղաքը սրով և ուժով նվաճեցին, առանց երաշխավորագիր (աման) տալու, կոտորեցին այնտեղ եղած բոլոր վրացիներին՝ չթողնելով ոչ մեծի, ոչ փոքրի, բացի նրանցից, որոնք ընդունեցին մահմեդականությունը և վկայության (շիհադա)[338] երկու խոսքն արտասանեցին։ Այսպիսիներին [Ջալալ ալ-Դինը] հրամայեց թլփատել և նրանց ձեռք չտվեցին։ Մահմեդականները կողոպտեցին [վրացիների] ունեցվածքը, գերեվարեցին կանանց, ստրկացրին երեխաներին։ Մի քիչ վնաս կրեցին նաև տեղի մահմեդականները, ոմանք կոտորվեցին, ուրիշներ կողոպտվեցին և այլն։

Տփղիս [քաղաքը] երկրի ամենալավ պաշտպանված ու անառիկ քաղաքներից է, գտնվում է Կուր գետի երկու կողմերին, որը մեծ գետ է։ Այս նվաճումը մեծ ու կարևոր նշանակություն ուներ իսլամի երկրներում ու բոլոր մահմեդականների համար, քանզի մինչ այդ վրացիք (քուրջ) նեղն էին գցել [մահմեդականներին] և իրենց ուզածն անում էին։ Նրանք ասպատակում էին Ատրպատականի իրենց ցանկացած մասը և ոչ ոք չէր դիմադրում կամ ետ մղում նրանց։ Նույնը անում էին նաև Կարնո (Արզան ալ-Ռումի) երկրում, այն աստիճանի, որ նրա տերը հագավ վրաց թագավորի պարգևած պատմուճանը (խիլա), իր գլխի վրա բարձրացրեց մի դրոշ, որի վերջին մասում խաչ կար, իսկ որդին քրիստոնեություն ընդունեց, որպեսզի ամուսնանա վրաց թագուհու հետ, ինչպես պատմել ենք, վախենալով նրանցից ու կամենալով կանխել նրանց չարագործությունները։ Նույն բանը կատարվեց նաև Դարբանդ-Շիրվանում։ Նրանց ուժը այնքան մեծացավ, որ Իկոնիայի, Ակսարայի, Մալաթիայի ու Ռումի

երկրում մահմեդականներին ենթակա բոլոր երկրների տեր Ռուքն ալ-Դին իբն Կիլիջ Արսլանը հավաքեց իր զորքը և բերեց նաև մեծ թվով այլ զորքեր ու գնաց Կարնո (Արզան ալ-Ռում) կողմը, որը նրա եղբորը Թուղրիլ Շահ իբն Կիլիջ Արսլանին էր պատկանում, սակայն եկան վրացիք, փախուստի մատնեցին նրան և դաժան վերաբերվեցին թե՛ նրան, թե՛ նրա զորքերին։ Նույն թշվառության և նեղության մեջ էին նաև, ինչպես ասվեց, Դարբանդ-Շիրվանի բնակիչները։ Իսկ Հայաստանում վրացիք (քուրջ) մտան Արճեշ (Արջիշ) քաղաքը, գրավեցին Կարսը և այլ վայրեր, պաշարեցին Խլաթը և եթե շնորհիվ ալլահի ողորմածության վրաց բանակի հրամանատար Իվանեն (Իուանի) գերի չընկներ, ապա կգրավեին [Խլաթը]։ Բնակիչները ստիպված եղան ամրոցում եկեղեցի կառուցել, ուր զանգ էին հնչեցնում, որից հետո նրանք (վրացիք) հեռացան այնտեղից։ Այս բոլորը նախապես մանրամասն պատմել ենք։ Այս ամրացված երկիրը (Սաղր) դեռ նախքան իսլամը հարևան պարսիկների համար, իսկ հետո իսլամի երևան գալու սկզբից մինչև օրս նաև հարևան մահմեդականների համար ամենավտանգավոր երկրներից է և ոչ ոք չէր համարձակվում նրանց դեմ դուրս գալ այս ձևով (Ջալալ ալ-Դինի նման) և ոչ էլ արել էր այն, ինչ որ նա (Ջալալ ալ-Դինը) արեց։

Վրացիք գրավել էին Տփղիսը (Տաֆլիս) հինգ հարյուր տասնհինգ թվականին (1121—1123), երբ սուլթանն էր Մահմուդ իբն Մուհամմադ իբն Մալիք Շահ ալ-Սալջուկին, որն ամենամեծ դիրքի տեր սուլթաններից էր, ամենաընդարձակ թագավորությամբ և ամենաշատ զորքերով։ Այսուհանդերձ նա չկարողացավ ետ մղել նրանց՝ հակառակ իր երկրի ընդարձակության։ [Լայնատարած էր], քանզի նրան էին պատկանում Ռեյը իր գավառներով, Ջաբալը, Ֆարսը, Խուզիստանը, Իրաքը, Ատրպատականը, Առանը, Հայաստանը, Դիար Բաքրը, Ջազիրան, Մոսուլը, Ասորիքը (Շամ) և այլ երկրներ, իսկ նրա հորեղբայր սուլթան Սինջարը ուներ Խորասանն ու Մավարաննահրը։ Այսպիսով, իսլամի երկրների մեծամասնությունը նրանց ձեռքում էր, այսուհանդերձ նրանց՝ [Տփղիսը] գրավելուց հետո, երբ նա հինգ հարյուր տասնինը թվին զորք հավաքեց ու շարժվեց նրանց դեմ, չկարողացավ հաղթել։ Նրանից հետո իշխեց նրա եղբայր սուլթան Մասուդը, որը նույնպես [անկարող գտնվեց]։ Ապա Իլդիգուզը իշխեց Ջաբալ, Ռեյ, Ատրպատական և Առան [երկրներում], նրան ենթարկվեցին Խլաթի, Ֆարսի և Խուզիստանի տերերը։ Նա զորք հավաքեց, սպառազինեց, սակայն [կռվում] հազիվ ազատվեց նրանցից (վրացիներից)։ Ապա նույնը կատարվեց նրա որդու՝ ալ-Բահլավանի օրոք։ Նրանց ժամանակ երկիրը ուներ հարստություն և շատ զորք, սակայն նրանք չէին անհան-

գըստանում նրանց (վրացիներին) հաղթելու հարցով։ Վերջապես եկավ այս սուլթանը (Ջալալ ալ-Դինը), իսկ երկիրը ավերակ էր, քանզի այն թուլացրել էին նախ վրացիք, ապա այն ավերել էին, ինչպես հիշել ենք, թաթարները, ալլահի անեծքը նրանց վրա, իսկ սա (Ջալալ ալ-Դինը) կատարեց այս գործերը։

էջ 367—368

## ՔԻՐՄԱՆԻ՝ ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ ԴԵՄ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՈՒ ՆՐԱ ԳԱԼՍՏՅԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Ջումադա Բ ամսին (30 մայիս—27 հունիս), լուր հասավ Ջալալ ալ-Դինին, որ իր նաիբը (տեղակալը) Քիրմանում, որը Բալակ Հաջիբ կոչված մի մեծ ամիր էր, ապստամբել է նրա դեմ, ցանկացել է երկիրը գրավել ու բռնանալ, քանզի, ինչպես հիշեցինք, Ջալալ ալ-Դինը հեռվում էր, զբաղված էր վրացիներով և ուրիշներով։ Սա (նաիբը) լուր ուղարկեց թաթարներին տեղեկացնելով Ջալալ ալ-Դինի ուժի և նրա շատ երկրներ գրավելու մասին և [զգուշացնելով], որ եթե մնացած երկրներն էլ գրավի, նրա թագավորությունը կմեծանա, զորքը կբազմապատկվի, ձեզ վրա կհարձակվի ու կգրավի ձեր ունեցած երկրները։

Ջալալ ալ-Դինը այս բանը լսեց այն ժամանակ, երբ արդեն ճանապարհ էր ընկել Խլաթ գնալու համար, սակայն թողեց այն և քայլեց դեպի Քիրման, իր հետ տանելով պատմուճաններ (խիլա), որպեսզի [Քիրմանի նաիբը] չզգուշանա և ոչ մի բանից չկասկածելով իր մոտ գա։

Երբ նրա դեսպանը հասավ, նա (նաիբը) հասկացավ, որ ծուղակ է պատրաստված, քանզի դիտեր [Ջալալ ալ-Դինի] սովորությունը։ Նա վերցրեց ինչ արժեքավոր բան որ ուներ և բարձրացավ մի անառիկ բերդ ու ամրացավ, իսկ մյուս բերդերում թողեց վստահելի մարդկանց։ Նա լուր ուղարկեց Ջալալ ալ-Դինին, ասելով՝ ես քո ստրուկն եմ ու մամլուքը և երբ լսեցի քո գալստյան մասին, երկիրը թողեցի, քանի որ քոնն է և եթե իմանամ, որ ինձ կթողնես իմ [պաշտոնին], կգամ քո դուռը, սակայն վախենում եմ։ Այս ընթացքում դեսպանը երդվում էր նրան, թե Ջալալ ալ-Դինը Տփղիսում է, իսկ սա ուշադրություն չէր դարձնում։

Դեսպանը վերադարձավ, և Ջալալ ալ-Դինը հասկացավ, որ ինքը չի կարող նրա (նաիբի) ձեռքում եղած բերդերը վերցնել, քանզի ստիպված պիտի լիներ երկար ժամանակ պաշարել։ Նա կանգ առավ Սպահանի մոտ և նրան պատմուճաններ ուղարկելով՝ հաստատեց կառավարիչի (պաշտոնում)։

Մինչ դեսպանները գնում գալիս էին (Ջալալ ալ-Դինի ու նաիբի միջև), Տփղիսից հասավ Ջալալ ալ-Դինի սուրհանդակը, որը տեղեկացնում էր, թե ալ-Մալիք ալ-Աշրաֆի՝ Խլաթում եղած զորքը նրա զորքի մի մասին պարտության է մատնել ու ջարդել։ Նա համոզում էր նրան (Ջալալ ալ-Դինին) վերադառնալ Տփղիս և սա շտապույթ վերադարձավ։

էջ 368

## ԱՇՐԱՖԻ ԶՈՐՔԻ ՈՒ ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ ԶՈՐՔԻ ՄԻՋԵՎ ԿՌՎԻ ՄԱՍԻՆ

Երր Ջալալ ալ-Դինը գնացել էր Քիրման, Տփղիս քաղաքում զորք էր թողել իր վեզիր Շարաֆ ալ-Մուլքի հետ։ Սրանց պարենը պակասել էր և ահա [որոշել էին] արշավել Կարնո (Արզան ալ-Ռում) գավառները, հասել ու կողոպտել էին, գերեվարել կանանց, մեծ և անչափ ավար վերցրել ու վերադարձել։ Նրանց ճանապարհը անցնում էր Խլաթ նահանգի վրայով և ահա Աշրաֆի նաիբը (տեղակալը) Խլաթում՝ հաջիբ (սենեկապետ) Հուսամ ալ-Դին Ալի ալ-Մաուսիլին լսելով զորք էր հավաքել, շարժվել նրանց կողմը, հաղթել էր նրանց, վերցրել նրանց ձեռքում եղած ավարը և իր զորքի հետ անվնաս վերադարձել։

Երբ այս բանը պատահեց, Ջալալ ալ-Դինի վեզիրը վախեցավ ու լուր ուղարկեց Քիրման՝ իր տիրոջը տեղեկացնելով վիճակի մասին և համոզելով այստեղ գալ, վախեցնելով, որ ուշացման դեպքում դրությունը վտանգավոր կլինի։ Սա վերադարձավ և տեղի ունեցավ այն, ինչի մասին խոսելու ենք։

էջ 369

## ՔԱՅ ԿՈՒԲԱԴԻ ԵՎ ԱՄԻԴԻ ՏԻՐՈՋ ՄԻՋԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Շաբան ամսին (28 հուլիս—25 օգոստոս 1226), Ռումի թագավոր Ալա ալ-Դին Քայ Կուբադ իբն Քայ Խուսրաու իբն Կիլիջ Արսլանը շարժվեց դեպի Ամիդի տեր Մալիք Մասուդի երկիրը և տիրեց նրա բազում բերդերին։

Բանն այն է, որ, ինչպես նշել ենք, Ամիդի տերը համաձայնել էր Ջալալ ալ-Դին Խորեզմ (Խուրիզմ) Շահի, Դամասկոսի տեր ալ-Մալիք ալ-Մուազզամի և այլոց հետ Աշրաֆի դեմ դուրս գալու համար։ Երբ Աշրաֆն այս բանը տեսավ, լուր ուղարկեց Ռումի թագավոր Քայ Կուբա-

դին, որը նրա դաշնակիցն էր, նրանից խնդրելով հարձակվել Ամիդի տիրոջ երկրի վրա և պատերազմել նրա դեմ։ Աշրաֆն այդ ժամանակ Մարդինի մոտ էր։

Ռումի թագավորը շարժվեց դեպի Մալաթիա, որը նրան էր պատկանում և այնտեղ կանգ առավ։ Նա զորքեր ուղարկեց Ամիդի տիրոջ գավառները և նրանք դրավեցին Հիսն (բերդ) Մանսուրը և Ջմշկածագի (Շիմիշքազագ, Շիմքազագ)[339] բերդը և այլ վայրեր։ Երբ Ամիդի տերը այս բանն իմացավ, գրեց Աշրաֆին և կրկին հաշտվեց նրա հետ։ Աշրաֆը լուր ուղարկեց Քայ Կուբադին, տեղեկացնելով կատարվածի մասին և ասաց, որ Ամիդի տիրոջը վերադարձնի ինչ որ վերցրել էր նրանից։ Սակայն նա այդ բանը չարեց, ասելով՝ ես Աշրաֆի տեղակալը (նաիբ) չեմ, որ ինձ հրամայի կամ արգելի։

էջ 369—371

## ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԿԱՐՍ ԵՎ ԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐԻ ՊԱՇԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում (1226), Ռամադան ամսին (26 օգոստոս—24 սեպտեմբեր), Ջալալ ալ-Դինը, ինչպես հիշեցինք, վերադարձավ Քիրմանից Տըփղիս (Տաֆլիս) և այնտեղից գնաց Անի քաղաքը, որը վրացիներին (քուրջ) էր [պատկանում]։ Այնտեղ էր վրաց (քուրջ) բանակի հրամանատար Իվանեն (Իուանի) իր հետ մնացած մյուս մեծամեծների հետ։ Նա (Ջալալ ալ-Դինը) պաշարեց և զորքի մի մասը ուղարկեց Կարս քաղաքը, որը նույնպես վրացիներինն (քուրջ) էր։ Դրանք երկուսն էլ այդ երկրի ամենաամուր և անառիկ բերդերից են։ Նա եկավ, պաշարեց, կռիվ մղեց այնտեղ եղած [զորքերի] հետ։ Նա քարանետ մեքենաներ դրեց և համառ պայքար սկսեց երկուսի համար էլ։

Վրացիք (քուրջ) լավ պաշտպանեցին այն և մեծ ջանքեր թափեցին պահպանելու համար, վախենալով, որ իրենց հետ կանեն այն, ինչ որ նախապես արել էին իրենց հավատակիցների հետ Տփղիսում։ Նա (Ջալալ ալ-Դինը) մնաց այնտեղ մինչև որ Շավվալ ամսի (25 սեպտեմբեր—24 հոկտեմբեր) մի մասն անցավ. ապա զորքի մի մասը թողեց երկուսն էլ պաշարելու համար, ինքը վերադարձավ Տփղիս, իսկ Տփղիսից շուտափույթ գնաց Աբխազաց երկրի և վրաց մնացորդների դեմ, հարձակվեց նրանց զորքերի վրա, կոտորեց, կողոպտեց, գերեվարեց ու ավերեց երկիրը, հրկիզեց և ամեն ինչ ավարի տալով, նրա զորքը վերադարձավ Տփղիս։

էջ 370

## ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԽԼԱԹԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Արդեն հիշատակեցինք, որ Ջալալ ալ-Դինը Անի քաղաքից վերադարձավ Տփղիս, մտավ Աբխազաց երկիրը։ Նրա գալը ռազմական խորամանկություն էր, քանզի նրան տեղեկացրել էին, որ ալ-Մալիք ալ-Աշրաֆի նաիբը (փոխանորդը)՝ հաջիբ Հուսամ ալ-Դին Ալին Խլաթում պատրաստվել էր, միջոցներ ձեռք առել ու ամրացրել էր քաղաքը նրա (Ջալալ ալ-Դինի) մոտիկ լինելու պատճառով։ Նա վերադարձավ Տփղիս, որպեսզի Խլաթի բնակիչները ապահով զգան, թողնելով զգուշությունն ու աչալրջությունը և այն ժամանակ ինքը կհարձակվեր հանկարծակի կերպով։ Աբխազաց երկրում նրա մնալը տասը օր տևեց։ Նա վերադարձավ, ըստ իր սովորության արագ ընթանալով և․ եթե նրա մոտ չլինեին այնպիսի մարդիկ, որ տեղեկացրին Աշրաֆի նաիբներին, ապա ինքը [իրոք] անակնկալի կբերեր նրանց։ Սակայն նրա մոտ կային [Աշրաֆին] վստահությունը վայելող մարդիկ, որոնք տեղեկացրին ու գրեցին, զգուշացնելով նրան։ Լուրը հասավ Ջալալ ալ-Դինի հասնելուց երկու օր շուտ։ Նա Մանազկերտ (Մալազքիրդ) քաղաքի մոտ իջավ շաբաթ օրը՝ Զու-լ-Կադա ամսի տասներեքին (6 նոյեմբեր), ապա գնաց ու կանգ առավ Խլաթ քաղաքի մոտ երկուշաբթի օրը, նույն ամսի տասնհինգին (8 նոյեմբեր)։ Ապա անմիջապես հարձակվեց և սաստիկ կռիվ տեղի ունեցավ նրա ու քաղաքի բնակիչների միջև։ Նրա զորքը հասավ քաղաքի պարսպին, սակայն շատերը սպանվեցին, ապա երկրորդ անգամ հարձակվեց և խիստ ընդհարվեց քաղաքի բնակիչների հետ։ Զորքը մեծ վնաս պատճառեց Խլաթի բնակիչներին, հասավ քաղաքի պարսպին, մտավ նրա արվարձանը և սկսեց կողոպտել, հափշտակելով կանանց։ Երբ Խլաթի ժողովուրդը այս բանը տեսավ, վրդովվեց և մարդիկ սկսեցին իրար ոգևորել, վերադարձան [հարձակվող] զորքի կողմը, կռվեցին ու նրանց դուրս քշեցին քաղաքից։ Շատերն սպանվեցին և խորեզմցիների զորքը գերի վերցրեց Խլաթի ամիրների մի խումբ, որոնցից շատերին սպանեց։ Սակայն Հաջիբ Ալին իջավ ձիուց, կանգնեց թշնամու դեմ-դիմաց և մեծ ջարդ տվեց։

Ապա Ջալալ ալ-Դինը, մի քանի օր հանգստանալուց հետո, կրկնեց հարձակումը նախկին օրվա նման։ Սակայն (խլաթեցիք) կռվեցին ու զորքը հեռացրին քաղաքից։ Խլաթի բնակիչները համառ կերպով, քաջաբար կռվում էին, պաշտպանելով իրենց անձը, քանի որ տեսան խորեզմցիների վատ վերաբերմունքը, քաղաքի կողոպուտը և նրանց անբարոյական վարմունքը։ Նրանք կռվում էին հանուն իրենց անձի, կանանց և ունեցվածքի։

Նա մնաց այնտեղ, մինչև որ ցուրտը ուժեղացավ ու մի քիչ ձյուն եկավ և ապա հեռացավ նույն տարվա Զու-լ-Հիջջա ամսի վերջից յոթ օր մնաց (14 դեկտեմբեր), երեքշաբթի օրը։ Նրա հեռանալու պատճառը բացի ձյունից վախենալուց նաև այն էր, որ լուրեր էին հասել, թե Իվաի թուրքմենները ապականություն էին սփռել իր երկրում։

էջ 370—371

## ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԻՎԱԻ ԹՈՒՐՔՄԵՆՆԵՐԻՆ ՀԱՂԹԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Իվաի (Իուաիյյա) թուրքմենները Ատրպատականում գրավել էին Աշտար և Ուրմիա քաղաքները ու հարկ (խարաջ) էին վերցրել Խոյի (Խուայյ) բնակիչներից, որպեսզի նրանց հանգիստ թողնեն։ Նրանք օգտվեցին այն առիթից, որ Ջալալ ալ-Դինը զբաղված էր վրացիներով, իսկ հետո նաև Խլաթով, և այսպիսով ուժեղացավ նրանց ագահությունը, տարածվեցին Ատրպատականում, կողոպտելով ու ճանապարհները կտրելով։ Լուրերը հասնում էին Ջալալ ալ-Դինին, սակայն նա կարևորություն չէր տալիս, քանի որ իր կարծիքով ավելի կարևոր գործով էր զբաղված։

Նրանց ագահությունը այնտեղ հասավ, որ նրանք ճանապարհ կտրեցին հենց Դավրեժի (Տաբրիզ) մոտ և նրա վաճառականներից շատ բան խլեցին։ Սրանք (վաճառականները) Կաբինում (Արզան ալ-Ռում) ոչխար էին գնել ու տանում էին Դավրեժ և ահա իվաիները, նախքան Դավրեժ հասնելը հանդիպելով նրանց, խլեցին այն ամենը, ինչ ունեին և, ի միջի այլոց, քսան հազար գլուխ ոչխար։ Երբ այս բանը մարդկանց համար անտանելի դարձավ և չարիքը մեծացավ, Ջալալ ալ-Դինի կինը՝ սուլթան Թուղրիլի դուստրը ու երկրում նրա տեղակալները (նաիբ) լուր ուղարկեցին նրան, օգնության կանչելով և տեղեկացնելով, որ իվաիները երկիրը ավերել են և եթե [նա] չհասնի, ապա լրիվ կկործանվի։

Եվ քանի որ սրան զուգադիպեց [Ջալալ ալ-Դինի] վախը ձյունից, նա հեռացավ Խլաթից ու գնաց իվաիների դեմ, իսկ վերջիններս իրենց վստահ և ապահով էին զգում, քանի որ գիտեին, թե Խորեզմ Շահը Խլաթով է զբաղված և կարծում էին, թե նա այնտեղից չի կարող հեռանալ։ Եթե այդ ինքնավստահությունը չլիներ, նրանք կարող էին ապաստանել իրենց անառիկ, բարձրաբերձ լեռներր, ուր բարձրանալը խիստ դժվար էր։ Պատահել էր, որ որևէ բանից վախենալիս նրանք բարձրացել էին և պատսպարվել։

Սակայն [այս անգամ] նրանք չսթափվեցին, մինչև որ Ջալալ ալ-

Դինի զորքերը շրջապատեցին նրանց, ամեն կողմից սրի քաշեցին, խիստ կոտորեցին, կողոպտեցին, գերեվարեցին, կանանց ու երեխաներին ստրըկացրին։ Նրանք այնտեղից տարան անհաշիվ բարիքներ, որոնց մեջ էին նաև շատ ապրանքներ, որ նրանք (թուրքմենները) վաճառականներից էին խլել, գեռ հակերի (կապոցների) մեջ, չբացված վիճակում։ Երբ այս գործը վերջացրեց, [Ջալալ ալ-Դինը] վերադարձավ Դավրեժ։

էջ 371

## ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՄՈՒԱԶԶԱՄԻ ՈՒ ԱՇՐԱՖԻ ՄԻՋԵՎ

Կսկսենք պատմելով նրանց տարակարծությունների պատճառի մասին։ Երբ մեռավ ալ-Մալիք ալ-Ադիլ Աբու Բաքր իբն Այյուբը, նրա որդիները իրար հետ համերաշխ էին, այսինքն Եգիպտոսի տեր ալ-Մալիք ալ-Քամիլ Մուհամմադը, Դամասկոսի, Երուսաղեմի և հարակից նահանգների տեր ալ-Մալիք ալ-Մուաղզամ Իսան և Ջազիրայի ու Խլաթի տեր ալ-Մալիք ալ-Աշրաֆ Մուսան, և նրանք համաձայնել էին դուրս քշելու ֆըրանկներին Եգիպտոսից։ Մուաղզամը երկու անգամ գնաց իր եղբոր Աշրաֆի մոտ Ջազիրա, օգնություն խնդրելու ֆրանկների դեմ և համոզելու, որ օգնության հասնի իր եղբորը՝ Քամիլին։ Նա մնաց, մինչև որ համոզեց և նրանք միասին գնացին Եգիպտոս և ետ մղեցին ֆրանկներին։

Աշրաֆը նեղ վիճակում էր այն բանի պատճառով, որ Ջալալ ալ-Դինը հարևան էր Խլաթի նահանգին, իսկ Մուազզամը Դամասկոսում խանգարում էր Եգիպտոսի, Հալեբի և Ասորիքի այլ վայրերի զորքերի նրան օգնության գալուն։ Աշրաֆը գնաց իր եղբոր՝ Մուազզամի մոտ Դամասկոս Շավվալ ամսին (25 սեպտեմբեր—23 հոկտեմբեր), սիրաշահեց նրան և հաշտվեց նրա հետ։ Երբ Քամիլը լսեց, վիրավորվեց, կարծելով, թե նրանց համաձայնությունն իր դեմ է, սակայն նրանք երկուսով գրեցին ու տեղեկացրին, թե Ջալալ ալ-Դինը հարձակվել է Խլաթի վրա և դրության լրջությունը բացատրեցին ու նշեցին, որ Ադիլյան տան հզորության համար անհրաժեշտ է համերաշխ լինել։

էջ 371—372

## ՖՐԱՆԿՆԵՐԻ ՈՒ ՀԱՅԵՐԻ ՄԻՋԵՎ ԽՌՈՎՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Այդ տարում Անտիոքի տեր ֆրանկ Բրինսը[340] (իշխան) հավաքեց մեծ զորք և շարժվեց հայերի դեմ, որոնք Իբն Լայունի (Լևոնի որդու) երկրի կիրճերում էին [ամրացած] և նրանց միջև սաստիկ պատերազմ տեղի ունեցավ։

Բանն այն է, որ կիրճերի տեր հայազգի Լևոնի որդին (իբն Լայուն ալ-Արմանի) դրանից առաջ մահացել էր առանց արու զավակ թողնելու, այլ ուներ մի դուստր և հայերը նրան թագուհի դարձրին[341]։ Ապա համոզվելով, որ թագավորությունը չի կարող կնոջ ձեռքով կառավարվել, նրան ամուսնացրին [Անտիոքի] բրինսի որդու հետ։ Սա ամուսնացավ, տեղափոխվեց նրանց երկիրը ու մի տարի մնաց թագավորության մեջ։ Ապա նրանք (հայերը) զղջացին այդ բանի համար, վախենալով, որ ֆրանկները կարող են իրենց երկիրը գրավել։ Նրանք ապստամբեցին բրինսի որդու դեմ, ձերբակալեցին նրան ու բանտարկեցին։ Հայրը լուր ուղարկեց, պահանջելով, որ նա ազատ արձակվի ու հաստատվի թագավորության մեջ, սակայն նրանք (հայերը) այդ [պահանջը] չկատարեցին։

Նա լուր ուղարկեց մեծ Հռոմում (Ռումիա) ֆրանկների թագավոր պապին (Բաբա), թույլտվություն խնդրելով հարձակվել նրանց երկրի վրա, իսկ այս Հռոմի թագավորի հրամանը ֆրանկների մոտ երբեք չի մերժվի։ Սակայն սա արգելեց նրան հարձակվել, ասելով՝ նրանք մեր համայնքին (միլլատ) պատկանող ժողովուրդ են և չի կարելի նրանց երկրի վրա հարձակվել։ Սա (բրինսը) չուզեց հնազանդվել ու լուր ուղարկեց Իկոնիայի (Կունիա), Մալաթիայի ու դրանց միջև գտնվող երկրների թագավոր Ալա ալ-Դին Քայ Կուբադին, հաշտություն առաջարկեց և նրան համոզեց հարձակվել Լևոնի որդու երկրի վրա և այդ բանի համար նրա համաձայնությունը վերցրեց։ Նրանք պայմանավորվեցին այդ նպատակի համար և բրինսը զորք հավաքեց, որպեսզի հարձակվի Հայոց երկրի (Բիլադ ալ-Արման) վրա, սակայն ալ-Դաուիյա[342] և ալ-Ասբիտար (հյուրընկալ) ասպետները, որոնք ֆրանկների եռանդուն ռազմիկներն են, ասացին, որ Հռոմի թագավորը մեզ այդ բանն արգելեց։ Սակայն եղան ուրիշներ, որոնք հնազանդվեցին նրան (բրինսին) և մտան Հայոց երկրի սահմանները։ Այնտեղ քարքարոտ կիրճեր ու լեռներ էին և նա չկարողացավ իր ուզածն անել։

Իսկ Քայ Կուբադը Հայոց երկիրը մտավ իր կողմից, քանզի այստեղից մտնելն ավելի հեշտ էր, քան Ասորիքի կողմից։ Նա մտավ վեց հարյուր քսաներկու թվականին (13 հունվար 1225—1 հունվար 1226), կողոպտեց, վառեց, բազմաթիվ բերդեր պաշարեց. որոնցից չորսը գրավեց, սակայն ձմեռը վրա հասավ ու նա այնտեղից վերադարձավ։

Երբ Հռոմում (Ռումիա) ֆրանկների թագավորը (պապը) լսեց, լուր ուղարկեց Անտիոքի ֆրանկներին, հայտնելով, թե ինքը բրինսին բանադրբել էր [այդ բանի համար]։ Ալ-Դաուիյա (տաճարական) և ալ-Ասբիտարիյա (հյուրընկալ) և շատ ուրիշ ասպետներ նրա մոտ չէին ներկայանում ու նրա խոսքը չէին լսում, իսկ երբ իրեն հպատակ Անտիոքի ու Տրիպոլսի

*(Թարաբուլուս) ժողովուրդը որևէ տոն էր տոնում, նա (բրինսը) դուրս էր գալիս քաղաքից և միայն տոնակատարությունը վերջանալուց հետո նորից մտնում էր քաղաք։*

*Ապա նա լուր ուղարկեց Հռոմի թագավորին (պապին), բողոքելով հայերի դեմ, թե նրանք չեն արձակել նրա որդուն։ Սա հրաման ուղարկեց հայերին, որ ազատ արձակեն նրա որդուն և կրկին դարձնեն թագավոր։ Եթե այս հրամանը կատարեին՝ լավ, ապա թե ոչ թույլ էր տալիս հարձակվելու նրանց երկրի վրա։ Երբ [պապի] նամակը նրանց հասավ, ազատ չարձակեցին նրա որդուն, իսկ բրինսը զորք հավաքեց ու հարձակվեց Հայոց երկրի վրա։ Հայերը լուր ուղարկեցին Հալեբի աթաբեկ Շիհաբ ալ-Դինին օգնության կանչելով և զգուշացնելով, որ վատ կլինի, եթե բրինսը գրավի իրենց երկիրը, քանի որ Հալեբի գավառներին դրացի է։ Սա նրանց զորք և զենք ուղարկեց և երբ բրինսը այս բանը լսեց, որոշեց անպայման հարձակվել նրանց երկրի վրա։ Նա առաջ խաղաց, պատեբազմեց նրանց հետ, սակայն արդյունքի չհասնելով վերադարձավ։*

*Այս բոլորը ինձ պատմել է քրիստոնյաների խելոք մարդկանցից մեկը, որը եղել է նրանց երկրում և իմացել է նրա վիճակը։ Այլ բաներ էլ եմ հարցրել, որոնց մի մասը իմացավ, իսկ մյուս մասը՝ ժխտեց։*

## *ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՉՈՐՍ ԹՎԱԿԱՆ*

**(22 դեկտեմբեր 1226—11 դեկտեմբեր 1227)**

*էջ 373*

### ՎՐԱՑԻՆԵՐԻ՝ ՏՓՂԻՍ ՔԱՂԱՔԸ ՄՏՆԵԼՈՒ ԵՎ ՀՐԿԻԶԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում՝ Ռաբի Ա ամսին (19 փետրվար—21 մարտ), վրացիք հասան Տփղիս քաղաքը, ուր չկար մահմեդական զորք, որ պաշտպաներ քաղաքը։*

*Բանն այն է, որ Ջալալ ալ-Դինը, երբ Խլաթից վերադարձավ ու ջարդեց իվաիներին (Թուրքմեններին), ինչպես նախապես հիշատակեցինք, իր զորքերը ցրեց տաք և առատ արոտավայրեր ունեցող տեղերում, որպեսզի այնտեղ ձմեռեն։ Նրա՝ [տեղում մնացած] զորքերը վատ էին վերաբերվել ու նեղել էին Տփղիսի ժողովրդին, որը մահմեդական էր և ահա սրանք գրեցին վրացիներին, հրավիրելով իրենց մոտ, խոստանալով հանձնել քաղաքը։ Վրացիք օգտագործեցին այս առիթը, այսինքն՝ քաղաքի ժողովրդի համակրանքը, ինչպես նաև այն [հանգամանքը], որ քաղաքում զորքեր չկային։ Հավաքելով Անիում, Կարսում և այլ բերդե-*

րում եղած իրենց զորքերը, նրանք շարժվեցին դեպի Տփղիս, որն, ինչպես նշեցինք, դատարկ էր [զորքերից], իսկ Ջալալ ալ-Դինը արհամարհում էր վրաց (քուրջ) ուժը, քանի որ շատ էին սպանվել և հույս չուներ, որ կկարողանան [նորից] շարժվել։

Սակայն նրանք գրավեցին քաղաքը, սրի քաշեցին քաղաքի բնակիչների մնացորդներին և գիտենալով, որ չեն կարող քաղաքը պաշտպանել Ջալալ ալ-Դինից, ամբողջովին հրկիզեցին։ Երբ Ջալալ ալ-Դինը լսեց այս լուրը, իր ունեցած զորքերով եկավ, որպեսզի հասնի նրանց ետևից, սակայն ոչ ոքի չգտավ, քանի որ Տփղիսը վառելուց հետո հեռացել էին։

էջ 374

## ԱՇՐԱՖԻ ԶՈՐՔԵՐԻ՝ ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ՄՏՆԵԼՈՒ ԵՎ ՆՐԱ ՈՐՈՇ ՄԱՍԵՐԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Շաաբան ամսին (17 հուլիս—15 օգոստոս), հաջիբ Ալի Հուսամ ալ-Դինը, որը ալ-Մալիք ալ-Աշրաֆի նաիբն (տեղակալ) էր Խլաթում ու նրա զորքերի հրամանատարը, իր մոտ եղած զորքերով շարժվեց դեպի Ատրպատական։

Բանն այն է, որ Ջալալ ալ-Դինի վերաբերմունքը վատ էր ժողովրդի նկատմամբ, և զորքն էլ կողոպտում էր։ Նրա կինը սելջուկյան Թուղրիլ բեկի դուստրն էր և Ատրպատականի տիրոջ՝ Ուզբեք իբն ալ-Բահլավանի նախկին կինը, և, ինչպես նշեցինք, Ջալալ ալ-Դինը ամուսնացել էր նրա հետ։ Երբ նա Ուզբեքի կինն էր, ամբողջ երկիրը կառավարում էր և ոչ ոք նրա վրա իշխանություն չուներ։ Սակայն Ջալալ ալ-Դինը, ամուսնանալուց հետո, արհամարհում էր նրան, ուշադրություն չէր դարձնում և սա սկսեց վախենալ նրանից, դեռ չենք ասում այն մասին, որ նա զրկվեց իշխելու ու հրամայելու իրավունքից։

Ուստի նա և Խոյի (Խուայյ) ժողովուրդը լուր ուղարկեցին Հաջիբ Հուսամ ալ-Դինին, հրավիրելով նրան, որպեսզի երկիրը հանձնեն։ Սա եկավ մտավ երկիրը՝ Ատրպատական, ու գրավեց Խոյ քաղաքն ու շրջակա բերդերը, որոնք Ջալալ ալ-Դինի կնոջ ձեռքում էին, ինչպես նաև Մարանդը։ Նրան գրեցին նաև Նախճավան (Նակչուան) քաղաքի բնակիչները, և երբ եկավ, [քաղաքը] նրան հանձնեցին։ Նրանց (Խլաթի զորքերի) ուժերը ավելացավ այդ երկրում և եթե մնային, ամբողջ երկիրը կգրավեին, սակայն վերադարձան Խլաթ, իրենց հետ տանելով Ջալալ ալ-Դինի կնոջը՝ սուլթան Թուղրիլի դստերը։ Նրա մասին եղած տեղեկությունների մնացած մասը կպատմենք [վեց հարյուր] քսանհինգ թվականի տակ։

էջ 375

## ՏԱՐԻՆԵՐ ԴԵՊՔԵՐԻ ՄԱՍԻՆ

*Այդ տարում թանկություն եղավ Ջազիրա երկրում և գները քիչ բարձրանում էին ու քիչ իջնում, անձրևը դադարեց ամբողջ Շուբաթ (փետրվար) ամիսը և Ազար (մարտ) ամսի առաջին տասն օրերը...*

*Մոսուլում ոչխարի վաճառքին հսկողն ինձ պատմել է, որ այնտեղ [օրակա՞ն] միայն մեկ ոչխար է վաճառվում, հինգ վեց գլուխ, պակաս կամ ավելի։ Սա լսված բան չէ և մեր ամբողջ կյանքում նմանը չէինք տեսել, ոչ էլ պատմել էին, քանզի գարունը մսի էժանության ժամանակն է։ Բանն այն է, որ թուրքմենները, քրդերը և քիլաքան (գիլաքնե՞ր, գիլանցինե՞ր) իրենց ձմեռանոցներից փոխադրվում են Անձևացիք (Ջավազան) և ոչխարն էժան վաճառում են։ Ամեն տարի մսի գինը այս եղանակին լինում էր վեց կամ յոթ ռաթլը (լիտր) մի կիրաթ, իսկ այս տարի մեկ ռաթլը երկու հաբբա արժի։*

### ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՀԻՆԳ ԹՎԱԿԱՆ

**(12 դեկտեմբեր 1227—29 նոյեմբեր 1228)**

էջ 377

## ՔԱՅ ԿՈՒԲԱԴԻ՝ ԵՐԶՆԿԱՆ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում Իկոնիայի (Կոնիա), Ակսարայի, Մալաթիայի և Ռումի այլ կողմերի տեր Ալա ալ-Դին Քայ Կուբադ իբն Քայ Խուսրաու իբն Կիլիջ Արսլանը գրավեց Երզնկան (Արզինքան)*[343]*։*

*Գրավելու պատճառն այն էր, որ նրա (Երզնկայի) տեր Բահրամ Շահը, որի իշխանությունը երկարել էր, իսկ ինքը անցել էր վաթսուն տարեկանը մեռավ։ Նա գտնվում էր Կիլիջ Արսլանի ու նրանից հետո որդիների իշխանության տակ և, երբ մեռավ, իրենից հետո իշխեց որդին Ալա ալ-Դին Դաուդ Շահը։ Քայ Կուբադը լուր ուղարկեց նրան, զորք պահանջելով, որպեսզի միասին գնան Կարինի (Արզան ալ-Ռում) դեմ այն պաշարելու համար, և նա պետք էր զորքի հետ միասին ներկա լիներ։ Այդպես էլ արեց ու իր զորքով գնաց։ Սակայն, երբ հասավ, [Ալա ալ-Դինը] ձերբակալեց նրան ու գրավեց Երզնկա (Արզինքան) քաղաքը։ Սա ունի մի բերդ, որն ամենաանառիկ բերդերից է և կոչվում է Կամախ (Քամախ), ուր Դաուդ Շահի թաքստոցն էր։*

*Ռումի թագավորը [զորք] ուղարկեց այն պաշարելու, սակայն զոր-*

քը չկարողացավ մերձենալ սրա բարձրության և անառիկ լինելու պատճառով։ Այդ ժամանակ նա սպառնաց Դաուդ Շահին [նեղել], եթե չհանձնի Կամախը։ Սա իր տեղակալին (նաիբ) լուր ուղարկեց, որ հանձնի, և նա հանձնեց բերդը Քայ Կուբադին։

Քայ Կուբադը ուզեց գնալ Կարին (Արզան ալ-Ռում), որպեսզի դրավի այն, իսկ այնտեղ կար (իշխում էր) իր հորեղբորորդի Թուղրիլ Շահ իբն Կիլիջ Արսլանը։ Երբ սա լսեց այդ մասին, լուր ուղարկեց Խլաթում Աշրաֆի նաիբ Հուսամ ալ-Դին Ալիին, օգնության կանչելով և հպատակություն հայտնելով Աշրաֆին։ Հուսամ ալ-Դինը իր մոտ եղած զորքով, որը նա հավաքել էր Ասորիքից ու Ջազիրայից, եկավ։ Նա վախենում էր, որ եթե Ռումի (Իկոնիայի) թագավորը տիրի Կաբինին (Արզան ալ-Ռում), առաջ կգան ու կհարձակվի Խլաթի վրա։

Հուսամ ալ-Դին հաջիբը եկավ Կարին (Արզան ալ-Ռում) ու պատրաստվեց պաշտպանել այն։ Երբ Քայ Կուբադը լսեց զորքերի գալուստը, այլևս առաջ չգնաց, այլ Երզնկայից վերադարձավ իր երկիրը։ Նրան լուր էր եկել, թե իր երկրի հարևան անհավատ հոռոմները գրավել են մի բերդ, որի անունն էր Սինոպ (Սինուբ)։ Սա ամենաանառիկ ամրոցներից էր և նայում էր Խաղարաց ծովին։ Երբ իր երկիրը հասավ, այնտեղ զորք ուղարկեց, պաշարեց ցամաքից ու ծովից և վերագրավեց հոռոմների ձեռքից։ Ապա գնաց Անթաքիա (Անթալիա)[44]՝ իր սովորության համաձայն ձմեռելու։

էջ 378

## ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ՝ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿՈՂՈՊՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում Ջալալ ալ-Դին Խորեզմ Շահը հասավ Խլաթի (Խիլաթ) երկիրը, անցավ Խլաթը, դեպի Մուշի դաշտը՝ Ծապաղջուր (Ջաբալ Ջուր)[345] և բոլորին կողոպտեց, կանանց գերեվարեց, երեխաներին ստրկացրեց, մարդկանց կոտորեց, գյուղերն ավերեց ու վերադարձավ իր երկիրը։ Երբ լուրը հասավ Ջազիրա երկիրը, Խառան, Սարուջ և այլ վայրեր, այն մասին թե նա անցել է Խլաթը դեպի Ծապաղջուր (Ջուր) և մոտեցել է իրենց, այդ երկրի ժողովուրդը վախեցավ, որ իր դեմ էլ կգա, քանզի ժամանակը ձմեռ էր և կարծում էին, որ նա Ջազիրա կգա ձմեռելու, որովհետև այնտեղ ցուրտը խիստ չէր, Նրանք որոշեցին իրենց քաղաքներից տեղափոխվել Ասորիք։ Սարուջի ժողովրդի մի մասը հասավ Մանբիջ, որն Ասորիքում է։ Սակայն լուր ստացան, որ նա երկիրը (Հայաստանը) կողոպտելուց հետո, վերադարձել էր և իրենք ևս վերադարձան։

Նրա վերադարձի պատճառն այն էր, որ Խլաթի երկրում ձյունը սովորականից շատ էր տեղացել և նա շտապել էր վերադառնալ։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՎԵՑ ԹՎԱԿԱՆ

## (30 նոյեմբեր 1228—19 նոյեմբեր 1229)

*էջ 379—380*

### ՀԱՋԻԲ ԱԼԻԻՆ ՁԵՐԲԱԿԱԼԵԼՈՒ ԵՎ ՍՊԱՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այդ տարում ալ-Մալիք ալ-Աշրաֆը իր մամլուք Իզզ ալ-Դին Այբաքին, որը նրա պետության մեջ մեծ ամիր էր, ուղարկեց Խլաթ, հրամայելով ձերբակալել հաջիբ Հուսամ ալ-Դին Ալի իբն Համմադին, որը Խլաթի երկրի վերակացուն (մուտավալլի) էր և նրա կառավարիչը (հաքիմ) Աշրաֆի փոխարեն։*

*Ոչինչ հայտնի չէ նրա ձերբակալությունը արդարացնող, քանզի նա սրտացավ էր նրան (Աշրաֆին), խորհրդատու էր, նրա երկրի պահապանն էր և ժողովրդի հետ լավ էր վնրաբերվում։ Այս երկար շրջանում նա դիմադրեց Խորեզմ Շահ Ջալալ ալ-Դինին և Խլաթը լավ պահպանեց, մի բան, որ ուրիշը չէր կարող անել։ Նա հոգատար էր երկրի պահպանության հարցում և պաշտպանում էր այն։ Մենք արդեն նշեցինք, թե ինչպես նա հարձակվեց Ջալալ ալ-Դինի երկրի վրա ու գրավեց նրա մի մասը. մի բան, որը վկայում է նրա մեծ ընդունակության ու կատարյալ քաջության մասին։ Նա մեծ հեղինակություն ստեղծեց իր տիրոջ համար և մարդիկ ասում էին՝ ալ-Մալիք ալ-Աշրաֆի ծառաները դիմադրում են Խորեզմ Շահին։ Նա, ալլահը ողորմի նրան, բարեգործ էր, ոչ ոքի չարիք չէր գործում և շատ բարի գործեր կատարեց, օրինակ, կառուցեց իջևանատներ ճանապարհների վրա, մզկիթներ երկրի տարբեր մասերում, իսկ Խլաթում կառուցեց հիվանդանոց ու մայր մզկիթ։ Շատ ճանապարհներ կառուցեց, ինչպես նաև վերանորոգեց քայքայված [ճանապարհները]։*

*Երբ Այբաքը հասավ Խլաթ, ձերբակալեց նրան և անմիջապես սպանեց, քանզի նրա թշնամին էր։ Բայց հենց որ սպանվեց, երևաց նրա կարողության արժեքը, որովհետև Ջալալ ալ-Դինը նրա ձերբակալումից հետո Խլաթը պաշարեց ու գրավեց, ինչպես հիշատակելու ենք, եթե ալլահը կամենա։ Ալլահը չխնայեց Այբաքին, այլ շուտով վրեժ լուծեց նրանից։ Խլաթին տիրելուց հետո, Ջալալ ալ-Դինը ձերբակալեց Այբաքին այլ ամիրների հետ։ Երբ Աշրաֆը հաշտություն կնքեց Ջալալ ալ-Դինի հետ, վերջինս արձակեց բոլորին, սակայն Այբաքը սպանված էր։ Նրա սպանու-*

թյան պատճառն այն էր, որ Հաջիբ Ալիի մամլուքներից մեկը փախել էր Ջալալ ալ-Դինի մոտ և երբ Այբաքը դերի ընկավ, այս մամլուքը Ջալալ ալ-Դինից խնդրեց, որպեսզի թույլ տա իրեն սպանել նրան իր տիրոջ՝ Հաջիբ Ալիի փոխարեն։ Սա հանձնեց նրան և նա սպանեց։

Ինձ պատմել են, որ ալ-Մալիք ալ-Աշրաֆը երազում տեսել էր, որ Հաջիբ Ալին մտել էր մի հավաքույթ, ուր կար Այբաքը։ Նա մի թաշկինակով կապել էր Այբաքի վիզը, քաշել ու դուրս տարել։ Ալ-Մալիք ալ-Աշրաֆը զարթնել ու ասել էր, թե մեռավ Այբաքը, քանզի ես այսպես և այսպես տեսա երազում։

էջ 380—381

## ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԽԼԱԹԸ ՊԱՇԱՐԵԼՈՒ ԵՎ ՏԻՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ տարում՝ Շավալ ամսի (23 օգոստոս—21 սեպտեմբեր) սկզբներին, Ջալալ ալ-Դին Խորեզմ Շահը պաշարեց Խլաթը, որը ալ-Մալիք ալ-Աշրաֆին էր պատկանում: Նրա զորքը դիմադրեց և նրան օգնեց քաղաքի բնակչությունը, վախենալով Ջալալ ալ-Դինի վատ վերաբերմունքից։ Նրանք (խլաթեցիք) չափազանց նախատեցին ու հայհոյեցին նրան, իսկ նա կատաղությամբ համառեց և ամբողջ ձմեռը պաշարված վիճակում պահեց նրանց։ Սաստիկ ցրտի և առատ ձյան պատճառով նա իր զորքից շատերին ցրեց մերձակա գյուղերն ու քաղաքները, քանզի Խլաթը ամենացուրտ և ամենաշատ ձյուն ունեցող քաղաքներից է։

Ջալալ ալ-Դինը բացառիկ հաստատակամություն և անհավատալի համբերություն ցուցաբերեց։ Նա քաղաքի դեմ բերեց մի քանի քարանետ մեքենաներ և այնքան քարեր նետեց, մինչև որ պարսպի մի մասը քանդեց։ Սակայն քաղաքի բնակիչները նորից կառուցեցին այն։ Նա համբերատար և համառ կերպով շարունակեց նեղել նրանց մինչև [վեց հարյուր] քսանյոթ թվականի Ջումադա Ա ամսի (18 մարտ—17 ապրիլ) վերջերը։ Նա իրար հաջորդող գրոհներով. ուժով գրավեց այն Ջումադա Ա ամսի քսանութին (15 ապրիլ), կիրակի օրը։

Այն, դավաճանությամբ, հանձնեցին որոշ ամիրներ (զորավարներ)։ Երբ նա տիրեց քաղաքին, ներսում եղած ամիրները բարձրացան միջնաբերդն ու պաշտպանվեցին։ Նա կռվեց նրանց դեմ ու միաժամանակ սրի քաշեց քաղաքի ժողովրդին և ում որ գտավ, սպանեց։ Նրանք քիչ էին մնացել, մի մասը վախից փախել էր, ուրիշները սաստիկ սովից հեռացել էին, իսկ մի մասը մահացել էր սննդի սակավությունից կամ բացակայությունից։ Մարդիկ Խլաթում կերան ոչխարներին, ապա կովերին,

գոմեշներին, ապա ձիերին, էշերին, ջորիներին և, վերջապես, շներին ու կատուներին։ Լսել ենք, որ նրանք մկներ էին որսում և ուտում։ Նրանք այնպիսի համբերություն էին ցուցաբերել, որի նմանը ոչ ոքի չի հաջողվել։

Նա (Ջալալ ալ-Դինը) Խլաթի երկրից այլ մասեր չգրավեց։ Նրանք (զորքերը) Խլաթը կործանեցին, անխնա կոտորեցին, իսկ ով փախավ, ազատվեց, կանանց հափշտակեցեին, տղաներին ստրկացրին ու բոլորին վաճառեցին և այսպիսով [բնակիչները] բզիկ-բզիկ եղան։ Նրանք (զորքերը) երկրում տարածվեցին, կողոպտեցին մարդկանց ունեցվածքը և չլսված. չարագործություններ արեցին բնակիչներին։ Սակայն բարձրյալն ալլահը չուշացրեց հատուցումը՝ նա (Ջալալ ալ-Դինը) պարտության մատնվեց թե՛ մահմեդականներից, թե՛ թաթարներից, ինչպես հիշատակելու ենք, եթե ալլահը կամենա։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՅՈԹ ԹՎԱԿԱՆ

**(20 նոյեմբեր 1229—8 նոյեմբեր 1230)**

*էջ 381*

### ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ՔԱՅ ԿՈՒԽԱԴԻՑ ԵՎ ԱՇՐԱՖԻՑ

Այդ տարում՝ Ռամադան ամսի քսանութին (13 օգոստոս), շաբաթ օրը Ջալալ ալ-Դին Խորեզմ Շահը պարտվեց[34]՝ Ռումի երկրի, Իկոնիայի (Կոնիա), Ակսարայի, Սեբաստիայի (Սիվաս), Մալաթիայի և այլ [քաղաքների] տեր Ալա ալ-Դին Քայ Կուբադ իբն Քայ Խուսրաու իբն Կիլիջ Արսլանից և Դամասկոսի, Ջազիրայի ու Խլաթի տեր ալ-Մալիք ալ-Աշրաֆից։

Բանն այն է, որ Ջալալ ալ-Դինին հնազանդություն էր հայտնել Կարնո (Արզան ալ-Ռում) տերը. որը Ռումի թագավոր Ալա ալ-Դինի հորեղբորորդին էր, սակայն նրա և Ալա ալ-Դինի միջև ուժեղ թշնամություն կար։ Կարնո (Արզան ալ-Ռում) տերը եկավ Ջալալ ալ-Դինի մոտ՝ օգնելու Խլաթի պաշարմանը։

Ալա ալ-Դինը վախեցավ այս երկուսից և լուր ուղարկեց ալ-Մալիք ալ-Քամիլին, որն այն ժամանակ Խառանում էր, խնդրելով նրանից, որ իր եղբորը՝ Աշրաֆին, բերի Դամասկոսից (Դիմաշկ), քանզի վերջինս այնտեղ էր մնում տեր դառնալուց հետո։ Ալա ալ-Դինը իրար հետևից դեսպաններ ուղարկեց այս հարցով, քանզի վախենում էր Ջալալ ալ-Դինից։ Ալ-Մալիք ալ-Քամիլը Դամասկոսից բերեց իր եղբորը՝ Աշրա-

ֆին, որն իրոք եկավ։ Ալա ալ-Դինը նրանց երկուսին անընդհատ նամակներ էր ուղարկում, համոզելով Աշրաֆին իր մոտ գալ ու խորհրդակցել։ Ասվում է, որ մեկ օրվա ընթացքում Քամիլին ու Աշրաֆին հինգ դեսպան եկավ Ալա ալ-Դինից, խնդրելով Աշրաֆի գալուստը՝ թեկուզ մենակ։

Սա հավաքեց Ջազիրայի ու Ասորիքի զորքերը և եկավ Ալա ալ-Դինի մոտ։ Նրանք հավաքվեցին Սեբաստիայում (Սիվաս) ու շարժվեցին դեպի Խլաթ։ Ջալալ ալ-Դինը լսելով այդ մասին, շտապույթ եկավ նրանց դեմ և հասավ նրանց մի վայրում, որը կոչվում էր Բասի Հիմար (Հիմաք), որը Երզնկայի (Արզինջան) գավառներից էր։ Այնտեղ նրանք ընդհարվեցին։ Ալա ալ-Դինը շատ զորք ուներ, ասվում է քսան հազար ձիավոր, իսկ Աշրաֆի հետ կար մոտավորապես հինգ հազար, սակայն ընտիր, քաջ ու պատերազմներում կոփված զորքեր էին, լավ զինված ու արաբական կրակոտ նժույգներով։ Նրանց հրամանատարն էր Հալեբի զորքերի ամիրներից մեկը, որը կոչվում էր Իզզ ալ-Դին Օմար իբն Ալի, որը Հաքքարի քրդերից էր և վերին աստիճանի քաջարի, ընտիր հատկություններով ու ազնիվ բարքի տեր։

Երբ իրար հանդիպեցին, Ջալալ ալ-Դինը ապշեց, տեսնելով զորքի բազմությունը, մանավանդ, երբ տեսավ Ասորիքի զորքը։ Ականատես եղավ նրանց գեղեցկությանը, սպառազինությանը, ձիերին և այս բոլորը վախով լցրեց նրա սիրտը։ Ճակատամարտն սկսեց Իզզ ալ-Դին Օմար իբն Ալին՝ Հալեբի զորքի գլուխն անցած։ Ջալալ ալ-Դինը չկարողացավ գիմադրել կամ դիմանալ, այլ փախուստի դիմեցին ինքը և իր զորքը։ Եղբայրը եղբոր վրա ուշադրություն չէր դարձնում, ցրվեցին նրա մերձավորները և բզիկ-բզիկ եղան։ Նա վերադարձավ Խլաթ և այնտեղ գտնվող յուրայիններին էլ նրան միանալով վերադարձան Ատրպատական ու կանգ առան Խոյ քաղաքի մոտ։ Մինչ այդ նրանք (Ջալալ ալ-Դինի զորքը) Խլաթի նահանգից միայն Խլաթ [քաղաքն] էին գրավել։

Ալ-Մալիք ալ-Աշրաֆը եկավ Խլաթ և այն գտավ «հիմնահատակ կործանված» (Ղուրան, Բ, 261), դատարկ և՛ բնակչությունից, և՛ ժողովրդից, քանզի նրանց հետ կատարվել էր այն, ինչի մասին արդեն պատմեցինք։

էջ 381—382

## ԱԼԱ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԿԱՐԻՍԸ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Արդեն հիշեցինք, որ Կարնո (Արզան ալ-Ռում) տերը Խլաթի պաշարման ժամանակ միացել էր Ջալալ ալ-Դինին և նրա հետ էլ մնաց ու մասնակից եղավ վերոհիշյալ ճակատամարտին։

Սակայն, երբ Ջալալ ալ-Դինը պարտվեց, Կարնո տերը գերի ընկավ իր հորեղբորորդու՝ Ալի ալ-Դին Քայ Կուբադի ձեռքը։ Սա վերցրեց նրան ու գնաց Կարին, որի տերը իր ձեռքով հանձնեց նրան [քաղաքը], իր բոլոր ենթակա բերդերով, գանձերով և այլ բաներով։ Ինչպես ասվում է՝ ջայլամը գնաց երկու կոտոշ գտնելու, բայց վերադարձավ առանց ականջների։ Այդպես էլ այս թշվառականը, եկավ Ջալալ ալ-Դինի մոտ նոր բան ձեռք բերելու և ինչպես [Ջալալ ալ-Դինն] էր խոստացել Ալա ալ-Դինի երկրի մի մասը վերցնելու [հույսով], սակայն վերջինս վերցրեց նրա ունեցվածքը և ձեռքում եղած երկիրը, իսկ ինքը մնաց գերի վիճակում։

էջ 382

## ԱՇՐԱՖԻ ՈՒ ԱԼԱ ԱԼ-ԴԻՆԻ ԵՎ ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ ՄԻՋԵՎ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Երբ Աշրաֆը Խլաթ վերադարձավ, իսկ Ջալալ ալ-Դինը փախավ Խոյ (Խուայ), նրանց միջև դեսպաններ փոխանակվեցին և ամեն մեկը համաձայնեց իր ձեռքում եղածը պահել և այսպիսով, հաշտություն գոյացավ ու երդվեցին իրար։ Երբ հաշտությունը կայացավ և երդում տվեցին, Աշրաֆը վերադարձավ Սինջար և այնտեղից գնաց Դամասկոս։ Ջալալ ալ-Դինը մնաց Ատրպատականի իր նահանգներում,. մինչև որ նրա վրա հարձակվեցին թաթարները, ինչպես կհիշատակենք, եթե բարձրյալն ալլահը կամենա։

էջ 382

## ՇԻՀԱԲ ԱԼ-ԴԻՆ ՂԱԶԻԻ՝ ԱՐՋՆ ՔԱՂԱՔԸ ՆՎԱՃԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Դիար Բաքրի սահմաններում գտնվող Արզն (Արզան) քաղաքի տեր Հուսամ ալ-Դինը միշտ եղել էր ալ-Մալիք ալ-Աշրաֆի ընկերակիցը, խրատողը, ականատես էր եղել նրա բոլոր պատերազմներին ու իրադարձություններին, իր ունեցվածքը նրան էր տրամադրել և ինքն էլ զորքի հետ օգնել էր նրան, պայքարելով նրա թշնամիների դեմ ու պաշտպանելով նրա բարեկամներին։ Այնպես էր պատահել, որ նա Խլաթում էր, երբ Ջալալ ալ-Դինր պաշարել էր այն և նրա [Աշրաֆի] հետ նա դիմացել էր բոլոր դժվարություններին ու սարսափներին, համբերել, մինչև որ Ջալալ ալ-Դինը գրավել էր [Խլաթը]։

Ջալալ ալ-Դինը նրան գերել էր և ուզում էր նրանից խլել քաղաքը։ Նրան պատմել էին, որ նա իշխանական հին, ազնվական ընտանիքից է,

ժառանգել է Արզն [քաղաքը] իր նախնիներից և որ նրանք այլ քաղաքներ ևս ունեցել են, սակայն բոլորը նրանց ձեռքից գնացել է։ Նա խղճաց նրան ու մեղքացավ և քաղաքը թողեց նրան, խոստումնագիր ու պայմանագիր առնելով այն մասին, թե իր (Ջալալ ալ-Դինի) դեմ չի կռվելու, և սա վերադարձավ իր քաղաքը ու մնաց այնտեղ։

Երբ ալ-Մալիք ալ-Աշրաֆը և Ալա ալ-Դինը եկան Ջալալ ալ-Դինի դեմ կռվելու, Աշրաֆի եղբայր Շիհաբ ալ-Դին Ղազի իբն ալ-Մալիք ալ-Ադիլը, որը տիրում էր Նփրկերտին ու Հանի քաղաքներին, եկավ ու պաշարեց նրան (Հուսամ ալ-Դինին) Արզնում, ապա գրավեց հաշտության պայմաններով և այն փոխանակեց Հանի քաղաքի հետ, որը Դիար Բաքրում էր։

Այս Հուսամ ալ-Դինը առաքինի մարդ էր, լավ վարքի տեր, առատաձեռն, նրա դուռը միշտ բաց է եղել դիմողների հանդեպ, որոնց նա ընդառաջել է։ Նա լավ էր վերաբերվում իր նահանգին և ժողովրդին։ Հին տնից էր սերում, որը կոչվում էր Թուղան Արսլանի տուն, որին բացի Արզնից պատկանում էին նաև Բաղեշը (Բաղլիսը), Ոստանը (Վասթան) և այլ վայրեր։ Կոչվում էր նաև ալ-Ահդաբի տուն և այս քաղաքները Մալիք Շահ իբն Ալբ Արսլան Սալջուկիի օրերից նրան էին պատկանում։ Խլաթի տեր Բաքտամուրը նրանցից վերցրել էր Բաղեշը, Հուսամ ալ-Դինի հորեղբոր ձեռքից, քանզի վերջինս համակիր էր Սալահ ալ-Դին իբն Այյուբին և այդ պատճառով Բաքտամուրը հարձակվել էր նրա վրա։ Իսկ Արզնը նրա (Հուսամ ալ-Դինի) ձեռքում էր մնացել մինչև օրս և ահա սա ևս վերցվեց նրանից։

Ամենայն ինչ ունի սկիզբ ու վախճան։ Փառավորյալ լինի նա, որը չունի ո՛չ սկիզբ և ո՛չ էլ գոյության վախճան։

## ՎԵՑ ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՈՒԹ ԹՎԱԿԱՆ

(9 նոյեմբեր 1230—28 հոկտեմբեր 1231)

էջ 383

### ԹԱԹԱՐՆԵՐԻ ՀԱՐՁԱԿՈՒՄԸ ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ԵՎ ՆՐԱՆՑ ԱՐԱՐՔՆԵՐԸ

Ջալալ ալ-Դինը հոռի բարքի տեր էր և իր թագավորությունը վատ էր կառավարում։ Չկար մի հարևան տիրակալ, որի հետ թշնամական հարաբերության մեջ չլիներ, չհարձակվեր նրա տիրույթների վրա և վատ դրացի չլիներ նրա հետ։ Հենց որ Սպահանում հանդես եկավ ու զորք հավաքեց, հարձակվեց Խուզիստանի վրա, պաշարեց Շուստեր (Տուստեր)

քաղաքը, որը խալիֆայինն էր, գնաց Դակուկա, որը նույնպես խալիֆայինն էր ու կողոպտեց, շատերին կոտորեց, ապա տիրացավ Ատրպատականին, որն Ուզբեկին էր պատկանում, հարձակվեց վրացիների (քուրջ) վրա և փախուստի մատնեց ու թշնամական հարաբերությունների մեջ էր նրանց հետ, ապա թշնամացրեց Խլաթի տիրոջը ալ-Մալիք ալ-Աշրաֆին, հետո թշնամացավ Ռումի (Իկոնիայի) տեր Ալա ալ-Դինի հետ։

Էջ 384

## ՋԱԼԱԼ ԱԼ-ԴԻՆԻ՝ ԱՄԻԴ ՀԱՍՆԵԼՈՒ, ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՆՐԱ ՀԵՏ ՊԱՏԱՀԱԾՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Երբ Ջալալ ալ-Դինը տեսավ, թե ինչ էին անում թաթարները Ատրպատականում՝ կոտորում, կողոպտում, շեներն ավերում, հարկեր հավաքում, և [հասկացավ], որ նրանք որոշել էին հարձակվել իր վրա ու զգալով իր թույլ, անուժ լինելը, թողեց Ատրպատականն ու գնաց Խլաթ։ Նա լուր ուղարկեց ալ-Մալիք ալ-Աշրաֆի նաիբին (փոխանորդին), ասելով՝ չենք եկել պատերազմի կամ վնաս տալու, այլ պարզապես այս թշնամու վախը մեզ ստիպել է ձեր երկիրը գալ։ Նա որոշել էր գնալ Դիար Բաքր ու Ջազիրա, ապա խալիֆայի դուռը՝ թաթարների դեմ օգնություն խնդրելու նրանցից և բոլոր թագավորներից օժանդակություն հայցելու հանուն դիմադրության։ Նա [միաժամանակ] զգուշացնում էր, որ անհոգությունը վատ վախճան կունենա։

Երբ հասավ Խլաթ, տեղեկացավ, որ թաթարները հետապնդում են իրեն և արագընթաց գալիս իր հետևից։ Նա գնաց Ամիդ, ու ճանապարհին մի քանի տեղ յազաք (պահակներ) դրեց, վախենալով, որ նրանք գիշերը կհարձակվեն։ Եվ ահա եկավ թաթարների մի խումբ, որը հետապնդում էր նրան, և հասնելով ոչ այն ճանապարհով, ուր պահակներ կային, նրանք գիշերով հարձակվեցին, երբ նա Ամիդ քաղաքից այն կողմ էր գտնվում։ Նա փախուստի դիմեց, իսկ զորքը ցրվեց ամեն կողմ։ Զորքի մի մասը գնաց Խառան, սակայն ալ-Մալիք ալ-Քամիլի զորահրամանատարը՝ ամիր Սավաբը, Խառանում իր զորքով հարձակվեց ու խլեց նրա (զորքի) մոտ եղած ունեցվածքը, զենքերն ու հեծնելու անասունները։ Մի ուրիշ խումբ դիմեց Մծբին, Մոսուլ, Սինջար, Արբելա (Իրբիլ) և երկրի այլ վայրեր։ Թագավորներն (տիրակալներն) ու ժողովուրդը հարձակվում էին նրանց վրա և նրանց կողոպտում էր ամեն մեկը, նույնիսկ գյուղացին,

քուրդը կամ [անապատի] բեդևին և ուրիշներ։ Նրանք ուզում էին վրեժ լուծել նրանցից և պատժել Խլաթում ու այլուր ցուցաբերած վատ վարմունքի, այլանդակ գործերի ու երկրում ապականություն տարածելու համար, «քանզի ալլահը չի սիրում ապականիչներին»։

Ջալալ ալ-Դինը գնալով ավելի ու ավելի թուլացավ ու խեղճացավ, քանզի նրա զորքը ցրվել էր և խիստ տուժել։ Թաթարները, նրան փախուստի մատնելուց հետո, նորից եկան ետևից, հետապնդելով մտան Դիար Բաքր, քանզի չգիտեին, թե ուր գնաց և կամ որ ճամփով։ Փառք նրան, որը նրանց (խորեզմցիների) ապահովությունը վախի վերածեց, փառքը՝ նվաստացման, բազմությունը՝ սակավության։ Օրհնյալ լինի տիեզերքի տերը, որն անում է ինչ որ կամենում է։

էջ 384—385

## ԹԱԹԱՐՆԵՐԻ՝ ԴԻԱՐ ԲԱՔՐ ՈՒ ՋԱԶԻՐԱ ՄՈՒՏՔԻ ԵՎ ԵՐԿՐՈՒՄ ՆՐԱՆՑ ՍՓՌԱԾ ԱՊԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Երբ Ջալալ ալ-Դինը թաթարներից պարտվեց Ամիդի մոտ, թաթարները կողոպտեցին Ամիդի, Արզնի ու Նփրկերտի (Մայյաֆարիկին) շրջակայքը, ապա դիմեցին Աղերդ (Սիիրդ) քաղաքը, որի ժողովուրդը կռվով դիմադրեց։ Թաթարները նրանց երաշխավորագիր (աման) առաջարկեցին։ Նրանք վստահելով հանձնվեցին, սակայն երբ թաթարները ներս խուժեցին, սրի քաշեցին և այնքան կոտորեցին, որ գրեթե բնաջնջեցին։ Ազատվեցին միայն նրանք, որ թաքնվել էին, իսկ այսպիսիները շատ փոքրաթիվ էին։

Ինձ պատմել է մի վաճառական, որն [այդ ժամանակ] հասել է Ամիդ, թե սպանվածների թիվը մոտավորապես տասնհինգ հազարից ավելի էր։ Այս վաճառականի հետ կար Սղերդից (Սիիրդ) մի հարճ (ջարիյա), որը պատմել է, թե իր տերը դուրս էր եկել կռվի, սակայն նրա մայրը արգելել էր նրան, քանզի ուրիշ տղա չուներ։ Նա չէր լսել նրա խոսքը և նա (մայրը) միասին էր գնացել ու նրանք երկուսով սպանվել էին։ Նրան (հարճին) ժառանգել էր մոր եղբորորդին, որը նրան վաճառել էր այս վաճառականին։ Նա պատմել է նաև, որ սպանվածների թիվը խիստ մեծ էր և պաշարումը տևել էր հինգ օր։

Ապա այստեղից [թաթարները] դնացին Թանզա քաղաքը և այնտեղ ևս նույն գործը կատարեցին։ Թանզայից գնացին նրա մոտ գտնվող մի կիրճ, որը կոչվում էր Կուրայշիների կիրճ, ուր ապրում էր Կուրայշիյյա (Կուրայշիներ) կոչված քրդական մի ցեղ։ Այնտեղ կային վ.ակ-ղ

ջրեր ու շատ պարտեզներ, սակայն գնալու ճանապարհը նեղ էր։ Կուրայշիները կռվի ելան ու դիմադրեցին նրանց և ետ մղեցին։ Նրանցից (թաթարներից) շատ սպանվածներ կային և թաթարները վերադարձան առանց իրենց նպատակին հասնելու։ Նրանք շարունակեցին իրենց ընթացքը այդ երկրում, սակայն ոչ ոք չէր դիմադրում և ոչ էլ արգելք էր լինում։ Հասան Մարդին և քաղաքում ինչ որ գտան, կողոպտեցին։ Իսկ Մարդինի տերը Դունայսարի բնակիչների հետ մնացին Մարդինի ամրոցում, ուր պատսպարվեցին նաև ամրոցի շրջակայքից այլ մարդիկ։

Ապա նրանք հասան Ջազիրայի Մծբին [քաղաքը], որը պաշարեցին մեկ օրից ավելի, կողոպտեցին շրջակա գյուղերը և ում բռնեցին, սպանեցին։ Սակայն քաղաքի դռները փակվեցին և նրանք հեռացան Սինջար քաղաքը ու հասան Սինջարի գավառում գտնվող լեռները։ Նրանք կողոպտեցին այդ կողմերը, ապա մտան Խաբուր, հասան Արաբան, կողոպտեցին, կոտորեցին ու վերադարձան։ Նրանց մի մասը գնաց Մոսուլի ճանապարհով ու հասավ մի գյուղ, որը կոչվում էր ալ-Մունիսա և մեկ օրվա ճանապարհ (մարհալա) հեռավորության վրա էր Մծբինից՝ սրա և Մոսուլի մեջտեղում։ Նրանք կողոպտեցին, իսկ բնակիչները պատսպարվեցին մի խանի [կարավանատան] մեջ, սակայն բոլորն էլ կոտորվեցին։

Ինձ պատմել են մի մարդու մասին, որն ասել է, թե՝ նրանցից թաքնըվեցի մի տան մեջ, ուր ծղոտ կար և ինձ չգտան, իսկ ես տեսնում էի նրանց տան պատուհանից։ Երբ նրանք ուզում էին մեկին սպանել, սա ասում էր՝ լա բիլլահ (ո՛չ, ի սերն աստծու), բայց նրանք սպանում էին։ Երբ նրանք գյուղի գործը վերջացրին, կողոպտելով ինչ որ կար ու հափշտակելով կանանց, տեսա, որ սկսեցին ձիերին հեծած զվարճանալ խնդալով ու երգում էին իրենց լեզվով. կրկնելով՝ լա բիլլահ։

Նրանցից մի խումբ հարձակվեց Ռումի Մծբինի վրա, որը Եփրատի վրա էր և Ամիդի սահմաններում։ Նրանք կողոպտեցին այն, կոտորելով բնակիչներին, ապա վերադարձան Ամիդ, հետո գնացին Բաղեշ (Բադլիս), որի ժողովուրդը պատսպարվեց ամրոցում ու լեռներում։ Այստեղ մի մասին կոտորեցին, իսկ քաղաքը հրկիզեցին։ Բնակիչներից մեկը պատմել է՝ եթե ունենայինք թեկուզ հինգ հարյուր ձիավոր, թաթարներից ոչ մեկը չէր ազատվի, քանզի ճանապարհը լեռների մեջ նեղ էր և փոքրաթիվ մարդիկ կարող էին մեծ թվով մարդկանց ճանապարհը փակել։

Ապա Բաղեշից գնացին Խլաթ ու պաշարեցին Խլաթի գավառներում գտնվող մի քաղաք, որը կոչվում է Բերկրի (Բաքրի, Բարքարի) և երկրի ամենաանառիկ վայրերից է։ Նրանք ուժով գրավեցին այն, բոլոր բնակիչներին կոտորեցին, ապա գնացին Արճեշ. քաղաքը, որը Խլաթի սահմաններում էր, մեծ ու հզոր քաղաք էր և նույն գործը այստեղ էլ կատա-

րեցին։ Այս բոլորը կատարվեց Զու-լ-Հիջջա ամսին (30 սեպտեմբեր—28 հոկտեմբեր)։

Նրանց մասին ինձ պատմել են շատ բաներ, որ լսողը չի հավատա, և այս բոլորը այն վախի հետևանքով, որ բարձրյալն ալլահը գցել էր մարդկանց սրտերը։ Ասվում է, որ նրանցից որևէ մեկը՝ ինչ-որ ձիավոր, մտնելով որևէ գյուղ կամ ճանապարհի վրա հանդիպելով շատ մարդկանց, մեկը մյուսի ետևից կոտորում էր և ոչ ոք չէր համարձակվում ձիավորի վրա ձեռք բարձրացնել։ Լսել եմ, որ մի թաթար, բռնել էր մեկին ու մոտը ոչ մի բան չէր եղել նրան սպանելու։ Նա ասել էր՝ գլուխդ գետին դիր և չհեռանաս։ Սա գլուխը գետին էր դրել, իսկ թաթարը գնացել էր սուր բերել ու սպանել նրան։ Մի մարդ ինձ պատմել է՝ ես տասնյոթ մարդկանց հետ ճանապարհի վրա էի, եկավ մի թաթար ձիավոր և հրամայեց մեզ, որ ամեն մեկս մյուսին կապենք։ Ընկերներս սկսեցին անել այն, ինչ որ հրամայված էր։ Ասացի նրանց՝ սա մեկ մարդ է և ինչու մենք չսպանենք նրան ու չփախչենք։ Ասացին՝ վախենում ենք։ Ասացի՝ չէ որ սա ուզում է հենց հիմա մեզ սպանել, եկեք մենք սպանենք նրան և ալլահը կփրկի մեզ։ Ալլահը վկա, ոչ ոք չհամարձակվեց այդ բանն անել։ Վերցրեցի մի դանակ, սպանեցի նրան և փախանք ու ազատվեցինք։ Այսպիսի օրինակներ շատ կան։

էջ 386

## ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ՝ ԹԱԹԱՐՆԵՐԻՆ ՀՊԱՏԱԿՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Նրանց հպատակվելու պատճառն այն է, որ երբ Ջալալ ալ-Դինը Ամիդում պարտվել էր թաթարներից և նրա զորքը ցրվել ու տարբեր մասերի էր բաժանվել, տարբեր մարդկանց ձեռքն ընկնելով, իսկ թաթարները Դիար Բաքրում, Ջազիրայում, Արբելայում և Խլաթում արել էին ինչ որ կամեցել էին, չկար նրանց կանգնեցնող կամ դիմադրող ուժ, քանզի մահմեդական տիրակալները վախից դողում էին։ Բացի այդ, Ջալալ ալ-Դինից ոչ մի տեղեկություն չկար և ոչ ոք չգիտեր, թե նրան ինչ էր պատահել, ուստի [Ատրպատականի բնակիչները] հուսալքվեցին ու հպատակվեցին թաթարներին, տալով նրանց ինչ որ կամենում էին՝ դրամ և զգեստներ։

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՄՈՍՈՒԼԻ ԱԹԱԲԵԿՆԵՐԻ ՊԵՏՈՒԹՅԱՆ

(ՏԱՐԻԽ ԱԼ-ԴԱՈՒԼԱ ԱԼ-ԱՏԱԲԻՔԻՅՅԱ ՄՈՒԼՈՒՔ ԱԼ-ՄԱՈՒՍԻԼ)

էջ 10—11

Այս դրքում տրված տեղեկությունների մեծ մասը վերցրել եմ հոռրիցս, որը նրանց (աթաբեկների) լավ գործերի հաղորդողն էր և աղբյուրը նրանց գործունեության ու կյանքի հանգամանքների մասին եղած տեղեկությունների։

[Այս գիրքն] սկսում է [հավատի] վկա (շահիդ, նահատակ)[347] մեր տեր Կասիմ ալ-Դաուլա Ակսունկուրի[348] պատմությամբ, քանզի ըստ իմ ունեցած տեղեկության նա առաջինն էր նրանցից, որ իշխեց։ Կասիմ ալ-Դաուլան եղել է Ջալալ ալ-Դաուլա Ռուքն ալ-Դին Մելիքշահ իբն Ալբ Արսլան սուլթանի հավատարիմներից։

էջ 13

## ԿԱՍԻՄ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ ԵՎ ՖԱԽՐ ԱԼ-ԴԱՈՒԼԱ ԻԲՆ ՋԱՀԻՐԻ՝ ՄՈՍՈՒԼ ԳՆԱԼԸ ՄԵԼԻՔՇԱՀ ՍՈՒԼԹԱՆԻ ՀՐԱՄԱՆՈՎ

Չորս հարյուր յոթանասունյոթ հիջրի (1084—1085) թվականին Մելիքշահ սուլթանը հրամայեց իր վեզիր Ֆախր ալ-Դինին, որը խալիֆայի [նախկին] վեզիր Ջահիրի որդին էր, արշավել Դիար Բաքր (Աղձնիք)՝ այնտեղից դուրս քշելու Մրուանիներին։ Այդ մասին խոսել եմ իմ Մուստակսա (լիակատար) կոչված պատմության մեջ։

էջ 14—17

## ԿԱՍԻՄ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ՝ ՀԱԼԵԲԸ ԵՎ ԱՅԼ ՔԱՂԱՔՆԵՐ ԳՐԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Այդ ժամանակ Հալեբը պատկանում էր Շարաֆ ալ-Դաուլա Մուսլիմին, իսկ Անտիոքը (Անթաքիա)՝ հոռոմներին, որոնք այն նվաճել էին երեք հարյուր հիսունութ հիջրի (968—969) թվականին։ Նրանք տիրեցին մինչև չորս հարյուր յոթանասունյոթ հիջրի (1084—1085) թվականը, երբ նրանում իշխող հոռոմ Փիլարտոսը (Ֆիրդարուս)[349] հեռացավ ու գնաց

Ռումի երկիրը։ Բնակիչներն այդ ժամանակ դրեցին Սուլայման իբն Կութլումիշին (Գթլմուշ)։

Վերջապես, շատ դեպքերից հետո վեզիր Նիզամ ալ-Մուլքը [Մելիքշահ] սուլթանին համոզեց, որ Հալեբը և նրա նահանգը, ինչպես նաև Եպիփանիա (Համա), Մանբիջ և Լաոդիկե (Լադակիա) քաղաքները որպես պարգևական տիրույթ շնորհվեն Կասիմ ալ-Դաուլա Ակսունկուրին։ Այս բոլորը նրա ձեռքում մնաց մինչև սպանությունը, չորս հարյուր ութսունյոթ հիջրի (1094) թվականին։

էջ 25—26

## ԿԱՍԻՄ ԱԼ-ԴԱՈՒԼԱ ԱԿՍՈՒՆԿՈՒՐԻ ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՏԱՋ ԱԼ-ԴԱՈՒԼԱ ՏՈՒՏՈՒՇ ԻԲՆ ԱԼԲԱՐՍԼԱՆԻ ՀԵՏ ԵՎ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՆՐԱ ԿՌԻՎՆԵՐԻՆ

Մելիքշահ սուլթանը իր եղբորը՝ Տաջ ալ-Դաուլա Տուտուշին, որպես պարգևական տիրույթ (իկթա) շնորհել էր Դամասկոսը (Դիմաշկ), շրջակա նահանգներով, ինչպես նաև Տիբերիան (Թաբարիյյա) և Երուսաղեմը։ Նրա (սուլթանի) մահվանից հետո, երբ երկպառակություններ սկսեցին մանկահասակ որդիների միջև, Տուտուշը իր գնդերը հավաքեց և շարժվեց դեպի Հալեբ, ուր նստում էր Կասիմ ալ-Դաուլա Ակսունկուրը։

Վերջինս դաշինք կնքեց նրա հետ և նրա անունը հիշեց [ուրբաթ օրվա] խութբայի մեջ՝ Հալեբում։

Նույն տարվա Ռաբի Բ ամսին (մայիս 1093) նա (Տուտուշը) շարժվեց դեպի Նփրկերտ (Մայյաֆարիկին) ու գրավեց այն, ինչպես՝ նաև Դիար Բաքրի բոլոր քաղաքները, ապա գնաց Ատրպատական։

էջ 30—33

## ԻՄԱԴ ԱԼ-ԴԻՆԻ ԶԱՆԳԻԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԻՐ ՀՈՐ՝ ԿԱՍԻՄ ԱԼ-ԴԱՈՒԼԱՅԻ ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԻՑ ՀԵՏՈ

Սպանությունից հետո Կասիմ ալ-Դաուլան թողել էր միայն մեկ որդի, որը հենց մեր տեր նահատակ (վկա) Իմադ ալ-Դին Զանգին է։

Սուլթանը Մոսուլ ուղարկեց ամիր Մաուդուդին և այն պարգևեց նրան իբրև տիրույթ (իկթա)։ Երբ Մաուդուդը հաստատվեց Մոսուլում, նրա մերձավորներից դարձավ Զանգին, որը մասնակցեց նրա բոլոր կռիվներին։

Այսպես, օրինակ, ամիր Մաուդուդն արշավեց Ասորիք (Շամ) և իր ճանապարհին Շաբուխտանի[350] կողմերում նվաճեց բերդեր, որոնք ֆրանկներին էին պատկանում և բոլոր պաշտպաններին կոտորեց։ Ապա դնաց և պաշարեց Եդեսիան (Ռուհա), սակայն չկարողացավ գրավել։ Այդ պատվական ու արժեքավոր մարգարտի նվաճումը այլահը վերապահել էր Զանգիին։

Մաուդուդն այստեղից հեռացավ, անցավ Եփրատը, մտավ Ասորիք ու քառասունհինգ օր պաշարեց Տելլ Բաշիրը[351], սակայն չկարողանալով գրավել, շարժվեց դեպի Մաարատ ալ-Նուման, որը պաշարեց։

էջ 36—37

Երբ ամիր Մաուդուդն սպանվեց, սուլթան Մուհամմադը Մոսուլի և այլ քաղաքների կառավարումը հանձնեց ամիր Ջույուշ բեկին, նրա հետ Մոսուլ ուղարկելով իր որդուն՝ Մասուդին։ Ապա սպառազինեց իր զորքը և Ակսունկուր Բուրսուկիի գլխավորությամբ ուղարկեց ֆրանկների դեմ։ Նա դրեց Մոսուլի և այլ քաղաքների զորքերին, որ ենթարկվեն նրա հրամանատարությանը։ Դրանց մեջ էր Իմադ ալ-Դին Զանգին, որին պարսկական զորքերը կոչում էին Սիրիացի Զանգի (Զանգի ալ-Շամի)։

Երբ զորքերը հավաքվեցին Բուրսուկիի մոտ, նա տասնհինգ հազար ձիավորներով շարժվեց դեպի Եդեսիա ու պաշարեց և կռվեց այնտեղ գտնվող ֆրանկների ու հայերի դեմ։ Սակայն զորքի պարենը խիստ պակասեց և նա դիմեց Սամոսատ (Սումայսաթ), որը նույնպես ֆրանկներին էր պատկանում։ Քանդեց նրա քաղաքային մասը [առանց միջնաբերդի] և նույնն արեց նաև Սարուջում։ Նա վերադարձավ Շաբուխտան և քանդեց ամեն ինչ, որ ֆրանկներին էր պատկանում։

էջ 40

## ՄԵԼԻՔՇԱՀԻ ՈՐԴԻ՝ ՍՈՒԼԹԱՆ ՂԻՅԱՍ ԱԼ-ԴԻՆ ՄՈՒՀԱՄՄԱԴԻ ՄԱՀԸ ԵՎ ՈՐԴՈՒ՝ ՄԱՀՄՈՒԴԻ, ՍՈՒԼԹԱՆ ԴԱՌՆԱԼԸ

Ապա սուլթան Մահմուդն իր իշխանության ընթացքում մի պատերազմ մղեց հորեղբոր՝ սուլթան Սանջարի դեմ, բայց պարտվեց ու վերադարձավ հորեղբոր մոտ, առանց նախապես երաշխավորագիր խնդրելու։ Սակայն վերջինս նրան պատվեց և իշխանություն տվեց Խորասանի սահմանից մինչև Դարումը՝ Ասորիքում։ Այդ երկրներն էին՝ Համադանը, Սպահանը (Իսֆահան), ամբողջ Ջիբալ նահանգը, Քիրմանը, Ֆարսը,

Խուզիստանը, Իրաքը, Ատրպատականը, Հայաստանը[152], Դիար Բաքրը, Մոսուլի երկիրը, Ջազիրան, Դիար Մուդարը. Դիար Ռաբիան, Ասորիքը (Շամ) և Ռումի երկրի այն մասը, ուր Կիլիջ Արսլանի որդիներն են այժմ իշխում, [տվեց նաև] այս երկրների միջև ընկած բոլոր քաղաքները։

էջ 59—61

## ԻՄԱԴ ԱԼ-ԴԻՆ ԶԱՆԳԻԻ՝ ՄՈՍՈՒԼԻՆ ԵՎ ԱՄԲՈՂՋ ՋԱԶԻՐԱՅԻՆ ՏԻՐԱՆԱԼԸ

Նախքան պատմելը, թե ինչպես Զանգին տիրացավ [Մոսուլի] իշխանությանը, մենք պետք է խոսենք այն թույլ և անկարող վիճակի մասին, որի մեջ գտնվում էին մահմեդականները և այն ուժի մասին, որ ունեին բազմաստվածյաններր (քրիստոնյաները)։

Այն շրջանում, երբ մեր տեր նահատակը (Զանգին) ձեռնարկեց այս երկրի (Ջազիրայի) տեր դառնալ, ֆրանկների տիրույթները շատ էին մեծացել։ Դրանք տարածվում էին Մարդինից ու Շաբուխտանից մինչև Արիշ՝ Եգիպտոսի սահմանների վրա։ Դրանց տիրույթներից դուրս էին մնում միայն որոշ մահմեդական հողեր (քաղաքներ), ինչպես Հալեպը, Եմեսան (Հիմս), Եպիփանիան (Համա) և Ջազիրան մինչև Մծբին ու Ռաս Այն։ Ասպատակելով այդ շրջանները, նրանք ժողովրդից վերցնում էին ամբողջ շարժական գույքը և դրամը, իսկ Ռակկայի ու Խառանի բնակչությունը ենթակա էր նվաստացման ու ստորացման։

Դամասկոս տանող բոլոր ճանապարհները կտրված էին, բացի այն ճանապարհից, որն անցնում էր [Ասորիքի] Ռահբայով և անապատով, այնպես որ վաճառականները և ճանապարհորդները հարկադրված էին երկար ու տանջալի ճանապարհորդություն կատարել, որը լի էր վտանգներով։ Ստիպված լինելով անցնել վաչկատուն արաբների կողքով, նրանց ունեցվածքն ու կյանքը վտանգի տակ էր։

Դրությունն այնպիսի աստիճանի հասավ և չարիքն այնքան մեծացավ, որ ֆրանկներն իրենց դրացի բոլոր քաղաքներից հարկ և տուրք էին պահանջում, որպեսզի նրանց վրա չարշավեն։ Այսքանն էլ բավական չէր, նրանք իրենց ներկայացուցիչներին ուղարկեցին Դամասկոս, պահանջելով այն գերիներին, որոնց մահմեդականները վերցրել էին Ռումի երկրում, Հայոց երկրում և այլ քրիստոնյա երկրներում։ Սրանց (գերիներին) առաջարկում էին կամ մնալ իրենց տերերի մոտ կամ վերադառնալ իրենց հայրենի երկիրը. միանալու իրենց ընտանիքներին ու եղբայրներին։ Ով ցանկանում էր մնալ, թողնում էին, իսկ ով կամենում էր միանալ ընտանիքին, իրենց հետ էին տանում։

*էջ 63*

*Զանգին հինգ հարյուր քսանմեկ հիջրի (1127) թվականի Ռամազան ամսին (սեպտեմբեր, հոկտեմբեր) ստացավ Մոսուլի իշխանությունը։*

*Ապա գրավելով Ջազիրատ իբն Օմարը, շարժվեց դեպի Մծբին։ Այն գրավելուց հետո ուղղվեց դեպի Սինջար, որի կայազորը թեթև դիմադրությունից հետո հպատակություն հայտնեց։*

*էջ 68*

### ԶԱՆԳԻԻ՝ ԲՌՆԻ ՈՒԺՈՎ ՋԱԶԻՐԱՆ ԳՐԱՎԵԼԸ

*Ապա նա (Զանգին) լուր ուղարկեց Ջոսլինին, որն իշխում էր Եդեսիայում և ֆրանկների Ջազիրայում նվաճած այլ մասերում, և մի կարճատև հաշտություն (զինադադար) կնքեց նրա հետ։ Նա գիտեր, որ այդ ժամանակավոր դադարի ընթացքում կկարողանար Ասորիքի ու Ջազիրայի մնացած մասերը գրավել։*

*էջ 69*

### ԶԱՆԳԻԻ՝ ՀԱԼԵԲԸ, ՇՐՋԱԿԱ ՎԱՅՐԵՐԸ ԵՎ ԵՄԵՍԱՆ ԳՐԱՎԵԼԸ

*Հալեբի բնակիչները, որոնք ստիպված էին ֆրանկներին զիջել իրենց տիրույթների և նույնիսկ քաղաքի պարտեզների դռնից դուրս գտնվող ջրաղացների հասույթների կեսը, երբ լսեցին Զանգիի մոտիկ լինելը, մարդ ուղարկեցին օգնություն խնդրելով և հպատակության պատրաստակամություն հայտնելով։ Նա գնաց նրանց մոտ, անցնելով Եփրատը և գրավելով Մանբիջ քաղաքն ու Բիզաա բերդը, մտավ Հալեբ։*

*էջ 117*

### ԶԱՆԳԻԻ՝ ԲԱԶՈՒՄ ՔԱՂԱՔՆԵՐ ՈՒ ԲԵՐԴԵՐ ԳՐԱՎԵԼԸ ԴԻԱՐ ԲԱՔՐՈՒՄ

*Հինգ հարյուր երեսունութ հիջրի (1143—1144) թվականին նահատակը (շահիդ) շարժվեց դեպի Դիար Բաքր, այն պաշարելու ու նվաճելու նպատակով։ Բազմաթիվ քաղաքներ նվաճեց, ինչպես Թանզան, Սղերդը և Հիզանը, ապա գրավեց ալ-Մադան քաղաքը, ուր մշակվում է Հայաստանում հանված պղինձը, ինչպես նաև ալ-Ջուկ (ալ-Ռուկ), Ֆաթլիս, Բատասա և Զու-լ-Կարնայն (երկկոտոշավոր) բերդերը։ Գրավեց նաև Մարդինի գավառներից շատ բնակավայրեր, կարգ հաստատեց և կայա-*

զորներ նշանակեց իր հեռանալուց հետո այդ վայրերը պահպանելու համար։ Նա դիմեց Ամիդ և Հանի քաղաքները, երկուսն էլ պաշարեց։ Տիրեց Հանի քաղաքին, իսկ Ամիդի շրջակայքը նվաճեց և շարունակեց պաշարել Ամիդը, սակայն նրա հիմնական նպատակն էր տեղեկություններ հավաքել Եդեսիայի մասին։ Նա մի զորամաս ուղարկեց նաև Անա քաղաքի դեմ, որը նվաճվեց։

**էջ 118—124**

Հինգ հարյուր երեսունինն հիջրի թվականի Ջումադա Ա ամսին (դեկտեմբեր 1144) նահատակը (Զանդին) Եդեսիան դրավեց ֆրանկներից։

Սա պատկանում էր Ջոսլինին (Ջուսլին), որը ֆրանկների հերոսն էր, ոգևորող սատանան, նրանց հետևակի ու հեծելազորի հրամանատարը։ Նրանք (ֆրանկները) բոլորը, շատ քաջարի լինելով հանդերձ, նրան հնազանդվում էին և կամքը կատարում։

Պաշարումը տևեց քսանութ օր և այդ քաղաքը նորից ընկավ մահմեդականների տիրապետության տակ և նրանում գործադրվեցին հավատացյալների օրենքները։ Եդեսիան քրիստոնյաների համար ամենապատվական և ամենակարևոր քաղաքներից էր, նրանց [եպիսկոպոսական] աթոռներից։ Ֆրանկների ամենապատվական [քաղաքը] Երուսաղեմն էր, ապա Անտիոքը (Անթաքիա), Հռոմը (Ռումիա), Կոստանդնուպոլիսը (Կուսթանթինիյյա) և Եդեսիան։

Սա իրոք նվաճումների նվաճումն էր և ականատեսների վկայությամբ այն կարելի էր նմանեցնել Բադրի[353] ճակատամարտին։ [Զանգին] կրոնական պատերազմը մղեց ամենահաստատ ձևով։ Եթե Թաի ցեղի մարդը[354] այս օրերում ապրեր, պիտի ընդուներ, որ նահատակը (Զանգին) իրենից ավելի մեծ իրավունք ուներ ասելու՝ «սուրն ավելի հատու է, քան գրքերը»։

Այս քաղաքի ֆրանկները մեծ աղետ էին դարձել դրացի մահմեդականների համար և անսահման էր նրանց հասցրած չարիքը։ Եդեսիան Ջազիրայի աչքն էր և մահմեդական երկրների անառիկ ամրոցը։ Այս քաղաքից բացի [ֆրանկները] տիրել էին բազմաթիվ քաղաքների, նրանց թագավորությունը ընդարձակվել էր և նրանց տիրապետության տակ ճնշվում էր բնակչությունը։ Նրանք տիրում էին Մարդինի կողմերից մինչև Եփրատ, Շաբուխտանից անցնող ճանապարհի գծի վրա, ունեին մեծ թըվով բերդեր, ինչպես Սարուջը, ալ-Բիրան, Ջումուլայնը, ալ-Մուազզիրը, ալ-Կուրադին, Սինն իբն Ութայրը և այլն։ Նրանց ասպատակությունները հասնում էին մինչև Ամիդ քաղաքը, Դիար Բաքրում, մինչև Մարգին, Մրծ-

քին, Ուռս Այն և Ռակկա, իսկ խառանն անվերջ նվաստացման վիճակում էր, միշտ արշավանքների ենթակա լինելով։

Երբ նաՀատակը տեսավ այս վիճակը, իր իշխանության պատիվը բարձր պաՀելու Համար որոշեց այլևս չՀանդուրժել, որ Եդեսիայում Հաստատված անՀավատները ասպատակեն մաՀմեդական երկրները։ Սակայն նա լավ գիտեր, որ ոչ մի նպատակի չի Հասնի և չի կարողանա անՀավատներին ոչնչացնել, քանի այնտեղ կան Ջոսլինն ու նրա ձիավոր [ասպետները], նրա զինվորներն ու օգնականները։ Գիտեր, որ եթե գնար ու պաշարեր [Եդեսիան], ֆրանկներն ամեն կողմից պիտի Հայտնվեին այն պաշտպանելու, ուստի խորամանկության դիմեց, քանզի այս պարագային Հնարամտությունն ավելի զորեղ էր, քան ճակատամարտը և խելացիությունն ավելի ազդու, քան քաջությունը։ Խելացիությունն առաջին տեղում էր, իսկ քաջությունը՝ երկրորդ տեղում։

Ուստի, փոխանակ Հարձակվելու, դիմեց դեպի Դիար Բաքրի քաղաքները, որոնք Եդեսիային մերձակա էին, ինչպես Հանին, Ճապաղ ջուրը (Ջաբալ ջուր) և Ամիդը, ինչպես արդեն պատմել ենք։ Այնտեղ նա դանդաղկոտությամբ էր կռվում, քանզի մտքում այլ նպատակ ուներ։ Նա նման էր այն մարդուն, որ սիրաբանում էր մի գեղեցկուՀու, բայց ձգտում էր ուրիշին, փաղաքշում էր մեկին, բայց կամենում էր մյուսին։

Նա պաՀակներ էր նշանակել [Եդեսիայի շրջակայքում], որոնք պարտավոր էին նրան տեղեկացնել, Հենց որ Ջոսլինի առյուծները որջից դուրս գային և բերդը մնար առանց զորքի ու պաշտպանների։

Իսկ Ջոսլինը տեսնելով, որ նաՀատակը զբաղված էր Դիար Բաքրի մարդկանց դեմ կռվելով և կարծելով, թե չի կարող իր վրա Հարձակվել, Հեռացավ Եդեսիայից դեպի Ասորիքում ունեցած իր տիրույթները, ստուգելու իր կալվածները, ինչպես նաև իր գանձերն ու ունեցվածքը։ ՆաՀատակն իր լրտեսների միջոցով տեղեկանալով, որ Ջոսլինը Հեռացել է իր զորքով ու յուրայիններով և քաղաքը զուրկ է պաշտպաններից, Հրամայեց իր զորքերին ազդանշան տալ, շտապ արշավանքի պատրաստվել և արագ շարժվել, ետ մնացողներին սպառնալով։ Նա Հայտարարեց, որ ուշացողներից ոչ մի պատճառաբանություն չի ընդունի։ Աղեղից արձակված նետի արագությամբ և Հորդացող Հեղեղի թափով առաջ սլացավ, իսկ զորքերը խումբ-խումբ Հետևում էին նրան, մասնակցելով կրոնական պատերազմին, ավելի շատ Հավատից դրդված, քան որպես պարտականություն։ Նրանք միաՀամուռ առաջացան Հարավային քամուց մղված ամպի նման և արագացրին իրենց ձիերի ընթացքը։

Երբ քաղաքում գտնվող թշնամիները իմացան, որ նաՀատակը մոտենում է նրանց, սրտները աՀով լցվեց, երկյուղը պղտորեց նրանց ար-

յունը, հուսալքումը պատեց նրանց և տեսան, որ կորստյան են դատապարտված։ Նրանք ասացին. «Եթե մեր Տերը մեզ չգթա և չների, մենք կկորչենք» (Ղուրան, է, 148)։ Սակայն ալլահը մերժեց նրանց աղոթքը, քանզի կամենում էր վրեժխնդիր լինել նահատակի սրով և ղեհենում հավաքել նրանց ներկաներին ու բացականերին, որպես հատուցում նրանց կատարած սարսափելի չարագործությունների և ահավոր կոտորածների. Ալլահը նրանց վրա ուղարկեց նահատակին, որպես տանջանք ու պատիժ։ Ապա «երկիրն, ինչքան էլ որ ընդարձակ է, նրանց համար խիստ փոքր էր» (Ղուրան, Թ, 119)։ Նրանց հոգիները թուլացան, գլուխները խոնարհվեցին նրա (Զանգիի) ահի դիմաց։ Նա եռանդուն մոտեցավ քաղաքին սպառազինված իր միշտ խանդավառ, զինավառ, համախմբված գնդերով և ծածանվող դրոշներով։

Իր գնդերով գրոհեց դեպի քաղաքը, երկյուղ տարածելով և քաջաբար առաջ խաղալով, երկիրը կարծես դղրդում էր, իսկ ցերեկը դիշերվա խավարով մթնում էր։ Ֆրանկները թեև գիտակցում էին, որ դեպի մահ են գնում, առաջ էին նետվում կռվի, ինչպես գիշերային թիթեռնիկները նետվում են կրակի մեջ, կամ ինչպես բանաստեղծն ասել է.

Իմ կյանքը փրկելու համար ես ետ էի քաշվել
Սակայն գտա, որ լավագույնն առաջ գնալն է։

Քաղաքի մոտ հասնելով ու տեսնելով, թե ինչ գեղեցիկ ու ամրակուռ է, նահատակը գրեց բնակիչներին, որ իրեն հանձնվեն երաշխավորագրի դիմաց, ապահով լինելով, որ իրենց պարիսպները չեն քանդվի և տները չեն դատարկվի. նա ափսոսում էր, որ այդպիսի [քաղաքը] հողին հավասարվի ու քարուքանդ լինի։ Սակայն նրանք չընդունեցին երաշխավորագիրը և մերժեցին հպատակվել։ Այն ժամանակ նա բարձրյալն ալլահի դատաստանին դիմեց, իր քաջարի ռազմիկներին առաջ քշեց, քարանետ մեքենաներ դրեց, պարիսպ քանդողների ուղարկեց և կատաղի կռիվ ըսկըսեց։ Նա վախենում էր, որ ֆրանկներն ի մի կհավաքեն իրենց գնդերը և կգրոհեն ստիպելու նրան, որ նահանջի և կփրկեն քաղաքը։

Երբ ֆրանկները լսեցին, ելան՝ կրակ ու բոց դարձած, ոտքի կանգնեցին, կազմակերպեցին իրենց հեծելազորն ու հետևակը, երիտասարդներին ու ծերերին, ամենքին ստիպեցին աճապարել, վախենալով, որ կուշանան և քաղաքը ձեռքից կկորցնեն։ Ջոսլինը լուրն առնելով անցավ Եփրատի ձախ ափը, հուսալով, որ կկարողանա հասնել կռվի դաշտը, կամ օգնություն կհասցնի նրանց (եդեսացիներին), սակայն դժվարությունները խանգարեցին նրան։ Եվ ինչպե՞ս կհասներ այդ նպատակին, երբ իր ախոյանը նահատակն էր։ Վերջինս անընդհատ հարձակումներ

գործեց, մինչև որ պարիսպ քանդողները հասան պարսպի տակը, հիմքերը քանդեցին ու հրկիզեցին։

Նա հրով և սրով գրավեց քաղաքը և բնակիչներին ամեն տեսակ նեղություն ու չարիք պատճառեց։ Գրավելուց հետո բնակիչներին կողոպտեց, ստորացրեց, խաչերը տապալեց, կոտորեց քահանաներին ու վանականներին, սպանեց քաջերին ու ձիավոր [ասպետներին]։ Նրա առջև միայն մեռյալներ ու գերյալներ կային, վիրավորներ ու խեղանդամներ։ Նրա զինվորները վերցրին ավար ու գերիներ, ամեն տեսակ թանկարժեք իրեր, սիրուն տղաներ, եղնիկի նման աղջիկներ, որոնց ամենքին գերեվարեցին։

Սակայն, երբ նահատակը մտավ քաղաք, նրան դուր եկավ տեսարանը, տեսավ նրա առավելությունները և ափսոսաց, որ նման քաղաքը ավերվի և իր իշխանության օրոք այնտեղ իշխի մահն ու ավերածությունը։ Նա համոզվեց, որ սխալ է ավերել և բնակիչներին արտաքսել։ Ուստի հրամայեց վերադարձնել ամեն ինչ, որ վերցրել էին՝ կահ-կարասի, ունեցվածք, գերյալ կանայք ու տղամարդիկ. մատաղ աղջիկներ ու տղաներ։ Ամեն ինչ վերադարձվեց և միայն չնչին կորուստներ եղան։ Քաղաքը նորեն շենացավ, այն դեպքում, երբ կորստյան էր մատնվելու։ Լցվեց բնակիչներով ու ապահով դարձավ, այն դեպքում, երբ արդեն գայլերի ու բորենիների որջ էր դառնալու։

Նա (Զանգին) քաղաքում կայազոր նշանակելուց հետո, գնաց նվաճելու ֆրանկների ձեռքում գտնված ամեն ինչ՝ քաղաքներ, բերդեր, գյուղեր, ինչպես, օրինակ, Սարուջը։ Ամբողջ Ջազիրան ազատեց ֆրանկների ձեռքում գտնվելու դժբախտությունից և նրանց չարիքից։ Բնակիչներին հանգստացրեց նրանց դավերից ու չարությունից և տիրեց ապահովություն վախի փոխարեն և մարդիկ հանգստացան ապահով անկողինների վրա։

Սա այնպիսի մեծ հաղթանակ էր, որի նմանը մահմեդականները երբեք չէին շահել։ Լուրը տարածվեց ամեն կողմ ու բուրմունքը սփռվեց և ամեն մի հավաքույթի խոսակցության նյութը դարձավ։

էջ 129—130

## ՖԱՆԱՔ ԲԵՐԴԻ ՊԱՇԱՐՈՒՄԸ

Սա Ջազիրաթ իբն Օմարին մերձակա բերդ է և մինչև օրս պատկանում է Բաշնավի քրդերին։

Հինգ հարյուր քառասուն հիջրի (1145—1146) թվականին Աթաբեկը հրամայել էր Զայն ալ-Դինին զորք ուղարկել այս բերդը պաշարելու։

Երբ Նահատակն սպանվեց, պաշարումը վերացավ և [պաշտպանները] նեղությունից ազատվեցին։ Այս կողմերի տերն ուներ բազմաթիվ բերդեր, որոնք Նահատակը վերցրել էր նրանից, ինչպես Հայսամը, Ջաղիդատ Նասիբինը (Նոր Մծբին), Շարուն և այլ բերդեր Անձևացյաց (ալ-Ջավազան) գավառից։

էջ 143—144

## ՆԱՀԱՏԱԿ ՏԻՐԱԿԱԼԻ (ԶԱՆԳԻ) ԿՅԱՆՔԻ ՈՐՈՇ ԳԾԵՐԸ

Շրջապատված լինելով թշնամիներով ու մրցակիցներով, որոնք ձգտում էին նրա գավառները խլել, նա քաջաբար դիմադրում էր և նույնիսկ ինքն էր մի քանիսից տիրույթներ վերցրել։

Ահա թե ինչ էր պատմել հայրս այս մասին.

Նահատակն իր տիրույթներում շրջապատված էր թշնամիներով ու հակառակորդներով, ինչպես. օրինակ, ալ-Մուստարշիդ բիլլահ խալիֆան։ Երբ լարվածությունը նրանց միջև հասնում էր բացահայտ ընդհարման, վերջինս անմիջապես շարժվում էր դեպի Մոսուլ և պաշարում։ Նույնպես և [սելջուկյան] սուլթան Մասուդը, որն իշխում էր Ջիբալում և Ատրպատականում, այլ կողմից սահմանակից էր Նահատակին։ Բոլոր [շրջապատող] տիրակալներից նա էր ամենազորեղը, մեծ զորքի տեր էր և ամենաշատն էր ատում Նահատակին։ Մյուս կողմից կային Հայաստանի նահանգները, որոնք պատկանում էին նրան թշնամի Սուքմանի տանը։ Այս տոհմի ներկայացուցիչները շատ զորք ունեին և նրանց բազմաթիվ քաղաքները, ինչպես Հիզանը, Մաղանը և այլն, սահմանակից էին նրան։ Սուքմանի տան տիրույթների կողքին կային Հիսն Քեյֆի ու Դիար Բաքրի տեր Ռուքն ալ-Դաուլա իբն Սուքման իբն Ուրտուկի (Արտուկ) և նրա հորեղբորորդի Մարդինի տեր Հուսամ ալ-Դին Տիմուրտաշ իբն Իլղազի իբն Ուրտուկի հողերը։ Սրանց երկուսի տիրույթները մոտիկից սահմանակից էին Նահատակի հողերին, ինչպես Ջազիրատ իբն Օմարը, Մծբինը և հակառակ դրան նա գրավեց նրանց քաղաքներից շատերը։

Այս բոլորի հետ մեկտեղ Մարդինի մերձակայքից մինչև Դամասկոսի դռները, նրա Ռաս Այն, Խառան, Հալեբ, Եպիփանիա (Համա), Եմեսա (Հիմս) և Բաալբեք քաղաքներին սահմանակից էին ֆրանկների նվաճած հողերը։ Սրանք ինչքան էլ որ խիստ հզոր էին և մեծ թվով, համենայնդեպս Նահատակը գրավեց նրանց քաղաքները, հաճախ պարտության մատնելով նրանց։ Ապա կար նաև Դամասկոսի տերը, որը նրան դրացի էր և նույնիսկ նրանից էլ քաղաքներ խլեց։

*էջ 156—157*

## ԵԴԵՍԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՔԱՂԱՔԻ ՎԵՐԱՆՎԱՃՈՒՄԸ ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ

*Երբ Նահատակն սպանվեց, Եդեսիայի նախկին տեր Ֆրանկ Ջոսլինը գտնվում էր Եփրատից արևմուտք ընկած իր տիրույթներում՝ Տելլ Բաշիրում և Հարևան Հողերում։ Նամակ գրեց Եդեսիայի բնակիչներին, որոնք ընդհանրապես հայեր էին և խոստացավ, որ մի հարմար օր գալու է նրանց մոտ։ Սրանք հավանություն տվեցին, և [Ջոսլինը] իր զորքով եկավ ու տիրեց քաղաքին, սակայն միջնաբերդում եղած մահմեդականները դիմադրեցին ու կռվեցին և նա ևս համառորեն կռվեց։ Լուրը հասավ Նուր ալ-Դինին, որն իր հոր սպանությունից հետո իշխում էր Հալեբում և իր մոտ եղած զորքով շարժվեց դեպի Եդեսիա։ Ջոսլինը, երբ լսեց նրա գալուստը, դուրս եկավ Եդեսիայից դեպի իր տիրույթները, իսկ Նուր ալ-Դինը մտավ քաղաք, կողոպտեց, գերեվարեց ժողովրդին և այս անգամ արդեն կողոպտվեց ու կործանվեց, բնակչությունից ամայացավ քաղաքը և միայն քչերը մնացին։*

*Սա Եդեսիայի երկրորդ նվաճումն էր և այն մնաց Նուր ալ-Դինի ձեռքում, իսկ [եղբայրը]՝ Սայֆ ալ-Դինը, չառարկեց նրան։*

*էջ 181—182*

## ՆՈՒՐ ԱԼ-ԴԻՆԻ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ՋՈՍԼԻՆԻՑ

*Հինգ հարյուր քառասունվեց հիջրի (1151—1152) թվականին Նուր ալ-Դինն ասպատակեց Ջոսլինի երկիրը, որն ընդգրկում էր Հալեբից հյուսիս ընկած բերդերը, ինչպես Տելլ Բաշիրը, Այնթապը (Այն Տաբ), Ազազը և այլ բերդեր։*

*Ֆրանկ Ջոսլինը զորք հավաքեց՝ ձիավոր ու հետիոտն և շարժվեց Նուր ալ-Դինի դեմ։ Սաստիկ կռիվ տեղի ունեցավ, որը վերջացավ մահմեդականների պարտությամբ և ֆրանկների հաղթանակով։ Ջոսլինը Նուր ալ-Դինի զինակրին գերի բռնեց և նրանից վերցնելով բոլոր զենքերը. ուղարկեց Իկոնիայի, Ակսարայի և այլ վայրերի սուլթան Մասուդ իբն Կիլիչ Արսլան ալ-Սելջուկիին, որի աղջկա հետ Նուր ալ-Դինն ամուսնացել էր։ Զենքերի հետ նամակ էր ուղարկել, որի մեջ գրում էր՝ ուղարկում եմ քո փեսայի զենքերը և սրանից հետո ուրիշ էլ կուղարկեմ։ Նուր ալ-Դինը մեծապես վիրավորվեց և, ինչպես կտեսնենք, հնարամտություն գործադրելով Ջոսլինին գերի բռնեց։*

էջ 182—184

## ՋՈՍԼԻՆԻ ԳԵՐԻ ԸՆԿՆԵԼԸ ԵՎ ՆՐԱ ՀՈՂԵՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*Երբ Նուր ալ-Դինը լսեց Ջոսլինի արարքը, թե ինչպես իր զենքերն ուղարկել էր աներոջը՝ սուլթան Մահմուդին, այլևս չկարողացավ հանգիստ մնալ և մտածում էր վրեժ լուծելու մասին։ Կրտեսներ նշանակեց Ջոսլինի վրա և բերեց Թուրքմենների մի խումբ ու նրանց խոստացավ արժեքավոր նվերներ՝ հողային տիրույթներ ու հարստություն, եթե նրանք բռնեին ու բերեին Ջոսլինին սպանված կամ գերի։ Նա գիտեր, որ եթե մահմեդական զորքերը հավաքեր ու գնար նրա դեմ, Ջոսլինն իր հերթին կհավաքեր ֆրանկներին ու զգուշությամբ կպաշտպանվեր։ Ուստի հնարամտության դիմեց. մի օր, երբ Ջոսլինը որսի էր դուրս եկել և փոքրաթիվ մարդկանցով զբոսնում էր, Թուրքմենների խումբը հանկարծակի հարձակվեց ու բռնեց նրան։ Նա (Ջոսլինը) իրեն բաց թողնելու համար դրամ առաջարկեց և վերջիններս համաձայնեցին, այդ բանը թաքցնելով Նուր ալ-Դինից։ Ջոսլինը մարդ ուղարկեց դրամը բերելու, սակայն Թուրքմեններից մեկը եկավ Նուր ալ-Դինի Հալեբի տեղակալի (Նաիբ) մոտ ու տեղեկացրեց եղելությունը։ Սա զորք ուղարկեց և Ջոսլինին խլեցին Թուրքմեններից։ Իսկ Նուր ալ-Դինն այդ ժամանակ Եմեսայում (Հիմս) էր։*

*Ջոսլինի գերի ընկնելը հեշտացրեց նրանց (ֆրանկների) քաղաքների ու բերդերի մեծ մասի նվաճումը, ինչպես, օրինակ, Տելլ Բաշիրը, Այնթապը (Այն Տար), Ազազը, Կիրոսը (Կուրուս), Ռավանդանը, Հիսն Բարան, Տելլ Խալիդը, Քաֆր Լասան, Քաֆր Սուդը, Հիսն Բիսիրֆուսը Բանի Ալիմի լեռներում, Տլուքը (Դուլուք), Մարաշը, Նահր ալ-Ջաուզը, Բուրջ ալ-Ռասասը (Կապարե աշտարակ) և այլ վայրեր։*

*Ամեն անգամ, որ Նուր ալ-Դինը մի բերդ էր գրավում, չէր հեռանում, մինչև որ կայազոր էր նշանակում, տաս տարվա պարենով միասին, քանզի վախենում էր, թե քրիստոնյաները ինչ-որ ձևով կրկին հանկարծակի կհարձակվեն մահմեդականների վրա։ Ուստի նրա բերդերը միշտ պետք է պատրաստ վիճակում լինեին և ոչ մի բանի կարոտություն չպետք է ունենային։*

էջ 185

## ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ ՆՈՒՐ ԱԼ-ԴԻՆԻ ՈՒ ՖՐԱՆԿՆԵՐԻ ՄԻՋԵՎ ՏԼՈՒՔՈՒՄ[35]

*Երբ Նուր ալ-Դինը Ջոսլինի բերդերը նվաճելու նպատակով հարձակվեց, մի մասին տիրեց, իսկ որոշ բերդեր մնացին։ Ֆրանկները հավաքվեցին ու գնացին այդ բերդերի կողմը՝ պաշտպանելու և կարծում*

էին, որ Նուր ալ-Դինը տեսնելով իրենց հավաքված բազմությունը, կհրաժարվի հարձակվելու մտադրությունից, մանավանդ որ [այդ բերդերը] գտնվում էին իրենց տիրույթների խորքում։

Երբ Նուր ալ-Դինն իմացավ, առաջ խաղաց, որոշած լինելով անպայման բախվել նրանց հետ։ Նրանք իրար հանդիպեցին Տլուքում ու կռվեցին և երկու կողմերի միջև այնպիսի կատաղի պատերազմ եղավ, որը տեսնելուց երեխայի մազերը կարող էին սարսափից սպիտակել։ Սակայն ալլահը հաղթանակը պարգևեց մահմեդականներին, իսկ ֆրանկներն իրենց մեջքը դարձրին և այնպիսի փախուստի մատնվեցին, որ շատերը կոտորվեցին, իսկ ողջ մնացածները փախան։ Նուր ալ-Դինը գրավեց Տլուքը և այլ վայրեր։

էջ 290—292

## ՆՈՒՐ ԱԼ-ԴԻՆԻ ՀԱՐՁԱԿՈՒՄԸ ԿԻԼԻՋ ԱՐՍԼԱՆԻ ԵՐԿՐԻ ՎՐԱ

Հինգ հարյուր վաթսունութ հիջրի (1172—1173) թվականին Նուր ալ-Դինը շարժվեց դեպի մալիք (թագավոր) Իզզ ալ-Դին Կիլիջ (Ղլըճ) Արսլան իբն Մասուդ իբն Կիլիջ Արսլան իբն Սուլայման ալ-Սելջուկիի երկիրը՝ Մալաթիա, Սեբաստիա, Իկոնիա և Ակսարա, նպատակ ունենալով պատերազմել ու գրավել նրա երկիրը։

Բանն այն է, որ Կիլիջ Արսլանը հարձակվել էր Մալաթիայի ու Սեբաստիայի և այդ երկրի (Ռումի) այլ մասերի տեր Զու-լ-Նուն իբն Դանիշմանդի վրա, գրավել նրա երկիրը, հեռացրել նրան ու դարձրել վտարանդի թափառական։ Վերջինս դիմել էր Նուր ալ-Դինին օգնություն խնդրելով և նրա հովանավորությանն ապաստանելով՝ Նուր ալ-Դինը սիրալիր ընդունել էր, բարյացակամություն ցուցաբերել, արքայավայել ընծաներ նվիրել, միաժամանակ խոստանալով օգնել նրան և օժանդակել իր թագավորությունը վերականգնելու։

Նուր ալ-Դինը սովորություն ուներ որևէ մահմեդական երկիր չներխուժել, եթե դա անհրաժեշտություն չէր ֆրանկների դեմ պայքարի կամ էլ այդ երկիրը ֆրանկներից պաշտպանելու համար, ինչպես արեց Դամասկոսում, Եգիպտոսում և այլուր։ Ուստի, երբ Զու-լ-Նունը եկավ նրա մոտ, ինքը նամակ գրեց Կիլիջ Արսլանին և առաջարկեց, որ գրաված երկրամասերը վերադարձնի, սակայն վերջինս չպատասխանեց։

Նուր ալ-Դինը շարժվեց նրա կողմը ու գրավեց Քեսունը (Քայսուն), Բեհեսնին, Մարաշը, Մարզուբանը, ինչպես նաև նրանց միջև ընկած բերդերը և իր զորքից մի մաս ուղարկելով գրավեց Սեբաստիան։ Երբ Կիլիջ Արսլանը լսեց, թե Նուր ալ-Դինը մտել է իր երկիրը, Ասորիքին սահմանա-

կից գավառներից հեռացավ իր երկրի կենտրոնը, խիստ վախենալով նրանից և նամակ գրեց սիրտն առնելով, հաշտություն խնդրելով ու ներողություն հայցելով։ Նուր ալ-Դինը դադարեց առաջ խաղալուց, կամենալով հարցը լուծել առանց պատերազմի, մանավանդ անհանգստացնող լուրեր էր ստացել ֆրանկների գործունեության մասին, ուստի մտահոգվեց և ընդառաջեց նրա հաշտության առաջարկին։

Հաշտությունը կնքվեց, և Նուր ալ-Դինը հեռացավ, զորք թողնելով Սեբաստիայում և Ֆախր ալ-Դին Աբդ ալ-Մասիհին դարձնելով Զու-լ-Նունին ենթակա։ Նուր ալ-Դինի մահվանից հետո այս զորքը հեռացավ Սեբաստիայից, իսկ Կիլիջ Արսլանը կրկին տիրացավ նրան։

էջ 307—308

## ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ԱՏՅԱՆԻ ՀԻՄՆԱԴՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Ֆրանկների հետ ունեցած հարաբերությունների ընթացքում նա (Նուր ալ-Դինը) հաճախ էր գործադրում հնարամտություն, խորամանկություն ու խաբեություն և մեծ մասամբ այս միջոցներով էր նա տիրացել նրանց հողերին։

Որպես խելամտության մի օրինակ հիշենք նրա վերաբերմունքը Հայոց թագավոր (մալիք ալ-Արման), կիրճերի տեր՝ (սահիբ ալ-դուրուբ) Լևոնի որդի Մլեհի (Մալիհ իբն Լայուն) հետ։ Նա խորամանկում էր և սիրաշահում նրան, մինչև որ կարողացավ իր ծառայության մեջ վերցնել նրան թե՛ կռիվների, թե՛ դադարի (խաղաղության) ժամանակ և միասին կռվում էին ֆրանկների դեմ։

Նա ասում էր. «Ես նրան սիրաշահեցի, քանզի նրա երկիրը ամուր պաշտպանված է դժվարանցանելի կիրճերով ու անմատչելի ամրոցներով և մենք ոչ մի ճանապարհով չենք կարող ներթափանցել, մինչդեռ նա, երբ որ կամենա, կարող է դուրս գալ և ասպատակել մահմեդական երկրները։ Եթե որևէ մեկը նրա դեմ հարձակվի, նա (Մլեհը) կարող է փակվել իր սահմաններում, որպես անմատչելի որջ։ Տեսնելով այս վիճակը, նրան որոշ տիրույթներ տվեցի վստահություն շահելու համար և նա ենթարկվեց ու մտավ իմ ծառայության մեջ և օգնեց ֆրանկների դեմ»։

Նուր ալ-Դինի մահվանից հետո նրա հաջորդները այլ վերաբերմունք ցուցաբերեցին և արդյունքն եղավ այն, որ Մլեհին հաջորդող Հայոց տիրակալը[58] (մուտավալլի) մահմեդական երկրներից շատ քաղաքներ ու բերդեր գրավեց և դրանից մեծ չարիք և հսկայական վնաս (կորուստ) հասավ, որը հնարավոր չէ ետ ստանալ։

*էջ 325*

## ԹԱՆԿՈՒԹՅԱՆ ՈՒ ՀԱՄԱՃԱՐԱԿԻ ՄԱՍԻՆ

*Հինգ հարյուր յոթանասունչորս հիջրի (1178—1179) թվականին սարսափելի թանկություն եղավ ու տարածվեց Իրաքում, Մոսուլում, Դիար Բաքրում (Աղձնիք) և Ասորիքում ու այլ երկրներում։ Սա տևեց գրեթե մինչև հինգ հարյուր յոթանասունհինգ թվականի վերջը։ Մարդիկ դուրս եկան ալլահից [անձրև] խնդրելու, սակայն անձրև չեկավ։ Ապա ալլահը խղճաց իր ծառաներին և բարյացակամ գտնվելով, հորդառատ անձրևներ իջեցրեց բոլոր երկրների վրա, որի հետևանքով գների իջեցում տեղի ունեցավ։*

*էջ 365—366*

## ՆՈՒՐ ԱԼ-ԴԻՆԻ ՄԱՀԸ

*Նա ծրագիր էր կազմել հարձակվելու իր դրացի նահանգների վրա, որոնք պատկանում էին ալ-Մալիք ալ-Ադիլին։*

*Սակայն այնպես պատահեց, որ Նուր ալ-Դինը, առողջության խանգարման պատճառով, նախընտրեց չհարձակվել և հաշտվեց Ադիլի հետ, որն իր հերթին գաղտնի նամակագրություն ուներ նրա հետ սիրաշահելու նպատակով։*

*Ադիլը տիրում էր Եգիպտոսին, Ասորիքին, Ջազիրային, Հայաստանին (Դիար Արմինիա) և Դիար Բաքրի մի մասին, թեև մյուս մասն էլ նրան հպատակ էր։ Նրան կողմնակից էին Սինջարի տերը, Արբելայի (Իրբիլի) տեր ալ-Մալիք ալ-Մուազզամը և Ջազիրատ իբն Օմարի տեր Մուիզզ ալ-Դինը, իսկ հանգուցյալ Նուր ալ-Դինը միշտ կռիվների մեջ էր սրանց հետ և ասպատակում էր նրանց երկրները։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Հարամ (حرم) նշանակում է արգելված սուրբ վայր (Երուսաղեմ)։ Հարամ են կոչվում նաև Մեքքան և Մադինան. ավելի հաճախ՝ հարամայն, այսինքն երկու սրբավայրեր։

Haram. *S*horter Enc. of Islam, p. 133.

2. Ջուդի (جودي) արաբական անունն է Կորճայք նահանգի Արարադ լեռան, որի վրա, ըստ Ղուրանի կանգ առավ Նոյան տապանը։

*Le Strange*, The Lands, p. 94.

3. Կարդին կամ Կարդան (قردى) արաբական ձևն է Կորդուք անվան։ Տե՛ս Հ. Հյուբշման, «Հին հայոց տեղւոյ անունները», էջ 203, Երեմյան, Աշխարհացույց, էջ 60։

4. Սամանին կամ Թամանին (ثمانين) հայկական Թման գյուղն է Արարադ լեռան մոտ։ Արաբերեն սամանին նշանակում է ութսուն։ Երեմյան, Աշխարհացույց, էջ 53։

5. Այս տոհմաբանությունը գալիս է դեռ հին Արևելքից (Աստվածաշնչից), ըստ որի, Նոյ նահապետի Սեմ, Քամ և Հաբեթ որդիներից սերել է ամբողջ մարդկությունը։ Սակայն արաբական մատենագրության մեջ հիշված տարբերակն ունի իր առանձնահատկությունները։ Ըստ Աստվածաշնչի՝ «Որդիք Յաբեթի՝ Գամեր և Մագովգ և Մադա և Յաւան և Եղիսա և Թոբէլ և Մոսոք և Թիրաս»։ Ծնունդք, Ժ, 2։

6. Ըստ արաբական ավանդության, այս Լանթայի (لنطى) որդիներից են նաև հայերը։ Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Հայերի ծագման զրույցի արաբական տարբերակը, «Լրաբեր Եր. համալսարանի», 1971, № 1, էջ 159—165։

7. Սասանյան առաջին արքա Արտաշիրի՝ Հայաստան և այլ երկրներ արշավելու մասին հիշվում է նաև Ֆիրդուսու «Շահնամեում»։ Այս տեղեկությունը, ինչպես նաև Սասանյանների մասին բոլոր զրույցները պահլավական մատենագրությունից են անցել արաբներին։

8. Ջաբալ (جبل) կամ Ջիբալ (جبال) նահանգը Համադանի շրջանն է։ Հետագայում խալիֆայության մեջ այս անվամբ նահանգ կար։

9. Արաբ մատենագրության մեջ Ադարբայջան (اذ ربيجان) տեղանունը օգտագործվում է հիմնականում իրանական Ադրբեջանի համար։ Մենք հարմար գտանք այն թարգմանել Ատրպատական, քանի որ դա լրիվ համապատասխանում է արաբերեն Ադարբայջանին։

10. Արաբերեն Արմինիա (أرمينية) տեղանունը պատմագրության մեջ օգտագործվում է մի շարք (հիմնականում երեք) իմաստներով՝ բուն Հայաստան, Արմինիա ոստիկանություն, ինչպես նաև խլաթի թագավորություն (հարավային Հայաստան ԺԲ—ԺԳ դարերում)։ Ուսումնասիրողը պետք է զգուշությամբ հետևի և բովանդակությունից եզրակացնի, թե ո՞ր իմաստով է օգտագործված այս անունը։ Մենք նախընտրեցինք թարգմանության մեջ այս բառը Հայաստան թարգմանել, թեև հաճախ փակագծերի մեջ տալիս ենք նրա արաբական ձևը։

*Արմինիա ոստիկանությունը (նահանգը) բաղկացած էր հետևյալ վարչական ստորաբաժանումներից.*

*ա. Բուն Հայաստանը, որն ընդգրկում էր Այրարատ, Սյունիք, Արցախ, Գուգարք (հարավային մասը), Բարձր Հայք (արևելյան մասը), Տուրուբերան, Վասպուրական, Մոկք և որոշ այլ գավառներ։*

*բ. Վիրք (արաբ. Ջուրզան) կամ արևելյան Վրաստան, Տփղիս (արաբ. Տաֆլիս) կենտրոնով։*

*գ. Աղվանք (Առան)՝ Պարտավ (Բարդաա) կենտրոնով։*

*դ. Մերձկասպյան գավառներ (Շրուան, Մասքութք, Խայզան և այլն), որոնք Թ դարում կոչվեցին Շիրվան՝ Շամախի կենտրոնով։*

*ե. Դերբենդ (արաբ. Բաբ ալ-Աբուաբ)։*

*Արմինիայի մայրաքաղաքն էր նախ Դվինը, ապա Դվինն ու Պարտավը միասին։*

*Իբն ալ-Ասիրի մոտ հիշատակված են Հայաստանի երեք մեծ գետերը՝ Եփրատ* (الفرات), *Տիգրիս* (دجلة) *և Արաքս, որը երբեմն կոչվում է ալ-Ռաս* (الرس), *երբեմն՝ Արաս* ( ارس)։

А. *Тер-Гевондян,* Армения. стр. 155—160.

*11. Արաբ մատենագրության մեջ Մադաինը* (المدائن) *ընդհանուր անուն է, որն ընդգրկում է Տիզբոն-Սելևկիա ամբողջությունը։*

*12. Բալանջարը* (بلنجر) *երկիր է Դերբենդից հյուսիս։*

*Артамонов,* История хазар, стр. 200.

*13. Երբ ասվում է, թե Քիսրա (Խոսրով) Անուշիրվանը ամրացրեց Հայաստանը, խոսքը հետագայում Արմինիա ոստիկանության մաս կազմող Դերբենդի կամ Կովկասյան լեռներում այլ վայրերի ամրացման մասին է։*

*14. Շաբուրանը* (الشابران) *Շապորանն է, իսկ Մասկաթը՝* (مسقط)*՝ Մազքութք։ Բաբ ալ-Աբուաբ* (باب الابواب)*, Դռների դուռ, արաբները կոչում էին Դերբենդը։ Կոչվում է նաև Բաբ (դուռ)։ Տե՛ս* Երեմյան, *«Պահակն Ճորայ», Աշխարհացույց, էջ 76։*

*15. Սիասիջին* (السياسجين) *կարծվում է, որ սրանք Սիսականի (Սյունիք) հայ ռազմիկներն էին։*

С. *Еремян,* Сюния и оборона Сасанидами кавказских проходов, Изв. Арм. ФАН, 1947.

*Սակայն այս տեսակետին առարկում է Կրամերսը։*

J. *Kramers*, The military colonisation of the Caucasus and Armenia under the Sassanids, Bull. of the Sch. of Or. St., London, 1935

*16. Արաբ աղբյուրները Ջուրզան* ( جرزان *ասոր. Գուրզան) են կոչում արևելյան Վրաստանը (Վիրք), որը Իբերիա և Քարթլի էլ էր կոչվում։*

*17. Իբն ալ-Ասիրը, ինչպես նաև որոշ այլ պատմիչներ, խազարներին թուրք են կոչում։*

*18. Այս ամրությունների կառուցման մասին մանրամասն տե՛ս* К. В. *Тревер,* Очерки по истории и культуре Кавказской Албании, М — Л., 1959, стр. 274—287.

*19. Շահրիրազը պետք է լինի Խոսրով արքայի զորավար Շահր Վարազը։ Հերակլի արշավանքի մասին տե՛ս* Հ. Մանանդյան, *Հերակլ կայսեր պարսկական արշավանքների ընթացուղիները, Քննական տեսություն, հ. Բ, Բ մաս, էջ 141—142։*

*20. Ասորիքի կամ Շամի* (الشام) *նվաճումը արաբներն իրականացրին Յարմուքի ճակատամարտից (636) հետո։ Սակայն Օմար խալիֆայի անբարյացակամ վերաբերմուն-*

քի պատճառով հաղթական զորավար Խալիդ իբն ալ-Վալիդը հեռացվեց և հրամանատար նշանակվեց Աբու Ուբայդա իբն ալ-Ջառահը։ Դրանից հետո բյուզանդական զորքը լուրջ դիմադրություն ցույց չտվեց և արաբները 637 թվականին գրավեցին Անտիոքը։ Ավասիմ վարչական միավորը կազմվեց Աբբասյան շրջանում։

Hitti, History of the Arabs, p. 152—154.

21. Ղանիմա (غنيمة) նշանակում է ավար։ Ըստ մահմեդական իրավագիտության դա բաղկացած էր թշնամու զենքից, ձիերից և շարժական գույքից, որ գրավվում էր կռվի դաշտում։ Ավարի չորս հինգերորդը բաժանվում էր կռվող զորքերին, ընդ որում ձիավորը 3 կամ 2 անգամ ավելի էր ստանում հետիոտն զինվորից։ Ավարի մեկ հինգերորդը պատկանում էր խալիֆային, թեև նվաճումների շրջանում դա տրվում էր մարգարեի ընտանիքին, սրբերին, կարոտյալներին։ Այս նույն սկզբունքով էին բաժանվում նաև ստրկացման ենթակա գերիները։

*Th. W. Juynboll*, Ghanima, Shorter Enc. of Islam, p. 110—111

22. Ջիզիա (جزية) նշանակում է գլխահարկ (կամ ծխահարկ), ծագում է Սասանյան Իրանում գործածվող նույնիմաստ «գեզիտ» բառից։ Ջիզիա վճարում էին բոլոր ոչ մահմեդականները՝ հրեաները, քրիստոնյաները, զրադաշտականները, սաբիները (Խառանի հեթանոսները) և սամարացիք (Պաղեստինում)։ Այն վճարում էին առողջ երիտասարդ տղամարդիկ, իսկ կանայք, երեխաները, ծերերը, վանականները, հիվանդները և աննորմալները ազատվում էին։ Վճարման չափն էր տարեկան 12 դիրհեմ (կամ 1 դինար) աղքատներից (հողագործներ, արհեստավորներ), 24 դիրհեմ (2 դինար) միջակներից (մանր առևտրական և այլն), իսկ 48 դիրհեմ (4 դինար) հարուստներից (հողատերեր, վաճառականներ, դրամափոխներ և այլն)։ Գլխահարկը վճարվում էր տարեկան մեկ անգամ և մեծ մասամբ կանխիկ դրամով։

*C. H. Becker*, Djizya, Shorter Enc. of Islam, p. 91—92.

23. Աման (أمان) էր կոչվում երաշխավորագիրը, որ տալիս էին խալիֆայական իշխանությունները։ Է դարում և դրանից հետո ամանը կամ ահդը (عهد) որոշում էին նվաճողների և նվաճվողների փոխհարաբերությունները։ Ըստ այդ պայմանագրերի ոչ քրիստոնյա հպատակները պարտավորվում էին վճարել գլխահարկ, հնազանդ լինել և այլն, իսկ փոխարենը խալիֆայությունը պարտավորվում էր հարգել նրանց իրավունքները (սեփականատիրական և այլն)։

Աման էր կոչվում մանավանդ ամեն մի երաշխավորագիր, որ խալիֆայությունը տալիս էր, ասենք, հաշտություն խնդրող ապստամբին, լինի մահմեդական կամ այլակրոն։

Ա. Տեր-Ղևոնդյան, *Հայ նախարարների հողատիրական իրավունքները ըստ խալիֆայության պայմանագրերի, ՊԲՀ, 4, 1974, էջ 20—34։*

24. Մուհամմադից հետո առաջին խալիֆան Աբու-Բաքրն էր (632—634), իսկ երկրորդը՝ Օմարը (634—644), որի օրոք արաբները նվաճեցին Պաղեստինը, Ասորիքը, Եգիպտոսը, Միջագետքը և Իրանի մի մասը։ Ապա իշխեցին Օսմանը (644—656) և Ալին (656—661), որով վերջ գտավ ընտրովի խալիֆաների շրջանը։ Սա կոչվում է «ուղղահավատ» խալիֆաների շրջան, երբ դեռ իշխում էին ցեղային նահապետական կարգերը։

25. Բաթրիկ (بطريق) հունարեն պատրիկիոս բառն է։ Արաբ մատենագիրների մոտ պատրիկ են կոչվում քրիստոնյա իշխանները լինեն հույն, հայ, ասորի, թե վրացի։ Պատրիկ էին կոչվում մեծ մասամբ մեծ հողատեր նախարարները, ինչպես նաև Հայոց իշխանը, որը Է դարում արդեն կոչվում էր պատրիկների պատրիկ։

26. Ջարաջիմա (الجراجمة) անհայտ ծագումով քրիստոնյա մի ժողովուրդ, որն ապրում էր Ամանոսյան լեռներում (արաբ. Լուքամ)։ Ասորերեն կոչվում էին Գարգումայե, իսկ բյուզանդացի պատմիչների մոտ՝ մարդաիտներ։ Կարծվում է, որ այս անունը կապ

ունի հին դարերի Գուրգում տեղանվան հետ, որը մոտավորապես Մարաշի շրջակայքն էր ընդգրկում։

Արաբական նվաճումներից հետո նախ պայմանագիր կնքեցին խալիֆայության հետ, ապա նորից անցան Բյուզանդիայի կողմը։ 666-ին գրավեցին Լիբանանի բարձունքները։ Մուա-վիա խալիֆան պարտավորվեց տարեկան հարկ վճարել մարդաիտներին։ Աբդ ալ-Մալիք խալիֆայի օրոք՝ 688/89 թվին, բյուզանդացիների հետ նորից ասպատակեցին Ասորիքը։

Վերջապես մարդաիտների մեծ մասը հաստատվեց Փոքր Ասիայի ներքին գավառնե-րում։ Կարծվում է, որ նրանց մի մասը ձուլվեց Լիբանանի մարոնիների հետ։

*Hitti*, History of the Arabs, p. 204—205.

27. Ասորիքում ու Միջագետքում դեռ Գ—Դ դարերից ապրում էին արաբական ցեղեր, որոնք կիսանկախ երկու իշխանություն էին կազմել՝ Ղասսան ցեղի իշխանությունը Դա-մասկոսից հարավ-արևելք (Բյուզանդիային ենթակա) և Հիրայի իշխանությունը Միջագետ-քի հարավ-արևելքում (Սասանյաններին ենթակա)։ Այս ցեղերը քրիստոնեություն էին ընդունել, սակայն արաբական նվաճումներից հետո խալիֆաները բացասական վերաբեր-մունք ցուցաբերեցին այդ ցեղերին, որոնք աստիճանաբար քայքայվեցին։

*Н. В. Пигулевская,* Арабы у границ Византии и Ирана в IV—VI вв., М.--Л., 1964.

28. Հադաս (الحدث) նշանակում է նոր, երիտասարդ, թեև այս տեղանունը ծագում է հունարեն Ադատա ձևից։ Արաբները պարզապես յուրովի են ստուգաբանել։

*Le St. ange*, The Lands, p. 118—126.

29. Ջազիրա (الجزيرة), որը նշանակում է կղզի (այսինքն Միջագետք), ընդգրկում է Վերին Միջագետքը և արաբական խալիֆայության կարևոր նահանգներից էր։ Ուներ ասո-րի, քուրդ, արաբ և մասամբ նաև հայ ազգաբնակչություն։ Բաժանվում էր 3 մասի և կոչվում էր այնտեղ հաստատված արաբական ցեղերի անուններով։ Այսպես՝ Դիար Ռա-բիա (ديار ربيعة), այսինքն՝ Մոսուլի շրջան, Դիար Բաքր (ديار بكر) Ամիդ կենտ-րոնով և Դիար Մուդար (ديار مضر) Եդեսիա (Ռուհա) կենտրոնով։ Ջազիրայի կազ-մում էին հին հայկական Աղձնիք և Կորճայք նահանգները։ Ամբողջ նահանգի կենտրոնն էր Մոսուլը, սակայն միշտ չէ, որ Ջազիրան մեկ վարչական միավոր էր, այլ Ը դարում բաժանվեց երկու մասի՝ Մոսուլ և Ջազիրա։

Նրա նվաճումը առաջին անգամ մանրամասն նկարագրել է Բալազուրին։

*Beladsori*, 172--183, *Le Strange*. The Lands, p. 86—114.

30. Չորրորդ Հայաստանը (ارمينية الرابعة), այսինքն՝ Չորրորդ Հայքը լավ ծանոթ է արաբներին։ Մեծ Հայքի Ծոփք նահանգը այս անունն (Armenia Quarta) ստացավ Հուստինիանոս Ա կայսեր 536 թ. հրովարտակով։ Արաբները հենց սկզբից մեծ ուշադրու-թյուն դարձրին այս նահանգի վրա՝ Բյուզանդիայի դեմ պայքարում նրա ռազմագիտական կարևոր դիրքի պատճառով։ Արաբական արշավանքների նախօրեին Չորրորդ Հայքի կազ-մում էր Մարտիրոպոլիսը (Նփրկերտ)։

31. Մեծ Հայքի Աղձնիք նահանգի Նփրկերտ քաղաքը, որը եղել է Տիգրան Բ Մեծի հզոր տերության Տիգրանակերտ մայրաքաղաքը։ Արաբները այն կոչում են Մայյաֆարիկին (ميافارقين), որը ծագում է ասորական Մայֆերկաթ ձևից։ Ծանոթ է նաև Մարտի-րոպոլիս կամ Մարտիրոսաց քաղաք անվամբ։

32. Արաբները Անձևացիք տեղանունը տալիս են Զավազան (الزوزان) ձևով։ Հիշ-յալ պատրիկը հավանաբար Սահուռ Անձևացին էր, որը արաբների՝ Տարոնի վրա հար-ձակման ժամանակ նրանց կողմն էր անցել։

Յովհան Մամիկոնեան, *Պատմութիւն Տարօնոյ*, Երևան, 1941, էջ 285—286։

33. Աղձնիք նահանգում գտնվող Արզն (ارزن) և Բաղեշ (بدليس) քաղաքները արաբների առաջին նվաճումներից էին։ Բաղեշը (ուշ միջնադարում Բիթլիս) գտնվում էր Զորա պահակ լեռնանցքից հարավ և ռազմագիտական մեծ նշանակություն ուներ։

34. Հայտնի չէ, թե որտեղ է ալ-Այն ալ-Համիդա, (العين الحامضة) այսինքն՝ «թթու ջուր» կոչված վայրը։ Գուցե Կարնո քաղաքի մոտ գտնվող Ջերմուկն է։ Երեմյան, Աշխարհացույց, էջ 53։

35. Կաբջ (պետք է լինի Կաբխ (قبخ) կամ՝ Կաբկ (قبق) նշանակում է Կովկաս։ Ծագում է պարսկերեն Քաբ քուհ ձևից։ Արաբներին ծանոթ են Կովկասի բոլոր լեռնական ցեղերը, որոնց մեծ մասը կա՛մ հպատակ էր խալիֆայությանը, կա՛մ էլ գտնվում էր նրա ազդեցության ոլորտում։

Կովկասյան ցեղերի լավագույն նկարագրությունը տվել է Ժ դ. արաբ պատմիչ Մասուդին։

*Минорский*, История Ширвана, стр. 189—216.

36. Արաբ պատմիչները խալիֆաներին կոչում են ամիր ալ-մումինին՝ հավատացելոց իշխան կամ խալիֆա՝ Մուհամմադի հաջորդ, ինչպես նաև իմամ՝ առաջնորդ։

Տվյալ դեպքում կրճատ ձևով ասված է ամիր՝ իշխան, հրամանատար։

37. Զաքատ (زكاة) էր կոչվում այն բարեգործական հարկը, որ մահմեդականներն էին վճարում։ Սա պարտադիր հարկ էր, որը վճարում էին թե՛ բերքի, թե՛ անասունների համար։ Կար նաև սադակատ (صدقات) կոչված հարկը, որը վճարում էին կամովին, որպես բարեգործություն։

*J. Schacht*, Zakat, Shorter Enc. of Islam, p. 654—656.

38. Ֆայ (فيء) էր կոչվում այն ամենը, որ մահմեդական համայնքը վերցնում էր նվաճված երկրներում թե՛ ռազմական ավարի, թե՛ հարկի ձևով։ Սրա մեջ մտնում էր ավարը (ղանիմա), գլխահարկը (ջիզիա), հողահարկը (խարաջ) և նույնիսկ ոչ մահմեդական վաճառականի վճարած մաքսը։ Այնպես որ ֆայ կարելի է թարգմանել պետական եկամուտ, հասույթ։

*Th. W. Juynboll*, Fai', Shorter Enc. of Islam, p. 95—96.

39. Մանուել (منويل) Հայկազն Հերակլ կայսեր զորավարն էր, որը գլխավորեց բյուզանդական զորքերը Եգիպտոս՝ արաբների դեմ։ Նրա մասին հիշատակում է Միքայել Ասորին։

Ամրու իբն ալ-Ասը Եգիպտոսը նվաճող զորավարն է։

40. Արաբները Կարնո քաղաքը (Թեոդոսուպոլիս) կոչում էին Կալիկալա (قاليقلا)։ Այս տեղանունը ծագում է ասորերեն Կալին կալա ձևից (Ն-ի անկումով)։

Արմինիակուսի (ارمنياقس) պատրիկ ասելով արաբ պատմիչները ակներևորեն նկատի ունեն Հայաստանում գտնվող հույն զորավար Մավրիանոսին, թեև Արմինիակուս անվանումը բնականաբար վերաբերում է բյուզանդական Արմենիակոն բանակաթեմին։

Պատմիչի հիշած զրույցը մի հին հայկական զրույցի արաբական ձևափոխված տարբերակն է։ Այս մասին տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Կարին-Թեոդուպոլիսը ավանդության և պատմության մեջ, «Լրաբեր հասարակական գիտությունների», 1, 1971, էջ 159—164։

41. Փոքր Հայքի Մելիտինե կամ Մալաթիա (ملطية) և մասամբ Սեբաստիա (سيواس) քաղաքները գտնվում էին արաբաբյուզանդական երկարատև պատերազմների ոլորտում։ Հատկապես Մելիտինեն ռազմագիտական շատ մեծ նշանակություն ուներ խալիֆայության զորքերի համար։

42. Մավրիանոս հույն զորավարը Հայաստան եկավ այն բանից հետո, երբ 640 թվականի արաբական արշավանքին դիմադրող Թեոդորոս Ռշտունին պաշտոնապես Հայոց

ի;խան ճանաչվեց։ Նրա հարաբերությունները Հայոց իշխանի հետ խիստ սրված էին և ի վերջո նա դուրս քշվեց Հայաստանից։

43. Մարբալան (مروالا) հավանաբար Մարդաղի տեղանվան աղավաղումն է։

44. Խլաթը (خلاط) վարչական մեծ նշանակություն ստացավ է դարից, երբ այն Մամիկոնյանների նստավայրն էր։ Այստեղ կար միջնաբերդ և Ը դարում արաբական ճա-յազոր էր նստում։ Մոկս (Մոկք, مكس) նահանգը քիչ է հիշվում արաբական աղբյուր-ներում և համեմատաբար ինքնուրույնություն էր վայելում Ը—Թ դարերում։ Թեև Մոկսը Հայաստանում համարվում էր ինքնուրույն նահանգ, սակայն արաբ պատմիչները այն համարում էին Վասպուրական (بسفرجان) ընդարձակ նահանգի մի մասը։

45. Կիրմիզ (قرمز) նշանակում է կարմիր։ Պատմիչները նկատի ունեն որդան կար-միրը, իսկ Արտաշատը (ارشاط) կոչվում էր Կիրմիզի գյուղ։

46. Դվինի արաբական Դաբիլ անունը (دبيل) ծագում է ասորական Ադաբին ձևից։ Բառասկզբի ա-ն ընկել է, իսկ վերջին ն տառը դարձել է լ։ Դվինը Դ—ԺԳ դարերում Առա-ջավոր Ասիայի գլխավոր առևտրական հանգույցներից մեկն էր և Հայաստանի մայրաքաղաքը Դ—Ժ դարերում, մինչև որ իր տեղը զիջեց Անիին։

47. Շիրակ և Տայք տեղանունները արաբ մատենագիրները շատ հաճախ են միասին հիշատակում, որպես մեկ տեղանուն։ Գրվում է (سراج طير) Սիրաջթայր, որը կետերի շփոթության արդյունք է։ Պետք է լինի (شراج) (Շիրաջ, Շիրակ) և (طيز Թայս, Տայս)։

Այս շրջանները, ինչպես նաև Բագրևանդը (بغروند) միասին են հիշատակվում հավանաբար իբրև, (տարբեր ժամանակներում) Բագրատունիներին պատկանած կալ-վածներ։

48. Արաբական աղբյուրները Սյունիք նահանգը միշտ գիտեն Սիսական (Սիսաջան, (سيسجان) ձևով։

49. Սալման իբն Ռաբիան նախ նվաճեց Աղվանքը (Բայլական, Պարտավ, Կապաղակ, Շաքե), իսկ ապա, առանձին արշավանքներով, մերձկասպյան գավառները (որոնք Թ դարից արդեն Շիրվան ընդհանուր անունն են կրում)։ Իրանալեզու բնակչություն ունեցող մերձկասպյան գավառները [Մազքութք (արաբ. Մասկաթ), Շիրվան (արաբ. Շարուան կամ Շիրուան), Խայզան և Դերբենդ (արաբ. Բաբ ալ-Աբուաբ)] ինքնուրույն իշխանու-թյուններ էին, որոնք նախապես ենթակա էին Ատրպատականի մարզպանին (ավելի ճիշտ Կովկաս Քուստակի կուսակալին), արաբների կողմից նվաճվելուց հետո մտան Արմինիա ոստիկանության մեջ։

Պատմագիտության մեջ շփոթություն կա վերոհիշյալ շրջանների բնակչության ծագ-ման և նրանց պատմական ճակատագրի մասին։

Հաճախ կրկնվում է այն սխալ տեսակետը, թե իբր Ե—Է դարերում, ինչպես նաև արաբական տիրապետության տակ մերձկասպյան շրջանները, ինչպես նաև այժմյան Դաղստանը մտել են Աղվանքի կազմում։ Իրականում իրանալեզու բնակչություն ունեցող մերձկասպյան շրջաններում մասքթաց Արշակունիների թագավորության անկումից հետո, առանձին իշխանություններ են եղել, իսկ իբերա-կովկասյան ցեղերով բնակեցված Դաղըս-տանի կողմերում նույնպես եղել են ինքնուրույն լեռնային իշխանություններ, որոնք այս կամ այն չափով ենթակա են եղել Ջողա մարզպանին։ (Ջողա մարզպանի մասին տե՛ս Մովսես Կաղանկատուացի, «Պատմութիւն Աղուանից աշխարհին», 1912, հ. Բ, գլ. Բ, էջ 127)։

Արաբական տիրապետության շրջանում Աղվանքը, մերձկասպյան շրջանները և Դեր-բենդը (Դաղստան) վարչականորեն և, ըստ էության, իրարից բոլորովին տարբեր միա-վորներ են եղել։ Դերբենդում (Բաբ ալ-Աբուաբ) իշխում էր տեղական ամիրը, իսկ մերձ-

կասպյան գավառներում (Շիրվան) նույնպես տեղական կառավարիչներ կային, որոնք ենթակա էին Արմինիայի ոստիկանին։

է դարի Աշխարհացույցը հստակ կերպով տարբերում է Աղվանքը մերձկասպյան գավառներից, որոնց հիշում է Սարմատացվոց աշխարհում, իսկ Աղվանքը՝ Վրաստանի ու Հայաստանի հետ։ Երեմյան, Աշխարհացույց, էջ 101, 105։

Մերձկասպյան շրջանների (Շիրվանի) բնիկ իրանական ազգաբնակչությունը, որը Ատրպատականի բնիկների հետ ցեղային մերձակցություն ուներ, մինչև ԺԱ դար իր գոյությունը պահպանեց։ Սակայն թե քաղաքականապես, թե՛ մշակութային տեսակետից լինելով թույլ միավոր, չկարողացավ դիմադրել ԺԱ դարում Շիրվան ներխուժած օղուզ (թուրքմեն) ցեղերին, որոնք աստիճանաբար թյուրքացրին այս երկիրը։

Շիրվանի իրանական բնիկ ազգաբնակչության միակ մնացորդը գուցե կարելի է համարել այժմյան թաթերին։

Оранский, Введение в иранскую филологию, 239, 326—327.

Ինչ վերաբերում է Առան տեղանվանը, ապա բոլոր արաբ պատմիչների մոտ այդ անվանումը անորոշ ձևով է օգտագործված և ըստ էության վարչական բովանդակություն չի ունեցել։

50. Սալմանը, բացի բուն Աղվանքից (Առան, Կապաղակ قبلة մայրաքաղաքով) և մերձկասպյան շրջաններից (հետագայում՝ Շիրվան), նվաճեց նաև հայկական Արցախ և Ուտիք նահանգները, որոնց միջով էր հոսում Թարթառ (Տրտու) գետը (الثرثور)։

51. Սևորդիք կոչված հայկական ցեղերը, որոնք ապրում էին Ուտիք նահանգում, արաբ մատենագիրների մոտ կոչվում են Սիյավարդիյյա (سياوردية)։ Ըստ արաբ պատմիչների Ը դարի վերջում նրանք կործանել են Շամքոր քաղաքը։ Կոստանդին Ծիրանածնի «Արարողությանց մասին» գրքում հիշատակվում է, որ Ժ դարում Բյուզանդական արքունիքը նրանց հետ ևս (որպես Բագրատունյաց թագավորության մաս կազմող իշխանություն) նամակագրություն ուներ։ Պատմիչը նրանց Սևորդիք անունը թարգմանում է հունարեն՝ սև որդիներ։ Տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 151։

52. Արաբ պատմագիրների մոտ «ռում» (الروم) բառը, որը Հռոմ անունից է ծագում, բազմաթիվ իմաստներով է օգտագործվում։ Դա նշանակում է Բյուզանդիա (որը միշտ էլ կոչվել է Հռոմեական կայսրություն), Փոքր Ասիա, ինչպես նաև հույներ։ Այդ անունը տրվում է նաև Իկոնիայի սելջուկ սուլթանությանը, նույնիսկ օսմանյան ժամանակաշրջանում Փոքր Ասիան կոչվում էր Ռում։ Երբ խոսքը բյուզանդական տիրապետության կամ Փոքր Ասիային է վերաբերում, մենք հայերենում պահպանել ենք Ռում արտահայտությունը, բայց երբ ժողովրդին է վերաբերում, ապա օգտագործել ենք հայ մատենագրության մեջ արմատացած հոռոմ բառը։

53. Արաբները և Բյուզանդիան մոտավորապես երեք հարյուր տարի Փոքր Ասիայում պայքար մղեցին իրար դեմ։ Կռիվն ընթանում էր թե՛ ցամաքում, թե՛ ծովում։

Արաբները հատուկ Սահմանային գոտի ունեին (الثغور), որը վարչական առանձին միավոր էր։ Այս գոտին ուներ երկու նահանգ՝ Ասորիքի (Շամի) Սահմանային գոտի (կենտրոնը Տարսոն, արաբ. Թարսուս) և Ջազիրայի Սահմանային գոտի (կենտրոնը՝ Մելիտինե, արաբ. Մալաթիա)։ Ասորիքի Սահմանային գոտուն հարակից էր նաև Ավասիմ կոչված նահանգը հյուսիսային Սիրիայում։

Honigmann, Die Ostgrenze, S. 40—43.

Ասորիքի (Շամ) Սահմանային գոտին (որն ընդգրկում էր Կիլիկիան), բացի Տարսոնից, ուներ Անազարբա (عين زربة), Հարունիյյա (الهارونية), ալ-Քանիսա ալ-Սաուդա (الكنيسة السوداء, սև եկեղեցի), Մամեստիա (مصيصة), Ադանա (اذنة)։

Բայաս (بياس) բերդաքաղաքները՝ Կիլիկիայից դեպի Փոքր Ասիայի խորքերը, Տավրոսյան լեռնաշղթայի վրա գտնվում էր Դ։ունք Կիլիկիո կոչված լեռնանցքը։ Լեռնանցքի այս կողմում կար Պոտանդոն կամ Պոզանդի (بذندون) բերդը, իսկ այն կողմում կային Լուլուա (لؤلؤة) և Սաֆսաֆ (صفصاف) բերդերը։ Այս բերդերով անցնում էր Տարսոնից Իկոնիա ընթացող ճանապարհը։ Սա էր արաբական արշավանքների ճանապարհը Տիանայի (طوانة) և Հերակլիայի վրա հարձակվելու համար։

Ջազիրայի Սահմանային գոտին (որն ընդգրկում էր Փոքր Հայքը և Մեծ Հայքի Բարձր Հայք ու Ծոփք նահանգների արևմտյան գավառները), բացի Մելիտինե (Մալաթիա) կենտրոնից, ուներ Խարբերդ (خرتبرت), Կամախ (كمخ), Դարպսակ (دربساك), Գերմանիկ կամ Մարաշ (مرعش), Պեհեսնի (بهسنا), Հադաթ կամ Հադաս (الحدث), Տարենդե (طرندة) և այլ բերդաքաղաքներ։ Այստեղից արշավանքները ուղղվում էին Կապադովկիա և Փոքր Ասիայի խորքերը։

54. Մուխտարը Օմայյանների դեմ ուղղված շիայական (Ալիական) շարժման ղեկավարն էր Միջագետքում։ Սկզբում նա միացել էր ապստամբ Աբդալլահ իբն ալ-Զուբայրին, որը Մեքքայում խալիֆա էր հռչակվել։

683/84 թվականին նա գնաց Քուֆա և իրեն հայտարարեց Մուհամմադի և Ալիի առաքյալ և վերջինիս թոռ Իբն ալ-Զուբայրի նշանակած կառավարիչը նախ բանտարկեց նրան, ապա շուտով բաց թողեց։ Մուխտարը ապստամբություն պատրաստեց Իբն ալ-Զուբայրի դեմ՝ դաշնակցելով Իբրահիմ իբն ալ-Աշտար զորավարի հետ, որը տատանվում էր։

685/686 թվականին Մուխտարն իր ձեռքը վերցրեց իշխանությունը Միջագետքում և կառավարիչներ նշանակեց։ Հայաստանի համար հիշված կառավարիչը ձևական էր, քանի որ Հայաստանը անկախ երկիր էր այդ տարիներին։

Նրա դեմ զորք ուղարկեցին թե՛ Իբն Զուբայրը (Մուսաբի գլխավորությամբ), թե Օմայյան Աբդ ալ-Մալիք խալիֆան։ Միջագետքում խլրտումներ սկսվեցին, բայց նա խեղդեց դրանք և կոտորեց Շիայի բոլոր հակառակորդներին։ Մուխտարի դեմ ելան իբն ալ-Զուբայրի ուղարկած զորքերը, որոնք սպանեցին նրան։ Իբրահիմ իբն ալ-Աշտարը և մյուսները հանձնվեցին Աբդ ալ-Մալիքին։

Բացի շիայից, սուննա, այսինքն ուղղափառ մահմեդականությանը հակադրվող կրոնական հասարակական մի հոսանք ևս կար, որի մասնակիցներին արաբ պատմիչները կոչում են խարիջիներ (ապստամբներ)։

G. Levi della Vida, al-Mukhtar, Enc. of Islam, 1931, III, p. 715—717.

55. Տառեխի (արաբ. թիռիխ طريخ) լիճը Վանա լիճն է, որից հանվող տառեխ ձուկն արաբների մոտ շատ հայտնի էր։ Օմայյանները պետականացրին լիճը և նրա ձկների հասույթը։ Աբբասյանների օրոք տառեխը մտնում էր Հայաստանի բնահարկի մեջ, ընդ որում տարեկան վերցվում էր 20 հազար տառեխ։

Երեմյան, Աշխարհացույց, էջ 37։

56. Աբդ ալ-Մալիք Օմայյան խալիֆայի օրերից (685—705) արաբական խալիֆայությունը ունեցել է կայուն դրամական համակարգ։ Ոսկեդրամը (4.25 գրամ) կոչվել է դինար, արծաթ դրամը (2.97 գրամ) կոչվում էր դիրհեմ (դիրհամ), իսկ պղնձե դրամը՝ ֆիլս։

57. Հաբբան (حبة) կամ հատիկը մեկ միսկալի $\frac{1}{100}$ մասն է (Хинц, 42), իսկ միսկալը (مثقال) կամ մսխալը որոշ երկրներում (օր. Եգիպտոս) 4.68 գրամ է (Хинц, 13)։

58. Գաշտոնապես մեկ կիրաթը (قيراط) միսկալի $\frac{1}{20}$ մասն է, թեև այլևայլ երկրներում տարբերություններ կան (Хинц, 24)։

59. Այն տեղեկությունը, թե հարձակումը տեղի ունեցավ հիջրի 82 թվականին (15 փետրվար 701—3 փետրվար 702) համապատասխանում է թե՛ հայ (Ղևոնդ), թե՛ բյուզանդացի պատմիչների տվյալներին։ Բոլոր դեպքերում խալիֆայի եղբոր՝ Մուհամմադ իբն Մարուանի, մեծ արշավանքը ընկնում է 701 թվականին, երբ Հայաստանը նվաճվելով կազմավորվեց Արմինիա ոստիկանությունը։

Ինչ վերաբերում է Աբու Շայխ իբն Աբդալլահ ոստիկանի սպանությանը, ապա դա տեղի ունեցավ 703 թվականին։

*Тер-Гевондян*, Армения, стр. 73—74.

60. Հայաստանի (Արմինիայի) տերը (صاحب أرمينية) Արմինիայի ոստիկանն է, որը պատմիչների մոտ կոչվում է տարբեր անուններով՝ ամիր (իշխան, հրամանատար), ամիլ (գործակալ) կամ վալի (կառավարիչ)։

Արմինիայի ոստիկանը Ատրպատականի, Ջազիրայի (երբեմն նաև Սահմանային գոտու) ոստիկանների հետ միասին ենթակա էր Հյուսիսի փոխարքային։

Արմինիայի ոստիկանին ենթակա էին՝ Հայոց իշխանը, Վրաց իշխանը, Աղվանից իշխանը և Շիրվանի ու Դերբենդի ամիրները։

*Laurent*, L'Armenie entre Byzance et l'Islam, p. 176—180.

61. Տվյալ դեպքում Հայաստանի (Արմինիայի) լեռների թագավորները ասելով պատմիչը նկատի ունի կովկասյան լեռնական ցեղապետերին։

62. Արաբացածներ ասելով պատմիչը հավանաբար նկատի ունի քրիստոնյա արաբներին։

63. Արաբերենում Ասորիքի համար գոյություն ունի Շամ տեղանունը։ Շամը վարչական միավոր չէր խալիֆայության մեջ։ Ընդգրկում էր 3 վարչական միավոր՝ Դիմաշկ (Դամասկոս), Հիմս (Եմեսա) և Կիննասրին։ Իսկ Սուրիա անունը, որն այսօր սովորական արտահայտություն է Ասորիքի համար, միջնադարում տրվել է Ասորիքի հյուսիսային մասին, որը ձգվում է դեպի Փոքր Ասիա։

64. Սեբաստուպոլիսը գտնվում էր Իրիս գետի վտակ Սկիլաքսի վրա, ընկնելով Հռոմեական Առաջին Հայքի արևմտյան սահմանի վրա։ Պատմիչի հիշատակած վայրը կարող է լինել Կիլիկիայի Սեբաստոպոլիսը։ Մարզուբանյանը ստույգ հայտնի չէ։ Եղել է Մարզուբան, Եփրատացիք երկրամասում, Դարպսակի (Պեհեսնիի մոտ) կողմերում։ Աբուլ-Ֆիդա «Նալբանդյան, Արաբական աղբյուրները», էջ 237։ Խանչարան Գանգրա Գերմանիկոպոլիսն է, որը գրվում է նույնիսկ Ղանչարա։

Le Strange, The Lands, p. 158.

65. Բուրջ ալ-Համմամը հավանաբար պետք է լինի Եփրատացիք երկրամասում (Եփրատի և Ամանոս լեռների միջև)։

66. Հիսն ալ-Մարաան (կնոջ բերդ) գտնվում էր Մալաթիայի մոտ։

*Honigmann*, Die Ostgrenze, S. 46 n. 1.

67. Ալյունը (اليون) Բյուզանդիայի Լևոն Գ Իսավրացի կայսրն է (717—741), որը հայտնի դարձավ խալիֆայության դեմ մղած պատերազմներով։ Նա իշխանությունը գրավել էր արաբների օգնությամբ, գալով արևելքից։

68. Մարհալա (مرحلة) նշանակում է մեկ օրում անցած ճանապարհ։

69. قتل նշանակում է սպանեց, սակայն նույն տեղում Թաբարին (որից Իբն ալ-Ասիրը քաղել է այս փաստերը) ունի قيل «ասվել է», որը հավանական է։

*Tabari*, VI, 616.

*70. Զարմանալի է ղփչաղների (պոլովցիների) հիշատակումը Ը դարի առաջին կեսում, քանի որ պոլովցիները Ժ դարում երևան եկան և Ղազախստանից անցան Հյուսիսային Կովկաս։ Մ. Արտամոնովը այս արշավանքի մասին խոսելիս ոչինչ չի ասում այս մասին, թեև օգտագործել է Իբն ալ-Ասիրին։ Ըստ երևույթին Իբն ալ-Ասիրը պարզապես նկատի ունի խազարներին։*

*Артамонов,* История хазар, стр. 205.

*71. Երկկոտոշավոր (ذوالقرنين ) էր կոչվում Ալեքսանդր Մակեդոնացին։*

*72. Արաբները գրեթե ամեն տարի արշավանքներ էին կատարում Բյուզանդիայի դեմ, մեկը մեծ՝ ամառային, իսկ մյուսը փոքր՝ ձմեռային, ընդ որում ամառայինը (الصائفة) ունենում էր ձախ և աջ թևեր (արշավանքներ)։*

*73. Փոստը (البريد ) արաբական խալիֆայության մեջ դեռ է դարից լավ կազմակերպված էր։ Կային փոստային կայաններ, մղոնաչափ քարեր, փոստային ձիեր և ուղտեր, որոնց շնորհիվ նահանգներում կատարված ամեն ինչի մասին խալիֆան տեղեկանում էր։*

*Мец,* Мусульманский Ренесанс, стр. 383—384.

*74. Վարդանակերտ (ورثان ) քաղաք Փայտակարանում (մյուս Վարդանակերտը գտնվում է Այրարատում, ուր ապստամբ հայերը 703-ին հաղթեցին իրենց հետապնդող արաբական կայազորին)։ Արաբ մատենագիրները գիտեն միայն այս Վարդանակերտը, որը գտնվում էր Արաքսից հարավ։*

*75. Բաչարվանը քաղաք է Շիրվանում, Կասպից ծովի ափին, Դարբանդից հարավ։ Հայերեն՝ Պաճերվան։*

*76. Ջիհադ (جهاد ) էր կոչվում սրբազան կրոնական պատերազմը, որին մասնակցելը պարտադիր էր ամեն մի մահմեդականի համար և դարեր շարունակ ոգևորել է մոլեռանդ հավատացյալներին մահմեդական երկրներում։ Ըստ մահմեդական իրավագիտության (ֆիկհ) աշխարհը երկու մասի է բաժանվում՝ դար ալ-հարբ (պատերազմական կամ թշնամի երկրներ), որոնց դեմ անհաշտ պայքար պետք է մղել հանուն կրոնի և դար ալ-իսլամ (իսլամի երկիր)։ Կար նաև դար ալ-սուլհ (հաշտության պայմանագրով նվաճված երկրներ)։*

*D. B. Macdonald*, Djihad, Shorter Enc. of Islam, p. 89.

*77. Մրվանը (Մարուան) վերջինն էր Օմայան խալիֆաներից։ Օմայան խալիֆաներն էին՝*

| | |
|---|---|
| *Մուավիա Ա* | *661—680* |
| *Եզիդ (Յազիդ) Ա* | *680—683* |
| *Մուավիա Բ* | *683—684* |
| *Մրվան (Մարուան) Ա* | *684—685* |
| *Աբդ ալ-Մալիք* | *685—705* |
| *Վալիդ Ա* | *705—715* |
| *Սուլայման* | *715—717* |
| *Օմար* | *717—720* |
| *Եզիդ (Յազիդ) Բ* | *720—724* |
| *Հիշամ* | *724—743* |
| *Վալիդ Բ* | *743—744* |
| *Եզիդ (Յազիգ) Դ* | *744* |
| *Իբրահիմ* | *744* |
| *Մրվան (Մարուան) Բ* | *744—750* |

*78. Այստեղ և շարունակության մեջ հիշված անունները վերաբերում են Կովկասի լեռների արևելյան (մերձկասպյան) կողմերում գտնվող ցեղերին և մանր իշխանություն-*

*ներին. օրինակ՝ Սարիրի (գահի) տերը, Տուման, Զարիքերան, Լաքզ։ Շիրվան ամրոցը գտնվում էր Կասպից ծովից ոչ հեռու, իսկ Դուդանիյյան (Դիդոյք) Կախեթիայից հյուսիս գտնվող ցեղերի անունն է։*

*Минорский,* История Ширвана, стр. 132—133.

*79. Վարնիսը, ըստ Արտամոնովի, Լաքզի թագավորը պետք է լինի, որը այլ աղբյուրներում հիշվում է ուրիշ անունով։ Բոլոր դեպքերում այստեղ Իբն ալ-Ասիրի մոտ խոսքը Լաքզի նվաճմանն է վերաբերում։*

*Артамонов,* История хазар, стр. 231.

Очерки истории Дагестана, I, Махачкала, 1957, стр. 754.

*80. Մաթամիր (مطامير)արաբերեն նշանակում է ստորերկրյա քարայր, նկուղ, պահեստ, ցորենի շտեմարան։ Արաբ մատենագիրների մոտ այս բառն օգտագործվում էր Կապադովկիայում գտնվող մի շարք ամրությունների համար։*

*A Vasiliev,* Byzance et les Arabes, t. I, La dynastie d'Amorium, Bruxelles 1935 (1959), p. 100—101.

*81. Կովկասյան լեռնաշղթայի արևելյան մասում գտնվող Ղումիկ և այլ վայրերի ճշտման համար լավագույն աղբյուրն է Մինորսկու ուսումնասիրությունը՝*

*Минорский,* История Ширвана, стр. 131—142.

*82. Աբդալլահ իբն ալ-Բաթթալը Սուլայման խալիֆայի օրոք (715—717) Բյուզանդիայի դեմ արշավող արաբ զորահրամանատար Մասլամայի պահակախմբի պետն էր։ Նա Փոքր Ասիայում քաջագործություններ կատարեց և նշանավոր դարձավ որպես «մահմեդականության դատի պաշտպան»։ Նա սպանվեց մի արշավանքի ժամանակ՝ 740 թ.։ Միջնադարյան մահմեդական պատմագրությունը առասպելական հերոս դարձրեց նրան, իսկ Փոքր Ասիայում հաստատված թուրքերը նրան ազգային հերոս (սայյիդ ղազի) դարձրին։ Նույնիսկ նրա գերեզմանն են ցույց տալիս էսկի Շեհիրում։*

*Hitti,* History of the Arabs, p. 203.

*83. Աբբասյանները սերում էին Մուհամմադ մարգարեի հորեղբայր Աբբասից, ուստի համարվում էին «մարգարեի տան մարդիկ» և նրանց հաղթանակը մահմեդականության հաղթանակն էր համարվում.*

*А. Мюллер,* История Ислама с основания до новейших времен, перевел с немецкого Н. А. Медников, СПб., 1895, II, стр. 147—148.

*84. Սև դրոշակը Աբբասյանների պաշտոնական դրոշն էր։ Աբդալլահ իբն Ալին առաջին Աբբասյան՝ Աբու-լ-Աբբասի, հորեղբայրն էր։*

*85. Հայազգի Քուշանը (كوشان) Չորրորդ Հայքի բնակիչներից էր, մասնակցել էր Բյուզանդիայի արաբների դեմ մղած պատերազմներին։ Նրա մասին խոսում են, թե՛ արաբ (Թաբարի, Իբն ալ-Ասիր), թե՛ ասորի (Դիոնիսիոս Տելմահրացի) պատմիչները։ Ըստ Աճառյանի, սա հայկական Գուսան անունն է (Հայոց անձնանունների բառարան, Ա, 510)։*

Denys de Tell Mahre, p. 56.

*750 թվականին սպանված լինելը թյուրիմացություն է, քանի որ նա մասնակցեց 752 թվականին Կարնո քաղաքը նվաճելու արշավանքին։*

*86. Առաջին Աբբասյան խալիֆա Աբու-լ-Աբբասը կոչվում էր Սաֆֆահ, որը նշանակում է արյունարբու, որովհետև Աբբասյանների իշխանության հաստատումը իրականացավ հրի ու սրի միջոցով։*

*87. Կնիքը (خاتم) կամ կնիքով մատանին մահմեդական հասարակության մեջ կրում էին ինչ-որ հեղինակություն ունեցող մարդիկ։ Այդպիսի մատանիներով կնքում էին տարբեր բնույթի փաստաթղթեր։*

*88. Հաշիմի է կոչվում Մուհամմադի տոհմը. Հաշիմը Մուհամմադի հոր պապն էր։ Իսկ քանի որ Աբբասյանները սերում էին Մուհամմադի հորեղբայր Աբբասից, ապա նրանք ևս Հաշիմի էին։*

*89. Կոստանդին Ե Բյուզանդիայի կայսր (741—775)։*

*90. Թ·ե՛ Օմայան, թե՛ Աբբասյան ժամանակաշրջաններում խալիֆայությունը բաժանված էր նահանգների (վիլայա). Աբբասյան շրջանում այլևս չի հիշվում Սպանիան (Անդալուս), իսկ հյուսիսային Աֆրիկան (Մաղրիբ) քիչ է հիշվում։*

*Ավելի շատ հիշվում են արևելյան նահանգները՝ Միսր (Եգիպտոս), Ֆիլասթին (Պաղեստին), Շամ (Ասորիք, մեծ մասամբ իր առանձին մասերով), Ջազիրա (վերին Միջագետք), Արմինիա (Հայաստան և այլն), Ազարբայջան (Ատրպատական), Հիջազ, Յաման (Եմեն), Բասրա (Բահրայնի և Նաջդի հետ), Կուֆա (Իրաք), Ֆարիս, Ջիբալ, Ջիլան, Թաբարիստան, Խորասան, Քիրման (և Սինդ), Սիջիստան, Մավարաննահր (Սուգդ, Ֆարղանա և այլն) և ուրիշներ։ Այս անունները կարելի է գտնել բոլոր հարկացուցակներում։*

*Սակայն զինվորական հարցերում նահանգները շատ հաճախ միացվում և կամ անջատվում էին։ Նահանգների միացումից առաջացած խոշոր միավորները պայմանականորեն կոչում ենք փոխարքայություն։ Արևելյան փոխարքայության մեջ էին Խորասանը և իրանական այլ նահանգներ, Արևմտյանի մեջ էին Հյուսիսային Աֆրիկան և այլ նահանգներ։ Ռազմագիտական տեսակետից կարևոր դիրք ուներ Հյուսիսային փոխարքայությունը, որի մեջ էին Արմինիա, Ջազիրա, Ատրպատական և Սուղուր (Սահմանային գոտի) նահանգները։*

Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական խալիֆայության Հյուսիսային փոխարքայությունը, «Միջին և Մերձավոր արևելքի երկրներ ու ժողովուրդներ» 3, Արաբական երկրներ, Երևան, 1967։*

*91. Աբու Մուսլիմը (727—755), լինելով Աբբասյաններին համակիր, 747-ին պարսիկ հողատեր դեհկանների, Օմայաններից դժգոհ գյուղացիության և որոշ արաբական ցեղերի գլուխն անցած ղեկավարեց Օմայանների դեմ ապստամբությունը Խորասանում։ Աբբասյանների իշխանության գլուխ անցնելուց հետո, դարձավ Խորասանի փոխարքա։ Վախենալով նրա ազդեցությունից, Մանսուր խալիֆան հրամայեց սպանել նրան։*

*92. Կալաուզիյյա բերդը գտնվել է Մալաթիայի մոտ։ Նրա բուն անունը եղել է Կլավդիա։*

*Honigmann*, Die Ostgrenze, S. 88, n. 2.

*93. Ավասիմ նահանգն ստեղծեց Հարուն ալ-Ռաշիդ խալիֆան 786 թվականին, Կիննասրին նահանգից մի մաս պոկելով։ Ըստ էության Սահմանային գոտուն կից միավոր էր։ Նրանում կային Անտիոք, Դաբիկ, Մանբիջ քաղաքները։*

*94. Հաշիմիյյա քաղաքը հիմնել է առաջին Աբբասյան Աբու-լ-Աբբասը։ Թեև նա խալիֆա էր հռչակվել Քուֆայում, այնուհանդերձ վստահություն չուներ նրա շիայական տրամադրություններով բնակչության վրա։ Հաշիմիյյան գտնվում էր Քուֆայի ու Հիրայի միջև։*

*Hitti*, History of the Arabs. p. 292.

*95. Ռավանդիյյան պարսկական մի աղանդ էր, որը խալիֆային նույնացնում էր ալլահի հետ։ Սրանց ապստամբությունը ճնշվեց 758 թ.։*

*Hitti*, History of the Arabs, p. 290.

*96. Ջարջարայա քաղաքը գտնվում էր Տիգրիսի ափին, Ստորին Նահրավանում։ Բնակեցված էր պարսիկներով։*

*Le Strange*, The Lands, p. 37.

*97. Սարաճ կամ Սարատ ջրանցքը թափվում էր Տիգրիս գետը և հենց այդ տեղում էլ կառուցվել է Բաղդադը։*

*98. Մուխարրիմը հետագայում դարձավ Բաղդադի թաղամասերից մեկը։*

*Le Strange*, The Lands, p. 31, 33.

*99. Թասուջ (طسوج) բառը իրանական փոխառություն է արաբերենում։ Միջնադարում հողային տարածության չափ էր Միջագետքում ու Պարսկաստանում։ Կարծվում է, որ այս բառը կա նաև հայերենում։*

*V. Minorsky*, Tasudj, Enc. of Islam, 1929, IV, p. 699.

*H. Hubschmann*, Armenische Grammatik, I Teil, Armenische Etymologie, Leipzig, 1895, S. 266.

Հ. Աճառյան, *Արմատական բառարան, Բ, Երևան, 1973, էջ 157։*

*100. Վասիթը քաղաք է Ստորին Միջագետքում (Իրաք)։ Օմայան շրջանում Իրաք նահանգի կենտրոնն էր, իսկ Աբբասյանների օրոք գտնվում էր Բաղդադ—Բասրա առևտրական բանուկ ճանապարհի վրա։*

*101. Զիրա (ذراع), այսինքն կանգուն. երկարության չափ է և տարբեր երկրներում այլևայլ մեծություններ ունի։ Միջնադարյան Եգիպտոսում գործվածքեղենի կանգունը 58,187 սմ է եղել. այլ երկրներում ավելի մեծ չափի կանգուն է եղել։*

*Хинц*. Меры и веса. стр. 64—65.

*102. Ալի խալիֆայի (որի դատն էր պաշտպանում Շիա շարժումը) տոհմից սերող Մուհամմադ և Իբրահիմ եղբայրների շիայական ապստամբությունը Մանսուր խալիֆան ճնշեց 762-ի վերջին ու 763-ի սկզբին, երկուսին էլ մահապատժի ենթարկելով։*

*Hitti*. History of the Arabs, p. 290.

*103. Իբն Հուբայրան (Իբն Հուբայրա պալատ) գտնվում էր Բաղդադից ոչ հեռու։*

*Le Strange*. The Lands, p. 290.

*104. Խալիդը կոչվում էր Իբն Բարմաք, այսինքն Բարմաքի որդի, քանզի հայրը բուդդայական քուրմ էր Բալխ քաղաքում։ Հենց Աբու-լ-Աբբասի օրերից աչքի էր ընկել, իսկ Մանսուր խալիֆայի օրոք, ըստ էության, վարում էր վեզիրի պաշտոնը, որն Աբբասյանների ժամանակ սկիզբ առավ խալիֆայության մեջ։ Բարմաքյանները ժառանգաբար վարեցին վեզիրի պաշտոնը։ Նրա որդին՝ Յահիան, Մահդի (775—785) խալիֆայի վեզիրն էր։ Հարուն ալ-Ռաշիդի օրոք հատկապես մեծ հեղինակություն ուներ Ջաֆարը՝ Յահիայի որդին։ 803-ին Հարունը այլևս չհանդուրժելով այս պարսիկ շիայական հզոր վեզիրական ընտանիքի վերելքը, գլխատել տվեց Ջաֆարին, իսկ Յահիային ու նրա մյուս որդուն՝ Ѕաղլին, բանտարկեց և նրանց առասպելական հարստությունը հարքունիս գրավեց։*

*105. Ռաթլը (رطل), այսինքն՝ լիտրը, Իրաքում մոտավորապես 130 դիրհեմ էր (406,25 գրամ)։*

*Хинц*. Меры и веса, стр. 37.

*106. Մուհտասիբ էր կոչվում (محتسب) այն պաշտոնյան, որ խալիֆայության քաղաքներում հսկում էր շուկաների ու բարոյականության վրա և համապատասխանում ընդհանրապես ոստիկանապետ հասկացությանը։ Հսկում էր կշիռների ու չափերի վրա, արգելում գինի խմելը, գինի վաճառելը։ Գոյություն ուներ թե՛ Աբբասյանների ու Եգիպտոսի Ѕաթիմյանների օրոք, թե՛ արաբական Իսպանիայում (Անդալուս)։*

*107. Ռուզքարի (روزگاری) պարսկերեն բառ է, նշանակում է օրավարձով աշխատող բանվոր։*

*Աստարխան Խորեզմցին խազարների մեծ հեղինակություն վայելող զորավարներից էր, որը կոչվում էր նաև Ռաստարխան, իսկ Ղևոնդի մոտ՝ Աժթարխան։*

Ղևոնդ, *էջ 163։*

*Артамонов*, История хазар, стр. 244—246.

*108. Աբբասյանների օրոք և ընդհանրապես մահմեդական պետություններում Բայտ ալ-մալը՝ դրամի տունը (بيت المال) արքունի գանձարանն էր, ուր կուտակվում էին երկրի տարբեր մասերից հավաքված հարկերը։ Գանձարանը գտնվում էր հարկային դիվանի ձեռքում (դիվան ալ-խարաջ), որի պետը՝ սահիր ալ-խարաջը, վեզիրից հետո ամե․ նակարևոր անձնավորությունն էր թե՛ Օմայյանների, թե՛ Աբբասյանների օրոք։ Կար նաև տեղական գանձարան ամեն մի նահանգում, ինչպես, օրինակ, Դվինում։*

*109. Դաբիկը գտնվում էր Ասորիքի հյուսիսում։*

*110. Վերահսկող դիվանը (ديوان الازمة կամ ديوان الزمام) հսկում էր պետության դրամական ծախսերի վրա, որոնք տարբեր նպատակների էին հատկացվում։*

*Мец*, Мусульманский ренесанс, стр. 70.

*111. Խալիֆայության մեջ կանոնավոր զորքը (ջունդ), որը վարձ (ռոճիկ) էր ստանում, կոչվում էր վարձատրված (مرتزقة), կանոնավոր վճարված, իսկ կամավոր (متطوعة) էին կոչվում այն ռազմիկները, որոնք վարձ ստանում էին սոսկ ծառայության ժամանակ։ Սրանք հավաքվում էին անապատի բեդվիններից, գյուղացիներից և քաղաքային ռամիկից։*

*Hitti*, History of the Arabs, p. 327.

*112. Տաճատ հայազգի պատրիկը (طازاذ الارمنى البطريق) կամ Տաճատ Անձևացին, որը կռվում էր բյուզանդական զորքի շարքերում, Իրինե կայսրուհու հետ ունեցած տարաձայնության պատճառով արաբների կողմն անցավ և արաբական զորքի հրամանատար Հարունը (հետագայում խալիֆա) սիրով ընդունեց նրան։ Տաճատը նշանակվեց Հայոց իշխան, սակայն նրա և ոստիկան Օսմանի միջև կային թշնամական հարաբերություններ, որոնց զոհ դարձավ նա։*

Ա. Տեր-Ղևոնդյան, *Հայոց իշխանը արաբական տիրապետության ժամանակաշրջանում, ՊԲՀ, 2, 1964, էջ 127։*

*113. Լևոն Դ կայսրը (775—780) մեռավ 780 թվականի սեպտեմբերի 8-ին* (История Византии, II, стр. 60): *Ըստ Իբն ալ-Ասիրի, այս հարձակումը տեղի ունեցավ 782-ի սկզբին, երբ արդեն կայսեր այրին՝ Իրինեն (Ավգուստա) իշխանությունն իր ձեռքն էր վերցրել։ Իրինեի և Ռաշիդի միջև կնքված պայմանագրի համաձայն Բյուզանդական կայսրությունը պարտավորվում էր տարեկան 70 հազար ոսկեդրամ վճարել խալիֆայությանը։*

*114. Նիկեփոր կայսրը (802—811) կարծվում է, որ արաբական ծագում ունի և նրա նախահայրն Է դարում Բյուզանդիայի կողմն անցած Ջաբալան՝ քրիստոնյա Ղասսան ցեղից։*

*Hitti*, History of the Arabs. p. 300 (n. 2)

*115. Ասհաբ ալ-քահֆ (اصحاب الكهف) կամ քարայրի մարդկանց զրույցը շատ տարածված է արաբ մատենագրության մեջ։ Սա ծագում է Արևմուտքում հայտնի «Եփեսոսի յոթ քնածները» կոչված ավանդությունից և հիշատակվում է թե՛ Ղուրանում, թե՛ արաբ մատենագիրների մոտ։*

*Փոքր Ասիայի մի հեթանոս քաղաքում մի խումբ քրիստոնյա երիտասարդներ մերժելով հեթանոսական հավատալիքները, քաշվում են մի քարայր և քնում։ Մոտավորապես երեք հարյուրամյակ անց նրանք զարթնում են և իրենցից մեկին ուղարկում քաղաք հաց գնելու։ Հացթուխը զարմանում է, տեսնելով այն հին դրամը, որ տալիս է երիտասարդը։ Ամեն ինչ պարզվում է և քանի որ քրիստոնեությունը արդեն տարածված էր, բոլորը ուրախանում են։ Քարայրի մոտ հետագայում եկեղեցի է կառուցվում։*

*A. J. Wensinck*, Ashab al-Kahf, Enc. of Islam, 1913, I, p. 478—479.

116. Կոստանդին Զ կայսրը կուրացվեց և մայրը՝ Իրինեն, 797-ի օգոստոսի 15-ին հռչակվեց միահեծան կայսրուհի։ Իբն ալ-Ասիրն այս դեպքը դնում է հիջրի 182 թվականի (798—799) տակ, որը թյուրիմացություն է։

История Византии, II, стр. 63.

117. Ըստ մահմեդական իրավագիտության (ֆիկհ) ոչ մահմեդական ազգաբնակչությունը (զիմմի) պակաս իրավունքներ պետք է ունենար, քան մահմեդականը։ Հրեան, քրիստոնյան, զրադաշտականը լիիրավ չէին, նրանք չէին կարող պետական բարձր պաշտոններ ստանալ, բանակի շարքերում բարձրանալ, ինչպես նաև պետք է զգեստներով տարբերվեին։ Այս երևույթը շեշտված ձևով երևան եկավ Աբբասյանների օրոք։

Ա. Տեր-Ղևոնդյան, *Հայ ժողովրդի իրավական վիճակը խալիֆայության տիրապետության ներքո, «Լրաբեր», 4, 1975, էջ 74—87։*

*A. Fattal*, Le Statut legal des non-musulmans en pays d'Islam, Beyrouth 1958.

*A. Tritton*, The Caliphs and their non-muslim subjects. London. 1970.

118. Սա Ստավրակիոս կայսրն է, որը նույն 811-ին մեռավ, ծանր վիրավորված լինելով բուլղարների հետ կռվի ժամանակ։ Նրան հաջորդեց Միքայել Ռանգաբեն (811—813)։

История Византии, II, стр. 68.

119. Բյուզանդիայի Լևոն Ե Հայկազն կայսրն է (813—820)։

120. Խուռամյան շարժումը, որը գլխավորում էր Բաբեկը, երկար ժամանակ (816—837) անհանգստացնում էր Աբբասյաններին։ Բաբեկի շարժումը ոչ միայն մասամբ (ասսարակության ճնշված խավերի ընդվզումն էր խալիֆայության դեմ, այլև միաժամանակ կանի ընիկ իրանալեզու բնակչության) դիմադարձությունն էր դրսից բերված մահմեդական և արաբական նորամուծություններին։ Խուռամյաններն իրենց գաղափարախոսուդական և արաբական նորամուծություններին։ Խուռամյաններն իրենց գաղափարախոսությամբ կապված էին Սասանյան շրջանի մազդակյան շարժման հետ։

*И. П. Петрушевский,* К истории маздакитов в эпоху господства ислама. Народы Азии и Африки, № 5, 1970.

121. Մեծ չափի կաֆիզը (ցորենի չափ է) Իրաքում կշռում էր 48, 75 կիլոգրամ, իսկ փոքրը՝ մոտավորապես 24,108 կիլոգրամ։

*Хинц*, Меры и веса, стр. 50—52.

122. Կուռա բերդը գտնվում էր Կապադովկիայի կողմերում։ Հավանաբար Սունդուսը ևս այդ կողմերում էր։ Սինադր պետք է լինի Սինադան, որը գտնվում էր Ամորիոնից ոչ հեռու։

*Honigmann*. Die Ostgrenze. S. 45, 135.

123. Անթիղու բերդր գտնվում էր Կապադովկիայում։

*Honigmann*, Die Ostgrenze, S. 46.

124. Բյուզանդիայի Թեոֆիլ (Թեոփիլոս) կայսրը (829—842)։

125. Շի ադա (شهادة) նշանակում է վկայություն, այսինքն մահմեդականի հեանյալ խոսքերը. «Չկա աստված բացի ալլահից և Մուհամմադը նրա մարգարեն է»։

126. Մանի (مانى) նշանակում է սատանա։

127. Տարուխյան ([illegible]) մահմեդականների ուխտագնացության ութերորդ օրն է։

128. Աբնա (ابناء) բառացիորեն՝ որդիներ։ Նշանակում է արաբ հոր և պարսիկ մոր զավակներ։ Այսպես էին կոչվում Եմենում հաստատված պարսիկների հետնորդները։

Աբբասյանների օրոք նոր հարստության առաջին հետևորդները կոչվում էին «նոր ևոչի որդիներ»։

129. Բնագրում կա لبيك, որը նշանակում է՝ քեզ ենք կանչում, ապավինում։ Այս արտահայտությունը օգտագործվում է կրոնական արարողության ժամանակ, երբ դիմում են Աստծուն։

130. Քուհբանը (كوهبانى) լեռնային հետախույզ, լրտես։ Ծագում է պարսկերեն քուհ (լեռ) բառից։

131. Բնագրում كعك չոր քաղցրահաց, իսկ سويق նշանակում է ցորենի կամ գարու ալյուր։

132. Բաբեկի (Բաբան) շարժումը բարդ էր և հակասական, եթե մի կողմից դա բողոք էր խալիֆայության բռնության դեմ, ապա մյուս կողմից ինքը՝ Բաբեկը, հաճախ էր ամենադաժան ձևով ասպատակում, կոտորում ու կողոպտում մերձակա հայկական գավառները։ Բավական է միայն հիշել Գեղարքունյաց գավառում 15 հազար բնակչության կոտորածը և Մաքենոց վանքի կողոպուտն ու հրկիզումը (Ստեփանոս Օրբելեան, Տփղիս, 1911, էջ 159)։

Ինչ վերաբերում է արաբ պատմիչի սույն վկայությանը, ապա դա արդեն ցույց է տալիս նրա բարոյական կերպարը, որպես արկածախնդիր ավազակի։

133. Այս տողը Ժուզեի մոտ սխալ է թարգմանված։ Ըստ նրա՝ обратившись к призренному Ибн Сумбату выругал его и сказал ему... (Тарих ал-Камил, 1940, стр. 50).

Հավանաբար, ապստամբության ղեկավարի թշնամուն անպայման վատ ածական տալու մարմաջով նա ուշադրություն չի դարձրել, որ قبيح (վատ, արհամարհելի) ածականը վերաբերում է Բաբեկի խոսքերին (վատ խոսք) և ոչ թե Սահլին։

134. Սահլ իբն Սինբաթը կամ Սունբաթը (سهل بن سنباط) հայ պատմիչների մոտ հայտնի է որպես Սահլ Սմբատեան, իսկ արաբ պատմիչները շատ հաճախ նրա անվանը կցում են ալ-արմանի՝ հայազգի բառը։ Ն. Ադոնցը և ուրիշներ կարծում են, որ նրա հայրը՝ Սմբատը, Բագրատունի է։

Նրա մասին տե՛ս.

Ն. Ադոնց, «Պատմական ուսումնասիրություններ», Փարիզ, 1946, էջ 134—136։

*V. Minorsky*, Sahl ibn Sunbat of Shakki and Arran, Caucasica, IV, BSOAS 1953, XV/3.

Բ. Ուլուբաբյան, Խաչենի իշխանությունը X—XVI դդ., Երևան, 1975, էջ 50—64։

135. Պատրիկության թագ (تاج البطريقية) ստանում էր նաև Հայոց իշխանը, մանավանդ է դարում։

136. Իսա իբն Յուսուֆ իբն Իսթիֆանուսը (اصطفانوس) Արցախի հարավի՝ Դիզակի իշխանն էր, որը հայկական աղբյուրներում կոչվում է Եսայի Աբու Մուսե (Ապումուսե)։ (Տե՛ս Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, Պետերբուրգ, 1887, էջ 191)։

Թաբարին, որից քաղել է Իբն ալ-Ասիրը, նրան կոչում է Իսա իբն Յուսուֆ իբն Իսթիֆանուս, սակայն մեկ անգամ, երբ հիշատակում է 238 թվականին (852—853) Բուղայի գերի տարած նախարարներին, հիշում է նրան որպես «Իսա իբն Յուսուֆ իբն ուխտ Իսթիֆանուս», այսինքն Իսթիֆանուսի քրոջ որդի։ (*Tabari*, Tarikh, IX, 193):

Սրան համապատասխանում է Մովսես Կաղանկատվացու այն տեղեկությունը, թե երբ Արցախում սպանեցին Ստեփանոս Աբլասադին, գավառին տիրացավ «Յեսայի անուանեալն Աբու Մուսե... քեռորդի Աբլասադայ»։ Մովսէսի Կաղանկատվացւոյ Պատմութիւն, Տփղիս, 1912, (Հ. Գ, գլ. Ի)։

Եսային հզոր իշխան էր և Բուղայի արշավանքի ժամանակ կատաղի դիմադրություն ցուցաբերեց Քթիշ (Գտիչ) ամրոցում, թշնամու հարձակումները 28 անգամ ետ մղելով։

Վերջապես խալիֆայի հատուկ գրությամբ նա ամրոցից իջավ ու միացավ Սամառա տարվող նախարարների խմբին։

Բ. Ուլուբաբյան, Խաչենի իշխանությունը, էջ 62—63։

137. Բնագրում եղած احرار ազատներ բառը ուղղակի թարգմանությունն է պարսկերեն آزاد բառի, որը հայերեն նույնությամբ օգտագործվում է՝ ազատ։ Ազատ էր կոչվում հողատեր ազնվականությունը, մանավանդ մանրը, որի պարսկերեն «դեհկան» հոմանիշը նույն տեղում կա։

138. Բնագրում՝ دار , որը նշանակում է բնակարան, կացարան, բայց տվյալ դեպքում արքունի պալատ է նշանակում։

139. Արաբերեն شاح , նշանակում է սուր կամ սուսերակալ (լանջագոտի)։

140. Արաբերեն խայյաթ ( خياط ) նշանակում է դերձակ։

141. Մուհամմիրաները (կարմրազգեստներ) Բաբեկի խուռամյաններն էին, որոնք պարտությունից հետո. Ատրպատականից փախել էին Փոքր Ասիա, կռվելու խալիֆայության թշնամի Բյուզանդիայի հետ.

*И. П. Петрушевский*, Ислам в Иране в VII—XV вв., Ленинград, 1966, стр. 248.

142. دار العامة (հասարակաց տուն) նշանակում է խալիֆայական այն պալատը, ուր պետական գործերն էին որոշվում։ Նույն ձևով կար նաև دار الخلافة խալիֆայական տուն (պալատ) և دار الامارة կառավարչի տուն (պալատ)։

143. Վակֆ ( وقف ) նշանակում է վաճառքն արգելված կալվածք, ունեցվածք, որն իր ձեռքում ունեցողը կարող էր միայն հասույթից օգտվել, բայց չէր կարող այն օտարել։ Վակֆ են կոչվում այն հողերը, որոնք բարեգործական նպատակներով առհավետ նվիրված են մահմեդական կրոնական հաստատություններին։ Վակֆ էին համարվում նաև քրիստոնեական վանքապատկան կալվածները։ Խալիֆայության ժամանակ վակֆ էին համարվում նաև այն հողերը, որոնք խալիֆայության կողմից բռնի կամ պայմանագրով վերցված էին նախկին տերերի ձեռքից, այն պայմանով, որ վերջիններս մնալով իրենց հողերի վրա, օգտագործեն այն վճարելով հողահարկ (խարաջ)։ Այս կարգի հողերը պետական էին և ենթարկվում էին գանձարանին (բայտ ալ-մալ)։

Մալիքի դպրոցի իրավագետները Հյուսիսային Աֆրիկայում վակֆի համար օգտագործում էին հաբուս ( حبس ) բառը։

*W. Heffening*, Wakf, Shorter Enc. of Islam, 624—628.

144. Մաուլա (مولى) հոգնակի՝ մավալի (موالي) ունի իրար հակառակ երկու իմաստ։ Նախ նշանակում է, տեր և ասվում է նույնիսկ ալլահին։ Բառի մյուս իմաստն է, ազատագրված ստրուկ։ Այդպիսին էին, օրինակ, Է դարում գերի ընկած, ստրկացված օտարները, որոնք մահմեդականությունն ընդունելով դառնում էին որևէ ցեղի մաուլա՝ հովանավորյալ, ազատագրված ստրուկ։

*A. V. Kremer*, Culturgeschichte des Orients unter den Chalifen, Wien 1875, S. 155.

145. Մարջ ալ-Ուսկուֆը գտնվում է Կիլիկիայում Պոտանդոն գետից արևմուտք։

*Le Strange*, The Lands, p. 138.

146. Մոսուլը գտնվում է Տիգրիս գետի արևմտյան ափին՝ Նինվեի ավերակների դիմաց։

Արաբները այն գրավեցին 641-ին և դարձրին նոր նվաճված Ադիաբենե նահանգի (Դիար Ռաբիա) կենտրոն, իսկ հետագայում նաև ամբողջ Ջազիրայի կենտրոն։ Նվաճումից անմիջապես հետո արաբ գաղթականներ հաստատվեցին քաղաքում, որոնք հողեր ստացան նրա շրջակայքում։ Ընդհանրապես ամբողջ գավառում հաստատվեցին Ռաբիա

ցեղի արաբներ, որի հետևանքով Վերին Միջագետքի այս մասը կոչվեց Դիար Ռաբիա։

Թե՛ Օմայան, թե՛, մանավանդ, Աբբասյան շրջանում Մոսուլը և նրա շրջակայքը եղել են խռովության բույն՝ արաբական ցեղերի ու կենտրոնական իշխանության, ինչպես նաև արաբների և քրդական ցեղերի միջև տեղի ունեցող անվերջ ընդհարումների հետևանքով։

147. Այստեղ խոսքը Մուտազիլի կոչված գաղափարական (աստվածաբանական) հոսանքի նշանաբանի մասին է։ Տրամաբանությանը առաջնակարգ տեղ տվող այս հոսանքը ժխտում էր Ղուրանի աստվածային հավիտենական ծագումը (որին դավանում է ուղղահավատ մահմեդականությունը՝ սուննի) և այն համարում էր սովորական գիրք։

Մամուն խալիֆայի օրոք (813—833) Մուտազիլիների աստվածաբանությունը (ուսմունքը) պաշտոնական և պարտադիր բնույթ ստացավ, բայց Մուտավաքքիլ խալիֆան (847—861) վերականգնեց սուննի վարդապետությունը։

148. Աշուրան ( العاشورا ) տոն է և Մուհառամ ամսի 10-րդ օրն է։

149. Բայա ( بيعة ) տալ նշանակում է հավատարմության երդում տալ, ձայն տալ։ Ըստ մահմեդական պետական իրավունքի, նոր խալիֆան պետք է ընտրվի մահմեդական մեծամեծների ժողովում, որի մասնակիցները ձայն են տալիս և ընտրում նոր տիրակալին։ Այս սկզբունքը իրոք հարգվում էր միայն առաջին չորս ուղղահավատ կոչված խալիֆաների օրոք (632—661), իսկ արդեն Օմայաններից առաջինի՝ Մուավիայի ժամանակից ձայն տալը (բայա) դարձավ ձևական մի գործողություն, քանի որ իշխանությունը արդեն ժառանգական էր։

*Hitti*, History of the Arabs. p. 184—185.

150. Հիջազի երկու քաղաքները՝ Մեքքան և Մադինան, կոչվում են երկու սրբավայրեր։

151. Ջունդ ( جند ) նշանակում է ռազմական շրջան։ Այսպես էին կոչվում Ասորիքի (Շամ) չորս շրջանները՝ Դամասկոս (Դիմաշկ), Եմեսա (Հիմս), Հորդանան (Ուրդուն) և Պաղեստին (Ֆիլասթին)։ Եզիդ Ա խալիֆայի օրոք ավելացվեց հինգերորդը՝ Կիննասրին։

*Hitti*, History of the Arabs, p. 151.

152. Աշոտի որդի Բագարատը (بقراط بن اشوط) հաջորդեց իր հորը՝ Աշոտ Մսակերին, որպես Հայոց իշխան (826—851)։ Շուտով Աբբասյան խալիֆայից ստացավ իշխանաց իշխան (պատրիկների պատրիկ) տիտղոսը։ Նրան ենթակա էր ամբողջ Արմինիա (Հայաստան, Վիրք, Աղվանք, Շիրվան, Դերբենդ) նահանգը։ 851-ին խաբեությամբ ձերբակալվեց ու տարվեց Սամառա։

153. Իբն ալ-Ասիրի մոտ ասված է, թե Բագարատը աման (երաշխավորագիր) խնդրեց, իսկ Թաբարու մոտ ասված է, որ նա امارة , այսինքն՝ իշխանություն, ոստիկանի պաշտոն պահանջեց։ Սա համոզիչ է, քանի որ Թովմա Արծրունին ևս վկայում է, որ Յուսուֆ ոստիկանը Բագարատին խաբելու նպատակով ոստիկանի պաշտոն էր խոստանում (Թովմա Արծրունի, էջ 118)։

*Tabari*, Tarikh. IX, p. 187.

154. Այստեղ բնագրում կա Նիմատ ( نعمة ) անունը, որը պարզապես թյուրիմացություն է, քանի որ Թաբարու մոտ նման անուն չկա։ Ըստ երևույթին գրչական աղավաղման արդյունք է։

155. Այս եղբորորդին Թ դարի արաբ պատմիչ Յակուբիի մոտ (աղավաղված) կոչվում է Յունան իբն Տուրնիկ يونان بن ترنيق, այսինքն Հովնան որդի Թոռնիկի։ Սա խութեցի Հովնանն է, Բագարատ Բագրատունու եղբորորդին։

*J. Markwart*, Südarmenien und die Tigrissquellen, Wien, 1930, S. 298, n. 1.

156. Մուսա իբն Զուրարան Արզնի և Բաղեշի արաբ ամիրն էր։ 850-ին ընդհարվեց Բագարատ Բագրատունու և Աշոտ Արծրունու ուժերի հետ ու պարտվեց, իսկ 851-ին զգալով խալիֆայության կողմից գալիք վտանգը, միացավ հայ ապստամբներին։

157. Տարոնը (طرون) այս շրջանում բացառիկ նշանակություն ստացավ, քանի որ Հայաստանի և ամբողջ Արմինիայի իշխանաց իշխանի գլխավոր տիրույթն էր և այստեղ էր նրա նստավայրը։

158. Աղբակը (الباق) Արծրունիների տոհմական ժառանգական ոստանն էր։ Այստեղ էր նրանց Աղամակերտ (Հաղամակերտ) կենտրոնը և տոհմական գերեզմանոց Ս. Խաչ վանքը։

159. Աշոտ՝ որդի Համզայի, այսինքն՝ Համազասպի (اشوط بن حمزة)։ Սա Վասպուրականի իշխան Աշոտ Արծրունին է, որը Բագարատ Բագրատունու հետ 850—852 թվականների ապստամբության երկու գլխավոր ղեկավարներից էր։ Նկան ամրոցում համառ դիմադրությունից հետո, հանձնվեց արաբներին և տարվեց Սամառա։ 859-ին վերադարձավ Վասպուրական, վերստացավ իր հողատիրական իրավունքները և իշխեց մինչև մահը (875)։

160. Աբու-լ-Աբբաս ալ-Վարիսին (ابو العباس الوارثي) Սմբատ Բագրատունին է՝ Հայոց սպարապետը և ժամանակավորապես նաև Հայոց իշխանը։ Հայտնի չէ, թե ինչ է նշանակում Վարիսի։ Թաբարու մոտ կա ալ-Վասի (الواثي)։ Հավանաբար, ինչ-որ տեղանվան հետ է կապված այս անվանումը։

Tabari, Tarikh, IX, p. 192.

161. Բնագրում կա աջամ (عجم), որը նշանակում է պարսիկ, ինչպես նաև ընդհանրապես օտար, ոչ-արաբ։

162. Իբն ալ-Ասիրի Կահիրեի սույն հրատարակության մեջ գրված է Մուրկուս (مرقس) սակայն այլ հրատարակության մեջ և, մանավանդ Թաբարու մոտ, կա Ռաբադ (ربض) այսինքն արվարձան, որը ճիշտ է։

Tabari, Tarikh, IX, p. 192.

163. Մաղրիբ (արևմուտք) անունը տրվում է հյուսիսային Աֆրիկային։

164. Թովմա Արծրունին պատմում է, որ այս կինը գերի տարվելուց հետո ճիչ է բարձրացնում, թե ինքը վայել է միայն արքային (խալիֆային) և իր նպատակին հասնելուց հետո Բուղայի կորստյան պատճառն է դառնում։ Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 174—175։

165. Այս պատրիկը Գարդմանի (الجردمان) Կորիճ իշխանն էր։

166. Իրականում Քթիշ (كتيش) ամրոցի առջև Բուղան հաջողության չհասավ։ 28 անհաջող հարձակումներից հետո, ամրոցը անառիկ մնաց։ Միայն խալիֆայից հրովարտակ ստանալուց հետո, Եսայի Ապու Մուսեն իջավ բերդից և Բուղայի հետ գնաց Սամառա։

Թովմա Արծրունի, էջ 178—185։

167. Այս դեպքում պատմիչը տալիս է նախկինում Աբու-լ-Աբբաս անվամբ հիշված Սմբատ սպարապետին. իսկական անունը Սմբատ որդի Աշոտի (سنباط بن اشوط)։

168. Արցախի իշխան Սահլ Սմբատյանի որդի Հովհաննես Մուավիան է (معاوية بن سهل بن سنباط), որը գերի տարվեց Սամառա։

Բ. Ուլուբաբյան, Խաչենի իշխանությունը, էջ 73—74։

169. Ալի իբն Յահիա ալ-Արմանին խալիֆայության պատմության մեջ դիրքի հասած բացառիկ հայ գործիչներից է։ Նշանավոր դարձավ Բյուզանդիայի դեմ մղած պայքարով։ Ուներ կալվածներ Աղձնիքի կողմերում և հավանաբար այդ նահանգի հայ նախարարներից էր (մահմեդականացած)։ Եղել է նաև Արմինիայի ոստիկան։

170. Բյուզանդիայի Միքայել Գ (842—867) կայսեր իշխանության սկզբնական շրջանում երկիրը կառավարում էր նրա մայրը՝ Թեոդորան։

171. Խադիմ (خادم) նշանակում է ներքինի և ծառա։

*Մեց,* Мусульманский ренесанс, стр. 279—280.

*172. Շիմշաթը (شمشاط) Սոփաց թագավորության մայրաքաղաքներից Արշամաշատն էր, որը միջնադարում մի ավան էր ու կոչվում էր Աշմուշատ (արաբ. Շիմշաթ)։*

*173. Ուշրը (عشر), այսինքն՝ տասանորդը, հողահարկի թեթև տեսակն էր։ Ուշր էին վճարում մահմեդական հողատերերը, սահմանամերձ շրջանների բնակիչները, ինչպես, օրինակ, արաբաբյուզանդական սահմանային գոտում։*

A. Grohmann, Ushr, Shorter Enc. of Islam, p. 610—611.

*174. Աբրիկը (ابريق) պավլիկյանների Տևրիկե ավանն էր։ Իբն ալ-Ասիրի մոտ աղավաղվել դարձել է Աբրին։ Ճիշտ ձևը կա նրա աղբյուր Թաբարու մոտ։*

*Tabari,* Tarikh, IX, p. 207.

*175. Կարիբասը (قربياس) պետք է լինի Կարբիաս, (قربياس) Կարբեաս, որը Պավլիկյան շարժման նշանավոր ղեկավարն էր։*

*176. Տիննիսը Եգիպտոսում է. Իբն ալ-Ասիրի մոտ աղավաղվելով դարձել է Սիս։*

*177. Սալսալան հավանաբար Նփրկերտից ոչ հեռու մի վայր էր։*

*178. Աբբասյան պետությունն ունեցավ իր հզորության (750—861) և թուլացման (861—945) շրջանները, որից հետո գալիս է մի շրջան (946—1258), երբ Աբբասյան խալիֆաները մեծ մասամբ սոսկ կրոնական պետեր էին։ Միայն 1132—1258 թթ. նրանց իշխանությունը վերականգնվեց Իրաքում։*

*ա. Հզորության շրջան*

| | |
|---|---|
| *Աբու-լ-Աբբաս (ալ-Սաֆֆահ)* | *750—754* |
| *Աբու Ջաֆար (ալ-Մանսուր)* | *754—775* |
| *Մահդի* | *775—785* |
| *Հադի* | *785—786* |
| *Հարուն ալ-Ռաշիդ* | *786—805* |
| *Ամին* | *809—813* |
| *Մամուն* | *813—833* |
| *Մուտասիմ* | *833—842* |
| *Ուասիկ* | *842—847* |
| *Մուտավաքքիլ* | *847—861* |

*բ. Թուլացման շրջան*

| | |
|---|---|
| *Մունտասիր* | *861—862* |
| *Մուստաին* | *862—866* |
| *Մուտազզ* | *866—869* |
| *Մուհտադի* | *869—870* |
| *Մուտամիդ* | *870—892* |
| *Մուտադիդ* | *892—902* |
| *Մուքտաֆի* | *902—908* |
| *Մուկտադիր* | *908—932* |
| *Կահիր* | *932—934* |
| *Ռադի* | *934—940* |
| *Մուտտակի* | *940—944* |
| *Մուստաքֆի* | *944—946* |

*179. Սակալիբա (صقالبة) արաբերենում նշանակում է սլավոններ, երբեմն նաև սպիտակամորթ ստրուկներ։*

*180. Լուլուան մի բերդ էր, որ գտնվում էր Տավրոսյան լեռնաշղթայի Պոտանդոն (Պողանդի) լեռնանցքից այն կողմ (դեպի Փոքր Ասիա), Սաֆսաֆ բերդից հետո։*

181. Բաղեշի ու Արզնի տեր Մուսա իբն Զուրարայի որդի Աբու-լ-Մուիզզը (Աբու-լ-Մազրա) իշխում էր միայն Արզնում. Նրա մայրը Բագարատ Բագրատունու քույրն էր, իսկ ինքն ամուսնացել էր Արծրունի իշխանուհու հետ։

Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները, էջ 104—105։

182. Իսա իբն ալ-Շայխը և Իսհակ իբն Քունդաջիկը (Քունդաջ) Արմինիայի վերջին ոստիկաններն էին։ Իբն ալ-Ասիրը հիշում է Արմինիայի հետևյալ կառավարիչներին (ոստիկաններ)։ Փոխարքաներին հասարակ ոստիկաններից տարբերելու համար նշում ենք փակագծերի մեջ։ Փոխարքաները (Հյուսիսի փոխարքաներ) ընդհանրապես Արմինիայից բացի իշխում էին նաև Ատրպատականի ու Ջազիրայի (Վերին Միջագետքի), իսկ երբեմն նաև Սահմանային զոտու վրա։

| | |
|---|---|
| Մուհսամմադ իբն Մարուան (Մրվան) (փոխարքա) | 693—709 |
| Աբու Շայխ իբն Աբդալլահ | 701—703 |
| Մասլամա իբն Աբդալ-Մալիք (փոխարքա) | 709—722 |
| Օմար իբն Հուբայրա | 720—721 |
| Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամի (փոխարքա) | 722—725 |
| Հարիս (Հերթ) իբն Ամրու ալ-Թաի | 724—725 |
| Մասլամա իբն Աբդ ալ-Մալիք (փոխարքա) | 725—729 |
| Ջառահ իբն Աբդալլահ ալ-Հաքամի (փոխարքա) | 729—730 |
| Մասլամա իբն Աբդ ալ-Մալիք (փոխարքա) | 731—732 |
| Մարուան (Մրվան) իբն Մուհամմադ (փոխարքա) | 732—744 |
| Աբու Ջաֆար, հետագայում Մանսուր (փոխարքա) | 750—754 |
| Յազիդ (Եզիդ) իբն Ուսայդ ալ-Սուլամի | 752—754 |
| Հասան իբն Կահթաբա | 754—759 |
| Հարուն, հետագայում ալ-Ռաշիդ (փոխարքա) | 780—786 |
| Յազիդ (Եզիդ) իբն Մազյադ ալ Շայբանի | 787—788 |
| Ուբայդալլահ իբն ալ-Մահդի (փոխարքա) | 788—791 |
| Յազիդ (Եզիդ) իբն Մազյադ ալ-Շայբանի | 799—801 |
| Ասադ իբն Յազիդ ալ-Շայբանի | 801—802 |
| Ասադ իբն Յազիդ (երկրորդ անգամ) | 809—811 |
| Իսա իբն Մուհամմադ | 820—823 |
| Ալի իբն Սադակա, Զուրայկ | 824—825 |
| Մուհամմադ իբն Հումայդ ալ-Թուսի | 827—828 |
| Աֆշին Հայդար իբն Քաուս (փոխարքա) | 835—840 |
| Մուտազզ (փոխարքա) | 849—862 |
| Աբու Սաիդ Մուհամմադ ալ-Մարուազի | 850—851 |
| Յուսուֆ | 851—852 |
| Բուղա | 852—855 |
| Ալի իբն Յահիա ալ-Արմանի (փոխարքա) | 862—863 |
| Ալա իբն Ահմադ | 865—866 |
| Իսա իբն ալ-Շայխ | 870 |
| Ջաֆար ալ-Մուֆավվիդ | 875—883 |
| Իսհակ իբն Քունդաջ | 879 |

183. Վասիլ Ա (867—886) կայսրը, ըստ բյուզանդացի կայսր պատմիչ Կոստանդին Ծիրանածնի «Մակեդոնիայից էր, ազգությամբ հայ Արշակունի» (Կոստանդին Ծիրանածին, էջ 33)։ Իբն ալ-Ասիրը նրան կոչում է սլավոնուհու որդի (իբն ալ-սակլաբիյյա)։

Միջնադարյան պատմական աղբյուրներում և նոր ուսումնասիրություններում տեղեկություններ չկան նրա մոր ծագման մասին։ Գուցե այսպես է կոչվել Մակեդոնիայում ծնված լինելու պատճառով, որը սլավոնական բնակչություն ուներ։

Ն. Ադոնց, Վասիլ Հայկազն (Մեծագործ կայսր, 867—886), Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948։

184. Այստեղ հիշված անունները Իբն ալ-Ասիրի մոտ աղավաղված են, մինչդեռ Թաբարու մոտ կան ճիշտ ձևերը։ Բազմարը պետք է լինի Յազաման, Ֆանադինը՝ Կաբադիկ (Կապադովկիա), իսկ Բաթլիկը՝ ալ-Նաթուլիկ, այսինքն՝ Անատոլիկ։ Tabari, IX 66.

185. Աբբասյան Մուտամիդ խալիֆան Սաջյան Մուհամմադ Աֆշինին նշանակեց Ատրպատականի և Արմինիայի ոստիկան, նպատակ ունենալով իրար դեմ գրգռել Սաջյաններին և նոր թագ ստացած Բագրատունիներին։ Այդ ժամանակ, ըստ էության, արդեն չկար Արմինիա ոստիկանությունը, այլ գոյություն ունեին Հայոց թագավորությունը և մանր միավորներ։ Աբբասյանների նպատակն էր այս ձևով Աֆշինին դնել Հայոց թագավորի վրա հսկողի դերում, մանավանդ նրան էր հանձնարարել նաև Հայաստանի վճարած տարեկան չնչին հարկի փոխանցումը խալիֆայական գանձարան։

*Тер-Гевондян*, Армения, стр. 240—244.

186. Մլեհ մեծը կամ հայազգի Մլեհը (مليح الارمني) Բյուզանդիայի Ռոմանոս Ա Լեկապենոս կայսեր հայազգի զորավարն էր, որն արաբների դեմ կռվում մեծ քաջություններ գործեց Կիլիկիայում և այլուր, եղել է Լիկանդյան բանակաթեմի ստրատեգ։

История Византия, II, стр. 190.

187. Աբբասյանների թուլացման շրջանում (861—945) վեզիրները մեծ հեղինակություն ձեռք բերեցին և հաճախ նրանք էին կառավարում երկիրը։ Հայտնի էին Իբն ալ-Ֆուրատը, Ալի իբն Իսան և ուրիշներ։

*D. Sourdel*, Le vizirat Abbaside de 749 a 936, Damas, I, 1959, p. 359—370

188. Հաջիբ (حاجب) նշանակում է արգելող կամ պահապան։ Մոտավորապես համապատասխանում է սենեկապետի պաշտոնին։ Խալիֆայության անկումից հետո առաջացած մահմեդական պետություններում հաջիբը պալատի վերակացուն էր և տնտեսական վերատեսուչը, կամ նույնիսկ հսկում էր զինվորական գործերին (օր. մամլուքյան Եգիպտոսում)։ Սպանիայի օմայյանների մոտ հաջիբը վեզիրի դեր էր կատարում։ Այս բառը մտել է հայկական միջավայրը հեջուբ ձևով։ Զաքարյաններն ունեին իրենց հեջուբները։

*Мец*, Мусульманский Ренесанс, стр. 77, 100, 101.

189. Կարնո քաղաքը (Թեոդոսուպոլիս) թեև ձևականորեն մտնում էր Հայոց թագավորության մեջ, սակայն ըստ էության մնում էր Աբբասյան խալիֆայության տրամադրության տակ։ Այստեղ կար արաբական կայազոր, որը պետք է պայքարեր Բյուզանդական կայսրության դեմ։ Խալիֆայության տարբեր երկրներից մահմեդական կրոնի համար կռվող ռազմիկներ (ղազի) էին գալիս այս նպատակի համար։

Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 158—164։

190. Դումուստուկ (دمستق) հունարեն դոմեստիկոս բառից է։ Զինվորական բարձր աստիճան էր Բյուզանդիայում։ Այստեղ խոսքը Հովհան Կուրկուասի մասին է։

Դաբբաբա (دبابة) խոյի նման պատերազմական մեքենա էր, որի տակ թաքնվում էին քաղաքը պաշարող զինվորները և այն առաջ տանելով խփում էին պարիսպներին՝ փլվածք առաջացնելու նպատակով։

Դվինի վրա այս հարձակումը հայկական աղբյուրներում չի հիշատակվում, սակայն Ստեփանոս Տարոնեցին նշում է, որ 922-ին Հովհան Կուրկուասը հարձակվել էր Դվինի

վրա, ուր նրան դիմադրություն էին ցույց տվել Հայոց թագավոր Աշոտ Երկաթի և Ատրպատականի Աբուլ ամիրի միացյալ ուժերը։

Ստեփանոս Տարոնեցի, «Պատմություն տիեզերական», էջ 170։

*Minorsky*, Studies in Caucasian History, 119.

191. Կայսիկների հողերը (Հարք, Ապահունիք և այլն), որոնք Հայոց թագավորության հետ թույլ էին կապված, հաճախ ասպատակության էին ենթարկվում բյուզանդական զորքերի կողմից։ Սմբատ Ա թագավորի մահվանից (913) մինչև դարի կեսերը Տարոնը, Թեոդոսուպոլիսը և Կայսիկների հողերը, որոնք մտնում էին Բագրատունյաց թագավորության մեջ, դարձան բյուզանդական քաղաքականության հետաքրքրության առարկան։ Ի վերջո Բյուզանդիան նվաճեց այդ հողերը՝ մոտիկից սպառնալով Բագրատունյաց թագավորությանը։

Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 143—149։

192. Իբն ալ-Դայրանի (Դերանիկի որդի) էր կոչվում Գագիկ Արծրունին։

193. Ատրպատականը Աբբասյան խալիֆայությունից անջատվելուց հետո կայուն վիճակ չունեցավ։ Տեղական իրանալեզու ազգաբնակչությունը չկարողացավ իշխանությունն իր ձեռքը վերցնել և ընդհանրապես ոչ մի իշխանական տուն չկարողացավ երկար իշխել (ինչպես, օրինակ, Բագրատունիները Հայաստանում)։

Ատրպատականում Թ—ԺԱ դարերում իշխեցին թյուրքական ծագում ունեցող Սաջյանները (889—930), ապա սկսեց խառն վիճակ, երբ հանդես եկան Մուֆլիհ ալ-Սաջին, Դայսամ իբն Իբրահիմ ալ-Քուրդին, Լաշքարին և ուրիշներ։ Ապա իշխեցին իրանական (դեյլամիկյան) ծագում ունեցող Սալարիները (Մուսաֆիրները) (941—983) և, վերջապես՝ արաբա-քրդական ծագում ունեցող Ռավվադիները (983—1071)։

Ատրպատականի բնիկ իրանալեզու բնակչությունը, Շիրվանի տեղական իրանալեզու ցեղերի նման, չկարողացավ ստեղծել իր ուրույն մշակույթը և ընդհանրապես ոչ մի ինքնուրույնություն չունեցավ։ Այս անորոշությունը հետագայում նպաստեց թե՛ Ատրպատականի, թե՛ Շիրվանի թյուրքացմանը։

*Minorsky*, Studies in Caucasian History, 112—113 (n. 2).

*Оранский*, Введение в иранскую филологию, стр. 239.

194. Վաշմգիրը (Վուշմագիր) Թաբարիստանի և Վրկանի (Ջուրջան) տեր Զիյարիների (927—1090) տոհմից էր, իշխել է 935—967 թվականներին։

*Босворт*, Мусульманские династии, стр. 135.

195. Դեյլամիկները (դայլամցիները) Իրանի հյուսիսային Դայլամ նահանգի ռազմունակ բնակիչներն էին։ Նրանք հատուկ աշխուժություն ցուցաբերեցին Ժ դարում, կռվելով տարբեր տիրակալների համար։ Դայլամից են ծագում իրանական Զիյարի (927—1090), Սալարյան կամ Մուսաֆիրի (916—1090) և Բուի կամ Բուվայհի (935—1055) տոհմերը, որոնք պետություններ կազմեցին Իրանի հյուսիսային և հարավային շրջաններում։

196. Հայազգի Ատոմը ( اطوم الارمنی ) Անձևացյաց Գուրգեն Արծրունի իշխանի որդի Ատոմն է, որն արաբական աղբյուրներում կոչվում է Աթում իբն Ջուրջին։

The Tajarib al-Umam or History of Ibn Miskawayh, in the Eclipse of the Abbaside Caliphate, London, 1920. I, p. 401.

197. Նասիր ալ-Դաուլան իբն Համադանը Համդանյան տոհմի Ջազիրայի (Մոսուլի) ճյուղից էր։ Իշխել է 929—969 թվականներին։

198. Մուավին ( معاون ) նշանակում է օգնական, փոխանորդ։

199. Մարզուբանը Սալարյան (Մուսաֆիրի) տոհմից էր, 941-ին նվաճեց Ատրպատականը և այս տոհմի իշխանությունը հաստատեց։ Սալարյանների ժամանակագրությունը հետևյալն է.

| | |
|---|---|
| Մարզուբան իբն Մուհամմադ | 941—957 |
| Ջաստան իբն Մարզուբան | 957—960 |
| Իբրահիմ իբն Մարզուբան | 960—983 |

200. Ֆատուա ( فتوى ) է կոչվում մահմեդական իրավական (դատական) դեպքերի վճիռը, որը տալիս էր կրոնապետը կամ իրավագետների ժողովը։

D. B. *Macdonald*, Fatwa, Shorter Enc of Islam, p. 102.

Ինչ վերաբերում է այդ «թաշկինակին», ապա դա անձեռագործ դաստառակն է։ Իբն ալ-Ասիրի տեղեկությունները հիմնական գծերով համընկնում են իրենից երեք հարյուրամյակ առաջ ապրած բյուզանդացի կայսր պատմիչ Կոստանդին Ծիրանածնի տվյալներին։ «Քրիստոսի անձեռագործ պատկերի մասին» աշխատության մեջ նա նշում է, որ Եդեսիայում էր պահվում Քրիստոսի՝ Աբգար թագավորին ուղարկած անձեռագործ դաստառակը (պատկերը, թաշկինակը)։ Նա վարշամակը քսել էր դեմքին և արտատպվել էր դիմապատկերը։

Եվ ահա Ռոմանոս Լեկապենոս կայսրը (920—944) կամեցավ, որ այս մասունքը բերվի Կ. Պոլիս։ Նա գրում է Եդեսիա, մեծ խոստումներ տալով, սակայն եդեսացիք մերժում են։

Վերջապես, աշխարհի արարչագործության վեց հազար չորս հարյուր հիսուներկու թվականին (944) Եդեսիայի ամիրը պատասխանեց կայսրին, պահանջելով, որ հռոմեացիների (բյուզանդացիների) զորքերը չասպատակեն խալիֆայության սահմանամերձ քաղաքները և ազատ արձակեն երկու հարյուր սարակինոս (արաբ) գերիների, նախկինում առաջարկված արծաթով հանդերձ։ Այսպիսով Կ. Պոլիս տարվեց անձեռագործ դաստառակը։

Տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 189—190։

201. Ռուսների՝ Կիևյան Ռուսիայի (Русь) բնակիչների հարձակման մասին խոսում է Նաև Մովսես Կաղանկատվացին, ըստ որի այդ ժամանակ ևրևաց ի կողմանցն հիւսիսոյ այլազգեմ օտարանշան ազգ իմն զոր Ռուզիկ կոչենն»։ (Պատմութիւն, հ. Գ, գլ. ԻԲ)։

202. Նաիբ ( نائب ) տեղակալ կամ որևէ տիրակալի կողմից նշանակված տեղական կառավարիչ։ Մամլուքյան Եգիպտոսում նշանակում էր փոխարքա։

203. Այս փոքրիկ հատվածը չափազանց կարևոր է խալիֆայության երկրներում տղատիրության ձևերի զարգացման հարցը ուսումնասիրելու համար։ Սա ցույց է տալիս, թե ինչպես պետության քաղաքական կազմալուծմանը զուգահեռ պարգևական (իրավականորեն՝ պետական) հողերը և այլ պետական կալվածներ աստիճանաբար անցնում են զորականների ձեռքը, որոնք միշտ չէ, որ կարողանում են ապահովել այն, ինչ անհրաժեշտ էր երկրագործության զարգացման համար։ Զինվորական պետերը խլում էին ոչ միայն տերունի, պետական ( سلطانی ), այլև սեփականատիրական ( املاك ) հողերը։

История стран зарубежной Азии, стр. 146—147.

204. Ավատառու բառի համար բնագրում կա مقطع ավատ ստացած անձնավորություն արտահայտությունը։ Համապատասխանում է պարսկերեն իկթագար բառին։

205. Ռուքն ալ-Դաուլա Հասանը (947—977) եղել է Բուայհի տոհմի Ջիբալի ճյուղի տիրակալներից։

206. Հայաստանի թագավորներ ասելով ( ملوك ) պատմիչը նկատի ունի Վասպուրականի գավառների իշխաններին։ Այս շրջանում թագավոր՝ մալիք (մելիք) բառն արդեն պարզապես իշխանի նշանակություն էր ստացել։ Հետագայում այդ բառը մելիք ձևով գործածվել է միջակ և մանր իշխանների համար։

207. Բուիների (Բուվայհիների) պետությունը տևեց 935—1055։ Այս պարսկական հարստությունը իշխում էր Իրանի գզալի մասին՝ հյուսիսում հասնելով մինչև Ատրպա-

տականի հարավային սահմանը, արևելքում Խորասանի արևմտյան սահմանը, արևմուտքում ընդգրկում էր Իրաքը, Բաղդադ քաղաքով, իսկ հյուսիս արևմուտքում հասնում էր Ջազիրա։

Նախապես Աբբասյաններին ենթակա էին, բայց 945-ին այս հարստության հիմնադիր 3 եղբայրները (Ահմադ, Ալի, Հասան) գրավեցին Բաղդադը և փաստորեն վերջ տվեցին Աբբասյան խալիֆայության գոյությանը (քաղաքականորեն)։ Մուիզզ ալ-Դաուլան, Ահմադը և նրա հաջորդները համարվում էին խալիֆայի տեղակալները, սակայն ըստ էության լիակատար իշխանություն ունեին։ Այս պետությունն իր հզորության գագաթնակետին հասավ Ադուդ ալ-Դաուլա Ֆեննա Խոսրովի (Խոսրաու) ժամանակ (949—983), որից հետո անկում ապրեց։ 977-ից նրանք կոչվում էին Շահինշահ։ Նրանց մայրաքաղաքն էր Շիրազը։

Այս իրանական հզոր պետությունը կործանվեց սելջուկների կողմից 1055-ին։

*К. Э. Босворт*, Мусульманские династии, М., 1971, стр. 138.

208. Այս դեպքերը տեղի էին ունենում Գագիկ Արծրունու ժամանակ (322 հիջրի՝ 933/934), ուստի և անունը պետք է լինի ոչ թե իբն Դայրանի և իբն Ջաջիկ՝ որդի Դերանիկի և որդի Գագիկի, այլ Ջաջիկ իբն Դայրանի՝ Գագիկ որդի Դերանիկի, այսինքն՝ իբն (որդի) բառը Գագիկից առաջ ավելորդ է։ Գագիկի և Դայսամի հարաբերությունների մասին տե՛ս *А. Быков*, Дайсам ибн Ибрахим ал-Курди, Эпиграфика Востока, XI, 1955

209. Համդանիների պետությունը (929—991) հիմնադրվել էր Վերին Միջագետքում, մայրաքաղաք ունենալով Մոսուլը։ Այս տոհմը արաբական Տաղլիբ ցեղից էր սերում։ Նրանք 944-ին գրավեցին Հալեպը և մի նոր ճյուղ հիմնվեց Սայֆ ալ-Դաուլայի կողմից (944—967), որը գոյատևեց մինչև 1003 թվականը։ Սակայն Սայֆ ալ-Դաուլայի հաջորդներից Սաիդ ալ-Դաուլան (991—1001) արդեն Եգիպտոսի Ֆաթիմյաններին ենթակա էր։

Սայֆ ալ-Դաուլան արաբների թե՛ քաղաքական պատմության, թե՛ մատենագրության մեջ երևելի անձնավորություն է, որպես Բյուզանդիայի դեմ պայքարում մահմեդականության դատի պաշտպան և միաժամանակ բանաստեղծների մեկենաս։

Թե՛ Մոսուլում իշխող Նասիր ալ-Դաուլան (929—969), թե՛ Հալեպում իշխող Սայֆ ալ-Դաուլան միջամտել են Հայաստանի քաղաքական գործերին և ներխուժել հայկական գավառները։

*M. Canard*, Histoire des Hamdanides de Jazîrah et de Syrie, Paris, 1958.

*M. Canard*, Les Hamdanides et l'Arménie, Annales de l'Inst. d'Et. Or. Alger, 1948

210. Երբ իբն ալ-Ասիրը հիշում է, թե Ատրպատականի այս կամ այն անձնավորությունը ապաստանեց Հայաստան, ապա խոսքը Վասպուրականին է վերաբերում, սակայն Մինորսկին կարծում է, որ այս դեպքում Իբրահիմը Դվին էր գնացել։ Դա հավանական չէ։

*Minorsky*, Musafirids, Enc. of Islam, III, 744.

Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները*, էջ 175—176։

211. Բնագրում գրված է Արմինիա أرمينية, բայց պետք է լինի Ուրմիա ارمية, քանի որ դա Մարաղայի մոտ էր։

212. Հիշյալ Աբու-լ-Վարդը վերջինն էր Սուլայմ արաբական ցեղի իշխող տոհմից, որը հայ պատմագրության մեջ կոչվում է Կայսիկ և իշխում էր Մանազկերտ, Խլաթ, Արճեշ, Արծկե քաղաքներում։

Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները*, էջ 96—100, 143—149։

213. Բանն այն էր, որ Հայաստանի Կորճայք նահանգի հարավային մասերը ներխուժել էին քրդական ցեղեր և ասպատակ սփռել, իսկ Գագիկ Արծրունին (Վասպուրականի

*թագավորը) զսպել էր նրանց և հնազանդեցրել։ Պատմիչը Հայաստան ասելով նկատի ունի Վասպուրականը, ուր ամենահարավային մասերում կային հպատակեցված ցեղապետեր։ Տե՛ս* Վ. Վարդանյան, *Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը, Երևան, 1969, էջ 64—65, 69—70։*

*214. 969-ին Նիկեփոր կայսեր եղբորորդի Վարդ Փոկասը գրավեց Մանազկերտը և պարիսպները կործանեց։*

*Տե՛ս* Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները, էջ 185։*

*215. Ուդդատ ալ-Դաուլա Աբու Տաղլիբը (969—979) Համդանյանների Մոսուլի ճյուղի ամիրներից էր։*

*216. Բատը (Բադ) հիմնադիրն է Մրվանյանների ամիրության, որը տևեց 990—1096։ Նրանք հաստատվել էին Աղձնիքում (Ամիդ, Նփրկերտ) և նվաճել Վանա լճի հյուսիս արևմտյան շրջանները (Խլաթ)։* Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները, էջ 193—197։*

*217. Սամսամ ալ-Դաուլա ալ-Բուայհին իշխել է նախ Իրաքում (983—987) և ապա Ֆարսում ու Խուզիստանում (990—998)։*

*218. Քունյա (كنية) է կոչվում որդու անունով կազմված մականունը։ Տվյալ դեպքում Բատի որդու անունը եղել է [illegible]ուսա։*

*219. Վարդ ալ-Ռումին Բյուզանդիայի Ժ դարի պատմության մեջ նշանավոր Վարդ Սկլերոսն է, որն ապստամբել էր Վասիլ Բ կայսեր դեմ։ Հայ իշխաններից նրան համակիր էին Տարոնի Գրիգոր և Բագարատ Բագրատունիները և Մոկաց Ջափրանիկ իշխանը։ Սկլերոսի դեմ դուրս եկավ զորահրամանատար Վարդ Փոկասը (Վարդիս իբն Լաուն), որին օգնեց Տայքի կուրապաղատ Դավիթը։ Սկլերոսը պարտվեց ու փախավ Բաղդադ, սակայն շուտով հարաբերությունները լարվեցին Վարդ Փոկասի և կայսեր միջև։ Սկլերոսը վերադարձավ Բյուզանդիա։ Փոկասը նախ համաձայնության եկավ նրա հետ, ապա բանտարկեց նրան։ Ռուսների օգնությամբ Վասիլ Բ կայսրը հաղթեց Վարդ Փոկասին, որն սպանվեց, իսկ Սկլերոսը մեկուսացած վիճակում մնաց մինչև մահը։*

История Византии, II, стр. 217—220.

*220. Յամին ալ-Դաուլա Մահմուդը Ղազնևի տոհմի ամենից աչքի ընկնող դեմքն է։ Արշավեց Հնդկաստան և մեծ նվաճումներ կատարեց։ Սկզբում հովանավորեց պարսիկ մեծ բանաստեղծ Ֆիրդուսուն, որը գրեց Շահնամեն, ապա վատ վերաբերվեց նրան և վերջինս ծաղրեց նրան իր երգիծական բանաստեղծությամբ։*

*221. Մաջդ ալ-Դաուլան (997—1029) Բուայհիների տոհմի Ռեյի ճյուղի տիրակալներից էր։ Նրա տիրույթները գրավեց Մահմուդ Ղազնևին։*

*Босворт*, Мусульманские династии, стр. 137—138.

*222. Օղուզները (արաբ. և պարսկ. ղուզզ) թյուրքական վայրագ ցեղեր էին, որոնց մի մասը Ժ դարում ընդունած լինելով մահմեդականությունը, ներխուժեց իրանական նահանգները՝ Բուխարա և Խորասան։ Նրանք սելջուկ տոհմի գլխավորությամբ հրով ու սրով ասպատակեցին և ապա նվաճեցին Իրանը, Հայաստանը և, վերջապես, ամբողջ Առաջավոր Ասիան։ ԺԲ—ԺԳ դարերում օղուզ (ղուզզ) անունը ամենուրեք փոխարինվում է թուրքմեն անունով։ Պատմագրության մեջ հաճախ նրանց մասին խոսելիս իշխող սելջուկյան տոհմի անունով կոչվում են սելջուկներ։*

*Օղուզների առաջին արշավանքները Հայաստանում (1016—1063) զուտ կողոպտչական էին և նրանք դեռ հաստատվելու նպատակ չունեին։*

*Агаджанов С. Г., Юзбашян К. Н.,* К истории тюркских набегов на Армению в XI в., Палестинский Сборник, вып. 13(76), 1965.

*223. Վահսուդան իբն Մամլանը (1025—1059) Ատրպատականում իշխող Ռավվադյան (քրդացած արաբ) տոհմից էր (984—1071)։*

224. Աբու-լ-Հայջա իբն Ռաբիբ ալ-Դաուլան Ատրպատականի Վահսուդան ամիրի քեռորդին էր և տիրում էր Բերկրիում։

225. Ալա ալ-Դաուլա Մուհամմադը (1008—1041) Կակույի կամ Կակուայհի տոհմից (1008—1051) էր, որը դեյլամիկական ծագում ուներ և ենթակա էր Ռեյի Բուայհիներին։ Կակուիներն իշխում էին արևմտյան Իրանում։ Մահմուդ Ղազնևիի՝ Ռեյը գրավելուց հետո, այն անցավ Ալա ալ-Դաուլայի ձեռքը և այդ ժամանակ էր, որ հանդես եկան սելջուկները։ Նրա մահվանից հետո հետնորդները սելջուկներին հպատակ դարձան։

226. Սելջուկների տոհմը սերում է Սելջուկից, որը ծառայել է Թյուրք խաքանի մոտ։ Նրա որդու՝ Միքայելի, երկու որդիները՝ Տողրուլը (Թուղրիլ (1038—1063) և Չաղրին արշավանքի ելան դեպի Իրան։ Սելջուկների առաջնորդությամբ օղուզ-թուրքմեն վայրագ ցեղերի աղետալի ներխուժումը Իրան և Հայաստան, տիրապետությունը և հատկապես թյուրքական ցեղերի հաստատվելը Առաջավոր Ասիայում Արևելքի պատմության մեծագույն աղետն էր։ Դարերի ընթացքում քայքայելով և թյուրքացնելով իրանական բնակչություն ունեցող Միջին Ասիայի (Խորեզմ, Ֆերղանա և այլն) մեծ մասը, Ատրպատականը, Շիրվանը, ինչպես նաև ամբողջ Փոքր Ասիան (հունական և հունացած ազգաբնակչությամբ) սելջուկյան և հաջորդ գիշատիչ պետությունները մաշեցրին և հյուծեցին Արևելքի հին և բարձր մշակույթի տեր ժողովուրդներին։ Հատկապես Հայաստանի պատմության մեջ մեծագույն արհավիրքն էր, որը լրիվ հեղաշրջեց նրա պատմության բնական ընթացքը։

Ահա այս աղետալի արշավանքների ղեկավարներից էր նաև Թուղրիլի և Չաղրիի մեկ ուրիշ եղբայրը՝ Իբրահիմ Յաննալը։ Չաղրի բեկի որդու՝ Ալփարսլանի, և սրա որդու՝ Մելիքշահի, օրոք նորակազմ պետությունը իր հզորության գագաթնակետին հասավ։ Սակայն ԺԲ դարի սկզբից պետությունը տրոհվեց և սելջուկ տոհմի ճյուղերը իշխեցին նրա տարբեր մասերում։ Դեռ ավելի վաղ գոյություն ունեին Քիրմանի (1041—1187), Ասորիքի (1074—1117), Իկոնիայի կամ Կոնիայի (1077—1307) սուլթանությունները։

227. Հետաքրքրական է, որ պաշտոնապես մահմեդական համարվող օղուզների արշավանքներից տուժում էին առաջին հերթին մահմեդական երկրները, որոնց սիրակալները բողոքում են Տողրուլ բեկին։ Վերջինս մի կողմից մեղադրում է օղուզներին, իսկ մյուս կողմից հանդուգն ոճով այպանում է մրվանյան Նասր ալ-Դաուլային (1011—1061), հիշեցնելով, որ նա իբրև սահմանային ամրության (սադր) հրամանատար պարտավոր է օղուզներին հանդուրժելու և օգնելու, քանի որ դա անհրաժեշտ էր «անհավատների» դեմ մղվող պայքարում։ Սելջուկները նենգորեն օգտագործում էին արաբ, պարսիկ, քուրդ և այլ մահմեդական ժողովուրդների կրոնական զգացմունքները, հրահրելով կատաղի մոլեռանդություն այլահավատների դեմ։

228. Աբիդ (عبيد) ստրուկներ, ծառաներ արտահայտությունը այստեղ ընդհանուր իմաստ ունի։ Տվյալ դեպքում հայկական ծառա բառի նման նշանակում է հպատակ կամ ստորադրյալ։

229. Բյուզանդիայի Ռոմանոս Գ կայսրը (1028—1034) մեծ բանակ էր հավաքել Ասորիք արշավելու նպատակով։ Հալեբի ամիրը հաշտություն էր առաջարկել, բայց կայսրը մերժել էր։ 1030 թ. ամռանը կայսրը հարձակվեց։ Նրա բանակը նեղվում էր շոգից և համաճարակներից։ Հալեբի մոտ կրած պարտությունից հետո սկսեց նահանջը, որը վերածվեց խուճապահար փախուստի։

Սակայն հաջորդ տարին բյուզանդական բանակը որոշ հաջողություններ ունեցավ Ասորիքում, իսկ 1032-ին նվաճեց Եդեսիան։

История Византии, II, стр. 268.

230. Ֆադլունը (Փատլուն) քրդական Շադդադյան տոհմից էր, որի առաջին ներկայացուցիչը Մուհամմադ իբն Շադդադը 951—954 թվականներին իշխում էր Դվինում։ Նրա

որդիներն ու թոռները իշխում էին Գանձակում, Անիում և այլ վայրերում։ Նրա թոռ Աբու-լ-Ասվարը իշխում էր Դվինում (1022—1049), Բագրատունյաց թագավորության վերջին շրջանում և Գանձակում (1049—1067)։

Հիշյալ Ֆադլունը Ֆադլ Ա-ն է (985—1031), որն իշխում էր Գանձակում։

Վ. Մինորսկին նշում է, որ այս բնագրում خزر «խազարներ» բառի մեջ կետադրման սխալ կա և պետք է լինի جرز «Ջուրզ»՝ վրացիք, քանի որ ԺԱ դարում այլևս խազարներ չկային այդ կողմերում։

*Minorsky*, Studies in Caucasian History. 40—45, 42 (n. 3).

231. Բանն այն է, որ մեր պատմիչը թեև խոստացել է հիջրի 580 թվականին հիշատակել Սասունցիների բերդերի գրավումը մահմեդականների կողմից, սակայն զարմանալիորեն այդ տարվա դեպքերին հատկացված բաժնում նման տեղեկություն չկա։

232. Ռաիյյա (رعية) նշանակում է հոտ, հպատակներ։ Նախապես այդ բառը նշանակել է ընդհանրապես հպատակ աշխատավոր ժողովուրդ, բայց հետագայում, մանավանդ ուշ միջնադարում, այդ բառը ռայաթ ձևով օգտագործվում էր ոչ մահմեդական հպատակ ժողովուրդների համար։

Հայ ժողովրդի պատմություն, հ. Դ, Երևան, 1972, էջ 280—285։

233. Աբխազաց և Վրաց թագավոր Բագրատ Դ-ի (1027—1072) Տփղիսը գրավելու համար կատարած արշավանքի մասին Վրաց Տարեգրությունը վկայում է, որ քաղաքը երկու տարի պաշարելուց հետո հաշտություն կայացավ Բագրատ Դ-ի և Տփղիսի ամիր Ջաֆարի միջև։

Histoire de la Georgie, SPb., 1849, t. I, p. 317.

*Minorsky*, Studies in Caucasian History, p. 57.

234. Մա վարա ալ-նահր (ما وراء النهر) կամ անդրգետյան նահանգ, այսինքն Ամու Դարիա (Ջայհան Oxus) գետից այն կողմ գտնվող միջինասիական նահանգները (Transoxiana)։ Խորասանից մտնելով այս շրջանները, արաբները աստիճանաբար (մինչև Ը դարի կեսերը) նվաճեցին իրանական ժողովուրդներով բնակեցված այս երկիրը։ Այստեղ առաջին հերթին պետք է նշել Սուղդը (Սոգդիանա) իր Բուխարա և Սամարկանդ քաղաքներով և Խորեզմը։ Այս իրանական նահանգների քաղաքակրթության լավագույն վկայությունն են Փենջիքենդի պեղումների արդյունքները։

Սակայն մահմեդականության տարածումը և մանավանդ օղուզ (թուրքմեն) ցեղերի ներխուժումը կերպարանափոխեց Մավարաննահրը, որը հենարան դարձավ հիշյալ ցեղերի՝ դեպի Իրան և Առաջավոր Ասիա կատարած ավերիչ արշավանքների։ Սուղդի և Խորեզմի իրանական բնիկ ժողովուրդները թույլ գտնվեցին ներխուժող բարբարոս տարրի առջև և Մավարաննահրի զգալի մասը ժամանակի ընթացքում թուրքացավ։

*Hitti*, History of the Arabs, 200—210.

*Оранский*, Введение в иранскую филогогию, стр. 236—243.

235. Պատմիչը տարբերում է Արզան ալ-Ռումը և Կալիկալան, այսինքն Արծնը և Կարնո քաղաքը (Թեոդոսուպոլիս)։ Սակայն նույն ժամանակ, երբ սելջուկները կործանեցին Արծնը, որի մասին Իբն ալ-Ասիրը չի խոսում, Արզան ալ-Ռում անունը տրվեց հենց Կարնո քաղաքին։

236. Պատմիչի հիշատակած Աբխազների թագավոր Կարիթը ([illegible]) վրաց իշխան Լիպարիտն է։ Ըստ երևույթին պետք է լինի لفاريط (Լիֆարիթ)։

Սելջուկները մտել էին Հայաստան 1047-ին, ապա կրկին ներխուժեցին 1048-ին, երբ տեղի ունեցավ Կապուտռու բերդի մոտի ճակատամարտը, որը նկարագրում են Արիստակես Լաստիվերտցին և Իբն ալ-Ասիրը։

Հ. Մանանդյան, Քննական տեսություն, Գ, 39—46։

237. *Թուղրիլ բեկի կողմից Մանազկերտի պաշարումը և նրա անհաջողությունը այդ քաղաքի պարիսպների մոտ. պատկերավոր ձևով նկարագրված է Մատթեոս Ուռհայեցու մոտ։ Երբ Թուղրիլը չկարողացավ գրավել հերոսաբար պաշտպանվող Մանազկերտը, պաշտպանները թշնամուն ծաղրելու համար քարանետ մեքենայի միջոցով մի խոզ գցեցին նրա առջև և պարսպի վրայից գոռացին՝ առ այս խոզը քեզ կին և մենք Մանազկերտը քեզ օժիտ կտանք»։ Թուղրիլը խայտառակված հեռացավ Հայաստանից։*

Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրություն, էջ 118—122։*

238. *Ամիր ալ-ջույուշ (բանակի հրամանատար) Բադրը հայտնի է որպես Բադր ալ-Ջամալի (Ջամալի)։ Սա մահմեդականացած հայ մամլուք էր, որը Ասորիքում պաշտոն ստացավ, ապա դարձավ Եգիպտոսի Ֆաթիմյան խալիֆայի վեզիրը։ Նրանից հետո վեզիրության պաշտոնը վարեցին որդին՝ Աֆդալ Շահնշահը, և ապա թոռը՝ Ահմադը։*

Գ. Մսըրլյան, *Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, էջ 23—36։*

239. *Նակիբ* (نقيب) *նշանակում է ազնվականության գլուխ, խալիֆայական տոհմի պետ։*

240. *Ամիդ* (عميد) *նշանակում է պետ, կառավարիչ։ Հաճախ օգտագործվում է անձնանունների մեջ՝ Ամիդ ալ-Դաուլա (տերության վերակացու), Ամիդ ալ-դին (հավատի վերահսկիչ) և այլն։*

241. *Սովորաբար կարծվում էր, որ Ալփարսլանի արշավանքը Անի (1064) տեղի էր ունեցել Ուտիքի վրայով դեպի Տաշիր, Ջավախք ու Շիրակ, ինչպես այդ մատնանշում են Մատթեոս Ուռհայեցին և վրաց տարեգրությունը (Քարթլիս ցխովրեբա)։ Սակայն Իբն ալ-Ասիրի տեղեկությունները միանալով այլ աղբյուրների վկայություններին, պարզում են, որ Ալփարսլանն ինքը իրոք գնաց այդ ճանապարհով, սակայն որդին՝ Մելիքշահը, և վեզիրը՝ Նիզամ ալ-Մուլքը, իրենց զորքով գնացին Նախճավան—Սուրմարի—Մարմաշեն ճանապարհով և վերջում երկու բանակները միանալով ուղղվեցին Անի։*

*Անիի գրավումը իր ժամանակին ամբողջ Արևելքի համար նշանավոր իրադարձություն է եղել, քանի որ համարվել է բացառիկ կերպով անառիկ քաղաք։ Այդ մասին խոսել են հայ (Լաստիվերտցի, Ուռհայեցի), հույն (Սկիլիցես, Ատտալիատես), արաբ (Իբն ալ-Ասիր, Սադր ալ-Դին ալ-Հուսայնի, Իսֆահանի-Բոնդարի, Իբն ալ-Ջաուզի և այլն) և ասորի (Բար Հեբրեոս) պատմիչները։*

Մ. Չամչյան, *Պատմութիւն Հայոց, Բ, 977։*

*F. Tournebize*, Histoire politique et religieuse de l'Arménie, Paris, 1900, p. 133.

Մանանդյան, *Քննական տեսություն, Գ. էջ 54—61։*

*M. Canard*, La campagne arménienne. p. 239—259.

Ս. Բոռնազյան, *Հայաստանը և սելջուկները, էջ 96—124։*

242. *Նիզամ ալ-Մուլքի և Մելիքշահի գրաված առաջին ամրոցը, ինչպես նաև Սուրմարիից հետո նվաճվածը, որոնց անունները Իբն ալ-Ասիրը չի տալիս, ըստ Է. Հոնիգմանի պետք է լինեն Անբերդը և Սուրբ Գրիգորիոսը, իսկ ըստ Յ. Մարկվարտի. պետք է լինեն Բջնին և Կաղզվանը։*

*Honigmann*, Die Ostgrenze, 187

*Markwart*, Osteuropaische, 121.

243. *Մարիամ Նիշինը* (مريم نشين) *ակներևորեն Մարմաշենն է։ Ն. Մառը այն նույնացնում էր Անիի հետ, սակայն Յ. Մարկվարտը կռահեց, որ դա պետք է լինի Վահրամ Պահլավունու կողմից կառուցված Մարմաշենի ամրակուռ վանքը։*

*Ինչ վերաբերում է Մարմաշեն անվան ստուգաբանությանը, ապա դա ծագում է ոչ թե Մարմարաշեն, այլ Մարիամաշեն ձևից։ Ինչպես երևում է վանքի արձանագրությունից,*

կառուցմանը եռանդուն մասնակցություն է ունեցել «Ափխազաց և Հայոց թագուհի» Մարիամը՝ Սենեքերիմ Արծրունու դուստրը։

Մանանդյան, Քննական տեսություն, Գ, 54—61։

244. Թեև Սեն Մարտենը և Յ. Մարկվարտը Սաբիդ Շահրը (سپیدشهر) Սպիտակ քաղաք) նույնացնում են Ախալքալաքի հետ, այսուհանդերձ, ավելի հավանական է է. Հոնիգմանի ենթադրությունը, թե դա Մարմաշենից հյուսիս գտնվող Տետրի Ցիխեն է։

*St. Martin*, Memoires, I, 84, II, 227.

*J. Markwart*, Skizzen zur historischen Topographie und Geschichte von Kaukasien, Wien, 1928, 48, 51—54

*Honigmann*, Die Ostgrenze, 187.

245. Այս ال لال (Ալ լալ) անունը, որն աղավաղված ձևով է գրված Իբն ալ-Ասիրի մոտ, թյուրիմացությունների տեղիք է տվել։

Եթե նկատի ունենանք, որ Սադր ալ-Դին ալ-Հուսայնին նույն դեպքերի մասին պատմելիս այդ անունը տալիս է اغاك لال (Աղաք լալ) ձևով, արդեն երևում է, որ խոսքը Ախալքալաքի մասին պետք է լինի, մանավանդ, որ սելջուկների կողմից Ախալքալաքի գրավման մասին իրոք խոսում են Մատթեոս Ուռհայեցին և վրաց տարեգրությունը։

Հավանաբար, արաբական նախնական ձևը պիտի եղած լինի اغال كلاك

*Sadruddin el-Huseyni*, Ahbar ud-Devlet is Selcukiyye, Ankara, 1943, p. 25.

Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրություն*, 144.

Histoire de la Georgie, I, St.-Petersbourg, 1849, p 327.

246. Դաբիլ (կամ Դասիլ) Ուարղա (دسلوره) և Նուրա (نوره) վայրերը դեռ անորոշ են։ Սեն Մարտենը ենթադրում էր, որ դրանք պետք է լինեն Վարդաշեն և Լոռի է. Հոնիգմանը գտնում է, որ դրանք անորոշ վայրեր են Կարս գետի Չլդըր լճի ակունքի մոտ, իսկ Յ. Մարկվարտը ենթադրում է, որ դրանք պետք է լինեն Վարդաշեն և Նորաշեն։

Այս տեղանունները նույն ձևով հիշատակվում են նաև Սադր ալ-Դին ալ-Հուսայնիի մոտ և հրատարակիչ Մ. Իկբալը տողատակում ենթադրում է, որ դրանք (առաջին մասում) կարող են լինել Դաբիլ (دبيل) և Բարդաա (بردعة) անունները։ Սա թեև գրության ձևով հավանական է, սակայն այդ քաղաքները՝ Դվին և Պարտավ, շատ հեռու են Կարսի կողմերից։

*Honigmann*, Die Ostgrenze, s. 188.

*Markwart*, Osteuropaische, s. 122

*Markwart*, Sudarmenien, s. 27—28.

*Sadruddin el-Huseyni*, p. 26.

247. Պատմիչի այն հեքիաթանման խոսքերը, թե Անիի պարսպից մի մեծ կտոր փուլ եկավ առանց պատճառի, բացատրվում են Մատթեոս Ուռհայեցու հավաստի տեղեկություններով։ Ըստ վերջինիս, Ալփարսլանը արդեն հուսահատվել էր Անին գրավելուց և ահա այդ ժամանակ քաղաքի իշխանավորները՝ Բագարատը և Գրիգոր Բակուրյանը թողեցին ժողովրդին ու քաշվեցին միջնաբերդ։ Ժողովուրդը խուճապի մատնվեց, իսկ թշնամին տեսնելով այդ վիճակը, հարձակվեց, մտավ անպաշտպան քաղաքը և գրավեց այն։

Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրություն*, էջ 148։

248. Քուրջերի՝ վրաց, թագավորը Բագրատ Դ-ն է։ Նա և Տաշիր Ձորագետի Կորիկե Բագրատունի թագավորը հաշտություն կնքեցին Ալփարսլանի հետ։

249. Օղուզները (թուրքմենները) լինելով զարգացման ցածր մակարդակի վրա գտնվող հրոսակներ, բնականաբար չէին կարող կազմակերպված պետություն ստեղծել և

պատահական չէ, որ սելջուկյան լայնածավալ պետությունը շատ կարճատև կյանք ունեցավ։ Սակայն նույնիսկ այդքանը պարսիկ տարրի օժանդակության շնորհիվ է, որ հնարավոր դարձավ։ Հատկապես վճռական դեր խաղաց պարսիկ երևելի պետական գործիչ Նիզամ ալ-Մուլքը, որի շնորհիվ պետությունը որոշ չափով կայունացավ Մելիքշահի օրոք (1072—1092)։

Խոսելով Նիզամ ալ-Մուլքի գործունեության մասին Իսֆահանին (Բոնդարի) մատնանշում է Օմայան Սուլայման խալիֆային վերագրվող հետևյալ խոսքերը. «Ես զարմանում (հիանում) եմ այս իրանցիների վրա։ Հազար տարի թագավորություն են ունեցել, մի պահ մեր կարիքը չեն զգացել, իսկ մենք հարյուր տարի է, որ թագավորություն ունենք, թեկուզ մեկ պահ նրանցից անկախ չենք եղել»։

Թեև այս խոսքերը ասված են արաբների՝ պարսիկներից միշտ կախման մեջ լինելու մասին, սակայն առավել ևս դրանք վերաբերում են արաբներից անհամեմատ ցածր մակարդակի վրա գտնվող օղուզ (թուրքմեն) ցեղերին։

Նիզամ ալ-Մուլքը սելջուկյան պետության գլխավոր ղեկավար ուժն էր և պատահական չէ, որ հենց նրա սպանությունից հետո, մեռավ նաև Մելիքշահը, և լայնածավալ պետությունը քայքայվեց։

Ս. Բոռնազյան. *Հայաստանը և սելջուկները*, էջ 218։

250. Մանազկերտի ճակատամարտում Ռոմանոս կայսեր զորքի մեջ կռվող ժողովուրդների շարքում թեև Իբն ալ-Ասիրը հայերին չի հիշում, սակայն արաբ այլ պատմիչներ (Իմադ ալ-Դին ալ-Իսֆահանի, Սադր ալ-Դին ալ-Հուսայնի) հիշում են նաև հայերի մասնակցությունը։

*Imad ad-Din al-Isfahani*, (al-Bondari), Iraq ve Horasan selcuklulari tarihi Istambul, 1943, p. 37.

*Sadruddin el-Huseyni*, p. 33.

251. Ռուսներ (الروسية) արտահայտությունը գրչական սխալ է։ Խոսքը ֆրանկ զորավար Ռուսելի կամ Ուրսելի մասին է։ Մանավանդ, որ պատմիչը մատնանշում է, որ զորքը բաղկացած էր հոռոմներից։

Ս. Բոռնազյան, *Հայաստանը և սելջուկները*, էջ 149 (ծան. 220)։

252. Ըստ Իբն ալ-Ասիրի, մահմեդական զորքը անմիջապես ճնշեց հոռոմներին ու ջախջախեց։ Սակայն հույն պատմիչ Ատտալիատեսը այլ կերպ է նկարագրում. առաջին արձակվողը հույներն էին և սելջուկյան զորքին նեղը գցելուց հետո, Ռոմանոս կայսրը հրամայում է այլևս չհետապնդել թշնամուն։ Այդ ժամանակ դավաճան Անդրոնիկոս Դուկասը զորքի մեջ լուր տարածեց, թե բյուզանդական առաջապահ զորքը ջախջախված է։ Սկսվում է մի խուճապ, որը հնարավոր չէր կանգնեցնել ևահա գերի է ընկնում կայսրը՝ ուրիշ շատերի հետ միասին։

*Cl. Cahen*,, La campagne de Manzikert, p. 636.

Ս. Բոռնազյան, *Հայաստանը և սելջուկները*, էջ 155—156։

253. Դուկիան գտնվում է Սեբաստիայի մոտ։ Ըստ Իբն ալ-Ջաուզիի, Ռոմանոսը Սեբաստիայում բանակ է կազմակերպում այն հայերից ու հույներից, որոնք ապաստանել էին Սեբաստիայի հայ թագավորի մոտ։ Այդ բանակով նա գրավում է Փոքր Ասիայի մի մասը՝ Իկոնիայից մինչև Մելիտինե։ Ապա օգնություն է խնդրում Ալփարսլանից, որը խոստանում է զորք ուղարկել։

*Cl. Cahen*. La campagne de Manzikert, p. 640.

254. Տուտուշը Ալփարսլանի որդիներից էր։ Նա Ասորիքի կողմերում հիմնեց մի սուլթանություն, որը տևեց 1074—1117։

255. *Արջավան* (ارجوان) *Արջևան ձևով, որպես արական անուն եղել է հայ իրականության մեջ։ Թվում է, թե իրանական փոխառություն է։*

Հ. Աճառյան, *Հայոց անձնանունների բառարան, Ա, 301։*

256. *Աֆդալ Շահնշահը որդին էր Եգիպտոսի Ֆաթիմյան խալիֆա Մուստանսիրի վեզիր Բադր ալ-Գամալիի։ Նա ինքն էլ եղել է վեզիր։*

Գ. Մսրլյան, *Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, էջ 37—55։*

257. *Խաչակրաց ութ արշավանքները տեղի ունեցան 1096—1270 թվականներին։ Դրանք եվրոպական միջնադարյան պետությունների և իշխանությունների նվաճողական արշավանքներն էին Արևելքում, ուր սելջուկյան ավերիչ արշավանքների և ապա սելջուկյան պետության քայքայման հետևանքով անկայուն վիճակ էր ստեղծվել։ Հարձակվող զորքերի ռազմիկները խաչակիր էին կոչվում իրենց թիկնոցների վրա խաչի նշանը կրելու պատճառով։ Ըստ Իբն ալ-Ասիրի, խաչակրաց առաջին արշավանքն սկսվեց Սիկիլիայի Ռոժեր թագավորի և Եգիպտոսի Ֆաթիմյանների դրդմամբ։ Վերջիններս նեղվում էին սելջուկներից։*

*Առաջին խաչակրաց արշավանքի (1096—1099) համար Ուրբանոս Բ պապը կոչ արեց Կլերմոնում 1095 թվականին, որի հետևանքով 100 հազար ռազմիկ հավաքվեց (գլխավորապես ֆրանսիացիք)։ Նրանք տարբեր տեղերից 1096-ին ճանապարհ ընկան և անցնելով Հունգարիայի ու Բալկանների վրայով, Կ. Պոլսի կողքով մտան Փոքր Ասիա։ Այստեղ բախվելով Ռումի (Իկոնիայի) սելջուկների հետ, վերջապես հասան Կիլիկիա, ուր Հայոց իշխանապետ Կոստանդինը թույլ տվեց նրանց անցնել։ Շարունակելով իրենց ճանապարհը, խաչակիրները մտան Վերին Միջագետք, Ասորիք ու Պաղեստին և նվաճումներ կատարեցին։ 1098-ին գրավեցին Անտիոքը, իսկ 1099-ին՝ Երուսաղեմը։*

*Նրանք հիմնեցին 4 փոքր պետություններ՝ Եդեսիայի կոմսությունը, Անտիոքի իշխանությունը, Տրիպոլիի (Տրիպոլսի) կոմսությունը և Երուսաղեմի թագավորությունը, որը մյուս երեքի նկատմամբ գահերեց էր։ Այսուհանդերձ Ասորիքի ներքին քաղաքները (Դամասկոս, Հալեբ և այլն) մնացին մահմեդականների ձեռքում։*

*Արաբ պատմիչները խաչակիրներին կոչում էին ֆրանջ* (فرنج) *կամ իֆրանջ, այսինքն՝ ֆրանկ։*

*Խաչակրաց արշավանքների մասին կա հարուստ գրականություն.*

*St. Runciman*, A History of the Crusades, V. I—3, Cambridge. 1951—1954.

*A. Woos*, Geschichte der Kreuzzuge, B. 1—2, Freiburg, 1956.

*Մատենագիտության համար տե՛ս.*

*A. S. Atiya*, The Crusade, historiography and Bibliography (Bloomington), 1962.

258. *Կիլիկիայի հայկական պետությունը արաբ պատմիչների մոտ կոչվում է տարբեր անուններով՝ Հայոց երկիր* (بلادالارمن), *կիրճերի, լեռնանցքների երկիր* (بلادالدروب), *Լևոնի որդու երկիր կամ ավելի ճիշտ հայազգի Լևոնի որդու երկիր* (بلادابن ليون الارمنى), *կամ Հայի որդու երկիր։ Լևոնի որդի ասելով հավանաբար նկատի ունի Լևոնի որդի Թորոսին (1145—1168), որը վերականգնեց ու ամրապնդեց Կիլիկիայի հայկական անկախ պետությունը։ Իսկ տվյալ դեպքում խոսքը Կոստանդին Ա-ի մասին է։*

259. *Անտիոքը խաչակիրների կողմից գրավվեց ութ ամիս պաշարվելուց (21 հոկտեմբեր 1097—3 հունիս 1098) հետո, քաղաքի պարսպի աշտարակներից մեկի հայ հրամանատարի՝ խաչակիրներին օգնելու շնորհիվ։*

*Hitti*, History of the Arabs, p. 638.

260. *Մելիտինեի (Մալաթիա) տերը հայ էր։ Գաբրիել կոչված այս հունադավան հայը կառավարիչ էր նշանակվել Փիլարտոսի կողմից։*

Receuil des Historiens des croisades, Historiens Orientaux, t. II, 2e partie, p. 205.

*Քասունի, Կիլիկիոյ Հայկական իշխանապետութիւնը, էջ 79։*

*261. Գոդֆրիդ (ֆր. Գոդֆրուա) Բուլոնցին խաչակրաց առաջին արշավանքի ամենահայտնի ղեկավարներից էր (Մատթեոս Ուռհայեցու մոտ՝ Կոնդոփրէ, էջ 254)։ Նա դարձավ Երուսաղեմի թագավորության առաջին ֆրանկ տիրակալը, սակայն շուտով սպանվեց։ Նրան հաջորդեց եղբայրը՝ Բալդուին Ա-ն (1100—1118), որը հայկական աղբյուրներում Պաղտին է կոչվում։*

*H. Lammens*, La Syrie, precis historique, Beyrouth, 1921, t. I. p. 213.

*262. Դեռ վաղ շրջանից Եդեսիան բնակեցված է եղել հայերով։ ԺԱ—ԺԲ դարերում նրա բնակչությունը լրիվ հայերից էր բաղկացած և նրա կառավարիչները լինում էին հայեր։ Երբ 1144-ին Եդեսիան (Ուռհա) գրավվեց Մոսուլի աթաբեկի կողմից, քաղաքի պաշտպանները առաջին հերթին հայերն էին։ Այս առթիվ Ներսես Շնորհալին գրեց «Ողբ Եդեսիոյ» քերթվածը։*

*Խաչակրաց Եդեսիայի կոմսությունը տևեց 1098-ից 1144։ Կոմսությունն ուներ Եդեսիա մայրաքաղաքը և Սամոսատ ու Մելիտինե քաղաքները։*

*263. Մոսուլի կառավարիչ Մաուդուդը իշխում էր Ատրպատականի որոշ մասերում։*

*264. Կիզիլ (Կըզըլ) Արսլան թուրքերեն նշանակում է կարմիր առյուծ, որի արաբերեն թարգմանությունը կողքին տրված է (Սաբ աhմար)։ Նրա տոհմը (Թուղան Արսլան ալ-Ահդաբ) իշխում էր Արզնում ու Սղերդում։ Նա մի քանի տարով գրավեց նաև Դվինը (1105—1118)։*

*Minorsky*, Studies in Caucasian History, p. 82. n. 4.

*265. Նկատի ունի Մանազկերտի ճակատամարտը, որն այնքան նշանավոր էր, որ առանց անվան էր հիշատակվում.*

*266. Արզան ալ-Ռումի (Արզրումի) տեր Ալին. Սալդուխյան ամիր Իմադ ալ-Դին Ալին է (1105—1145)։*

*267. Սա հայկական աղբյուրներում հիշատակված Մանուչեն է, Անիի առաջին Շադդադյան ամիրը, որն իշխեց 1064-ից քիչ անց, մինչև 1118 (մոտավորապես)։ Հայտնի չէ, թե նրա եղբայր Ֆադլը ինչու է կոչված Ռավվադի։ Ատրպատականի Ռավվադիների իշխանությունը տևեց մինչև 1071 թվականը։*

*Minorsky*, Studies in Caucasian History, p. 80—83.

*268. Սուլթան Մելիքշահի մահվանից հետո, ամբողջ սելջուկյան պետության մեջ սկսեցին երկպառակություններ։ Նրա որդիներ Մահմուդը (1092—1094), Բարքիարուկը (1094—1104), Մելիքշահ Բ (1104—1105) և Մուհամմադը (1105—1118), հենվելով այս կամ այն խմբավորման վրա, պայքարում էին հանուն իշխանության։ Վերջապես 1118-ին պետությունը երկու մասի բաժանվեց՝ Իրաքի սուլթանությունը (Արևմտյան Իրան, Իրաք և Ատրպատական)՝ Համադան մայրաքաղաքով և մեծ սուլթանությունը (Խորասան, Խորեզմ, Մավերաննահր) Մերվ մայրաքաղաքով։ Վերջինս անցավ Սինջարին։*

*Ըստ էության ԺԲ դարում գոյություն ունեին անկախ բազմաթիվ պետություններ, որոնք ձևականորեն ենթակա էին այս կամ այն սուլթանության։*

*269. Արաբ պատմիչը Փիլարտոսին (فلاردوس الرومي) հոռոմ է համարում։ Փիլարտոս Վարաժնունին հունադավան հայ իշխան էր և զորավար էր բյուզանդական բանակում։ Երբ 1071-ին Ռոմանոս կայսրը պարտվեց Մանազկերտի ճակատամարտում, Փիլարտոսն իրեն անկախ հայտարարեց՝ կենտրոն ընտրելով Մարաշը (1077)։ Տիրեց Անտիոքին ու Եդեսիային և 1086-ին գնաց Մելիքշահի մոտ, ընդունեց մահմեդականությունը և Անտիոքը նրան հանձնեց։*

Ջուբուկը (Ջուբուք) Խարբերդը գրավել էր 1085/1086 թվականին։
Կոմմագենացի, Փիլարտոս Հայր, Հալեբ, 1930։

*J. Laurent*. Byzance et Antioche sous le couropalate Philarete, REA, IX, 1929, p. 61—72.

*C. H. Yarnley*, Philaretus, Armenian Bandit or Byzantine General, REA, nouv. ser., IX, 1972, p. 331—353.

270. Սաղական (1086—1108) Հիլլայում ու կենտրոնական Իրաքում իշխող Մազիադի բեդվինական տոհմից էր սերում, որը Բուվայհիներին ենթակա էր։ Հիլլան ԺԱ դարում այլևս ճամբար (կայան) չէր, այլ քաղաք։ Սաղական իրեն կոչել էր արաբաց թագավոր, սակայն պարտվել ու սպանվել սելջուկյան սուլթան Մուհամմադից։

*Босворт*, Мусульманские династии, стр. 85—86.

271. Կոմսը (قمص) Եդեսիայի (Ռուհա) խաչակիր տեր Բալդուին (Պաղտին) դը Բուրգն է (1100—1118), իսկ Թանքրին Անտիոքի իշխան Թանքրետն է (1104—1112)։

Բալդուին դը Բուրգը մեծ վնաս հասցրեց մերձեփրատյան շրջանների հայ իշխաններին։ Նա գերի ընկավ մահմեդականների ձեռքը, ապա 1108-ին ազատ արձակվեց և սկսեց պայքարը Թանքրետի դեմ՝ Եդեսիային տիրանալու համար և իրոք գրավեց։ 1118-ին դարձավ Երուսաղեմի թագավոր և հորջորջվեց որպես Բալդուին Բ (1118—1131)։ Եդեսիայում նրան հաջորդեցին Ջոսլին Ա (1118—1131) և Ջոսլին Բ (1131—1144)։

Թանքրետը (Tancred) խաչակրաց առաջին արշավանքին մասնակից էր։ Գալով Փոքր Ասիայի կողմից, նախ գրավեց դաշտային Կիլիկիայի քաղաքները, մասնակցեց Անտիոքի ու Երուսաղեմի պաշարմանը և Երուսաղեմի թագավորության մեջ որոշ տիրույթներ ստացավ։ Երբ Բոհեմունդ (Պեմունտ) Ա գերի ընկավ, նա տիրեց Անտիոքին, սակայն վերջինիս ազատ արձակվելուն պես, նրան զիջեց քաղաքը։ 1104-ին Բոհեմունդի և Բալդուին դը Բուրգի հետ հարձակվեց Խառանի վրա, բայց խաչակիրները պարտություն կրեցին։ Օգտվելով առիթից նա տիրացավ Եդեսիայի կոմսությանը, իսկ 1105-ին Բոհեմունդը նրան թողեց Անտիոքը։ Թանքրետը արշավանքներ կազմակերպեց մահմեդականների և հայկական Կիլիկիայի դեմ։ Երբ 1108-ին Եդեսիայի կոմս Բալդուին դը Բուրգը ազատ արձակվեց, Թանքրետը դժվարությամբ զիջեց նրան Եդեսիան։ Մեռավ 1112 թվականին։

Քասունի, Կիլիկիոյ հայկական իշխանապետութիւնը, 127—129։

272. Արաբ պատմիչները հայ իշխան Գող Վասիլին կոչում են كوغ باسيل (Քուղ Բասիլ), իսկ այստեղ ղ տառը ընկած լինելով դարձել է Քովասիլ։ Այս ձևը կա նաև լատին պատմիչների մոտ Covasilius (Աճառյան, Անձնանունների բառարան, Ե, 55)։ Կոչվում է նաև Վասիլ հայ (باسيل الارمني)։ Կամսարական ցեղից մեծ իշխան էր, տիրեց Քեսունի և Մարաշի կողմերում։ Ժամանակակից էր Ռուբեն Ա իշխանապետին։ Ընդհարումներ ունեցավ դրացի ամիրայությունների և խաչակիրների հետ։ Մեռավ 1112-ին։

Քասունի, Կիլիկիոյ հայկական իշխանապետութիւնը, էջ 77—78, 114—116։

273. Սուքման ալ-Կութբին պատկանում էր սելջուկյան ամիրայական տոհմին, որն իշխում էր Խլաթում և Հարավային Հայաստանում 1110—1207/8։ Սուքմանից հետո ժառանգաբար իշխեցին նրա հետնորդները, կրելով Շահ Արմեն (թագավոր հայոց) տիտղոսը։

Հ. Թուրշյան, Շահ ի Արմեններ, ՊԲՀ, 1969, 4, էջ 117—133։

274. Հայերը Ասկալոնում հաճախ են հիշատակվում արաբական աղբյուրներում։ Այստեղ կառավարիչ էր եղել Բադր ալ-Ջամալին, բայց տեղի բնակչությունը թշնամական վերաբերմունք է ունեցել նրա դեմ։

Մսըրլյան. *Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ*, էջ 23։

*275. Փարսախ (فرسخ) իրանական փոխառություն է արաբերենում։ Սա մի պարսկական երկարության չափ է, որը հավասար է ձիու մեկ օրվա քայլելով անցած ճանապարհին։ Արաբական փարսախը հավասար էր 3 արաբական մղոնի։*

*276. Կիրճերի տեր հայազգի Վասիլը (Բասիլ ալ-Արմանի) և 508 հիջրի (1114—1115) թվականին հիշատակված Գող Վասիլը (Կուվասիլ) գուցե նույն անձնավորությունն են։ Կարելի է նաև ենթադրել, որ նրանցից մեկը Գող Վասիլն է, մյուսը նրա որդեգիր և հաջորդ Տղա Վասիլը։*

Քասունի. *Կիլիկիոյ Հայկական իշխանապետութիւնը*, էջ 138—140։

*277. Կարծվում է, որ պետք է լինի* Sire Roger-Receuil des Historiens des Croisades, p. 287.

*278. Իբն ալ-Ասիրի մեր օգտագործած և եվրոպական (Թորնբերգի) հրատարակությունների մեջ «Հայոց թագավորներից մեկը» կապակցության փոխարեն կան հետևյալ խոսքերը. «ֆրանկ ավազակներից մեկը»։ Մենք թարգմանել ենք խաչակիրների մասին արաբական աղբյուրների ժողովածուից, որտեղ տրված է արաբերեն բնագիրը ըստ այլ ձեռագրի։*

Receuil des historiens des Croisades, p. 293.

*279. Ակսունկուր ալ-Բուրսուկին սելջուկյան սուլթան Մուհամմադի կողմից (1105—1118) ուղարկվել էր Մոսուլ որպես կառավարիչ։ Սակայն տեղ հասնելով տեսավ, որ այնտեղ հաստատվել էր Իմադ ալ-Դին Զանգի իբն Ակսունկուրը (հետագայում աթաբեկ) և շարունակեց ճանապարհը, իրեն հպատակեցրեց Մարդինի տեր Արտուխյան Իլղազիին և պաշարեց Եդեսիան, սակայն անհաջող։*

*Բосворт*, Мусульманские династии. стр. 169—170.

*280. Քուրջ (الكرج) կամ ջուրզ (الجرز) նշանակում են վրացիներ (հոգնակի)։ Սակայն պետք է հատկապես զգուշացնել, որ այդ բառերը (մանավանդ քուրջը) հավաքական իմաստով են օգտագործված Իբն ալ-Ասիրի մոտ։ Քուրջ են կոչվում ոչ միայն Վրաստանը, նրա ժողովուրդը և թագավորները, այլև Հյուսիսային Հայաստանը, նրա հայ ազգաբնակչությունը և Զաքարյան իշխանապետության բոլոր հայ զորավարներն ու ռազմիկները։*

*Որոշ ժամանակաշրջանի համար (ԺԲ դարի վերջ և ԺԳ դարի առաջին տասնամյակներ) Իբն ալ-Ասիրը Հայաստան (Արմինիա) ասելով հասկանում է միայն Խլաթի Շահ-Արմէնների ամիրությունը։*

*Ա.ա այս պատճառով վրացի բառի կողքին արաբական ձևը (քուրջ) թողել ենք փակագծերի մեջ։ Հաճախ Զաքարյանների հայկական գնդերի հարձակումները և պայքարը Հայաստանի մահմեդականների դեմ որակվում են քուրջերի հարձակում Հայաստանի ժողովրդի դեմ։*

*281. Դուբայս իբն Սադական կենտրոնական Իրաքի Մազիադիներից էր։ Իշխել է 1108—1135 թվականներին։*

*282. Սուլթան Մահմուդը (1118—1131) այսպես կոչված Իրաքի սուլթանների ճյուղից էր, որոնք իշխել են Իրաքում և Արևմտյան Իրանում։*

*283. Հիլլա (حلة) նշանակում է կայան։ Քաղաք է Բաղդադի նահանգում։ Հիմնվել է 1101—1102 թվականներին որպես ցեղային կայան և Մազիադիների ամիրության մայրաքաղաքն էր։*

*284. Արտուխյանների (ارتق) թուրքմենական տոհմը (1101—1312) ուներ մի քանի ճյուղ՝ Հիսն Քայֆա, Մարդին և Խարբերդ քաղաքներում։ Հիսն Քայֆայի ճյուղը*

*իշխեց 1101—1232 թվականներին, իսկ Մարդինի ճյուղը՝ 1104—1408։ Նրանք ուժեղ պայքար մղեցին Եդեսիայի կոմսության դեմ։*

*285. Խարբերդում իշխում էր Արտուխյանների (Ուրտուկյանների) մի ճյուղը հիջրի 515 (1121—1122) թվականից մինչև հիջրի 631 (1233—1234), երբ քաղաքն անցավ Իկոնիայի սելջուկ սուլթան Քայ Կուբադ Ա-ին։*

*286. Զանգի հարստության (1127—1222) հիմնադիր Աթաբեկ Իմադ ալ-Դին Զանգիի (1127—1146) հայրը սելջուկ Մելիքշահ սուլթանի ստրուկներից էր։ Նա հիմնեց մի պետություն, որի սահմանների մեջ էին Մոսուլը, Խառանը, Հալեբը։ Շուտով նա դարձավ Միջագետքի ու Ասորիքի ամենահզոր տիրակալը և պայքար սկսեց խաչակիրների դեմ, որի առաջին զոհը դարձավ Եդեսիայի կոմսությունը։ 1144-ին, չորս շաբաթվա պաշարումից հետո, նա Ջոսլին Բ-ի ձեռքից գրավեց Եդեսիան։*

*Զանգիին հաջորդեց որդին՝ Նուր ալ-Դին Մուհամմադը, որի նստավայրը Հալեբն էր։ 1151-ին ավարտեց Եդեսիայի կոմսության նվաճումը՝ գերի վերցնելով Ջոսլին Բ-ին։ 1154-ին գրավեց Դամասկոսը, իսկ ապա նաև Անտիոքի իշխանության մի մասը։*

*Զանգիների պայքարը խաչակրաց դեմ շարունակեցին նրանց զորավար Շիրքուհի եղբորից սերող Այյուբյանները, որոնք տիրանալով Եգիպտոսին, իրենց սլաքն ուղղեցին Երուսաղեմի թագավորության դեմ։*

*287. Վահրամ Պահլավունին Եգիպտոսի Ֆաթիմյան խալիֆաների միակ հայ վեզիրն էր, որը չէր ուրացել իր ժողովրդի քրիստոնեական հավատը։ Նա Ներսես Շնորհալու հորեղբայրն էր։ Եղավ Հաֆիզ խալիֆայի (1131—1149) վեզիրը, հեռացվեց, սակայն խալիֆայի կողմից նորից հրավիրվեց։ Նրա մասին մանրամասն տե՛ս*

**Մսրլյան,** *Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, էջ 64—86։*

*M. Canard*, Un vizir chretien a l'epoque fatimide, l'Armenien Bahram. Ann. de l'Inst. des Et. Or., Alger, XII, 1954.

*288. Հովհան Բ Կոմնենոս (1118—1143) կայսրը արշավանք կատարեց Կիլիկիա և Ռուբինյան Լևոն իշխանապետից գրավեց Տարսոն, Ադանա և այլ քաղաքներ։ 1137-ին նա պաշարեց Անտիոքը և Բոհեմունդ (Պեմունտ) իշխանն ընդունեց նրա գերիշխանությունը։ Կայսրր Ասորիքում նոր հաջողություններ ունեցավ, սակայն շուտով Նուր ալ-Դին Աթաբեկը կարողացավ նրան ետ մղել, իսկ Կիլիկիայում Լևոնի որդի Թորոսը վերականգնեց հայկական անկախ իշխանապետությունը։*

История Византии, II, стр. 321—322.

*Г. Микаелян,* История киликийского армянского царства, стр. 107—111.

*289. Դանիշմանդյան տոհմը հանդես եկավ սելջուկյան պետության քայքայման շրջանում և իշխում էր Սեբաստիայում, Կեսարիայում և Մելիտինեում։ Կարծվում է, որ այս տոհմի հիմնադիր Դանիշմանդը մահմեդականությունն ընդունած Հրահատ Լիպարիտյանն է։ Նրանց հողերի վրա մեծաթիվ հայ ազգաբնակչություն կար, որը հավաքվել էր մանավանդ ԺԱ դարում, երբ Սենեքերիմ Արծրունին իր հետևորդների հետ գաղթել էր Սեբաստիա, Գագիկ Բ Բագրատունի թագավորը՝ Պիզու, իսկ Կարսի Գագիկ Բագրատունին՝ Ծամնդավ։*

*Դանիշմանդյանները բախվեցին խաչակիրների հետ, սակայն նրանց գլխավոր թշնամին Իկոնիայի սուլթաններն էին, որոնք, ի վերջո, 1180-ին տիրեցին նրանց բոլոր հողերին։*

*290. Իկոնիայի պետությունը արաբ պատմիչների մոտ կոչվում է Ռումի (Բյուզանդիային տրվող Ռում՝ հռոմ բառից) սուլթանություն։ Առաջացավ ԺԱ դ. վերջում սելջուկյան պետության քայքայմանը զուգընթաց։ Աստիճանաբար ծավալվեց, նախ 1157-ին գրավելով Դանիշմանդյանների որոշ հողեր (Փոքր Հայքում), 1207-ին Անթալիան և այլն։*

Ալա ալ-Դին Քայ Կուբադի օրոք (1219—1236) հզորության գագաթնակետին հասավ։ Նրա քաղաքներն էին Իկոնիան, Կեսարիան, Սեբաստիան և այլն։ Մոնղոլական արշավանքներից (1243) հետո դարձավ Իրանի Հուլավյան իլխանության ենթակա, իսկ 1307-ին մանր միավորների տրոհվեց։

291. Շիհնա՝ ( شحنة ) քաղաքի կարգապահության վերակացուն և կամ ոստիկանապետը միջնադարյան մահմեդական հասարակության մեջ։

292. Ջոսլին Բ ( جوسلين ) Եդեսիայի վերջին կոմսն էր, որը կոմսության անկումից հետո ապաստանել էր Քեսուն և այլ մերձեփրատյան կողմեր։

293. Արզան ալ-Ռումի (Կարին, Էրզրում) ամիրությունը կազմավորվեց սելջուկյան պետության տրոհումից հետո։ Տեղի Սալդուկյան ամիրները պատերազմներ են մղել հայ-վրացական զորքերի դեմ, դաշնակցելով Խլաթի տերերի հետ։ Որոշ ժամանակ հարկատու էինի վրաց Բագրատունի թագավորներին։ ԺԲ դարի վերջերին այս ամիրությունը ընկնում է Իկոնիայի սուլթանության տիրապետության տակ։

294. Անիում տեղի ունեցած 1155 թվականի ապստամբությունը հիշատակում է նաև ԺԲ դարի արաբ պատմիչ Իբն ալ-Ազրակ ալ-Ֆարիկին, որը գրեթե նույն խոսքերով է նկարագրում. «քահանաները ապստամբեցին Անիում և այն գրավեցին Ֆախր ալ-Դին Շադդադ իբն Մահմուդ իբն Մինուչիհրի ձեռքից, ու քաղաքը հանձնվեց նրա եղբորը՝ Ֆադլունին»։

«Միջին և Մերձավոր արևելքի երկրներ ու ժողովուրդներ», Արաբական երկրներ, Երևան, 1974, էջ 201։

Minorsky, Studies in Caucasian History, p. 87—88.

295. Ելտկուզյանները (իլտիգիզյաններ) իշխում էին Ատրպատականում և Հյուսիսային Իրանում (1136—1225)։ Հիմնադիրն էր Շամս ալ-Դին Իլդիգիզը (Ելտկուզ), որը ծագումով թյուրք ստրուկ էր։ Նրա որդի Փահլավանի օրոք (1174—1186) մայրաքաղաք դարձավ Համադանը։ Բուն Ատրպատականում իշխում էր նրա եղբայր Ղզըլ Արսլանը, որը պայքարում էր սելջուկների, Վրաստանի ու Շիրվանի դեմ։ Մոնղոլների առաջին արշավանքները և մանավանդ Ջալալ ալ-Դինի արշավանքը վերջ տվեցին Ելտկուզյանների իշխանությանը։

296. Ինանչը Ռեյի սելջուկ տիրակալն էր։

297. Սուլթան Արսլան Շահը Իրաքի և Արևմտյան Իրանի սելջուկ սուլթանն էր (1161—1176)։

Босворт, Мусульманские династии, стр. 162.

298. Ռուզզիկների ընտանիքը հայտնի է Եգիպտոսի պատմության Ֆաթիմյան շրջանում։ Թալաի իբն Ռուզզիկը եղել է վեզիր Ադիդ խալիֆայի օրոք (1160—1171) և հայտնի բանաստեղծ։ Նրանից հետո վեզիր եղավ նաև որդին՝ Ռուզզիկը։ Սրանք մահմեդականություն ընդունած հայեր էին։

Մուրյան, Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, էջ ծ6—98։

299. Բնագրում գրված է Առան ( اران ), որը գրչական սխալ է. պետք է լինի Արման ( ارمن ), այսինքն Հայաստան։

300. Անին գրավվեց Գեորգի Գ-ի (1155—1184) կողմից 1161-ին և կառավարչի պաշտոնը հանձնվեց նախ Սադուն Արծրունուն և ապա Սարգիս իշխան Զաքարյանին, սակայն չորս տարի անց քաղաքը վերադարձվեց Շադդադյաններին։

Մանանդյան, Քննական տեսություն, Գ, էջ 112—113։

Minorsky, Studies in Caucasian History, p. 90—100.

301. Իբն ալ-Ասիրը հակիրճ է նկարագրում այս դեպքերը, սակայն նրան նախոր-

*փող ԺԲ դարի արաբ պատմիչ Իբն ալ-Ազրակ ալ-Ֆարիկին (Նփրկերտցի) ավելի ման. րամասն է նկարագրում։*

*Տե՛ս* Ա. Տեր-Ղևոնդյան, *Ֆարիկիի «Նփրկերտի պատմությունը» (ԺԲ դար) Հյուսիսային Հայաստանի դեպքերի մասին։ «Մերձավոր և Միջին արևելքի երկրներ և ժողովուրդներ», Զ, Արաբական երկրներ, Երևան, 1974, էջ 201—204։*

*302. Դուբին (دبيس) ձևը արաբ պատմիչները գործածում են ԺԲ—ԺԳ դարերի դեպքերը նկարագրելիս։ Իսկ Է—ԺԱ դարերի պատմիչների մոտ միշտ օգտագործվում է միայն Դաբիլ ձևը։*

*303. Իզզ ալ-Դին Կիլիչ (Ղլըճ) Արսլանը իշխել է 1156—1192 թվականներին։*

*304. Միլլատ ( ملة ) նշանակում է կրոն, ծես, համայնք, ազգ։ Ղուրանում օգտագործվում է համայնքի իմաստով։ Աստիճանաբար այս բառը արդեն օգտագործվում է ընդհանրապես կրոնական առանձին համայնքի իմաստով, մանավանդ ուշ միջնադարում։*

*F. Buhl*, Milla, Shorter Enc. of Islam, p. 380.

*305. Հայ պատմիչները համակրանքով չեն արտահայտվում Կիլիկիայի իշխանապետ Մլեհի մասին, իսկ Իբն ալ-Ասիրը կասկածանքով է խոսում։ Միջնադարյան մտայնությամբ հայ քրիստոնյա իշխանի զինակցությունը մահմեդականի հետ խորթ երևույթ էր համարվում թե՛ հայ, թե՛ արաբ պատմիչների համար։*

*Մլեհի քաղաքականությունը ուշագրավ երևույթ է հայ ժողովրդի պատմության մեջ. Լեզու գտնելով արևելյան մահմեդական դրացիների հետ, նա կարողացավ ոչ միայն գիմադրել Բյուզանդիայի և խաչակիրների նենգ դավերին, այլև գրավել դաշտային Կիլիկիայի շատ քաղաքներ, որոնք կենսական նշանակություն ունեին հայկական պետականության ամրապնդման համար։*

*306. Լևոն Բ (1187—1219) հայ պատմագրության մեջ իրավամբ կոչվում է Մեծագործ։ Հաղթեց Իկոնիայի սուլթանին և Հալեբի տիրոջը։ 1198-ին մեծ հանդիսավորությամբ օծվեց թագավոր Հայոց։ Հաջող պատերազմներ մղեց Արևելքի լատին իշխանությունների դեմ։ Լինելով մեծ դիվանագետ և քաղաքականագետ, նա ամրապնդեց Հայոց թագավորությունը և այն հասցրեց տնտեսական ու մշակութային զարգացման բարձր աստիճանի։*

*Լևոն Մեծագործն իր ժամանակի մեծագույն քաղաքական դեմքերից էր։*

Ղ. Ալիշան, *Սիսուան, Վենետիկ, 1885։*

*Микаелян*, История киликийского армянского государства, 150—176.

*307. Յուսուֆ իբն Այյուբ իբն Շադին (1138—1193), որը կրում էր Սալահ ալ-Դին պատվանունը, քրդական ծագում ուներ։ Նրա պապը Դվինի մոտ գտնվող մի գյուղից էր։ Նրա հայրը, ինչպես նաև ինքը Հալեբի տիրակալ Նուր ալ-Դինի զորավարներից էին։ 1169-ին դարձավ Եգիպտոսի Ֆաթիմյան պետության վեզիր, 1171-ին գրավեց իշխանությունը, իսկ 1174-ին, Նուր ալ-Դինի մահվանից հետո, տիրացավ նրա հողերին։ 1187-ին Հիթթինի ճակատամարտում հաղթեց Երուսաղեմի թագավորությանը, գրավեց Երուսաղեմը, որից հետո խաչակիրների ձեռքում մնացին Պաղեստինի մերձափնյա քաղաքները։ Սալահ ալ-Դինը ձգտում էր նաև ներխուժել Կիլիկիա, բայց հաջողություն չունեցավ։*

*308. Բնագրում թեև գրված է Թուանա (طوانة), սակայն դա անհավանական է, քանի որ Թուանա (Տիանա) քաղաքը Փոքր Ասիայում է գտնվում։ Ըստ երևույթին դա պետք է լինի طيطوانة (Թայթուանա), այսինքն Դատվան (Վանա լճի ափին գտնվող քաղաք)։*

*309. Յազաք (يزك) թուրքերեն նշանակում է առաջապահ զորք, ինչպես նաև լրտես։*

*Minorsky*, Studies in Caucasian History, p. 81, n. 1.

*310. Մահմեդական պատմագրությունը ընդհանրապես օգտագործում է լուսնային ամիսները՝ Մուհառամ, Սաֆար, Ռաբի Ա, Ռաբի Բ, Ջումադա Ա, Ջումադա Բ, Ռաջաբ, Շաաբան, Ռամադան, Շավվալ, Ջու-լ-Կադա և Ջու-լ-Հիջջա։ Սրանցից ամեն մեկն ունի 29 կամ 30 օր.*

*Սեմական ժողովուրդներն ունեն նաև արեգակնային ամիսներ՝ Քանուն Բ (հունվար), Շուբաթ (փետրվար), Ազար (մարտ), Նիսան (ապրիլ), Այյար (մայիս), Հազիրան (հունիս), Տամմուզ (հուլիս), Աբ (օգոստոս), Այլուլ (սեպտեմբեր), Տիշրին Ա (հոկտեմբեր), Տիշրին Բ (նոյեմբեր) և Քանուն Ա (դեկտեմբեր)։*

*311. Խաչակրաց Գ արշավանքը ծագեց որպես հետևանք 1187 թվականին Սալահ ալ-Դինի կողմից Երուսաղեմի գրավմանը։ Գերմանիայի կայսր Ֆրիդրիխ (Փրեդերիկոս) Շիկամորուսը, Ֆրանսիայի թագավոր Փիլիպպոս Օգոստոսը և Անգլիայի թագավոր Ռիկարդոս (Ռիչարդ) Առյուծասիրտը կազմակերպեցին այս արշավանքը (1189—1192)։ Ըստ էության շոշափելի որևէ նվաճում չունեցան խաչակիրները։ Միակ արդյունքը Կիպրոսի նվաճումն էր Բյուզանդիայի ձեռքից և Լուսինյանների լատին թագավորության հիմնումը։*

*Hitti*, History of the Arabs, p. 648—652.

*312. Անտիոքի իշխանությունը հիմնվեց 1098-ին։ Խաչակիրները քաղաքը գրավեցին սելջուկ կառավարիչ Յաղի Սիյանի ձեռքից, ուժ ամսվա պաշարումից հետո։ Քաղաքի անկմանը նպաստեցին նրա աշտարակներից մեկի պաշտպան հայ ռազմիկները, որոնք խաչակիրների կողմն անցան։ Քաղաքը գրավեց Բոհեմունդը (Պեմունտ, Հարավային Իտալիայի Նորմանական տոհմից), որն իշխանության հիմնադիրը դարձավ (1099—1104)։*

*1137-ին Բյուզանդիայի Հովհան Կոմնենոս կայսրը Կիլիկիայի հետ մեկտեղ ժամանակավորապես նվաճեց նաև Անտիոքը, սակայն շուտով վերականգնվեց թե՛ Կիլիկիայի, թե՛ Անտիոքի անկախությունը։ Անտիոքի իշխանությունը սերտ հարաբերության մեջ էր Կիլիկիայի հետ, որին մի ժամանակ ենթակա դարձավ։*

*ԺԳ դարում խիստ թուլացավ Անտիոքի իշխանությունը, իսկ 1268-ին եգիպտոսի մամլուք սուլթան Բայբարսը նվաճեց Անտիոքը։*

*313. Ալ-Մալիք ալ-Ադիլը Սալահ ալ-Դինի եղբայրն էր։ Իշխել է Հալեբում (1183-ից), Դամասկոսում (1196-ից), իսկ Եգիպտոսում (1200—1218)՝ որպես Այյուբյան տոհմի գլխավոր ճյուղի ներկայացուցիչ։*

*Босворт*, Мусульманские династии, стр. 94—95.

*314. Սուֆի (صوفى) նշանակում է բարեպաշտ բրդազգեստ անապատական։ Սուֆիների միաբանություններ կային մահմեդական շատ երկրներում։*

*L. Massignon*, Tasawwuf, Shorter Enc. of Islam, p. 578—582.

*315. Դվինը Հայոց թագավորության թուլացումից (այսինքն Գագիկ Ա-ի մահվանից՝ 1020-ին) մինչև 1203 թվականը ձեռքից-ձեռք էր անցնում։ Նախ այնտեղ իշխում էին Շադդադյանները (1022—1130), ապա քաղաքին տիրացան պատահական անձնավորություններ։ Վերջապես Դվինը ազատագրեցին հայ-վրացական զորքերը (1162—1163), սակայն շուտով քաղաքն ընկավ ելտկուզյանների ձեռքը (1163—1203)։*

*1203-ին ազատագրվելուց հետո Դվինը դարձավ Զաքարյան իշխանապետության կարևորագույն քաղաքներից մեկը, մնալով Իվանեի տիրույթներում։ Ինչպես Իբն ալ-Ասիրի այս վկայությունից պարզվում է, Դվինի իշխանը ընդհարումների մեջ էր Սուրմալուի ամիրի հետ։*

Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները, էջ 263—264։*

316. Վրաց Բագրատունիների հզորացումը և հայկական ու վրացական զնգերի պայքարը Հայաստանի ազատագրման համար մահմեդական պատմիչի կողմից դիտվում է որպես «ոտնձգություն» մահմեդական հողերի նկատմամբ և մեծ դժբախտություն Հայաստանում հաստատված մահմեդական ազգաբնակչության համար։

Ինչպես արդեն ասվեց, արաբ պատմիչի մոտ Զաքարյան իշխանապետությունը և հայկական զինված ուժերն իրենց անունով չեն կոչվում, այլ «քուրջ» անվան տակ միացվում են վրացիների հետ։ Հյուսիսային Հայաստանը, որն ինքնուրույն իշխանապետություն էր, վճռական դեր խաղաց ամիրայությունների դեմ պայքարում։ Հայկական զորքերը Զաքարե ամիրսպասալարի գլխավորությամբ ջախջախիչ հարված հասցրեցին հայկական հողերը խլած օտար ուժերին։

Մանանդյան, Քննական տեսություն, Գ, էջ 133—145։

317. Ռաբադը ربض միջնադարյան քաղաքի կենտրոնական մասից (Մադինա) (مدينة) դուրս ընկած բաժինն է, արվարձանը։ Երբեմն ռաբադը հատուկ անուն էր դառնում։

318. Փոքր Զաքարեն մեծ Զաքարե ամիրսպասալարի եղբոր՝ Վահրամի, որդին էր։

Մանանդյան, Քննական տեսություն, Գ, էջ 136, ծան. 1։

319. Իսմայիլականները շիայական ճյուղի մի հոսանքն են ներկայացնում, որ հանդես եկավ Թ—Ժ դարերում։ ԺԱ դարում երևան եկան Ասասինները, որոնք ունեին իրենց գաղտնի կազմակերպությունը։ Սրանց ահաբեկիչները սպանեցին շատ քաղաքական գործիչների (Նիզամ ալ-Մուլք և այլն)։ Հուլավու (Հուլաղու) խանը 1256-ին գրավեց նրանց գլխավոր ամրոց Ալամութը և խեղդեց այս շարժումը։

История стран зарубежной Азии, стр. 338—339.

320. Բնագրում Իբն ալ-Ասիրը դրել է՝ անդամ, որը փոխարինել ենք լատիներեն penis բառով։

321. Այդ տարիներին իշխել են Իկոնիայի (Ռում) հետևյալ սելջուկյան տիրակալները՝ Ղիյաս ալ-Դին Քեյ Խոսրով (1192—1196) Ռուքն ալ-Դին Սուլայման (1196—1204), Իզզ ալ-Դին Ղլըճ Արսլան (1204—1205), Քեյ Խոսրով, կրկին (1205—1210), Իզզ ալ-Դին Քեյ Քաուս (1210—1219), Ալա ալ-Դին Քեյ Կուբադ (1219—1236)։

322. Բնագրում կա Անթաքիա (Անտիոք), որը գրչական աղավաղում է։ Ըստ պատմիչի Ղիյաս ալ-Դին Քեյ Խոսրովը Իկոնիայից է հարձակվում այդ քաղաքի վրա, որն Անթալիան (Ատտալիա) է, Կիլիկիայից արևմուտք։ Այդ ժամանակ Բյուզանդիան քայքայված վիճակում էր, խաչակրաց Դ արշավանքը վերջացել էր՝ Կ. Պոլսի և կայսրության մեծ մասի գրավումով ու լատինական կայսրության հաստատմամբ (1204)։ Իսկ նույն ժամանակ կազմավորված բյուզանդական Նիկիայի կայսրությունը խիստ թույլ էր։

323. Մահմեդական պատմիչը միաստվածյան է համարում միայն մահմեդականներին, իսկ քրիստոնյաները, քանի որ դավանում էին Հայրը, որդին և ս. հոգին, ըստ նրա բազմաստվածյաններ են։

324. Այուբյանները Վերին Միջագետքը (Ջազիրա) նվաճելուց հետո մտան նաև Հարավային Հայաստան և գրավեցին Խլաթը։ 1207/1208 թվականին Սալահ ալ-Դինի եղբոր՝ Ադիլի. որդին՝ Աուհադը, դարձավ Շահ Արմեն (թագավոր Հայոց)։ Աուհադին հաջորդեց եղբայրը՝ Մելիք Աշրաֆը, որն ամուսնացել էր Իվանեի դստեր՝ Թամթայի հետ։

325. ԺԲ—ԺԳ դարերում արաբ պատմիչները Հայաստան (Արմինիա) էին կոչում միայն Հարավային Հայաստանը՝ Խլաթի Շահ-Արմենների ամիրությունը։ Հայաստանի տեր էին կոչվում Սուքմանյանները և ապա Այյուբյանները, որոնք Շահ Արման (թագավոր Հայոց) տիտղոսն էին կրում.

*326. Խոսելով հիշյալ թվականների դեպքերի մասին, հեղինակն ակնարկում է խաչակրաց հինգերորդ արշավանքը (1217—1221)։ Եգիպտոսի Այյուբյան ալ-Քամիլ (1218—1238) սուլթանի իշխանության գլուխ անցնելու նախօրեին խաչակիրները ցամաք էին դուրս եկել Դամիեթ (Դիմիաթ) քաղաքի մոտ, Եգիպտոսի հյուսիսարևելյան ափին և գրավել այն։ Այս արշավանքի մեջ կարևոր դեր էին խաղում իտալական քաղաք-հանրապետությունները, որոնց նպատակն էր Եգիպտոսի նվաճման միջոցով իրենց ձեռքը վերցնել Միջերկրականից Հնդկաց օվկիանոս ընթացող ծովային առևտրական ուղին։ Երկու տարի (1219—1221) կռվելուց հետո, Քամիլը կարողացավ խաչակիրներին ետ մղել Դամիեթից։*

*327. Ջանգի անվան տակ պատմիչը նկատի ունի նույնանուն տոհմի վերջին ներկայացուցիչ Նասիր ալ-Դին Մահմուդին (1219—1222)։ Հիշյալ Բադր ալ-Դինը աչք ուներ նրա կալվածներին և ահա վերջինիս մահվանից անմիջապես հետո վերջ տվեց այս տոհմի տիրապետությանը, գրավելով Մոսուլը և բոլոր տիրույթները։ Նա իշխեց մինչև 1259 թ.։*

*Босворт*, Мусульманские династии, стр. 170.

*328. Թաթարները կամ մոնղոլները առաջին հարձակումը գործեցին Խորեզմշահերի պետության վրա 1219-ին։ Մուհամմադ Խորեզմշահը պարտություն կրեց, իսկ Բուխարա և Սամարկանդ քաղաքները 1220-ին բացին իրենց դռները բարբարոս հրոսակների առջև։*

*Խորեզմշահի մահը և նրա պետության քայքայումը ճանապարհը բացին մոնղոլների առջև, որոնք 20—30-ական թվականներին նվաճեցին Իրանը, հասան Հայաստան։ Հյուսիսային Հայաստանը նրանք նվաճեցին 1236-ին, իսկ Հարավային Հայաստանը՝ 1242-ին։ Նվաճումներից հետո կազմվեց Հուլավյանների պետությունը (1256—1335), որի կազմում էր նաև Հայաստանը։*

*Մոնղոլների պատճառած աննկարագրելի վնասների մասին խոսում են թե՛ հայ, թե՛ արաբ պատմիչները։ Նրանք ճակատագրական հարված հասցրին արևելյան քաղաքակիրթ երկրներին և այդ շրջանից արդեն զարգացած միջնադարին հաջորդում է ավատատիրական կարգերի քայքայումը, տնտեսության ու մշակույթի անկումը թե՛ Հայաստանում, թե՛ դրացի երկրներում։*

*329. Թաթար-վրացական ճակատամարտը, ըստ Մանանդյանի, տեղի է ունեցել մոտավորապես 1220-ի հունվար ամսին։ Ըստ հայկական աղբյուրների, երկու բանակները բախվեցին Կոտման գետի ափին, որն ըստ Մանանդյանի, Տավուշ (Թուուղ) գետն է։*

Մանանդյան, *Քննական տեսություն*, Գ, էջ 183։

*330. Քիլքուն (کیلکون) տեղանունը հավանաբար Գեղարքունիք (Գեղաքունիք) պետք է լինի։*

*Գանձակի ամիրը ղփչաղներին օգտագործում էր Վրաստանի հետ ունեցած ընդհարումների ժամանակ։*

Մանանդյան, *Քննական տեսություն*, Գ, էջ 183։

*331. Խոսքը վերաբերում է Վրաց Ռուսուդան թագուհու (1223—1247)՝ Կարնո Սալդուխյան ամիր Մուղիս ալ-Դինի հետ ամուսնությանը, որի մասին պատմում է նաև Վրաց Տարեգրությունը։ Բացի Իբն ալ-Ասիրից, այս զրույցը հաղորդում են նաև արաբ պատմիչներ Աբու-լ-Ֆիդան (ԺԴ դար) և Աբու-լ-Մահասին Իբն Տաղրիբիրդին (ԺԵ դար)։ Ըստ Մ. Կանարի մահմեդական միջնադարում այս չափազանցված զրույցը պատմվել է նույնիսկ Եգիպտոսում և այլ անուններով մտել է արաբական «Ջատ ալ-Հիմմա» վեպի զրույցների մեջ։*

Histoire de la Georgie, trad. par M. Brosset, S. Petersbourg, 1849, I, p. 501.

*M. Canard*, Les reines de la Géorgie dans l'histoire et la légende musulmanes, Extrait de la „Revue des études islamiques", Paris, 1969, p. 11—18.

332. Մուհամմադ Խորեզմշահի որդի Ջալալ ալ-Դինը (1221—1231) մոնղոլների երևան գալու ժամանակ արշավեց արևմուտք։ Ամենաբարբարոս և դաժան կերպով ասպատակեց ու ավերեց Առաջավոր Ասիայի բազում երկրներ, որոնց մեջ նաև Հայաստանը։ Սակայն Իբն ալ-Ասիրը, որպես մոլեռանդ մահմեդական, թեև հիշում է նրա չարագործությունները, այսուհանդերձ, երբ պատմում է քրիստոնյաների (հայերի ու վրացիների) դեմ տարած նրա հաղթանակների մասին, փառաբանում է նրան որպես իսլամի պաշտպան։

Այդպես չէ սակայն նրա եղբոր Դիա ալ-Դին Իբն ալ-Ասիրի վերաբերմունքը չարագործի նկատմամբ։ Լինելով վեզիր (մի քանի երկրներում), նա ի հայտ է բերում պետական գործչի ողջախոհություն և իր նորահայտ նամակներում Ջալալ ալ-Դինին գնահատում է որպես չարագործ, իսկ նրա խորեզմյան զորքը որպես իսկական չարիք իր մտած երկրների համար։ Դիա ալ-Դինը նամակագրական կապի մեջ լինելով Խլաթի Շահ Արմենների, Այյուբյան տարբեր տիրակալների և այլոց հետ, ձգտում է կազմակերպել համատեղ պայքարը արյունարբու բարբարոսների դեմ և իրոք Շահ Արմենների և Իկոնիայի սուլթանության համատեղ ուժերը ջախջախեցին նրանց։

Իբն ալ-Ասիրի նամակները (Ռասաիլ Իբն ալ-Ասիր), հրատ. Անիս ալ-Մուկադդասի, Բեյրութ, 1959, էջ 24—31 և այլ էջերում։

333. Շալուան (شلوة) հիշատակվում է նաև Կիրակոս Գանձակեցու մոտ (Շալուէ)։ Գառնիի մոտ կրած այս պարտության մեջ հայ-վրացական զորքերը մեծ զոհեր տվեցին։

Կիրակոս Գանձակեցի, էջ 163, 225։

Ստեփանոս Օրբելեան, 1911, էջ 399։

334. Սարգիս Զաքարյանի որդիներ Զաքարեն ու Իվանեն կազմակերպեցին հայկական ուժերը և կարողացան ազատագրել հյուսիսային Հայաստանը, հիմնելով մի ուժեղ իշխանապետություն, որը դաշնակցային հարաբերության մեջ էր վրաց Բագրատունիների հետ։

Զաքարեն մեռավ 1212-ին, իսկ Իվանեն՝ 1227-ին։

335. Ռաիս (رئيس) նշանակում է պետ։ Որոշ քաղաքներում այս կամ այն համայնքի պետը նույնպես կոչվում էր ռաիս։ Օրինակ, այսպես էր կոչվում Բաղդադում պարսիկների պետը։

*Мец*, Мусульманский Ренессанс, стр. 326.

336. Թալակ (طلاق) նշանակում է ապահարզան։ Ըստ մահմեդական իրավագիտության տղամարդը կարող է բանավոր խոսքով ապահարզան տալ իր կնոջը և դա բավական է ամուսնալուծման համար։

337. Մահմեդականության նշանաբանն է «ալլահ աքբար» (մեծ է ալլահը), որը սրբազան կրոնական պատերազմի (ջիհադ) կարգախոսն է այլակրոնների դեմ կռվելիս։

338. Վկայությունը (شهادة) այն խոսքերն են, որ ամեն մի մահմեդական պետք է կրկնի «չկա աստված բացի ալլահից և Մուհամմադը նրա մարգարեն է»։

339. Ջմշկածագը (شمشكادزك) գտնվում էր Մեծ Հայքի Ծոփք նահանգում և հեթանոսության շրջանում այնտեղ եղել է Հերապոլիս սրբավայրը։ Ջմշկածագ անունը քաղաքին տրվել է Բյուզանդիայի Հովհան Ջմշկիկ (969—976) կայսրից հետո, որպես նրա ծննդավայրը։ Այս տեղանունը նույն ձևով հիշատակում է նաև ԺԳ դարի արաբ աշխարհագրագետ Յակուտ ալ-Համավին։

*Jacut's* Geographisches Wörterbuch, III, S. 320

340. *Բրինս (برنس) պրինց, իշխան։ Ինչպես Եդեսիայի կոմսի համար պատմիչն օգտագործում է կումս ձևը, այստեղ ևս Անտիոքի իշխանին կոչում է եվրոպական ձևով՝ բրինս։ Տվյալ դեպքում խոսքը իշխան Բոհեմունդի (Պեմունտ) մասին է։*

341. *Լևոն Մեծագործը չուներ արու զավակ։ Սկզբում նա որդեգիր ու ժառանգ էր դարձրել իր թոռանը՝ Ռուբեն Ռայմունդին (Ռեմունտ), սակայն նկատելով սրա վատ բնավորությունը, զրկել էր գահաժառանգությունից։ Լևոնի մահվանից հետո թագուհի դարձավ նրա դուստր Զապելը, իսկ Լամբրոնի տեր Կոստանդինը՝ պայլ և խնամակալ։ Ռուբեն Ռայմունդը ուզեց տիրանալ գահին, բայց բռնվեց ու սպանվեց։ Վերջապես, Զապելն ամուսնացավ Անտիոքի իշխան Բոհեմունտի որդու՝ Փիլիպպոսի հետ։ Վերջինս, սակայն, խիստ անժողովրդական դարձավ և պայլի կարգադրությամբ ձերբակալվեց։ Ահա այս է, որ առիթ ծառայեց Իբն ալ-Ասիրի հիշատակած դեպքերին։*

*Վերջապես, 1226-ին Կոստանդինր Զապելին ամուսնացրեց իր որդու՝ Հեթումի հետ, որը դարձավ Հայոց թագավոր (1226—1270)։*

*Микаелян*, История киликийского армянского государства, 291—293.

342. *Դաուիյյա (الداوية) ասորերեն աղքատ նշանակող բառի աղավաղումն է և նշանակում է տաճարական ասպետ։ Սկզբում սրանք կոչվում էին Քրիստոսի աղքատ ասպետներ։ Իսկ Ասբիտարիյյա (الاسبتارية) Hospitaller* *հյուրընկալ բառի արաբական աղավաղված ձևն է։ Դրանք կոչվում էին Ս. Հովհաննեսի ասպետներ։*

*Hitti*. History of the Arabs, p. 644, n. 3. 4.

343. *Երզնկան կամ Արզինքանը (ارزنكان) հենց Մանազկերտի պարտությունից հետո անցավ թուրքմեն Մանգուչաք (Մանգուջեք) ամիրի ձեռքը։ Սրա հետնորդները իշխում էին, բացի Երզնկայից, նաև այլ վայրերում։ Նրանք կախման մեջ էին Ռումի սուլթաններից, որոնցից Քայ Կուբադը գրավեց Երզնկան 1228-ին։*

344. *Բնագրում գրված է Անթաքիա (انطاكية), բայց պետք է լինի Անթալիա* (انطالية):

345. *Ջաբալ ջուրը (جبل جور) Ճապաղջուրն է։ Արաբերենում ջաբալ նշանակում է լեռ։*

346. *Ըստ Կիրակոս Գանձակեցու, Ջալալ ալ-Դինի դեմ կռվում, Ալա ալ-Դինի հետ, մասնակցում էին նաև Կիլիկիայի հայկական զորքերը և ֆրանկները։*

Կիրակոս Գանձակեցի. *Պատմութիւն, էջ 228։*

347. *Իբն ալ-Ասիրը այս աշխատության (Պատմություն Մոսուլի Աթաբեկների պետության) մեջ Զանգիներին և, մանավանդ, Իմադ ալ-Դին Զանգիին միշտ կոչում է նահատակ (շահիդ, վկա), քանի որ նա հանուն հավատի կռվել է խաչակիրների և ընդհանրապես քրիստոնյաների դեմ։*

*Սույն աշխատության մեջ հեղինակի կրոնական մոլեռանդությունն առավել շեշտված ձևով է հանդես գալիս։*

*Այս պատմական երկում Իբն ալ-Ասիրը մեծ մասամբ կրկնում է Լիակատար Պատմության մեջ տրված տեղեկությունները, սակայն կան նաև հետաքրքրական մանրամասնություններ։*

348. *Զանգիներն իշխեցին 1127—1222 թվականներին։ Կասիմ ալ-Դաուլա Ակսունկուրը դեռ չուներ տիրակալի իշխանություն, սակայն նրա որդին՝ Իմադ ալ-Դին Զանգին, 1127-ին դարձավ Մոսուլի անկախ տիրակալ։ Վերջինիս հաջորդեցին երկու որդիները՝ Սայֆ ալ-Դինը (1146—1149)՝ Մոսուլում և Նուր ալ-Դինը (1146—1174)՝ Հալեպում։*

349. *Բնագրում գրված է فردرس (Ֆիրդարուս), որը, ակներևորեն, فراجوس (Ֆի-*

լարդուս) ձևի աղավաղումն է, քանզի Փիլարտոս Վարաժնունին այդ ժամանակ իրոք իշխել է Անտիոքում։

**Մատթեոս Ուռհայեցի**, էջ 213—214։

**Քասունի**, Կիլիկիոյ հայկական իշխանապետութիւնը, էջ 24։

350. Կարծվում է, որ Շաբուխտանի լեռները գտնվում էին Ռաս ալ-Այնի և Խառանի միջև։

Recueil des historiens des croisades, Historiens orientaux, Paris, 1876. t. II, 2e partie, p. 33 (*ծանոթ.*)։

351. Տելլ Բաշիրը (Տալլ Բաշիր) հայկական աղբյուրներում կոչվել է Թլպաշար, գտնվել է Այնթապից հարավ-արևելք, Եփրատացիք կոչված երկրամասում։ ԺԱ դարում պատկանել է Պահլավունիներին, ապա դարի վերջում այն գրավեցին խաչակիրները և դարձավ ենթակա Եդեսիայի կոմսության։

352. Ինչպես քանիցս նշել ենք, Իբն ալ-Ասիրը ԺԱ—ԺԳ դարերի դեպքերը շարադրելիս Հայաստան (Արմինիա) է կոչում միայն Հարավային Հայաստանը կամ ավելի ճիշտ՝ Խլաթի Շահ Արմենների ամիրությունը։

353. Բադրի ճակատամարտում 624 թվականին Մուհամմադ մարգարեն հաղթեց իր հակառակորդներին Հիջազում։ Սա մեծ նշանակություն ունեցավ նոր կրոնի հաջողության համար։

354. Այս նախադասությունը հավանաբար վերցված է արաբական Թաի ցեղին պատկանող բանաստեղծներից որևէ մեկից, ինչպես Հատիմից (որը հայտնի էր առատաձեռնությամբ), Աբու Տամմամից կամ Բուհտուրիից։

Recueil des historiens des croisades, Historiens Orientaux. Paris, 1876. t.I , 2e partie, p. 118 (*ծանոթ.*)։

355. Տլուքը (Դուլուք) ԺԱ դարում հայաբնակ քաղաք էր և պատկանում էր Ապիրատ իշխանին։ Սակայն շուտով նրան տիրացան խաչակիրները և մաս կազմեց Եդեսիայի կոմսությանը։

356. Սա հավանաբար Հայոց իշխանապետ Ռուբեն Գ (1175—1187) է, որը հաջորդեց Մլեհին (1169—1175) և, իրոք, հաջողությամբ ընդարձակեց Կիլիկիայի հայկական պետության սահմանները։ Գուցե պատմիչը նկատի ունի նաև Լևոն Մեծագործին (1187—1219), որի օրոք Հայոց իշխանապետությունը (ապա թագավորությունը) խիստ հզորացավ։

## Հ Ա Մ Ա Ռ Ո Տ Ա Գ Ր Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն Ն Ե Ր


Աճառյան, *Անձնանունների բառարան*—Հ. Աճառյան, *Հայոց անձնանունների բառարան, Ա—Ե, Երևան, 1942—1962։*

Բոռնազյան, *Հայաստանը և սելջուկները*—Ս. Վ. Բոռնազյան, *Հայաստանը և սելջուկները, Երևան, 1980։*

Երեմյան, *Աշխարհացույց*—Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ աշխարհացույցի, Երևան, 1963։*

Թովմա Արծրունի—Թովմա Արծրունի, *Պատմութիւն Տանն Արծրունեաց, Ս. Պետերբուրգ, 1888։*

Կիրակոս Գանձակեցի—Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն Հայոց, Աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք Օհանջանյանի, Երևան, 1961։*

Կոստանդին Ծիրանածին—Կոստանդին Ծիրանածին, *Բյուզանդական աղբյուրներ, Բ, թարգմ. Հ. Բարթիկյանի, Երևան, 1970։*

Մանանդյան, *Քննական տեսություն*—Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, Ա, Բ (մասն Ա, Բ), Գ, Երևան, 1944—1952։*

Մատթեոս Ուռհայեցի—Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898։*

Մսրլյան, *Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ*—Գ. Մսրլեան, *Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, Կահիրե, 1947։*

Նալբանդյան, *Արաբական աղբյուրներ*—Հ. Նալբանդյան, *Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին, Երևան, 1965։*

*ՊԲՀ—Պատմա-բանասիրական հանդես, Երևան։*

Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները*—Ա. Ն. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, Երևան, 1965։*

Ուլուբաբյան, *Խաչենի իշխանությունը*—Բ. Ուլուբաբյան, *Խաչենի իշխանությունը X—XVI դարերում, Երևան, 1975։*

Քասունի, *Կիլիկիոյ Հայկական իշխանապետութիւնը*—Ծ. Ե. Քասունի, *Կիլիկիոյ հայկական իշխանապետութիւնը մերձաւոր Արևելքի քաղաքական հոլովոյթի մէջ, Պէյրութ, 1974։*

*Артамонов*. История хазар—*М. И. Артамонов*, История хазар, Л., 1962.

*Босворт*—*К. Э. Босворт*, Мусульманские династии, пер. П. Грязневича, Москва, 1971.

История Византии—История Византии, в трех томах (коллектив авторов), М., 1967.

История стран зарубежной Азии—История стран зарубежной Азии в средние века, коллектив авторов, М., 1970.

*Мец*, Мусульманский ренессанс—*Адам Мец*, Мусульманский ренессанс, перевод с немецкого Д. Е. Бертельса, М., 1966.

*Минорский*, История Ширвана—*В. Ф. Минорский*, История Ширвана и Дербенда X—XI вв., М., 1963.
*Микаелян*, История Киликийского армянского государства—*Г. Г. Микаелян*, История Киликийского армянского государства, Ереван, 1952.
*Оранский*, Введение в иранскую филологию—*И. М. Оранский*, Введение в иранскую филологию, М., 1960.
*Тер-Гевондян*, Армения,—*А. Н. Тер-Гевондян*, Армения и арабский халифат, Ереван, 1977.
*Хинц*, Меры и веса,—*В. Хинц*, Мусульманские меры и веса, с переводом в метрическую систему, перевод с немецкого Ю. Э. Брегеля, М., 1970.
*Beladsori*—Liber expugnationis regionum auctore al-Beladsori, ed. M. J. de Goeje, Lugduni Batavorum, 1866
BSOAS—Buletin of the School of Oriental and African Studies.
*Cahen*, La campagne de Manzikert— *Cl. Cahen*, La campagne de Manzikert d'apres les sources musulmanes, Byzantion, IX, 1934.
*Canard*, La campagne armenienne—*M. Canard*, La campagne armenienne du sultan se'guqide Alp Arslan et la prise d'Ani en 1064, REA, nouv. ser. II, Paris, 1965, 239—259.
*Denys de Tell Mahre*—Chronique de Denys de Tell Mahre, tr. J. B. Chabot, Paris, 1895.
Enc. of Islam—Encyclopaedia of Islam, Leyden—London, I—IV, 1913—1936.
*Ghazarian*, Armenien— *M. Ghazarian*, Armenien unter der arabischen Herrschaft, Marburg, 1903.
*Hitti*, History of the Arabs—*Ph. Hitti*, History of the Arabs, from the earliest times to the present, sixth edition, London, 1958
*Honigmann*, Die Ostgrenze, *E. Honigmann*, Die Ostgrenze des Byzantinischen Reiches, Bruxelles, 1935.
*Jacut*—Jacut's Geographisches Worterbuch, hrsg. F. Wüstenfeld, Leipzig 1924
*Ibn al-Athir*-*Ibn al-Athir*, al-Kamil fi-t-tarikh, Qahira I—IX.1353 (1934—1935).
*Laurent*, L'Armenie entre Byzance et l'Islam—*J. Laurent*, L'Armenie entre Byzance et l'Islam, depuis la conquete arabe jusqu'en 886, Paris, 1919.
*Markwart*, Osteuropaische—*J. Markwart*, Osteuropäische und Ostasiatische Streifzuge, Leipzig, 1903
*Michel le Syrien*—Chronique de Michel le Syrien patriarche Jacobite d'Antioche (1166—1199) ed. et trad. par J. B. Chabot, Paris, 1899—1904 (repr. 1963).
*Minorsky*, Studies in Caucasian History,—*V. Minorsky*, Studies in Caucasian History, London, 1953.
Recueil des historiens des croisades. Historiens Orientaux. t. I, trad. par de Slane, Paris, 1872.
Shorter Enc. of Islam,—Shorter Encyclopaedia of Islam, ed. by H. A. R Bibb and J. H. Kramer, Leiden, 1953
Le Strange, The Lands,—G. Le Strange, The Lands of the Eastern Caliphate London, 1930
*Tabari*, Tarikh at-Tabari, edition critique par M. Abu-l-Fadl Ibrahim. t. I—X, Le Caire, 1960—1969.
*Ter Ghewondyan*—The Arab Emirates,—*A. Ter-Ghewondyan*, The Arab Emirates in Bagratid Armenia, trans. by N. Garsolan, Lisbon, 1976.

## РЕЗЮМЕ

В данном издании даются переводы извлечений из двух сочинений историка XIII в. Изз ад-Дина Абу-л-Хасана Али ибн Мухаммада ибн ал-Асира: «ал-Қамил фи-т-тарих» («Полный свод по истории») и «Истории государства атабеков Мосула».

Сведения Ибн ал-Асира об Армении очень богаты и относятся к разным периодам истории Армении начиная с VII по XIII вв.

В сочинении «ал-Қамил фи-т-тарих» первые достоверные сведения относятся к периоду завоевания Армении арабами.

В 17 г. х. (638—639) арабы завоевали Джазиру и вторглись в Четвертую Армению (на юго-западе). Была завоевана армянская область Алдзник (араб. Диар Бакр) с городами Маййафарикин (арм. Нпркерт, греч. Мартирополь), Бадлис (арм. Балеш) и Арзн. Дальше рассказывается о завоевании Армении арабами в 25 г. х. (645—646) под руководством Хабиба ибн Масламы. Дело в том, что арабы под руководством Хабиба, в 654 г. временно завоевали Армению, но арабские историки путают вышеупомянутый поход в Четвертую Армению с походом Хабиба.

Ибн ал-Асир не рассказывает о событиях в Армении во второй половине VII в., так как в это время Армения пользовалась определенной самостоятельностью. Во всем своем сочинении он приводит те события истории Армении, которые были связаны с арабами или с мусульманским миром.

С конца VII в. наш автор уже систематически рассказывает о политических событиях, связанных с Арменией. В 73 г. х. (692—693) брат халифа Абд ал-Малика Мухаммад ибн Мрван был назначен наместником Армении (провинции Арминия) и Джазиры. Он предпринял целый ряд походов и, наконец, завоевал всю Армению и соседние страны. В 82 г. х. (701—702) Мухаммад назначил правителем Арминии (Армения, Картли, Арран, прикаспийские области и Дербенд) Абу Шайха ибн Абдаллаха, которого армяне убили во время восстания 703 г. В 91 г. х. (709—710) вместо Мухаммада наместником северных провинций (Арминия, Джазира, Адарбайджан) был назначен Маслама ибн Абд ал-Малик, а затем ал-Джаррах ибн Абдаллах ал-Хаками, который был убит в борьбе с хазарами в 112 г. х. (730—731). Хазары про-

никли до Адарбайджана и Армении (до Хлата), но были вытеснены новым правителем Арминии Саидом ал-Хараши.

В 114 г. х. (732—733) Мрван ибн Мухаммад (будущий халиф Мрван II) был назначен наместником северных провинций и организовал борьбу с хазарами, одержав решительную победу в 119 г. х. (737). По сообщению армянского историка VIII в. Гевонда (Левонд) в этом походе приняла участие армянская конница во главе с патрикием (ишхан, батрик) Армении Ашотом Багратуни.

В первой половине VIII в. борьба обострилась и в Малой Азии, где арабы начиная с середины VII в. совершали набеги и в 98 г. х. (716—717) в третий раз осадили столицу Византии. Основатель Исаврийской династии Лев III (араб. Алйун) сумел остановить натиск сарацинов, а его преемник Константин V (Кустантин) в 133 г. х. (750—751) вторгся в арабские владения и завоевал Малатию (Мелитина) и Карин или Феодосиополь (Каликала) в Армении. Предводителем византийских войск, занявших Карин, был Кушан (Кусан) ал-Армани. Арабы вновь заняли Карин и Малатию, а в 138 г. х. (755—756) восстановили городские стены Малатии, разрушенные византийцами.

Еще в 132 г. х. (749—750) первый аббасидский халиф Абул-Аббас назначил наместником северных провинций своего брата Абу Джафара, правившего до 754 г., когда стал халифом (с именем Мансур).

Правитель Арминии Йазид ибн Усайд ас-Сулами восстановил разрушенные византийцами городские стены Карина и в 162 г. х. (778—779) совершил поход в земли Византии.

В борьбе с арабами в рядах византийских войск участвовало много армянских полководцев. В 164 г. х. (780—781) византийские войска численностью 90 тысяч во главе с полководцами Михаилом и Тазадом ал-Армани ал-батриком (патрикий Тачат Армянин) оттолкнули нападение арабов со стороны горного прохода Дарб ал-Хадас (в Киликии). Тазад, или Тачат Андзеваци, в дальнейшем перешел на сторону арабов и был назначен наследником трона Харуном патрикием Армении (781—785).

Борьба против Византии приняла ожесточенный характер при Харуне ал-Рашиде. В 190 г. х. (805—806) халиф возглавил поход против ромеев (Рум), занял город Ираклию и заставил императора Никифора I платить ежегодную дань.

В годы восстания хуррамитов в Адарбайджане (816—837) халифы назначали общих правителей Арминии и Адарбайджана с целью организовать борьбу против повстанцев. Правитель Афшин в 222 г. х. (836—837) подавил восстание, возглавляемое Бабеком, который убежал в Армению, но был схвачен владетелем области Арцаха (Хачен) Сахлом сыном Смбата и передан властям.

В первой половине IX столетия Армения приобрела самостоятельность, и патрикии Армении почти формально подчинялись власти Аббасидов. Однако халиф Мутаваккил (847—861) предпринял особые меры, чтобы упразднить автономию Армении, отправил правителя Йусуфа ал-Марвази с поручением собрать налоги в максимальном размере и схватить видных феодалов страны. В 237 г. х. (851—852) Йусуф прибыл в Армению, арестовал патрикия патрикиев (батрик ал-батарика, ишханац ишхан) Багарата Багратуни (Букрат ибн Ашут), требовавшего должность правителя (имара) Арминии. Вследствие этого восстали горцы Сасуна, убили Йусуфа и истребили его отряды. В том же году Мутаваккил отправил огромное войско во главе с Бугой ал-Кабиром, который схватил владетеля области Васпуракан Ашота Арцруни (Ашут ибн Хамза). Огнем и мечом он подавил восстание в Армении, истребив тридцать тысяч человек только в одной области Сасун. В 238 г. х. (852—853) Буга взял город Тбилиси (Тафлис) и затем напал на армянскую область Арцах (Хачен). Однако ему не удалось окончательно подавить восстание.

Начиная с установления Армянского царства Багратидов (Багратуни) в 60-х гг. IX и до второй половины X вв. сведения Ибн ал-Асира касаются, главным образом войн между Византией и странами халифата, причем в X в. перевес был на стороне империи.

В 314 г. х. (926—927) доместик (думустук) Иоанн Куркуас и армянский полководец Млех Ментц (Малих ал-Армани) осадили Малатию, являющуюся одним из важнейших пограничных укреплений (сугур) халифата, вторглись в город и хотя не сумели овладеть им, тем не менее причинили большой ущерб. Византийские войска в 315 г. х. (927—928) вторглись в Армянское царство и продвинулись до древней столицы Двин, где арабы еще имели позиции, однако после безуспешной осады вернулись назад. В следующем году они проникли до Хлата и Балеша (Бадлис). Согласно Ибн ал-Асиру, в 319 г. х., (931—932) владетель области Васпуракан Ибн ал-Дайрани (Гагик, сын Дераника, или Дереника) и другие феодалы Армении подстрекнули ромеев вторгнуться в те части Армении, которые находились в руках арабских эмиров. В ответ на нападение византийцев на Беркри и Хлат Муфлих ал-Саджи предпринял ответный поход, опустошив Васпуракан. Наконец в 322 г. х. (933—934) византийцы завоевали Мелитину (Малатию).

Армения подвергалась нападениям разных военачальников, стремившихся установить свою власть в Адарбайджане. Например, в 326 г. х. (937—938) Лашкари ибн ал-Марди проник в южные области Армении и остановился в Андзевацике (аз-Завазан), где начал грабить население. Владетель той области Атум ал-Армани (Атом, сын Гургена Андзеваци) предложил ему уда-

литься, но получив отказ, разбил его отряды и убил самого Лашкари.

Передвижению византийцев дал отпор хамданидский эмир Сайф ал-Даула, который в 353 г. х. (964—965) завоевал земли Кайситов—арабских эмиров Маназкерта и других городов Армении. Но скоро он скончался и его владения в области Алдзник (Диар Бакр) перешли к Бунду Адуд ад-Даула в 367 г. х. (977—978).

Последнее событие Хв., сообщаемое Ибн ал-Асиром, это поход царя ромеев (Рум) Василия II в Армению в 382 г. х. (992—993) и его нападение на города Хлат (Хилат), Маназкерт (Малазкирд) и Арчеш (Арджиш).

В течение последующего сорокалетия наш автор не сообщает никаких сведений об Армении, так как Армянское царство в это время (особенно при царе Гагике II Багратуни, 990—1020) переживало период расцвета и соседние эмираты не в состоянии были его беспокоить.

О появлении сельджукских отрядов в Армении и соседних странах и об их варварских злодеяниях историк говорит подробно. Он описывает, как эти дикие отряды в 420 г. х. (1029—1030) разрушали города Адарбайджана и беспощадно убивали население страны.

В 30—40-х гг. XI в. отряды огузов под предводительством сельджуков опустошали Армению, а византийские войска были заняты лишь завоеванием новых областей и городов Армении. В 425 г. х. (1033—1034) ромеи заняли город Беркри в южной Армении, а в 1045 г. упразднили царство Багратидов (Багратуни), захватив столицу Ани. Однако позиции их в Армении были крайне непрочными.

В таких печальных условиях армянские феодальные княжества (особенно горные) самостоятельно выступали против врага. В 427 г. х. (1035—1036) большая толпа народа из разных иранских областей под предлогом паломничества прошла через Армению и совершила бесчинства. Население страдавших армянских областей обратилось за помощью к влиятельному князю Сасуна (малик ал-Санасина), а он разбил отряды мусульман.

В 440 г. х. (1048—1049) сельджукские отряды во главе с Ибрахимом Янналом предприняли первый большой поход в Армению, а византийские и армянские полки не сумели их остановить. Они беспощадно разорили страну и захватили огромную добычу. В 446 г. х. (1054—1055) Тогрул бек вторгся в Армению, но не сумев овладеть сильно укрепленным Маназкертом (Манцикерт) разграбил и разрушил соседние селения. О героическом сопротивлении жителей Маназкерта рассказывает армянский историк XII в. Матфей Эдесский (Маттеос Урхайеци).

Ибн ал-Асир подробно описывает поход Алп Арслана в 456

